# ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՃԱՄԲՈՐԴ

Գ. Վ. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ

### ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ



ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ե. Մ. ՏՆՏԵՍԵԱՆ

Կ. ՊՈԼԻՍ

ՍԻՒՄՊԻՒԼԼԻ ԽԱՆ ԹԻՒ 47

—1879—



# ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ

Մեծին Հայաստանի Չորրորդ Հայք նահանգի գաւառներէն մէկն է Ծոփաց աշխարհ, Ծոփք մեծ. գրուած է նաև՝ Ծովք. առաւել անուանի եղած՝ Ծոփք կամ Ծովք Շնորհալւոյն հօր, տոհմին և եղբարց բնակավայր լինելով։ Խակապէս ծով կամ ծովիկ մը կայ (4 ժամ երկայն՝ 1 ժամ լայն) Խարբերդին՝ Արղնու և Մալաթիոյ լերանց միջև, բաժակաձև, բայց գաւառն Խարբերդու կը վերաբերի և անոր աւելի մօտիկ է, իբր մէկ ժամ։ Ես կը կարծեմ թէ՝ Ծոփք կամ Ծովքն է Ծովիկ բառ, որ իւր մէջն ունէր դղեակ մը, ուստի և անուանուած է Ծովք-դղեակ։ Հոս Հայաստանեայց եկեղեցւոյ և ազգի Շնորհքն ծագած է։ Հոս ծնած, շնչած, լացած, երգած, գրած և աղօթած է Ներսէս Շնորհալին, ուստի և իմ այս անգամի ուղևորութեան ամենամեծ շահս եղաւ հանդիպելը և երկրպագանել այս Ծովիկին և դղեկին, Ջրոց և տաճարի աւերակին, ուր ամենայն ինչ շնորհալի էր։ Գրքիս երկրորդ մասին մէջ կը մնայ անոր ընդարձակ և մանրամասն նկարագիրն, ես կը փութամ յիշատակարանէս մաս մը քաղել դնել այս տեղ իբրև կանխաբան և իբրև բացատրութիւն թէ ինչո՞ւ այս գրքոյկս կոչեցի ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ։

Տիգրանակերտէն 'ի Ջերմուկ և 'ի Զընքուշ վերադարձած էի, ուստի Խարբերդու վրայօք պիտի անցնէի գայի: Զնքուշէն իննժամ եկած էինք, կարաւանը իւր օթեւանն ըրաւ Քէյլաքան գեղը. ես անցայ, և ուղիղ արահետէն խոտորելով բարակ ուղիով մը շատ բարձր լեռ մը ելանք. կ'ուզէի անպատճառ նոյն գիշերը՝ Հայոց Ծովք գեղ կամ ըստ Թրքաց՝ Կէօլճիւկ՝ իջեւանիլ: Յոգ ոգ-կրակ եղած էր փափուկ սրտիս մէջ, կը տոչորէր հոգիս և մարմինս. այնպէս կ'զգայի, եթէ նոյն օրը չհասնիմ, չտեսնեմ, չհամբուրեմ այդ ջուրն ու հողը, պիտի մեռնիմ կարօտակէզ՝ աչքս բաց մնալով....: Արդէն հնար չէր ձի նստել. կը քալեմ, կը վազեմ, կը թռիմ, և ահա պաղ հով մը, քայլ մի ես, և ահա Ծովքն իւր ցանկալի երեսը ցըցուց.... կարկամեցայ....: Ո՞վ կարող է նկարագրել այն բուռն և խոր յուզմունքն, որ տիրեց իմ հոգեկան և մարմնական բովանդակ մասանց վրայ: Ո՛վ իմ պաշտելի Շնորհալւոյս տուած ու առած, օրհնուած ու օրհնած, աղօթած ու երգած տեղի, տեսարան ու հանդիսարան....: Այժմ կ'զգամ թէ մարդ ո՛ր աստիճան յափշտակութեան մէջ կը գըտնուի, երբ իւր ամենէն աւելի սիրածին հանդիպի: Քարերու գլուխը քարացած մնացեր եմ, և ապա գետինը թաւալեցայ երեսաց վրայ: Կը փարիմ, կը գրկեմ, կը պագնեմ կ'սթափիմ, և, այլ աչերս չմերցուցի եր

կինք ։ Երկինքէն բարձր փառք մը գտած էի ։
Աչքս 'ի ծովն , միշտ 'ի ծովն , շեշտ 'ի ծովն ։

Ծո՛վ , դու է՞ր չես ծիծաղիր ։

Բաներ կ'որոնեմ իր մէջ՝ չցուցըներ . հարցումներ կ'ընեմ իրեն՝ չպատասխաներ ։ Իր ափանց ալիքներ՝ որ կը ծփծփան առանց հողմակոծութեան և առանց փոթորկի , նշան է թէ փոթորիկը զանի այնքան վեր ու վայր յուզած է , որոյ կուրծքը ուռչած է և ծո-ցուն խորերը կոծով լի , նման թշուառ դըշ-խոյի մը , որոյ գլուխն ու դէմքը փայլուն ե-րեւի ադամանդներով , ոսկեհուռ ճեղե-նակներով , բազմեալ բարձրաշուք փղոսկրէ գահոյից վրայ , արտաքուստ երեւոյթ երա-նելի և նախանձելի , բայց չարունակ արտա-սուեն իր աչերը , ցաւն ու կսկիծը կրծէ ներսէն անոր սիրտն , լայ ու հեծեծէ , քանզի կորուսած է նա իր երկու աչաց լոյս երկու զաւակները , երկուքն ալ թագակիր գլուխ-ներ , մին փառք եկեղեցւոյ , միւսն փառք դիւցազնութեան ։ Ծովիկն աչքի ձեւ ունի , կոյրի մը աչքին պէտք ըսէի , բայց ա'լ ճիշդ՝ մանկամարդ այրւոյ մը կը նմանէր , խորհըր-դաւոր գեղեցկութեամբ և շնորհքով զեղուն ակնոցի մը , զոր արտասուքն աւելի հրա-պուրիչ կը գործեն , լերանց շրջանակի մը մէջ ամփոփուած , և ինչպէս սեւ ոսպ մը՝ աչքին բիբը , այնպէս կը մնայ և կ'երեւնայ սեւ ու քայքայուած շէնք մը այս ծովուն մէջ , կըղ-զեակ—դղեակին վրայ Ս. Նշանի տաճարին

աւերակին ։ Ո՜ աւերակ, որ քան զերկինս բարձըր ես և մեծավայելուչ իմ սրտիս համար . . . ։ Գիշերը անքուն անցուցինք, արշալուսին նաւ նստեցանք կղզին երթալու . աւա՜ղ աչերուս, սեւ ու սպիտակ քարեր ցիր ու ցան խարխալեալ որմունք և եթ կան . . . ։

Համբո՜յր քարերուն, համբո՜յր հողերուն, համբո՜յր փլատակաց վրայ բուսած խոտերուն ։ Եւ ցող՝ Հայաստանի հոգւոյն արցունքն որ ամեն առաւօտ կ'իջնէր շաղախել կղզեկիս փոշիներ ու քարերու խիճերէն ծլած թուփերը, լզեցի, կրծեցի, ճաշակեցի, իմ ալ ցօղերս թափելով հոն ։ « Դեռ 50 տարի յառաջ աստ կը բնակէինք Ծովեցի Հայքս, և նախ թերակղզի էր . մեզմէ շատերը այս աւազանը մկրտուած են » ևն. կ'ըսէին իմ նաւիչներս ։ Լուսատիպ մը պէտք էր ճիշդ այս պահուս, սոյն Աստուածաբնակ աւերակին և Աստուածարեալ Ծովկին տխուր ու վսեմ տեսիլն տայէր, պատկեր՝ զոր աւելի կը կենդանացընէր արեւուն ծագման քնքոյշ ճառագայթն, և լերանց ու ծառոց ստուերները կը կախէր երկնափայլ ծովուս բիւրեղեայ ծոցոյն մէջ . այս պահուս՝ երբ ձկունք երամով կը կայտռէին, երբ թռչունք թիռ թիռ կը թռէին ։ Բայց ինչո՞ւ ամենքն ալ անձայնէին ։ Վա՜հ, երբ լռեր էր Ներսէսին քնարը «Զարթիք փառք իմ» երգելէն, զոր կը նուագէր Զուարթն հոգւով «ընդ զուարթունս նարերգս առեալ Նորոգողին», և կը կրկնէին այս

թեւաւոր պլախօսիկ տիրացուք «Ալէլուիա՛», այն օրն ալ լռած էին թռչնոցս գայլայլիկք։

Ո՞վ կրնայ բաժնուիլ ձեզնէ, ափ ու աւ-ւեր Ս. Նշանայ։ Ո՞վ կրնայ թողուլ ձեզ, քարինք և ալիք Ծովկ—գղեկիս։ Արդեօք որ-քա՞ն պիտի ապրինք դուք կամ ես. ա՞յր ինձ երկիրք այն երջանիկ առիթն կրկնելու անյագ համբոյրս և անհատ արցունքս 'ի ձեզ։

Լերինք և եթերք Ծովկիս, ձեզ, որ ար-ձագանք տուած ու առած էք շնորհալի եր-գոց և մեղեդեաց Շնորհալւոյն։

Ջուրք և թռչունք, ձեզ, որ զուարթ խայ-տանօք ազդած ու շարժած էք երկնային Աշու-ղին զգացմանց քնարին հոգեղէն թելերը։

Ամպեր և արեգ, ձեզ, որ պայծառ և չքեղ ճառագայթներով ոգեւորած էք պայ-ծառ հոգին Հոգեկնուագին «Առաւօտ լուսոյ, արեգակն արդար, առ իս լոյս ծագեա» գեղ-գեղողին։

Դեռ ցամաքը չելած, հաւք մը կը տեսնեմ, սեւորակ փետուրով, բարակ վզիկով, գլորիկ գլխով, զոր ծռած էր մէկ քով, թը-խորակ աչերով, սպիտակ լանջով, ծնկները ծալած ջրոյն ալեաց վրայ կ'երերայ, ագա-ւորի մը կամ անգին կորուստ ունեցողի մը կը նմանի, բնութեան և առաւօտեան բոլոր գեղեցկութիւնն ու զուարթութիւնը իրեն վրայ չազդեր, անփոյթ հայեացք մը կը ձգէ աչքի ծայրով դէպ 'ի մեզ երբեմն։ Մինակ միայնակ է ինքն բոլորովին։ Յանկարծ ծո-

փուն յատակը կ'իջնէ կ'անհետանայ, խորերը կը յուզէ, և ահա ջրոյն երեսը կ'ելնէ պարապ և ունայն, մի և նոյն տխուր տիպով տաղկըքով . . . :

Ի՞նչ կ'որոնես, խե՛ղճ հաւուկ :

— Ի՞նչ է աս թուչնոյն անունը, հարցուցի ծովակի ընկերներէս : — Պատասխանեցին . ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ է իր անունը :

Թորո՛ս աղբար, ա՛ռ նոր զարկ մը սրտիս . . . Արդեօք որո՞յ անձնաւորութիւնն էր այն :

Ա՜յ Թորոս աղբար, որ կը յուզես ծովուս խորերը, կը յուզես սրտիս անդունդները : Թորո՛ս աղբար, որ մէջ կորուստներուդ կը խնդրես, արդեօք տաճարի՞ն եթէ դահլիճին, Լեւոնեա՞նց եթէ Ռուբինեանց, Հեթումեա՞նց եթէ Գրիգորիսեանց, խո՞յրն եթէ սաղաւարտն, խա՞չն եթէ գաւազանն, փետուրի՞կն եթէ պողովատիկն, դրո՞շմն եթէ դրօշակն, Աստուածարան մատեա՞նն եթէ զանգոյք արքունական, ծիրանի՞ն եթէ եմիփորոնն, Վհայասիրին բուրվառն ու աղօթամատո՞յցն եթէ Թորոսի սո՛ւրն վրիժուց :

. . . Է՜յ Թորոս աղբար, թո՛ղ ինձ հեռ, թո՛ղ զքեզ տանիմ հայրենիքէն հեռացեալ Հայոց 'ի տես, 'ի յայգ և 'ի յոյս . . . :

Բայց դու կը մերժե՛ս, չե՛ս համոզուիր, և ոչ տեղէ՛դ կը բաժնուիս :

Այո՛, դու ուղիղ ես, յուզէ, խնդրէ, որոնէ այդ տեղ. ԿՈՐՈՒՍՏԸ՝ ԿՈՐՍՈՒԱԾ ՏԵՂԸ . . . :

# ԱՌ ԸՆԹԵՐՑՈՂՍ

1878, Ապրիլ ամսոյն վերջերը, Ամենապատիւ Տ. Ներսէս Սրբազան Պատրիարք Հայրն որոշած էր երկու վարդապետ ղրկել Փոքր և Մեծ Հայաստանը. գնացողներէն մին ես էի. մեր պաշտօնը սահմանուած էր կոնդակով մը, որոյ պատճէնն ահաւասիկ:

«ՆԵՐՍԷՍ ծառայ Քրիստոսի և շնորհիւն Աստուծոյ Պատրիարք Հայոց և Արքեպիսկոպոս Կոստանդնուպոլսոյ, բարեջան Առաջնորդաց Գերապատիւ Եղբարց մերոց 'ի Տէր՝ և Մեծապատիւ Անդամոց Ազգային Վարչութեան՝ բարեշնորհ Քահանայից և ժողովրդականաց գաւառացն Ամասիոյ և Մարզուանու, Եւդոկիոյ, Շ. Գարահիսարու, Սեբաստիոյ, Տիվրիկի, Ակնայ, Զարսանճագի, Արաբկերի, Չըմըշկածագու, Խարբերդի, Չնքուշի, Բալուայ, Մալաթիոյ և Տիարպէքիրու վիճակացն ողջոյն և սէր 'ի Քրիստոս Յիսուս 'ի յոյսն բնաւից:

«Որ ունի զգիրս՝ Արժանապատիւ Տէր Գարեգին վարդապետ Սրուանձտեանց սիրելին մեր՝ յայս նուագ յատուկ պաշտօնիւ առաքեցաք 'ի կողմանս, զի վիճակագրեսցէ զեկեղեցիս և զդպրոցս և զվանորայս ազգիս զշէնս և զանշէնս և զկալուածս նոցա, և հա-

ւաքեսցէ զկարեւոր տեղեկութիւնս վորայի-սութենէ ժողովրդեան եւ զներկայ կացութենէ նոցին ըստ յատուկ պատուիրանաց մերոց, եւ յուսով բարօրութեան եւ բարեկարգութեան Հայաստան աշխարհի՝ մխիթարեսցէ զամենեսին:

«Քաջայոյս եմք զի Ձերովդ ազգասիրական զգացմամբ եւ ամենագովեալ հիւրասիրութեամբ պատուասիրէք եւ դիւր ընծայէք սորա արժանապատուութեան օգնելով եւ սատարելով նմա, զի կարող լիցի փութանակի եւ անթերի լրացուցանել զպաշտօն յանձնեալ ինքեան եւ դարձ այսր առ մեզ արասցէ 'ի պայծառութիւն Եկեղեցւոյս եւ 'ի շինութիւն Ազգիս:

«Ողջ լերուք եւ զօրացեալք 'ի խնամս Տեառն, եւ Աստուած խաղաղութեան սփոփեսցէ զՁեզ բարեօք»:

ՊԱՏՐԻԱՐՔ Կ. ՊՈԼՍՈՅ
ՆԵՐՍԷՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

Տուեալ 'ի Պատրիարքարանէս Կ. Պօլսոյ
յամի Տեառն 1878 Ապրիլ 26
եւ Ազգական ՌՅԻԷ

Ինչպէս կը տեսնուի, «Յուսով բարօրութեան եւ բարեկարգութեան Հայաստան աշխարհի» կ'երթային մենք ողջունատար եւ մխիթարար՝ յուսաբեկ Հայոց: Այն օրերը Հայկական խնդիրն թեւ առած սաւառներ ու հասեր էր Եւրոպիոյ մեծ տէրութեանց դահլիճները, եւ քաղցր յոյսեր կանխեր սփռեր էր Հայաստանի աւերակներուն եւ Հա-

ց տուեր սրտերուն. հայրենի հողն ու հօ-յնն հաւասարած Հայն՝ կենաց նոր շարժում է կ'առանայր. Ս. Պատուիրակներն իրենց բարձր տեղերէն կ'երեւէին մինչեւ Հայաս-տանի խորն ու ձորը 'ի խաւարի նստող բնակ-չաց։ Իսկ լրագրութիւն իբրեւ գետ կը հոսէր կը տարածէր յաջող ակնկալիքներ ։

Թողի Պոլիս ։ Թողի Ռուսաց սպայից եւ զինուորաց խուռանն Բերայի ու Պոլսոյ փողոց-ները, եւ անոնց խառնիճաղանճը՝ Այիստէ-ֆանօսի բանակադաշտն։ Թողի Միւհէնտիսխանէ-րու ժխորն մայրաքաղաքիս հրապարակները եւ արուարձանները ։ Ցետին ակնարկ մը ձը-գեցի Մարմարայի վրայ, որոյ մէկ խորշին մէջ Բրիտանական նաւատորմիղն կը ծփար ։ Ես կը ծփար ու կ'ալէկոծէր Ստամբոլն ամ-բողջովին փոթորկալից հողմերով. . . ։

Մնա՛յ բարով Գատը գեղն, զոր սրտիս հեռու կը տանիմ ։ Մնա՛ն բարով հասմայն բա-րեկամներս, եւ ազգասէրներ, որոց յիշա-տակը գլխոյս հետ անբաժան կը կրեմ. . . ։

Մայիս 1 էր, Օրէստօ գեղեցիկ շոգե-նաւն զմեզ բարձած իւր թեւոց վրայ կը թը-ռէր դէպ 'ի Սեւ ծով։ Գարունն իւր չքնաղ գեղեցկութեամբ չքեղազարդած էր Վոսփորի երեսներն ու շրթունք, արեւն պայծառ եւ փափուկ, բայց անոնք չէին ազդեր յիս ։

Օտար էին անոնք, ես կ'երթայի հայ-րենեաց արեւն ու գարունը ողջունել։

Իմ պաշտօնական թուղթերս ուղղած

եմ Պատրիարքարան և համառօտ տեղեկագիրս, որոյ պատճէնը կանխաւ հրատարակուած է Մասիս լրագրոյ Յունուարի Թերթերուն մէջ :

Այն հրատարակութիւնս պաշտօնական չէ, այլ սոսկ իբրև ուղեւորութիւն և զանազան ծանօթութիւնք իմ շրջած տեղերաց տեղերաց և բնակչաց կեանքի վրայ, մասնաւորապէս ազգայնոց նկատմամբ, և անոնց հին և նոր վիճակը, վանքերը, վարժարանները, քաղաքական և ներքին վարչութիւնք և անտեսութիւնք, են. ստորագրել, զորս 'ի լոյս կ'ընծայեմ իբրև ընծայ մը բերելով Հայաստանէն՝ Հայաստանը սիրող Հայոց մատուցանելու :

Կատարեալ գործ մը չէ այս, վասն զի այնքան խուռն և կարեւոր պաշտօններու մէջ չէի կրնար լիովին ստորագրել և ամեն բան աչքէ անցունել. այսու ամենայնիւ որքան կրցայ հաւաքեցի և 'ի դիր անցուցի, տեղ տեղ ալ ձեռագիր մատեաններու ցանկն ու յիշատակարանները օրինակելով, զորս իբր դուզնաքեայ աշխատութիւն՝ բանասիրաց և ազգասիրաց փոքրիկ ճաշակ մը կ'ընծայեմ : Պատրիարքարանն՝ մեր բուն պաշտօնական վիճակագրութիւնը և տեղեկագիրը 'ի լոյս պիտի ածէ, կցորդելով մեր միւս պաշտօնականաց գրածներուն հետ :

Եթէ նկատեն սխալք պակաս բաներ գըրուածքիս մէջ, կատարելապէս իրաւունք

Մեծուր գետն, Բէրին առան: Քղիի ջուրն: Մեծկերտ և իւր հնութիւնք: Այս Ճեփիկ ալէյն, Կիրակոս էֆէնտի Ղազանճեան, զօրաց բանակն, Ցէրսիմի բարեկարգութիւնն. Նկարագիր և տեղեկագիր Տէրսիմին և Տէրսիմցւոց. նոցա բարոյքն և կրօնքն: Աւերակք, հնութիւնք և աւանդութիւնք. Հալւորիկի Ս. Կարապետ վանք: Զարմանագի ալէյեր և պէրի ժողովուրդ: Եաւլուայ Քաղցրահայեաց վանքն, Հաւաւ գեղ և այլ գիւղորայք, Եաւլուայ քար կամ բերդ. Ս. Մկրտիչայ քարայրը, Ծղնարան և Դպրատուն: Բուլի էֆէնտին: Եաւլուայ բէկեր: Աշմուշատայ դեղեր. Ս. Խաչ վանք: Արղնու վանք կամ Բարձրահայեաց Ս. Աստուածածին. ասոր նոր գրատուն, ձեռագիր մատենից ցանկն ու յիշատակարաններ, ստորագրութիւն: Արղն և Անել գիւղաքաղաքաց ու անոնց հնութեանց և Գախըր մատէնի վրայ ծանօթութիւն: Արղընէն մինչև Տիգրանակերտ ընդարձակ դաշտը: Տիգրիս գետն, Տիգրանակերտի հնութիւնք, քաղաքին ստորագրութիւն, բաղմաթիւ ձեռագիր մատեանք, անոնց ցանկն ու յիշատակարանները: Սասնոյ լերինք և անոնց բնակիչները: Աստրի, Քիլսանի, և Շէյխի ցեղերը: Գրգեր և Եզիտիք: Տիգրանակերտու վանքեր: Զերմակայ ջերմաղբիւրը և քարացեալ մարդիկ. Ձնգուշայ վանք կամ Միրահայեաց Աստուածածին: Խեճոյ Միւլէյման: Ծովք կամ Ծովքին լճ.

Կանխաւ իղձ կը տածէի փոքր Հայաս-
տանի և մեծ Հայաստանի հարաւային գա-
ւառները ուղեւորիլ և ստորագրել. ուստի
այս առթիւ սիրելի Պատրիարքն Ս. Հօր հրա-
մանն ինձ ցանկալի էր, և սրտագին գոհու-
թեան պարտիք մը կը դնէ իմ վրաս։ Խոն-
դադին շնորհակալութիւն նաև իմ շրջած
տեղերու ազնիւ Հայոց, որք իրենց սիրով և
մեծարանօք մեծապէս մխիթարեցին զիս։
Իսկ ես ինչ որ ըրի, «Զոր պարտն էր առ-
նել արարի»։

Երբեք պատճառ մը չունիմ դժգոհելու.
վասն զի յօժարութեամբ գնացի, յօժարու-
թեամբ շրջեցայ, յօժարութեամբ գործեցի։
Ոչ երկրին անիշխանութեան օրերը, ոչ Ձէր-
քէզն ու Քիւրդը, ոչ լեռներն ու ձորեր, ոչ
արեւն ու անհանգիստ ուղիներ, և այլն. չկրցան
վհատեցնել զիս։ Քրդաց վրաններու տակը
և բացօթեայ վայրեր իջեւանեցայ, ամսա-
կան ուղեւորի մը կեանքը ամենն ալ կրեցի,
բայց երբեք ցաւ չզգացի, վասն զի սիրով
գնացի. և փոխանակ անոնց՝ հազարաւոր մը-
խիթարութեանց կը հանդիպէի, մեր հայրե-
նական ջրերուն ; հովերուն, մարգերուն,
դրախտներուն, բերքերուն և պտուղներուն,
համով հացին և կարմիր գինւոյն, հաւքե-
րուն թռիչքին ու կաքաւներուն կառաչին,
ծաղկանց բուրմունքին և անտառին սօսինե-
րուն, մաքրոյ կաթին, կովու իւղին, ձագուց
մեղրին, Հայ մանկանց երամին, և այլ սըր-

տարըրաւ յափշտակիչ տեսարաններուն, ուրացմով, կարի զուարթութիւն՝ կարի հորովութիւն եկաւ վրաս ։ — Հայ եղողը՝ Հայաստանի հողոյն վրայ ինքզինքը կը ճանաչէ, ինքզինքը վեհ և կենդանի կը գտնէ, փորձեցէք և տեսէք ։

— Ահա կ'երթամ ես ։

— Հրամեցէ՛ք ։

4 Ապրիլ 1879 Գ. Վ. Սրուանձտեանց

Գատը գիւղ Կ. Պօլսոյ



# ՍԱՄՍՈՆ ՔԱՂԱՔ

Մայիս 2ին Սամսոնը ողջունեցինք, գեղեցիկ օդերով, գեղածիծաղ ծովով։

Այս քաղաք մեծ և կարեւոր նաւահանգիստ մի է Փոքր Հայոց և Մեծ Հայաստանի հարաւային գաւառաց. ամ յամէ աւելի ծաղկեալ։

Իր միջէն կ'անցնի Կ. Պօլսէն 'ի Բաղդատ գնալիք մեծ ուղին ցամաքային, զոր կ'անուանեն Բաղտատ ճատտէսի. ուղեւորներ և ապրանքները բազմաթիւ ելևէջ կ'ընեն այս քաղաքը։

Բաւական նոր ու չքեղ չէնքեր կան. չուկան և խաներ, վաճառանոցներ, ամբարներ կոկիկ են. իսկ փողոցները անմաքուր. օդը խոնաւ և տենդոտ. գրեթէ առողջ և կայտառ անձինք հազուագիւտ են։

Ճախնային վայրեր ունի քովերը, որոց ապականութենէն յառաջ կու գան հիւանդութիւնները։

Քաղաքիս բնակիչքը մեծաւ մասամբ Տաճիկներ են, և 150 տան չափ Հայք։ Հայք վաճառաշահութեան առթիւ հոս գաղթած են, Ակնէն, Կեսարիայէն, Եւդոկիայէն, եւն։

Ցոյնք Հայերէն ա՛լ պակաս են, բայց աւելի հարուստ և յառաջադէմ։ Քաղաքիս մէջը նշանաւոր է Ցունաց եկեղեցին և վարժարանը։ Ասոր հակառակ կարի նսեմ է Հայոցս եկեղեցին և վարժարանը, որ թէպէտ երբեմն երբեմն փայլակի նման կը պայծառանայ հանգանակութեամբ մը, կամ ընկերութեան մը եռանդով, բայց և յանկարծ կը մթննայ։ Փորձ մ'ալ ես ըրի. Ընթերցասիրաց ընկերութիւն վերակազմուեցաւ, և վարժարանին պարտքը գոցելու հանգանակութիւն մը եղաւ. բայց խիստ քիչ տեւած էր, վասն զի վերադարձիս ցաւօք սրտի տեսայ որ վարժապետը քաղաքէն կը մեկնէր. և ընկերութիւնը՝ եթէ վերջացած չէր, չարունակելու մէջ ալ չէր։ Խնամակալութիւն մը կար աղջկանց վարժարանին, անոնք ալ ձեռնթափ տեսայ։

Սամսոնի Հայք աղքատ չեն, և կրնան իրենց ազգային վիճակը տիպար տալ այն ամեն Հայոց, որ կու գան կ'անցնին Սամսոնէն, տիպար լուսաւորութեան և ազգայնութեան. կրնան և պէտք է այն վիճակն ունենան, որ Սամսոնին այցելող մը փափագ ունենայ տեսնելու այդ ծովափնեայ ծաղկեալ քաղաքին մէջը՝ Հայոց եկեղեցին պայծառ, վարժարանը պայծառ, ընկերութիւնք և թանգարանը պայծառ, իբրև ներկայացուցիչ Հայաստանցի Հայոց, որոց դուռն կը համարուի իր դիրքով։

Քահանայ մը և եթ ունին. իրենք Ամա-

սիրոյ թէմ կը համարուէին , բայց Առաջնորդէն այցելութիւններ չէին վայելէր · և միթէ Առաջնորդ ալ ունէի՞ն · և եթէ ունենային՝ իրենք հեռի ինկած էին · մանաւանդ քաղաքականապէս Ամասիան՝ Սեւաստին ենթակայ է , Սամսոնը Տրապիզոնին · ուստի մեծ փափագ կը յայտնէին , և իրաւունք ալ ունէին որ Զարշամպայի և Ճանիկի Առաջնորդութեան հետ միանար Սամսոնն ու Պաֆրան , Առաջնորդը նստէր 'ի Սամսոն , ուր կը նստի Միւթասարրիֆը , և Սամսոնի ազգային վիճակը մեր ըղձացեալ պայծառութեան կը հասնէր ։

Իբր 300 լիրա Օսմ · դրամագլուխ ունի եկեղեցին և վարժարանը , որ վստահելի անձանց տոկոսով արուած է ։ Թէ՛ ասոր տոկոսները և թէ՛ տեղական ազգայնոց հանգանակութեան յօժարամտութիւնը կրնայ բաւական արդիւնք գոյացընել · բայց գլուխ կեցող մը կը պակսի ։

Քանի մը երեկոյթներու մէջը ցոյց տուին Սամսոնի ազգայինք իրենց սրտի եռանդն և ձկտումն դէպ 'ի յառաջադիմութիւն բանիւ և արդեամբք , ինչպէս և կիրակի ցերեկին վարժարանին մէջ ըրած հրաւէրին ։ Անոնցմէ որոնք արժանի են յանուանէ յիշատակելու , երեքը միայն կը յիշեմ , իսկ պատիւը՝ ամեն գործողներուն · Օհան էֆ · Ալանեան Խըղոկիացի , Երդուարդ էֆ · Մուրատեան Նիկոմիդիացի և Գաբրիէլ էֆ · Առաքելեան Սե-

բաստայի. ասոնք գրեթէ Սամսոնի ազգայնոց հոգին են, իւրաքանչիւրն իր յատկութեամբ և առաւելութեամբ :

Քաղաքս՝ գտնուելով իբրև կապ Ասիոյ և Եւրոպայի միջոցը, յարաբերութիւն ունի Եւրոպայի, Կ. Պօլսոյ և Ռուսաստանի հետ. փոխադրիչ վաճառականութեան կարեւոր վայր է, և ցորենի առուտուրը յաջող : Իր մէջէն և շուրջէն ալ բերքեր կը հասնին, մասնաւորապէս մեծ քանակութեամբ ծխախոտ, որ անուանի է և շատ տարածեալ. եգիպտացորեն, վարսակ, գարի, լուբիա, բուրդ, խաշանց մորթ, չիմէնթօ (որոյ հանքն ունին), սեւ խաւյար (ձկնկիթ), զանազան և առատ ձկունք :

Պալըք կէօլիւ ըսուած լճակը Սամսոնէն 8 ժամ հեռի է դէպ 'ի Պաֆրայ, որ իր անթիւ ձկներով մեծ շահ կ'ընծայէ կառավարութեան և հասարակութեան : Ալիս մեծ գետը (Գըզըլ ըրմագ) Սամսոնէն 8—10 ժամ հեռի դէպ 'ի Պաֆրայ՝ կը թափի Սեւ ծովը. Նոյնքան հեռու է նաև Իրիս գետը (Եշիլ ըրմագ), որ Չարշամպայի մօտ կը թափի Սեւ ծովը :

Աբազա գաղթականներ և Չէրքէզները ծանր բեռ մը եղած էին ժողովրդեան. և ոչ միայն ճանապարհները, այլ և քաղաքի մէջ, տներու մէջն անգամ ապահովութիւն չէր մնացեր. գողութիւն, զինահարութիւն և սպանութիւն հասարակացեալ էր :

Այս գաւառը գրեթէ ամբողջ լեռնային է․ Պոնտոսի լերանց շղթան։ Հին եկեղեցական պատմութեանց մէջ Աշխարհ Խաղտեաց անուանած են այս գաւառը։ Հին Սամսոնը բարձր դիրքի մը վրայ աւերակ է դարձած, և իր բերդի շէնքերու հիմերը և պատերը միայն կը տեսնեն այցելուք։ Հոն՝ ուր երբեմն մարդկային հերոսները մեծամեծ քաջութիւն գործած են. ուր արիւնները հոսեցուցած քար քարի վրայ և դիակ դիակի վրայ շարելով, այժմ խոտեր բուսած են, զորս կը կրծեն այծեր իրենց ուլերով, և թռչունք թուխս նստած՝ ձագերը հանելով, կը ծըրտէին ասոնք մարդկային գաղափարին վրայ, միւսները իրենց տոտիկներուն տակ կը կոխկռտէին մարդկային հին հանճարը....

Սամսոնը ունի իր մէջ պտղատու ծառեր. աւելի շատ են ձիթենիք։ Չեմ կրնար չյիշել իմ ասպնջական Ղազար Աղա Պօղոսեանը, Ակնայ Կամրկապէն, որոյ տանը հանգիստ, դրախտը զուարճալի, և իր սիրտը բարեօք լի՝ երախտապարտ կացուցին զիս։

Քաղաքական կառավարութիւնն է Միւթասարիֆութիւն. վիլայէթ Տրապիզոնի։ Եկեղեցի 1. Ս. Նիկողայոս. վարժարան 2. ուսանողք՝ մանկունք 56, աղջկունք 36։ Ծախք վարժարանաց 25000 ղուրուշ եկեղեցիէն, դրամագըլխոց տոկոսէն և հանգանակութենէն։ Թիւ Հայոց 649. Կաթոլիկ և Բողոքական Հայք 111։ Յոյնք 342։ Թուրքք 5670։

## ՊԱՖՐԱՅ ՔԱՂԱՔ

Անձամբ չկրնալով այցելել այս քաղաքը, Սեբաստացի Առաքելեան Գաբրիէլ էֆ. յանձն առաւ իմ կողմանէս երթալ, որոյ գրած մէկ նամակէն տեղեկութիւնները կը դնեմ հոս :

Վիճակագրութեան վրայ խօսելէն զկնի՝ կը յաւելու. « . . . Տեղւոյս դպրոցին վիճակը խեղճ գտայ. գծուծ տեղ մը, լայն շալվարով և բոկոտն դասատուի մը քով՝ աղտոտ տախտակամածի վրայ ծնկաչոք շարուած հարիւրի մօտ երկու սեռէ խառն աշակերտներ նոյնպէս աղտոտ վարտիքներով, բոկոտն և գլխիբաց, դէմքէրնին և ոտքերնին կարծես տարիներէ 'ի վեր ջուր չտեսած. ասոնց ողորմելի վիճակը մեր ազգի ներկայ կացութիւնը միտքս բերաւ, և արցունքներ աչ- կունքս կոխեցին :

« Դպրոցին մէջը հասարակ ընթերցումէ և գրէ զատ՝ ուրիշ ուսմունք չկայ. ասկէ առաջ մի քանի դասատուներ գացած են հոն, բայց և ոչ հետք մը ձգած են անդ. Պաֆրայի պէս անմշակ և անհոգ թողուած տեղ մը չէի տեսած բնաւ :

« Թաղ. խորհուրդը հինգ տարիէ 'ի վեր ցրուած է եղեր, և ազգին գործերը ըստ դիպաց կը կատարուէին: Եկեղեցին մօտ 800 ոսկիի դրամագլուխ մը ունի, որ այլ և այլ ան-

ձանց քով շահու դրուած է ․ բայց ոչ շահը վճարող կայ և ոչ մայր գումարը ։ Տեղւոյն երեւելիները և թաղ․ խորհրդոյ անդամները բռնած են այս սատակը ․ Ժողովրդեան հասարակ մասը զայրութէն յուզուած էր նոցա դէմը , և դպրոցին ու եկեղեցւոյն անխնամ թողուելու պատճառները ասոր կու տային ։ Հոս յիշեմ որ բաւական վայելուչ եկեղեցի մը ունին ։

« Հակառակ որ աշխատել սկսեր էր յուսատի և զարմանալի գործունէութիւն ցոյց տըւի , ժողովրդեան ինձ ցոյց տուած համակրութիւնը օգնութեան առնելով ։ շատ անգամ գումարումներ ըրի , խօսեցայ , քաջալերեցի , և եկեղեցւոյն մէջ հաւաքուած ժողովրդեան հաւանութեամբ և ստորագրութեամբ թաղ․ խորհուրդը վերակազմեցի ․ նաև ընթերցասիրաց ընկերութիւնը կազմակերպեցի ։ Ուրիշ տեղ դժուարութիւն կը ցուցընեն ազգային գործերու խառնուիլ , հոս երիտասարդները բուռն զօրութեամբ ճիգ կ՚ընէին ընթերցասիրաց ընկերութեան գործադիր անդամ ըլլալ ․ տեսնելու բան էր երիտասարդութեան հրաւէր կարդացած ատենը՝ այն խեղճ գիւղացի տղայոց՝ ժողովըրդենէն բաժնուելով դողդոջուն ձեռքով գալ ստորագրելնին , որովհետև շարունակ իրենց բարեաց համար կը խօսէի ․ ճանապարհին վրայ , տուներուն մէջ երախտագէտ շարժումներով զիս կը շնորհաւորէին ։ Ժողովըր-

դեան՝ աղջկանց և մանչ տղայոց դպրոցնե-
րու համար ունեցած եռանդը քաջալերական
դտայ․ վերջապէս գործը իրենց ձեռքով
կարգադրելու համար ամեն հարկաւոր սկըզ-
բունքները ճանչցուցի․․․։

« Պաֆրայի հողը խիստ զօրաւոր է․ բիւ-
րաւոր կենդանիներ կ՚արածին հոն լեռներու
և դաշտերու մէջ․ բնակչաց հարստութիւնն
ալ կենդանիներն և ծխախոտն է։ Ջէրքէզք
անհաւասարակ գողութեան և աւազակութեան
կը պարապին, ուստի և քրիստոնէից ձեռքէն
կենդանիները միշտ կը յափշտակուին․ տե-
ղական կառավարութիւնը անկարող է և կամք
չըներ չարեաց առաջքն առնուլ․ մինչև իսկ
երթևեկութիւնը վտանգաւոր դարձած է
աւազակներու վախէն։

« Պաֆրայի ժողովուրդը զօրաւոր է, բայց
կրթութենէ ու լուսաւորութենէ զուրկ։ Յոյնք
երկսեռ դպրոցներ ունին, և քիչ շատ հոգ
կը տանին․ Հայք և Տաճիկք կրթութեամբ
իրարմէ չեն զանազանիր։

« Այս գետը քաղաքին հիւսիսային կող-
մէն կռնակը ծեծելով կ՚անցնի, արեւմուտ-
քէն արեւելք կը հոսի, ճամբուն վրայ բոլոր
գետերը ընդունելով կը մեծնայ, կը լայննայ․
Պաֆրայի առջեւ կամուրջը քանի մը տեղաց
միջակտուր ըրած տարած է․ ընդարձակ տա-
րածութիւն մը ունի, մէկ կողմէն միւս կողմը
լաւ հրացան մը հազիւ կրնայ գնտակ հաս-
ցնել կամ չկրնար․ հասակաւոր մարդ մը

միւս եզերքին վրայ տղայի՛ մը մեծութեամբ կ՚երեւնար ։ Գետը պղտոր և սրընթացութեամբը սպառնական երեւոյթ մը ունէր ․ տասնապէ կղզիներ կան իր սրտին վրայ ցան և ցիր ․ եթէ երկու եզերքը հաստատուն թումբերով ամրուին , նեղնան , թէ՛ քաղաքը վըտանգէ կ՚ազատի և թէ՛ նաւարկութիւն կըրնայ ըլլալ ։ 15 մղոն անդին Ջրվէժ մ՚ալ ունի ։

« Այս երկիրը շատ կարեւորութիւն ունի և հարստութեան աղբիւր մը կրնայ ըլլալ ․ պէտք է կառավարութիւնը ասոր յարգը գիտնայ ․ պէտք է մասնաւոր ուշադրութիւն դրուի այս երկրին ։

« Իմ ճամբորդութենէս հասկըցուեցաւ որ եթէ Սամսոն մայր մի է , ազգային տեսակէտով կ՚ըսեմ, Պաֆրան նորա ստինքներէն կախուած մանուկ մի է , որ հոգ տարուելու պէտք ունի ․ ․ ․ ։ »

Քաղ․ կառավար ․ Գայմագամ․ Սամսոնի Միւթասարրիֆութեան ներքեւ ։ Եկեղեցի Հայոց 1․ Ս․ Կարապետ ։ Վարժարան 1 ։ Ծախք վարժարանին Եկեղեցիէն 10000 ղուրուշ ։ Թիւ Հայոց 794 ։ Ուսանողք՝ մանկունք 81՝, աղջկունք 17 ։ Բողոք ․ և կաթող․ Հայք՝ 27 ։ Մողագործ Հայք՝ 290 ։

Պաֆրայի հայաբնակ գիւղեր ․

Ալաչամ․ Թիւ Հայոց 8 ։

Գուլչալար․ » » 86 ։

---

## ՍԻՆՈՊ ՔԱՂԱՔ

Քաղ. կառավ. Գայիմագամ. վիլայէթ Գասթամոնի: Եկեղեցի 1. աւէր: Թիւ Հայոց 57: Յոյնք . . . : Թուրքք . . . :

Սինոպի քով խուլուլի գեղերը: Եկեղեցի 2. Ս. Աստուածածին և Ս. Նշան: Ծաղկոց 2: Ուսանողք 60 մանկունք: Ծախք վարժ. 1200 ղուրուշ հանգանակութեամբ: Թիւ Հայոց 712:

— . Վերոյգրեալ տեղեկութիւնը խուլլուշցի Հայերէն քաղեցի 'ի Սամսոն:

Մայիս 9. Սամսոնէն մեկնեցայ: Քաղաքէն քառորդ ժամ հեռու մեր ձախ կողմը թողլով Գատի գեղը Յունաց, որ գեղեցիկ շէնքեր և ծովահայեաց դիրք մը ունի: Յառաջանալով Մախմուր տաղի լեռնէն՝ կ'անցնինք անտառներու միջէն, և ցեխոտ, ջրոտ, աւրուած ուղիէ. երկիւղալից է միանգամայն, այլ կարի ակնապարար և զուարճալի անտառաց գարունը. ծառերը բացած են իրենց տերեւները. առուակները զառ 'ի վայր կը խոխոջեն, և թռչնոց երամը կը դայլայլէ: Այս լերան վրայ տեղ տեղ խաներ կան շինուած՝ գերանէ որմերով: 6 ժամէն հասանք Ձախայի խաները:

Ձախայի՝ գետոյն անունն է, որոյ երկու եզերքը շինուած են խաներ: Չէրքէզներ կը

վխտային հոս, և արհաւիրք կը թագաւորէր։ Մենք իջեւանեցանք կեսարացի Կարապետ աղայի խանը։ Երեկոյեան արեւուն, մայիս ամսուն, սաղարթալից մեծ ծառի մը հովանեաց տակ, դալար կանանչներու վրայ գետեզերքը ընկողմնած էինք. այծեր ու կովերը իրենց ձագերէն քիչ մը հեռի կը նայէին հոն. ձիունք կը կայտռէին ջրին եզը, զուարճութիւնը կատարեալ էր։ Յանկարծ աղաղակ և ամբոխ մը. հոն բերին ձգեցին Սեւաստու Բրգնիկ գեղացի Հայ ջորեպան մը, որոյ ձեռքը սպառու սպառու կտրտուած էր. թրքուհի մը՝ որ կուլար, և կանաչ կապած թուրք մը՝ որ վա՜յ վա՜յ կը կանչէր։ Ասոնք մեր անցած Մախմուր լերան գոհերն էին, որոց վրայ յարձակեր էին աւազակներ, և ջորեպանէն երեք ջորի ու 6000 ղուրուշ ստակը, թրքուհիէն՝ որ այրի մ'էր, իր մեռած էրկան գոյքերու գինը 1000 ղուրուշ ստակը, և միւսէն ձին ու 400 ղուրուշը յափշտակած էին, մեզմէ քանի մը ժամ յառաջ։ Սովորական և անպակաս է եղեր գըրեթէ ամեն օր այս ճանապարհին վրայ այս տեսակ դէպքեր։

Մայիս 10։ Զախայլիէն մեկնեցանք, 2 ժամէն հասնելով Գավախ կամ Գուռաք, այս միջոցն է Հաճըլար տաղի լեռը, ջրաւէտ և անտառուտ. Ծառոց արմատներուն քով բուսած բազմատեսակ բոյսեր և ծաղիկներ՝ անուշ հոտեր և զմայլելի գեղեցկութիւն մը կը

սփռեն անցքին. հոս տեսայ ձկնանոր ծաղի-
կը, Մշոյ լերանց թագուհին, որոյ տեսքը
նման է բազմաթերթի բոսոր վարդին, և
յափշտակուեցայ Տարօնոյ սարերը, ուր շատ
գարուններ ողջունած էի պայծառ և սխա-
փուկ ծաղիկներով: Հոս ցիր և ցան բնակու-
թիւններ կան Չերքէզներու. և թէպէտ ան-
տառները մաքրուած են արջերէ և գազան-
ներէ, բայց երկոտանիները անոնց տեղը
բռնած են. խիստ երկիւղով կ'անցնի ասկէ
կարաւանը: Կ'երեւան տեղ տեղ ալ Թրքաց
և Յունաց գեղերը, ասոնք ալ Չերքէզու-
թիւն ընողներ են:

Գաւառ՝ փոքրիկ հովտի մը բերան, հին
բերդով մը, ջուրի մը եզերքը շինուած ա-
ւան մ'է, ուր Միւտիր կը նստի: Խաներ,
մանր վաճառքի, երկաթագործի, դայտառի,
դերձակի և վարսավիրայի խանութներ կան,
ու սրճարաններ. Հայ բնակիչք՝ 52 անձինք,
յոյնք 48, Թուրք 340: Հայք խանութպան
և արուեստաւոր են, կան նաև մօտակայ-
ներէն եկած Հայեր, որք տուն չունին հոս:
Ազգապետ անուն կը կրէ Կեսարիոյ Կէմէրէկ-
ցի Նազար աղան. ոչ եկեղեցի ունին, ոչ
քահանայ և ոչ վարժարան: Գաւագէն 'ի
Գարատաղ 3 ժամ գնացինք. Աք սու տէ-
րէսի ձորէն անցանք, մացառոտ, ջրոտ,
զուարճալի, ուր կան գիւղորայք Յունաց,
Թրքաց և Չերքէզաց:

Մայիս 11: Գարատաղի խաներէն կա-

նուխ մեկնիլ որոշած էինք, որպէս զի նոյն օրը Մարզուան քաղաքը հասնէինք։ Արդէն իրիկուընէ ալ ապահով չէր տեղերնիս․ Չէրքէզներ, Ցոյներ, Թուրքերը, որք այն կողմի բնակիչներն էին, և ոչ խիք իրարմէ կը զանազանէին․ ամենքն ալ մէկ տիպ ունէին, սոսկականք․ ամենքն ալ մէկ անուն կը կրէին, գող։ Դի՛ր ասոնց վրայ նաև երամ երամ նոր սեւ թուղթ քաշած գինուորները, որ գաւառներէն կու գային և ասոնց փախըստականները (ֆիրարները), որք թէ ցերեկները անտառներու մէջը, և գիշերները չէներու մէջ զարնելու և յափշտակելու համար կը շրջէին․ և որք առջի իրիկուընէ ելեէջ կ'ընէին մեր իջեւանները․ խանջիներն անգամ աւարողաց ընկերներէն էին։ Ասոնք գիտնալով՝ կարաւանը կարի զգուշութիւններ ըրած էր գիշերը, բայց և այնպէս խանի կռնակէն երկու գերանը հաներ և հակ մը կարմիր ներկած ընտիր մանած տարեր էին, որ կ'արժէր 24 օսմանեան ոսկի։ Կանխելու հակառակ յապաղեցաւ մեր չուն, և կարաւանը կորուստին զբաղեցաւ, մեք մեր ոստիկանով ընթացանք։ Գարատաղ լեռնէն կ'անցնինք, մացառներ և անտառներ են մեր երկու կողմն․ գիւղորայք Թրքաց և Չէրքէզաց․ և մեր առջեւն ու ետեւը երկիւղ։ Երկիւղ կը կրկնէ և կը յեղյեղէ ոստիկանն։— Բայց ես ձեզի հետ եմ՝, կ'ըսէ, անհոգ կացէք։ — Ի՞նչ կրնաս ընել եթէ աւազակներ

դան . — Կարծէք պիտի դիմադրե՞մ անոնց , ինչո՞վ և ի՞նչպէս կրնամ . կամ ոստիկան լինելէս պիտի ակնածե՞ն . ոչ , ոչ . Նշանացի մը կ'ընեմ , և անոնք կը հասկընան — Է՛ մենք ալ հասկըցանք , դէ՛ քալէ . . . :

Լեռնէն 'ի վայր գեղեցիկ ձորահովիտ մը մէջ կ'իջնանք , ուր Թրքաց գեղեր կան . Թէրսախան (Խոտոր ջուր) գետակ մը պտոյտ կ'ընէ հովտին մէջը , և ուղեւորը յաճախ անցուդարձ կ'ընէ այդ ջրէն՝ ձորոյն դիրքին համեմատ եզանշոփիկ ձեւով ներս ու դուրս ըլտուտելով : կակուղ և բարձրացած խոտերուն վրայ , Թփոց հովերը , ջրոյն եզրերը փչեւանեցանք հանգչելու , ուր ձիունք մէկ մէկս կը խայտան , և ճիկ միկ , ճինինի ընելով զմեզ ծաղրելով կը սուզանին և կը սրանան ընդվեր և ընդ վայր : Կրակ մը վառած ենք . մեր ուղեկիցներէն մին նեւ սարեկ մը որսաց , կը խորովենք , բայց այս կրակետղի վրայ ո՞րքան համով պիտի ըլլայր ձուկն . ահա կու գան Թրքաց լամուկները գոմէշներու նախիրով . Կը լեցուին ջուրը , պստիկ հօղադները մերկուց կպած են գոմէշներու կռնակը . գոմէշները փռնչելով մըռ մըռ ձայնելով կը Թաւալին 'ի ջուր . Հօղադները կը չփեն անոնց խոնձեւալ պարանոցը , քրտնած ճակատն ու պոչատակը . Կ'աղաչենք , սատակ ու շաքար կու տանք լամուկներուն , որք կը հանին քանի մը ձուկ բռնել , անմիջապէս կրակին վրայ կը ձգենք : Ցայնկոյս գետոյն գեղին ոչխարները

կը կթուէին․ Ջերմ ու թարմ կաթն բերել կուտանք, և այսպէս համադամ կեր մը կ՚ուտենք, որոյ համը միայն անոնք գիտեն, որ այսպիսի երջանիկ պատեհի մը պատահեր են։

Երեք ժամ վայելեցինք այս քաղցրութիւնը, և ելանք․ կը հանդիպէինք ուղտերու և էշերու բեռնարարձ կարաւաններուն։ Ուղտերը իրենց երկայն ու բարակ պարանոցները յայս և յայն տատանելով հըռ ու մըռ ընելով, որոճալով, և էշերը իրենց կարճ ոտքերը արագ արագ ճօճելով, միաձայն զանազանութեանց օրէրա մը կը հանդիսացնեն, որով կարծես Ապողոնի քնարի նախանձը կը շարժեն։ Ի՞նչ էր արդեօք ուղտուց և իշոց այս ցոյցերը, բողո՞ք մի էր մարդոց բռնութեանց ու բեռնաբարձութեանց դէմ, թէ հաճոյք մը՝ մայիսին և այն վայրաց դալարներէն ու ծաղիկներէն, զորս առատ սփռած էր գարունը ձորոյս մէջը։

Ղավզայ աւանը՝ մեր ճանապարհէն քիչ մը վեր յաջակողմն կ՚երեւի, ուր հանքային ջրոց բաղանիքներ կան, հիւանդներ և զբօսաշրջիկներ կը յաճախեն հոն․ շէնքով շնորհքով տուներ և խաներ կան։ Յանկարծ սեւ ամպեր սքօղեցին մեր պայծառ արևը, որոտմունք և կայծակունք արագ արագ կը յաջորդեն իրարու․ մեր երկու կողմը լեռներ են, և կիրճի միջէն Թէրսախանը կը խաղայ․ Ջրային անձրեւ մը փոթորիկով մէկտեղ բռնեց մեր վրայ, Թափեցաւ, ինկաւ

մեր ճաշակած քաղցրութիւնը։ —Է՜հ, այսպէս նախանձոտ է երկինք հողածիններուն համար։ Երեկոյեան ժամ 12ին հասանք Եմպէլօղլուխանը, բայց խիստ անհանգիստ անցուցինք այս գիշերը. պատուհանները բաց, և շէնքը քայքայեալ, Չէրքէզներն ալ խմբովին ելևէջ կ'ընէին։

Մայիս 12. գադարած էր մրրիկն ու անձրեւ, պայծառ արեւով մը ճամբայ ելանք. այս խանէն մինչև Մարզուան 2 1/2 ժամ է։ Ահա կը տարածի մեր առջեւը Մարզուանու դաշտը իր ընդարձակութեամբ և գեղեցկութեամբ. հեռուանց կ'երեւի մեզ Մարզուան քաղաքն իր այգեստաններով. դաշտի արտորայք մշակեալ են և կանանչներով գեղեցկացեալ։

Այգեստանեայց միջէն անցնելով՝ բուն քաղաքը կամ թաղերը հասանք, որ բացակայ շինուած են այգիներէն. դիրքը յենած է լեռան մը և քիչ մը բարձր դաշտէն. օդը խիստ առողջարար, ջրերն առատ և պաղորակ։ Իջեւանեցանք Առաջնորդարանը։ Տեղով և շէնքով նշանաւոր է Հայոց եկեղեցին ու վարժարանը։ Առաջինը՝ Ցակոբոս Պատրիարքի շինել տուածը, երկրորդն՝ Գէորգ եպիսկոպոսին, իրենց Առաջնորդութեան օրով, չափով և ձեւով ընդարձակ ու վայելուչ. եկեղեցին՝ Պօլսոյ Մայր եկեղեցւոյն նման է, վարժարանն ալ իր արեւելքը պարտէզ մը ունի։ Աւելի նշանաւոր է Ամերիկացի միսիո-

նաքաց Նոր շինել տուած Աստուածաբանութեան՝ և աղջկանց վարժարանները, ուսման ու բարեկարգութեան մասին համբաւաւոր։ Կայ և մի տաճար ու վարժարան կաթոլիկ Հայոց։ Քաղաքի մէջն է Համարակաց մեծ ժամացոյցի աշտարակն, որոյ զանգի ձայն բնակչաց ամեն կողմը կը հասնի։

Հայք ջերմեռանդ են իրենց եկեղեցւոյն. ամեն կիրակի առաւօտ և երեկոյ քարոզ մտիկ ընել կ'ուզեն, և ամեն օր եկեղեցի կու գան. բազմութիւն կը լեցնէ բուն տաճարը և անոր աջ ու ձախ կողմի գաւիթները. կիրակի ցերեկներն ալ Ս. Գիրք կը բացատրէր եկեղեցւոյ մէջ՝ Եդեսեան Արքադանէն Նոր ձեռնադրուած Խաղխշեցի Մուշեղ վարդապետ Հայկունին՝ բողոքականաց դրութեան հետեւելով. սորա ձեռքի տակ ընկերութիւն մի կայ պատանեկաց և երիտասարդաց, Պաշտպան կրօնի և ազգասիրեան անունով. յառաջադէմներ, պատանիք, ճառեր կ'արտասանեն բերնով կամ գրով, բարոյականի և ազգ. պատմութեան վրայ. մէջ ընդ մէջ ալ երգեր երգելով։ Ես չկրցայ հաւանիլ ոչ այս ընկերութեան խօշոր ու անպատշաճ անուան, ոչ վարդապետին և ոչ աշակերտաց բանախօսութեանց ձեւոյն. Թէպէտ կ'ըսէին. «Մենք այս միջոցով առաջքը կ'առնունք մեր ժողովրդեան երկու սեռին ալ, որ կիրակի օրերը կ'երթան բողոքականաց վարժարանը բան լսելու։ Աղէկ, բայց դեռ կ'երթային և այլ-

տի երթան անոնք որ ոչ ձեր ըսածէն եւ ոչ բողոքականաց քարոզածէն բան մը չեն հասկանար, եւ անոնք՝ որ անդին ծուռ շիտակ բան մը կը հասկընան, իսկ ասդին՝ երբէք :

Թէպէտ զանգակ մի եւ նոյն ժամուն մի եւ նոյն ձայնիւ կը հնչէ երկու կողմանէ, բայց մի եւ նոյն բաներ չեն, եւ մի եւ նոյն արդիւնքը չունին : Մեր պատանեակները կը խօսէին իրենցմէ վեր եւ անծանօթ իմաստասիրութիւնները : Խօսք մը՝ երբ խօսողն չհասկընայ, լսողին ի՞նչպէս հասկըցընէ : Այն ինչ բողոքականաց խօսողները երէց են կամ քարոզիչ, եւ յատուկ ուսումն ունին ու պատրաստութիւն կ'ընեն խօսելու նիւթոյն վրայ : Պաշտպան լինելէն աւելի՝ ես կը փափաքէի պաշտել գիտնային կրօնքն ու ազգութիւնք. լաւագոյն էր փոխանակ բանիւ եւ ձեւով նմանելու՝ հոգւով եւ գործքով գերազանցէին բողոքականներէն. աւելի ոյժ տալով դաստիարակութեան եւ լուսաւորութեան : Վարդապետն ալ միայն ժամերգութեան ժամուն քարոզութիւն ընէր, բայց շինարար եւ խաղաղարար քարոզութիւն, յայնժամ պէտք չէր մնար մեր կողմէն եւ մեր ուղղափառեան պաշտպանութիւնը սպասել այդ փոքրիկներէն, խակ պտուղներէն, որոց զգացումն ալ կը վառի ու կը բորբոքուի առեւլութեամբ :

Արդէն այս քաղաքը բողոքականութիւնն ամեն տեղերէ աւելի ճարակ գտած է. արտաքուստ աչօք կը նայի մարդ այս Հայը

և այն Հայը, այս եղբայր և այն եղբայրը, այս զաւակը և այն ծնողքը, քացախած իրարու դէմ, արդէն միտարկացած քաղաքական Հայն ալ, բուն Հայն ալ։ Աւա՜ղ, չատ քիչեր առեալ Հայ Թէքէարանեայ . . . այս մասին երկու կողմն ալ մեղադրելի են։ Միթէ Պոլիս կամ ուրիշ քաղաքներ քաղաքականք չկա՞ն։ Այսպէս Տարգուանցի մեր ազգայինք՝ մանաւանդ կանայք, որ աւելի ջերմեռանդ էին ունկնդրութեան, կրօնական մթին երևոյթներով և երևակայական գաղափարներով պաշարեալ տեսայ. հրապարակախօսութեանց և առանձնախօսութեանցս մէջը յորդորեցի զիրենք՝ ժամանակիս ոգին ճանչնալ, քաղաքակրթութեան հետևիլ, ազգային և գիտութեան գաղափարաց յարիլ, սիրել Քրիստոս և անոր սուրբ Եկեղեցին իրենց առաքինութեամբ փառաւորել, հաւատոյ պտուղներով։ Խրախուսեցի այդ ընկերութիւնը, որպէս զի բերել տան և ընթեռնուն ուսանելով Ազգաց պատմութիւնները, պարբերական հանդէսներ և լրագիրները, և արուեստից ու գիտութեանց գիրքերը, նախնեաց մատենագրութիւնները, եւ, եւ. ու ընթերցարան մը բանան հասարակաց համար, որոյ օգուտը մեծ է։

Ծանրապէս գայթակղեալ և գրգռեալ էին Եղեսեան Սրբազանին դէմ. կ՚ըսէին. Խռովասէր է, ամէն նուիրական իրաց վրայ ՚ի դէպս և յանդէպս խեղկատակել իրեն հա-

և երբեմն մեծ քանակութեամբ ձիւն կը տանին կը վաճառեն եղեր. բայց ասոնք գործելու համար դերձանները Եւրոպայէն կը մանուին, կը ներկուին և կը բերուին, որ բաւական մեծ գումար մը կը տանի երկրէն։ Տեղական պիտոյից համար ամեն տեսակ արուեստներ կան քաղաքիս մէջ. աւելի նշանաւոր է պղնձագործաց արուեստը։ Բոլոր արուեստաւորք Հայերն են։

Մարզուանցիք շատ առատ գինի կը հանեն, և աղէկ տեսակէն, բայց վաճառելու սովորութիւնք չունին։ ամեն տուն իր յատուկ գինետունն ունի ներքնայարկ, ուր զետեղուած են մեծամեծ կարասներ; և անպակաս կը մատակարարեն տարուան ամեն օրերը՝ սեղանի բաժակներ ու սափորները, ուր խորովածն աժան է և անուանի իր համով, արդէն օդն ու ջուրն ալ ընտիր, ուստի Մարզուանցիք առհասարակ կարմիր երես, կայտառ և զուարթ անձինք են։

Բնակչաց կենցաղավարութիւնք խորին ասիական է. կանայք պինդ պինդ փաթաթուած գլխէն մինչև ոտքը, բազմաց ոտները բոբիկ. բոբիկ են և արք. կանայք՝ մարդոց հետ չեն խօսիր, մարդէ կը խուսեն, և փողոցը եղած ատեն ճերմակ սաւան մը կամ կիսաքօղ մը կը կրեն, այնպէս որ աչքերնին ալ ծածկէ. շրջազգեստ կանանց և կարճազգեստ արանց կարի քիչ կայ։ Տուներու մէջ աթոռ, գրասեղան ևն չեն գործածեր, այլ

բազմոցներու վրայ կը բազմին, և պղնձէ սինիներու շուրջը կը բոլորին 'ի հերակուր։ Առաջնորդարանն իսկ գրասեղան և աթոռ չը կար. ամեն ոք իր գիրը ծունկի վրայ կը գրէ։ Հիւրասիրութիւն շատ ունին. մեզ համար ամեն օր քանի մը անգամ քանի տուներէ բազմատեսակ կերակուրներ, և կաթ և սեր, և կարագ և մեղր, և սափոր սափոր գինիներ կը ղրկուէին. ղրկողներն ալ ներկայ կը գըտնուէին հացկերոյթին։ Այս սովորութիւն էր գրեթէ հայաբնակ ամեն գաւառները։

Եկեղեցւոյ և վարժարանին յատկացեալ կալուածները՝ որոց մեծագոյն մասն ներկայ թաղ. Խորհրդոյ գովելի ջանից արդիւնքն է, հետեւեալներն են. 16 խանութէ կազմեալ պէզէստուն մը և 28 այլ խանութ և 5 տուն Մարզուանի մէջ, ու խան մը Գավզայի մէջ։

Դիտողութիւն պէտք է ընել, որ սոյն կալուածներուն՝ ազգային անհատներէն ոմանց անուան վրայ կալուածագիր չինուած են, և ասոնք՝ ապահովագիր անգամ տուած չեն ազգին, թէ և իրենք լինին հաւատարիմ անձինք։ Այս կերպին շատ տեղեր հանդիպեցայ։ Պատրիարքարանի Տնտես. Խորհրդոյ գործն է կարծեմ ապահովել Ազգային սեպհականութիւնները։

Մարզուան քաղաք. կառավարութիւն Գայմագամութիւն է՝ Ամասիոյ Միւթասարիֆութեան ներքեւ։ Եկեղեցի 1. Ս. Աստուածածին։ Վարժարան 1. Ս. Սահակեան. Ծախք

վարժարանի 22620 ղուրուշ ։ Ուսանողք 328 մանկունք , 30 աղջկունք (1) ։ Թիւ Հայոց 6496 , որոցմէ 481 Մաղագործ (բօշա) են , և 481 Բողոքական ու Կաթոլիկ ։ Տունք 58 ։ Թուրքք 6874 ։

Հայաբնակութիւնք և գիւղք Մարզուանու ։

ՂԱՎԶԱՑ Աւան ․ Թիւ Հայոց 75 ։

ՍԻՄ—ՀԱՃԻ ԳԵՂ․ Աւան ․ Եկեղեցի 1․ Ս․ Յակոբ ։ Վարժարան 2․ Զարթուեան և Հռիփսիմեան ։ Ծախք վարժարանաց 4000 ղուրուշ ։ Ուսանողք՝ 160 մանկունք , 60 աղջկունք ։ Թիւ Հայոց 2317 , որոցմէ 62 Բողոքական են ։ Թուրքք 6765 ։

ԿԻՒՄԻՒՇԻ ․ Իբր Աւան , մօտ Համի գեղին , ուր արծաթի հանք կը բանի ։ Թիւ Հայոց 107 , որոցմէ 25 Բողոքական են ։ Տունք 1800 ։ Թուրքք 2200 ։

ԱԽԼԱՏ ՀԱՃԻ ԳԵՂ․ Աւան ։ Եկեղեցի 1․ Ս․ Գէորգ ։ Վարժարան 1 ։ Ծախք վարժարանի 1000 ղուրուշ ։ Ուսանողք 10 մանկունք , 5 աղջկունք ։ Թիւ Հայոց 197 , որոցմէ 80 Բողոքական են ։ Թուրքք 800 ։

ԵԷՆԻՃԷ Գեղ ։ Եկեղեցի 1․ Ս․ Սարգիս ։ Վարժարան 1 ։ Ծախք վարժարանի 1000 ղուրուշ ։ Ուսանողք 15 մանկունք , 8 աղջկունք ։ Թիւ Հայոց 116 ։

---

1 Բողոքական և Կաթոլիկ ազգայնոց ուսանողաց թիւերը նշանակուած չեն մեր տեղեկագրութեան մէջ

ԼԻՃ Գիւղ. Տաճկերէն Գէօլ կամ Գէօլ ճէօյ, ուր վանքն է եկեղեցին. Վարժարան 1. Ծախք վարժարանի 800 ղուրուշ. Ուսանողք 12 մանկունք, 8 աղջկունք. Թիւ Հայոց 92, որոցմէ 10 Բողոքական են. Թուրքք 71.

ԼԱԹԻԿ Գիւղ. Եկեղեցի 1. Ս. Լուսաւորիչ. Վարժարան 1. Ծախք վարժարանին 800 ղուրուշ. Ուսանողք 18 մանկունք, 7 աղջկունք. Թիւ Հայոց 180. Թուրքք 1200.

ԵԱՐԸՄՃԷ և ԿԷՉԷԼԻ մանր գիւղեր, մօտ Լաթիկին. Թիւ Հայոց 50. Յոյնք 100.

ՎԷԶԻՐ ՔԷՕՓՐԻԻ Աւան. Եկեղեցի 1. Ս. Գէորգ. Վարժարան 1. Ս. Սահակեան. Ծախք վարժարանի 2000 ղուրուշ. Ուսանողք 50 մանկունք. Թիւ Հայոց 1280, որոցմէ 125 Բողոքական են, և 280 Մաղաղորդք. Յոյնք գեղերով հանդերձ 776. Թուրքք՝ գեղերով հանդերձ 23082.

Վերոյգրեալ գեղեր և աւանները՝ Մարզուանու և Ամասիոյ միացեալ Առաջնորդութեան թեմերն են, նոյն Առաջնորդութեան թեմն են նաև Սամսոնի, Պաֆրայի և Սինոպի և անոնց գիւղօրէից Հայերը, և Գաստամօնի, Պօլուի, ևն. Առաջնորդը Մարզուանու մերձ Զարխաջեան Ս. Աստուածածնի վանքը կը նստի. ուստի մեք իբր կեդրոն բռնելով զայն՝ հոս նշանակեցինք այս գեղերը. Եւ որովհետև վիճակիս Հայոց թիւերը ամփոփչագրելու հա-

մար պէտք էր Գասթամոնի և իր մերձակայից Հայ բնակիչքն ևս գրէինք , Նամակ գրեցինք յիշեալ քաղաքի Թաղականաց, և վիճակագրութեան հարցումներ ուղղեցինք , որ հասցընէին մեզ յԱմասիա . դժբաղդաբար չստացանք ։

Ոչ վանքը և ոչ Ամասիոյ Առաջնորդարանը չունէին ցուցակ մը , ինչպէս չունէին նաև կանոնաւոր արձանագրութիւններ և տումարներ , ուստի միայն պակաս այս կարեւոր մասն ։ Վէզիր Քէօփրիւէն մինչև Գասթամոնի կը տարածուին Հայ մաղագործաց բնակութիւնները , և իրենց կեդրոն կը համարուի Թօյպասս ։ Ասոնք գարնանէ մինչև ձմեռն կը սփռուին գեղեր և քաղաքները մինչև Սեւաստ . միայն ձմեռը իրենց խրճիթները կը քաշուին ։ Մաքուր Հայերէն կը խօսին . ջերմեռանդ են եկեղեցեաց , եկեղեցականաց և եկեղեցւոյ օրինաց . Ս. Երուսաղէմ ուխտի երթալ և մըղտըսի լինելը իրենց բարեպաշտութեան լրումն է . կարդալ գրել չգիտեն , բայց բաւական հարուստ են ։ Զեն նմանիր այն աղտեղի և անարգ գնչուներուն , որ Հայ չեն . շնորհքով հագուստ ու պարուստ ունեցողներ կան . բայց Հայերը ասոնցմէ աղջիկ չեն առնուր ու տար. իրենք իրենց մէջ իբրև առանձին ցեղ մը կը մնան . ասոր համար անվերջանալի վէճեր ունին աղջիկ նշանելու , և մեծամեծ գումարներ կը մսխեն թէ՛ հոգեւոր և թէ՛ մար-

Յաւուր ատեանները ։ իրենց մեծ ընծայն, ինչպէս նաև օծիս ; խոշոր էշեր և ջորիներ են․ ատոնց ցեղէն եկեղեցական չեն ընծայուիր, չգիտեմ եկեղեցի՞ն խտրած է թէ իրենք զիրենք․․․ ։

Գոյպատու Մաղագործ Հայոց թիւը 6—7000 կը հաշուէին, 'ի բաց առեալ անոնք որ այլ և այլ քաղաքաց և գիւղից մէջ բնակութիւն հաստատած էին ։

## ՄԱՐԶՈՒԱՆՈՒ
## ԶԱՐԽԱՓԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ

Մայիս 16 ։ Քաղաքի Թաղ․ Խորհրդոյ Ատենապետը և անդամներէն քանի մը անձինք միատեղ առնելով գնացինք այս վանքը, որ Ամասիոյ ընդարձակ վիճակին մէջը միակ վանք է, ուր կը նստի Թէմական Առաջնորդ, հոս կը յաճախեն գրեթէ ամեն շաբթու ուխտաւորք Մարզուանէն և այլ թէմերէն, և որուն հռչակը մեծ է ոչ միայն իբրև հրաշալի սուրբ ուխտ մը, այլ և ճոխ, չէն և ընդարձակ հողատէր ։ Վանքը շինուած է դաշտավայրի մէջ, Լիճք գեղի մէկ անկիւնը, օդը ծանր է բաղդատմամբ Մարզուանին, ուստից 3 քառորդ ժամ հեռի է․ կը շրջապատեն վանքը իր գեղեցիկ և արգասաւոր արտորայք, որ 52 կտոր են, որոց հաստատուն կալուածագրեր կան եղեր ; բայց մեք անոնց օրինակները միայն տեսանք արձանագրութեան մը մէջ ։ Հո-

մը չուրջ. այս թաղը կը բաղկանայ տասն սենեակներէ, մէկ խոհանոցէ և մէկ սեղանատունէ. ունի նաև երկու սենեակով Առաջնորդարան մը վերին յարկը։ Այս թաղին մէջն էր թանգարանի սենեակ, յորում գըրատուն մը, այլ գրքերու վիճակը և սենեկի անկարգութիւնը աննկարագրելի էր։ Այս սենեկի դարաններու մէջը սնտուկով կը պահուէին եկեղեցական թանգ անօթներ և ըզգեստներ։ —

Այս ամեն շէնքերը հում աղիւսով և հողով շինուած են, դրեթէ բովանդակ շէնքը խարխալեալ. կարծես թէ երկար ատեն մարդ բնակած չլինէր հոս, այլ սակայն Եդեսեան Արքազանի Աթոռն էր սա, և Ն. Արքազնութենէն ձեռնադրուած Մամբրէ և Մուշեղ ուսումնական վարդապետներ այս վանքին միաբան էին, և 40 տարիէն աւելի միաբան։ Մազերով այլ ոչ երեսով ծերմակ՝ Յօհ. Վ. Մ. Յակոբ Քիրիշճեան անունով մէկը ամսականով կարգեալ էր տեսուչ՝ Ամասիոյ գաւառական վարչութենէն, և Մարզուանցի Քիրամիտճեան Յակոբ աղան՝ հոգաբարձու։ Թէպէտ ես չը կրցի ճշդիւ հասկընալ թէ տեսչի պաշտօնն ինչ էր, հոգաբարձութեանը ինչ, այլ կը թուէր թէ այս վերջինն վերին տեսչութիւնը կը վարէր։ Ասոնցմէ զատ կային 5 մշակ, 1 լուսարար, և 1 1/2 տնտես։

Տեսչի ձեռքի տակն էր իբր թէ ամեն ինչ. բայց ինքը գիտեր ու կ'ընէր ոչինչ։ Երբ

գրքերու ցանկն խնդրեցինք և կ՚ուզէինք հետազօտել ձեռագիր գրեանքն, հարկ չթողուց տեսուչն, ըսելով թէ՝ շատ գիրքեր պակսած են: Հարցուցինք թէ ի՞նչ և քանի՞ անասուններ ունի վանքս: Դրկեց երկու գեղացի և երկու մշակ կանչեց. հինգ հոգւով տասն ձեռօք հաշուեցի՛ն հաշուեցի՛ն, հազիւ գտան 6 գոմէշ, 15 կով ու եզն, 1 ձի և 1 էշ:

Ձեռք մը եպիսկոպոսական ընտիր զգեստ մարգարտայեա՝ Գուղտանձեանի յիշատակ, տեսչի հսկողութեան տակն էր. թագին մարգարիտները հաներ էին, և ինքն չէր իմացեր: Արդեօք ո՞վ էր հաներ փականքներու տակէն. ոգինե՞րը . . . : Մեր հարցափորձին ներկայ էր նաև Հոգաբարձուն. սակայն չէր հաճեր պատասխան տալ, և իւր խորհրդաւոր լռութիւնն՝ կամ արհամարհանք մի էր, կամ ինքն ալ տեղեկութիւն չունենալը կը նշանակէր, գուցէ վերջինն էր ստոյգ. վասն զի մեզի չափ ինքն ալ զարմանօք կը դիտէր ու կը հետազօտէր մասնաւորապէս եկեղեցւոյ զգեստներ և անօթները, որոց մէջ շատ մը արծաթէ և ոսկիէ խաչեր, սկիհներ, բուրվառներ, սաղաւարտներ, աւետարանի կողեր, խնկանոցներ, կանթեղներ, ջահաջաններ և գօտիներ նաև թանկագին թաւիշէ մարգարտայեա ու ոսկեթել զգեստ եպիսկոպոսական, և ճղլակ թագեր, եւն, կային:

Վանքիս Ս. Յաճարն քարաշէն է, կամարակապ, չորս սիւնի վրայ: Աւագ խորանն յա-

նուն Ս. Աստուածածնի է, Աջակողմեանը՝ Ս. Լուսաւորչին, և ձախակողմեանը՝ Ս. Նշանին։ Երկու փոքր մատուռ ալ ունի երկու կողմը՝ դռները եկեղեցւոյ մէջէն, մին՝ յանուն Անդրէաս Առաքելոյն, զոր հիմնուած կ՚աւանդեն նոյն Առաքեալէն, և այս նորոգեալ նորա անունով։ Հոս կը պահուի Աջ յիշեալ Ս. Առաքելոյն. իսկ միւսը՝ յանուն Ս. Կարապետի է։ Տաճարիս դրան կողմն է վերնատուն կանանց։

Եկեղեցւոյ Աթոռն՝ ուր Առաջնորդն կը բազմի, կռնակին վրայ խոշոր գրերով գրուած է. «Հնազանդ լերուք Առաջնորդաց ձերոց և հպատակ կացէք նոցա»։ Ժողովրդական պատուէր, որ քամակէն կ՚աւանդէ Առաջնորդն՝ և իր աչօք կ՚ընթեռնու ժողովուրդն։ Իսկ ո՞ւր պէտք էր գրել ուրեմն Առաջնորդին վերաբերեալը. «Արածեցէք որ ՚ի ձեզ հօտդ է Աստուծոյ. մի՛ զօշաքաղութեամբ, այլ յօժարութեամբ. մի՛ իբրև տիրելով վիճակացն, այլ լինել օրինակ հօտին...» (Պետր. Թղթ. Ա. Գլ. Ե. Համ. 2.). որպէս զի յամենայն ժամ ընթեռնուր և ՚ի միտ առնուր Առաջնորդն ալ իւր պաշտօնին պատուէրը։

Ս. Տաճարի դրան ճակատին վրայ քանդակեալ կայր յիշատակագիրս։

ա. Զար խափան վանքս Աստուածածնի,
ա. Նախահիմնեալն Անդրէի,

« Յաւազակաց այրեալ քակի,
« Մնայ յիսուն ամ ամայի.
« Ի Լինոպոնդեայ գաւառի
« ՅԱմասիոյ հուպ նահանգի,
« Ի Վեռիոյ արձակ դաշտի,
« Եւ 'ի գեղջն որ Լիճ ասի.
« Ի տեսչութեան արհւոյ դիտի,
« Տեառն Յօհաննու վարդապետի.
« Երբեմն Պօլսոյ Պատրիարքի,
« Գաղատացի մականուանողի.
« Այն որ գթածն է ողորմի,
« Շինման սորին հրաման լինի,
« Զգուշութեամբ սկսանի,
« Ի հիմանէ նոր նորոգի,
« Քաջ ծերունեաց վերակացուի,
« Յիշատակ մեծ յետ թողանի,
« Առատ տրովք իւր մինակի,
« Յոլով ջանիւք Հայկայ սեռի,
« Ի մեր Հայոց թուականի,
« Քսան և չորս յօբելինի . . . » :

Ս. Կարապետի մատրան առջեւ, բակին մէջն է յիշատակեալ Գաղատացի Յօհաննէս եպիսկոպոսին շիրիմը, և անոր քով՝ « Սիւնեաց Օրբէլեան տոհմէն, Ս. Էջմիածնի նուիրակ, և Կ. Պօլսոյ Պատրիարք Աբրահամ Եպիսկոպոսի » շիրիմն :

Վանքիս պարսպէն դուրս տնկուած կան շատ մը ուռի ծառեր, նորերը՝ Եղեսեան Արբազանի օրով. կան նաև կաղամախի և շատ մը ընկուզի ծառեր : Օդի ապականու-

թեան պատճառն է ոչ միայն վանքի դիրքը ․ այլ և մեծ լճի ջրոց երեսի և եզերաց մամուռներու նեխութեան հոտը , ներքին և արտաքին բակերուն և շրջապատին աղտոտութիւնները , չէնքերու անկանոնութիւնը , մանաւանդ միաբանից թաղին , որ օդ առնելու տեղ խիստ քիչ ունի , և սննդեան անկանոնութիւնն ու նուազութիւնը ։

Երկու այգի կայ վանքիս՝ Մարզուանու այգեստանեայց մէջը , մին՝ 3600 ոքթոյ կոճով , միւսը՝ 4000 , բայց առոնք կալուածագիր չունին ։ Հարիւրէն աւելի փեթակ ունին , մեղրն ու մոմն ընտիր ։

Կայ նաև ընդարձակ արօտատեղի մը (եայլա) սեպհական , վանքէն չորս ժամ հեռի Տավշան տաղին կամ Խաչին լեռը ․ արօտատեղւոյն շրջապատը $5\,^1/_2$ ժամ է ․ այժմ ձգուած երեսի վրայ , ուր այլք իրենց խաշինքը կը բուծանեն և տեղւոյն կը տիրանան ։ Խաչի լեռը՝ անտառոտ , ջրաւէտ և ծաղկաւէտ է ․ ուխտ և խորհուրդ ունեցողները յաճախ կ՚երթան հոն ․ ջրերու մէջ խաչեր կան ձգած ․ որուն որ պատահի հանել նոյն խաչերէն մէկը , անոր ուխտն ու խորհուրդը կատարուած է ։ Կարի զբօսալի և հովասուն կը նկարագրեն այս լեռը ․ ուր գաւառին ամեն կողմէն գրեթէ ամառուան տօթուն շատեր կ՚երթան ամիսներով կը կենան ։ Վանքի ձեռագիր արձանագրութեան մը մէջէն օրինակուած է հետեւեալն ․

«Տավշան տաղին վրայ, որ Խաչի լեառն ալ կ՚ըսուի, Վարք սրբոցին աունելով Ս. Մուքիասու ճգնաւորը բաւական ժամանակ ճգնութիւն ըրած և իջած է Ս. վանքը շինելու, որու ճգնած անտառի վրայէն առան մտտուրայի չափ մաքուր ջուր կը բղխի, և ամեն տարի Վարդավառի տօնին շատ տեղերէ ուխտաւորներ կ՚երթան, և հոն պաշտօն և պատարագ կը մատուցուի։ Եւ այս տեղէն երկու հազար կանգնոյ չափ հեռու դէպ ՚ի արեւմտեան հարաւային կողմը կայ գերեզման մը, որ Եարաղամ ճգնաւորի գերեզմանն է, կ՚ըսուի, աւանդութեամբ...։»

Ասկէ եօթն տարի առաջ 800 ոչխար ունեցեր է վանքս, զորս վաճառեր է Եղեսեան Սրբազան իբրև Առաջնորդ, որոց գինը 170 ոսկի յանձնած է Եշնիճեցի Համբարձումին իբր աւանդ, թէպէտ հաւատարիմ անձն, բայց այսօր վճարելու անկարող վիճակի մէջ է, կ՚ըսէին։ Նոյն տարին վաճառեր է նաև վանքի արծաթներէն 19 հօխայ, որոց գինէն՝ 15000 ղուրուշը Մարզուանցի Քիրէմիտճեան Յակոբին, 15000 ղուրուշը Մարզուանցի Գասպարեան Ղազարին, և 8000 ղուրուշը Հաճիգեղցի Ջէրքէզեան Գրիգորին տրուած է մուրհակաւ։

Վանքս չունի այսօր երկրագործութեան համար լուծք, և ոչ ոչխար կամ այծ մը։ Թէմերէն պտուղին ու հոգեբաժին ալ խափանած կըտրած է, վասն զի՝ «Աստուած ողորմի և Հոգւոց» ըսողներ չկան վանքը. Արքազանն յաճախ

բացակայ կը գտնուի վանքէն իր Նորընծայ Սամբրէին հետ կամ Թէմերը կամ լճին եզերքը, Նորընծայ Մուշեղն Սարգուանն է. Հին ցօհ. Վ. ալ տաճարի դրան կը նայի Թէպէտ իր սենեկէն, բայց երբէք ոտքը չփոխեր ներս սեմէն. Տէր Զենոբ քահանայ մի կայ, որ միայն շաբաթ երեկոյ և կիրակի առաւօտ Սարգուանէն կու գայ ժամերգութիւն կը կատարէ գեղացւոց և ուխտաւորաց համար ու կը դառնայ:

Քանի մը տարի է որ Եդեսեան Արքազան կը ջանայ նոր ջուր հանել վանքի արտերուն համար. արդարև օգտակար մտածմունք, այլ երկար և անյաջող եղած է գործը, բաւական ալ ստակ մսխուած է. դեռ կը չարունակէր: Վանքիս դրամական եկամուտը կը կազմէ տարին 40000 ղրշ. միայն 32000 ղրշ.ի ցորեն և յարդ կը վաճառի, մնացեալը ուխտաւորաց և այգեաց եկամուտն է: Որովհետև մեզ երևցածէն կը դիտէինք որ ծախքի տեղ չունէին, ուրեմն, ուրախութեամբ հարցուցինք. — Վանքը բաւական դրամ ունենալո՞ւ է: Պատասխանեցին՝ Ոչ, այլ պարտք ունի. (՚ի բաց առեալ արծաթի և ոչխարի գինը): — Շէ՛ն կենաք, ըսինք. և մեկնեցանք:

Մեր այցելած օրը Եդեսեան Արքազան վանքը չէր, այլ ամիսէ մը աւելի Հաճի գեղը կը գտնուէր. վերջին օրերս դարձաւ. Սարգուանի մէջ արտաքոյ կարգի փոփոխութեամբ մը մեծարեց զիս, զոր աւելորդ կը

համարիմ գրել, և հետեւեալ օրը մեր ուղին վանքի քովէն անցնելով, յատուկ 'ի տես գնացի Ն. Սրբազնութեան, զոր գտայ իր ողջըռլած վիճակին մէջ ։ Նա յանձնեց ինձ տաճկերէն գրութեան պատճէն մը, յորում նըշանակուած էին մի առ մի վանքի բովանդակ արտերը ․ սոյն բնագիրը շինել տուած է Ցահրոբոս Ս. Պատրիարք 25 տարի յառաջ, և պատճէններէն մի քանին վաւերացընել տըւած է Տեղ. կառավարութեան Եդեսեան տըրաղանը ․ բայց այս ինչ որ է, ոչինչ արժեր է Թաֆուի օրինաց առջև, բոլոր արտերն ալ Թաֆու ըրած են և Էմլաքի տուրք կը պահանջեն վանքէն, թէպէտ ասոնք ալ դեռ բան մը տուած չեն ։ Ըսաւ ինձ թէ՝ քանի մ՚ալ հրովարտակներ ունի վանքը իր հողային կալուածոց համար ․ խնդրեցի, բայց չհաճեցաւ ցոյց տալ․ թէպէտ ոմանք կը պնդէին թէ չը կայ, վասն զի եթէ ունենար, ոչ Էմլաքը պիտի վճարէր և ոչ տասանորդը ։

Ն. Սրբազնութիւնը տխրագին կը գանգատէր իր վիճակէն, ուրախ էր Առաջնորդութենէն հրաժարելուն և հրաժարագիրն ընդունուելուն, փափագ կը յայտնէր վանքին վանահայր մնալ և բարեկարգ ու արդիւնաւոր վիճակի վերածել զայն նիւթապէս և բարոյապէս ։ Զոր Ս. Պատրիարքի խորին ուշադրութեան յանձնեցի ։

Վանքս ունէր 180 կտորի չափ տպեալ մեծ և փոքր գրեանք, որոց մէջ պիտանիներ

ալ կային բաւական թուով. իսկ ձեռագիր-ները առանք են, զորս ցանկէն օրինակեցի.

1. Աստուածաբանութիւն, 'ի Պետրոս վար-դապետէ Նախիջեւանցւոյ: 1. Աւետարանա-կան ճառք: 1. Առակաքիրք Սողոմոնի, մագա-ղաթ: 1. Աշխարհ բացեալ' 'ի Պետրոս վար-դապետէ Նախիջեւանցւոյ: 1. Բանք ուղղափառք: 1. Բառարանի գրքոյն: 1. Գաւազանագիրք: 1. Տետրակ առակաց Սողոմոնի, մագաղաթ, 'ի Ներսիսէ եպիսկոպոսէ Տարօնի ... «Ի թվ. Հայոց 'ի վեց հարիւր Խ և վեց յաւուրսն ... » — Երես ՅԿԲ. «Գրեցաւ որ եպիսկոպոսի Ներսէս խօսք յինն երանութիւն. բան Ա-ռաջին, (Երանի աղքատաց հոգւով) ... »: — Երես ՅԾԱ. «Ներսիսի եպիսկոպոսի Կի-լիկեցւոյ Տարօնի խորհրդածութիւն վասն ուղղափառ հաւատոյ եկեղեցւոյ, որ 'ի սուրբ Երրորդութիւնն և 'ի մարմնութիւնն Քրիս-տոսի »: — Երես ՅԽԹ. «Յիշատակարան Յա-կոբ քահանայի Կ. Պոլսեցւոյ ... որ խոշորա-գրեալ լինելով, մաշեալ, և պարկեշտ կրօ-նիւք ... երբեմն 'ի սուրբ Յարութիւն կա-լով Քրիստոսի սուրբ Գերեզմանին ծառայե-լով ... յիշեցէք զաստուածասէր դոյն կուսակրօն Յակոբ արեղայս, զծնողսն և զեղբարսն և զքորսն ... աւարտեցի 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, 'ի թվ. Հայոց ՌՃԼԸ ին ... »: «Զմեղաւոր և զանարժան սարկաւագ Յովհաննէս գրիչս յիշեցէք ... »:

— Ի վախճան մատենին.

« Թուղթ 'ի Ներսիսէ արքեպիսկոպոսէ Կիլիկեցւոց Տարօնի պատասխանի Յունական արքունական ճգնաւորի 'ի մեծն Անտիոք, յորում լուծանէ զհարցումն կղերիկոսացն

Անտիոքու վասն որ 'ի Հայք աստուածային շնորհի ճշմարտութեան 'ի վերայ քահա-նայական կարգի և ժողովրդականաց ուղիղ հաւատով որ 'ի Քրիստոս »:

Մարզուանու եկեղեցին ևս ձեռագիր մատեաններ ունէր, բայց անձեռնհաս եղայ կրկնելու և յիշատակագիրերու թուական-ներն օրինակելու:

## ԱՄԱՍԻԱ ՔԱՂԱՔ

Մայիս 17: Մարզուանէն մեկնեցանք դէպ Ամասիա, որ ութն ժամ կը տեւէր: Վեց ժամ ընդարձակ հովիտ է, և երկու ժամ կիրճ. կիրճէ 'ի կիրճ անցնելով ոլորուն և ծառազարդ ուղիով կը մտնենք քաղաքը: Մարզուանու հովիտը բոլորակ է շրջապա-տեալ լեռներով, այդ լերանց թիկունքը և ստորոտները կը զարդարեն գեղեցիկ գիւղո-րայք. բուն հովտին մէջ տեղ տեղ գեղեր կան, բայց անշուք. գիւղօրէից բնակիչք ընդհանրապէս Թուրք են և Քուրդ, մաս մը ևս Հայք: Թէպէտ և երկրագործներ ալ կան, բայց մասնաւորապէս անասնաբոյծ են. լեռ-ները խաշինքներով, ստորոտները անդէովք, և հովիտը ձիերով ու էշերով լի են, որք առ հասարակ իրենց տեսակի մէջ ընտիր են. ու-նին նաև ընտիր ջորիներ:

Հովտիս միջէն կը հոսէ Թերսախան գե-տակը խոտոր մոտոր. եզերքը տեղ տեղ ան-

մշակ այլ խոտաւէտ, որոց մէջ բազմութիւն ձիոց խրոխտ կը խրխնջէն, և եզինք ծանր ծանըր կը բառաչեն արածելով. տեղ տեղ այլ հողն չորաղ է և անբոյս: Տապը կարի բարկ էր, մանաւանդ երբ մտանք Ամասիոյ կիրճը. իսկ աւազակաց երկիւղը այնքան էր, որ երկար հովտին անցքը և տօթը անզգալի կ'ընէր: Թէրսախանը կ'ուղեկցեր մեզ. և մեր ճանապարհի ձախ կողմը խիտ առ խիտ թթենիք էին, այգիք և մրգաստանք. ահա այս ձորոյն մէջ կը գունաւորէին կարմրութեամբ և կը հաստատէին այն անզուգական խնձորները, որ Ամասիոյ սեպհական բերոց փառքերէն մին է. հոս ծառերէն 'ի վար կը կախուէին կամ ծառերն 'ի վար կը կախուէին գեղին, սպիտակ և կարմրագեղ մեծահատիկ կեռասները, որոց հանդիսաւոր օրերը հասած էին: Կը պատահէինք չերամի համար շինուած տանց, չերամ սնուցանող ժիր ընտանեաց, և կեռասի պաշտօն հարկանող զուարճասէր պատանեկաց ու ամօթխած աղջկանց, որ խառնուած ու խռնուած էին ծառոց թուփերու մէջ, և ուղեւորներէն կը ծածկէին իրենց սպիտակ ու կարմիր դէմքերը՝ սպիտակ՝ ու կարմիր կեռասներուն ճղերուն ետեւը, այլ չէին քաշեր իրենց բազուկն ու թաթիկը, զոր ձգեր էին կեռասները ճռփել:

Կրճին միւս երեսն է Սամսոնէն Ամասիա գալու կարաւանի ճանապարհն, որ քաղաքին

ժամ մը մեալով կը միանայ Մարզուանու ուղւոյն՝ կամուրջով մը․ հոս կայ զուարճալի վայր մը իբր հանգստարան ուղեւորաց, և որձարան մը ու խանութ։ Աստի սկսեալ կառուղի շինուած է մինչև քաղաքը։ Մեր քովերէն և 'ի հանդիպոյ ապառաժներու մէջ քարայրեր կ'երեւան, քանի՛ կը յառաջանանք ժայռերու դագաթները կը մերձենան կը բարձրանան․ և ահա Ամասիոյ մէկ թաղը։ Մեկնեցաւ մեզմէ Թէրսափիանը և գնաց սահեցաւ Իրիսի (Եէշիլ ըրմագ) մեծ գետոյն լայն ծոցոյն հոսանաց մէջը։ Ահեղն Իրիս գիմաւորեց մեզ․ իր վրայ շինուած են շատ մը անուաւոր ջաղացքներ, և շարուած փայտէ գոյլերը, որոցմով ջուր կը բաշխէ այգեաց։

Ցայնկոյս գետոյն, դեռ քաղաքը չմըտած, քիչ մը տեղ կայ ընդարձակ իբրև հրապարակ, ուր մեծամեծ ծառոց հովանեաց տակ նստած են կարգ կարգ մուրացկանք։ Կամուրջով մը կ'անցնինք յայնկոյս՝ Սավայիտ թաղը, որ 'յենած է հարաւային ժայռերու, և իւր ծառերն ու այգիները կը տարածին մինչև Զախալի ըսուած լեռան կատարը, ծացածեւ դիրքով, այս ծոցէն կը հոսի Սօուֆ Քանաք ջուրն։ Մեք անցնելով Իրիսի ափէն, խաներու և կարգ մը խանութներու և որձարաններու առջեւէն մտանք քաղաքի մէջը և իջանք Ս․ Նիկողայոս եկեղեցւոյ Առաջնորդարանը։ Աստուած առաջնորդարան համարի . . . ։

Ամասիա քաղաքը՝ ըստ պատմութեան և աւանդութեան՝ հիմնեալ է Մեծին Աղեքսանդրի Ամասիա անուն եզբօրմէն, և աւելի փայլ ու փառք ունեցած մեր Միհրդատէն, որդարև պատկերազմիկ ձեռաց կերտուած, և անառիկ։ Յմեն ուստեք կը պաշարուի մարդ, ո՛ր կողմը դառնաս՝ լերկ ու բարձրաբերձ ժայռեր են, անձուկ խորաձոր մը, որոյ լայնութիւնն ամբողջ բռնած է Իրիս, իր բուռն ճիրաններով. գետոյս՝ իբրև նեղուցի ծովու, խորշ խորշ տեղերու և ուղիղ ափերու վրայ շինուած են բնակարաններ, դրախտներ, այգիներ, գործարաններ, բերդեր, պալատներ, հին ու նոր, նշանաւոր և աննշան կերտուածներ։ Քաղաքս կը տարածի յարևմուից յարևելս աղեղնաձև, սեղմուած Գայլէտաղի և Ջախալի լերանց մէջ, շէնքերը 'ի հիւսիս և 'ի հարաւ՝ երկու մասի բաժնուած։ Գայլէտաղին հիւսիսակողմն է. իր գագաթան և կողերու վրայ ունի հնաշէն բերդին ու պարսպաց մնացորդներ, և մէկ կռան վրայ դէպ յարևելս գեղեցիկ Թէքքէ մը, նոր շինուած Շիրվանզատէ Րիւշտի փաշայէն, որ Սուլթան Ազիզ կայսեր օրով մեծ Եպարքոս էր 'ի Կ. Պոլիս, բնիկ Ամասիացի, որոյ ծնողքը Շիրվանէն, Աղուանից աշխարհէն գաղթական եկած եղեր են հոս. սոյն Թէքքէի մէջ կ'ամփոփուին յիշեալ Վէզիրին ծնողաց մարմինք, ուր տաճիկ աղօթողաց և այցելուաց համար շնորհքով սենեակներ շինած է, ամբողջ շէնքը պարզա-

պատպատ, և մէջը ծառազարդ, հովասուն և բարձրադիտակ դիրքով։

Այն լերան քաղաքի կողմը եղած երեսին վրայ կրկնահամար և քառակուսի դըռներով փորուած քարայրներ կան, և այս քարայրները ելնելու իջնելու համար ժայռերու վրայ փորուած սանդուխներ։ Այս օրինակ քարայրներ և սանդուխներ շատ կը տեսնուին քաղաքի հարաւը, յարեւելս և յարեւմուտս եղած ժայռերուն ալ վրան։ Կարի նշանաւոր է [illegible] ծաղկոտ ըսուած քարայրը, յարեւելս քաղաքին, որոյ մէջը տպալի փոսով ծեփած, այնքան փայլուն և արծնատաւոր, որ դրսի բոլոր տեսարանները իր մէջ կը նկարէ ցոլացմամբ և կ'անդրադարձէ եղեր, իսկ այժմ խաւարամած է և մուխով սեւցուցած։ Կը պատմեն թէ՝ փաշա մը ձիովը այն տեղէն անցած ատեն, ձին խրտչեր և զինքը գետին զարկեր է, ասոր վրայ մեծագործ փաշան այնչափ յարդ վառել տուեր է քարայրին մէջ, մինչև թանձր ծխով սեւցեր են ծեփերը։ Հին ուղեւորներ և տեղացի աւանդապատմներ կ'ըսեն թէ՝ շատ մը զանազան նկարներ կան եղեր նոյն այրին մէջ, ինչպէս նաև կամարին վրայ դեռ կը նշմարուին Երկոտասան Առաքելոց պատկերներ, դրսէն ալ ճակտին վրայ յունարէն տառերով քանդակեալ երեք բառ, զոր թարգմանեալ կը տեսնենք Հ. Ներսէս Սարգսեանի տեղագրութեան մէջ. «ԵՐԿԻՐ (դից)

ՔՐՄԱԳԻՏ*։ Ուրեմն մեհեան մի է այս, և 'ի քրիստոնէութեան՝ սրբեալ տաճար. իսկ միւս այրերը՝ ո'րը մեհեան, ո'րը գանձարան, ո'րը գինարան, ո'րը ապաստանարան են, եւն։ Ասոնց եթէ ոչ ամենքը, գոնէ մեծ մասն՝ մեր Մեծին Միհրդատայ կռել տուածներն են։

Գայլէտաղին երկու սուր կատար ունի մօտ ընդ մօտ, որոց միջեւ երկու նշանաւոր խորեր կան, մին՝ գնդան, միւսը՝ ջրամբար։ Գնդանը՝ ուղիղ փորուած և բերանը քարերով շարուած, ընդարձակ վիրապ մի է. իսկ ջրամբարը՝ զոր Ջաղամբուղը կ'անուանեն տեղացիք, ընդ երկար ստորերկրեայ ուղի մի է սանդղուխով, որ իբրև ժամ մը կը տեւէ, և կ'իջնայ մինչև քաղաքի արեւելեան հիւսիսէն հոսող Թէքրիւախան գետը, պաշարման օրերը ջուր առնելու. կամ գաղտուղի մի է, ուսկից կ'ելնեն պաշարող թշնամին զարնելու։ Վերոյիշեալ ճղլակ լերանց երկու կատարաց վրայ ալ բերդեր եղած են. բարձրագոյնին վրայ երեւցածն աւելի հնագոյն ու մեծագործ է. իսկ միւսը՝ Ցաճկաց իշխանութեան օրերը շինուած։ Դեռ 12 տարի առաջ սոյն բերդը շէն է եղեր. բերդապահ գօլէյի տօ-ուանեալ բնակիչք հոն կը բնակէին, և այս պաշտօնին առթիւ ազատ են եղեր ամեն տեսակ հարկատուութենէ և զօրք տալէ։ Այս բերդի յարկերէն միայն մէջ կը պահուէին եղեր հնութիւնք, երկաթի զրահ, նետեր,

կերպ կերպ սաղաւարտներ, տապարներ, եւն., որոց ոչ մէկը չկայ այսօր. Զիյա պէյ անուանով Միւթասարրիֆը՝ որ շատ բարեկարգութիւն և շինութիւն ըրած է այս կողմերը, այդ հնութեանց պիտանի մէկ մասն Պոլիս ղրկած է։

Ամասիոյ բնակութեանց մեծ մասն գետոյն հարաւակողմն է. երեւելի շէնքեր, մզկիթներ, եկեղեցիներ, շուկայն, եւն. միայն կառավարութեան պալատն և հասարակաց ժամացոյցի բարձր աշտարակը հիւսիսակողմն են, զորս՝ վայելուչ շինած է յիշեալ Զիյա պէյն։ Այգեստանք երկու կողմն ալ կան։ Հայք, Յոյնք և Տաճիկք խառն կը բնակին մի և նոյն թաղերու մէջ. Մզկիթն ու եկեղեցին, վարժարանն ու մէտրէսէն իրարու մերձ շինուած են։

Շինութեանց մէջ հոյակապ և ամենէն շքեղն է Սուլթան Պայազիտ անուն ճամին՝ կրկին մինարէով, մարմար սիւներով, արաբական նկարներով և քանդակներով, մանաւանդ իր տեղով ու ընդարձակ դիրքով. իր մեծ բակին մէջ մեծամեծ նոճի ծառեր կան, մէկ կողմը՝ ընդարձակ մէտրէսէն։ Սոյն ճամիի բակին քսուելով կը հոսի Իրիսը։ Նշանաւոր է հնութեամբ հանդերձ՝ նաև Կէօք Մէտրէսէ ըսուած մզկիթը, որ ունի նշանաւոր գմբէթ մը՝ դրսէն խիստ գեղեցիկ և արուեստով կերտեալ. սոյն գմբէթը մզկիթին մէկ քովը շինուած է, որոյ ներքեւ խարա-

փոս անլոյս յարկի մը տակ քանի մը մեռելոց կմախքներ կան փայտէ դագաղներու մէջը պարփակուած, իբր անփտելի և չէյէփ հռչակուած · կայ Մօլլայ մը առաջնորդեց մեզ ճրագով մը և աղօթից մրմունջով Գըլուտոնի այս տաճարը, քանի մը ծունր կրկնեց, և այս դագաղներու խուփերը բացաւ, որոց մէջ տարածեալ կային մեռելոց կմախք, միս և մորթը վրան չորցած ։ Թէ ո՞յք էին ասոնք, չգիտէր մօլլան ։ Ցածիկ կանանց ուխտատեղի է դարձեր այս տեղ, բայց մզկիթ լինելէ ալ դադարած ։ Ամբողջ յարկերու մէջը Զէյրէկ ընտանիք կը բնակէին, բաց 'ի այս մեռելոց ներքնայարկէն ։ Ճիշդ սոյն մզկիթին դրան հանդէպ և անոր խիստ մօտ արուեստաշէն գմբէթայարկ մի ալ կայ, որոյ մէջը եօթն շիրիմներ կան, մէկը մեծ և փառաւոր, և մարմարիոնէ կափարիչ մը ունի, որոյ շրջապատը արաբի գրեր քանդակուած են · Այս է, կ՚ըսեն, Գլիճ Ասլանայ գերեզմանը, և միւսները անոր գոթոթներուն են ։ Այս անձը իր աւերածներով ու կատաղի արարքներովը յայտնի է մեր ազգային պատմութեան մէջ, մեծին Թորոսի օրով, Իկոնիոյ Սուլթան Մասուտի որդին ու յաջորդը ։

Գառամա մինարէթով մզկիթի մէջն ալ վերոյիշեալ կմախքներուն նման կը պահուին, և տեսնել ուզողներուն կը ցուցընեն ։

Թէքէիքանէ անուանեալ հին չէնք մի կայ կառավարութեան պալատին հանդէպ,

Իրիսին հարաւային կողմը, որոյ դուռն ու ճակատը ողջ է, սպարական մանր քանդակներով և քուֆի գրերով, իսկ ներսը քայքայուած է. ողջ մնացած սենեակները արքունի ամբար ըրած են։ Ըստ աւանդութեան, այս է եղեր, կամ հոս է եղեր Ռէայ մօրն չաստուածոց մեհեան, զոր հրձիգ ըրաւ Ս. Թէոդորոս զինաւորն։

Նշանաւոր են ընդհանրապէս երեւելի Տաճկաց տուները, և իբրև նոր շէնք՝ կառավարութեան պալատը, Հասարակաց ժամացոյցը, Մէքթէպի րիւշտիէն, այգիներու մէջ Ջախալի լերան կողմը Հովանոցներ (քէօշք), Հայոց Ս. Յակոբ և Ս. Աստուածածին եկեղեցիները, գետոյն վրայ կառուցուած ջաղացքներ — որոց մէջ ամենէն գերազանցն է գերմանացի Պ. Մէցինը, որ ազացքի շէնքին մէջ ունի նաև մետաքսի թել հանելու և ոլորելու ընդարձակ և ընտիր գործարան։

Հինգ կամուրջ ունի քաղաքս. երկուքը քարաշէն են, երեքը փայտ։ Փողոցներ նեղ և անմաքուր, ծուռ ու մուռ և անկանոն, միայն Սավայիտի թաղը քիչ մը լայն է՝ բայց և այն զառ 'ի վեր։ Աղբիւրներ շատ կան, թէպէտ պաղորակ չեն, բայց թեթեւ և համեղ ջուր ունին. տեղ տեղ ալ գետէն կը խմեն։

Իրիս՝ որ համայն քաղաքին զուարճութիւնն ու վայելչութիւնն է, և առատ ձըկունք ալ կ'ընծայէ, բայց իր վտանգներն ալ

ունի․ գարնան և աշնան անձրեւաց յաճախութենէն կը բարձրանայ ջուրը ; և իր մօտ պարտէզներ , փողոցներ , ու տները կը կոխէ , և ամեն տարի քանի մը անձինք ալ կը խեղդէ , կը կորսնցընէ ։

Ամասիոյ շուկայն բաւական մաքուր և ձեւաւոր է , վրան գոց , բայց ընդարձակութիւն չունի ։ Թաշխանը՝ ուր մաքսատունն է և վաճառականաց սենեակներ , իրենց համար նշանաւոր կերտուած մը համարուած է․ վասն զի բոլոր շուկային մէջ միակ շէնք է քարէ , այլ իրօք տձեւ ու չնչին ։ Պէզէստէնը , որ գոված են նախկին ուղեւորք , աւերակաց կարգն անցած է , խսպառ անգործածելի ։

Քաղաքիս մէջ կը գտնուին տեղական պիտոյից համար ամեն արհեստներ․ արհեստաւորք Հայերն են ։ Կայ և մի տեղական բժիշկ՝ Գէորգ էֆ. Պօրանեան , որ ունի դեղարան մը , և մի վիրաբոյժ՝ Սեւաստացի Նշան էֆէնտի ։

Վաճառականութիւն բանուկ է․ գաւառէն բերքեր կ՚ուղարկէ Եւրոպա , Պօլիս , և Թուրքիոյ այլ և այլ գաւառները , ոչխար , այծու և ոչխարի մորթ , աղուէսենի․ գայլենի , սամոյր , պրօն (թիվթիք) , բժոժ (շերամի խոզակ) ; խաշխաշ (աֆիոն) , ճէհրի , դաղի խէժ (քիթրէ) , մահլէպ , սալէպ , կանեփ , տորոն , վարսակ , ցորեն , սալ , սիսեռ , լուբիա , պամեա , անիսոն , կտաւատ , պանիր , իւղ , մեղր , եւն ։ Պտուղներէն՝ ա-

նուշահոտ խնձոր, սալոր, խաղող, ընկոյզ, գինի, եւն: Կը սնուցանէ ընտանի կենդանիներէն՝ ձի, էշ, ջորի, եզն, կով, գոմէշ, այծ ու ոչխար: Քանի մը տարիէ հետէ սկսած են սնուցանել նաև Անկիւրիոյ լաւ մազերով այծեր (թիֆթիկ) և աղէկ յաջողած են: Ամասիոյ շերամը՝ որ առաջները լաւագոյն էր, տեղացւոց համար հարստութեան աղբիւր մը կը կազմէր. բայց իբր 15 տարիէ 'ի վեր ամ յամէ անկման մէջ է, հունտերը աւրուած լինելով: Այս տարի Ճափօնէն հունտ բերել տուած էին, և յուսալի կը թուէր բարելաւելու իրենց այս շահը:

Ամասիա գտնուելով Բաղդադի մեծ ուղւոյն վրայ՝ միշտ նշանաւոր եղած է, առաւելապէս 'ի հնումն, երբ ցամաքային ճանապարհով կ'երթևեկէին 'ի Պօլիս. այժմ ևս Բաղդադէն յայսկոյս եղած քաղաքաց վաճառքներ և մարդիկ այս գծով կ'իջնեն 'ի Սամսոն, և փոխադարձաբար. բաց 'ի Հայաստանի այն մասերէն, որոց նաւահանգիստն է Տրապիզոն և Կիրասոն:

Սոյն աշխարհի լեռները Պոնտոսի շղթան կը կազմեն և անտառոտ են: Օդը բարեխառն է, միայն Ամասիա քաղաքը խոր ձորամէջ լինելով, ամառը սաստիկ տաք կ'ընէ, և տենդի հիւանդութիւնն յաճախ:

Թէ՛ քաղաքին մէջ և թէ՛ գեղերը մեծամեծ կալուածներ ունին Թուրքերը: Այս քաղաքը բազմաթիւ. ուսանողներ կու գան

այլեւայլ կողմերէ՝ մահմէտական կրօնին վարդապետ և օրէնսգէտ լինելու համար։

Քաղաքիս բնակչաց՝ կանայք կարի աշխատասէր են, ու Մարզուանցւոց պէս՝ հրիկ մարդու շալվար կը հագնին, 'ի գլուխ կխաքող մը կրելով, իսկ փողոցը շրջած ատեն՝ սաւանով կը պատատուին. անխօս և անտես կը պահեն կիրենք. կարի պակասաթիւ են շրջահեն զգեստ հագնող կանայք. իրենց զբաղումներն են չերամ սնուցանել, բժոժէ թել հանել, մանիսա և այլ տարազներ գործել, տուն և այգի անտեսել. ժիր են և առողջ։ Իսկ արք՝ դանդաղ և մեղկ, կերուխումի և զուարճութեանց սիրողք. գրեթէ գարնանէ մինչև աշուն անբաժան են իրենց այգիներէն, ուր ծառոց դալարախիտ ոստոց թփոց քովերը բազմած՝ կարմիր ջուր, ճերմակ ջուր, փոփոխակի կը պատուեն ջերմիկ խորոված մսով ու փափուկ հացով, և ծառերէն միրգեր կը թափին սեղանին շուրջը։ Մայիս 25, Համբարձման տօնն էր, Ամասիացիք ամբողջ համբարձեալ էին տուներէն. մեծ հանդէս էր այն օրը կեռասի տարեդարձին։

Քաղաքիս մէջ երեք եկեղեցի կայ Հայոցս, Ս. Նիկողայոս՝ ուր Առաջնորդարանն է. Ս. Յակոբ՝ գրեթէ կից առաջնոյն, բայց քան զայն փառաւոր և ընդարձակ. Ս. Աստուածածին՝ Սավայիդի թաղը, բարձրադիր և գեղեցկաշէն, որոյ ներքին պատերն, սիւներն և առաստաղն՝ եկեղեցական պատկերներով

Նկարուած , գեղեցիկ դիրքով ու բաւական
ընդարձակ խաչքակեր ունին, ծառեր և սեն-
եակներ , իւրաքանչիւր եկեղեցւոյ բակին մէջն
է իւր Թաղին մանկաւոյն համար երկսեռ
ծաղկոց , իսկ չէնքով և դաստիարակութեան
մասին կարի ողորմելի ։ Սավայիդի Թաղեցիք
մտնաւոր վարժապետ մը ունին Բենկանցի
Գ. Աստուածատուր , ուսեալ և բարեկիրթ
անձն , որուն յանձնած են միայն քառասուն
աշակերտ , և կ'ուսուցանէ հայերէն , գաղղի-
երէն , տաճկերէն , աշխարհագրութիւն ,
Թուաբանութիւն , և ձայնաւորութիւն ։ Իսկ
Մնացեալները լցած են ծաղկոցներու մէջ ,
ուր կ'ուսանին Քերականէն մինչև Գործոց ,
հազիւ գիր գրել գիտցող մը կը տեսնես ա-
տոնց մէջ . վարժապետները անգէտ իրենց
պաշտօնին և անկիրթ ։ Կը չառաչեն Փալախա-
ներ , սրտով՝ ա՜խ ու եամա՜ն գոռալէն կը Թըն-
դան չէնքի քարն ու փայտը , այլ չապէտուիր
անգութ վարժապետին սիրտ . խոլոխտաբար
պոռոտալ , դողացընել ու սարսեցընել մանու-
կըն իր խոժոռ հայեցուածքով , և գալարուն
վարոցը ձեռքին մէջ ճօճեցընելով , ահա վար-
ժապետներ , ահա աշակերտելոց մարզու-
թեան կանոններ ։ Զգուած այն սիրուն ծաղ-
կունք այս խամրեցուցիչ ձեռաց և խելաց տակ ,
ապականեալ օդերու մէջ , խոնաւ հողերու
վրայ , փայտի կտորներու վրայ , որք իբրև
նստարան շինուած են , առանց գրասեղանի ,
շէնքեր առանց լուսոյ և առանց օդի , գիր-

քերը կտրտուած, և ամեն մէկի ձեռքը զատ-զատ տեսակ գիրք։ Այս ազգային յուսոյ անյոյս յարկերը այցելածս միջոցին՝ Ս. Աստուածածին եկեղեցւոյ դրան քով փոքրիկ աղջկանց վարժարան մը ևս ցոյց տուին, որոյ դրան առջև այլանդակ դէմքով, խառնած մազերով, բոբիկ, պատժափայտն 'ի ձեռին՝ սպիտակ մազերով մէկը կեցած կ'երերար. Քահանայ է, ըսին, և աղջկանց վարժապետ. որ և ոչ քահանայ, և ոչ մարդ կը նմանէր, այլ սակայն ստոյգ, աղջկանց վարժապետն էր նա։ Ողջունեցի զինքն. — Օրհնեա տէր, վարժապե՞տ էք. — Ի՞նչ պիտի ընեմ, ռախի չունիմ, պատասխանեց։ — Հրամէ երթանք վարժարանդ այցելենք. — Ի՞նչ կը փնտռես, կարգս վկայ, ոչ ռախի կայ, ոչ մազէ . . . ։ Սաստիկ գրգռուեցայ ասոր կոպտութեան վրայ, և այն ինչ այցելակցացս մեղադրանք կ'ընէի, ինձ պատասխանեցին թէ, ճիշտ կ'ըսէ, այս տէրտէր վարժարան բացած է. մէն մի աշակերտուհիէն շաբաթական տասն փարայ թոշակ կ'առնու, և առածը օղիի կու տայ, ամեն օր կը խմէ։ — Է, աս եղա՞ւ։ — Վշտացեալ է։ — Ի՞նչ է միշտը։ — Լադիկ դիւղին վրայ ձեռնադրուած էր, գեղացիք չուզեցին, հոս ալ քահանայք բաժին չեն տար անոր։ — Պատճա՞ռը. — վասն զի տգէտ է և գինով։ Ուրեմն ապրեցընելու համար վարժապե՞տ պէտք էր ընել . . . ։

Ա՜հ, Հայեր, ա՜հ, հայրեր ու մայրեր,

ինչո՞ւ դուք ձեր ոտքով կը զարնէք ազգային յառաջադիմութիւնը և յետս կ'ընկրկէք ։ «Ազգի պաշտօնեայ են, վարժարան դնենք չահուին». դեռ Պօլսոյ մէջ ալ այս բանը կայ։

Միւս ծաղկոցներու վարժապետներն ալ իւրաքանչիւր աշակերտէն շաբաթական 10—20 փարա թոշակ առանալով և աշակերտները բրածեծ ընելով իրենք գոհ և ծնողք գոհ կ'ընեն. ըսել է մէկ տղայ տարին 12 դահեկան վճարելով, և քանիներն ալ 24 դահեկան, կ'սպասեն մարդ լինին ։ Վարժապետներէն ոմանք եկեղեցական ձայնաւորութիւն ալ դաս տալու համար եկեղեցին քանի մը դահեկան նպաստ կու տայ ։ Ամենէն բարձրագոյն վարժապետն տարին 2000 ղուրուշ կ'առանար, և այն՝ Պ. Աստուածատուր Բենկանցիի պէս ուսուցիչ մը, բայց երբէք օգնական մը չունենալով իրեն. իսկ միւս վարժապետներ՝ տարեկան 1000—500—300 դահեկանով կը կենան ։

Ամասիոյ վարժարանաց այս վիճակէն դիւրին է գուշակել տեղւոյն ազգայնոց զգացումն յամենայնի, զորս ցաւ է ինձ ասել թէ կարի անտարբեր գտայ. երկու կամ երեք հոգի հազիւ կան, որ կրնան զգալ խօսիլ և լսել ազգայնութեան վրայ ։ Իրենց Առաջնորդարան և ժողովքներ ողորմելի են. սենեակ մը ունին միայն, ուր հազիւ զետեղուած է Առաջնորդին խոշորակերտ մահճակալ. տեսանք ուրեմն Առաջնորդի ննջարա-

նը, բայց պաշտօնատուն և ժողովարան ոչ և ոչ: Ոչ դիւան, ոչ գրագիր, ոչ գրասեղան, ոչ նստարան, ոչ տումար, ոչ արձանագրութիւն, ոչ նիստի օրերը որոշեալ և ոչ որոշումները արձանագրեալ: Եթէ հարկ լինէր թուղթ մը նայիլ, կը բանային եկեղեցւոյ դարակը, ուր սնտուկ մը կար, մէջը բժժանաց նման խառնակ թղթեր զետեղուած, օրերով կ'զբաղէին որոնելու և գտնելու: Մի միայն կանոնաւոր արձանագրութիւն մը կար՝ Սեբաստիոյ Առաջնորդ Պետրոս վարդապետի քննչութեան օրով գրուած:

Անգամ անգամ եթէ հարկ լինէր ժողով գումարել, կը հաւաքուէին եկեղեցւոյ գաւիթը կամ խաչրակը, գերեզմանաց շուրջը ծառերուն հովանեաց տակ, և կը խորհըրդակցէին կամ որոշում մը կու տային, իսրայէլի նահապետաց, Դեբովրային, կամ հին ազգաց դատաւորաց դարը կը ներկայացնէին:

Այսպէս լքեալ էր ազգային վիճակը. յառաջագոյն 1—2 ընկերութիւն կան եղեր, բայց կարճատեւ եղած և ինկած. շատ խրախուսեցինք զիրենք և խոստացան Միական անուն ընկերութիւնը վերակազմել. երիտասարդութիւնը շատ կը գանգատէր մեծերէն, բայց ամենքն ալ հասարակ կը գանգատէին Եդեսեան Սրբազանէն, և անոր առաջնորդութեան արդիւնք կը համարէին իրենց այս անկերպարան վիճակը, զոր ունէին 7—8 տարիէ 'ի վեր, երբ Եդեսեան Ս. երեք եկեղե-

ցեաց արծաթի անօթներ Տաճկաց․ առջեւ այպն և կատակ ընելով ջարդել ու վաճառել տուեր էր, որոցմով կեդրոնական վարժարան մը պիտի կանգնէր, և թէպէտ գումարը Քաղ․ ժողովոյ ձեռքն էր, և յարմար տուն մի ալ գներ էին վարժարան ընելու համար, և 14 խանութ իբրև կալուած նոյն վարժարանին, դեռ 313 օսմ․ լիրա ալ պատրաստ ունէին, բայց ահա 8 տարի է տակաւին վարժարանն չէր բացուեր, և ժողովրդեան գրգիռը չէր հանդարտեր։ Առաւել գրգռեալ էին Սավայիդի Թաղեցիք, որք երկու տարիէն 'ի վեր Առաջնորդի անունը յիշատակել դադրեցուցած էին իրենց եկեղեցւոյ մէջը, և իրենց բողոքներ Պատրիարքարանէն ուշադրութեան չառնուելուն համար վշտացեր ու Գաւառական ժողովներուն ալ ընդդէմ հետեւեալ էին։ Եդեսեան Ս․ ին շատ բան կ'ըսէին, բայց իրենք ալ անմեղադրելի չէին։ Ինչ որ իրենց շինութեան և ազգային օգտին կը վերաբերէր թէ հրապարակախօսութեամբ և թէ 'ի մասնաւորի խօսեցայ իրենց, աւելորդ է կրկնել հոս, այլ այսքան մը գրեցի, գամ մի ես յիշեցընելու համար իրենց, որ Խրիմի ջըրերուն յանձնեն իրենց մեղկութիւնն ու երկպառակութիւնը, Նախապաշարումն ու բաժանումն, թող տանի անհետ այդ սեւ հետքերը Սեւ ծովու անդնդոց յատակները թաղէ, և թող իրենք միանան, ժրանան, գործեն ազգային պէտքն ու օգուտը, ժամէ հասկնալ

թէ այն դարու մէջն ենք, որ զօրութիւն ու իշխանութիւնը ժողովրդեան ձեռքն է, ժողովրդեան կը հետեւի այսօր Առաջնորդն ալ, կուսակալն ալ, պատրիարքարանն ալ, Թագաւորութիւններն ալ, եթէ լուսաւորուած է ժողովուրդն. եթէ ոչ՝ խաղալիկ ու կոխան է ամենուն համոյից և ոտից, և ոչ ոք ունի իրեն գթացող: Այո՛, և ոչ նոյն իսկ Աստուած:

Ամասիացւոց ուխտատեղիներն են՝ Ս. Թորոսի և Ս. Բասիլիոսի գերեզմանները, քաղաքէն 3 1/2 ժամ հեռի: Ս. Յոհաննէս, որ քարայր մի է և միջէն ջուր կը բղխի, ուր կը յաճախեն տենդիւ ախտացեալներ: Աչքացաւի համար ալ Խոնէ անունով ուխտատեղի մը ունին ընդ մէջ Մարզուանու և Ամասիոյ, որ, կ'ըսեն, Ս. Թէոդորոսի սպաննած վիշապին գերեզմանն է:

Ամասիոյ քաղ. կառավարութիւնն Միւթասարիֆութիւն է՝ Սեւաստու վիլայէթին ներքեւ: Եկեղեցիք 3. Ս. Նիկողայոս, Ս. Յակոբ և Ս. Աստուածածին: Ուսումնարան 1. Ս. Ներսիսեան: Ծաղկոց մանկանց 3. Ծաղկոց աղջկանց 2: Ծախք վարժարանաց 13500 ղուրուշ: Ուսանողք՝ 409 մանկունք, 108 աղջկունք: Թիւ Հայոց 5605: Բողոքական և կաթոլիկ Հայք 96: Յոյնք 625: Թուրքք 9823:

———

## ՁԵՌԱԳԻՐՔ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ
## Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ

1. Աւետարան. — ի սկիզբն գրեալ.

« Մատթէոս մարդ վասն այն ցուցաւ ։
Զի մարդկութիւն Տեառն սկսաւ ,
Յաբրահամէ պատմել կարգաւ ,
Եւ զօրս արար մինչև յարեաւ ։
« Սուրբըդ Մատթէ նախ մաքսաւոր
Եւ 'ի յետոյ աւետաւոր ,
Յիշեա՛ առ քո Տէր երկնաւոր ,
Զիս Տիրատուր յոյժ մեղաւոր » ։

— . ի վերջն Մատթէի .

« Քրիստոս Աստուած քո սուրբ և հրաշալի կենսաբեր յարութեամբդ ողորմեա սուտ անուն քահանայիս ՀԵԹՈՒՄ ՊԼՈՒԶ երիցուս . զի քան զամենայն ոպասաւորս քո ես միայնլիրբ և անհնազանդ եղայ Աստուածային օրինաց քոց և ողորմութիւնն քո . . . » ։

— . ի միւս երեսն .

« Զմահդասի Սարգիսն , յիշեցէք զվերջին ստացողն սուրբ Աւետարանիս , և զկենակիցն զՓամ խաթունն և զամենայն արեան մերձաւորսն , զհայրն զԱսլան և զմայրն զԽունդին , և յիշեալ լինիցիք 'ի Տեառնէ Աստուծոյ , ամէն ։ Հայր մեզ" » ։

— . ի միւս երեսն .

Աւետարան ըստ Մատթէոսի .

« Մատթէոս զիւրն աւետարան ,
Գրեաց լեզուովն Եբրայեցւոց ,

Յեօթներորդ յետոյ ամեան ,
Ջարչարանացն Փրկչական ,
Յերուսաղէմ զառաջին բան .
Եւ է իբր ինչ որ 'ի Քաղդեան
Նոյն 'ի Պարթեւն և 'ի Քուշան ,
Առ 'ի Նմանէ քարոզեցան .
Իսկ 'ի Պարթեւք և 'ի Գողթան °
Միանգամայն կատարեցան .
Ապա յետոյ թարգմանեցան
Յեբրայեցւոցն 'ի Յունական ,
Ի փառս անեղծ Աստուածութեան
Երից անձանց մի տէրութեան » :

— . Ի վերջն Մարկոսի .

« Քրիստոս Աստուած մեր , որ վասն անբաւ մարդասիրութեանդ քո խոնարհեցար 'ի հայրական ծոցոյ և առեր մարմին 'ի սրբուհւոյ Աստուածածնէն Մարիամայ և զմահ խաչի յանձն առեր և պատուական արեամբդ քո զմեզ զամենեսեան 'ի ձեռաց մեղսաւոր իշխանին ազատեցեր , աղաչեմ և զբազմամեղ անարժան ծառայս քո զՀեթում Կուսանցոց 'ի ծովացեալ մեղաց իմոց , զի դու ես ողորմած գթած Տէր մեր , որ յամենայնի կարող ես թողուլ զմեղս յանցաւորաց , և քեզ ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ վայելէ փառք և պատիւ յաւիտեանս ամէն » :

— . Ի միւս երեսն .

« Ո՛վ եղբայր , յիշեա սակաւ գրիս գրաւղն 'ի քո սուրբ աղաւթս և զմեր արեան մերձաւորքս , և Աստուած զքեզ յիշէ յիւր սուրբ արքայութեան՝ քո արեան մերձաւորաւք . Աւետարանիս մեզ պարգեւողին այլ ողորմի ասացէք , և Աստուած ձեզ պատրաստէ , ամէն , Ո . ամէն . ճՃ ճՃ օօ ււ յյ աա » :

« Արդ յիշեցէք զվերջին ստացաւղ սուրբ աւետարանիս զմահդասի Սարգիսն և զհայրն զԱսլանն և ծնողն զխունարին և զկողակիցն զփամ խաթունն և զամենայն արեան մերձաւորքն զննջեցեալքն 'ի Քրիստոս, և Աստուած յիշողացդ տացէ զփոխարէնն ձեզ ամէն »:

« Է յիշատակ Սավաթիոյ սուրբ Աստուածածնին, խնամաւղքն սուրհնին Աստուծոյ. գրեցաւ սակաւ գիրս ԹՎն. ՌՀ. ձեռամբ Բարդուղիմէ քահանային և կայոյն՝ աւսլան և կազմ. կար մեր այս էր, ով եղբարք. Ցի-չեա. եա »:

—. Ի սկիզբն Ղուկասու.

« Ով սուրբ Ղուկաս բժիշկ մարմնոյ
Նախ՝ և յետոյ եղեր հոգւոյ,
Զիմս Տիրատրոյ մեղք՝ Տեառն քո
Մաղթեա մաքրել սեռիւն իմոյ:
« Այլ թէ զՂուկաս եզն է՛ր գրեցին,
Զի որպէս նա հերկէ զգետին,
Երկին անխոնջ վասն պտղին,
Նոյնպէս երկար է բանք նըմին »:

—. Ի վախճան Ղուկասու.

« Ողորմեա Տէր ամենայն հողածնի և ինձ անարժանի. ողորմեա տէր ամենայն ծնընդեան աւազանի և ինձ անարժանի. ողորմեա տէր ամենայն քահանայի և ինձ անարժանի և ցոփի. ողորմեա տէր ամենայն եկեղեցւոյ սպասաւորի և ինձ անարժանի. ողորմեա տէր ամենայն քո պատարագողի և ինձ անարժանի. ողորմեա տէր ամենայն յանցաւորի և ինձ յոյժ անառակի. ողորմեա Քրիստոս Աստուած ամենայն երիտասարդի և ինձ թըշուառականի. ողորմեա տէր ամենայն հոգ-

ւով հիւանդի և ինձ բաղձավէրի . ողորմեա տէր ամենայն հոգւով աղքատի և ինձ յոյժ թափուրի . ողորմեա տէր ամենայն մեղաւորի և ինձ որ քան զամենեն աւելի . ողորմեա տէր ամենայն տնանկի և ինձ որ չկայ բնաւ ոտացս տեղի . ողորմեա տէր ամենայն տարակուսի և ինձ որ անճարակակիր մնացի . ողորմեա տէր ամենայն աշխարհի և ինձ որ ամենայն մեղօք եմ գարշելի . բարեխօսութեամբ քո սուրբ ծնողի յաւուրն ահեղ դատաստանի . ողորմեա քո արեամբ գնեալ ծառայի , տեսոյդ արա վմեզին արժանի , զի անդադար աւրհնեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգի . . . . »:

— . Ի միւս երեսն .

«Արդ ցանկացող եղեալ այսմ լուսա-
զարդ և հոգեւոր բուրաստանիս որ կոչի
սուրբ Աւետարան՝ տիկին Եղներ և Թոռն իւր
պարոն Թորոսն որ գնեցին զսա 'ի հալալ ար-
դեանց իւրեանց և եդին յիշատակ 'ի ձեռն
Գանիէլ երիցու , որ կարդայ և յիշատակէ .
և Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն : Ի
թվին . ՉԿԹ . » :

— . Ի միւս երեսն .

«Արդ և Ղուկաս սքանչելի
Զաւետարան իւր ցանկալի
Յետ ութ ու տասն անցեալ ամի
Զարչարանացըն Քրիստոսի
ՅԱնտիոքու քաղաք մեծի
Գրեաց լեզւով սոյգ՝ Ասորի
Իսկ որք ասեն ըզՂուկայի
Աւետարան Յունով լեզուի .
Այս զիարդ , յայսմ վայրի
Յոյժ մեղադիր վասն այս լինի

Մեծն Եպիփան երանելի ,
Զթարգմանելով ումեք մարթի
Լեզուով առ այլ և ստոյգ գտցի ։
« Եւ զի ինքն իսկ ի յԱսորի
Լեզուէն մեկնեաց ջանիւ մեծի
Զաւետարան իւր անթերի
Ի Յունարէն Հելլենացի
Որպէս և գրեալ կայ այսպիսի
Ի պատմութիւն սուրբ հարցն յայտնի ,
Զոր և պատմէ եկեղեցի
Յիւր պատմութիւն անծածկելի .
Եւ Հաւր տացուք փառք անմահի ,
Որդւով Հոգւոյն անլռելի » ։

— . Ի միւս երեսն . զՅովհաննէ .

« Իսկ զՅօհաննեայ այսպէս ասին ,
Թէ յետ յիսուն և մի ամին
Վերանալոյ Տեառն յերկին ,
Մինչ քարոզէր զգործս բանին ,
Ի Դեմետրիանոսէին
Հռովմայեցւոց թագաւորին ։
« Արտաքսահման եղեալ նորին
Առ 'ի Պատմոս կոչեալ կղզին ,
Երեքտասան ամ անդ ինքնին
Վասն Աստուծոյ եկաց բանին
Մինչև յաւուրս Ներոնին
Որ յետ նորա էր արքային .
Ապա հանեալ արձակեցին ,
Եւ անտի յետ դարձեալ նորին
Ի յաշխարհէ Ասիային ,
Եւ բնակեցաւ 'ի քաղաքին
Ի յԵփեսոս և անդստին
Զաւետարանն իւր խնդրեցին ,
Եւ նա գրեաց լեզուով Յունին ,
Որ է բարբառ Հելլենացին .
Եւ առաջնորդ եկաց նոցին

ՅԱսիացւոց եկեղեցին ,
Զորս զկնի արձակմանին
Եկաց և ամս տասնեկին .
Այլ թէ ո՞րքան յետոյ Փրկչին
Զարչարանացն ամս 'ի մարմին
Եկաց այլ և Ն· ամս ոքին՞
Եօթանասուն և հնգեսին ,
Եւ 'ի յետոյ քան զբնաւին
Սուրբ առաքեալսն ամենեսին ,
Նա փոխեցաւ յերկինս վերին ,
Ցանանց հանգիստ և երկնային ։
« Այլ 'ի յառաջ մինչ կենդանին
Էր և խնդրեաց իսկ զերեսին
Աւետարանին և փոյթ բերին
Ցինքն՝ անդանաւր ուր և կային ,
Զնախնկի գրեալն զՄատթէին
Յերուսաղէմ ածեալ մուծին ,
ՅԱղէքսանդրէ զՄարկոսին ,
ՅԱնտիոքայ ըզՂուկային .
Եւ միացոյց որպէս գրեցին .
Նախ զՄատթէ , Մարկոս զկնին ,
Ապա զՂուկայն զհետ միջին
Եւ յետ նոցա զիւրըն վերջին ,
Ի փառս Հաւր անսկզբանին
Եւ 'ի յՈրդւոյ ծնունդ նմին
Եւ սուրբ Հոգւոյ բղխման նորին ,
Երիս անձանց կամացն 'ի մին ,
Որում որք եմք հանուր մարմին ,
Երգեմք զփառս 'ի միասին » ։

— . Ի միւս երեքն .

« Աստուածաբան սուրբ Յօհաննէս ,
Զիս Տիրատուր մեղաւք ալէսպէս ,
Խնդրեա մաքրել յախտոյ տղմէս՝
Քում Տեառն որ է 'ի քերովբէս ։
« Իսկ զՅօհաննէս՝ արծուանըման,

Թուեաւ մնաւք անհնարական ,
Որ 'ի սպառմել բանիւ մարդկան
Ձանձառն լինիս հանրական ։ »

Աղաչեմ զեղկելի գրիչս զՏիրատուր յիշել 'ի Տէր Աստուած » ։

———

1. Աւետարան մեծր , մագաղաթ .

—. Ի սկիզբն Մարկոսի աւետարանին .

« ԶԳրիգորիս Սըսցի զանպիտանս 'ի գըրչաց և թարմատար նրգեցող յիշեսջիք 'ի քրիստոս, և զստացաւղ աւետարանիս զվարդապետն Գրիգոր. և տէր Յիսուս յիշողացդ և յիշելոց ողորմեսցի . ամէն ։ ՈՋէ. գրեցաւ ։
« Ձեռամբ անպիտան գրչի Գրիգորիսի յանապատի Սանդրուլ կոչեցեալ 'ի ժամանակիս յորում բարեպաշտ թագաւորն Հեթում և աստուածասէր թագուհին Զապէլ անուանեցին զսա իւրեանց հովանոց , և դեռածին մանուկն իւրեանց էր ամի միոյ և ամսոյ , որոյ տէր Աստուած տացէ ժամանակ բարի պարագայց ամաւք խաղաղանալ յայսմ կենցաղի » ։

« Ո՛ պատուականդ իմ Գրիգոր վարդապետ յիշեա զեղկելիս Գրիգոր և սխալանացս որ 'ի սմա անմեղադիր լեր , զի այդ էր կար մեր » ։

—. Ի վախճան Յօհաննու աւետարանին ։

« Յամի վեց հարիւրի
Եւթնից տասանց եւթնեկի ,
Յարքայութեան Հեթումի
Քրիստոսասէր թագաւորի ,

Եւ 'ի Հայոց դիտապետի
Սուրբ և ամբիծ հայրապետի
Որում Կոստանդին անուն կոչի ,
Կատարեցաւ տառ մատենի
Քրիստոսական պատուիրանի
Աւետարանս հռչակելի ,
Ձեռամբ իմով Գրիգորիսի
Թորմատար գրչագրի
Եւ սուտ անուն երգեցողի ,
Ի հրամանէ սպասաւորի
Սիրեցելոյ վարդապետի
Եղբօր մերոյ Գրիգորի ,
Ի վայելումն պանծալի
Իւր ձեռնասուն աշակերտի ,
Որ է շնորհաւքն Քրիստոսի
Առաւելեալ յամենայնի ,
Պաւղոս անուն իւր ճանաչի ։
« Արդ որք 'ի սոյն տառ պատուելի
Վայելէք սիրով ուրախալի ,
Առցէ յաղագս աւրինակի ․
Սա է ընտիր և գովելի ,
Ի գրչէ յոյժ ճարտարի ,
Ուռհայեցի Կոստանդընի ,
Փոխակերպեալ յայս քարտենի ։
« Աղաչեմ յիշմամբ բարի
Ապագայից մահու զկնի
Ջանխատող ամին գրի
Եւ զստացող սորին նիւթի ,
ԶԳրիգորիս ընդ Գրիգորի
Սրբարան վարդապետի ,
Արժանի յիշատակի
Արարէք , սուրբք 'ի մարմնի ․
Եւ Բաբունին սուրբ և բարի
Ստեղծաւղն էիցս համայնի
Մեզ և ձեզ ողորմեսցի ,
Որում պատիւ ընծայեսցի

Եւ փառք Հօրն իւր անեղի
Եւ Հոգւոյն համապատուի,
Այժմ և յաւէտ յաւիտենից.
Ամէն ամենայնիւ յիրաւի »։

— Իսկ կողքին աւետարանին՝ տարբեր դրոշմ գրեալ. « Ի Թվ. ՊՀԶ. 'ի հայրապետութեան Տէր Գրիգորի և յառաջնորդութեան Տէր Մխիթարայ, Աստուծոյ սիրական աստուածասէր և բարեպաշտ քրիստոնեայս մղտեցի Յոհանէս գնեց զսուրբ աւետարանս 'ի յԱստուածատուր քահանայէն Իգ. Փլորի ի յիւր հալալ յընչիցն և 'ի յարդար վաստակոցն. և ետ 'ի Պաղալու եկեղեցին 'ի սուրբ Սարգիս յիշատակ իւր և ծնողացն իւր Գառնուկին և մօրն Ուստիանէն, և մի՛ ոք իշխեսցէ յափշտակել զաւետարանս կամ 'ի քահանայից, կամ 'ի սարկաւագաց, կամ 'ի ժողովրդոց, կամ գողանալով, կամ տիրելով, այլ կացցէ 'ի հրճուանս սուրբ եկեղեցւոյս 'ի գիւղաքաղաքիս 'ի Պաղալայ 'ի սուրբ Սարգիսն. և որ ոք յանդգնի հանելոյ զսա 'ի սուրբ եկեղեցւոյս նա այնպիսին անիծիւք լիցի և բանադրանաւք 'ի սուրբ հայրապետացն և 'ի սուրբ եկեղեցւոյս, և որ ոք կարդայ կամ աւրինակէ, Աստուած ողորմի ասէ մղտեցի Յոհանէսին, և ամենայն արեան մերձաւորաց և կարդացողաց և լսող պահողաց »։

14 Առձեռան։ — Ի վերջն Մատթէոսի գրեալ. «Յիշեցէք զՄէթ սուտանուն երէցս, որ զսուրբ Աւետարանս կազմեցի։ Յիշեցէք զՆաղանդ անուն հաւատարիմ կին, որ գնեց և կազմել ետ։ Եւ Աստուած զձեզ յիշէ. ամէն, և որ զամէնն ասեն։»

« Միւս քակեցին զեկեղեցիքն յԵզնկան և 'ի Խայլքն։ Ո. վայ ինձ մեղաւորիս »։

— . ի վերջն Յօհաննու. « Զկապեալս գրոյս զմեղաւոր հոգւս զՊետրոս քահանայս ծնողաւք և ամենայն ազգականաւք յիշեսջիք 'ի Քրիստոս և մեղաց թողութիւն խնդրեցէք 'ի Քրիստոսէ, և որք յիշէք, յիշեալ լիջիք 'ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեան» :

Յիշատակարան 'ի վախճան աւետարանին.

« Աւրհնեալ ես ամենազաւր Աստուած ամենակալ յամենայնի միշտ հզաւր և անքննելագործ, որ տաս միտս տարակուսելոց 'ի մէջ ունայն կենաց և խարող աշխարհիս որոց և կամիս, զի 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն, լոյս ծագես 'ի սիրտս նոցա զի մի՛ ունայն վաստակեսցին, այլ ուղիղ վարուք և բարի գործովք կացցեն յայսմ աշխարհիս, զի 'ի հանդերձեալ անեղ անհաւոր բեմիդ կարասցեն կեալ յանդիման ատեանդ և փրկչիդ Յիսուսի Քրիստոսի տուողիդ ամենայն բարեաց հոգւոց և մարմնոց :

« Որոց փափագող եղեալ յուսոյ գալստեան Աստուածորդւոյն, կին ոմն աստուածասէր, անուն նորա Հնազանդ և որդւոյն իւրոյ Տիրուր, և գնեաց զսուրբ Աւետարանս զայս յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց ; հաւրն իւրոյ Սէթին և մաւր իւրոյ Գուհար խաթունին և քուրոջն իւր Մարիամ թագին, և հաւրեղբաւր իւրոյ Զատիկարին և խաչարին. 'ի թվին Հայոց ՊԾԳ. գնեաց և ետ յիշատակ 'ի խոյկէն . . . » :

« Ես Հնազանդս գնեցի զսուրբ Աւետարանս 'ի հալալ արդեանց իմոց և տուի Գրիգոր երիցու որդւոյ խաղաղութեան, որ այլ մարդ իշխանութիւն չունենայ 'ի վերայ սուրբ Աւետարանիս, ոչ ազգ, ոչ որդի և ոչ գեղ-

խըտիքս. Թէ կենայ թէ գնայ Գրիգոր երէց ինքն պահէ. ոչ ծախէ, ոչ պահէ, այլ կարդայ հանապազ, և ով առնու և կարդայ խնամով պահէ, և զԱէթ աբեղան յիշէ ըղկազմողս »:

—. Հոս հասած էր գործոյս տպագրութիւնը, և ահա Հայրենիք լրագրոյ 503 թուով հրատարակուած Ամասիայէն մի նամակ, 1879 յունվար 18 թուականով, կ'աւետէ Համալսարանական ընկերութեան արդիւնաւորութիւնը, և Ս. Մեսրոպեան երկսեռ վարժարանի մը բացումն. անոր խնամակալք և խնամակալուհիք են: Ահա ուրախառիթ լուր. և սփոփանք իմ զգացած ցաւոց:

## ՋԻԼԷ ՔԱՂԱՔ

Մայիս 27. մեկնեցանք Ամասիայէն, մեր Միհրդատայ դաստակերտէն և Արշակեան Գագիկի, Կարսի արքային, վերջին ապաստանարանէն, հին շէնքերով և անունով իսկ -Ամասիա- Հայ քաղաքէն, դէպ 'ի Ջիլէ քաղաք: Մի և նոյն կիրճ կը շարունակուի իբր երկուք ու կէս ժամ. Իրիս խոժոռ ու խոտոր, թանձր ու կարմիր տիղմերով պղտոր կու գայ, երկու կողմն եղած թթենիք և այգիք ոռոգելով: Մեր ձախ կողմն կը թողունք Ս. Յոհ. ուխտատեղին, ուր երկու կտոր փայտեայ յարկեր շինուած են Նոր՝ Հայոց և Յունաց: Նոյն կողին վրայ դարա-

վին կից՝ տաճարի մը հետք կ'երեւի. տեղ-տեղ ալ ապառաժի պատռելով փորուածն քարերը, և նոյն առուն շարունակուած. այս անցքով ջուր կը բերուէր եղեր գետէն քաղաքի մէջը. ասիկայ կ'անուանեն տեղացիք Ֆէրհատ Նէհրի, որ Հայք կը հասկընան Ակնըտրոյ չէնէ: Այս առուն իբրև մեծագործութիւն, իր վէպն ունի, և Ֆէրհատն իբրև դիւցազն և իբրև սիրահար սիրուհւոյ մը. առուէն վեր բարձրացած քարալեռին գագաթան վրայ կը ցուցնեն Ֆէրհատին գերեզմանը, ուր սիրուհւոյն քով ինկած է:

Կիրճէն դուրս կ'ելնենք, ուր աղբիւրի մը քովէն կ'անջատուի Թոքատ գնալիք մեծ ճանապարհ, կամ Բաղդադի ճէօփէն, Թուրհալայի վրայէն: Մենք կը խոտորինք 'ի յաջ, և ահա մեր աչաց առջեւ կը տարածի Կէլքիթէն օվասին, փոքր հովիտ մը, մացառոտ, ծառաւէտ և խոտաւէտ, ուր Թրքաց և Չէրքէզաց գեղեր կան: Անդէոց երամ խուռն կը ճարակին հոս, գէր և կայտառ, զուարթ և արհամարհոտ նայուածքներ կը ձգեն անցորդին:

Փայտաշէն խախուտ կամուրջով մը անցանք գետը: Ահեղ էր հոս Իրիսին կերպարանքը, հսկայի մը նման, որ դեռ դադրած մինէր յաղթական արշաւանքէ. իր աջ ու ձախը և միջեւը ձեւացած աւազէ կղզեաց վրայ շատ մը հաստաբուն ծառոց դիակներ ձգած էր արմատախիլ, զորս խորտակած էր

իր կատաղութեամբ, և տեղ տեղ արեան մութ գունով թանձր տիղմեր կուտած ։

Դարձեալ կիրճ. և կ'սկսինք բարձրանալ Ալթաղաճ լեռը, որ կը տևէ իբր երեք ժամ. մացառոտ է և սաստիկ զառ 'ի վեր, քարուտ և բարձր, որոյ գագաթէն բոլոր չուրջ եղած մեծ լերանց գլուխները կ'երեւին. Մարգուանու հովիտ եւ անոր լեռները, Եըլտըզ տաղին, որ այդ կողմանց ամենէն բարձր լեռն է՝ և Սեւաստին մօտ ։ Ալթաղաճի կողերուն վրայ Գըզըլպաշներու գեղեր կան. Մեր ուղին երկիւղալի է. բայց մեզ հետ Չէրքէզ ոստիկան ունինք . . . ինչե՞ր կը պատմէ, ինչե՞ր կը ճառէ . . . ։

Լեռան միւս երեսը զառ 'ի վայր քիչ է. Զիլէն կ'երեւի. կ'իջնենք աւելի նեղ և քարուտ կիրճ մը, ուստի կը հոսի վտակ մը. Մօտ ընդ մօտ ջաղացքներ կան, աստ ու անդ այգիք և ծառաստանք, բայց թթենի՝ ոչ ։ Այս վտակի ջուր կ'ոռոգէ և կ'արբուցանէ Զիլէն ։ 8 ժամ է Ամասիայէն հոս ։

Զիլէի դիրքը հովտի մը վրայ է, գեղեցիկ. և իր չուրջ այգիք և ծառաստանք, մշակեալ ընտիր անդաստանք, յորս և յայն կայս կլորակ բլրակներ ։ Բուն բերդ բլուրի մը վրայ է, որոյ պարիսպները քակած և զօրանոց շինած են. քաղաքի շէնքերը բաւական տարածեալ. Հայք ու Տաճիկք գրեթէ խառն կը բնակին. փողոցներ անմաքուր, տներ անձեւ, հարուստներ աղքատ. կա-

նայք էրիկ մարդու շալվար կը հագնին՝ բայց սաւան մը կը կրեն, սատրիկ փաթաթուած․ բոբիկ կը շրջէին ։

Զէյթ իւր դիրքով այս կողմերու շատ քաղաքաց հետ յարաբերութեան յարմարութիւն ունի, ուստի և շատ անուանի է Զէյթ ֆանոյէրէն, ուր ամեն տարի դեկտեմբեր ամսոյն կու գան ոչ միայն իր շրջակայներէն, այլ և Հալէպէն, Շամէն, Գաղատիայէն, Կեսարիայէն բազմութիւն վաճառականաց, և մեծ առուտուր կ՚ընեն․ իսկ այժմ ինկած է այս ֆանոյէրը ։

Զիւէի մէջ կը գտնուին տախական գրեթէ ամեն տեսակ արհեստներ և արուեստաւորք, մասնաւորապէս խաղախորդութիւն, (տաղաղ), որ Տաճկաց ձեռքն է, Հայեր զրկեալ են այս արուեստէն․ Տաճկներ կ՚ըսեն թէ՝ «Մեր ծէրը չհաճիր»․ իբր թէ նուիրական բան մը եղած լինէր․ մեծ շահ կը քաշեն ասկէ, վասն զի շատ տեղեր կը ղրկուին հոս բանուած կաշիներէն ։ Ծաղկեալ է նաև բամբակէ ճերմակ կտաւ գործել, որ ընտիր է ու դիմացկուն, բայց բամբակը Խարբերդէն և ուրիշ գաւառներէ կու գայ․ շատ տեղեր կը ղրկուին Զիւէի կտաւներէն ։ Այնպէս նաև մանխաս, և այծու մազէ ու կանեփէ չուաններ, մեծ ու պզտիկ տոպրակներ, և այլ նիւթեր, որոնցմով աղէկ չա՛ ունին ։

Զիւէ զինուորական նկատմամբ ալ նշա-

Նուէր է իւր անտառիկ կիրճերով, և 'ի Ձմեռն կարեւոր տեղ մը եղած է ։

Քաղաքիս արեւմտեան կողմն իբր տասն վայրկեան հեռի Սէվէնէչ անունով բլուր մը կայ, զոր Պուղլուճա ևս կ'անուանեն. աստ տորոտը տարածեալ են շատ մը այգեստաններ. բլուրն ամբողջ դերբուկններով լի է վերէն վար շուրջանակի, նոյն իսկ այգիներուն մէջ չէնքերու աւերակներ կան ։ Աստի կը հանուին երբեմն քարէ օծեներ, խարիսխ և խոյակներ. աստի գտնուած էր քար մը, իբր մի մէթր երկայն, վրան մարդու կերպարան քանդակուած, որոյ դէմքը մուրճով ձեգձեգած' և աննշմարելի ըրած են. գլուխը տոքքէ փաթթածի կը նմանի. ձեռաց մէկն փակ և կշռէն կախ, իսկ միւսով ափին մէջ տաշտի ձեւով բաժակ մը բռնած դէպ 'ի բերան կը տանի ։ Այն քարը Հայոց եկեղեցւոյն բակը ձեռւելի մը գերեզմանի վրայ ձգուած է ։ Դրամ և ուրիշ հնութիւններ ալ կը գտնուին այն հողերու մէջէն ։ Հաւանական է կարծել թէ այս բլրոյն վրայ կանգնած է եղեր Անահտայ հռչակաւոր արձանն ։

Երկու բլուրներ ալ քաղաքի հարաւային կողմն կան իբր քառորդ ժամ հեռի. մէկն' որ քիչ մը մեծ է, կ'ըսուի Կողէ տաղը, որոյ գագաթը գերեզման մը կայ' հռմանուն, և ստորոտը' ուստի ջուր կը բղխի, գերեզման մը կայ Ալի տաղը անուն, երկուքն ևս ուխ-

Զէյթի Հայք ամբողջ Թուրքերէն կը խօսին ; երբեք Հայերէն չգիտեն․ այնչափ կը զարհուրին տաճիկներէն, և կատարելապէս ըստրուկ են անոնց առջեւ ։ Երբ կառավարութեան կամ իրենց նեղչաց վրայ տեղեկութիւն կը հարցընէի, մէկն կ'ուզէր կմկմալով բան մը ըսել, միւսներ կը ծածկէին, մէկ մէկէ անվստահ էին, և կը դողային չըլլի՞ն թէ դուրս լսուէր իրենց ձայն ։ Ազգութեան ոգին մեռած էր, և ժամանակ դեռ չէր կրցեր զարթուցանել զանիկա, կեանքի ճառագայթ մը երբեք ծագած չէր հոն ։ Ո՞վ էր պատճառ անոնց . . . ։ Աղքատ չէին, բայց մուրացկանի նման էր իրենց հագուստն և ներքին ու արտաքին երեւոյթն, որպէս զի չցուցընեն թէ բան մը ունին, և այս անոր համար, որ Թուրքեր կը խլեն եղեր իրենցմէ՝ եթէ աղէկ բան մը տեսնեն ։ Այսու ամենայնիւ կանանց և աղջկանց ճակատները ոսկեշար էին ։ Արդարեւ Զէյթի Թուրքեր չափէն աւելի մոլեռանդ և անկիրթ են, կատարեալ բարբարոս․ նախատանօք կը վարուին Հայոց հետ․ մարդու տեղ չեն դներ․ կը զրկեն, կը խլեն, կը հայհոյեն, կը ծեծեն, և Հայք խոհեմութիւն կը համարին կրել և լռել, որպէս զի կարող ըլլին ապրիլ, եթէ ապրիլ էր այս ։ Ննջեցեալը բերած ժամանակ կը քարկոծեն, քահանայն փողոցէ անցած ատեն լամուկները երամով ետեւէն կը վազեն աղաղակելով «Քէշի՜շ, օ՜չ, օ՜չ . . . » ։ Նոյն

օրեր ժամկոչը գիշեր մը չարաչար ծեծեր էին, և քիչ մը դիմանալուն համար, դանակ քաշեր էին վրան սպաննելու համար, հազիւ խոյս տուած էր։

Այս տեղի Միւֆթիէն գոհ էին Հայք, և այն՝ Կ. Պոլիս Մէպուս գալէն ու դառնալէն զինի, Դիտելի է որ Զիլէյն Պոլիս պանդուխտ չկայ և ոչ վաճառականութեան համար եկող։

Այս քաղաքի մէջ կը բնակին մի միայն Հայք և Թուրք, Յոյնք եղեր են յառաջ, իսկ այժմ քանի մը վաճառական և եթ կը գըտնուին երթ և եկ. Յունաց մէկ եկեղեցի կայ առանց քահանայի, թէպէտ 'ի հնումն եպիսկոպոսանիստ է եղած, ինչպէս վերը տեսանք։ Հայոց ալ մէկ եկեղեցի կայ բաւական ընդարձակ, Ս. Յակոբ անուն, որ ունի կալուածներ 12 խանութ, 2 տուն և մէկ ճէհրիլիկ. բակի մէջն է գերեզմանոց, քանի մը սենեակ, վարժատուն և չքեղ Առաջնորդարան մը։

Զիլէի Հայք արտաքուստ արժանի վիճակ մը ունէին. 200 աշակերտներ կ'երթեւեկէին վարժարանը, ուր հասարակ ընթերցանութիւն և գրել կը սորվէին, սակայն առանց երբէք հայերէն խօսելու և առանց հասկնալու. տեղական տիրացու մի էր իրենց վարժապետ՝ Թրքախօս, և իրենց ծնողք Թրքախօս։ Բոլոր քաղաքի մէջ երկու քահանայք կային Հայերէն հասկցող։ Կայտառ մանկունք և տիրացուք շատ կանոնաւորութեամբ

կ՚երգէին եկեղեցին ու կ՚ընթեռնուին ընթերցուածները անսխալ, բայց և ոչ բառ մը հասկընալով. իբրև մեքենայ, կամ իբրև զծնծղայս որ ղօղանջեն: Կարի ջերմեռանդ իրենց պահքին և օրէնքին. բայց քրիստոնէութեան բուն հոգին, և անոր պտուղ՝ գործք, չունէին: Մի և նոյն ժամանակ կարի ջերմեռանդ էին օղիին. և խաբէութիւնը խոհեմութեան փոխանակ ունէին: Զիս ալ քանի մը բաներու մէջ խաբեցին: Մայիս 28, որ երկրորդ Ծաղկազարդի տօն էր, Մեծահրաշի կիրակին, Ս. Եկեղեցւոյ մէջ քարոզ խօսեցայ իրենց, և թաղականները գրեթէ երկու որ ամբողջ յորդորեցի որ արթնուն և վարժարանի համար դրամ չխնայեն. իրենց մանկանց մայրենի լեզուն և ուսմունք ուսուցանեն, եւն, եւն: Թէպէտ կը խոստանային, բայց յայտնի էր թէ չէին համոզուած. մեծ համարում ունէին իրենց Առաջնորդին վրայ. ուստի Սրբազանին առաջին հոգ պիտի ըլլար ասոնց աչքերն ու դարմանը. Բայց ո՞վ էր իրենց Առաջնորդն. Եւդոկիոյ Ճգնաւորեան Յակոբ եպիսկոպոսը, զոր պիտի տեսնենք իւր տեղը:

Զիլէի քաղ. կառավար. է Գայմագամութիւն, Ամասիոյ Միւթասարրիֆութեան ներքեւ: Եկեղեցի 1. Ս. Յակոբ: Վարժարան 1. Ս. Մեսրոպեան: Ծախք վարժարանի 3400 ղրշ. Եկեղեցիէն: Ուսանողք 200 մանկունք: Թիւ Հայոց 2012, որոց 12 Բողոքականք և 93 Մաղագործք: Թուրք 16688:

Չիլլի եկեղեցւոյ ձեռագիր, ձեռատետրերը տեսնել ուզեցի. ափշեցայ, երբ քահանան պատմեց թէ քանի մը տարի առաջ շատ ձեռագիրները եկեղեցւոյ որմին ներքեւ թաղած են, ինչպէս նաեւ վախճանեալ քահանայի մարմնոյն հետ գերեզմանը դրած։ Աւելի արժանի չէի՞ն իրենք ողջ ողջ թաղուելու։ Բայց և յաջողեցայ հետեւեալները փոշիներու մէջէն բերել տալ ու նայել։

Թէպէտ բաւական թուով ձեռագիրներ կային, բայց ես անենքը չկրցի տեսնել, այլ միայն հետեւեալները, և անոնց յիշատակարաններէն օրինակեցի։

## ՁԵՌԱԳԻՐՔ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

1. Մաշտոց. «... Ով սուրբ ընթերցող, անմեղադիր լեր, զի ծածուկն և շատայն տպարէս լինի բանն. վասն յիշելոյ է պիտանի. և մեք աղգի ադգի և յոյժ տարաբերիմք։ Զմեռեալս հոգւով յիշեա ով ժառանգող»։

:ՏՐ ՈՒՏՐՄ || . : : | : |||| : | : / : | ⁞ |||| ⁝ : || :

«~ յա- է ս է ո - ն ։ Որ ՋԺԳ. թուականին ծնայ զտառս ՚ի գեօղն որ կոչի Խալկին, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին. ամէն։ Եւ զիս զանպիտան զտէր Թովմայն, որ աշխատեցայ և գրեցի զտառս. ով որ զիս յիշէ, նա Աստուած զինքն յիշէ յերկնից արքայութիւնն. ամէն»։

— Ի ներքոյ, այլ գրով գրեալ. «Զայս գրողին Աստուած կարողութիւն տայ։ Թուա-

կանխս ՌՄՁԴ գրեցաւ, որ է Թովմայն » ։
« Յիշատակ է սուրբ Յակոբ եկեղեցւոյն » ։ 3

1. Մաշտոց քահանայից. « . . . Գրեցաւ
սա 'ի դիւղաքաղաքն Մարզուան, ընդ հովա-
նեաւ Ս. Աստուածածնի տաճարիս, 'ի Թուա-
բերութեանս Հայկազեան տումարիս հազար-
երորդի, ութծուներորդի և Ե. արարարդի,
օգոստոս ամսոյ ԺԲ. աւուրն ուրբաթ, ձեռամբ
յոգնամեղ և անարուեստ սուտանուն Միքա-
յէլ դպրի, 'ի վայելումն տէր Աստուածա-
տուրին . . . » ։ — Ի Լուսանցն. « . . . Գրե-
ցաւ Թուին ՌՁԵ. Մաշտոցս Մարիամին և
ծնողաց նորին հօրն Ովանէսին և մօրն Փա-
շային. և որք զողորմին ասեն ։ Ես Եղ. ստակ ։
«Յիշատակ է Մաշտոցս Աւետիքին. եսուր իւր
աղջկան հոգւոյն կէս ղուրուշ. Աստուած ո-
ղորմի իւր հոգուն և իւր զաւակին ։ « Յիշա-
տակ է Մաշտոցս Դաւիթին հոգուն համար
ետուր կէս ղրշ. Ամէն » ։ « ՌՂԲ » ։

1. Անտորան մագաղաթ, պատկերա-
զարդ ։ « Փառք ամենասուրբ Երրորդութեան
. . . որ և զմեզ մեղուցեալս փրկեսցէ . . .
և զծնաւղսն իմ զտէր Ստեփաննոս քահա-
նայն, որ մականուն Ղարջ տէրտէր ասի, և
զմայրն իմ զՋմրութն, և զեղբայր նորին ըզ
Մաղաքիա զմեծ րաբունապետն որ բազում
աշխատանս ունին 'ի վերայ իմ և տկարու-
թեանս իմ սփոփիչ . . . և զքոյրն իմ զՀե-
ղինան և զդուստրն իմ զկրկին Հեղինան որ
հանգեաւ 'ի Քրիստոս ՌԾԶ. արար աշխարհ
զզաւառածեալ ծերս անմխիթար, որ եղե-
ւան մեղաց իմոց ։ Եւ հասակ յետոյ տկարս
մարմնով, այլ և հոգւով յետնեալս 'ի ժա-
մանակս ես Աղէքսանոս գրիչս 'ի ծերու-
թեան ժամանակիս, հասեալ կալայ, որ աշխա

վատեալ, որ աշնոցով հազիւ կարէի նկատել, և ձեռս դողայր, որ 'ի գրել և 'ի ծաղկել և նկարել զպատկերաց ոչ կարէի ուղիղ դծել. և հասուս անձին կալայ վասն յետ մնացից յիշատակի յիշման արժանի առնելոյ զիս անարժանս, որ յիշելոյ չեմ արժանի: Եղեւ աւարտումն սուրբ Աւետարանիս 'ի թուականի Հայոց ՌՃԾ. 'ի փառս Քրիստոսի...»: — Ի ստորեւ այլ գրով գրեալ. «... Յիշեցէք... զպատուական զարսն, որք բազում ջանիւ և սիրով յօժարութեամբ գուն գործեալ թափեցին զսա 'ի ձեռաց այլազգաց, տալով նոցա զկրկին գին, ազատեցին 'ի գերութենէ, ափն ունելով Աստուծոյ իւրեանց թողութիւն առնուլ և ազատիլ 'ի մեղաց և անցանաց իւրեանց. որ և ձեզ յիշողացդ ողորմեսցի... Ամէն: «Ի թուականութեանս Հայկայ ՌՃ. ամենի և չորս տասնեակ ընդ սմա թիւ բոլորապատկի, որ միշտ սովաւ կայ 'ի համարի. յիշատակ եղեալ արքն հոգելի որ 'ի Ջիլա գիւղաքաղաքն անուանի. 'ի դուռն Ս. Յակոբայ աստուածաշէն և աստուածազարդ եկեղեցի: Առ ձեզ աղերսեմք մանկունք նորոյ Սիոնի, գորով ունիլ սորին անվնաս պահել յամենայնի. և ոչ հանել կամ գողանալ և նով գրաւել: այլ թէ ոք յանդգնի նենգել սորին մնասիւ, պարտական լիցի յաւուրն դատաստանի, և տացէ պատիժ ընդ խաչահանուացն և որք 'ի սորին կարգի են. իսկ լաւ պահողքն յամենայն մնասուցն. աւրհնեալ լիցին 'ի Քրիստոսէ Աստուծոյ անպրայախտենիւ: Ամէն»: Հայր մեր":

## ԹՕՔԱԴ ՔԱՂԱՔ

Մայիս 29. Զիլէէն ելանք։ Անպատմելի գեղեցկութեամբ, ներկեալ, դեղին, կարմիր ու կանանչ գոյներով պճնազարդեալ է Զիլէի շրջապատ հովիտն, խաչխաչներու ծաղիկներով, հասկած ցորեններով և հասած խոտերով. տեղ տեղ ալ թթխթխենի արտեր են։ Հարթ ուղի է մինչև Թօքատ։ Կլոր կլոր հովիտներու բաժնուած, զորս կը սահմանափակեն մանր լեռներ։ Անմշակ երկիրներ բաւական կան՝ առատ արօտներով, այլ անջրդի։ Լեռնակաց ստորոտները Թուրքի, Չէրքէզի և Քրդաց գեղեր են. դաշտաց մէջ անդեայք խուռներամ կը ճարակին։ Հինգ ժամ յառաջ երթալով կը հասնինք Ղօզի կէօլ ըսուած եղէգնուտ շամբը. ուր կը թառին և կը թռին անթիւ սագեր, բադեր, արագիլ և զանազան թռչուններ։ Օդը կարի տօթ է և տապագին. բզէզներ, մօծակներ և խոշոր ու խայթող ճանճեր գունդագունդ կը յարձակին, կը խոցեն խեղճ անասուններն և ուղևորները, ձիոց, կովուց և եզանց աչքն ու գլուխ շարունակ կը շարժին, ձիերը անհանգիստ իրենց պարանոցը կը ցնցեն. իսկ էշերը իրենց խոշոր ականջները կը տատանեցնեն և կարճուկ ագիները անդադար կ'երերցնեն, և մերթ ամենքը մէկանց չեփորներու շառաչիւնը կ'արձակեն, այլ 'ի զուր։

անապատն կը մնայ Թշնամեաց ստուար փա-
ղանգը և արիւնախող կ'ընեն չորքոտանի հե-
րոսները ։ Մարդիկ իսկ պէտք է փաթթեն
իրենց երեսները և պաշտպանեն զիրենք այս
անվախ բանակին դէմ։ Կրիաներ, օձեր, և
այլ և այլ զեռունք ու սողունք կը վխտան
հոս, միայն արագիլներէն կը խուսեն։ Իբր
թէ հերիք չէին ասոնք ուղեւորը տառապե-
ցնելու, աւազակ մարդիկներով ալ լի է այս
վայրը։ Դազկէօլի մէկալ ծայրէն կը նշմար-
ուի Թուրքմալայի գիւղը, որ կիրճի մը բերանն
է. ուր կը մտնէ Իրիս կամ Թօզանլի գետը,
և ձորերու միջով կ'ընթանայ յԱմասիա։ Ութն
ժամ տեւեց մեր գնացքը, և հասանք Բա-
զար գեղը Թուրքաց, որ ծառաւէտ և այգե-
ւէտ փոքր աւան մ'է, ուր օթեցինք գիշերը։
Հետեւեալ առաւօտեան թէպէտ օդոյն տա-
քը չափազանց, բայց փողուն առատ ջրերու,
ծառոց հովանեաց, և փոփոխագեղ դեղերու
կը հանդիպինք, ուր Հայ բնակիչներ ալ կան.
ասոնք գիւղերն են, որ Սեւաստիոյն կը մատա-
կարարեն այնքան ձոխ ու համեղ զանազան
մրգեր, խաղող և գինի։ Մեր ձախակողմն
նստածն Քրդաց նկուղաձեւ անշուք և ան-
տաշ գեղեր, որոց բնակիչքը իրենց խա-
շինքներով մեկնած են հովասուն լեռները։
Տեղ տեղ շինուած աղբիւրներ կան. խաներ
և նշանաւոր շէնքեր ընտիր սրբատաշ քարե-
րով կերտուած, այլ ամայի, լքեալ ու ա-
ւերակ. ասոնց համար կ'ըսէին թէ Սուլթան

Մուրատ Բաղդատի վրայ գնալուն և գալուն չինել տուած է եղեր․ ապահովութեան և հանգստութեան համար։ Ուրեք ուրեք ալ Թէքքէ անունով քարակոյտներ և ուխտատեղի եղած գերեզմաններ կան, ուր տաճիկները կը բերեն իրենց հիւանդները․ սուրբ ծառեր՝ որոց ոստերու վրայ բժժանքներ են կապեր։ Թօքատին ժամ ու կէս հեռացած՝ քարաշէն մեծ կամուրջն է, որ կը միացընէ Թուրհալայի ուղին Զիլէի ուղւոյն․ այս կամուրջն ալ Սուլթան Մուրատի շէնքն է։ Ասիա ուղեւորող մը յաճախ կը հանդիպի այս երջանիկ Սուլթանին աշխարհաշէն գործոց, մեծամեծ և հոյակապ կամուրջներու, խաներու, ճանապարհներու, պանդոկներու, ևն, որոց շատերը անեղծ և պիտանի են դեռ․ ամեն բերան կ՚օրհնէ այսպիսի թագաւորի մը յիշատակ, որ իր երկիրն ու ժողովուրդը շէն ու անդորր պահելու հոգեր հոգացեր է, և երանի՛ կը կարդայ այն ժամանակին, որ եղեր է ժամանակ շինելոյ, ժամանակ տընկելոյ, ժամանակ ծնանելոյ, ժամանակ բժըշկելոյ, ժամանակ ծիծաղելոյ և կաքաւելոյ, ժամանակ քարինս ժողովելոյ և կարկատելոյ, ժամանակ խնդրելոյ և պահելոյ, ժամանակ խօսելոյ և սիրելոյ, ժամանակ գիրկս արկանելոյ և խաղաղութեան, երբ կը բաղդատեն ներկայիս հետ․ որ է ժամանակ մեռանելոյ, խլելոյ, սպանանելոյ, կոծելոյ, ցրուելոյ, կորուսանելոյ, արտաքս հանելոյ,

պտտտելոյ, լռելոյ, ատելոյ, հեռանալոյ և պատերազմի։

Քիչ մը ևս յառաջ երթալով, պարզ կը ցուցընէ իր զանգակատունն Հայոց Ս. Յովակիմ—Աննայի վանքին՝ գետոյն միւս եզերը, բարձրադիր, քաղաքի այգեստանեայց կատարը, ծառաստաններու մէջէն։ Հովիտը սպառելու վրայ է, խոր դող մը կը բացուի, շրջապատեալ լեռներէ։ Գետին ոլոր մոլոր կը հոսի, երկու կողմն դրախտներ ունենալով. այգեստանքն են ասոնք, որ իրենց մէջէն ունին բազմատեսակ մրգեղինաց ծառեր և երանգ երանգ վարդեր, որոց սքանչելի գոյնը և երանաւէտ անուշահոտութիւնը կ՚զմայլեցընեն զմարդ։ Իւր իւր ծառերուն 'ի վայր կախուած են կոյզ կոյզ կեռասներ պարպաքա ու դեղ, սպիտակ ու կարմիր. և դաստակները՝ որ սոսոց մէջէն կը սպրդին կթելու զանոնք, նոյնքան սիրուն, զգեցեալ նրբաթել շղարշներ 'ի գոյն սպիտակ և բոսոր, սոքա գօտերք են Թօքատու. Խառն ասոնց հետ երամովին ելևէջ կ՚ընեն գունեղ ու փափկափետուր թռչունք թևաքախիկ ու կարկաչաձայն, մրցելու, խլելու իրենց կտուցներով քաղցրահամ կեռասն աւարող ձեռներէն։ Իսկ վարդենեաց տակն ու վրան կը բզզայ մեղուաց պար, կը գեղգեղէ պուլպուլն սիրահար, և մանկտին փունջեր կը կապէ թուփերու հովը նստած, պուլպուլին երգոց և մեղուին տզտզոցին խառնելով իւր ճըլվլունք։

Այսպէս տխրալի անցքով մը մտանք բուն Թօքատ քաղաքը, որ ճնշուած է լեռներու և ժայռերու մէջ. անտանելի է արեւուն տաքն ու տապ. բնակիչքը գրեթէ ամենքն ալ ելած էին այգիներն ու գեղերը: Քաղաքին մէջ առատ են ջրեր. փողոցները՝ լայն ու նեղ, մաքուր և անմաքուր, հարթ և ելևէջ. շէնքերը հում աղիւսով են, այլ 'ի ներքուստ բռելալ և շքեղ. կան կարասիք և զգեստուց ձեւերը պերճ տոհմական. խիստ քիչ է եւրոպական:

Չին բերդ՝ հիւսիսակողման ապառաժին վրայ է, աւերակ: Քաղաքին մէջն ալ կան քանի մը աւերակներ, որոց մնացորդներէն և գրանց ու ճակատուց վրայ եղած շքեղ քանդակներէն, ձեւերէն ու գրերէն կ'երեւին թէ շքեղ շէնքեր են եղած երբեմն. այսպէս է Թէքմէքլըխանը, քանի մը մզկիթ, խան, եւն: Կայ և մի հնագոյն գմբէթ, որ թրծած աղիւսով է շինուած, խարխալեալ, որոյ գագաթան վրայ բոյն դրած էին զոյգ մը արագիլներ և իրենց ծիրարկով ներկեր էին այգ յարկը, որոց նորքեն հող կորած կ'ամփոփուէր աշխարհասասան Լէնկթէմուրին մէկ որդին: Ո՛վ ժամանակ. . . :

Թօքատու շուկան ճոխ է, բայց անկանոն. խանութները ցիր ու ցան: Ամենէն նշանաւոր արուեստն է պղնձագործութիւն: Արղնու մադէնէն և կէսարու մադէններէն եղած պղինձները հոս կը հալուին և կը ձուլուին,

և ամէն կը բաժնուին այլ և այլ կողմեր. հոս կը շինուին նաև ամեն տեսակ պղնձի անօթ ։ Երբեմն քաղաքիս բնակչաց մեծ մասն այս արուեստով կը շահուէին, բայց այժմ պակսած է ։ Աւելի ծաղկեալ և ծաղկելու վրայ է [illegible], կտաւեղինաց վրայ գունաւոր տիպ, բազմոցի և բարձի երես ու սփռոց, մէրմակի սորտ, վարագոյր, կերպ կերպ նաղշաներ խամ և խաս զորս բաւական քանակութեամբ կը վաճառեն ուրիշ գաւառաց, սոյնպէս և մանիսա, ևն ։ Արուեստաւորք Հայք են ։ Իբր երեք տարիէ հետէ սկսած էին խաչխաչի մշակութիւն. քաղաքի չուրջ եղած արտերը, և մօտակայ գեղերը գրեթէ ամբողջովին սերմանած էին այս բոյսը, և հասած էր անֆիոնը ճրքելու և ժողովելու օր. ո՞րքան գործ բացուած էր երկրագործաց. այր և կին, աղջիկ և մանուկ, գեղացին և քաղաքացին զբաղեալ էին սով, և աղքատները աղէկ օրական կը շահէին. կային ոմանք որ իրենց այգին անգամ քակեր ու խաչխաչ ցաներ էին ։ Մեծ քանակութեամբ թիւթիւն կը մշակեն Թօքատ և իւր գեղերը. առատաճէհրի ունին, և այլ շահաւէտ բերքեր ։

Իրիս գետը քաղաքիս շրթնէն կը հոսի, իր վրայ ունի քարաշէն գեղեցիկ կամուրջ մը ։ Այգեստանեաց մեծ մասն յայնկոյս գետոյն կը տարածին իբրև ժամու մը գնացք. վայելուչ ճաշակով տնկուած ու յարդարուած են փարդենեօք և մէջս մէջ պտղոց ծառով, և

՚ի մէջի որթ խաղողոյ. շատերն ունին առանձին աւազան, ուր մշտահոս կը թափին ջուր. ունին նաև ամառուան բնակութեան համար շնորհքով հովանոցներ (քէօշկ): Ասոնք կը ցուցընեն Թօքաթցւոց զուարճասէր կեանք և ունեւոր վիճակը, թէպէտ այժմ նոյն չէին: Թօքաթ իր այս դրախտներով և այգեստաններով արդարև գերազանց ու շքեղ է այն կողմերու քաղաքաց մէջ, իր հռչակին արժանի:

Այլ սակայն, ո՛ դեղանիդ քաղաք, քո այսքան վայելչութեամբ հանդերձ չես կարող հրապուրել Վանայ այգեստանցին. դու միշտ անբաղդատելի կը մնաս իմ հայրենեաց հետ. քեզ կը պակսին Վարագայ աղբերակունք և անմահութեան ծաղիկունք. ո՞ւր են քո սարգ այերք և սօսափուն սոսողունք. ինչպէս կարելի է զուգել քո մշտապղտոր Իրիսին խոժոռ երեսը՝ մեր վճիտ ծովուն՝ ծփծփուն, ծիծաղող, անուշ պատկերին. ո՞ւր քո ընդարձակ փողոցները, և անոնց աջ ու ձախ գլգլացող առուները, և ՚ի գնացս ջուրց տնկել սաղարթախիտ հովանաւիկու ծառերը. վերջապէս ո՞ւր են, և ես չեմ յիշեր մեր բերդին հրաշալիքներ, և հոյակապ անուան, փառաց և շինից վայրեր ու նշմարները: Ցեղ-կեցիր դու, Եւդոքսիոյ կերտուած. քեզ չեմ կարող տալ օրինակ և ոչ մեր Արտամետն միայնակ:

Թօքատու մէջ եօթն եկեղեցիք կան

Հայոց, պայծառ շինուածով և ճոխ զգեստա-
ներով, արծաթի և ոսկի զարդերով ու ա-
նօթներով. քանիներ աւելի հարուստ են
դրամագլխով և եկամուտներով. իրարու
գրեթէ կից են Ս. Երրորդութիւն, Ս. Մի-
նաս և Ս. Աստուածածին. իսկ Ս. Լուսաւո-
րիչ և Ս. Կարապետ զատ թաղերու մէջ.
Ս. Գէորգ և Ս. Քառասուն մանուկ՝ քաղաքի
երկու թեւոց ծայրերը շինուած: Թէպէտ
ժողովուրդ քիչ է, բայց իւրաքանչիւր թա-
ղեցի իր եկեղեցին ունի և ամուր բռնած
է, կարծես մի և նոյն ժողովուրդ և մի և
ազգի եկեղեցիներ չեն: Մայր եկեղեցին է,
Ս. Աստուածածին, որոյ մօտ շինուած է Ա-
ռաջնորդարանը: Առաջնորդարանի դուռն
քիչ անգամ բաց կը մնայ. և ոչ օր, և ոչ
որոշեալ անձինք կային ժողովք կազմելու:
Առաջնորդ Յակոբ եպիսկոպոս Ճգնաւոր-
եանն աւելի կառավարութեան անդամ էր
քան թէ Ազգին Առաջնորդ. դռները փա-
կելով բանալին գօտին զարկած՝ կ'երթար
կառավարութեան դուռը մինչև երեկոյ. և
իր Ճգնաւոր կոչման համաձայն՝ ամեն առա-
ւօտ եկեղեցիէն դառնալով Սաղմոս և Նարեկ
կը քաղէր: Այս ժամուս՝ գեղերէն և թաղե-
րէն բազմախուռն խնդրամատոյցներ կ'սպա-
սէին իրեն, զոր ոտքէն ձգելով, կամ
իրմէն առաջ ու ետքը ղրկելով, կ'առաջնոր-
դէր կառավարութեան: Խիստ թեթեւ էր
ազգային ժողովոց գործը. մանաւանդ մարդ

կարող է լսել, գործ չէր թողուր անոնց: ինքն Սրբազան բնիկ լինելով Թօքադու, յաճախակի իւր օրերը և ժամերը կ'անցընէր եղբօր տունը, և կը մշակէր եղբօր այգին. և Յովակիմ—Աննայի վանքը կ'երթար, ուր եղբօր ընտանիք և ուրիշ քանի մը ընտանիք կը բնակէին ամրան ամիսները:

Սրբազանը տղայի պէս հաճոյք կ'զգար ինքզինքը գովելու. գրեթէ ամեն օր իւր մեծագործութիւններ, իւր մեծախօսութիւնները՝ վերակրկնելով կը պատմէր. դատապարտուած էի մի և նոյն բաները միշտ լսել, զորս իրմէ զատ ուրիշ ոք չէր պատմէր. իւր առաքինութիւնները՝ երիտասարդական հասակէն 'ի վեր, եպիսկոպոսանալու համար Էջմիածին գնացած ատենը՝ ընծայած կաթողիկոսէն և համայն միաբանութենէն գտած ընդունելութիւնը, իւր հանճարոյն և արժանեաց վրայ անոնց ունեցած հիացումը, իւր քաղցրանուագ ձայնը, իւր մինչև այսօր Պոլիս չտեսնելուն պարծանքը, իւր անպտուղ ազգասիրութիւնները, եւն., եւն. մինչև անգամ չորկեց մեզ ըսելէ թէ՝ գիրք նայելով գողօնքներ գտած է եղեր, և գիտէ գաղտնի գիտութեանց արուեստը, եւն: — Ի՜նչ մեծ արժանիք եպիսկոպոսի մը կամ Առաջնորդի մը: Եւ սակայն իրական գործքերը, որ իւր պաշտօնն կը պահանջէր, չտեսանք: Քաղ. և կրօնական ժողովներ անուանական, Ուսումնական և Տնտեսական

խորհուրդ չկայ, տումարներու և արժանագրութեանց երեսը չտեսանք. ընկերութիւններ լքեալ, վարժարանները փակեալ։

Անտարակոյս ամեն բանէ յառաջ վարժարաններն էին մեր տեսութեան փափագ և ուշադրութիւնը գրաւող. ո՞վ կրնայ պատմել զգացածս ցաւը, երբ իմացայ թէ վարժապետաց թոշակ չվճարուելուն համար ցրըուած էին ուսանողք և ուսուցիչք։ Երբ մեր յաճախակի խնդրանաց վրայ, հազիւ արժանի եղանք քաղ. ժողովոյ Ատենապետ Էֆէնտիին երեսը տեսնելու. և երբ յուզեալ կը խօսէինք վարժարանաց վիճակին վրայ, 'ի կարգս շատ մը պատճառաբանութեանց, Ատենապետ Էֆէնտին 'ի ներկայութեան Ս. Առաջնորդին համարձակեցաւ ինձ ըսելու թէ՝ վարժարանները անաստուածութեան տուներ են, ևն. Այս Էֆէնտին մի և նոյն ժամանակ կը պատմէր թէ՝ ի՞նչ ներհուն է մեդական գիտութեանց, վեցհազարեակի վարպետ և Դաւիթ Անյաղթի անունով՝ Ա. Բ. Գ.ի թուոյհամարով կը թափանցէր ամեն գաղտնեաց՝ յերկինս և յերկրի և 'ի սիրտ մարդոյ. ունի եղեր Աղուէսի գիրք, որով ամենայն ինչ կը գուշակէ, ևն, ևն։ Ահա այսպիսի մէկն էր Իփէկեան Յօհ. Էֆէնտին, որոյ ձեռքը յանձնուած էր Թօքատու Ազգային վարչութիւնը, որ յամենայնի համընթաց կը թուէր և համամիտ Ս. Առաջնորդին։ Երանի՜ այդ քաղաքին։

խռովութիւն չյարուցանելու համար, կ'ըսէին անոնք, թոյլ տուած ենք ազգային վիճակը այս վիճակին մէջ. մեր եկեղեցիներ ու թաղեցիները ապստամբ են և մեր իրաւասութիւնը չեն ճանչնար: Կը յիշեցընէին ինձ թէ՝ երբեմն Տ. Փիլիպպոս և Տ. Կիւրեղ վարդապետները իբրև քննիչ հոս եկած և ծեծ կերած լին. ծե՛ծ, կը շեշտէին՝ ծե՛ծ. ի՞նչ էր իրենց միտքը....: — Բայց եթէ քննութեան առնուէր այդ ծեծը, տակէն ո՞վ դուրս կուգար արդեօք: — Եթէ դուք հրաւիրէք զանոնք յանուն օրինաց, և բացատրէք իրենց օգուտը, դարձեալ խռովութի՞ւն կը յառնէ. և ի՞նչ պիտի լինի այդ խռովութեան վախճանը, առ առաւելն հրաժարումն Ձեր պաշտօնէն. մի՛ վախնաք, բուն ձեր փառք պիտի լինի այդ:

Սակայն ժողովուրդն անոնց պէս չէր խօսեր. երես առ երես կ'ըսէին, թէ՝ Սրբազան, դուք եկեղեցւոյ բեմէն կ'որոտաք վարժարանաց բացման համար. կը յորդորէք, բայց չէք իրականացըներ. ժողովուրդ և թաղականք պատրաստ են, բայց դուք չէք հրաւիրեր. դուք խօսելով կ'ուզէք արդարացընել Ձեր անձը, բայց գործադրելն է բուն Ձեր պաշտօնը, եւն, եւն: Երկուստեք շատ մը խօսքեր:

Թէպէտ եկեղեցեաց բակերը ծաղկոցներ կան եղեր, բայց նշանաւոր ուսումնարանին էր Վարդանանց անունով ընդարձակ շէնքն:

Փասպանեան Գ. էֆէնտին, որ առաջին ուսուցիչն էր, և մեր գալուստը լսելով փութացեր էր իր կամաւոր տարագրութենէ, գեղերէն, գալ, եռանդոտ և արժանաւոր անձն այդ պաշտօնին. Անձնուէր ընկերութեան առաջնորդութեամբ Ս. Առաջնորդն ալ միասին, Վարդանանց դռներն բացուեցան, և գնացինք թափուր սրահներու և դրասեղաններուն այց առնել: Սոյն յարկին ներքև թէ՛ իբրև ուսուցիչ և թէ իբրև Անձնուէր ընկերութեան հիմնադիր և վարիչ, շատ եռանդ. և քրտինք թափեր էր քանի տարի առաջ Փորթուգալեան Մկրտիչ Էֆ. որոյ ճշմարիտ անձնուիրութիւնը ազգի լուսաւորութեան ամեն բարեկամաց ծանօթ է. անոր հոս եղած ժամանակ Թաքաղ նախանձելի քայլեր առեր է ազգային ոգւոյն և ժամանակի յառաջադիմութեան. բայց չար նախանձու դևը դրդեր է քաղաքիս ոսկիով զօրաւոր անձինք. բանը հոն հասեր էր, մինչև Փորթուգալեանը կապանօք 'ի Սեւաստ տարուած էր, ամբաստանուելով թէ՝ Հայոց թագաւորութիւնը վերականգնելու ջանքեր կ'ընէ սա . . . . . . . . Վային դիտելով զամբաստանեալն և լսելով անոր վրայ գրուած քըրջական եղեռն, այսպէս վճռած է. Գնացէք բաներնուդ, մի՞թէ կը կարծէք թէ այնքան դիւրին է թագաւորութիւն մը կանգնել, և այն՝ Հայոց պէս ազգի մը, որն ինչ 500 տարիէ հետէ Ալ—օսման թագաւորութիւնը չէ

կրցեր հաստատուն հիմ մը դնել իրեն։ Այսու ամենայնիւ ծանր տպաւորութիւն թողած է երիտասարդաց վրայ այս սարսափելի մատնութիւնն, և մինչև ցայսօր կը դողային այն անձինքներէն։ փորթուգալեանի օրով ու ջանքով սկսուած էր նաև աղջկանց վարժարան մը, որ այժմ մարած էր։ Այն ինչ այսպիսի յիշատակներով կը յուղուէր մեր հոգին, առաջ Վարդանանց գրկեալ և ցրուեալ սաներէն երկու պատանեակներ, հետևեալ գիրը մատուցին, զոր ընթերցողաց խղճին և զգացման կը յանձնեմ։

« Հայրենանուէր Հայրիկ.

« Դպրոցը որ կ'այցելէք, ամայի և աւերակ կը ներկայանայ ձեզ։ Այն վայրը որ երբեմն յիսունաւոր Վարդանեան աշակերտօք կը զարդարուէր, այժմ՝ սարդի ոստայններով տխուր տեսարան մը կ'ընծայէ. Հողմէ՛ զարնուած, ոչխարներ ցրուած են, երգերու և դասախօսութեանց զուարթիկ ձայնակիցներուն կը յաջորդեն ամայութիւնն ու լռութիւնն։

« Ցածոխ կու գանք, ո՛ սիրելի Հայրիկ, կու գանք աւերակաց մէջ թափառող բուի մը պէս մեր դպրոցական փոշոտ գրասեղանները արտասուօք թրջել, այլ աւա՛ղ, ոչ ոք կը գթայ մեզ. մեր ծնողք աղքատ, ազգայինք անգութ և Վարչական իշխանութիւն մեր դահիճն են։

« Որքա՜ն կարծես հաճոյք կ'զգան մեր արցունքներ տեսնելով. ծարաւի՞ են արդեօք մեր արտասուաց։

«Դու ո՛ Հայր, կ'աղաչենք, գէթ դու, որ Հայաստանի սիրահօր հոգիս մի ես, մի՛ անտարբեր մնար երկինք խեղճ Հայ ուսանողներու արտասուաց [illegible] րանաց, և երբ քու պաշտօնական տեղեկագիրդ 'ի լոյս հանես, մի՛ մոռանար նաև լսելի ընել Վարդանեաններու սրտաշունչ ձայնը. որ յանուն Աստուծոյ՝ իրենց Դպրոցի վերստին բացումը և սիրելի դասատու Փասպանեան էֆէնտիի դասախօսութեան շարունակութիւնը կը խնդրեն։

«Եթէ մեր աղօթքներ կրնան Ձեր գթած սիրտը շարժել»

Ընդունեցէք ներկայ ուղերձնիս.

Օ. Դ. Յ. Հ.

Չկրցինք առանց ուժգին յուզուելու լսել այս սրտայոյզ խօսքերը և առանց կարեկցութեան մեկնիլ. նոյնը կը նկատէինք տեսնել և յանձն Ս. Առաջնորդին, որ գիտէր շուտով փղձկիլ. մխիթարեց մանուկները և ուսուցիչները, աղաչեց զմեզ, թէ ի՞նչպէս ինքն եղեր է գլխաւոր չինող այս յարկին իր նորընծայութեան ատենը, մինչև անձամբ քարեր կրեր է. ալ ի՞նչ կը մնար ինձ ընելիք, եթէ ոչ՝ նոյնը կրկնել, և իր խոստումներուն յուսալ։ Արդարև Պոլիս վերադառնալուս՝ Փասպանեան Գ. էֆ. կը գրէ՝ թէ «... Մեր քաղաքը շատ փոխուած է Ձեր տեսածէն ետքը. ողջամիտ խումբն այսօր աւելի լաւ կազմակերպութիւն մը առած՝ ժողովրդավարական—խումբ անունը կը կրէ. անմիջապէս բացուեցան թաղային դպրոցներ:

և կեդրոնական ուսումնարան մը, բաւական կանոնաւոր . . . »: Այս ժողովրդական ողջամիտ խումբին կը կայմէին երեք ընկերութեանց անդամները, այն է Անձնուէր, Ընթերցասիրաց և Վարդանանց սանուց, որոց հաւաքական և առանձին տեսակցութեանց մէջ, ծանօթացանք իրենց եռանդին և գաղափարաց, քաջալերելով զիրենք և լիայոյս վստահութիւն տածելով իրենց վրայ:

Վիճակիս նախորդ հանգուցեալ Առաջնորդներէն Գէորգ եպիսկոպոս 60000 ղրշ. և Յակոբ եպիսկոպոս 10000 ղրշ. կտակած են՝ կէսն վարժարանաց համար և կէսն աղքատաց. Ս. Երուսաղէմայ Եսայի Ս. Պատրիարքն ալ վանքին կալուածներէն քանի մը կտոր չէնքեր նուիրած է յանուն վարժարանաց, որոցմէ 2000 ղրշ. տարեկան կ'ըստանան. այս գումարները Առաջնորդարանի հսկողութեան և մատակարարութեան յանձնուած էր, որոյ մասին բացատրութիւն տըւաւ Տ. Առաջնորդն, թէ՝ 16000 ղրշ.ի շը-մէնտըֆէրի բաժնէթուղթ գնած են եղեր, 20000 ղրշ.ի ալ տուն մը գնած, որ տարեկան կը բերէ 800 ղրշ. մտադիր են եղեր այս տունը խան շինելու. Մնացեալ գումարն ալ տոկոսով տուած են ոմանց քով: Բոլոր այս դրամագլուխին և կալուածոց տարեկան արդիւնք 6500 ղրշ. կը գանձուի, ըսին. — Աղէ՛կ շահագիտութիւն. և սոր կէսը վարժարանին էր, և կէսն աղքատաց բաժին:

Եկեղեցեաց սեղանոյն և պատկերաց վրայ շատ մը արծաթէ զարդեր և ոսկի կային. կը հաւատային թէ միայն Ս. Մինաս եկեղեցին 120 օխայ արծաթ ունէր: Այսպէս դեռ Թօքաթու ժողովուրդ կը հաւատայ թէ Ս. Աստուածածնի պատկերին ոսկի ճրանոց և ոսկի թագ շինելով, Ս. Մինասին արծաթէ նիզակով և ձեռն ոսկեսարաս զարդերով իրենց հոգւոյն փրկութիւնը կ'ստանան. Ե՞րբ պիտի համոզուին թէ՝ Աստուծոյ աչքեւ ամենէն թանգ զարդարանք, հաճոյական պատարագ, և իրենց հոգւոյն ու մարմնոյն փրկութիւնն՝ իրենց զաւակները ոսկեղէն մարդ ընելն է, զանոնք կրթել և լուսաւորել Աւետարանի հոգւով, ազգութեան սիրով, պանծալի հանդիսացընել հանճարով և պատուով:

Եկեղեցիներ ունին եղեր իրենց առանձին դրամագլուխներ, ասոր անոր քով տոկոսով դրուած, բայց տոկոսին հետ դրամագլուխն ալ ոչնչացած էր, կ'ըսէին. Ս. Աստուածածնի եկեղեցին 40000 ղրշ. ունի եղեր, միայն 7000 ղրշ.ը ողջ է և անկէ տոկոս կ'առնու: Գաւառական վարչութիւնն անձեռնամուխ կը գտնուէր այս հաշիւներուն:

Քաղաքիս բնակիչքն էին բաց'ի Թուրքերէն և Հայերէն, Յոյնք և Հրէայք սակաւաթիւ. Յոյներու մէկ մասն Հայ—հռոմ էին, և հայերէն կը խօսէին ու կը կարդային:

Թօքադու Քաղ. կառավարութիւնը գայմագամութիւն է, Սեւաստիոյ վիլայէթեան ներքեւ։ Եկեղեցիք Հայոց 7։ Վարժարանք 5. երեքն Ծաղկոց մանկանց, մէկն Ծաղկոց աղջկանց, և մէկ Ուսումնարան։ Ծախք վարժարանաց անորոշ։ Թիւ ուսանողաց 205 մանկունք, 18 աղջկունք։ Թիւ Հայոց 8819. որոցմէ 1579 կաթոլիկ և Բողոքական։ Յոյնք և Հայ—Հոռոմք 2600. Հրէայք 906։ Թուրքք 10500։

Առաջնորդական թեմք և Հայաբնակ գիւղօրայք Թօքադու.

Քաղաքի շրջակայքը և Ղազօվայի կամ Ղազապատի, Արթըքօվայ կամ Արթըքապատի, և Թաշօվայի կամ Ղազէլի Էրպայի հովիտներու մէջ եղածները.

ԹԱԽԴԸՊԱՅ գեղ. Եկեղեցի 1. Ս. Աստուածածին։ Թիւ Հայոց 262։

ԽԱԹՄԸՇ գեղ. Եկեղեցի 1. Ս. Գէորգ։ Թիւ Հայոց 374։

ԳԷՏԱՂԱՁ գեղ. Եկեղեցի 1. Ս. Սարգիս։ Թիւ Հայոց 308։

ՉԻՎԹԼԻԿ գեղ. Եկեղեցի 1. Ս. Յակոբ։ Թիւ Հայոց 326։

ՊՕԼԻՍ գեղ. Եկեղեցի 1. Ս. Լուսաւորիչ։ Թիւ Հայոց 200։ Թուրքք 234։

ՊԷՍԿԻՆՃԻՔ գեղ. Եկեղեցի 1. Ս. Յակոբ։ Թիւ Հայոց 291։

ՎՈՐԱԶ գեղ. Եկեղեցի 1. Ս. Սարգիս։ Թիւ Հայոց 39։ Թուրքք 171։

ԷՆՏԻԶ գեղ. Եկեղեցի 1. Ս. Փրկիչ։ Թիւ Հայոց 60։ Թուրքք 95։

ԳՐԻԳՈՐՈՍ գեղ. Եկեղեցի 1. Ս. Աստուածածին։ Թիւ Հայոց 245։

ԳՈՒՐՋԻ գեղ. . . . . . . Թիւ Հայոց 31։ Թուրքք 195։

ԿԷՍԱՐԱ գեղ. . . . . . . Թիւ Հայոց 9։

ԿԷԲՍԻ գեղ. . . . . . . Թիւ Հայոց 18։ Յոյնք 24։

ԲԻԶԷԹԻ գեղ. Եկեղեցի 1. Ս. Յոհան. Ոսկեբերան վանք։ Թիւ Հայոց 34։ Թուրք 340։

ՀԷՐԼԷՔ Աւան. գայմագամութիւն, Ամասիոյ միւթասարրիֆութեան ներքեւ։ Եկեղեցի 1. Ս Ստեփաննոս։ Վարժարանք 2. Ս. Մեսրոպեան և Մարինոսեան։ Ուսանողք 80 մանկունք, 30 աղջկունք։ Թիւ Հայոց 1126։ Թուրքք 4702։

ՈՂՈՊԱՂԸ գիւղ. Թիւ Հայոց 79։
ՁՈՂՇԱՐ » » » 92։
ԷՑՎԱԶԱՑ » » » 113։
ԾԱՐԸ ԳՕՑԵԱՆ » » » 63։
ՍԱԽԱՐ ՁԱԼ » » » 30։

ՆԻԿՍԱՐ քաղաք, գայմագամութիւն, Սամսոնի Միւթասարրիֆութեան ներքեւ։ Եկեղեցի 1։ Ս. Աստուածածին։ Վարժարան 1. Սուրէնեան։ Ուսանողք 180 մանկունք, 20 աղջկունք։ Թիւ Հայոց 2053։ Յոյնք 315։ Թուրքք 3390։

ՂԱՓՈՒ ՈՂՁԻ գիւղ. Եկեղեցի 1. Ս. Կարապետ : Թիւ Հայոց 360 :

Թօքադու Առաջնորդութեան թէմն էր նաև Զիլէ : Գեղերու մէջ տեղ տեղ ծաղկոցներ կան հասարակ ընթերցանութիւն, գիր և եկեղեցւոյ փոխեր և երգեր սորվեցնելու չափ, որ միայն ձմեռներ բաց կը լինին, միւս եղանակները երկրագործութեան կ'զբաղեցրնեն տղայքը : Այսպէս են գրեթէ ամեն միջակաց գիւղորէից վարժարաններ : Վերոյիշեալ թէմերու մէջ Զիլեցի Հայոց նման Նիկսարցի Հայք ևս տաճկերէն կը խօսին, բայց ասոնք իրենց վարժարանին աղէկ ուժ կու տան :

Այս միճակի մէջ գտնուած բնակիչ օտար ազգաց թիւն է՝ Յոյն 4849. Չէրքէզ 13420. Քիւրդ 2123. Գզլպաշ 7348. Թուրք 67445, որք տարածեալ են Թօքադու, Նիքսարու, Զիլէի և Հէրէքի գեղերը :

Թօքադու գեղեր առատ բերքեր կ'արտադրեն, ցորեն, գարի, բազմատեսակ միրգեր, մեղր և մոմ, իւղ և բուրդ ; խաղող և գինի, աֆիոն, թիւթիւն, գազի խէժ, մահլէպ, ճէհրի, տորոն, կանեփ. կը սնուցանեն ամեն տեսակ ընտանի կենդանիներ. նոր սկսած և յաջողած են Ընկիւրիոյ այծեր (Փիլէկ) ալ հասցնել, ևն : Թօքադ՝ Բաղդատի մեծ պողոտային վրայ գտնուելով, յարաբերութիւն ունի շատ քաղաքաց հետ : Իւր լերանց գործներ [illegible]

և Պոնտոսի յերանց չկժան․ Կրնան իւր այլ և այլ վտակաց և Իրիսի վրայ գործարաններ շինուիլ ։

## Ս. ՅՈՎԱԿԻՄ—ԱՆՆԱՅԻ ՎԱՆՔԸ

Թօքաթէն մէկ ժամ հեռի՝ 'ի սպառուածս այգեստանեայց․ լեռնակողի մը վրայ կառուցեալ է վանքը ։ Պարսպին դուռը կը բացուի 'ի հիւսիս, կայ և մէկ փոքրիկ երկաթի դուռն յարեւմուտս ։ Վանքին մէջ տեղը շինուած է Տաճարն՝ քարաշէն․ արեւելեան կողմը՝ ուխտաւորաց Թաղ 14 սենեակներով միայարկ ։ Այն բակի մէջ կը հոսի աղբիւր մը, աւազան մը կայ և վարդատունկք ։ Տաճարին հարաւը շինուած է Միաբանից Թաղը 12 սենեակներով․ մէջ տեղը փոքրիկ պարտէզ մը շատրուանով, կանանչ տունկերով և խաղողոյ բարունակով ։ Վերնայարկն ունի երկու սենակ, հիւրանոց կամ գրօսարան Միաբանից, ուստի կ'երեւին քաղաքին, այգեստանեայց, և Ղազօվայի գեղեցիկ տեսարանները, լեռները և Իրիսը որ պտուտաւոր կ'ընթանայ ։

Տաճարի հիւսիսային կողմն վերին յարկը շինուած է կանոնաւոր շէնք մը Ճեմարան կամ Վարժարան, որոյ երկու ծայրը շնորհքով երկերկու սենեակները՝ իբրև վարժապետի սենեակ և դասարան, զորս կառուցեր է Յակոբոս Ս. Պատրիարքն իւր Առաջնորդութեան օրով ։ Այն յարկին ներքեւ

է սեղանատուն, խոհանոց և մառան. խոհանոցի դրան քով կը հոսի աղբիւր մը: Ամբարանոց մը ունի ընդարձակ, որ կը տարածի 'ի ներքոյ միաբանից և ուխտաւորներու սենեկաց, ուր կը պահեն արմտիք, ալիւր, գինի, իւղ, պանիր, և այլ նպարեղէնք և զանազան պէտքի նիւթերը: Մի և նոյն չափով տանիքի ծածկոյթ մը կայ (Նովան տըռաչ) 'ի վերայ սենեկաց միաբանից և ուխտաւորաց, ուր ճէհրիններ կը փռեն, կը չորցընեն. և այս յարկին արեւելեան հիւսիսի անկիւնը կը բարձրանայ փայտէ շինուած զանգակատուն մը՝ երկաթ խաչն 'ի գագաթ:

Վանքի հիւսիսային մեծ դրան հանդէպ շինուած են անասնոց ախոռները, և տուն մը՝ զոր Չիֆթլէկ կ'անուանեն:

Ախոռներէն վեր և անոր կից է վարդապետաց գերեզմանաթաղը ցանկապատ. (ցաւ 'ի սիրտ տեսայ որ ոչխարները լեցած մէջը՝ կը կթէին և կը մակաղէին. աղբերով ծածկուած էին խաչքարերը), իսկ բուն գոմը աւելի վերը՝ լեռան վրայ էր:

Վանքն ունի պարտէզ մը, որ կցուած կը հրջապատէ արեւելեան և հիւսիսային պարիսպը, ուր կան պտղատու ծառեր, և կը մշակուին բանջարեղէնք. կից նմին կայ մի ճէհրիմկ. ճէհրիմկ մի ևս քիչ մը բացակայ ասկէ. ունի նաև մահլէպի ծառեր, և այգի մը՝ այգեստանեայց մէջ:

Վանքիս 23 կտոր արտ կայ, որոց կէսը ոռոգելու չափ ջուր ալ ունի ։ Ասոնցմէ քանիները կուտան վարձքով — կիսարար — ափի-ոնի և թիւթիւնի համար. Հերկը, ջուրը, սերմը վանքէն, մշակել, հնձել՝ վարձականէն ։ Իսկ ցորենոյ և գարւոյ մշակութիւնը վանքը առանձին կ՚ընէ ։ Եւ ասոր համար ունի 8 մշակ, 4 հովիւ, 2 նախրորդ ։ 50 եզ, կով և գոմէշ, 3 էշ, 350 այծ և ոչխար ։

Վանքին մէջը կան մէկ ծերունի և մէկ պատանի (նոր եկած) աշխարհական միաբան, երկու տնտես, մէկ դռնապան որ և պարտիզպան ալ է ։

Եկեղեցական՝ ոչ ոք. միայն Ս. Առաջնորդը երբեմն երբեմն վանքը կ՚երթայ. և ուխտաւորաց օրերը քաղաքէն քահանայ մը կու գայ կը պատարագէ ։

Վանահայրն էր Թօքաթցի աշխարհական Մ. Յով. Գալփաքճեան, որ կ՚երթայ կու գայ ։ Հոս եկաւ հանրածանօթ Մագըմեան Առաքել Վ. Ս. Պատրիարքի գրով՝ մնալու իբրև ապաշխարող ։

Այս վանքի հիմնարկութիւնը ո՞ր թըւին և ո՞րմէ սկսեալ, չգտանք. բայց յիշատակագրութիւն մը, որոյ օրինակն ՚ի ստորեւ, կը յայտնէ քանի մը անձանց անունները, աւերողաց և շինողաց. իսկ վերջին նորոգողն է եղեր Գէորգ եպիսկոպոս Խլըլըցին, որոյ յիշատակագիրը կայ Տաճարի դըրան ճակատին վրայ քանդակուած այսպէս .

« Ողորմութեամբն Աստուծոյ Նորոգեցաւ սուրբ ուխտս 'ի հիմանէ հանդերձ սենեկօք և շրջապատ պարսպօք և արտաքին շինուածովք յամի Տեառն 1828, սկսեալ յսկիզբն ապրիլի և աւարտեալ 'ի վերջն սեպտեմբերի, աշխատասիրութեամբ Գէորգ արքեպիսկոպոսի և տրաք ժողովրդեան և իւրն և իւր միաբանութեան 'ի փառս Աստուծոյ »:

Տաճարի դրան վրայ բոլորակ գմբէթաձեւ ծածկուած է կցեալ ընդ պարիսպն և ընդ որմն Տաճարին, իբրեւ գաւիթ. սոյն ծածկին տակ երկու մութ մարմար քարով գերեզմաններ կան. մինը՝ վանքը շինող Գէորգ եպիսկոպոսին և միւսը Նորին միաբան Գալուստ Վ. ին Պօնճուգեան, որ նոյնպէս Առաջնորդ է եղեր քաղաքին և վանիցս:

Բաւական աղէկ և շատ անօթներ ու կահ կարասիներ կան վանքին մէջը, և շէնքերը կանոնաւոր շինուած ու աղէկ պահպանուած են. գիրքեր ալ ունի, բայց ըստ ասից բազմաց՝ աւելի շատ ունեցեր է, և տարող տարողի է եղած: Ինչպէս վարդապետաց սենեակները թափուր էին վարդապետէ, նոյնպէս և վարժարանը իր դրասեղաններով ամայի կը կենար, մէջը սոխ, սխտոր, և այլ չորցընելիք բանջարներ լցուած:

Դեռ մօտ տարիներս այս վիճակին ինկած է սոյն վանքը; և ինչպէս շէնքեր ու պատամոյլները կը հաստատեն, երբեմն նախանձելի էր և բարեաց օրինակ այլոց վանօրէից իր ուսումնական վարդապետներով

և բարեկարգ վարժարանով։

Վանքի հողերը շատ պտղաբեր չեն. արտերը ամբողջ ճօֆոտ են. ո՛րը Առաջնորդի անուան, որը միւթէվէլլի մը անուան, բայց քօչանները վանքը կը պահուին։

Վանքի եկամուտներն են տարեկան՝ աֆիօնէ, թիւթիւնէ, ճէհրիէ, պտուղներէ, քաղաքի մէջ եղած 2 խանութէ, վաճառուած բուրդէ, ուխտաւորաց նուէրներէ եւ, տարեկան 11400 ղրշ։ Ասոնցմէ զատ տարին 80 քիլէ ցորեն և գարի կ՚առնու իր արտերէն և պտղիէն, նաև մեղր, իւղ, պանիր, եւ, որք վանքին մէջ կը ծախուին։

Վանքի ծախքերն են՝ մշակաց, հովուաց, տնտեսաց և դռնապաններին տարեկան վարձքեր և զգեստները 10000 ղրշ։ Աղի, և այլ ներքին պէտքերու և նորոգութեանց 8000 ղրշ։ Ջուրի, եւ. 4500 ղրշ։ Առաջնորդարանին 1500 ղրշ։ Գումարն է 24000 ղրշ։

Վանքին պարտքը՝ նախորդ վանահօր Մարտիրոս Վ.ին, որ այժմ 'ի Ս. Յօհ. Ոսկեբերանն է, 17000 ղրշ. ներկայ վանահայր Մ. Յօհաննէսին 9000 ղրշ. այլ և այլ տալիքները 4000 ղրշ։

Վանքէս իբր տասն վայրկեան հեռի է Յունայ Աէօ անուն գեղը և փոքր մենաստանը, ուր հայ կառուցեալ սուրբ Աստուածածնի անունով տաճար մը. Յոյն վարդապետ մը կը նստի մէջը, ունի քանի մը մշակներ և տնտես։

## Ս. ՆՇԱՆԻ ՎԱՆՔ
### ԿԱՄ
## Ս. ՅՕՀԱՆ ՈՍԿԵԲԵՐԱՆ

Թօքատէն չորս ժամ հեռի Բիզէռի անուն գիւղին մէջ կառուցեալ է այս վանքը։ Բիզէռի կամ «Բիծէռի Հայոց Ջխէ. Թուին տակաւին ութն հարիւր տուն Հայ բնակիչ և Ժ. քահանայ» ունէր, ըստ յիշատակարանի ձեռագիրի մաշտոցի մը նոյն վանուց։ Վանքս հիմնարկեալ եղեր է Վասպուրականի Սենեքերիմ արքայի երեք որդիներէն, ըստ աւանդութեան և ըստ ձեռագիր յիշատակարանաց. արքայորդիքը մէկ մէկ խորան կառուցած են իրենց յիշատակին, աւագ խորան՝ Ս. Նշան, որոյ անուամբն է վանքն. միւսները՝ Ս. Գրիգոր և Ս. Կարապետ։ Շինութենէն իբր չորս տարի յետոյ Սենեքերիմ արքայն Կոմանայէն բերել տուած է Ս. Յօհ. Ոսկեբերանի տապանաքարը և զետեղած է Ս. Նշանի տաճարին ձախ կողմն՝ կից յորմն։ Այս տապանաքարը ճշմարիտ հնութեան մ'է, նուիրական և պաշտելի. թէ՛ տապանը և թէ՛ կափարիչը մի և նոյն քարէն է կապտականանչ գունով մարմարիոն, կափարիչի շրջանակները ատամնաձեւ վանդակագործ։ Գլխուն կողմը փոքր փոս մը թողած են, որոյ վրան և քովերը հին ու ընտիր քարերով շարուած. Հող կայ այդ փո-

սին մէջ, յորմէ 'ի պէտս բժշկութեան պէս-պէս ցաւոց կը տանին ուխտաւորք ։ Մանաւորապէս ծննդաբերութեան և այլ խնդրուածոց կատարման համար ուխտի կու գան հոս՝ ոչ միայն Թօքաթէն և իւր գիւղերէն, այլ և Ամասիայէն, Զիլէէն, Հէրէքէն, Նիկսարէն և այլ տեղերէ ։

Վանքիս՝ երբեմն երբեմն Յոյներ ուզեր են տիրանալ, առարկելով թէ 'ի սկըզբանէ մերն է եղած, բայց չեն յաջողած. վասն զի ոչ միայն արձանագրութիւն մը կամ նշան մը չէ գտնուած իրենց, այլ և գեղի ծերունիք Թուրքերը աւանդութեամբ յորդւոց յորդի միշտ վկայած են Հայոց վանք լինելը. կարծողներ կան թէ՝ նոյն իսկ Բիզէրի Թուրքերն ալ Հայ են եղած յառաջագոյն ։

Երէց խորանաց հիմունք և որմունքն հնագոյն են. բայց փոքրիկ լինելուն համար՝ 1842ին Յակոբոս Վարդապետ նորոգեր է Ս. Նշանն և Ս. Գրիգորը, և միացուցեր իրարու՝ միջնորմն վերցնելով. իսկ Ս. Կարապետ նոյնութեամբ կը մնայ ։ Հին ժամատուն կամ գաւիթն, որ նախ չէնք մ'է եղեր և հողով ծածկուած, յիշեալ Յակոբոս սրբազանն փլուցեր, և կամարաձեւ պայծառ ու ծաղկէնկար եկեղեցի է շիներ հանգերձ պատարագամատոյց սեղանով և բեմով, անուանելով Ս. Յոհան Ոսկեբերան. նոյն նորաշէն եկեղեցւոյս աջակողմեան դա-

ւին միջէն կը բացուի Ս. Գրիգորը մանկլու-դուռն և Ս. Նշանը, որ ճիշդ Նոր սեղանոյն ետեւը կ'իյնայ. իսկ ձախակողմեան դասէն՝ Ս. Կարապետի մատրան դուռն։

Ս. Տաճարիս դրան դրանդւոյն վրայ հետեւեալը գրուած է.

« Երբանդ ոսկի ՓԱՌՔ ՔԵԶ ԱՍՏՈՒԱԾ միշտ ասէք,
« Աշխոյժդ բարի վերընծայել ըստիպէք.
« Զայս շտանայր Յակոբոս դէտ
« Մինչ յաթոռ քո դեռ նստէր,
« Զորոյ երկուցս երգանց 'ի ամս
'ի հաճոյս քո ընկալ Տէր »։

Ասկէ վար քանդակեալ կայ բուն յիշատակարան.

«Շինեցաւ Ս. Յօհան Ոսկեբերանի տաճարս բոլոր շրջապատ պարսպօք և ամենայն շինուածովք, Եւդոկիոյ և միձակաց նորա ազգիս Հայոց բարեպաշտ օրհնեալ ժողովրդոց արդեամբ և ողորմութեամբ։ 1842. ՌՄՂԱ»։

Տաճարին հարաւակողմը կը բարձրանայ կրկնայարկ գեղեցիկ շէնք մը, վեր և վար 14 սենեակներով. վերնայարկին արեւելեան անկիւնն է Առաջնորդարան. շէնք մը՝ որ իւր ընդարձակութեամբ և շքեղութեամբ, արժանի է կոչուելու Վեհարան, ինչպէս որ կ'անուանեն. իսկ արեւմտեան անկիւնն է Փոխանորդարան. միւս սենեակները յատկացեալ են վարդապետաց և տիրացուաց. այս է Միսաքանից թաղ կամ Ներքին թաղ,

Բոլոր այս սենեակները ճաշակի յարմար, մաքուր, և կանոնաւոր կահաւորեալ են. մասնաւոր առաւելութիւն ունի Վեհարանն, որոյ կահ-կարասին եւս չքեղ է. հոս կ'ընդունին պատուաւոր հիւրերը։ Վանքիս Ս. Տաճարին և արտաքին յարկերուն մէջ ու դուրս տեսնուած մաքրութիւնը, կանոնաւորութիւնը, անօթոց և կահուց կարասեաց առատութիւնն, իւր նիւթական վիճակը, կարգաւորեալ թանգարանն, ծառայից, մշակաց, ուխտաւորաց և վարդապետաց գոհ բերանը, կը զարմացընէ այցելու մը, վասն զի մեր Հայաստանի վանքերէն ոչ մէկուն կը նմանի. բայց իսկոյն կը լուծուի զարմանքն, երբ իմանայ թէ վանքիս տնտեսութիւնն ու տեսչութիւնը ոչ եպիսկոպոսի, ոչ վարդապետի, ոչ քահանայի և ոչ միւթէվէլլի է յանձնուած, այլ ժրագլուխ տիկնոջ մը, այն է Տիկին Մարիցա Գատէմեան, դուստր հանգուցեալ Յովակիմի Ալանեան, որ իբրև հոգաբարձու և խնամակալ կը կառավարէ։

Տաճարի դրան հանդէպ փոքրիկ կոչնակատուն (զանգակատուն) մը կայ բարձր, յորում կախուած են երկաթի և ընկուզենի կոչնակներ, անոր կից մասնատուն, նշխար և մասն պատրաստելու համար, և ատոնց տակ աղբիւր մը մշտահոս։ Փոքրիկ դրախտ մի կայ Տաճարին ետև, ուր կը գտնուին պտղատու ծառեր, բանջարեղինաց ածուներ, մեղուաց փեթակ, և մէկ կողմը ծած-

կուած յարկի մը տակ զանազան չոր ընդեղինաց շտեմարան ։ Դրախտը մտնելու դրան կից է վանքին խոհանոց և մառան ։

Ուխտաւորաց թաղը Տաճարին հիւսիսակողմն է, առանձին շէնք մը, 24 սենեակով, որոյ բակին մէջ կը հոսի աղբիւր մը ։ Վանքի պարսպէն դուրս, մեծ դրան հանդէպ շինուած են վանքին ախոռներ և չէմպէրէն 12 սենեակով և երկու խանութներով. կից այս շինութեանց է մարագն և կալատեղն ։ Կէօմրէք ըսուած շէնք մի ևս կայ վանքին Չիֆթլիկին մօտ՝ 8 սենեակով, ուր վարձքով կը նստի մաքսապետ ։

Կալատեղւոյն կից բարձր բլրակի մը վրայ է գերեզմանատունն, վանականաց և շինականաց շիրիմներն. հոն յաճախ կ'երթան մարդիկ, կը նստին հինաւուրց ծառի մը շուքին տակ. իրենց չուրջը նկատելով աշխարհի ունայնութենէն հրաժեշտ առողաց վերջին յարկերը, և իրենց առաջ՝ կենաց հետ զբաղող Բիզէոի աշխատասէր արք և կանայք, որք գեղին մէջ և դաշտին մէջ կը դեգերին 'ի շինել, 'ի տնկել և 'ի վայելել ։ Քանի՜ գեղեցիկ է Բիզէոն իր ծառերով, վազուն ջրերով, և մշակեալ անդաստաններով, որ կը տարածէ իր կանանչ ու կարմիր տեսարանը՝ այս դիտարանէս դիտողին աչաց առջեւ, շրջապատեալ սիրուն լեռներով ։

Վանքս ունի նաև Քաղաքի մէջ երկու

անուԹ. Պոլիս մէկ ունենակ, գիւղիս մէջ
կ Ֆէնտէրլէ և մէկ ոէՐէն, երեսուն և ինն
տոր ընտիր արտեր՝ Թամիու ըրած, յորս
մշակէ ԹԹուԹիւն, ցորեն, գարի, աֆիոն,
։ Իւր դրամական եկամուտն է տարեկան
3—40000 ղրշ. բաց ՚ի վանքին մէջ մտնուած
տեվիքներէն. Ծախքն է 24000 ղրշ։ Կա-
նաւոր է տումարակալութիւն և մատակա-
րութիւն։ Հոս իբրև միաբան տեսանք և
բակաութեամբ զբաղեալ Արժ. Մանուէլ
րդապետ Թօքաղցին, որ ծանօԹ է Պօլ-
սեցւոց՝ երբեմն քարոզիչ լինելով Բերայի.
ու էր նաև ծերունի Մարտիրոս վարդա-
պետ, իբրև Ս. Տաճարին փականակալ և լու-
սարար. քանի մը տիրացուներ կային, մշակ-
ներ, և ծեր ու անկար պառաւներ, ամենքն
ւ աղէկ խնամուած։ Մարիցայ տիկնոջ հո-
գատարութեանց շնորհիւն է որ վանքս դրամ
ւելցընել սկսած է, նոր նոր արտեր գնած,
անքի շինութեանց և նիւԹեղինաց մեծ մասն
որոգուած; և այժմ մտադիր էր գիշերօ-
իկ վարժարան մի ևս բանալ։ Ջանացած էր
անքը այն աստիճանին հասցընել, որ ուխ-
աւորաց և Թէմականաց արդիւնքին չսպա-
նլով՝ կարող լինի ինքզինքն կառավարել։

Արդարև Մարիցայ տիկինն իւր հանճա-
ով, ազնիւ հոգւով, և լուրջ ու անձնուէր
անքով գերազանց պարգև մ՚է Նախա-
նամութենէն՝ Թօքաթու ազգայնոց համար,
պարծանք իւր սեռին ու տոհմին. մեծ

փոյթ կը տանէր նաև իւր հայրենակցաց ան-
տարբեր կեանքին վրայ . ոչ միայն եպիսկո-
պոսի մը պէս կը քարոզէր, կը համոզէր, այլ
և եպիսկոպոսին հետ այդ ու կը խօսէր, անոր
պարտքեր ու ընելիքները յիշեցընելով. մեծ
յոյս ունէր՝ կրկնելով կրկնելով մինչև գոնէ
աւչցընէր և յաջողէր մանկանց վարժարանոյ
հետ՝ աղջկանց ալ վարժարանի մը բացումն ։
Տիկին Մարիցայ պատկառելի և ակնածելի
դիրք մը ունէր բոլոր քաղաքացի Ազգայնոց
և Թուրքաց, և նոյն իսկ կառավարութեան
առջև ։

Կուզեմ առանձին ստորագրել Ս. Յով-
հան Ոսկեբերանի վանքը երթալուս ուղին ։

Յունիս Ծ էր, տիկին Մարիցայի խնա-
մօք պատրաստեալ ձիերով՝ վանքին մշակ
կտրիճ Կիրակոսին առաջնորդութեամբ յուղի
անկանք. մեր երրորդն էր Սեբաստացի Խա-
չերեան Մարտիրոսը, զոր Պոլսէն հետս ա-
ռած էի. սպառազինեալ էր նա, ես ալ
ունէի վեց հարուածեան մը, և Կիրակոսն՝
հաստ բիր մը. ճամբան խիստ երկիւղալի
և վտանգաւոր էր, կ'ըսէին ամենքը ։ Ժամու
մը չափ քաղաքի այգեստանեայց միջէն ըն-
թանալով գտանք Իրիս գետոյն ափը, որ
յարևելից կը հոսէր ։ Զորամէջ է մեր անց-
քը, արևուն ջերմութիւնը կիզիչ ։ Գետոյն
յայնկոյս և յայսկոյս մշակեալ արտորայք
են, խաշխաշի, ոսպնոյ, գարւոյ, տարե-

կանի, Թիւթիւնի, տեղ տեղ ալ այգի և ձիհրիի տունկեր։ Գրիգորոս գեղը մեր աջ կողմն է բարձրադիր, հովասուն վայր մը. այս գեղը Գրիգոր սքանչելագործի ծննդեան տեղին է, կ'ըսեն, և հոս գտնուած է Սուրբոյն գերեզմանը, ուստի և անոր անունով յորջորջուած։

Յառաջ երթալով՝ Գըլըճնօֆըրֆ ըսուած կարմրահող եռանկիւն արտի մը չրթունքէն կ'անցնինք. ճիշդ ճամբուն բերանը, արտին եզերքը գերեզմանաչափ քարակոյտ մը կայ, որդէն լաած էի, և Սիրակոս՝ բարեպաշտական իշխանութեամբ մը հրամայեց ինձ որ իջնամ ձիէն. ինքն գլուխը բացաւ, վազեց, ծնրադրեց, համբուրեց այդ քարերը և հողը. մենք կեցած էինք. դարձաւ, Հայր սուրբ, ըսաւ, ի՞նչ կեցեր ես, ծունր դիր. երկրպագէ, աղօթք արա, Ս. Ոսկեբերանի հանգիստն է այս, այս տեղ հանգեր է Սուրբըն։ — Ա՜յս տեղ, ո՜վ իմ պաշտելի վայր, ո՜վ օրհնեալ հողեր ու հովեր… 'ի ձեզ Ոսկիբերանն իւր վերջին հառաչն հառաչեց, եւ կեղեցւոյ տաճարակն իւր վերջին մրմունջն մրմնջեց, «Փառք քեզ Աստուած, փառք քեզ», և 'ի փառս Աստուծոյ՝ իւր աստուածարեալ հոգին աւանդեց, սրբասնեալ մարմինք տարածեալ թողլով կարմիր արտին եզերը — ։ Աստի փոխադրած և թաղած են ըզՍուրբն 'ի Կոմանա, որ մօտ է իբր քառորդ ժամ [illegible]

մը սեպհական է, որոյ ցորենոյ ալիւրը ա-
ռանց խմորի կը զանգուի և կ՚աճի, կ՚ըսեն,
համայն երկրացիք, զի օրհնութիւն սորոյն
կայ ՚ի հողն։

Կարմիր առուէն քիչ մը յառաջ երթա-
լով կը պատահինք միապաղաղ լերկ քարէ
մը, կարծես ուրիշ տեղէ մը ինկած լինի
այս քարը այն տեղ. քարին երկու կողմն եր-
կու այրեր կան փորուած. ճամբուն վրայ
նայող այրը իր դրան ներքին շրթան վրայ
յունարէն գրով տող ու կէս արձանագրու-
թիւն ունի, իսկ միւս այրին մէջ գերեզմանի
չափով և ձեւով փորուած մը։ Ս. Թաշան
կ՚ըսուի այս քարը, որոյ համար կ՚աւանդեն
թէ գետոյն միւս երեսէն, Գրիգորիս գեղի
լեռնէն թռեր ինկեր է հօս՝ Ս. Գրիգոր
սքանչելագործի հրաշիւք։ Գրեթէ մինչև այս
քար կ՚երեւին Կոմանայի աւերակաց հետ-
քեր և այգիներ, իսկ բուն Կոմանան՝ ըն-
րաձեւ աւերակոյտ մի է. իրեն մէկ կողմն
քայքայուած բաղնիքի մը որմունք և կամար-
ներ դեռ կան։ Իրիս կը քերէ Կոմանայի ա-
նարը, և կամուրջ մը կայ քարակերտ, չէն.
այս աւերակին առջեւ՝ գետոյն միւս երեսն
է՝ Նիկսար, Հէրէք, և այլ տեղեր երթալու
գալու բանուկ ճանապարհ։

Մեր գնացքին ձախ կողմը կան կարգ
մը այգիներ, դրախտներ և ճէհրիլիկ, յորս
կան շատ մը պտղատու ծառեր, սառնորակ
մշտահոս ջրոց աւազաններ, և ամառուան

բնակութեան համար հովանոց յարկեր ։ Զովացանք, հանգստացանք այս հովանոցներուն շուքը ։

Ասկէց անդին ճամբան լեռնային է և մացառոտ. ձորերու մէջ տեղ տեղ զուարճալի գեղեր կը տեսնուին Թրքաց և Չէրքէզաց ։ Գետը հեռի կը մնայ մեզմէ ։

Ահաւասիկ զառ'ի վայր մը, ուր պրակներու միջէն չորս աւազակ երկու ամիս յառաջ յարձակեր էին Ս. Առաջնորդ Յակոբ եպիսկոպոսին վրայ, և այն ինչ կողոպտելու վրայ են եղած, դիմացէն Սուլթան անուն Չէրքէզ մը քանի մը ձիաւորով հասեր, զողերը բռներ և կառավարութեան տարեր էր, որք գեղացի Թուրքեր են եղեր ։

Նոր ել մը կ'ելնենք, որոյ միւս երեսն աւելի վայելուչ է մացառներով և պրակ պրակ սուրբ ծառերով ։ Սառնորակ աղբիւրի մը վրայ իջանք, ուր Գըզըլաչ Քրդաց գինով բազմութիւն մը, հեծեալ, զարդարեալ և սպառազինեալ ժխոր մը կը կազմէին, և ողորմելի մատղաշ կին մը պահուճեալ՝ և երեսօք և գլխով պատատեալ, միայնակ ծառի մը տակ կծկեր, կատարեալ, գերուոյ մը նըման. բայց դա էր նոր հարսն, և ժխորն՝ հարսնեւորք ։ Բարեւեցինք, խօսակցեցանք և անցանք, իջնալով հովտի մը մէջ, սիրուն, կանանչազգեղ, ջրաւէտ, 'յայս և յայնկոյս մօտ և հեռի գեղեր կ'երեւին. կը ջրեն, կը տնկեն, կը հնձեն ; այր և կին, ասունք և

անասունք կը շրջին, կը վաստակին հօտ. հովուի սրինգն ալ երանութիւն կը սփռէր անոնց։

Հասանք Բիզէոսի մօտերը, որոյ դաշտը սքանչելի էր քան բոլոր մեր տեսածները, և կարի զուարճալի իւր ուղին, երկուստեք ջրերու առուներ, և անոնց եզերքները տընկուած ընկուզենիք և այլ և այլ ծառեր և թուփեր կը հովանաւորեն անցքը։ Քաղաք մը կ'արժէ Բիզէոսին, և վեհ ու վսեմ կ'երեւի հեռաստանէ և 'ի մօտոյ մեր վանքը։

## ՁԵՌԱԳԻՐՔ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

1. Աւետարան մեծագիր, երկաթագիր, մագաղաթ, Ս. Երրորդութիւն եկեղեցւոյն Թօքադու։

«Որոց փափաք սիրոյ և տենչումն ցանկութեան միշտ և հանապազ յԱստուածայինն բերի, ոչ դադարէ երբէք զցայգ և զցերեկ խոկալ 'ի նոյնն, թէ զիարդ և կամ որով աւրինակաւ հասանիցէ բաղձալոյն և լցցէ զտենչումն բորբոքելոյ սրտին յԱստուածային սէրն. որպէս և մեր երջանիկ, սուրբ և աստուածարեալ Հայրապետ, ըստ մարմնոյ զարմ և շառաւիղ սրբոյն Գրիգորի մեծ Նահատակին Քրիստոսի, և ըստ հոգւոյ համանման և զուգահաւասար նմին. բանիւ կատարեալ, և հոգւով լցեալ, առատաբուղխ իբրև զյորձանս գետոյ, յաւնել և յուսուցանել զգիտութիւն Աստուածաշունչ գրոց, հեզ և խոնարհ սրտիւ, զգաստ և արթուն

'ի քննութիւն Աստուածային գրոց, որ և լի աւուրբք և կատարեալ հասակաւ. ալեօք ծերութեան, որ և յանբարի ժամանակի յաջորդեաց զաթոռն հայրապետութեան տանս Թորգոմայ 'ի քրիստոսազգեաց եղբաւրէ իւրմէ Գրիգորիսէ, որոյ քաջութիւն անուանըն և գովութիւն իմաստիցն անցանէ քան զչափ. որ և բազմամեայ ժամանակաւ, երկայնամիտ գաւազանաւ վարեաց զհոգեւորս այս իշխանութիւն, փառաւորեալ յԱստուծոյ և 'ի մարդկանէ: Զթշնամին և զհակառակորդսն Աստուծոյ և սրբոյ Աթոռոյն նըկուն արարեալ և հալածական. և բազում արդեամբ և սրբութեամբ ճոխացուցեալ զաթոռս սուրբ, լի աւուրբք և պատուական ծերութեամբ փոխեցաւ 'ի Քրիստոս յամին յորում էր թիւն Հայոց ՈՃԵ. և ժամանակ Հայրապետութեան նորա էին ամք Ե. թիւ կատարեալ և Ե. միակ, իւր արեամբ ստացեալ ամրոցիս, որ կոչի Հռովմայական Կլա, մեծ սուգ թողեալ իւրոցն և յիշատակ բարի յաշխարհի, և ըստ վերապրելոցս փոխանորդեաց Հայրապետական աթոռ եղբայրն նորա երջանիկն Ներսէս, որ և ըստ աստուածային սիրոյն բորբոքելոյ հոգի նորա ցանկացող եղեալ այսմ աստուածային գանձուս և լուսերանգ տառիս, որ է աւետեաց քարոզ բոլոր ազգաց և ազանց, և փրկական տնաւրէնութիւն մարդացելոյ Բանին պատմող և հրատարակիչ; և մեզ պատճառ փրկութեան և ազատութեան. ետ գրել զսա 'ի լաւ և յընտիր աւրինակաց սրբոյ աթոռոյս և զարդարեալ զանազան երանգաւք և ծաղկաւք յաւելեալ սրբոյ և 'ի դեղոց պատուականաց, ոչ 'ի պատճառս մեծութեան և փառաց որ 'ի սմայս խաւսի Աստուած,

այլ 'ի վայելուչս և 'ի զուարճութիւն մանկանց եկեղեցւոյ և 'ի յիշատակ իւր յապագայն . որ և յաւարտումն լուսազարդ տաճարս և 'ի լնուլ փափագման սրտին փոխի յաստեացս առ Քրիստոս , վարեալ զիշխանութիւն իւր ամս է. և յիշատակ բարի թողեալ յաշխարհի , յետ որոյ բազում խնամք ողորմութեան եցոյց Տէր 'ի վերայ աղքատացեալ ազգիս և սրբոյ Աթոռոյս . վասն զի բազում ամպրոպք խռովութեան յարեան 'ի վերայ ներքոյ և արտաքոյ յաւտարաց և սուտ եղբարց , զոր աւելորդ համարեցաք գրել . և ապա 'ի հաւանութենէ բոլոր ազգիս եպիսկոպոսաց սրբոց հարց և վարդապետաց, վանականաց, և աշխարհականաց, զաւրականաց և զաւրապետաց, և 'ի հրամանէ գերերջանիկ Տեառն Գրիգորիսի և յանդարձ կտակէն եհաս վիճակ հայրապետական եղբաւրորդւոյ նորին Տեառն Գրիգորի մականուն Տղայ կոչեցելոյ , որ ամենայնիւ զարդարեալ էր ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ , զորոյ լաւութիւն բարուց և զկորովութիւն մտաց ոչ ոք կարէ ընդ գրով արկանել . մանաւանդ զգեղեցկագոյնութիւն կերպարանին բնաւին մարմնոյն , յորմէ հրաժարեալ ամենեւին անարժան զանձն վարկանելով . շատ է ինձ , ասէր , մատակարարութիւնս հաւատացեալ զոր ունիմ , որում ոչ անսացեալ սրբազանիցն հեղինակաց , որ 'ի Հոգւոյն շարժեալ նստուցին զնա յաթոռ սուրբ իւրում նախնեացն բազում խրախութեամբ և մեծաւ հանդիսիւ , յորոյ վերայ խաղացեալ Հոգւոյն սրբոյ՝ ընդ ոլորտս տիեզերաց հռչակեալ եղեւ , մինչ զի այլասեռք հեռաբնակք ընթացեալ մեծապարգեւ ընծայիւք 'ի տեսիլն չքնաղ և զարմանալի , որ տեսա-

նէրն պշնոյր. և երթեալ համբուրէր. և որ լսէրն բորբոքէր առաւել. այս այսպէս գործիւր 'ի բազում ժամանակս: Եւ ապա 'ի հանդարտի ընծայաբերից, յառաջ բերէր զԱստուածեան մատեանս ընթեռնոյր աւր ըստ աւրէ, և յաւելոյր 'ի թիւ կարդաւորաց եկեղեցւոյ փորձապետաց, երաժշտաց և քահանայից. կազմէր և անութս պատուականս 'ի սպաս պիտոյից սրբոյ աթոռոյս, յորոյ և անութս այս պատուական աստուածավայելուչ Մատեան, որ իմով ձեռամբ գըծեալ Գրիգորի մեղապարտի և անկատար Մնացեալ, զորոյ պակասութիւնն լցեալ իմ հրամանաւ կաթողիկոս Հայոց Գրիգորի Տըղայի, 'ի թուականիս ՈԻԳ. վասն որոյ աղաչեմ զամենեսեան զստացողսդ, յետ սոցուն զընթերցողսդ յարաժամ և զամենայն որդիս լուսոյ, յիշել 'ի Տէր յառաջ զպատճառըն բարեաց 'ի սորայս գործանութիւն զսուրբ և զաստուածազգեաց հայրապետն Ներսէս. և ապա զերկրորդ լուսաւորիչն Հայոց զեղբայր սորա զԳրիգորիս Կաթուղիկոս, ընդ սոսին և զեղբաւրորդի սոցուն Գրիգոր վերատեսուչ հանուրց սեռի. յիշեսջիք և զեղբարս երկուց լուսաւորչացն Տ. Գրիգորիսի և Տ. Ներսիսի բարեպաշտ և զքրիստոսասէր իշխանն Վասակ, զպատճառն լինելութեան 'ի կենցաղս նորընծայ Հայրապետսիս, և զամենայն բարեաց աւրինակն աշխարհի զմիւս եղբայրն զԱպլիրատ, և զքոյր նոցա Մարիամ յայրիութեան և 'ի սրբութեան վախճանեալ, և զկինւորսն նոցա զբարեպաշտ իշխանն զԱպլիրատ, և զմայրն նոցա Վանէն, ընդ սոսին և զբարեհոգի մայր պակաւորին նորա զՄարեմին դուստր Հեթմոյ Սեւաստաւորի, և զորդիս նորա հարազատ

զԱնդպետն, որ և Սարգիս 'ի քաղաքայութեան վախճանեալ, և զարիագոյն զինուորն Աստուծոյ, զԱպիրատն քաջ և զՀասան կորովին, զՎահրամ խոհեմն և զՎասակ հեզն, զՀեթում պատանի և մանուկ գեղեցիկ, որք 'ի քսանամենից մինչև 'ի տիս երիտասարդութեան վախճանեալ 'ի հինգամեայ ժամանակս, և զԴ. կուսանսն բարեհոգիք քորք սոցին. զորոց պայծառացուցէ Տէր զհոգիս յիշեցելոցս, և յիշողացդ վարձս բարիս պարգևեսցէ, որ աւրհնեալ է յաւիտեանս ամէն:

«Աղաչեմ և ես մեղապարտ գրիչս առաջին 'ի մեղաւորս և յետին ամենայն բարեգործաց, յիշել ողորմութեամբ զմեղուցեալ հոգի իմ և զծնաւղաց իմոց: ես և զարժանաւորսն յիշատակի, որք աշխատեալ են յսս, Վարդան գրիչ և Կոստանդին պատուական ծերունի. միանգամայն և զայնոսիկ որք բարի կամաւք աւժանդակ եղեն գրչիս բանիւք և գործովք. զի և նոցին վարձս բարեաց պարգևեսցէ ընդ նախասացեալ ստացաւղացն, և որ Տէրն է հասարակաց ամենեցուն ողորմեսցի ստացաւղացն և աշխատողիս, յիշողացդ և յիշատակելոցս, և ինքն աւրհնեալ եղիցի յաւիտեանս ամէն»:

«Զերկրորդ ստացիչ սուրբ Աւետարանիս զՊարոն Կոստանդին զթագաւորահայրն Հայոցս զարմից նորընծայ թագաւորին Հեթմոյ, որ այն ինչ ամաց մետասանից ընկալեալ զթագաւորութիւն 'ի Բարձրբերդոյն, և 'ի թուականութեանս մերոյ ալին ՈՁԵ. ստացաւ զսա Պարոն Կոստանդին թագաւորահայրն և իշխեցաւղն ամենայն Հայոցս զարմից և ընձեռեաց եկեղեցւոյ իւրոյ սուրբ

Փրկչին , զոր ինքն շինեաց քաղաքում ծախիւք 'ի յիշատակ իւր և Աստուածապարգեւ շառաւիղացն իւրոց . զոր թէ ոչ Տեառն զաւրութեանց թողեալ էր մեզ զաւակ , իբրեւ զՍոդոմ լինէաք և Գոմորայ նմանէաք , զորս և պահեաց Տէր Աստուած ընդ երկայն աւուրս և պարագայց ամաւք շնորհեսցէ եկեղեցւոյ իւրոյ և ամենայն հաւատացելոց իւրոց 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր , որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն » :

1. Աւետարան մագաղաթ յԱռաջնորդարանն :

« Փառք եզակիանի եռահիւսեան դաւանութեանս սայէնիային կատարեալ և անսահմանելի Աստուծոյ Հաւր , Աստուծոյ Որդւոյ , Աստուծոյ Հոգւոյ , յաւիտեանս ամէն :

« Շնորհիւ Տեառն ամենակալի և նորին ազնականութեամբ աւարտեցաւ եռահիւսեան և հոգեղարդ Աւետարանս , զոր էր շաղկապեալ երանեալ Աւետարանչացն ըստ բազմերանգ գունոցն 'ի մի ոստան անկելով հանճար . զոր արուեստակեալ անուշայած ծաղկանց իւղեփեցական կազմութեամբ իմանի զանազան որակութեամբ գաղափարելով , ըստ յօգունցն արփացելոցն դասակցութեանց տա 'ի յեկեղեցւոյ յարմարումն յաւդիւ խաղաղութեամբ զկնոյն պատշաճեալ , զի յայտնեսցէ կատարելութիւնն : Զորք աւետարանիչք 'ի բազում պատճառէ : Զորեքկերպեան կենդանիք , մարդ , առիւծ , ցուլ , արծիւ : Զորք նիւթք աշխարհիս , հող , ջուր , աւդ , հուր . համասամք անհասանելիք և սիրելիք անքակտելիք : Զորք դիր անուան Երրորդութեանն , Հ ա յ ր , Ո ր դ ի , Հ ո գ ի :

Զորք գետք բղխեալք 'ի դրախտէն, Փիսոն, Գեհոն, Տիգրիս, Եփրատէս: Զորք անկիւն և եղջիւրք սեղանոյն: Զորք դէմք խաչին: Եւ այլ բազում պատճառս, յորս դաղափարի չորեքեան աւետարանիչքս. զի թէպէտ բազում բանք 'ի սոսա երևին ներհակ միմեանց, այլ քաջ ճշմարիտ և միաբանք միմեանց:

«Արդ այսմ անմահական ըմպելւոյ և անգին մարգարտին փափագող եղեալ Եփրեմոս և ես զաղափարել զսա 'ի ժամանակս վերջինս 'ի թուականութեանս Հայոց ՋԽ 'ի գաւառին Գուգարաց, ընդ հովանեաւ սուրբ Կարապետի ուխտիս և այլ բազմապատիկ սուրբ Նշանացս, յորում ամի մեռաւ Եռաղուալ խանն, և այլքն մի զմի կոտորեցին մինչև մնաց և ոչ մի 'ի յազգէն Պախնիկրոյ. և եղեալ Պարոնն Վրաց Ղուրդուրէ Լթոմարդով 'ի վերայ քաղաքին Արզրումայ և առեալ առ զերկիրն և որար զքաղաքն աւերկատու: Այս եղև 'ի թագաւորութեանն Վրաց Կոստանդինոյ, և 'ի կաթողիկոսութեան Հայոց տէր Սարգսի, և յեպիսկոպոսութեան մերոյ տէր Յուսկանն:

«Արդ աղաչեմք զամենեսեան որք ընթեռնուք զսուրբ Աւետարանս, յիշեցէք աղօթիւք զստացող սորին զԼիանոսն, և զկենակիցն իւր զՄորամելիքն, և զորդիքն զԵւատոչէն, զԽութլուչէն, զՆրանոսն, զՍարգիսն, զԹոռն զԽուպիարն և զեղբայրն զՅովհաննէսն, զԹոռներն զԽաչապիզն, զԴաւլաթն, զՇահզատան, զԱստուածատուրն, զքոյրն զՓէրաւժն, զհայրն Տրդատ, զմայրն զԴունամելիքն, զպապն Սարգիս, զմամն զՍիրման, զողապարոնն զԵղիսաբեթն, զԱմիրդատն, զՄկրտիչն, զԹաւագալն, և ա-

մենայն ազգատոհմն Նորին ամէն ։ Եւ զիս զանպիտան գրիչս զՄելքիսեթս անյապաղ յիշեսջիք . . . » ։

Վերջին ստացողաց երկու յիշատակարան ևս կար գրեալ , մին ՌՃԲ. Թուին , յորում կը յիշուին հետևեալ անունները .

« . . . Որդիքն Շաղին և Հեզինար . . . և զմեծ մամն զՎարդիխշահն » ։ Իսկ միւսն , « . . . ՌՃԺԳ. Թվին , 'ի քաղաքն Թէոդուպօլիս , Արզրում . . . » ։

— Իսկիզբն սոյն Աւետարանին գրեալ.

« . . . Այս սուրբ Աւետարանիս համբաւ եղաւ Արզրումու քաղաքն . և ես տէր Մկրտիչս եղայ գնացի 'ի Ալվար , առի զՄկիչն ու գնացի Ազմու (Արղրումու) քաղաքն . և գնացաք 'ի ոսկերիչ Միրաքն , առաք և գնացաք 'ի խօճայ Սքանտարն էյ Եըզտանին . առին և գիներ են Ճ. Փլօրի և անաւրինաց ձեռացն առին » ։

## ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

Հրաշակերտ վանուց սրբոյն Յովակիմայ և Աննայի , որ գրեցաւ յամի Տեառն 1841 , 'ի 15 յուլիսի ։

( Օրինակեալ 'ի մեծ արձանագրութենէ նոյն վանիցն . )

« Ի բազում ժամանակաց հետէ , կարի կարօտակիր տենչանօք ցանկայաք գտանել ուրեք՝ զհաւաստի յիշատակագրութիւն հրա-

չակերտ սրբոյ Ուխտիս, և նովին տեղեկանալ նախնի հիմնարկութեան և սկզբնաւորութեան սորին, և այլ ևս եղելոց և անցելոց լրոց: Այլ աւա՜ղ, զի կամ անփոյթ արարեալ նախնեաց մերոց պայծառ կարեւոր պատմութենէս, և կամ որպէս և իցէ անհետ եղեալ կորստեամբ, չեղեւ մեզ հնար 'ի բազմաքննին հետազօտութեանց 'ի ձեռս բերել զխնդրելին մեր, և հասանել մերումըս բաղձանաց: Ապա յուսակտուր լեալ յամենայն ուստեքէ, և զմտաւ ածեալ թէ՝ մի՛ գուցէ և յետնորդք մեր զմեզ ստգտանիցեն, արժան համարեցաք աստէն ըստ կարեաց տկարութեան մերոյ՝ յեռանամուխ լինել, ինքնին առ այս գրութիւն:

« Վասն զի առաջին հիմնադրութիւն սորա չէր մեզ յայտ, այլ որչափ ինչ գտեալ մեր 'ի հաւանական գրոց և պատմութեանց զայն դնեմք առաջի. և մանաւանդ զոր տեսաքն աչօք մերովք և լուաք՝ ունիմք յիշատակել աստանօր՝ յանձն առեալ զաշխատութիւնս 'ի փառս փրկչին մերոյ Յիսուսի և 'ի պատիւ ամենօրհնեալ ծնողին իւրոյ:

« Եւ արդ՝ գրեալ էր 'ի վերջոյ հին ձեռագիր աւետարանի միում այսպէս, 'ի թուին Հայոց 1103: — Քակեցին զմենաստանն սրբոյն Անանիայի, և զմի յեկեղեցեաց Եւդոկիոյ որ էր 'ի Շնայս մեհեկէ ասացեալ տեղին: Եւ 'ի թըուին Հայոց 1108 նորոգեցին զվանս սուրբ Անանիայի. յայնմ ժամանակի՝ Եպարքոս ոմն եկեալ 'ի կողմանցն հարաւոյ՝ քակեալ կործանեաց զսուրբ Ուխտս 'ի հիմանց: Իսկ 'ի թուին Հայոց 1159, վերստին նորոգեցաւ մենաստանն սրբոյն Անանիայի պայծառ և փառաւոր խորանիւք և պատշաճաւոր սենեկօք՝ օժանդակութեամբ ժողովրդոց համայնից և

վերակացութեամբ Տ. Մարտիրոս բարեջան քահանայի ։

« Զկնի երից ամաց շինութեան սրբոյ Ուխտիս, յԵւդոկիա սկսան նորոգել արքունի հրովարտակաւ զեկեղեցին սրբոց Մանկանցն քառասնից. բայց չև հասեալ նոցա 'ի լրութիւն շինութեան ժողովեցան չարաժանտ և խեղաբարոյ այլազգիքն Եւդոկիոյ, և հասեալ 'ի վերայ սուրբ եկեղեցւոյն՝ քակեցին զնա ։ Եւ նոյն ամբոխիւ՝ դիմեցին 'ի վանս սուրբ Աննայի, զամենայն ինչ աւար առին, և իբրև ոչ կարացին քակել զնա մուրճով, այրեցին զամենայն շինուածն հրով, յամսեանն յուլիսի— ։

« Ահա այսքան միայն գտաք 'ի ձեռագիր աւետարանի անդ, սակայն նոյն Տ. Մարտիրոս բարեջան քահանայն գոլով պաշտօնատէր և նախանձախնդիր փառացն Աստուծոյ, ինքնին գնացեալ 'ի թագաւորեալ մայրաքաղաքն, կրկին հրովարտակ հանէ 'ի Դըրանէն, և եկեալ վերստին շինէ զՍ. վանս առաւել քան զառաջինն պայծառ և փառաւոր, և ինքն զկնի միոյ տարւոյ փոխի 'ի կենաց աստի թողեալ զանուն իւր յերկրի անմահ և անթառամ պանծանօք և փառաւորեալ համբաւովք, և մեր Ս. վանքս նոյն շինուածովք մինչև հարիւր հինգ տարի, և անտի վերստին նորոգի կամօքն Աստուծոյ՝ զոր ունիս տեսանել զկնի ։ Արդ կամեցեալ մեր աստանօր դնել զպատմութիւն նորոգ շինութեան սրբոյ Ուխտիս՝ որ եղև 'ի ձեռն Գէորգ արհիապանծ արքեպիսկոպոսի ։ Սոյն այս մեծահամբաւ բարունապետս մեր՝ գոլով բնակէս ծնեալ 'ի գերահռչակ քաղաքին Զմիւռնոյ, 'ի տոհմէ ազնուականաց, գրասէր, ծանրաբարոյ և խոհական բարուք,

թողլու զաշխարհ և կրօնական սիրով վառ-եալ գայ հանդարտի 'ի հրաշալի վանս Ս. Աստուածածնի որ ընդ հովանեաւ Մարզուանի:

«Զի անդ էր եղբայր մօր իւրոյ Արքե-պիսկոպոս Առաջնորդն նոյն Մարզուանու, մնայ անդ 'ի վանս առ ժամանակ մի. մինչ 'ի վաղճան Առաջնորդի ազգականին իւրոյ, որպէս որբ անհայր մնացեալ:

«Որովհետեւ համբաւ գիտնականու-թեան սորա՝ ամենայն ուրեք տարածեալ էր 'ի մէջ ազգի մերում, վասն այնորիկ Դանիէլ սրբազան կաթողիկոսն Էջմիածնի հրաւիրէ զնա յաթոռ իւր սիրով և պատուով, իսկ նո-րա խոկոյն հնազանդեալ՝ անկանի յուղի, և այն ինչ եկեալ յԵւդոկիայ երկու աշակեր-տովք, օթեւանի 'ի միում պանդոկի և անդ լսէ զվաղճան Դանիէլ սրբազան կաթողիկոսի և մնաց աստ յԵւդոկիա առ ժամանակ մի:

«Ի սմին ժամանակի Առաջնորդն էր Եւդոկիոյ Երեմիա արքեպիսկոպոսն Կոստանդ-նուպոլսեցի, որոյ տեսեալ զայս պանծալի զՍ. Հայրն մեր, խանդաղատեցաւ ընդ նմա մեծաւ սիրով. զի լուեալ եւս էր զհամբաւ բարելաւութեան նորա յառաջագոյն, վասն որոյ խորհուրդ արարեալ՝ ընդ մեծամեծս իշխանաց քաղաքին՝ ամենեքեան միաբան հա-ւանութեամբ հրաւիրեցին զնա 'ի կարգս վարդապետութեան, և թէպէտ զառաջինն նա ոչ հաճեցաւ անարժան զանձն վարկու-ցեալ հոգեւորական պաշտօնին, բայց յետ բազում թախանձանաց ձեռնադրեցաւ վար-դապետ 'ի նոյն ինքն Երեմիա Արքեպիսկո-պոսէն յեկեղեցւոջ սրբոյն Գէորգայ, յամի տեառն 1809: Եւ կոչեցաւ անուն նորա Գէ-որգ վարդապետ:

«Ապա սոյն այս Գէորգ գերահանճար

բարունին 'ի նոյն ամի տնօրէնութեամբ Ազգային ժողովոյ կարգեցաւ վերակացու և վանահայր սրբոյ Ուխտիս՝ որ մինչև ցայն վայր՝ էր 'ի ձեռս աշխարհականաց ։ Ապա եկեալ նորա 'ի վանս, և տեսեալ յամենայն կողմանց զխղճութիւն և զաղքատութիւն սրբոյ Ուխտիս, մանաւանդ զվտղընջակերա հնութիւն շինուածոյն և զքայքայումն նորա յանհոգութեան աշխարհական վերակացուաց՝ սկսաւ այնուհետեւ ջանահնար լինել և հոգալ օր ըստ օրէ զպակասութիւն նորա, յորդորելով զժողովուրդն և արդար վաստակօք իւրովք ։ Եւս եւ 'ի մի յայնմ օրէ նորոգել զշինուած սրբոյ Ուխտիս ըստ յաջողութեան ժամանակի ։

« Տեսեալ Եւդոկիացւոց զսորա հաւատարիմ ծառայութիւն տանն Աստուծոյ՝ և զքրտնաջան աշխատութիւն, առաւել եւս կապեցան ընդ նմա անխզելի կապանօք սիրոյ, և ուրախ լինէին ընդ այն, ակն ունելով յապագայս վայելել զքաղցրախորժ պտուղ աստուածաձիր շնորհաց և վարդապետութեան նորա ։ Ի սմին ժամանակի՝ Եբեմիա Արքեպիսկոպոսն պատճառօք իւիք ելեալ գնաց 'ի Կոստանդնուպօլիս, և մնաց անդէն ։

« Իսկ Եփրեմ սրբազան կաթողիկոսն՝ որ յետ Դանիէլի նստեալ էր յաթոռ հայրապետութեան, քանիցս նամակագիր լեալ առ սուրբ հայրն մեր Գէորգ բարունի՝ հրաւիրէ զնա գալ անյապաղ առ ինքն յԷջմիածին՝ վասն համալսարանին իւրոյ՝ զոր կառուցեալ էր նա ինքն անդէն 'ի պայծառութիւն գիտութեան. վասն որոյ հնազանդեալ բարձրագոյն հրամանի Վեհապետին՝ ել և գնաց աստի զկնի չորից ամաց վերակացու-

թեան իւրոյ 'ի վերայ որդւոյ Ուխտիս :

« Բայց ժողովուրդք Եւդոկիոյ որոց ոչ սակաւ տրտմութիւն էր զրկիլ յայնպիսի ժրը-արթուն և քաջաքարոզ րաբունւոյ, անձա-պարեցին մութաղէս գրել 'ի Կ. Պօլիս և բերեն զառաջնորդութիւն վիճակիս 'ի վերայ նորա Պատրիարքական կոնդակաւ և պէրաթիւ Օսմանեան. և եդեալ զկոնդակն Պատրի-արքին ընդ միում երեւելի անձանց առաքե-ցին 'ի Ս. Աթոռն հանդերձ աղերսական գը-րով առ սրբազան կաթողիկոս, զի զԳէորգ վարդապետ սուրբ հայրն մեր ձեռնադրեալ եպիսկոպոս, շնորհեսցէ փոքու հօտին իւրոյ աստէն գտանիցելոյ. Որոյ ընկալեալ զգիրն խնդրանաց, ձեռնադրեաց զնա Եպիսկոպոս և ակամայ կամօք առաքեաց զնա այսր յա-մի Տեառն 1814 :

Ապա եկեալ սրբազան Հօրն մերոյ Գէ-որգ Արքեպիսկոպոսին 'ի վիճակ իւր Եւդո-կիայ՝ ցոյց զփրոս հաւատացելոց հոգեւո-րական ուրախութեամբ և սիրով յայնմհետէ աշալուրջ հսկողութեամբ հոգալ և խնամել զհօտն Քրիստոսի, լեալ խնկաբէս հայր որ-բոց և այրեաց :

Արդ վասն զի եղեալ էր 'ի մտի Ս. հայրս մեր 'ի սկզբանէ անտի նորոգել զսուրբ Ուխ-տըս 'ի հիմանց, բայց ոչ ներէր նմա բազ-մավիշտ նեղութիւն ժամանակին, յորում առաւել զօրացեալ էր 'ի վերայ ազգին ան-ողորմ բռնութիւն Սարաֆինոսաց. սակայն կատարեցաւ փափաք ցանկութեան սրտի իւրոյ հուսկ ուրեմն յամի Տեառն 1828 : Որ թէպէտ առաւել ևս դառնագոյն ժամանակի պատերազմաց Ռուսաց ընդ տէրութեան Օս-մանեանց, բայց յուսացեալ յամենակարող զօրութիւնն Աջոյն բարձրելոյ, ձեռն էարկ

'ի կատարումն իւրոյ առաջադրութեան ։ Այլ և առաւել զգործն 'ի գլուխ տանելոյ եղեւ պատճառ յայնմ ժամանակի եղեալ գետնաշարժութիւնն զարհուրելի, յորմէ պատառեալ քակտեցան և կործանեցան աստի և անտի պարիսպքն երկոցունց կողմանց և այս եղեւ ամ մի յառաջ քան զշինութիւնն ։

« Իսկ 'ի միւսում ամի գետնաշարժութեան, այն է 1828, սկսաւ զգործն շինութեան 'ի սկիզբն ապրիլի, և գեղապանծ վայելչութեամբ յօրինեաց զտաճար, անսիւն կամարօք և սրբատաշ քարամբք, և վայելչացոյց զսուրբ Ուխտս գեղեցկազարդ սենեկօք շուրջանակի պարսպօք և արտաքին շինուածօք. և յաջողութեամբ Տեառն Ամենակալի աւարտեցաւ այն ամենայն մինչ 'ի վերջ սեպտեմբերի որպէս տեսանի գրեալ անդ 'ի վերայ դրան տաճարին ։ Ահա այսպիսի մեծագործութեամբ առաւել ևս ծաղկեցաւ Գեր. Ս. Հայրս մեր մանաւանդ բազմութեամբ և երեւելի ընտիր աշակերտօք, զորոց անուանս արժան համարիմ ծանուցանել աստէն ։

Յօհ. Վ. որ այժմ է եպիսկոպոս վիճակին Ակնայ, Զաքարիա Վ., Եսայի Վ., Ն. Գալուստ Վ. (գրող պատմութեանս), Գաբրիէլ Վ., Ներսէս Վ., Յօհ. Վ., Թադէոս Վ. ։ Սոքա էին 'ի կենդանութեան իւրում միաբանք Ս. Աննայի, որք 'ի ժամանակս շինութեան, քըրտնաթոր տաժանութեամբ զցայգ և զցերեկ թաթաւեալ 'ի կիր և 'ի կաւ 'ի գործ տաճարին պարապէին ։

« Եւ իբրև այսպէս բազմահոգ տառապանօք լրացոյց զգործ շինութեան, սկսաւ այնուհետեւ մաքրասուն անձն նորա տկարանալ օր ըստ օրէ, բայց և այնպէս ոչ հան-

դարմէր 'ի կենսատուաչ հոգոց և զբաղմ…
առաջնորդական գործոց. և զկնի չորից…
մաց շինութեան Ս. Ուխտիս, անկաւ 'ի…
հարբեր ցաւս, որում ոչ կարացին բժշ…
դարման մատուցանել դեղորէիւք, հրա…
ժեցաւ յանկման՝ Արքային Յանեզրական…
կեանս 'ի 69 ամեայ վայելչածաղիկ հասա…
ծերութեան, զկնի 20 ամաց տեսչութե…
խորոյ յՆւդոկիա, յամի Տեառն 1832, յ…
սեանն սեպտ. 13, և թաղեցաք զնա հոգ…
ւորական հանդիսիւ 'ի դաւիթ սուրբ Ե…
ղեցւոյ յանդիման դրան տաճարին »:

## ՁԵՌԱԳԻՐՔ

## Ս. ՅՈՎԱԿԻՄ—ԱՆՆԱՅԻ ՎԱՆՈՒՑ

1. Ճաշու գիրք.
1. Շարական.
1. Հաւաքումն և լուծմունք Առակաց … Երգոց երգոյն.
1. Կանոնգիրք.
1. Համառօտ տեսութիւն հրեշտակաց.
1. Մաշտոց փոքր.
1. Մարդակազմութիւն և ճառք Գրիգոր… Նիւսացւոյ.
1. Աւետարան մագաղաթ մեծ.
1. » » միջակ.
1. » » փոքր.

Բաւական հարուստ թուով տպագիր… գրեանք ունէր վանքս: Նոյնպէս ճոխ էր նաև… Ս. Ոսկեբերանի վանքի գրադարանը, որոյ… ձեռագիրներէն ցանկ և յիշատակարան օրի…

նակելու միջոց չունեցայ դժբաղդաբար։ Մեծ ցաւ եղաւ ինծի որ Թօքաթի եկեղեցեաց ձեռագիր մատեանները, որ շատ հարուստ թիւ կը կազմէին, չկրցայ աչքէ անցընել ամէնքն ալ և պէտք եղածն ընդօրինակել։ Թօքաթ ոչ միայն իրեն համար, այլ շատ ուրիշ գաւառներու համար ալ եկեղեցական գրքեր ձեռագրած է, ինչպէս յայտնի է հետաքրքիր եղողներուն. շատ երգեր և տաղեր չինողներ ալ եղած են, նոյն իսկ սուները բաւական ձեռագիր մատեաններ կան եղեր. կ՚երեւի թէ Թօքաթի ժողովուրդն ամենէն յառաջ ազնիւ ճաշակ ունեցեր է գրելու կարդալու։ Աղաբաբեան Յօհաննէս անուն մէկը, կ՚ըսէր, Ս. Առաջնորդն և այլք, բոլոր բուսոց Հայերէն բառեր գրած ունի, տառանաւոր յօրինած, որոց ձեռագիրը անոր որդւոյն Յակոբին քովն է։ Գ. Ընկուզեանն ալ այս տեսակ գրուածքներ ունի եղեր։ Բայց տունը քաղաքէն բացակայ լինելով, չը կրցայ տեսնել, կը փափաքէի որ ստոյգ լինէր, և խնդրեցի որ խնամօք պահել տան, իբրև խիստ կարեւոր գործ։

Ութն օրուան մէջ, որքան կարելի էր, լմնցընելով մեր պաշտօնը, Հոգեգալստեան կիրակին քարոզեցինք Ս. Աստուածածին եկեղեցին։ Յունիս 7ին Թողեցինք Սեբաստիան Օհան Էֆէնտին, որ Թօքաթի առաջին նշանաւորն էր եղած այս տարիներու մէջ, և հասարակ հիւանդութեան արհեստէն բարձրա-

ցած էր բարձրագոյն աստիճանի. մարդ՝ սատորիկ եռանդոտ և փառասէր, ճարտար, ազդու, գործող, բայց յամառ և խռովասէր. որոյ կեանք կարի բեղմնաւոր և ազգօգուտ կարող էր լինել, եթէ կրթութիւն և քիչ մը ուսմունք ունենար. անգամ անգամ իւր անձնական ծախքով վարժարան բացած էր, մի և նոյն առատաձեռնութեամբ. սակ կը մոլէ՝ եղեր իւր կամքը յառաջ վարելու և հակառակորդը տապալելու համար, ընդբաղդատար չատն 'ի միտս ազգին. թէպէտ, կ'ըսէին՝ անմիջապէս կը գզձար ըրածը գլուխ տանելէն զկնի, բայց ի՞նչ օգուտ. վերջին օրերն ալ բոլոր ըրածներուն վրայ զղջացեր էր, ըսին. բայց հատուցում մը չընելով, և ոչ իւր հարստութենէն կտակ ձգելով ազգին: Մեծ ագիտութիւն մի է այս և խղճի մոլորութիւն, երբ անհատի մը կամ ազգի մը մնասողները Մեղայ ըսելով և զղջմամբ խոստովանելով, կը կարծեն թէ կը ներուի իրենց այնքան զրկանքներ և մնասներ, զոր միայն փոխարինմամբ կարելի է քաւել. անշուշտ անոնց համար կ'ըսեմ, որ կրնան հատուցանել իրենց զրկածին չորեքկինը: Այո՛, անոնք միայն կրնան հանդարտել իրենց խիղճը, և լսել «Այսօր եղեւ փրկութիւն տանս այսմիկ»:

———

## ՍԵՒԱՍՏ ՔԱՂԱՔ

Յունիս 8 ։ Չկրնալով ջորեպան գտնել, հարկ եղաւ սուրհանդակի հետ երթալ. ժամ $5^{1}/_{2}$ին մեկնեցանք Թօքաթէն ։

Լերան ճանապարհով գնացինք . կը բարձրանանք ու կը բարձրանանք ։ Երթացող եկող իշոյ կարաւաններու յաճախ կը հանդիպինք , որք Թօքաթէն կեռաս կը տանին ՚ի Սեւաստ ու կը դառնան ։ Պաղորակ ջրեր կը խմենք . զովագին է օդ . տեղ տեղ ճամբուն վրայ գերեզմաններ կան սպանելոց . երկիւղալից են այս տեղեր ։ Չէրքէզներ կը վխտան , որոցմէ Ուզուն Միրզէ անունով Չէրքէզն հեծեալ և սպառազէն ընկերացաւ մեզ . ամայի վայրերէ կ՚ընթանանք ։ Ուզուն Միրզէն պատմութիւններ կ՚ընէ Կրիմի պատերազմին, ուր ինքն ալ գտնուած է . կը պախարակէ Թուրք զօրավարաց շուայտ և զեղխ կեանքը , արտասուօք կը յիշատակէ Չէրքէզաց ողորմելի կոտորածն , և մեղքը Թուրք զօրավարաց վրայ կը դնէ . սոսկալի նկարագրութիւն այն կոտորածին , և խեղճութիւն զինուորաց . իրենց անձնուիրութիւն և դիւցազնութիւնը կը գովէ , Եա՜, Եա՜ ։ իրենց նախկին հայրենիքը , և հոն ունեցած երջանիկ կեանքն ու վայրերը կը նկարագրէ . իրենց կրօնական ջերմեռանդութենէ չարժեալ իսլամի երկիրը գալու համար թողած

ու զոհած են եղեր իրենց վայելքն ու հայրենիքը · դժգոհութիւն կը յայտնէր Պետութեան կառավարիչներէն, թէ «Մենք երկրագործ, արուեստագէտ և ժրաջան ժողովուրդ ենք, բայց երկար տարիներ մեզի բնակարան և երկիր չյատկացուելուն համար Թափառական մնացինք · անօթիներ աւազակութեան ձեռք զարկին ։ և այսօր այնպէս ճանչցուած է թէ՝ ո՛վ որ Չէրքէզ է, աւազակ է, մարդասպան ։ Ոչ, ոչ · ոստիկան ամեն ժողովրդեան մէջ կը գտնուի, բայց մեր մէջ ազնիւ ու պարկեշտ մարդիկ շատ կան ։ Կը ցաւիմ, կը ցաւիմ, կ՚ըսէ, երբ կը տեսնեմ որ ամեն մարդ մեզմէ կը վախնայ, կը փախչի, իբրև թէ մենք գազան եղած լինէինք և ոչ մարդ · կը ցաւիմ, երբ ամեն տեղ պատահած գողութիւններ ու սպանութիւններ Չէրքէզաց վրայ կը դնեն · մենք աւազակներ գիտենք, որ բնիկ են, բայց Չէրքէզի հագուստ և զէնք կրելով կը յարձակին կարաւանի կամ գեղերու վրայ, կը խլեն, կ՚սպաննեն, և տեսնողներ կերթան կը վկայեն թէ Չէրքէզներ էին · և ահա ոստիկաններ կու գան մեր օձիքէն կը բռնեն ։ Որո՞ւն հաւատացընենք թէ Մենք չենք · և որովհետև չենք կրնար մեր անմեղութիւնը պաշտպանել, ընենք չընենք գող ենք, կ՚ըսեն մեր Չէրքէզներ, ու իրօք ալ կ՚սկսին », ևն, ևն ։ Արդարև ես ուրիշներէ ալ լսած էի, թէ բնիկ Յոյն կամ Թուրք ոստիկաններ կ՚եր-

թան Չէրքէզներէն հանդերձ կ'առնուն և անոնց զէնքեր, կ'երթան ճամբաներու վրայ գողութիւն կ'ընեն։

Մացառներէ կ'անցնինք. ջրե՛ր դրախտային. ձորերէ կը բարձրանանք, ձիւներու վրայ կը քալենք. մայրի անտառներ կան. նորածիլ դալարներ. այս վայրաց գարունն դեռ այսօր է. և ահա աղբիւր մը, ՔՈՌ—ՕՂԼՈՒ ԱՂԲԻՒՐ։ Տեղւոյս դիրքը, ջրերը, անտառն, արօտն, օդն, և քօռ—օղլի անունն՝ խոր տպաւորութիւն մը կը ներգործեն. ամենայն ինչ բանաստեղծական։ Կը յիշէ մարդ քօռ—օղլու վէպն ու խաղը, և արժանի կը գտնէ այս հիանալի վայրին։

Մեր ձիավար Մանուկն ընչացքներ ոլորած, գդակը մէկ քովին դրած, ձին մըտրակեց, ատրճանակը կրակեց. կրկնեցինք ես և Մարտիրոս մեր ատրճանակները. և ահա Մանուկի աշխոյժը վառուեցաւ. քաղցր և անհեղ ձայնով մը սկսաւ, «Հա՛յ հա՛յ, բաբամ հա՛յ հա՛յ», քօռ — օղլուի խաղի նաքարաթը։

Իջանք այս խորհրդաւոր աղբիւրին մօտ, ճաշեցինք, և խմեցինք մուսայից և դիւցազանց ջրէն, որմէ կարելի չէր յագենալ։ Հեծանք և շարունակեցինք մեր ուղին։ Աղուն Միրզէն անբաժան է քովէս. կարի քաղաքավարութեամբ և ազնուականութեամբ է իր վարմունքն ու խօսուածքը. ծանօթութիւններ կու տայ մեզ այդ տեղերուն վրայ,

կը ցուցնէ քովի անտառները, մարգերը, որ իրենց գեղին կը պատկանին. և ահա գեղը ԲԱԹՄԱՆ ԴԱՇ։ Բաթման դաշ ղուտ Չէրքէզի գեղ է, նոր շինուած, լերան ուսին վրայ, կոկիկ տներով. սքանչելի է օդն, հողն ու ջուրը, միայն ձմեռն խիստ։ Շքեղ ապարանք մը կը ցուցնէ գիւղին մէկ ծայրը բլուրակի մը վրայ առանձին, և կ՚ըսէ թէ Չէրքէզ Մուսա փաշայի տունն է, բոլորովին եւրոպական ճաշակով շինուած, քարուկիր, ապակեայ մեծ լուսամուտներով, առջևն ալ փոքր մզկիթ մը։ Չէրքէզուհիք՝ գեղին առջևէն անցնող ջրոյն եզերքը ցորեն կը լուանան և կը չորցնեն. Ուզուն Միրզէ զանոնք ցուցնելով՝ հառաչանօք կ՚ըսէ. «Ա՜հ, այս գեղէն կռիւի գացողներէն միայն ես և ուրիշ մը ապրեցանք. ամենքն ալ չէհիտ եղան. գեղը միայն կիներ և տղաքներ կը տեսնէք»։ Զմեզ իր տունը կը հրաւիրէ. շնորհակալ կը լինինք. խիստ մարդավարի կերպով կ՚ուղեւորէ զմեզ և կը խնդրէ, եթէ վերադառնանք՝ իրեն հիւր մնանք և չմոռնանք զինքն։ Ուզուն Միրզէն Ռուսաց մէջ պաշտօնատար եղած է՝ դեռ այս կողմերը չգաղթած. 58 տարեկան էր, այլ աշխոյժ և միանգամայն կիրթ անձն։

Արարչաւ կ՚ընթանան մեր ձիերը, և ահա վեց հեծեալ և զինեալ Չէրքէզներու կը հանդիպինք, որ Սեւաստ կ՚երթան. ոչ պակաս քաղաքավար և ազնուական են անոնք

Ուցուն Միրզէէն. Ժամ մը 'ի միասին ընկերանալով, խօսակցելով, մենք յառաջ կ'անցնինք, մեր ետեւ ձգելով Բաթման դաշտի գեղաբերան գեղեցիկ արտեր եւ վայրեր, անտառներ եւ ջրեր, մեզ հետ առնլով պահականոցէն ոստիկանները: Զմոռնանք ըսել թէ՝ այս Բաղդադի մեծ ճամբուն վրայ եւ լեռնային ուղին, ուր որ աւազակաց երկիւղ եւ ձմեռուան խստութենէն վտանգներ պատահելու տեղեր կան, պահականոցներ շինուած են, եւ պահապան ոստիկաններ դրուած, թէպէտ շատոն ամայացած եւ վտանգներ անպակաս:

Դարղինի լեռնադաշտն իջանք. մեծափառ Խըլըթըղ լեռն որ ձեւով կը նմանի Մասիսին, չքեղ կ'երեւի մեզ յանդիման, ճիշդ իր ստորոտն շինուած է Դարղին գեղը: Ցուրտէն կը դողանք: Ժամ 12 է: Անխարաց բազմաթիւ հօտեր, հաչող ու վազող գամբռ շուներ, բացօթեայ իջեւանած կարաւաններ, արածող խոզ եւ ձիոց զանգերու զնգզնգոց, անդաստանաց գեղատեսիլ կանանչ գեղը, եւ դաշտէն ու լեռնէն վերադարձող շինականաց ու փոստակաւոր նեղիկ եղանց երամն, երեւոյթեան չքեղութիւններն են երջանիկ կենաց եւ վայրաց: Հասանք մենք ալ մեր իջեւանը: Գեղին բընակիչքը ամբողջ Թուրք են:

Պատուական Թուրք մի էր մեր ասպընջականն, շնորհքով սենեակ մը պատրաստ,

մեծ սուխէրիկ (պատին մէջ բացուած օ-ճախ) տատա փայտերով անդադար կը վառուի. քանի՜ սիրուն է բոցը. մեր շուրջ բոլորեցան գեղի Աշուխ-ալէֆ, պատուաւորներ, անվերջ հետաքրքրութեամբ հարցումներ կ՚ը-նեն, փափուք և մաղթանք պատերազմի վերջանալուն: Այսպէս ամեն թուրք և Գըզըլ-պաշ գեղերը արտասուօք և մորմոքանօք կը խօսին պատերազմի վրայ, որոյ աղէտը հարի ծանրացած էր իրենց, տանելով իրենց զաւակները մահու ասպարէզը. շատ տներ թափուր մնացեր էին, և երկրագործութիւնը խափանեալ. կ՚ողբային յիշելով իրենցմէ պահանջուած չափազանց ծախքներ, ծանր տուրքեր, ձրի ծառայութիւններ, և անապօրոյն պաշտօնատարաց խիստ վարմունքներէն կրած զրկանքները, ևն, ևն: Պատրաստուեցաւ մեր սեղանն, թարմիկ հաց, նոր պանիր, ջերմիկ կաթ, կարագ, սեր, մածուն, և ձաւարէ փլաւ: Ի վերջոյ մենք ալ թէյ հրամցուցինք ամենուն, և շաքար բաժնեցինք կանդուկլուց պստիկ լամուկներուն, որ շատ բարեկամ եղան մեզ, և արագ արագ կը վազէին ու կը դառնային իրենց մայրերուն քով, որ դրան ծակերէն ու երդիքներէն կը նայէին:

Յունիս 9. Դարգինէն մեկնեցանք. Լեռնահովիտ է մեր ուղին, գետակի մը ափէն կ՚ընթանանք, հերկողներ, նախրորդներ, երթևեկներ կան, գոգաւոր տեղ մը ամա-

ջի թեթեւ մը, և անոր մօտ գերեզմաններ. տեղ տեղ գեղեր կ'երեւին, և Սեւաստու քանի մը բարձր լեռներ ։ Կը հանդիպինք խումբ մը Կիւրինցի զինեալ կորիւն Հայոց, իջած բռուած աղբերակի մը վրայ ։ Քանի՞ քաղցրահամ և սառն է այս ջուրը ։ Եւ ա-հա Մէյրէգումն ենք, որ ընդարձակ լեռնա-դաշտ մի է անջուր, անմշակ, և անբնակ, կը տեւէ 2 1/3 ժամ. Հեռու հեռու հա-զիւ կը տեսնենք լեռնադաշտին եզերքները մի քանի վարողներ՝ Բրգնիք գեղացի ։ Աւա-զակներէ սպաննելոց՝ և ձմեռն բքախեղդ ե-ղողներու գերեզմաններ կան տեղ տեղ. ան-նկարագրելի փոթորիկներ տեղի կ'ունենան եղեր Մէյրէգումին վրայ. քարակարկառներ կան շարուած՝ ճամբան չմոլորելու համար ։ Ահա աւերակ խան մը, և զառ'ի վայրէ մը կ'իջնենք ձորահովտի մը մէջ. մեր անցած լերանց ջրերը գետակ մը կազմելով այս ձո-րէն կ'ընթանան Սեւաստու քաղաքը. զա-լարուէտ արտերով լի է ձորը, ուր խուռն-երամ անդեղայք և իշան խորախնան կը կազ-մեն ։ Մեր իջած դարին տակ աղբիւր մը կը հոսի կաթի պէս սպիտակ և համեղ, ձիւնի պէս ջինջ և սառն ։ Կը յառաջանանք, և ա-հա ջաղացքներ, ուռենիք, դալարներ, կա-նանչ արտեր, ճիւղ ճիւղ բաժնուած ջրոց առուներ, տեղ տեղ կանգնած վրաններ ։ Դուրս կ'ելլենք ձորէն, մեր աջ կողմն է ԴԱՎՐԱ գեղեցիկ գեղ Հայոց, որոյ հանդէպ

և հուպ բարձր դիրքի վրայ կայ վկայարանի ձեւով փոքրաչէն նոր տաճար մը Ս. Յակոբայ անունով, և քարայր մը՝ Ս. Վարդանէ, զոր քոյր Ս. Յակոբայ է, կ՚ըսեն ։ Գաւառայէն վեր խիստ մօտ է Ս. Նշանի վանքն, գմբէթայարկ, պարսպապատ և դրախտավայր, յորմէ անդր ես, իբր կէս ժամու միջոց, Սեւաստու քաղաքն է ։ Ուղղակի Ս. Նշանի վանքն իջանք դեռ կէս օր չէր ։

Յունիս 10. Վանքը շրջեցանք, ուխտ և երկրպագութիւն ըրինք, ու հանգստացանք. Քաղաքէն քանի մը ազգայիններ տեսութեան եկան ։

Յունիս 11. Կիրակի առաւօտ, Առաջնորդ Ս. Հօր հրաւիրանօք կանուխ քաղաքի մայր եկեղեցին իջանք. այն ահագին և ծոյակապ եկեղեցւոյ մէջ խուռն բազմութեամբ լեցուած էր ժողովուրդն, ողջունեցինք զիրենք, աւետաւորեցինք, և իրենց ընծայքները յիշեցուցինք ։ Նոյն երեկոյ, որ Հռիփսիմեանց կուսանաց նախատօնակն էր, իգական սեռի կրթութեան վրայ խօսեցայ ։ Այսօր մինչև երեկոյ այցելութիւններ փոխելեցի ազգայնոց գրեթէ ամեն կարգէն, երեւելիներ, ուսումնականներ, պաշտօնական մարմիններ, ընկերութիւնք, երիտասարդք, քահանայք, եւ։ Շատ մխիթարուեցայ և յուսով լցայ, տեսնալով հոս կենդանի Հայեր ։

Մինչև յունիս 25 ՚ի Սեւաստ անցուցինք. մերթ ՚ի վանք, մերթ ՚ի քաղաք ։ Բանա-

դառնալ թէ՛ ազգային Թախանձանքէն և թէ՛ Առաջնորդ Ս. Հօրէն, կաթողիկէ Ս. Էջմիածնի տօնի կիւրակին պատարագեցինք 'ի Մայր եկեղեցին. աւուր պատկերը գեղեցիկ առիթ կ'ընծայէր Հայ ազգիս և Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ նախկին փառքը նկարագրելու, Տրդատն և իւր օրեր, Լուսաւորիչն և Շողակաթ, Ազգիս Նոր Նորոգութիւնն, լուսաւորութիւնն, Նոր Շողակաթն, Նոր լոյս, եւն, եւն: Նոյն երեկոյ Ս. Սարգիս եկեղեցին գնացինք և քարոզեցինք Մովսէսի և Դաւթի աստուածպաշտութիւնն. Վարդանանց, Ղեւոնդեանց և այլ մասնակեաց Հայ—Քրիստոնէութիւնն: Եռաց ժողովըրդեան սիրտն, և ոգեւորուեցան ու մխիթարուեցան հոգեւորապէս:

Վարժարանները մի առ մի շրջեցայ, 12 յարկի կամ մասի բաժանեալ է՝ զատ զատ թաղերու մէջ, յորոց երեքն աղջկանց են. մեծ Ուսումնարանն Թարգմանչաց անուամբ՝ Մայր եկեղեցւոյ մօտ է: Զարմանալի էր տեսնել Սեւաստու Հայոց մանկանց բազմաթուութիւնը. Աստուծոյ «Աճեցէք և բազմացարուք» օրհնութեամբ խիտ խիտ, կայտառ, կարմիր, սիրուն, սփռուած են վարժարանաց բակը; սրահն ու սենեակը, իբրև ծաղկունք 'ի մարգ: Սովորական կարեւոր ուսմունքներէն զատ, կար նաև գաղղիերէն և տաճկերէն լեզու. աղէկ ուսուցիչներու պէտք ունէին. աւագ վարժապետն էր

Թաղէոս պատուելին, զոր Թուրքեր կը կոչէին Աշըղ և Մօլլա. Թէպէտ երկու աչօք անտես, այլ միօք կորովի. սա կ'ուսուցանէր բարձր կարգին ճարտասանութիւն, տրամաբանութիւն, գրագիտութիւն, պատմութիւն կրօնագիտութիւն, բանաստեղծութիւն, և գաղղիերէն, ուսած էր նաև Պարսկերէն. գիտէր քնար և ջութակ հարկանել, խաղ կանչել, յանպատրաստից տաղ և խաղ հընարել, եկեղեցւոյ շարականներ և երգեր նուագել, ճաշու գիրքերը բերան ընթեռնուլ, գրաբառ շարադրութիւն յօրինել արձակ և ոտանաւոր. կրօնական և բանասիրական քննադատութիւններ ընել, ևն. ևն.։

Ուսումնարանի այցելութեանս ժամուն, ուր մանկտիք ճառեր և ոտանաւորներ ընթերցան, երգեցին, և ապա մեր դիտողութիւններ, յորդորներ և խրախոյսներ խօսեցանք. խօսեցանք և յուզուեցաւ սիրտս ... որուն 'ի պատասխանի ճարտար բանիւ փոխարինեց նա, և մատոյց ինձ հետեւեալ ձօնը, զոր իբրև ճաշակ մը կը դնեմ այստեղ, հրաժարելով առ ի եղած ակնարկներէն....։

« Ժամանակ համագոյից մայր քանի
չքնաղ ծնար օր,
Քանի՛ օն բարեբաստիկ ծագեցեր մեզ
այգ այսօր.
Բերելով զարուսեակն 'ի մեր աշխարհ
մշտագիշեր,

Զարեգին ազատութեան ընկճեալ ազգին
աւետաբեր ։
Հոգիդ կենարար մահկանացուաց
ու անմահից ,
Կաթեա՛ յիս աւիւն անմահ ոգւոյ ինձ տալ
աշխուժալից ։

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

Ցանկալի է ինձ , Հայրիկ , յափշտակիչ
սրտից քերթող ,
Որ յուշիկ գողանայ զսիրտ մարդկան
իբրև զգող ։
Զգող ում մարդ շնորհապարտ ցմահ զանձն
իւր դաւանի ,
Այնու զի յափշտակեաց զնա 'ի դրախտն
ադենի .
Եւ պարգևեաց առաջի նորա զբնութիւն
և զԱստուած ;
Յորոց 'ի գեղ զմայլի մարդ տրոփէ իւր սիրտ
հողազանգուած ։
Քերթո՛ղ սոխակ բանաւոր զնէր երգէ
և զգեղ անմահ ,
Քերթո՛ղ հրեշտակ երկրաւոր զԱստուած երգէ
երգովք 'ի ճահ .
Քերթո՛ղ քնար Աստուծոյ որ յաւիտեան
զմեզ ընու ,
Յաշխոյժ երկնազդեցիկ անմահ գործէ
զմարդ մահացու ։
Քերթողի ճշմարտութեան սկզբանց քաջիկ
հմտացելոյ ,

Եւ 'ի խանդ երկնազդեցիկ 'ի հրեշտակ
փոխարկելոյ,
Պարտին ազգ մարդկան վիրեանց արդի
բարգաւաճանս.
Ի հրահանգս քաղաքական մարզից և յայլ
ուսմանց կրթանս:
Քերթող որ այդպիսի տեսեալ իմ
զքեզ Հայրիկ,
Եւ յոգւոյդ 'ի զօշոտիչ հարեալ 'ի գեղ
անանցիկ,
Ընդ խուռն խայրիս մտացըս քեզ ձօնեմ
զիմս անկեղծ սէր,
Զօն թէպէտ թեթեւ և դոյզըն սակայն և
անձնանուէր:
Այլ ո՞ւշ թէև քո սիրտ զիս խրախ
չառնէր անտես,
Ո՞ւշ եթէ և ինձ 'ի քէն պաշտէր քո սէր
ում պանծիմ ես »:

14 Յունիս 1878 . . . . . . . . .

Թադէոս Կէչէճեան

Թադէոս պատուելին գրական մասնաւոր գործ մը ունէր յօրինած հրատարակութեան համար. սակայն այնքան առաւելութեամբ հանդերձ, անպատչաճ էր այսպիսի մէկը վարժապետութեան, պատճառը կարծեմ ոչ ոք հարկ կ'զգայ հարցընելու. Թէպէտ և սա իւր այնքան պիտանի ջանից և տքնութեանց արժանեօք իրաւունք ու-

նէր ազգէն իւր սնունդն և ապրուստն ստանալու :

Արժանաւոր երաժիշտ էր Գ. Յակոբ Մեսիաեան, որ և դաստիարակ Ուսումնարանին : Երկրորդական դասատուք կրնային յառաջանալ և կատարելագործել իրենց պաշտօնը, եթէ լինէր մանկավարժական կամ նոր ու իրական գրութեամբ վարժարանները բարեկարգել գիտցող տեսուչ մը : Վարժարանաց նիւթական և ուսումնական հոգը ստանձնած է Սենեքերիմեան ընկերութիւնն, և անօրէն անուամբ մէկը կարգած է իր կողմէն իբրև հսկող : Աղջկանց վարժարանները վարձեալ տներ էին, անձեւ և անյարմար. ուսմունք չկար. ձեռագործ սկըսած էին, այլ գործելու նիւթ չկար : Օր մը յատկապէս տիկնանց քարոզ խօսեցայ, իրենց սեռի կարեւորութիւնը, դաստիարակեալ մարդ ամենամեծ օգուտը ազգին համար բացատրելով, «Արասցուք դմա՝ ՕԳՆԱԿԱՆ ըստ դմա», թէ ինչպէս մարդ մը, նոյնպէս ազգ մը առանց կանանց օգնականութեան բան մը չեն, և թէ իրենք ոչ միայն կին են, այլ և օգնական, այլ և մայր, թէ ինչ է իրենց մայրական պարտաւորութիւնը, թէ ինչպէս կարելի է զիրենք իրենց ունեցած ուրուական վիճակէն փոխել և իրական կեանքը ձեռք բերել. մասնաւորապէս Սեբաստու տիկնայք, որք մարդէ կը հալածուին, անտեսանելի և անբարբառ են, հե-

տեւարար և անգաղափար և անզգայ մարդկային, ազգային, տնական, և քրիստոնէական կեանքին և կոչման, հոգեճնշէն աւելի հարէմ, ինչպէս են նաև Ասիոյ կամ Հայաստանի քաղաքաց Հայ տիկնայք. որք սակայն պերճ կը հագուին, և մարգարիտ ու ոսկին կը կախեն, փոխանակ Գրականութեանց մօր նման ոսկին ու գոհարը մսխելու, և իրենց ուստերքն ու դստերքը ուսմամբ և կրթութեամբ ոսկի գոհար դարձնելու, անոնցմով զարդարուելու և պարծենալու։ Յորդորեցի զիրենք որ խնամակալութիւն մը կազմեն և իրենց աղջկանց մտաց ու մտաւանց նիւթ հայթայթեն, եւ. բայց ասոնք իրականացընել տեղւոյս Առաջնորդին գործն էր և Ուսումնական խորհրդոյն, որ չկար։ Թէ՛ ուսումնարանն և թէ՛ ծաղկոցներ լոյս և օդ առնելու պէտք ունէին. Ս. Սարգսի Նորաշէն վարժարանի վերին սրահն այս մասին լաւ էր, բայց հոն ալ գրասեղան չկար. գրասեղան միայն Թարգմանչաց ուսումնարանը կար. ծաղկոցներու մանկունք և աղջկունք քանի մը տեղ բոլորովին հողոյ վրայ նստած էին։ Զարմանալի՛ հայրեր և մայրեր, երբե՛ք չեն այցելեր իրենց զաւակաց, այնքան ցաւօք ծնած և տառապանօք մեծցուցած որդիք, կը ձգեն այնպէս անխնամ, չը գիտեն թէ բան կ'ուսանի՞ն, կամ ինչպէս է տեղերնին, կեցութիւննին։ Ասոնց այսպէս անփոյթ լինելուն պատճառն ինձ կը թուի թէ

ձրի վարժարան ունենալն է․ պէտք է թո-շակ տան, որպէս զի ստակին շնորհիւ իրենց զաւակաց ալ հոգ տանին, հաշիւ առնուն, աղէկ վարժապետ և վարժուհի ունենալու փոյթ տանին։ Ծաղկոցներու և աղջկանց վարժարանաց մէջ մի միայն է ուսուցիչն, վարիչն, և ամենայն ինչ։ Սենեքերիմեան ընկերութեան Պոլսոյ անդամներ մտադիր են եղեր ընտիր ուսուցիչ մը և վարժուհի մը ղըրկել, բայց հոս դիտողներ կան եղեր, որ կը կարծեն թէ իրենց ներկայ վարժարաններէն լաւագոյն վիճակ ունեցող վարժարան չկի-նար․ ամենէն կարեւոր և բարձրագոյն դիրք ունեցող անձ մի ևս այս կարծիքէն էր դըժ-բաղդաբար։

Դեռ աշակերտ, կամ վարժարանէս նոր ելած պատանիք, Դեմոսթէնական խրոխտ ճառախօսութեանց, և Հիւկօական բանա-խօսութեանց մէջ կը խիզախէին․ մոքրիկ սոփեստէսներ և պոէտեսներ, որ զիրենք շատ բարձր գիտնոց կարգին դրած են։

Բաւական բազմաթիւ են ընկերութիւն-ներ, որոնցմէ մի քանին միայն պիտի գրեմ․
1․ Սենեքերիմեան ընկերութիւն, որ Սե-ւաստացւոց պարծանք և բազմաց օրինակ լի-նելու արժանի է․ իբր 32 տարիէ 'ի վեր հիմնեալ Պոլիս գտնուած պանդուխտ Սե-ւաստացիներէ, քանիցս դադարած և վե-րակացած, վերջին անգամ 1877ին աւելի կա-նոնաւորուեր և արդիւնաւոր վիճակի մը մէջ

գրուեր է. իր բաժանորդական հասոյթնե-րով թէ վարժարանաց նպաստած է և թէ այսօր երկու խան ունի քաղաքիս մէջ, Արամեան խան՝ 25 տարի յառաջ շինած, Սենեքերիմեան խան, որ դեռ նոր լրացած էր. երկուքն ունին 71 սենեակ կրկնայարկ, և 15 խանութ, որք տարին 30000 ղրշ. էն աւելի վարձք կը բերեն, ամբողջապէս նուիրուած վարժարանաց:

2. Անձնուէր ընկերութիւն, որ յառաջ աւելի համբաւ և արդիւնք ունեցեր է. հասակաւորաց ձրի դաս կու տայ կիրակի օրերը. բաւական գրեանք ունի, թանգարանն Պէկեան Պ. Ճանօյի ձեռքն էր:

3. Լուսաբեր ընկերութիւն, որ կարօտ ուսանողաց ուսումնական և նիւթական պէտքեր կը մատակարարէ:

4. Օժանդակ ընկերութիւն, որ դասագիրք բերել կու տայ Պոլսէն, աղքատաց ձրի և կարողաց դիւրագին կ'ընձեռնէ՝ ընթերցանութիւնը տարածելու նպատակաւ:

4. Համալսարանական ընկերութիւն, որ բացած ունի երկսեռ վարժարան, ուր կարեւոր ուսմանց հետ կ'աւանդուի նաև տաճկերէն և գաղղիերէն լեզու և բնական գիտութեան դաս. աղջկունք կ'ուսանին մանել և գործել գունաւոր շալ, մանիսա, երեսի սրբիչ, թաշկինակ, եւն., որոց համար յատուկ վարպետ կին մը կայ և վարժարանի մէջ կողմն գործարան բրած է. մանկանց հա-

մար ու իրենց վերաբերեալ գործեր ։ Այն ընկերութիւնը կիրակի ցերեկներն ալ կենցաղագիտական , պատմական , արուեստական , տնտեսական և բարոյական բանախօսութիւններ կ'ընէ ։ Ցաւալի էր որ ոմանք գայթակղութեամբ կը խօսէին այս ընկերութեան վրայ , և այս յառաջ եկած էր բանախօսաց խիստ քննադատական լեզու գործածելէն . և երբեմն չափազանց եռանդով յառաջդիմութեան ու անոր արգելքներու վրայ խօսելէն , գուցէ երբեմն ալ անզգոյշ կարծիքներ յայտնելէ ։ Իրենց ծրագրին մէջ տեսայ կրօնագիտութեան դաս . ըսին թէ քանիցս դասատու խնդրած ենք , բայց տըւած չեն ։ Ասոնց պէտք եղածը՝ ասոնց , և բամբասողաց պէտք եղածը՝ բամբասողաց խօսելով, քաջալերութեան արժանի գտայ սոյն անձնանուէր երիտասարդաց օգտաբեր ձեռնարկն ։

Կան այլ և այլ ընկերութիւնք ևս , որք կը բանախօսեն , կը դասախօսեն , եւ. վերջապէս խօսելու , լսելու և գործելու մեծ փոյթ ու եռանդ ունին Սեւաստու ազգայինք . Եթէ այս ցրուեալ մարմինները իրարու մօտեցնելու և օգտակար ու կարեւորագոյն պէտքերու ծառայեցնելու առաջնորդող մը լինի , Սեւաստ շատ և շատ կը յառաջադիմէ ։ Պէտք չէ որ ընկերութիւն ընկերութեան հակառակի և զանի անուանարկէ . մոռնալու չէ թէ ամենայն ընկերութեանց

Նպատակը ազգին շահն է այլ և այլ ճանապարհով. բանն այն է՝ իրար համոզել թէ ո՞ր միջոցն է առաջին և շինարար, ու միացնել իրենց զօրութիւնը՝ այն զօրութեան։

Գլխաւորաբար երկուքի բաժնուած էր Յեւսուսեանց ընթացքն ու Նպատակը, Դաստիարակութիւն լուսաւոր մտօք, և Բարեպաշտութիւն՝ առանց լուսաւորութեան։ Դաստիարակութիւնն կ'ընդունի թէ Աստուծոյ խնամքն ու պատուիրանք մարդոյ համար է, երկրի բարիքն ու երկնից արքայութիւնը մարդոյ համար է, և մարդը թէ՛ մարդոյ և թէ՛ Աստուծոյ համար է. իսկ Յեւսուսեանց բարեպաշտութիւնը կը հասկնայ թէ երկրիս վրայ խնամք, բարիք, ընկեր, ազգ, հայրենիք, և նոյն իսկ իրենց անձինք իրենց համար չկան, ամենայն ինչ Աստուծոյ նուիրուած են։ Օրինակ, խումբ մը Ճգնաւորներ անունով անձինք կային, որք թողած էին իրենց ծընողքը, իրենց տունն, իրենց արուեստը, կ'ատէին ամուսնութիւն, կը փախչէին մարդոց ընկերութենէն, կ'առանձնանային վանքերը, լեռները, իրենց համար ամառն ու ձմեռն չկար, չորակեր, խոտակեր, մերկածածկոյթ մը միայն կամ ցնցոտի հագնիլ, աղօթել, սուրբ գիրք ընթեռնուլ, վիճաբանել, տեսիլներով յափշտակուիլ, ծոմ պահել, առաքինութիւն համարած էին. ինչպէս նաև անձնաչարչար լինել, հիւանդանալ, և մե՛ծ երանութիւն՝ այս պատճառներով մեռնիլ

որպէս զի զԱստուած ժառանգեն ։ Իրենց սկզբունքն էր « Որ ոչ ատեայ զհայր իւր և զմայր և զկին և զորդիս և զեղբարս և զքորս նաև զանձն ևս իւր , ոչ կարէ իմ աշակերտ լինել » Քրիստոսի խօսքը · բայց միթէ նոյն իսկ ատոնց հայր , մայր , կին , որդիք , եղբայրք , քորք , և իրենց անձինք Քրիստոսը սիրող և Քրիստոսի ետեւէն գացող , Քրիստոսին աշակերտ , Քրիստոնեայներ չէի՞ն ։

Այս ազատութեան արդիւնք , կարեկցութեան արժանի հոգիք · բարեբաղդաբար մեր տեսած օրերը անոնց կարեւորութիւնը ինկած էր · քանի մը հոգի հազիւ կ'երեւային , թէպէտ մահուան հիւծման , և զանազան ախտից ծանր զոհեր տալէն զկնի ։ Ասոնցմէ ոմանք ցրուեալ տեսայ վանքերու մէջը ։ Ուրիշ բարեպաշտ ընկերութիւններ ալ ստակ հանգանակելով չինուած էին Ս. Յակոբայ տաճարը , կը չինէին Անապատի տաճարը , պատրաստած էին Ս. Քառասուն մանկունքի փերեզմանատունը , չէնցընել կ'ուզէին Խուրիկըստուր վանքը , որուն 3 կտոր արտ գընած էին , եւլն։ Ասոնք ամենը ստակով յառաջ կ'ուգար , և ժողովուրդն յօժարութեամբ կու տար այսպիսի նեղ տարի մը ։ Բայց ա՛լ ժամանակն է որ հասկընանք թէ քարէ տաճարէն շատ գերազանց է Աստուծոյ բուն տաճարը չինել , ՄԱՐԴ , պատրաստել թէ Աստուծոյ փառաց և թէ ազգի պարծանաց համար ՄԱՐԴ · տալ մեր դրամները մեր զա-

ւանկաց կրթութեան և գիտնականութեան, և լաւ դաստիարակաց ձեռքով շինել զանոնք ժամանակի ՄԱՐԴ․ տաճարն ինքնին կը պայծառանայ, եթէ ժողովուրդ նախ լուսաւորուի, Աստուած չհաճիր որ ձեր զաւակները անգէտ և անկիրթ մեծնան, ձեզ անէծք ժառանգեն, և դուք կարծէք թէ ձեր շինած քարերը զձեզ արքայութիւն պիտի տանին, այն ինչ ձեր զաւակները կը կորսուին, և ձեզ դատախազ պիտի կանգնին։

Աղքատասիրաց ընկերութիւն, իբր 18 տարիէ հետէ կազմեալ, ունի 2 խանութ որոցմէ կ'առնու տարին 2000 ղրշ․ և ժողովրդէն կը հանգանակէ 15000 ղրշ․ի չափ, զորս ամ յամէ կը մատակարարէ ՚ի պէտս աղքատաց։

Քաղաքիս ազգային խորհուրդներ և ժողովները թէպէտ կազմուած են ըստ Սահմանադրութեան, բայց կանոնաւոր նիստ և արձանագրութիւն չունէին, ոչ քարտուղար և ոչ դիւանատուն։ Առաջնորդն Ս. Նշանի վանքը նստելով, կոտոր մըտոր արձանագրութիւններ և պաշտօնական թղթերը վանքի մէջ կը պահէ տոպրակներով. եթէ հարկ լինի խնդրոյ մը համար ժողովք կազմել կամ տեղեկագրութիւն պատրաստել, տոպրակներու արուեստահանդէս մը կը բացուի, 4—5 անձինք կ'զբաղին քրքրել, աչքէ անցընել գրերը և զատ զատ շարել բազմոցներուն և բարձերուն վրայ․ տաժանելի՛ աշխատու-

թիւն , գրասեղան չկայ , ծունկի վրայ կը գրեն , և գրագիրն է Առաջնորդ հայր սուրբի փոքրաւորն . վերջապէս դանդաղութիւն , ժամավաճառութիւն , գործ տեսնալու դըժուարութիւն և անկանոնութիւն մե՛ծ ։ Առաջնորդն կարի զբաղեալ է կառավարութեան վերաբերեալ խնդիրներով , ոչ միայն իւր վիճակի ազգայնոց , այլ իբրև վիլայէթի կեդրոն , շրջակայ վիճակաց ազգայնոց խընդիրներն ալ կը ծանրանայ իւր վրայ . ինքն ալ մէկը չէ , բայց զարմանալի երկայնմըտութիւն և տոկունութիւն ունի , մանաւանդ տեղացի լինելովն երկար ժամանակ այս պաշտօնին մէջ գտնուելով , ամեն մարդ կը ճանչնայ , խնդիրները կը հասկընայ , ամենայնի կը լսէ , ամենեցուն կը պատասխանէ , կը խոստանայ , շատերու գործոց համար կառավարութեան անձամբ կ'երթայ . մարդ մ'է միայն , որոյ վրայ է վանքերու կառավարութիւնը , ժողովոց նախագահութիւնը , քաղաքին և բազմաթիւ գիւղերու ներքին ու արտաքին հոգերը , եւն , եւն , եւն ։ Մէկ մարդ , և ա՛յսքան գործ ։

Քաղաքիս մայր եկեղեցին , սուրբ Աստուածածնի անուամբ , հոյակապ և գեղեցկաշէն , մեծ , քարուկիր , շատ սեղերը մարմարիոնով և քանդակներով զարդարուած ։ Ս. Եկեղեցւոյս բակին մէջն է Առաջնորդարանի շէնքը ։ Սուրբ Սարգիս եկեղեցին՝ երկրորդ կը համարուի մայր եկեղեցւոյն , որոյ

տաճարի աջակողմեան դասին ետեւն է մար-մարեայ տապանաքարով դամբարան Տ. Ներ-սէս կաթուղիկոսին Սսոյ, որոյ շրջապատը գրուած է «Փոխումն սուրբ Հայրապետին կաթուղիկոս Տ. Ներսէս (ՌԴ.)։ Իսկ նորո-գումն գերեզմանիս ՌՄԴ. արդեամբ աղ-նիւ Յարութիւնի Ղըռխլըկեան միգամախիւ»

Ս. Մինաս, Ս. Յակոբ և Ս. Փրկիչ փոք-րիկ եկեղեցիներ են. Ս. Փրկիչը նորոգած են, գմբէթարդ սիրուն տաճար մի է. գա-կին մէջը քանի մը տուն Հայք կը բնակին։

ՍԵՒ ՀՈՂԵՐ քաղաքիս մէջ ամենէն նուի-րական և սրտաճմլիկ վայրն է, ուր Լէնկ-Թէմուր Հայոց կաթնկեր մանկտին ցիրեցան փռեց և կոխան ըրաւ իւր գազանասիրտ զօրաց, ճմլելով այն սիրուն ողկոյզները կա-տաղի ձիոց սմբակաց ներքեւ. Ո՛ արիւն ար-դար, մարմինք անմեղ, ծնողք կիսամեռ, կական երկնադղորդ, տեսիլ սրտակէզ, հո՛ղ անիծեալ և երանեալ, տեղի սարսափելի և սխրալի...։ Հայոց գերեզմանատուն է ՍԵՒ ՀՈՂԵՐԸ. Թուի թէ ուխտիւ ընտրած են մայրեր իրենց սրտի հատորներու արիւ-նաշաղախ հողոյն մէջ թաղուիլ և զովացնել իրենց զաւակաց կսկծանաց բոցով այրեց-եալ ոսկորները. ՍԵՒ ՀՈՂԵՐ, այսպէս կը կոչեն ցայսօր Սեւաստոյ Հայեր, որ շրջա-պատուած է որմով և իր մէջն ունի Ս. Գէ-որգի մատուռ մը. գերեզմանատանս շրջա-կայքը Հայոց և Թուրքաց բնակութեան թա-

ղեր են, իսկ Ս. Գէորգի մատուռը Յունաց ձեռքն էր. Յոյները խիստ սակաւաթիւ են քաղաքիս մէջ, իրենց յատուկ եկեղեցի և գերեզմանատուն չունենալով, Հայոց թոյլտուութեամբ հոս թաղեր են իրենց ննջեցեալները և սոյն մատրան մէջ աղօթեր ու պատարագեր են. ՚ի վերջոյ եղած ամբողջ գերեզմանատուն և մատուռը տիրեր են, մեծ վէճեր ու ծեծկռուքներ տեղի ունեցեր են երկուստեք. Պօլսոյ Պատրիարքարաններ միջամտեր են, մեծ գումարներ մսխուեր են, վերջապէս կառավարութիւնն արգիլեր է երկու ազգաց ալ հոն մեռել թաղելը, բայց մատուռը Յունաց ձեռքն է մինչև այսօր. հազարաւոր գերեզմաններու քարեր Հայոց գրերով, և ննջեցելոց տէրերը կ՚երթան գերեզման օրհնել տալու, որոց հողը դատի տակ էր, մտածողներ կային թէ կիսենք Յունաց հետ և վերջացնենք բանը: Սեւ հողերը ոչ միայն պատմութեամբ և նուիրականութեամբ Հայոցս համար ամենաթանգ տեղ է, այլ իւր դիրքով ալ սքանչելի է, անոր մէկ կողմը կարելի է շինել վարժարան:

ՔԱՌՍՈՒՆ ՄԱՆՈՒԿ. Քաղաքի արևմտեան ծայրը, Գայլէրի դրան մօտ, ընդարձակ գերեզմանատունն է Հայոց, երկու կողմն պարսպապատ. գերեզմանատան մէջ աւերակի թումբ մի կայ խաչքարերով, և կոտրած սիւներով, այս տեղի է շիրիմ և Հոյակապ տաճար սրբոց Մանկանց քառասնից, որ

կործաներ է Լէնկթիմուրն և հոս 4000 հոգի Սեւաստացի ողջ ողջ թաղեր ։ Այս աւերակին վրայ կու գան խունկ և մոմ կը վառեն բարեպաշտ անձինք, և երբեմն վրանով պատարագ կը մատուցանեն ։ Հոս է գերեզման Ս. Ստեփաննոսի եպիսկոպոսին Սեւաստու և երկու աբեղայից նահատակեալ 1387ին, որոց ուխտ կու գան ։ Բայց այս քաղաք ոչ մէկ, և ոչ հազար ու մէկ են նահատակք, այլ բոլոր հողերը խառնուած են Հայ—քրիստոնէի արիւնով և չորս կողմը գերեզմանք են մարտիրոսաց ։ Սոյն գերեզմանատան մէջը քանի մը երկար, մութ և լերջ քարեր կը ցուցնէին առանց խաչի և յիշատակագրի, զորս կ՚անուանէին՝ ՔԱՋԱՑ ԳԵՐԵԶՄԱՆՔ, և անոնցմէ քանիսը՝ ԺԱՄՈՒ ՇԵՄԵՐ ։

Լիճ, ուր քառասուն մանկունք ձգուեցան, գրեթէ կից է յիշեալ գերեզմանատան ։ Լիճը չկայ այժմ, այլ տարածեալ ճահիճ մ՚է, բայց ակն մի կայ, ուստի ջուր կը բղխի, վրան քարաշէն ծածկած, վարէն աչք մը թողած են միայն, ուր Հայք ուխտի կերթան, իսկ Տաճիկ կանայք լաթ կը լուանան. լեղի է ջուրն. լուացուեցանք մենք ալ այդ սրբազան ջրով և ափ մը խմեցինք ։ Ատի տարուած է Ս. Նշանի վանքը ԻՋՄԱՆ ՔԱՐ, այսպէս կ՚անուանեն առեալ շարականէ, «Այսօր Սեբաստիա եղեւ երկրորդ Յորդանան, իջմամբ որդւոյն Աստուծոյ...»։

Այս ջրոյն մօտ կը ցուցընեն Ցաճկի մը տուն, ուր կորստական բաղնիքի տեղն է եղեր։

Ս. Վլասիոսի գերեզմանը քաղաքին մէջըն է Թուրքաց Թաղը, Թուրքի մը տան մէջ. Թուրք կնիկ մը անոր լուսարարն է, մշտավառ կանթեղ մը կը վառէ, և բանալին իրեն քովն է։ Հողաշէն նսեմ յարկի մը ներքեւ կը ննջէ Սուրբն. Վրայի տապանաքարը նոր է, բայց գլխուն կողմէն կլոր քարէ կիսափիւն մը կայ տնկուած, փոս, որոյ մէջ ջուր կը լեցնեն խմեն ուխտաւորք, կ'աւանդեն թէ Սրբոյն բժշկական դեղորայք մանրելու անկանն է եղեր. իւր յատուկ ուխտաւորներն են թէ՛ Հայ և թէ՛ Թուրք՝ փորացաւ և աչքի ցաւ ունեցողներ, և անոնք՝ որոց կոկորդը ոսկոր խրած լինի։

Քաղաքիս Ս. Սարգիս եկեղեցւոյ մօտ կայ հնաշէն փոքրիկ մզկիթ մը, զոր Հայք Ս. Լուսաւորիչ կը կոչեն, արդարեւ դիրքն յարեւելս է և գմբէթ վեղարաձեւ 'ի գագաթն։ Կ'աւանդեն թէ շինուած է եղեր սա յուրոց և 'ի յիշատակ գալստեան Ս. Լուսաւորչին 'ի Սեբաստիա, բայց Տաճկաց բռնութեան օրերը, երբ Տաճիկ մը համարձակ էր մտնել տները, եկեղեցիները, ուզածն ընել, ուզածը տանել, — ո՜հ օրեր, որոց հետքը չէ անհետացեր տակաւին տեղ տեղ մինչեւ իսկ մեր օրերը, — ներս կը մըտնէ Մոլլայ մը Ս. Պատարագի ժամուն և սե-

զանն եղելով եղան կը կանչէ , ու կը յայտարարէ թէ՝ այս վայրկենէս ալ բան չունի հոս Քրիստոնեայն , որովհետեւ մզկիթ եղաւ ասիկայ . բայց մեծ շնորհ մը կ'ընէ թոյլ տալով տէրտէրին՝ եկեղեցական գրեանքն և սպասքն առնլու և մեկնելու , և ահա նոյն օրէն Ս. Լուսաւորիչը կը տաճկցընեն : Իսկ Ներսէս կաթողիկոսն Սսոյ , զոր վերը յիշատակեցինք , Սեւաստ կը գտնուի , Օսմ. արքայն Սուլթան Մուրատ Դ.ին կը դիմաւորէ , անոր Բաղդադէն վերադարձին , եկեղեցական հանդիսիւ , օրհնութեամբ և ընծաներով , հաճութեան և մեծարանաց կ'արժանանայ մեր Հոգեւոր տէրն . ( այսպէս կ'անուանեն մինչև այսօր այս ժողովրդական Հայրապետն ) : Սուլթանն կը հրամայէ , — Ուզէ՛ , ի՛նչ կ'ուզես : — Ապրած կենաս , Թագաւոր , կը պատասխանէ Հոգեւոր տէրն , և կը պատմէ Ս. Լուսաւորչին դէպքը , ու կը խնդրէ որ իրեն շնորհուի : — Փոխանակ այս մէկին , եօթն եկեղեցի շինելու շնորհը կ'ընեմ քեզ , կ'ըսէ Սուլթանն . և ահա այն օր կը շինուի անոր մօտ արդի Ս. Սարգիս եկեղեցին . այս առթիւ թաղուած էր սոյն եկեղեցւոյ մէջ Հոգեւոր տէր՝ Ներսէսն , իսկ վեց եկեղեցիքն գեղերու մէջ շինուած են , ամենքն ալ Ս. Սարգիս անունով :

ՀՈՂԴԱՐ անունով աւանին թաղ մը կայ Հայոց , որ մօտ է Ս. Նշանի վանքին , քանի մը արտերով միայն անջրպետուած

քաղքէն, այս արտերէն մէկը Քահանայապետի արտ կ'ըսուի. կ'աւանդեն թէ այս է Մխիթար Աբբայի ծնած ու սնած տեղը: Հողդարին մօտ ապառաժի մը վրայ կը բարձրանայ մինարէով շէնք մը, որոյ շուրջ կան և քանի մը Թուրքաց տներ. Աւդըլ Վահապ Ղազի կը կոչեն այս մզկիթը Թուրքեր, իսկ Հայք՝ Ս. Յովհաննէս, և կ'ըսեն թէ վանք կամ վկայարան է եղած: Քաղաքի մէջ և շուրջը բազմաթիւ նուիրական շիրիմներ կան Թուրքաց պաշտելի, որոցմէ մէկն է Էյէըլէ Բաբա, որ ամեն գիշեր ձի կը հեծնէ օգնութեան կը հասնի նեղելոց, պատերազմի կ'երթայ, եւն. ուրիշ նոր էվլիէի մը շիրիմ կը շինէին, որ յայտնուած էր տեսլեամբ Առնավուտ տէրվիշի մը: Քաղքի բերան, ընդարձակ տեղ մը գրաւած է Թուրքաց գերեզմանատուն, ուր Հայոց ննջեցեալներ կը թաղուին եղեր նախ. դեռ կը գտնուին յարեւելս ուղղեալ գերեզմաններ և վրան պատկեցուցած օրօրոցաձեւ քարեր, որք և ուխտատեղի են Հայոց և Թուրքաց:

Գայսէրի դափուսուէն իբր ժամ մը բացակայ կ'երեւի Շէհնէ՛ գօմիւնի ըսուած շէնք մը, ուր ձմեռները անցորդք կ'ապաստանին և աւազակաց որջ է, և որոյ գագաթը գանձ կայ զետեղուած, կը կարծեն:

Հայոց թաղերէն կայ որ առանձին են, կայ որ Թուրքաց հետ խառն:

Սեւաստ 'ի հնումն, և 'ի նորումս միջա

հուշակաւոր քաղաք եղած է, բայց աւելի նշանաւոր շէնքեր չունի ։ Իբրև հնութիւն կը համարուի Վերին բերդ, քիչ մը բարձր բլրաձեւ դիրքի վրայ, որոյ գագաթը նոր շինուած է հասարակաց ժամացուցի աշտարակ մը, դեռ կան քանի մ'ալ տուներ ։ Իսկ Ներքին բերդը քակուած է բոլորովին, և տեղը տուներ շինուած ։ Վերին բերդի ըստորոտը նշանաւոր շէնք մը կայ ամբողջ մարմարիոնէ, նրկին մինարէներով, արտաքուստ խիստ չքեղ քանդակազարդ, մանաւանդ դրան ճակատը, ուր կայ ինգլխեան երկու միշապ քանդակեալ և արուեստակեալ ծաղկունք, եւ. իսկ ներսը չքեղ չէ, Կեօք Մետրէսէ կ'անուանեն զայս, զոր Հայք կը համարին պալատ Սենեքերիմայ. շէնքը, քանդակներ և գրուածքներ նմանութիւն ունին Թօքաթի և Ամասիոյ մէջ եղածներուն ։ Արդեօք կրնա՞յ կարծուիլ թէ մինարէք և գրերը ետքէն աւելցուցած լինին ։ Այս շէնքի ներսը կը շրջէինք, և ահա երկու կանանչագլուխ իւլէմաներ տեսանք ընկողմանած շատրուանին ափը ընդհովանեաւ հին կաղամախի մը. այս երկուքը ունէին երեք աչք, բարեւելէն զկնի հարցուցինք թէ կրնա՞ն տեղեկութիւն տալ մեզ այս շէնքի հնութեան մասին ։ Անոնցմէ մէկը՝ — «Այո, ըսաւ, շատ հին շէնք է, կոստանդիանոսի շինածն է....:» Հասկըցա՞նք, հասկըցա՞նք, շնորհակալ ենք : — Ձեր պաշտօնն ի՞նչ է. — Մեծ վարժապետ

ենք, ըսին։ Անշուշտ, և անոր համար իբրև պատմագէտ խօսեցան . . . ։

Ներքին բերդի մէկ մասին մէջ կան երկու մէտրէսէներ դէմ առ դէմ կառուցեալ. մէկ մի եւս քիչ մը բացակայ, որոց դրանց ճակատներ նմանօրինակ մանր քանդակներով զարդարուած են. Ասոնցմէ միոյն մէջ գըմբէթաւոր յարկի մը տակ ինն չիրիմք կան, որոցմէ մէկն մեծ և յախճապակով բռեալ. Հայք կ'ըսեն թէ Սենեքերիմի գերեզմանն է այն, ուստի յետոյ մարմինը փոխադրեցին Վան՝ Վարագը։

Քաղաքիս փողոցներ, շուկաներ և խաներ անձեւ շինուածք են, ամբողջովին կաւակերտ, թէպէտ ներքուստ բաւական շընորհքով. ամառն թոյնի պէս ժահահոտութիւն կը բուրէ փողոցաց մէջ տեղ տեղ լըճացած ու նեխած ջրերէն. աղբերու ապականութենէն. անկարելի է մանաւանդ Թըրքաց Թաղերէն առանց քիթը բռնելու անցնիլ, այլ սակայն իրենք կը ծծեն ախորժանօք այդ հոտաւէտ օդը. Ջուրը խիստ առատ կը վազէ ամեն կողմն, թէ՛ առուներով և՛ թէ աղբիւրներով. գրեթէ տուն մը չկայ որ իւր բակի մէջն աղբիւր չունենայ. իրօք բակերու հողն ու քարն անգամ ամէն օր կ'ողողեն մաքրեն, իսկ փողոցի դռնէն դուրս աղմոտ և աղբոտ կը պահեն։ Քարայատակ չունին փողոցներ, անցորդն պատիւ ունի ամառնեբը աղտոտ փոշիներ կլլելու, իսկ ձմեռն աղբ

և կաւ շաղախելու ։ Անկարագրելի է հրապարակաց աղտոտութիւնը , ուր ամեն առաւօտ գեղերէն բեռնաւորեալ սայլերը և գրաստները կը լեցուին բոլոր ընելու համար ։ Երեւակայելու է այս տեղերը եղած ամբոխին ժխորն ու աղաղակը , որ կը բաղկանան Թրքաց , Հայոց , Քրդաց և Չէրքէզաց բազմութենէն , որոց մեծ առուտուրն է ցորեն , անասուններ , ևն , զորս կը փոխարինէն՝ քաղաքէն զանազան ապրանքներ գնելով ։ Սեւաստ յաջողակ առեւտրականութիւն կայ , մանաւորապէս մեծ քանակութեամբ ցորեն , և մեծ քանակութեամբ ոչխար , ձի և արջառ կը վաճառէ ։ Արուեստները տեղական պիտոյից համար ամեն տեսակը կը գտնուի , աւելի յաջողակ են երկաթագործք և զինագործք , որք Եւրոպիոյ ռէվօլվէր և նոր հրացաններ ու անոնց փամփուշտներ կը շինէին ։ Տեղացի բաւական Թուով Հայ բժիշկներ կային Թէ քաղաքիս մէջ և Թէ մերձակայ քաղաքները ցրուած , որք քաջ վիրաբուժութիւն սորված էին Ամերիկացի ՏօքԹէօր Ռէյնոլտէն , և վիրաբուժական ամենանուրբ գործիքները տեղացի երկաթագործները ճարտարած էին . իբրև բարեբար իրենց քաղաքին կը յիշատակէին յիշեալ ՏօքԹէօրը , յորմէ շատ մը առողջապահական սկզբունքներ ուսած էին . ասոր աշակերտները մասնաւոր ճարտարութեամբ գիտէին աղեաց մէջ գոյացած քարը հանել , ախտ

մը՝ որոյ շատ ենթակայ է Սեւաստցին : Արդ-եօք ջրերէ՞ն է . . . :

Արուեստաւորք ընդհանրապէս Հայք են . կարեւոր թիւ և դիրք մը ունին մոր-թողներ (ղասապ), որք նոյնպէս ամբողջ Հայք են : Զգեստուց նորաձեւութիւն դեռ մտած չէ այս քաղաքը, բայց կանանց հա-գուստը շնորհալի չէ :

Զարմանալի է տեսնալ Սեւաստցիները այնքան կայտառ և սիրուն, անշուշտ օդին և ջրոյն շնորհիւն է, առանց շնորհիւն է որ այնքան անմաքրութեանց հակառակ՝ քաջա-առողջ են և կարմրերես . ուտելու մասին չը-ռայլ են, օղի և գինի բաւական առատ կը գործածեն, առատ ալ միրգեր կ'ուտեն, որք թէպէտ ոչ մէկն իր գաւառէն կ'ելնէ, բայց եղած տեղէն աւելին և ընտիրն հոս կը բերուի : Կը զարմանայինք տեսնելով այն ինչ բժիշկներ և բէլէտիէի ժողովք կար այս քաղաքի մէջը, ինչո՞ւ պէտք էր այսքան խանգարեալ և ապականեալ մնար այս քա-ղաքը, պատասխանեցին .— Այո՛, տարին 30000 ղրշ. էն աւելի հասոյթ կայ բէլէտիէին՝ խա-նութներէ, մորթողներէ, կշիռքէ, և այլ և այլ հրապարակային վաճառքներէ, եւն, բայց հասարակաց համար ոչինչ ըրած, ոչինչ շի-նած է : Ի՞նչ կ'ընէին ուրեմն գոյացեալ հա-սոյթները . եթէ հաւատալ պէտք է, մըզ-կիթներու նորոգութեան և քանի մը երազ-եկած Տաճիկ Էֆէնտիներու շիրմաց շինութեան

և այլ այսպիսեաց համար կը ծախսէ, անշուշտ ժողովոյն պաշտօնէից ամսականներ ալ կը վճարէ։ Երբ ստակ տուողն հաշիւ չպահանջէ, երբ քաղաքացին իւր պաշտօնեայն իրեն տէր ճանաչէ, և իւր պէտքերուն անփոյթ գըտնուի, մինչ ամօթ կամ մեղք համարող կա՞յ անոր պտուղն ուտել և զինքն անբանի տեղ դնել . . . ։

Մեզ ցոյց կու տային քաղաքի մէջ այնպիսի Հայեր, որ մուրացկանի ձևով հագուած էին, բայց քանի մը հազար ոսկւոյ տէր էին· այնքան զօրացած է բռնաւորաց երկիւղն այս ողորմելեաց վրայ, որ չեն համարձակիր իրենց հարուստ լինելը ցոյց տալ, գաղտուկ մազտուկ գործեր կ'ընեն, ցած և հին տներու մէջ կը բնակին, ստակնին կը թաղեն. վասն զի եթէ յայտնուի իրենց ունեւոր լինելը, կը վախնան թէ խլեն ձեռուըններնէն։ Մասամբ մը ընդհանուր է այս, վասն զի կարի հազուագիւտ են լաւ հագնող, լաւ տուն ունեցող, ձի և ծառայ գործածող։ Գրեթէ քաղաքական հրապարակի վրայ պայծառ և փայլուն Հայ մը չունի Սեբաստ։ Քաղաքիս Թուրքաց մոլեռանդութիւնը և աններողութիւնն այնչափ է, որ կրնան Հայ մը ձիէն վար առնել, շուկայի և փողոցներու մէջ անտեղի պատճառով մը, կամ, ի՞նչ պէտք է պատճառ, մինչ Հայ լինելն բաւական պատճառ չէ՞, կը քաշեն կը գանակոծեն. եթէ Թուրք մը բան գնած է Հայէ մը

իրաւունք չունի Հայն սատակ պահանջելու , եթէ վճարէ Թուրքն՝ շնորհ մ'է , եթէ ոչ , իր իրաւունքն է ։ Անկիրթ և որիկայ անձինք շատ կան , ասոնց ծայրայեղ կրից քանի՛ քանի անմեղ զոհեր կ'իյնան Հայ ընտանիքներէ և պատանիներէն . այս ախտը մաս մը Հայ որիկաներու մէջն ալ ճարակած է , գաւնուկ մանուկներ և մատղաշ աղջիկները տերեւի պէս կը դողան դուրս ելած , վարժարան կամ եկեղեցի գնացած ու դարձած միջոցին . եղեր են օրեր , որ յանդգներ են մինչև վարժարանի դռներ պաշարեր և տղայ յափշտակեր են ։ Առաջնորդէն մինչև գեղացի քահանայն չեն կրնար փողոցներէ անցնիլ առանց Ցաճիկ տղաքներէն « Քէշի՛շ , օ՛չ , օ՛չ . Քէշի՛շ , օ՛չ , օ՛չ » լսելու , հասակաւոր Թուրքերն ալ կը զուարճանան , մանաւանդ թէ իրենք կը թելադրեն ։ Սոքա իրրև անմեօրեայ սովորութիւն կը հայհոյեն Հայուն խաչ ու հաւատքը , և Հայք իրենց խոնարհագոյն գլուխները կախելով լսելու պէս՝ կ'անցնին . բայց կան նորահասներ ալ որ չհանդուրժելով կը փոխարինեն կամ կը հալածեն այդ բղէզները ։

Քաղաքիս զբօսավայրեր և ուխտատեղիք գրեթէ մի և նոյն նշանակութիւն ունին , և բաւական շատ են ։ Անոնցմէ քանիները միայն յիշել գրեմ , թողլով Ս. Նշանի և Հրեշտակապետի վանքը առանձին ստորագրել ։

ԱՆԱՊԱՏ , փոքրիկ վանք մ'է , Ս. Նշանին

մօտիկ, քաղաքէն կէս ժամ հեռի, կից Դամբա գեղին ։ Ունի քանի մը սենեակներ, պարտէզ, բակին մէջ ընտիր ջուր մը, պարսպի տակէն կ'անցնի գետակ մը և մեծ առու մը ուռիներով և ուրիշ ծառերով զարդարուած, օդը խիստ ընտիր, իւր քովերը քանի մը քարայրներ կան, զորս կը համարեն ճգնաւորաց ճգնարան, և մեծամեծ քարերով հին գերեզմանատուն մը ։ Անապատիս տաճարը կը նորոգէին 'ի հիմանց քարուկիր՝ բաւական մեծածախ, 'ի զո՛ւր ։ Իբրև հիւանդանոց համարուած է այս վանքը, ուր ամիսներով կու գան կը կենան ուխտաւորք. հոս գրեթէ ամեն օր երամ երամ կանայք կու գան քաղաքէն ուխտի նպատակաւ. հոս կու գան նաև անպարկեշտ անձինք Հայ և Թուրք, հոս կու գան ճգնաւորաց խումբը ։ Բայց իրօք կրնայ յարմար հիւանդանոցի մը վերածուիլ, որում շատ պէտք ունի այսպիսի մեծ քաղաք մը ։

Ս. ՅԱԿՈԲ, զոր կանխաւ յիշեցինք, Անապատէն կէս ժամ անդին է՝, միայն տաճար մի է առանց սենեակ ունենալու, անուշ ջուր մը ունի և սքանչելի է դիրքն ու օդը. քանի մը ուռիներ տնկած են, որոց հովանեաց տակ կը հանգչին ուխտաւորք և զբօսաւորք ։ Տաճարը՝ որ նոր շինուած էր, խախտեալ էր, դրան ետևը գանձանակ մը դրած, ժամկոչ մը կ'սպասէր հոն. պատին վրայ Ս. Յակոբայ պատկերը և ձեռագիր

քարտէզ մը , անճոռնի և սխալմամբ լի գըր-ուած մը , որ այսպէս կ'սկսի « Յիսուսի Քը-րիստոսի ծառայ զտէր Ս· Յակոբ մծպնայ հայրապետ . . . » ։ Ի չորս բաղում և անլուր հրաշից կը դնեն մի Նորալուր հրաշք ևս , որ ամեն մարդ գիտէ թէ որո՞ւ սուտ հը-րաշքէն քաղած են . այս է « . . . Թօթափ-եաց Սուրբն զվերարկուն իւր և անկան 'ի նմանէ 12 կաթիլս և բուսան 12 արմաւենիք և եսուն պտուղս » եւ, եւ։ Կանո՞ն էր , կոն-դա՞կ էր , յորդորա՞կ էր , խառնափնթոր բան մը , զոր ստորագրած էին քանի մը խառնա-փնդոր անձինք ։

ԽՈՆԸՐԿՅՈՒՐ վանք , աւերակ , ժամ ու կէս հեռի է քաղաքէն , տաճար մը միայն ունի Ս· Աստուածածին անուամբ , որոյ հո-ղերը Տաճկաց ձեռքն են ։ Այս վանքը Խընդ-րակատար կ'անուանեն ոմանք իբր թէ ուղ-ղելով խոնըրկյուրն , բայց կ'երեւի թէ կը սխալին , նա ուրիշ նշանակութիւն ունենալու է , ինչպէս որ Տաճիկներն ալ կ'անուանեն Խօյ Դէպէն Դիլէյօռ ։

ԴԱՎՐԱ , որ ամենէն մօտ գեղն է Սկիւ-տարու , ամենէն ալ գեղեցիկն է իր առատ ջրերով , գետակին շուրթն , զառ 'ի կող փոքր ձորոյն , բազմաթիւ ջաղացքներով , հովանա-ւոր ուռենիներով , վայր սիրելի բոլոր Սկիւտարցւոց , ուր կու գան օրերով զբօս-նելու և զուարճանալու . ընտիր է Քէֆէնէկ տաշի բռուած ջուրը , զոր խողովակներով

քաղաքը տարած են ։

Կորիճ և Հաստակուռ երիտասարդներ կան հոս․ կայտառ և քաջառողջ են ուստերք ու կանայք ։ բոլոր բնակիչքը Հայ են , և մեծաւ մասամբ ջաղացպանութեամբ կ՚զբաղին ։ Ունին քարաշէն պայծառ եկեղեցի մը և նորաշէն վարժարան մը ։ Եկեղեցւոյն կից կակուղ ժայռերու մէջ քարայրներ կան , որոց վրայ շատ բաներ կը պատմէին կռապաշտութեան ժամանակներէ ։ Այն ժայռի մէկ ճակտին վրայ երկու մեծ պատուհանի ձեւով գուռներ կան , կ՚երեւի յատկապէս փորուած , նոյն քարէ սիւնակով մը բաժանեալ , Զոբեալ Ս․ Սոփէիան է , ըստ Տէրտէրին․ սանդուխ մը ցոյց տուաւ ժայռի վրայէն փորուած , որ կը հանէր Զաթալ Ս․ Սարգիս , ուր սեղան մը կայ , ըստ , պատարագելու , և գեղի կանայք ու մանկունք հոն խունկ ու մոմ կը վառեն կիրակամուտ իրիկունները ։ Շատ մը մանր խաչեր կային քանդակուած այն քարերուն վրայ ։ Քարայրները՝ ճգնաւորաց տեղեր են եղած , կ՚ըսէր Տէրտէրն , և Զաթալ Ս․ Սարգիսն իրենց համար պատարագի խորան , Հայոց Նոր քրիստոնէութեան սկսած հալածանաց օրերը ։ Այն ժայռերու ներքեւ կային կին գերեզմաններ՝ վաղ օրերէ մնացեալ ։

Աւերակ վանքերէն կը յիշատակուին Դէվէկրէի Ս․ Գէորգ ։ Առաքելոց վանք՝ Դուղատարին վրայ ։ Ցոխկերոյ կամ Ցոխակերաց

վանք, ուր կ՚աւանդեն թէ ճգնաւորներ եղեր են, որք միայն սոխ և հաց կը ճաշակեն ամբողջ տարին, քաղաքէն երեք ժամ հեռի մենեկանձեւ փորուած քարայր մի է: Գըլխըտեղ, Ս. Սեւերիանոսի գլխատութեան վայրը, եւն.

Սեւաստու քաղաքը անշուք աւան մը ունի, շինուած հովտի մը մէջ, անծառ և անայգի: Գծուծ և հին շէնք մի էր նոյն իսկ կառավարութեան պալատը. անկանոն իւր տաննատուներ և բանտերը. Քաղաքին մէկ կողմն է. Ալիս գետ (Գըզըլ ըրմագ), կէս ժամ հեռի, որ հարաւային և արեւմտեան ուղղանէն կ՚անցնի. իւր վրայ ունենալով կամարակապ քարաշէն կամուրջ մը, զոր կ՚աւանդեն թէ Սենեքերիմայ արքայադուստրն շինած է: Կան այլ և այլ մանր վտակներ ալ, բայց մասնաւորապէս Ալիսի վրայ գործարաններ շինելով մեծամեծ օգուտներ կըրնան ձեռք բերել: Ալիս կը բղխի Երեւելեան հիւսիսէն, Հաւպէշ լեռներէն, որ մայրի, կաղնի, եւն. անտառներով հարուստ է, և չինքի ու վառելիքի փայտեր կը բերէ այս լեռնէն քաղաքացւոց ՚ի պէտս, և պէս պէս ձուկեր կը մատակարարէ: Հաւպէշէն զկնի Սեւաստու նշանաւոր լերինքն են Աստղիկ, (Եըլտըզ տաղըն), Գուռլավիկ՝ որ նոյնպէս անտառոտ է, Ջամըր պէլ, Սախուր և Սպիտակ սարեր (Աղ տաղը): Իրիս կամ Թօզանլըն ալ Սեւաստու լեռներէն կը բղխի:

Երկրիս գլխաւոր բերքերն են վաճառականութեան համար ցորեն, գարի, ճէհրի, գաղի խէժ, տորոն, սալէպ, աղուէսենի, սամոյր, գայլենի, այծու և ոչխարի բուրդ և մորթ, եղ, մեղր, պանիր եւլն. Ընտիր և առատ աղի աղբիւրներու լիճեր կան, մեծ քանակութեամբ աղ կը վաճառեն բոլոր շրջակայ գաւառաց։ Աղէկ կարպետ (քէլիմ) և Քիւրդի գորգ (խալը) կը գործեն։ Հանքեր կան գաճի (ալչը), բորակի (կէ-հէրչիլէ), ընտիր մարմարի, կարմիր և սպիտակ քարակաւ, եւլն։ Ունի նաև երկու ջերմուկ տաք և պաղ հանքաջուր, ուր յաճախ կ'երթան Սեւաստացիք թէ առողջութեան և թէ զուարճութեան համար։

Երկրիս հողերը մեծաւ մասամբ Թուրքաց սեպհական են, թափուր եղած - արգաւանդ և բարեբեր են ընդհանրապէս. գրեթէ դաշտի մեծ մասն, լերանց ստորոտները, և բլուրները կրային և աղային են, սպիտակ գունով հողեր։ Բազմաթիւ բլուրներ կան այսպէս, զորս տեղացիք կ'անուանեն փուռ։ Լեռները սկսեալ Ամասիայէն ցայտ մետաղի, պղնձի և այլ հանքերու գանձարան են։ Գիւղերու մէջ երկրագործութիւն խիստ ծաղկեալ է, և բնակիչք առոյգ, հսկայ, և աշխատասէր, այսու ամենայնիւ ծանր ծանր գրկանաց և հարստահարութեանց ենթակայ, զորս կը կրեն Չէրքէզներէ, Քիւրդերէ, քաղաքացի Թուրքերէ

զօրքերէ, աւազակներէ, մէկ խօսքով՝ անդադար կառավարութեան անհոգութենէն ու անարդարութենէն։ Ճանապարհն է մեծ պողոտայն Բաղդատի, որ Դէլիքլի Դաշէն անցնելով, Տիվրիկէն քիչ մը հեռու՝ ուղիղ կ'երթայ Մալաթիա. միւս արահետն է Կարնոյ ուղին՝ Երզնկայի վրայով, լեռնոտ։

Սեւաստու մէջ տեսայ Կիւրինցի Հայեր, որք կը պատմէին իրենց եկեղեցւոյ կողոպտուիլը, այս երկու տարուան մէջ Թուրքերէն կրած անտանելի զրկանք, բռնութիւն և հարստահարութիւն։ Արաբկանի տանը քանի մը ամիսէ 'ի վեր ամեն գիշերը պաշարուիլ և քարկոծուիլը, Խոճենճոզ ձենէ-ղէ Ձիա պէյին անիրաւութիւնքը և անոր Թուրք սրիկայից տուած քաջալերը, իրենց Առաջնորդին՝ Մանճըլըխու Զաքարիա եպիսկոպոսին անփութութիւն և անպիտանութիւնը, որ այս ծիրքերուն հետ ունի նաև ծերութիւն և հիւանդութիւն, սիրտ և միտք չունեցող անձն, որ պատկեր է վանքը։ Ասոր համար կ'ըսեն թէ՝ քաջ ծի նստել գիտէ եղեր; և միայն այն արժանեաց վրայ եղած է եպիսկոպոս Սրբոյ Աթոռէն. սա վանքի արտեր և ջաղացքներ իրեն անուան վրայ կալուածագրել տուած է, իբրև իւր սեպհական, որպէս զի ժողովուրդ չկրնայ հրաժարեցնել զինքը առաջնորդութենէ։ — Անմտի բանն է այս — ։ Թէ' ասոր և թէ' իրենց ցաւոց համար Պատրիարքարան յաճախ բողոքած

են, այլ անլսելի մնացեր է, եւն, եւն:

Գրեթէ ամեն օր գեղերէն կը դիմէին Հայք Առաջնորդին և կառավարութեան, թէ՝ Քիւրդեր ու Չէրքէզներ մեր եզները քըշեցին տարան, թէ եզները քերթեցին՝ կաշին տարան, թէ՝ լեռը փայտի համար գնացողները ծեծեցին ու կողոպտեցին. միայն մէկ գիւղէն 18 ձի և 12 եզն տարեր էին նոյն օրը Չէրքէզներ, և Հայոց Նաֆօ ըրած արտերուն տէրեր էին, ընդ պաշտպանութեամբ քաղաքի հռչակաւոր Մէհմէտ Ալի էֆէնտիին. սոր բարեխնամ հովանեաց ներքեւ ապաստանեալ են ամենայն մեծատակոր անձինք Սեւաստու քաղաքին և բոլոր երկրին, որոնց ամենէն նշանաւորն է Քիւրդ Ալիշան պէյն, եւն, եւն:

Սեւաստու Ս. Սարգիս եկեղեցւոյ Առաջնորդարանը նստած գտանք հռչակաւոր Տիգրանեան Մկրտիչ եպիսկոպոսը, ուր եկած էր ութն ամիսէ 'ի վեր . . . : ի՞նչ ըսենք այս մարդու համար, զոր ոչ ոք կայ չճանչցող . . . : Հազիւ շարժեցաւ տեղէն թօքատ գնալու, և անտի Ամասիա: ինչո՞ւ կը շրջի, ի՞նչ կ'ընէ, միթէ պէ՞տք է հարցընել:

Փափաքելի էր այս տեղի Հայոց ներքին կեանքի, տնական և ընկերական սովորութեանց, աւանդութեանց, լեզուին, ոճոյն, վէպերուն և խաղերուն վրայ տեղեկութիւն գրել, վասն զի խակապէս Հայկական հին կեանք կայ ասոնց մէջը. բայց ասոր համար հարկ

էր բաւական օրեր անցունել հոն և գեղերը շրջիլ, որ շատ ցանկալի էր ինծ, այլ պաշտօնս կը փութացնէր զիս մեկնիլ: Սովորութեանց և արարողութեանց մասին շատ նման էին Վասպուրականցւոյն, ուստի գաղթեալ են. բայց լեզուն շատ տարբեր կը խօսին, գրեթէ մեծաւ մասամբ Փոլսեցւոյ նման: Անշուշտ գիտենք որ Սեննեքերիմէն յառաջ շատ յառաջ Հայեր կային այս կողմերը:

Ուրիշ առթի, կամ ուրիշներու թողլով հետաքրքիր լինել և գրել այս մասերը, կը փութամ վերջ տալ Սեբաստու տեղեկագրութեանս, անվերջ ունենալով յուշիս մէջ իրենցմէ՝ ազնիւ և զգայուն անձանց անոյշ յիշատակը, և բոլորին համար յառաջադիմելու և նորոգուելու քաղցր յոյս:

Քաղաքիս Հայոց եկեղեցիքն են 5. որոցմէ երեքն՝ փոքրիկ: Վարժարաններն են՝ 1 ուսումնարան և 1 ծաղկոց Թարգմանչաց անուամբ: Ծաղկոց 7. Ներսէսեան, Արամեան, Թորգոմեան, Ս. Սահակեան, Ս. Մինասեան, և երկուքն անանուն: Վարժարան 3. աղջըկանց՝ Հռիփսիմեան, Լուսինեան և Գեղիքեան: Ծախք վարժարանաց տարեկան 52000 ղրշ. որոց 47000 ղրշ.ը Սեննեքերիմեան ընկերութիւն կը հոգայ երկու խաներու արդիւնքներով և ընկերաց բաժանորդագնով. Յիշեալը մասնաւոր ընկերութենէ մը, Ս. Մինաս եկեղեցիէն, և մաս մը՝ աշակերտներէ: Թիւ ուսանողաց 1422 մանկունք. 494

աղջիկունք ։ Թիւ Հայոց 13200 ։ Կաթոլիկ և Բողոքական Հայք 72 ։ Յոյնք 330 ։ Թուրքք 18437 ։ Աղտէեան՝ թուրք բօշայ 200 ։

Հայաբնակ գիւղորայք ։

ԲՐԳՆԻԿ գեղ. ամբողջ Հայ կաթոլիկ. Թիւ նոցա 1800 . ունին եկեղեցի և վարժարան ,

ԴԱՎՐԱՑ գեղ. Եկեղեցի 1. Աստուածածին ։ Վարժարան 1. Դաւթեան ։ Ուսանողք 100 մանկունք .. Թիւ Հայոց 880 ։

ՍԱՐԸ ՀԱՍԱՆ գեղ. Եկեղեցի 1.. Ս. Գէորգ . Թիւ Հայոց 96 ։

ՊՕՐԱՋԻԴ գեղ . . . . Թիւ Հայոց 50 ։ Թուրքք 30 ։

ՆՈՐ ԽԱՆ Աւան. գայմագամութիւն ։ Եկեղեցի 1. Ս Խաչ ։ Վարժարան 1. Սենեքերիմեան ։ Ուսանողք 100 մանկունք . Թիւ Հայոց 682 ։ Թուրքք 720 ։

ՇԸՆՔՈՒՐԱԿ գեղ. Եկեղեցի 1. Ս. Սարգիս ։ Թիւ Հայոց 28 ։ Թուրքք 110 ։

ՂԱԼԴԸ գեղ. Եկեղեցի 1. Ս. Սարգիս . Թիւ Հայոց 256 ։

ԻՇԽԱՆԻ գեղ. Եկեղեցի 1. Ս. Նիկողոս ։ Վարժարան 1. Բագրատունեան ։ Ուսանողք 60 մանկունք . Թիւ Հայոց 408 ։

ԴԸԳՄԱՃ գեղ. Եկեղեցի 1. Ս. Սարգիս ։ Վարժարան 1. Ղեւոնդեանց ։ Ուսանողք 50 մանկունք . Թիւ Հայոց 411 ։

ԲԻՆ—ԿԷՕԼ գեղ. Եկեղեցի 1. Ս. Մինաս ։ Վարժարան 1. Ս. Սեւերիանոսեան.. Ուսա-

նողք 60 մանկունք. Թիւ Հայոց 615:

ՊԵՏՐՈՍԻ կամ ՂՕՁՀԻՍԱՐ գեղ. գայմագամութիւն: Եկեղեցի 1. Ս. Յակոբ: Վարժարան 1. Պետրոսեան: Ուսանող 110 մանկունք: Թիւ Հայոց 706: Թուրքք 470:

ԵԷՆԻՃԷ գեղ. Եկեղեցի 1. Ս. Յակոբ: Վարժարան 1. Աբգարեան. Թիւ Հայոց 157:

ԽԱՂՁԱՌ գեղ. Եկեղեցի 1. Ս. Սարգիս: Վարժարան 1. Ս.Թանադինեան: Ուսանողք 60 մանկունք. Թիւ Հայոց 467:

ՂԱՎՐԱՋ գեղ. Եկեղեցի 1. Ս. Փրկիչ: Վարժարան 1. Վռամշապուհեան: Ուսանողք 40 մանկունք. Թիւ Հայոց 261:

ԽՈՐԱՍԱՆ գեղ. Եկեղեցի 2. Աստուածածին և Ս. Սարգիս: Վարժարան 1. Արշակունեան: Ուսանողք 100 մանկունք. Թիւ Հայոց 618:

ԱՂՏՔ կամ ԴՈՒՋԱՍԱՐ գեղ. Եկեղեցի 1. Ս. Կարապետ: Վարժարան 1. Հրեշտակապետեան: Ուսանողք 200 մանկունք. Թիւ Հայոց 1631:

ԴԱՎՇԱՆԼՈՒ գեղ. Եկեղեցի 1. Ս. Թորոս. Թիւ Հայոց 85: Թուրքք 420:

ԳԱՎՐԱ կամ ԳԵԱՒԵՐԱ գեղ. Եկեղեցի 1. Ս. Սարգիս: Վարժարան 1. Ս. Մեսրոպեան: Ուսանողք 50 մանկունք. Թիւ Հայոց 438:

ԿԱՄԻՍ գեղ. եկեղեցի 1. Ս. Թորոս: Վարժարան 1. Ս. Սահակեան: Ուսանողք 80 մանկունք. Թիւ Հայոց 827: Թուրքք 75:

ՇՐԺՂԵՆԻԿ *կամ* ԽԱՐ—ՀԻՍԱՐ *գեղ. Եկեղեցի* 1. Ս. *Սարգիս ։ Վարժարան* 1. *Գարթեւեան ։ Ուսանողք* 75 *մանկունք . Թիւ Հայոց* 827 ։ *Թուրքք* 300 ։

ԽՍԴԱՆՕՁ *գեղ. Եկեղեցի* 1. Ս. *Թորոս ։ վարժարան* 1. *Սիւնեաց ։ Ուսանողք* 60 *մանկունք . Թիւ Հայոց* 498 ։ *Թուրքք* 128 ։

ՃԱՆՃԻ *գեղ. Եկեղեցի* 1. Ս. *Խաչ . Թիւ Հայոց* 138 ։ *Թուրքք* 310 ։

ԹՈԴՈՐԱԿ *գեղ. եկեղեցի* 1. Ս. *Ցակոբ ։ վարժարան* 1. *Ցաճատեան ։ Ուսանողք* 80 *մանկունք ։ Թիւ Հայոց* 500 ։ *Թուրքք* 370 ։

ԿՈՎՏՈՒՆ *գեղ. Եկեղեցի* 1. Ս. *Աստուածածին ։ Վարժարան* 1. *վարդապետրիկեան ։ Ուսանողք* 200 *մանկունք . Թիւ Հայոց* 1145 ։

ՔՕԴՆԻ *գեղ. Եկեղեցի* 1. Ս. *Սարգիս ։ վարժարան* 1. *Մովսէսեան ։ Ուսանողք* 60 *մանկունք . Թիւ Հայոց* 453 ։

ԴԵԻՈՅԱՑ *գեղ. Եկեղեցի* 1. Ս. *Կարապետ . Թիւ Հայոց* 70 ։ *Թուրքք* 270 ։

ՁԱՐԱՑ *Աւան . գայմագամութիւն ։ Եկեղեցի* 1. Ս. *Լուսաւորիչ ։ վարժարան* 1. *Արշակունեան ։ Ուսանողք* 200 *մանկունք . Թիւ Հայոց* 1497 ։ *Թուրքք* 1900 ։

ՔԱՐՀԱՏ *գեղ. եկեղեցի* 1. Ս. *Աստուածածին ։ Վարժարան* 1. *Թարգմանչաց ։ Ուսանողք* 30 *մանկունք . Թիւ Հայոց* 328 ։

ԱԼԱ ՔԻԼԻՍԷ *գեղ. Եկեղեցի* 1. Ս. *Մինաս ։ վարժարան* 1. *Նարեկեան . Ուսանողք* 180 *մանկունք . Թիւ Հայոց* 663 ։

ԹԷՔ ԷՎԼԻ գեղ. Եկեղեցի 1. Ս. Գէորգ. Թիւ Հայոց 130։

ՂԱՐԱ ԲՕՂԱՋ գեղ. Եկեղեցի 1. Ս. Խաչ։ վարժարան 1. Առաքելոց։ Ուսանողք 40 մանկունք։ Թիւ Հայոց 224։ Թուրք 40։ Քիւրդ 25։

ՉԱՅ ՔԷՕՅԻ գեղ. Եկեղեցի 1. Աստուածածին։ Թիւ Հայոց 80։ Թուրքք 180։

ԳԱՂՋԷՃԻԿ գեղ. Եկեղեցի 1. Ս. Գէորգ։ վարժարան 1. Ռուբինեան։ Ուսանողք 30 մանկունք. Թիւ Հայոց 279։ Թուրքք 40։

ԽՕՐՕԽՕՆ գեղ. Եկեղեցի 1. Ս. Հրեշտակապետ։ վարժարան 1. Խոռխոռունեանց։ Ուսանողք 40 մանկունք։ Թիւ Հայոց 372։ Թուրքք 280։

ԲՐԱԲԵՐԴ գեղ. Եկեղեցի 1. Ս. Թորոս. վարժարան 1. Մամիկոնեան։ Ուսանողք 60 մանկունք. Թիւ Հայոց 362։ Թուրքք 231։

ՌՂՆՈՎԻՏ գեղ. Եկեղեցի 1 Ս. Յակոբ. Թիւ Հայոց 58։ Թուրքք 700։

Վիճակիս մէջ գտնուած օտար ազգաց գիւղերու և բնակչաց թիւը չկրցանք ճշդ-ձեռք բերել։ Իսկ ցեղերն են՝ Թուրք, Քուրդ, Գզըլպաշ, Չէրքէզ, Յոյն, Բօշայ։

## Ս. ՆՇԱՆԻ ՎԱՆՔ

Ինչպէս յայտնի է 'ի պատմութենէ, ԺԱ. դարուն սկիզբները, Վասպուրականի Սենեքերիմ արքայն և չորս հարիւր հազար Հայ

ժողովրդեան գաղթականութեան՝ օրերը հիմնուած է սոյն մենաստանը ։ Սեբաստիա փոխանակ Տոսբայ՝ Ոստանայ եւն., և Ս. Նշանն փոխանակ Վարագայ, երբէք անբաղդ ատեն փոխանակութիւն, զոր օրինակ նախամարդն 'ի դրախտին և արտաքոյ դրախտին ։ Իրաւունք ունէր դժբաղդ Թագաւորն իւր սերունդով և իւր ժողովրդով մէկ տեղ ցվերջին շունչ կարօտիլ, հառաչել Վասպուրականին, Աղի ծովին, Արտոսին, և Վարագայ սարին, մինչև կտակել գոնէ իրենց մարմինը դարձունել աւանդել իրենց կեանք տըւող ցանկալի հողոյն, իրենց արեւ տուող շողին և շուքին ներքեւ ։

Ս. Նշանի վանք կառուցեալ է Մէյրէգում լերան ստորոտը, թէպէտ դաշտային այլ բարձրադիր է իւր տեղին ։ Շէնքերը անձեւ և խառն 'ի խուռն են, գլխաւորաբար երեք բակի բաժնուած ։ Ուխտաւորաց թաղ, Վարժարանի կամ սեղանատան թաղ, և Միաբանից թաղ. կրկնայարկ են՝ յարկերը, և հում աղիւսով կերտուած, ախոռն ու գոմը սոյն թաղերուն կից. նեղ և մութ փողոցներ ու սանդուխներ ։ Մեծ և պայծառ կը համարուին շէնքերուն մէջ առաջնորդարանըն, վարժարանն և սեղանատունն ։ Մըշտահոս ջրոց չորս աղբիւրներ կան վանքին մէջ ։

Երեք տաճար ունի քովէ քով ։ Առաջինն Ս. Նշան, խաչաձեւ, հնաշէն, գմբէթա-

յարկ, չորս քառակուսի սիւնաձեւ անկիւնե-
ներով, որոնց և ոտանց կիսէն 'ի խոնարհ
յախճապակիով բռեալ: Ս. խորանի երկու
կողմն նեղ և մթին աւանդատուններ կան
Ս. Պօղոս և Ս. Պետրոս անուամբ. իսկ դը-
րան կողմն յաջմէ՝ խորան Ս. Կարապետի,
որոյ սեղանն և չըջապատը մարմարեայ, քան-
դակեալ և ոսկեզօծեալ. 'ի ձախմէ՝ խորան
Ս. Գլխադրի: Տաճարիս դրան քով դաւթէն
մտնելիք նեղ դուռ մը կայ, որ սանդուխով
կը հանէ փոքրիկ վերնատուն մը հանդէպ
Աւագ խորանին, այս է տեղի աղօթելոյ
Թագաւորին: Ամբողջ տաճարիս յարկը, որ-
մանք և յատակը խոնաւ են:

Հին, և բաւական արուեստակերտ Ա-
թոռ մը ցոյց տուին, որոյ վրայ կը նստի ե-
ղեր Սենեքերիմ արքայն:

Երկրորդ տաճարն է Ս. Կարապետի ան-
ուամբ, մեծ, ընդարձակ, նոր, լուսաւոր,
բարձրագմբէթ, առանց սեան, նորոգեալ
'ի հիմանց 1857 ամին. աջակողմեան դասին
երկու վանդակաւոր դռներով կը մտնանք
փոքր խորան մը՝ Էջմիածին, ուր 'ի միջա-
վայրի Քառասուն մանկանց լճէն իջման քա-
րը բերած զետեղած են սեղանի վէմ քարին
մէջը, վրայի սեղան սիւնազարդ և քանդա-
կազարդ, ողջ մարմարիոն, ոսկեզօծ. քան-
դակները կը ներկայացընեն մէկ կողմը Բա-
ղանիքն, ուր կը դիմէ Կոստակիանն, և այն
երանելի Մայրն՝ որ իւր մանուկն Մելիտոն

չալուկած կը վազէ հասնիլ և լուանել զայն որբոց Քառասուն Մանկանց ոսկերաց հանգը-սին ․ միւս կողմն ոսկերաբարձ սայլեր, և Պետրոս եպիսկոպոս եկեղեցական հանդիսիւ, որ կ'ամփոփէ Երանելեաց նշխարները · բա-ւական ճարտարութեամբ կերտուած ։

Գեղեցիկ է մարմարեայ ճակատ դրան Ս. Կարապետին, նոյնպէս քանդակեալ և ոս-կեզօծ · իսկ փեղկերը երկաթէ և արոյրէ, վանդակաւոր, մէկ փեղկին վրայ Մկրտի Քը-րիստոս, և միւսին՝ քարոզէ Մկրտիչն · Մե-ղաւորք և մաքսաւորք ունկն դնեն, և առ-ընթեր՝ Գառն Աստուծոյ ։

Երրորդ տաճարն է Ս. Աստուածածնի, փոքրիկ գաւիթով մը, փոքրիկ է նոյն իսկ տաճարս, այլ սիրուն և չքեղ, չորս անկիւ-նը կրկնասիւն, 'ի միջի գմբէթ, և յատակը յախճապակի ։ Յաջմէ շիրիմ Գետադարձին Պետրոսի · (թէպէտ ասոր նշխարներն եւս փոխադրուած են 'ի Վարագ ․) և 'ի ձախմէ շիրիմ Թէոդորոս Աբեղայ Նահատակին, որ մին էր յորդւոց Ս. Գոհարինէի, մարտիրո-սացեալ 1156ին՝ նոյն կողմանց բռնաւոր Թուրք Տանիշմանտէն ։ Այս երկու շիրիմներն ալ ընտիր մարմարիոն քարերով շինուած են, իրենց պատկերները որոնց վրայ նկարուած, պատմութիւնը խոշոր տառերով ոսկենա-ւոր գրուած, և վրանին փայտեայ ոսկեզօծ խաչկալներով չքեղ յօրինուած ։

Մեծ դաւիթը, ուստի կը մտնենք այս

երեք տաճարները, կը պարունակէ կարգ մը Առաջնորդ եպիսկոպոսաց և վարդապետաց գերեզմանները: Իսկ հասարակ Միաբանից գերեզմանները վանքի պարսպէն դուրս յարեւելս է, որմափակեալ կից տաճարաց որմոց, կամ ըստ ուղիղ ասութեան՝ «Ընդ հովանեաւ սրբոյ եկեղեցւոյն հանգուցեալ». այս հասարակաց հանգստարանի դրան մօտ Ս. Նշանի հիւսիսային պատին փակած է գերեզման Անանիա եպիսկոպոսին և կաթողիկոսին Սեբաստիոյ. որոյ օրով չորս կաթողիկոս կար Հայոց . . . 1203—1205. Հռոմկլայ, Անի, Տիրակ և Սեբաստիա: Ահա Անանիայի տապանագիրն:

«Յայս դամբարանիս եդին ըզմարմին,
«Տեառն Անանիա կաթողիկոսին.
«Որ ծնեալ նստաւ վեհապետ ազգիս,
«Ի գերահռչակ սուրբ մենաստանիս.
«Սա էր ազգական Պետրոսի մեծին,
«Գետադարձ կոչեալ սուրբ հայրապետին.
«Ժամանեաց վախճան սուրբ կենաց նորին,
«Թուին վեց հարիւր յիսուն և վեցին»:

Ընդարձակ պարտէզ մը ունի վանքս, ուր տնկուած են ճշհրի ծառեր, մրգաբեր տունկեր, բարաքնիք և ուռենիք, և կը մըշակեն զանազան բանջարեղէններ. Ջուր մը կ'անցնի միջէն, և Լոյս—աղբիւր մը ունի. իբրև զբօսավայր է քաղաքացւոց և ուխտաւորաց, որք ամեն օր գրեթէ պակաս չեն, բայց աւելի բազմութեամբ կու գան կիրակի

օրերը ։ Վանքն ունի 47 կտոր արտ, երկու-
ճաղացք, և 10 խանութ՝ քաղաքի մէջ ։ Երկ-
րագործութեամբ կ'զբաղին, և թէ մեկնած
պտղիներէ, ուխտաւորներէ բաւական հա-
սոյթ ունին. բայց և այնչափ կը մսխուին,
վասն զի իբրև միակ մեծ վանք, ճանապարհի
վրայ, քաղաքի մօտ, ամեն օր լի են ուղևոր-
ներ, տարողներ այլ և այլ ազգէ և աստի-
ճանէ, անշուշտ վանքի ապահովութեան հա-
մար ալ այս տալն ու կերցընելը միջոց մ'է ։
Այսու ամենայնիւ իւր տնտեսական վիճակը
բարւոք է, և տարիէ մը 'ի վեր էր որ Գեր.
Առաջնորդ Ս. Հայրն վանքի վարժարանին
մէջ 25 գիշերօթիկ աշակերտներ հաւաքած
էր Թէմի գեղերէն և քաղաքէն, որոց կ'ա-
ւանդուեր Հայերէն գրականութիւն, ազգա-
յին և Սրբազան պատմութիւն, կրօնք, Թը-
ւաբանութիւն, տաճկերէն և երաժշտու-
թիւն. այս աշակերտելոց կոչումն էր Վար-
դապետ, Քահանայ, և Վարժապետ լինել ։
Կանոնաւոր էր մանկանց ննջարան և
մանհիճները, մաքուր՝ ուսումնարանը, և վան-
քի տպեալ ու ձեռագիր մատեաններն ալ
շատ խնամքով զետեղուած էին ուսումնա-
րանի գրադարաններու մէջը. անշուշտ եթէ
արժանաւոր ուսուցիչներ ալ ունենան, ա-
սոնք պիտի պտղաւորեն Նորին հայրութեան
գովելի ջանքն և փառաւորեն բաղձացեալ
նպատակն ։ Ս. Նշանի վանքի իրաւասութեան
տակն են վիճակիս միւս վանքերը. և Զէյ-

Ս. Նշանի վանքին միաբան և իբրև արնորէն ժողով՝ երկու վարդապետ միայն կային, ութն տիրացու, մշակք, տնտեսք, այլ և այլ պաշտօնեայք, և երկու անկեալք։

## Ս. ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԻ ՎԱՆՔ

Քաղաքէն հինգ ժամ հեռի է, Աղտուց կամ Գուզասարին մօտ բարձր լեռնակի մը վրայ, որ կը նայի հովտի բոլոր գեղերը, և կը դիտէ Ախսին երեսը և շրջապատ լերանց գեղեցկութիւնները։ Բաւական թուով սենեակներ ունի կրկնայարկ, բայց խարխալեալ։ Փոքրիկ տաճար մը միայն ունի, բայց շատ սիրուն։ Այս վանքը Քրդերէ և աւազակներէ շատ վնաս կը կրէ. իւր արտերը մշակել տալու և վանքին հսկելու համար Ս. Նշանէն ղրկուած էր, հոն Զարացի Մովսէս վարդապետ, հսկայ և կորիճ անձն։ Վանքի պարսպին մօտ խաչ—բլուր մը կայ, գերեզմանոց, ուստի գտնուած էր 1871ին Ս. Գոհարինեանց ոսկերք արկղաձև շարուածքի մը մէջ զետեղուած. և վրան թզաչափ մեծութեամբ սպիտակ քար մը իբրև խուփ դրուած, զոր աչօքս տեսայ և վրայի գրուածքն օրինակեցի, որ է, «ԱՅՍ ՆԱՀԱՏԱԿՔ ՈՐ ԿԱՏԱՐԵՑԱՆ ՄՐՈՎ ՎԱՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ. ՌԱՏԻՌՍ. ԵՒ ԳՈՀԱՐԻՆԷ. ՏՆԿԻԿ ԵՒ ԾԱՄԻԴԷՍ։» Քարին միւս երեսը գրուած «ԵՒ ԵԴԱՆ ՑԱՅՍ ՏԵՂԻՈՋ Ի ՁԵՌՆ ԾՈՒՐՔ

ՎԱՐԴԱՊԵՏԻ ԲԱՐՍՂԻ ։ ԹՈՒԱ. ՌՂՋ ։» Սոյն Սրբոց Նշխարք ամփոփուած են այժմ վանքիս տաճարին մէջ յաջակողմն՝ պատին տակ, Ս. Հրեշտակապետի մեծ և անհեղ պատկերին ներքեւ ։

## ՁԵՌԱԳԻՐՔ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

Սեւաստու մէջ բազմաթիւ են ձեռագիրները, բայց մենք մեր տեսածներուն ցանկը և յիշատակներն միայն կը դնենք այս տեղ ։

1. Աւետարան, փոքր երկաթագիր, մագաղաթ, 'ի Մայր եկեղեցին . ընտիր ոսկէնկար, պատկերազարդ, որոյ դրան վրայ Արաբերէն գրուածք մը կայ, զոր օրինակել տուի թէպէտ, բայց դժուարահասկանալի և սխալներով լի էր . ուստի միայն իմաստը կը դնեմ.

« Սեբաստիոյ դատաւորին Նախագահութեանը տակ կազմեալ սրբազան ժողովոյ (մէհքէմէ շէր՝) մէջ եկեղեցականաց տեսչութեամբն ու քննութեամբը ստուգուած է թէ այս Աւետարանը Մաթիէլեան Ներսիսին՝ Տավաթ փաշայի Աննիկ, Ագնիւ և . . . . անուն դուստր ժառանգորդաց թողուցած ինչքերուն մէջ տեսնուած է . սակայն այս պայմանաւ թէ Ներսէս եպիսկոպոսը Սեբաստիոյ եկեղեցապետ Առաքել եպիսկոպոսին, սա եւս վերոյիշեալ Մաթիէլին և որմէ յ-

չեալ Նորսէսի յանձնած են, և 'ի վերջոյ Պե[illegible]րոս Գրիգորեանի յանձնուած է վագըֆի [illegible]ղանակաւ, որպէս զի եկեղեցականք միշտ [illegible] պարտ և պատշաճ ատեն կարդան » եւն :

Ի վախճանի Արաբերէնին՝ Հայերէն գրեալ ·

« Զվերջին ստացող սուրբ Աւետարանիս յիշեսջիք 'ի սուրբ և 'ի մաքրափայլ յաղօթըս ձեր զՊատուականն, որ ազատեաց զըսուրբ Աւետարանս 'ի ձեռաց այլազգեաց, և եդ յիշատակ Պատուականն իւր հոգւոյն և իւր հաւրն խամարին և իւր մաւրն [illegible]նուշին, և իւր կնոջն Ղամարին, և իւր հաւրն Յոհաննին, և մաւրն Ջանիփաշին, և քեռուն Միրշին, վասն և յիշատակ իւրեանց հոգւոյն Պատուականին, եղբաւրն իսկանտարին և Աբրահամին և խաչատուրին որ փոխեցաւ առ Քրիստոս այսմ հաստակաւ. Աստուած ողորմի իւրեանց հոգւոյն, ամէն : Դարձեալ յիշեսջիք յաղաւթս ձեր զխըտըրն, զկինն զկուլխատանն և զիւրեանց զաւակն զՍադարն, զՆազաշն, զՔընքուշն և զՎարդանէսն, զկեռասն, զկոշկին, զՂամարին, եղբայրն զխաչատուրն : Այս եղեւ 'ի քաղաքս Սեբաստիոյ 'ի Թուականիս Հայոց ՌՃԱ· 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն : Զայս սուրբ Աւետարանս եդ յիշատակ Պատուականն 'ի ձեռն տէր Տիրատուրին · խնամ տանողքն աւրհնին յԱստուծոյ, ամէն : . . . «Յիշեսջիք զմայրն Մանանայն . . . զՊատուականին որդին զՂումրին, զփեսայքն զՊետրոս և զԱլիքսանոսն և զհարսն զԳոհարն, և

զԹոռներն զԹամամն, զՏիրուհին և զՑարութիւնն . . . » :

— . Ծաղկենկար երկու երեսի աղխւստակաց մէջ ոսկեգրով գրուած է .

« Ով յանսկիզբն ծոցոյ բան,
« Որ ծագեցար յազգըս մարդկան,
« Եւ զայս մատեանս Աւետարան,
« Մեզ հնչեցեր ձայն ցնծութեան .
« Դու զորս ետուր մեզ քեզ փոխան,
« Կաթողիկոս 'ի Հայաստան,
« Զտէր Կոստանդին պետ հովուութեան,
« Ի գունդն ընդալ 'ի Պետրոսեան .
« Եւ զստացող այսմ տառի,
« Եւ զարդարող սուրբ կտակի,
« ԶԹորոս Նորին եղբաւրորդի
« Եւ քահանայ սուրբ և արի,
« Եւ զՏալիթա բարիհոգի,
« Իւրեանց ծննդաւք և այլ զարմի .
« Ընդալ 'ի քում տաղաւարի,
« Որ ես աւրհնեալ յամենայնի » :

— . Ի վերջն Մատթէի .

« Ընդ մետասանիցն գնդի համաշաւղաւեա-Քրիստոս զտէր Կոստանդին կաթողիկոս և զեղբաւրորդին իւր Թորոս քահանայ ստացող աստուածախաւսս այս մատենի » :

— . Ի վերջն Մարկոսի .

« Յիշեցողի սորա Թորոս քահանայի ողորմեա Քրիստոս » :

« . Ի վերջն Ղուկասու .

« Զաստուածայպատիւ տէր Կոստանդին կաթողիկոս Հայոց և զեղբաւրորդին իւր Թո-

րոս քահանայ որ և ստացող լուսազարդիս յիշեսջիք 'ի Քրիստոս Յիսուս »:

— . Ի վերջն Յօհաննու, յիշատակարան, մաքուր երկաթագիր ․

« Փառք քեզ անսահման անուն և անզուգական անձնաւորութիւն Հայր և Որդի և սուրբ Հոգի: Որ ետուր կարողութիւն և սատար եղեր տկարութեան իմոյ 'ի զրաւհանել ըղձալի մատենիս:

« Օրհնութիւն քեզ սուրբ Երրորդութիւն և միասնական Աստուածութիւն, այժմ և":

« Շնորհիւ Տեառն սկսեալ և ողորմութեամբ նորին յանգ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածախօս աստուածունակ երկրպագելի և պաշտելի սուրբ Աւետարանս յեւթն հարիւր և մետասաներորդի ամի թըւաբերութեանս Հայոց, յաշխարհամուտ Աթոռս Հռոմկլա ընդհովանեաւ աստուածաբնակ տաճարացս որ յանուն սուրբ փրկչին և սրբոյ Աստուածածնին և սուրբ Լուսաւորչին մերոյ և այլ ևս բազմահաւաք սրբոց: Ի ժամանակս աստուածասէր և բարեպաշտ արքային Հեթմոյ և 'ի Հայրապետութեան տեառն Կոստանդեայ կաթողիկոսի որ սըրբազան վարուք իւրովք առհասարակ զարմացուցանէր զբազումս, մինչ զի և յարտաքնոցն առաւել ընդունէր վկայութիւն զանհամեմատ վարուցն իւրոց մաքրութեան. հեզ էր և ողորմած և բազում բարութեանց լինէր աւրինակ: Ուստի և եղբաւրորդին իւր Թորոս քահանայ 'ի նմանէ ուսեալ լինէր գրասէր և աստուածասէր, զմտաւ ածեալ թէ ամենայն որ ինչ յերկրէ ընծայեալ նիւթք ընդ նոյն կորնչել ունին, և որ յաւիտեան

Միայ՝ բան Տեառն է ։ Վասն այսորիկ եռա-
փափագ սիրով ստանայր մատեանս Աստ-
ուածաշունչս 'ի հին և 'ի Նոր Կտակարանաց,
և զամենայն գոյս իւր և զարարս գոգջիր եթէ
ջանայր դնել 'ի վերայ նոցա և այլ ևս զար-
դուց սրբոյ եկեղեցւոյ. վասն զի յոյժ տա-
նասէր էր. այրն և պայծառացուցիչ եկեղե-
ցական կարգաց. Նմին իրի ստանայր կրկին
անգամ զմատեան սրբոյ Աւետարանիս յիմմէ
անարժանութենէ Թորոսէ մականուն Ռոսլ-
ին կոչեցելոյ, որ և ըստ կարի իմում յանգ-
հանի Աստուծով զհրաման նորա, նոյնպէս
զարդարեալ ոսկւով սրբով և երանգ երանգ
գունովք ներքոյ և արտաքոյ ընդելուզեալ
քարամբք պատուականօք առ 'ի սիրելի առ-
նել զսա մանկանց սրբոյ եկեղեցւոյ ։ Վասն
որոյ աղաչեմ զձեզ ով աստուածասէրք,
որք հանդիպիք սմա և որք ժառանգէք զսա,
յիշել աղօթիւք 'ի Տէր զարժանաւորսն ա-
մենայն բարեաց յիշատակի զբարեպաշտ ար-
քայն Հեթում և զորբանոզի թագուհին իւր
Զապէլ. դուստր Լեւոնի արքայի, և Աստու-
ծ[illegible] զորդիս սոցա զպարոն Լեւոն և զպարոն
Թորոս և զամենայն նախնիս իւրեանց որք և
անուանին Ռուբինեանք.

«Յիշել աղաչեմ և զթագաւորահայրն
պարոն Կոստանդին ուստերաւք և դստե-
րաւք և ամենայն զարմիւք ։

«Յիշեսջիք և զերջանիկ հայրապետն Հայոց
տէր Կոստանդին. և զհայր իւր Վահրամ և
զմայր իւր Շուշիկ և զեղբարսն իւր զԳորգ
և զԳրիգոր և զպարկեշտուհի քորսն իւր
Շուշանիկ և Վանենի ։

«Աղաչեմ յիշել և զքաջակրօն քահանայն
Թորոս զստացօղս մատենիս և զհայրն իւր
Գորգ քահանայ և զմայրն իւր զԱզիզ, և

զեղբարան իւր զաստուածապատիւ եպիսկո-
պոսն զտէր Ստեփաննոս և զԳրիգոր Նորին
հայրապետ, և զքոյր իւր Շուշանիկ և զդըս-
տերսն իւր Մլքի և Շուշան և զմայր սոցա
Ցամիթա կանուխ վախճանեցելոյ զկենցաղս :
Եւ զհաւրեղբաւր որդին իւր զԳրիգոր,
զՍտեփաննոս, զԹորոս և զամենայն ազգայինս
իւր :

« Յիշել աղաչեմ և զքարի շառաւիղ դը-
դին իւր պարոն Ստեփաննոս, իշխանական
պատուով զինուորեալ 'ի դրան արքայի : և
զամուսին նորա զտիկին Աղայ 'ի մեծ տոհմէ
և զուստերս սոցա և զդստերս :

« Որոց ամենայն յիշելեացս առհասարակ
Քրիստոս Աստուած ննջեցելոցն հանգիստ և
ողորմութիւն պարգևեսցէ, և զկենդանիսն
անխռով խաղաղութեամբ պահեսցէ. ամէն :

« Ցերևս անկեալ բազմամեղ և թարմատար գրիչս աղաչեմ յիշել և զիմ անարժանութիւն և զծնաւղսն իմ և զամենայն բարի ուսուցիչսն իմ. և Աստուած զձեզ յիշեսցէ յիւրում արքայութեանն և 'ի փառս : ամէն » :

— • Ի սպառուած յիշատակարանիս պարագայ տեղ մը բոլոր գրով գրուած է :

« Կազմեցօ սուրբ Աւետարանս 'ի թվին ՌՀԵ· 'ի քաղաքն 'ի Սեփաստիայ, 'ի դուռն սուրբ Աստուածածնին ձեռամբ սուտանուն մեղօք լցեալ Մելքիսեթ դպիրս և զուսուցիչն իմ Մելքիսեթ վարդապետն որ հանգուցեալ է 'ի Քրիստոս. որ բաղում աշխատեցօ ընդ իս և ուսոյց արհեստս զայս : Ով ընթերցող քահանայք, աղաչեմք զձեզ, որ մէկ Հայր մեղայի մի յիշէք զմեզ աղաչեմ աղաչեմ » :

— . Ի վերջին երես .

« Զմեղաւք դատապարտեալ կազմաւղ որքա զԱռաքել Հնազանդենց և զծնողսն իմ և զհարազատն իմ զՊաւղոս ս ր կ ; և զուսուցիչն իմ զՍարգիս քահանայ զհանգուցեալսն 'ի Քրիստոս աղաչեմ յիշել 'ի Տէր. 'ի Թուա". ՉԺԱ »:

— . Զկնի այսորիկ ընտիր երկաթագրով.

« Դարձեալ ես բազմամեղս Թորոս 'ի Թուա". ՉԺԻ. ետու զսուրբ Աւետարանս 'ի սուրբ ուխտն Արքակաղին կոչեցեալ 'ի ձեռն տէր Սիոնի եպիսկոպոսի. և խնդրեցի 'ի նմանէ զի 'ի յիշատակի Նախավկային ըզպատարագն իմ ծնողացն և հոգևոր տերոջն և ինձ մատուսցեն զինչ յայսմ աւուր պատարագ մատուցանի. և որք զխնդրուածըս մեր կատարեն՝ Քրիստոս Աստուած զիւրեանց կատարեսցէ:

« Զսահմանս զայս միաբան եղբայրութիւնն յանձն էառ, և որք զկնի մեր գան, կատարեսցեն զայս »:

1. Աստուածաշունչ բոլորագիր, ընտիր, մագաղաթ, 'ի Ս. Սարգիս եկեղեցին:

« . . . Արդ 'ի Թիւ Հայոց ՌՁԳ. Թագաւորն Տաճկաց Սուլթան Մուրատն, եկն 'ի Սեբաստիա, գնալ 'ի Պարս 'ի պատերազմ. կամաւքն Աստուծոյ հրաման եղաւ նորոգելոյ զեկեղեցին սուրբ Սարգսի, որ 'ի վաղուց հետէ հնացեալ և խախտեալ էր: Եւ երանաշնորհ հայրս մեր Ներսէս վարդապետն մեր վերատեսուչ մայրաքաղաքիս մերոյ Սեբաստիոյ, թողեալ զամենայն հոգս մարմնա-

կանս, և միայն հոգևորին բուռն հարեալ, և փարեալ 'ի սէրն Քրիստոսի, ձեռն արկ 'ի շինումն սուրբ Եկեղեցեացս, և բազում նեղութիւնս կրեաց 'ի յանօրինաց. որպէս 'ի հնումն Զօրաբաբէլ, և Յովսեդեկեանց քահանայ մեծ, որ բազում և չափ աշխատանս կրեաց հաւատով և յուսով, և միամիտ սիրով. շինեաց բազում ծախիւք, և նորոգեաց ողորմութեամբն Աստուծոյ. և լուսաւորեալ պայծառացոյց զկարգս և զկրօնս Եկեղեցականաց, որ խանգարեալ էր 'ի թուլամորթ և 'ի ծոյլ առաջնորդաց: Եւ յետ այսր յաւել ևս նորոգել զսուրբ Աստուածածին եկեղեցիս մեր. և ոչ այսու միայն շատացեալ այլ և զԱյի—որ եկեղեցին Յունաց ազգին, որ 'ի վաղուց հետէ խախտեալ և կործանեալ էր, և նոքա անմխիթար մնացեալ՝ ոչ ունելով ձեռնտու 'ի մարմնաւոր և 'ի հոգեւոր կարեաց: Վասն որոյ յոյս 'ի յԱստուած եդեալ ձեռն արկ և վերստին նոր նորոգեաց և ուրախացոյց ևս զնոսա: Զոր Տէր Աստուած, իւր աշխատանացն փոխարէն հատուցումն արասցէ Ճ. պատիկն աստ, և 'ի հանդերձեալն անպատում ուրախութիւնն պարգևեսցէ անզրաւ յաւիտենից:

«Եւ դարձեալ ստացաւ զսուրբ գիրս զԱստուածաշունչս զայս, անմաշելի թղթով որ ինքն իւր ձեռամբն շինէր, զմագաղաթս քերէր և պատրաստէր զտետրս առ 'ի դիւրութիւն լինելոյ ինձ անվարժ գրչիս, և բազումս զմեզ մխիթարէր 'ի հոգևոր և 'ի մարմնաւոր կողմանէ. որ թէպէտ մեք անարժան էաք գործոյս այսորիկ, սակայն սատարութեամբ աղօթից բազմերախտ հօրս մերում, բարերարն Աստուած ոչ ըստ մեղաց իմոց արար, և ոչ ըստ անօրէնութեան ի-

մուս հատոյց ինձ, այլ ըստ իւր մարդասիրութեանն ողորմեցաւ մեզ և գթացեալ փրկեաց յամենայն փորձանաց հոգւոյ և մարմնոյ: Վասն որոյ հայցեմք յանկարօտ Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, որ փոխանակ այսմ դրի որ զյիշատակս գրեցաք, գրեսցէ Տէր 'ի գիրն կենաց, և նմա փառք յաւիտեանս ամէն:

« Յիշատակս օրհնութեամբ եղիցի. և Զեզ յիշողացդ և մեզ յիշեցելոյս առ հասարակ ողորմեսցի Քրիստոս Աստուած մեր, ամէն: Հայր մեր որ յերկինս:

« Կատարեցաւ գիրս, ծաղիկս, և յիշատակարանս, թուին Հայոց ՌՁԹ. օգոստոսի ԻԹ. օրն շաբաթ 'ի փառս Աստուծոյ: Գիրքս այս սիրելի, թուղթս անմաշելի, Նըկարս անքակտելի, յօրինակն մի' խնայեսցի»:

—. Այլ գրով գրեալ.

« Աստուած ողորմի Անդրէաս Պարոն Տիրոջն և իւր ծնողացն որ ետ 'ի գին Աստուածաշունչ գրոցս Ի. ղրշ. Աստուած լուսաւորէ զիւր հոգին:

« Աստուած ողորմի մահտեսի Պաղտասարին և կողակցին իւր Անուշին, որ ետուն 'ի գին Աստուածաշունչ գրոցս տուն մի Լէ. ղրշ. ի:

«Ես մեղաւոր Աճամ Գրիգոր Ռ. ա' բ' ա'

ին լուս ¡ ¡ ¡ ¡ ¡ ¡ ¡ ¡ ¡ ¡ ¡ ¡ »:

Գրեթէ բոլոր ձեռագիր Աւետարանաց սկիզբները քանի մը երես խորանաձեւ Նըկարներ կան, երանգ երանգ գունով և ոսկեզօծ, ղանազան ծառոց, ծաղկանց, կեն-

դանեաց, թռչնոց պատկերներով, և այլ և այլ ձևերով գեղազարդուեստեալ. շատ Աւետարանաց նկարները կը նմանին իրարու, գործ՝ քննութեան արժանի ճարտարաց: Խորանաց մէջն ալ համաբարբառ չորից Աւետարանչաց՝ սիւնակ սիւնակ գրուած: Հետևեալը բացատրութիւն է այն նկարագրէ խորանաց.

« Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի զառաւել հրաշից արժանի ոսկեայ գերապանծութիւն բանից գեղեցկազարդեալ մատանացուացս զառ 'ի չորից աւետարանչացն մեզ պիտառութիւն: Արտայայտելով վսեմական բանիւ, տասնեցունց կանոնացն, նկարակերպ խորանայարկ գունակ գունակ դեղոցն: Երփներփն ներանկմունքն, որոց ձրի ջան զերկնային մարմնոյն մետաղեան բացատրելով պարտականապէս, այնպէս համազրոյց բանիւք մի առ մի շաղաշարեալ զընթերականցիցն հոլովմն արտակայլեալ, որ վասըն Յիսուսի վկայութեան բանքն: Ուստի և խորանացն դեղոցն նկարագրութիւնք: Սկսեալ յառաջնմէ կանոնիցն են մինչև յտասներորդն: Արիւնաներկեալ կարմրոք սեանցն և խոյակացն որք 'ի մարմնաւորութիւնն և 'ի խաչն մեզ պիտառեցին . . . :

Իսկ ոսկեգոյն կամարն զքահանայական ունի զխորհուրդ 'ի միջի կացեալ. իսկ կարմիրն գինեգոյն վասն զի զՄելքիսեդի բերելով զխորհուրդն 'ի դէմս Քրիստոսի: Իսկ վերնայարկ սեաւն լայնատարածեալ հանրաւքըն, իբրև ամբով ծածկեալ ունի զխորհուրդ Աստուածային անսաւրէնութեանն: Իսկ երրորդն նմանապէս դեղաւքն 'ի խորհուրդ

Աստուածայայտն եկեալ, սկիզբն առնու առաջին կանոնին երեք մի մի միանանկան Աստուածութեան արտայայտելով, յորոյ վերայ կամարացն սեղանն բոցախառն հրով, 'ի վերայն սեամբն, վասն զի ծածկեալ էր սեամբքն իբրև զպատրուակաւ զխորհուրդն Քրիստոսի: Իսկ հաւքն՝ վասն զի աքաղաղքն նայելով 'ի խորանին տնօրէնութիւնն և խաչըն: Եւ որպէս աքաղաղքն 'ի մէջ մարեմտանեաց ճոխք և համարձակք հրամանատուք և ահարկուք: Իսկ աստ չորրորդն յայտնէ զդէմս եկեղեցւոյ չորք տեղաւք համաբառբառ պատմութեամբն, միակարգ բանիւք զանազան կամարաւքն, ունելով 'ի մէջ կամարացն զխաչն, և երկու աղաւնակերպ հաւք 'ի նմա նայելով, իբրև ոչ եթէ սոսկ աղաւնիք, այլ նմանութեամբ վասն զի որք տային զՀոգին սուրբ, եղեն ընդունակ Հոգւոյն սրբոյ: Իսկ արտաքին սեաւն բացագոյնն, վասն զի նախ ստուեր էր անցաւորի հին աւրինացն առ 'ի լինելոյ մաքրութիւն կարմիր արեամբն Քրիստոսի, նոյնպէս և զսեղանն, զմթարն անաւսրացուցեալ, և զբոցն պայծառացուցեալ իմացականապէս զոր Քրիստոս արկանէ:

« Իսկ եղջիւրք կամարացն անդրէն 'ի վերայ խոյակացն, զոյգ առ միմեանս կարմիր և կապոյտ խառնեալ. հինգ հինգ մասամբք մերձ ընդ մերձ զհինգ դատողական և զհինգ տախտակ աւրինացն նշանակէ:

Իսկ արմաւենիքն 'ի ստորուստ 'ի վեր բուսեալ, վասն զի յերկրէ աստի ճշմարտութիւն բուսաւ մերձենալով առ վերին կարգսն կանաչացեալ արդարութեամբ որպէս և գրեալ է: Իսկ երկու հաւքն կարմրահոտուցք և կարմրոտունք, որպէս առաջին խորանին

սպասաւորքն, որ Թէպէտ և մարմնովն մե-
կուսի էին 'ի նոր խորհրդոյս այլ ձայնիւ և
բերանով զնոյն բերէ զխորհուրդ: — Իսկ
հինգերորդ խորանն զնոյն բերէ զխորհրդա-
դըս, ստուերն պակասի և կարմիրն պայծա-
ռանայ, և չուշան ծաղկէ, քանզի խաչն
մերձեցաւ, և գուշակք յարութեան հասին
յայտնել Քրիստոսի արեամբն փրկութիւն
հեթանոսաց: Այլ դեռ ևս քողն 'ի վերայ
կայ, զի զմարգարէականն դեռ ևս նշանա-
կէ զխորհուրդս, վասն այսորիկ երեք միայն
իբրև զմարգարէական և Թագաւորական և
քահանայական:

« Իսկ նռնենիքն երեք ստեղունք 'ի մի-
մինջի ելեալ, աւրինակ բերելով զհնոցն 'ի
նորա խորանաւն և կտակարանաւն իւրեանց
կեղեւովն զքաղցրութիւն պտղոյն 'ի ներ
քամանելով: Իսկ եղջիւրքն մերձ առ վերինն
սեղանն զՄովսէսի և զԱհարոնի բերեն ըզ-
խորհուրդս, որպէս 'ի միւս կանոնին գտա-
նեմք, և կաքաւսն առ պոռնիկն Մարիամ և
առ Ռախաբն: Իսկ ձկնաքաղն ձայնիւ որսոր-
դութեամբ 'ի ջուրսն, հոգւոյն առեալ ան-
սութեամբ մարգարէիցն, յոտս աւետարան-
չացն ասելով: Իսկ աքաղաղքն ոսկեզգեստ
փետրաւքն զարդարելաւք, վասն զի հոգւոյն
արժաւորքն նախ զանձինս իւրեանց մաք-
րէին »:

1. Աւետարան՝ որոյ յիշատակարանի
Թուղթ պակաս էր:

— Ի վերջն Ղուկասու, յետ բանիցս
« Գովէին և աւրհնէին զԱստուած », կայ
յաւելեալ. « Իւ զամենայն համառաւտագոյն

պատմեցին այնոցիկ, որք եկին ընդ Պետրոսի։ Յետ այսորիկ ինքն Յիսուս սկսեալ յարեւելից մինչեւ 'ի մուտս արեւու. եւ ետ 'ի ձեռս նոցա զԱստուածային զանապական քարոզութիւնն տիեզերական փրկութեան, ամենայն արարածոց յաւիտեանս ամէն »։

Ցիշատակարանէն զկնի հետեւեալ աղիւսակը կար, որոյ ներքեւ գրեալ էր.

« Այս իմաստ չարակարգեալ Վարդան վարդապետի, Կիլիկեցւոյ։ Ո՞վ բացցէ դիւրին է հմտասէր. պիտոյ է բազում զանձս գտանէ։ Համեմատէ չորս տարրս։ Իմանալիք եւ զգալիք »։

« Մի մեղադրէք տեղիս վատ է. եւ գրիչն կու փակչէր, եւ զեղկելի եւ զփծուն գրիչս յիշեցէք »։

| Է. | Մոլարք | Աստեղատունք | Գաւառք | Շրջանք | Ժամք |
|---|---|---|---|---|---|
| Է<br>Է | Ջ 6<br>Ջ | Ա 0<br>Ա | 0 0<br>Ե | 0<br>Դ | 0<br>ԺԲ |
| ԺԴ | ԺՋ | ԺԸ | ԺԹ | ԺԵ | ԺԱ |
| Ա Ա<br>Շրջի | Ա Ա<br>Իջանէ | Բ Բ<br>Ժամք | Բ Բ<br>Մասն | Գ Գ<br>Գաւառիւք | Ա<br>Մասին<br>կէս |
| ՅԿ<br>Մի օր | 0<br>Լուսն<br>է | 0<br>Աստեղ | 0 0<br>Հողմունք | 0 0 0<br>Ցոլմունք | ԻԱ<br>Մասն<br>իջանէ |
| Թ<br>Դաս | Աթոռք<br>Քերոբէք<br>Սերոբէք | Թ<br>Տէրութիւնք<br>Զօրութիւնք<br>Իշխանութիւնք | Թ<br>Հրեշտակք<br>Հրեշտակապետք | Թ<br>Հուր<br>Օդ<br>Ջուր | Թ<br>Երկիր<br>Բոյս<br>Ցունկ |
| Ա<br>Մարդ | Ա<br>Ջեն | Ա<br>Կազմ | Ա<br>Ամեն<br>ական | Ա<br>Դաս<br>Ոգի | Ա Ա<br>Մասն<br>իջանէ |
| Ա<br>Հուր. լուս<br>Այրող<br>նիւթ | Բ<br>Խառնաւ<br>Հուր. երկիր<br>նիւթ | Գ<br>Տեսակ<br>Ծառն. գով<br>այս նիւթ | Դ<br>Երկիր. չոր<br>հիւթ. հաւր | Ա Ա<br>Մասնի<br>ունի | Բ Բ<br>Ցես<br>ակ : |

## ԱՅԼ ՁԵՌԱԳԻՐՔ Ի ՆՈՅՆ ՎԱՆՍ

1. Պատմութիւն Նիկիոյ ժողովոյն ։
1. Պատմութիւն Երգերգոցի ։
1. Կիւրակէից, Յակոբ Պատրիարքի ։
2. Մեկնութիւն պատարագի, Լամբրոնացոյն ։
1. » կաթողիկեայց ։
1. Կիւրակէից Սիմէօնի ։
2. Մեկնութիւն Եսայեայ. մինն, ոսկեզօծ և նոր ։
1. Հարանց վարք ։
1. Մեկնութիւն եօթն խորհրդոց ։
1. » երկոտասան մարգարէից ։
1. Ճառ Ներքողեան, Գետեղերեանց ։
1. Վեցօրէից ։
1. Բանք Դաւթի անյաղթի, Վարդանայ և Մագիստրոսի ։
1. Կուլիէլմոսի Աստուածաբանի, Մարգարէութիւն Եսայեայ ։
1. Մեկնութիւն Արարածոց, և այլ մեկնութիւնք բովանդակեալ ։
1. Լուծմունք Տաթեւացւոյն ։
1. Քարոզ գիրք անծանօթ ։
1. Աստուածաբանութիւն Սկօթօսի ։
2. Մեկնութիւն Յոբայ, Տաթեւացւոյ. և այլ բանք ։
1. Մեկնութիւն յայտնութեան ; ընդարձակ ։
1. Աստուածաբանութիւն Թովմայի, առաջին հատոր ։

1. Քարոզ գիրք, 'ի վերայ Ամենասուրբ Երրորդութեան:
1. Տետրակ կտակաց և նամակաց Երեմիայի:
1. Թուղթ Խորենացւոյ առ Սահակ Բագրատունի:
1. Քարոզ ապաշխարութեան:
1. Սահմանաց, Առաքել վարդապետի:
1. Մեկնութիւն Մատթէի 'ի Խորենացւոյ (Այսպէս էր գրուած):
1. Սաղմոս, տառանաւորի փոխուած:
1. Քարոզ Յովհաննու, և այլ բանք:
1. Պատմութիւն Ոսկեբերանի:
1. Կտակ Յոհաննու արքեպիսկոպոսի:
1. Քարոզք Տաթեւացւոյն:
1. Մեկնութիւն և քարոզք, անծանօթ:
1. Կերակուր քահանայից:
1. Յիսուս Որդի:
2. Կանոնագիրք:
1. Մեկնութիւն յայտնութեան, և սահմանաց:
1. Քարոզ յայտնութեան և մկրտութեան:
1. » Տաթեւացւոյ և Յակոբայ Ղրիմեցւոյ, և այլք:
1. Բանք Եփրեմի:
1. Շարական:
1. Գանձարան:
1. Հարցմանց Տաթեւացւոյ:
1. Աւետարան:
1. Մեկնութիւն տօմարի:
1. Նամակագրութիւնք Մագիստրոսի:

1. Տաղարան։
2. Լուծմունք Յօբայ։
1. Դաւթի հարցմանց ընդ երկաբնական։
1. Սաղմոս։
1. Ժողովածու քարոզք։
1. Ճաշոց։
1. Ժամագիրք փոքր։
1. Խրատ քահանայից։
1. Ցայսմաւուրք հին։
1. Ճառք Եւագրի խրատականք։
1. Պատճառաբանութիւն Սուրբ Գրոց։
1. Ներածութիւն Պորփիւրի, Սահմանաց Դաւթի, Ստորագրութիւն Արիստոտէլի, Պէրի Արմէնիաս, Թուղթ Արիստոտէլի առ Աղէքսանդր, Համեմատութիւն հին կտակարանաց ընդ նորոյս, Մեկնութիւն Սահմանաց Առաքել վարդապետի, «Ամենայն չար տանջելի» եւ. որ են միակազմ գիրք մի։
1. Անալօճիա, կամ Բանք ոսկիականք ընտիր քարոզ։
1. Մխիթար Գօշի և Կոմիտաս հայրապետի բանք։
1. Դիոնէսիոսի Աստուածաբանութիւն 'ի վերայ հրեշտակաց, և Ստեփաննոսի Խլավացւոյ բանք։

## ԱՌԱՋՆՈՐԴ ՊԵՏՐՈՍ ՀԱՅՐ ՍՈՒՐԲԻ ՍԵՊՀԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐՔ

1. Կիւրակէից, Աղամալեան։
1. Քարոզ գիրք, Կարապետ Պատրիարքի։

1․ Մեկնութիւն տօնակացն Աւետարանի ։

1․ Ընտիր ճառ և Մեկնութիւն, անծանօթ հեղինակի ։

1․ Բանք իմաստասիրաց, և Համեմատութիւն Հնոց և Նորոց ։

1․ Զորից վերջնոց ։

1․ Դուրրան Մահմէտի ։

1․ Կտակ խաչելութեան ։

1․ Բարոյական և քանաստեղծական զուարճալի մատուռ ։

1․ Մեկնութիւն «ի սկզբանէ էր բանն» ին ։

1․ Վեցօրէից ։

1․ Շարական, ընտիր մագաղաթեայ ։

1․ Քարոզ գիրք, աշխարհաբառ ։

2․ Բանք, այլ և այլ իմաստասիրաց ։

1․ Մեկնութիւն Ծննդոց, անկազմ ։

1․ Քարոզ գիրք, անծանօթ ։

1․ Աստուածանմանութիւն, անկազմ ։

Եւ այլ և այլ տետրակք ։

## Ս․ ՆՇԱՆԻ ՅՈՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՔՈՎ ՁԵՌԱԳԻՐՔ

1․ Դատաստանագիրք, Կիլիկեցւոց օրէնք, «ի Լամբրոնացւոյն» ։

1․ Աւետարան մագաղաթ, խիստ փոքրագիր ։

———

# ՏԻՒՐԻԿ ՔԱՂԱՔ

Յունիս 28 ։ Մեկնեցանք դէպի Տիւրիկ ։ ժամէ մը հասանք Բրդնիկ գիւղը, ինչպէս կրօնքով զուտ կաթոլիկ են գեղիս Հայք, նոյնպէս և իրենց զգեստուց տարազով կը զանազանին միւս գեղերու Հայերէն · մանաւանդ կանանց հագուստներ, խոշոր, թանձր և տձեւ, բայց կարծես հնութիւն մը կը ցուցնեն ։ Արք կարիճ են · մէկ մասն հողագործ և մէկ մասն ջորեպան են ։ ժամ մը երթը, և ահա կը հասնինք Ալիս · փոքր և մեծ լեռներ կան մեր չրջապատը, և անձուկ հովիտներ ։ Գետակներ սփռուած են դաշտին երեսը · սայլերը ճռնչելով կ'անցնին կը դառնան, գոմէշներ կը լողան, և կովք ու եզը բռնած են Ալիսի ջրեզրը ։ Քարուկիր կամուրջէ մը կ'անցնինք ։ Մօտ է Բին—գէօլ գետը ։ Եւ ահա կը տարածի մեր առջեւ նոր հովիտ մը, որոյ մէջ տեղը կը տեսնուի Կոմտուն գեղ · մեր աջ կողմն է Գամիրա գեղ՝ կապած քարի մը ։ Մեր ջորեպան Գզլպաշ Խըրտըրն կը պատմէ թէ, Գամիրայի վերն եղած լերան բարձր գագաթը ժամանակով գանձ կայ պահուած եղեր, որոյ նշանն է եղեր «Երբ Ալիսի ջուրը հոս հասնի, գանձս յայտնուի» ։ — Անհնարին բան ։ Բայց նախորդ մը՝ իր արեխները չորցած լինելով Ալիսի մէջ կակղցընելու առնելը, նախիրը բարձրացեր

այս լեռը, Նախորորդը չոր տրեխները ջրով լի առեր վազեր հոն, և ջուրը գետին թափելով, գանձը դուրս ելեր» . . . : Նոյն կողմըն է խորսան կամ խորասան գեղ, որոյ դիրքն և առջև տարածեալ նորաձև հովիտըն ու հասկալից արտերը մեծ գեղեցկութիւն կ'ընծայեն : Անկէ կը բարձրանանք Հրեշտակապետի լեռը. վանահայր Մովսէս Վ. ճերմակ աշխոյժ ձի մը հեծած, զէնքերը վրան առած, վեղարն 'ի գլուխ ալէծածան՝ սրարշաւ կու գայ մեզ դիմաւորելու : Արդէն երեկոյ է, հոս օթեցինք գիշեր մը : Ո՜վ գիշեր անմոռանալի : Վանքի բարձունքէն լուսնակի լուսով և անուշ զովագին օդով կը դիտէինք Սեւասառ հովիտը : Մեր աչքի առջևն է խանձառ, Պետրոսի, և այլ գեղորայք Հայոց. Ասիս արծաթափայլ կ'ընթանայ, Ջարայի լեռներ, Հաւէշ լեռն անտառոտ և այլ շղթայք, որ կը շրջապատեն այս հովիտը զանազան մասամբ և զանազան անուամբ : Պակասութիւնն այն է միայն, որ գեղերը ծառատունկ չունին : Աղտք կամ Դուզասար գեղ վանքին մօտն է, և վանքին ստորոտները լի են ազի աղբիւրներով ու լճակներով : Նստած ենք քանի մը հինաւուրց ուռենեաց ներքև, որոց կանանչ ոստոց մէջէն և քովերը գտնուած մացառներէն զանազան թռչնոց դայլայլիկներ երջանկութիւն կ'ազդեն 'ի մեզ : Հոս եկաւ հասաւ մեզ կառավարութեան ոստիկան Մահմատ աղան,

խոյժ ծերունին Անտօն քով նստեր կը հարցնէ և կը պատասխանէ, կը տխրի և կը զուարթանայ: Ձեռներն 'ի վեր կ'ամբառնայ երկնից բողոք կը բառնայ, և կը դառնայ գոհանայ . . . իւր որդիքներէն երեքը, Նիւբեղ, Արթին, և փոքրիկն Նշան քովը կը խաղան: Ահա մեր երկու ժամ այս տեղ:

Ելանք շարունակել մեր ուղին, դարձեալ լերինք, խոտ, հունձ, եւ: Կիւռլամիկ բարձր և ձիւնոտ լեռան մօտն ենք. դէպ 'ի Ղարա—բէլ կ'ընթանանք, որ նոյնպէս բարձր է և ձիւնոտ: Այս լեռնամէջներն և բարձունքները խիտ խիտ գեղեր և վրաններ կան Գզլպաշներու: Չէրքէզներ սպառեցան: Մահմատ աղան բանաստեղծական խօսք մը կ'ընէ, թէ «Կեսարիոյ Էրճիաս լեռը կարի բարձըր ըլլալով, ըսած է, Գուռլամիկն իմ գօտին է, և Ղարա—բէլն իմ բլուրներ»: Կը յառաջանանք, դարձեալ կրային լերինք և բլուրք, փոսն, որ Սեւաստէն կը շարունակէ: Ել և էջք շատ: Ղարաբէլէն կ'իջնանք, որ կ'անջրպետէ Սեւաստու և Տիւրիկի սահմանները: Տիւրիկի երեսը անտառոտ է: Ժամ 11 ին իջանք խան մը, ամայի և աւերակ, բայց հարկ էր հոն իջեւանել. բարեբաղդաբար տէրը հոն գտանք, որ եկած էր մեղուներ նայելու, ծածկոյթի մը տակ պատսպարեց զմեզ: Տեղի զուարճալի, բայց լուերով, մժղուկներով, և երկիւղով լի: Հօս տեսանք վիրաւոր Արաբացի Դավրիշ մը:

էր շան հետ պառկած ջրին եզրը, անօթութենէն լեզուն բռնուած, կօշիկն և շապիկն հազար տեղով ծակ ու պատառուած, Հազիւ կը հեկեկէր «Սըֆա՜ն Ալլա՜հ» ․ իբրև վըկայական իրեն տրուած թուղթ մը կը ցուցնէր և կը պաղատէր, որոյ ոչ գիր և ոչ լեզուն կը հասկընայինք, բայց իւր վիճակին արգահատեցանք ։ Իւր այս վիճակը կը ներկայացընէր մեր Ասիոյ բնակիչները․ նա՝ անոնց կատարեալ անձնաւորութիւնն էր․ բայց իբրև Տաճիկ, իւր տէգն ու դաշոյնը վրան կը կրէր դեռ այդ վիճակին մէջ ։

Յունիս 28 ։ Գիշերով ժամը 9ին հեծանք, 12 ժամ քշել պէտք էր մինչև Տիւրիկ, որոշած էի որ անպատճառ նոյն օրը Տիւրիկ մտնէինք ։ Ո՜վ ճանապարհներ, մէյ մ'ալ ձեր երեսը չտեսնամ ։ Ել և էջ, քար ու կըռէճ, անջուր և անմարդ, հանդիպողը մեզ կ'ըսէ․ «Զգոյշ գնացէք, ինչպէս չէք վախնար․․․ ։» Հինգ ժամէն կը հասնինք Հայոց Սընջան գեղին մօտերը, ձորէ մը անցնելով, ուր՝ ջուր, ծառ, ջաղացք, վարունկի արտեր, հետեւաբար և մարդեր կը տեսնանք․ Ջրոյ մը եզերքը իջանք հանգչելու 2 ժամ ։ Ելանք շարունակել մեր ուղին․ չորս կողմերնիս անբեր հողեր են ճերմակ, կիր, տեղ տեղ խոտ կը քաղեն աղքատօրէն, ցարեն ափ ափ ցանուած ։ Խենդի մէկն ալ նոր հերկ կ'ընէ, ու հեռուէն առ մեզ կ'աղաղակէ «Ալլա՜հ էլէ՜ն գո՛ն ; — հօ, հօ, եզներ

կը քշէ . Գոնա դէբ մ'ըլ Նի-Նի՛-ն , հօ , հօ , հօ» : Հազիւ քանի մը ուղեւորներ տեսանք , որ սպառազէն Թուրքեր էին . քիչ մը ետքը ալ Աէնջանցի Հայ մը , որ Պօլսէն կու գար :

Զըմըսկու—թէլ նշանաւոր լեռնադաշտ մ'է . վտանգներով լի . զառ 'ի վայր խիստ խոր ձոր մը իջանք , ուր ձիու մը անցք հազիւ կայ . երկու կողմն երկնաբերձ , փշրեալ կրաքարեր , որ թափեր են և կը թափին մեր առջեւն ու ետեւը , ճամբան կը գոցեն և զմեզ կը սարսափեցընեն . կրնայ այս ձորը անցորդաց գերեզման ըսուիլ . 20 վայրկեան տեւեց մինչև դուրս ելանք : Ձորաբերան երկու փոքրիկ գեղեր կան . բաւական լայնցած հորիզոնը . հոս աստի անտի առուներ գալով գետ մը կը կազմեն , որք օժանդակելով մեծ ճիւղի մը՝ կ'երթան Տիւրիկ և անտի անցնելով կը խառնուին յԵփրատ :

Քարաշէն կամուրջէ մը կ'անցնինք , առուենի մը կը տեսնենք և կանանչ . գլգլացող ջրոց ձայնը կ'առնունք . վազեցինք 'ի հով . սաստիկ զառ 'ի կող է . արեւը կիզիչ էր . աղբերաց ակունքները ծոտանք . 12 բաժակ պաղ ջուրէն խմեցի , և դեռ պապակս չանցաւ : Դարձեալ հաց և սոխ , բայց ո՛րքան համով : Գետը մեր ոտքի տակէն կը հոսի , և ձկունք կայտառելով զմեզ կը դրդուեն . ժամ մը հանգչեցանք , և ելանք . ամենէն չար ելն է մեր ուղին , նեղ կապանանհնարին է ձի նստիլ . արդէն այս աւուր

ճանապարհը դրեթէ ամբողջ քալեր ենք։ Մարդ կը զարհուրի վար նայելու. անդունդ, գետ, սպանողաց և աւազակաց վայր, ժայռ, 1 1/2 ժամէն աւելի տեւեց։ Ե՛լ հա ե՛լ, և ապա նոյնքան էջ, մոլոր քարերու մէջ։ Ահա կ'երեւնայ Տիւրիկ։ Քանի՛ ցանկալի կ'երեւիս հեռուէն ո՛ քաղաք։ Ժամը 10 1/2 էր իջեւանեցանք Առաջնորդարանը։

Շրջանակաձեւ բարձր լեռներով պարսպեալ հովտի մը մէկ կողմն շինուած է Տիւրիկ, զարդարեալ ընդարձակ ծառաստաններով, ուր առատ և ընտիր միրգեր կ'ընծայեն. ջրոց առատութիւն ունի, ըստ ամենայնի վայելուչ և զուարճալի քաղաք մ'է, եթէ անմաքրութիւններ չունենայ։ Քաղաքի դիրքը երկուքի բաժնուած է ձորակով մը, ուստի ջուր մը կ'անցնի. մէկ կողմըն հին բերդն է, բարձր լեռան թեւին վրայ, որոյ պարիսպները քանդուած՝ բայց դեռ բուրգեր ողջ կը մնան ամրաշէն. բերդի վրան ու ստորոտը տուներ կան շինուած. այս մասն կ'անուանուի Բերդի տակ, իսկ միւս կողմն աւելի բազմաբնակ է թէ Հայոց և թէ Թուրքաց տներով, այս բաժինի մէջն են ծառաստանները, շուկայն, և այլ հասարակաց տեղեր ու հրապարակներ։ Զայնը ալէ գետակը՝ որ մեզ հետ կու գար, կը հասի քաղաքի կողէն յարեւելս, գետոյն միւս կողմն բուն բերդին դիմաց հին ամրոց մը կայ, զոր Հայք Աստուածածնի բերդ կ'ան-

տանեն, ուր ուխտատեղի մը կայ Աստուածածնի անուամբ։ Քարայր մը կայ հոն, կ[illegible] սէքին, մարմար քարերէ, որոյ տանիքէն սառնորակ ջրեր կաթելով աւազան մը կը կազմեն, կարի զով է, ուր ամառն կ՚երթան զատն ուտելու. Խորունկ նեղուցի մը մէ[illegible] որ ըստ ոմանց մինչև դետը կ՚իջնէ. ըստ ոմանց՝ գետոյն տակէն միւս եզերքը կը հանէ։ Տիւրիկի ոչ միայն քաղաքի մօտերը, այլ ամբողջ գաւառն ամուր լեռներ, ժայռեր, անձաւներ, քարայրներ և անհնարին կիրճեր, որք կը յիշեցընեն մեզ անցեալ ժամանակի Հայոց ազատութեան ապաստանարաներ լինել։ Տիւրիկ իբրև պորտ մի է ինկած Տորոսի և Անտիտորոսի լերանց մէջ, մօտաւոր յարաբերութիւն ունի Կամախու, Բաբերդի, Ակնայ, Արաբկիրու, Խարբերդայ, Մալաթիոյ, Սըսոյ և Մարաշու, Սեբաստիոյ և Շ. Գարահիսարի հետ, կամ՝ այսպէս ըսելով, Մեծ Հայոց, Փոքր Հայոց և Կիլիկիոյ հետ։ Տիւրիկ՝ Սսոյ աթոռոյն թեմն է մինչև այսօր, բայց իւր Առաջնորդն Պօլիսէն կ՚անուանուի։

Ազգային վիճակը կարի անմխիթար էր, մութ գաղափարներով տոգորեալ, և կուսակցութեան բաժանեալ։ Առաջնորդն ուզող և չուզող, բայց իրօք անձնական էր վէճը։ Առաջնորդն՝ Թէոդորոս վ. Պատրիարքարանէն դադրեցուցած՝ քաշուեր էր վանքը. բայց անոր տեղ ուրիշ մէկը գոնէ Տէ-

ղապահ չնշանակելով, մերթ իբրև առաջնորդ-
զինքն ընդունողներուն գործքեր կը նայէր, չուզողներունը՝ չէր։ Քաղաքական ժողով անուանով մարմին մը կար ազգը ներկայացնող, բաւական գործունեայ անձինք էին. բայց իրենց ազդեցութիւն կորած էին հակառակող և բողոքող ազգայիններ, ուստի թէ՛ քաղաքն և թէ՛ գեղերը խանգարման և բարձի թողի վիճակի մէջ կը գտնուէր։ Շատ փորձեր ըրի միացնելու, ժամանակն և ազգի պէտքերը յիշեցընելով իրենց, քարոզելով և խօսելով. Թէպէտ համբուրեցին գիրքը և Պահպանիչ խնդրեցին, բայց կ'երևէր որ սրտով անհամբոյր էին։

Առաջնորդն եթէ Աւետարանը հասկընար, և կրթութիւն ու գիտութիւն ունեցած լինէր, կարող էր միաբանել զիրենք. բայց ինքն ալ պատճառներ տուած էր, ինչպէս նաև Պատրիարքարանն։

Քաղաքիս մէջ երկու եկեղեցի կան Հայոց, Ս. Աստուածածին և Ս. Երրորդութիւն՝ գեղեցկաշէն, իրարու մերձ, Բերդի տակ ըսուած Թաղին մէջ շինուած, այն ինչ Հայոց ամենամեծ մասն քաղաքի միւս մասին մէջ կը բնակին, բաւական հեռու։

Քաղաքիս մէջ չորս վարժարան կար Հայոց, գծուծ շէնքերով և ողորմելի վիճակով մը. վարի Թաղի վարժարանը բոլորովին փակ էր. լուսաւորութիւն և դաստիարակութիւն զիրենք ճանչցողներ և ընդունողներ չունէին

հոս . հազիւ կը բարեհաճէին խօսել և լսել այս կենաց խնդրոյն վրայ ։ Ընիկ Ցիւրիկցի Ղաքամանեան արուեստաւորք ժամանակաւ Պօլսոյ մէջ ընկերութիւն կազմած , կալուածներ գնած լինելով, անոնց արդիւնքէն տարեկան 4000 ղրշ. կու գայ եղեր վարժարանաց . քանի մը տարիէ 'ի վեր դադրած էր սոյն գումարն , ծնողք թոշակ չէին վճարեր՝ ձրիին վարժած լինելով . միայն Ս. Աստուածածին եկեղեցին 2000 ղրշ. կը վճարէր իւր վարժարանին , և քանի մը ծնողք խիստ չնչին բան մը . մեծ ամօթ էր այս Տիւրիկցի ազգայնոց, որոց մէջ աղքատ չկար , բայց զգացմունք արթնցնելու համար քարոզող և գործող ալ չկար ։ Թիւ ուսանող մանկանց իբր 200 ։ Տարեկան ծախք՝ 7500 ղրշ. էր կ'ըսէին ։

Աղքատախնամ ընկերութիւն մը կար հնուց կազմեալ, և Հայրենասիրական ընկերութիւն՝ որ անգործ կեցած էր ։

Հայէն և Թուրքէն զատ ուրիշ ազգ բընակիչ չունի քաղաքս . կալուածներ , վաճառականութիւն և արուեստները մեծաւ մասամբ Թրքաց ձեռքն է . Հայոց հարուստները վարձակալ են , և մեծ մասն ալ փերեզակ , որ ապրանքներ կը տանին գաւառները ծախելու , և շատերն պանդխտութեամբ կը շահին ։ Բողոքական Հայք շատ սիրով էին մեր ազգայնոց հետ . Թուրք հասարակութիւնըն ալ աղէկ էր , բայց մօլլաներ և աղաները բարբարոս և մոլեռանդ ։

Հեռագիր չկար հոս, և ճանապարհները լեռնային, դժուարին ու խանգարեալ։ Անուանի լեռներն են՝ Գէլի դաղ, Աղ դաղ, Ջընըսկու—բէլ, Գումուրճայի—բէլ, Նամա դաղի, Գէմիրլու, Սարը չիչէկ, Սուսուզ—բէլ, Կէօլ տաղի, ևն։

Տիւրիկ իրեն գեղերով միասին ծանր հարստահարութիւններ կը կրէ Գըուըջանցի քիւրդ Աշիրաթէն՝ որոց գլխաւորն է Գէլի Ալըօն. Գզըլպաշ Խօշկերցի Աշիրաթէն՝ որոց գլխաւորն է Ալիշան պէյ. սա իբրև հրամանատար համարուած է Սեւաստի և Տիւրիկի և անոնց սահմանաց մերձ եղած բոլոր աւազակաց ու սպանողաց, աղէկ ալ քաղաքագիտութիւն ունի. Քէլէճոր Աշիրաթէն՝ որոց նշանաւորներն են Զօլախ Համոյի Մուստաֆան և եղբարք. Ղարա—Բէլու Գզլպաշ աղաներէն, ևն։ Աւելորդ է ըսել թէ քաղաքի Թուրք աղաներէն ալ անոնց նմաններ և պաշտպաններ կան։

Տիւրիկու քաղ. կառավար. գայմագամութիւն է՝ Սեւաստու վիլայէթութեան տակ։ Վիճակագրական թիւերը Պատրիարքարանին ուղղած լինելով; օրինակները առձեռն չունիմ, ուստի այսուհետեւ բնակչաց թիւերը կը պակսին գործոյս մէջէն։ Պատրիարքարանն, արդէն կ'իմանամք թէ, որոշած է 'ի պաշտօնէ հրատարակել թէ' թիւերը և թէ' կարեւոր տեղեկագրութիւնները։

Հայարնակ գիւղօրայք ․

ԽՈՒՌՆԱՎՈՒԼ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Լուսաւորիչ ։ Վարժարան 1․ Լուսաւորչեան ։ Ուսանող 45 մանկունք ։

ՄԸՐՈՒԱՆԱՑ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Աստուածածին ։

ՍԻՆՁԱՆ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Գէորգ ։

ՕԴՈՒՌ » » 1․ Ս․ Թովմաս Առաքեալ ։ Վարժարան 1․ Մամիկոնեան ։ Ուսանող 50 մանկունք ։

ԱՇՈՒՇԷՆ գեղ․ Եկեղեցի 1․ Մօգուց Թագաւոր ։ Վարժարան 1․ Սմբատեան ։ Ուսանող 67 մանկունք ։

ԲԱՐՂԱՄ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Աստուածածին ։

Ս․ ՅԱԿՈԲ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Յակոբ վանք ։

ԿԻՐԷՍԻՆ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Երրորդութիւն ։ Վարժարան 1․ Ուսանող 40 մանկունք ։

ՇԻԿԻՄ գեղ․

ԱՐՄՈՒԹԱՂ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Գէորգ ։

ՓԱԼԱՆԿԱՑ » » » Ս․ Գէորգ ։

ԳԱՍՄԱՆ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Աստուածածին ։ Վարժարան 1․ Ս․ Մեսրոպեան ։ Ուսանող 48 մանկունք ։

ՋԻՄԱՐԱ գեղ․ Եկեղեցի 1․ Ս․ Երրորդութիւն ։ Վարժարան 1․ Ս․ Մեսրոպեան ։ Ուսանող 60 մանկունք ։

Աւերակ եկեղեցիք, վանք և ուխտատեղիք:

Ս. Յակոբայ վանք, որ գեղերու կարգին յիշեցինք, 12 տունի չափ Հայք տիրեր են վանքի հողոյն, բնակութիւն հաստատած են հոն, արտերը իրենց վրայ բաժներ և ճախարեր են. քանի մը արտ ալ Թրքաց ծախեր են. վանքի պղնձեղէններն և այլ անօթները իւրացուցեր են. դեռ ուխտաւորներ կը յաճախեն Ս. Տաճարին, որոց եկամուտն ալ գեղացւոց իրաւունք եղած է:

Օձուա գեղին մօտ Փայլէվանք անուն վանքի մը աւերակ կայ: Կիւրէսին գեղին մօտ Ս. Թորոս: Գասման գեղին մօտ Բագրատուն անուն աւեր եկեղեցի մը կայ հին գերեզմանատունով մը: Արակայ՝ Թրքաց գեղին մօտ Ս. Գրիգոր Նարեկացւոյ անուամբ վանք մը, 4 ժամ հեռի Տիւրիկէն, ուր երբեմն Սրբոյն Նշխարք ամփոփեցան Սենեքերիմ արքայի Վասպուրականէն գաղթելուն, ողջ մատուռ մը կայ և քանի մը հին սենեակներ, բարձր լեռան մը վրայ: Տիւրիկ քաղաքի մէջ՝ Ս. Աստուածամայր, Ս. Գէորգ, Խնդրակատար և Ս. Սարգիս եկեղեցեաց աւերակներ կան. վերջնոյս տեղը նախ պարտէզ և ապա արտ ըրած է քաղաքացի Թուրք մը, եւն, եւն:

---

## ՑԻՐԻԿՈՒ Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ՎԱՆՔ

Քաղաքէն 2 1/2 ժամ հեռի, կիրճերով և լեռներով բաժանեալ, նեղ տեղ մը ցած բլրակի մը վրայ կառուցեալ է վանքս, որ և կը գրուի «Կիւրղի Անապատ». և Խուռնավուլ գիւղին մօտ լինելով՝ «Խուռնավուլայ վանք» ևս ըսուած է: Թերակղզւոյ ձեւ ունի վանքի բլուրն, երեք կողմէն հեղեղատներով, անտառներով ու փոսերով պատեալ. խաղաղասէր և աշխարհուրաց կրօնաւորաց կարի յարմարագոյն վայր, սակայն պակաս չեն արջեր, գայլեր, և առանցմէ աւելի՝ աւազակներ: Զէնքով, շներով և հաց տալով կը պահպանուի վանքը: Երբեմն բաւական թուով կրօնաւորներ ունեցեր է, ուր շատ գրքեր գաղափարուեր են, որ միակ և սուրբ աշխատութիւն էր վանականաց համար. իսկ այժմ ոչ միաբան, ոչ աղօթող և ոչ ժամասաց: Առաջնորդ Թէոդորոս Վ. որ մօրով և մօրքով թանձր մէկն է, միայնակ կը վարէ և կը վայելէ այս վանքը: Շէնքերը անշուք են, տաճարը խիստ փոքր, ցած և անլոյս. միայն Առաջնորդարանը փառաւոր է. լուսաւոր և հովասուն, որ կը նայի գետակին և կարգով տնկուած ծառերուն վրայ, ուստի կ'երեւի նաև Խուռնավուլայ ճանապարհըն: Թթենեաց և այլ մրգաբերաց տունկերով դրախտ մը ունի: Եկամուտն է գեղե-

րու պտղիներ, արտերու բերքեր և ուխտաւորաց արդիւնք։ Ս. Գրիգոր Լուսաւորչի Նշխարաց գլխաւոր տօնին վանքը գնացինք, ուր Թէմացի ուխտաւորաց բազմութիւն եկած էր. և իրենց ուխտն էր՝ ուտել, խըմել, խաղ կանչել, պարել, մատաղ եփել, ժամ գալ, ժամոց տալ, ևն։ Նոյն օր պատարագեց Նորին Սրբութիւն. և այս իրմէն պէտք եղած տեղեկութիւններ առի, ու քանի մը ժողովականաց հետ մեկնեցայ քաղաքը։ Շատ ինքզինք կը բարեբանէր Երանելին, և հարի խրոխտ էր Ողորմելին։

## ՁԵՌԱԳԻՐՔ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՏԻՒՐԻԿԻ ՄԷՋ

1. Աւետարան Ս. Լուսաւորչի վանքը։

« Արդ ես Նուաստ Հոյս Գրիգոր, սրբեղայս ծոյլս և անարժանս 'ի կրաւնաւորս, և շնորհիւն Աստուծոյ և ողորմութեամբ Նորին գրեցի զսուրբ և զկենսունակ Աւետարանըս 'ի պայծառութիւն մանկանց Նորին։ Գըրեցաւ սա 'ի թուականութեանս Հայոց ՉԻԹ. 'ի յԱռաջնորդութեան Պաւղոս եպիսկոպոսի, 'ի սուրբ և 'ի գերահռչակ անապատիս որ Փրկչի վանք կոչի, 'ի դուռս սուրբ Փրկչիս և սուրբ Երևմանս և Շմաւոնեայ, և աստուածընկալ սուրբ Նշանիս որ աստ կայ։ Արդ աղաչեմ զձեզ մանկունք Նորոյ սիոնի որք հանդիպիք այս սուրբ և աւետաւորաց Աւետարանիս, կարդայք, աւգտիք և կամ աւրինակէք, յիշեցէք սրտի մտաւք 'ի մաքրափայլ աղաւթս ձեր զիծուն և զխոշոր զըր-

չակս զԳրիգոր արեղաս և զծնաւղսն զԳրի-
գոր Ներկրար և զմայրն իմ զՇուշան խա-
թուն և զմղտեսի Մելիք մայրն իմ որ բա-
ցում աշխատութեամբ սնոյց զիս . . . . :

« Գրի յիշատակ . . . և եղբարցն իմ Ռըստագիսին, Ումէտին, Քուլաւշին, Յովանիսին և եղբաւր որդոյ Մուղամշին և ամենայն արեան մերձաւորաց : Ի դուռս սուրբ Աստուածածնի, սուրբ Լուսաւորչի, և սուրբ Յովհաննէս Աւետարանչի, 'ի յանապատս որ Խուռնավիլու վանք կոչի, և քվերն իմոյ Ազուծ խաթունին : Արդ աղաչեմ զամենեեան ով մանկունք նոր սիոնի որք ընթեռնուք զաստուածապատում Աւետարանս 'ի սուրբ խորհուրդն, և յուէք, որտի մնաւք մեղաց թողութիւն հայցէք 'ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, և զորս յիշեցաքն, նոցա, և եղիցի : Եւ որ զհետ մեր սպասաւոր սուրբ ուխտիս, կամ Հարպետ, կամ Եպիսկոպոս, կամ վարդապետ, կամ Առեղայ, կամ Երէց, կամ Աշխարհական, և կամ յիմ ազգէն եղբայր, և կամ եղբաւր որդի, մի' իշխեսցէ զսա ծախել կամ գրաւկան դնել և հանել զսա 'ի վանիցս : Եւ որք առնեն զայս ոչ առնուն աւրհնութիւն 'ի յայս սըրբոցս . և ելցեն անմասն յարքայութենէն . և որ յիշատակարան քերէ կամ թուղթ կտրէ և կամ գիր գրէ 'ի լուսանցն, մասն զՅուդայի առցէ և զխաչահանացն . զԿորխայ և ըզԴադանայ և զԿայէնի պատիժն կրէ :

« Այլ և վասն նեղութեան ժամանակիս որ գայ և հասանէ չարին, հանեն և թագուցանեն 'ի յամրոցնին, մինչև անցանէ բարկութիւնն . այլ յաւրինակ մի' խնայեսցէ ոք : Իսկ խնամով պահողքն աւրհնին Աստուծոյ և յամենայն սրբոց : Երբոր խաղա-

ղութիւն լինի՝ շուտով 'ի յետ բերեն 'ի սուրբ Ուխտս, 'ի Խուռնավիլու վանքս որ Կիրեղի ասի ։

«Այլ և աղաչեմ զդասս սրբազանից զի յամենայն ամի երկու անգամ զյիշատակաբանս կարդայք, մէկ տաւնին և մին Զատկին . . . ։

«Եւ տէր մեր Յիսուս Քրիստոս որ առատըն է 'ի տուրս բարեաց, ձեզ յիշողացդ և մեզ յիշելոցս առ հասարակ ողորմեսցի և նմա փառք և պատիւ յաւիտեանս ամէն ։

«Ի Թուիս ՋԽԲ. Աստուած ողորմի Շահ—Մելիքին հոգոյն, որ երետ խալկին մի կէս մաթնոց, յիշատակ 'ի վանքս Կերեղի, ձեռամբ Մանուէլ սարկաւագին ։ Ո՛ր Առաջնորդ որ ծախէ և կամ հանէ 'ի վանացս նզովեալ եղիցի, և զմասն զՅուդայի և զխաչհանողացն առցէ ։

## ՏԻՎՐԻԿՈՒ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՁԵՌԱԳԻՐՆԵՐ

1. Ժամագիրք. Ս. Աստուածածնի եկեղեցին ։

Աւրհնեալ է Աստուած. աւարտեցաւ Ատենի գիրքս ձեռամբ Աւետիս դպրիս, 'ի քաղաքս յԱրափիր. Թվ. ՌՃԺԶ.

Ով եղբայրք անմեղադիր լերուք սղալանացս զի կար մեր այս է. կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք զԱւետիս գրիչս և դուք յիշեալ լիջիք Քրիստոսէ ։ Հայր" ։

«Յիշատակ է Ատենի գիրքս Եղեգնձորցի տէր Խորայէլ հեզահոգի քահանային, և եղբաւրն Նորին Անանիային և մեծ հաւրն Ստեփաննոս քահանային, և կողակցին, և իմ

հաւրս Յոհաննէսին, և կողակցին. գնեցին զգիրքս. և եդին յիշատակ 'ի գիւղն Եղեգընձոր 'ի դուռն սուրբ Սարգիս եկեղեցին. վարձն 'ի Քրիստոսէ առնուն»։

1. Ա—էփորան.

«Արդ գրեցաւ եդեմաբուխ քառավտակ աղբերս ոռոգանելով քառանկիւն և քառագիր Աւետարանաւս զոլորտս տիեզերաց, ըստ առաջնում ասացելոյ մարգարէին Հոգւոյն Աստուծոյ։

«Եւ արդ աւարտեցաւ Աւետարանս աստուածաբան, Մատթէոսի, Մարկոսի, Ղուկասու և Յոհաննու. 'ի թվաբերութեանս յոբելեան տումարիս, ՉԿԶ. 'ի փառս և 'ի պայծառութիւն սորա եկեղեցւոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, 'ի դաշտիս Դարանու 'ի գեւղս Խոռինանց, ձեռամբ Վարդանայ աշխարհի իրիցու, յիշատակ ինձ և իմոցն, հաւր իմոյ Գրիգոր քահանայի, և մաւր իմոյ Աղբրացի; և եղբարց իմոց Մըկրտչի, և Աշխէն տիկնոջ։

«Դարձեալ աղաչեմք զամենեսեան որք հանապազ խաչակից լեալ էք խաչելոյն Քրիստոսի, և պտղաբերեալք արդասաւորութեամբ պտղաւք 'ի կամս Աստուծոյ; յիշել զվարդապետն մեր զՅակոբ, Կարապետ, զՍտեփաննոս և զՅովհաննէս, և զծնաւղս իւրեանց, և զհարազատ եղբարս նոցա։ Եւ որք կամակից եղեն սմայ ըստ իւրաքանչիւր կարի, Քրիստոս Աստուած փառաւորեալ հանգուսցէ զհոգիս նոցա 'ի խորանս սիրողաց լուսոց ամէն»։

1· Աւետարան .

«Այլ և զիս զապիկարս ըթանձրացեալ մեղօք, զՎարդան գրիչ յիշել վերստին 'ի հանապազ մշտահայց պաղատանս ձեր առաջի Աստուծոյ:

«Այլ և գրեցաք զսա 'ի յիշատակ մեզ և մերոցն, և 'ի ժառանգ հարազատ զաւակաց մերոց, Յովանիսի, Ղազարոսի, և Թադէոսի, զորս տէր Աստուած վայելել տացէ բազում ժամանակս աստի կենացս, և յետ աստիեացս յիշատակ իւրեանցն և ծնաւղաց իւրեանց:

«Եւ է սա Թադէոսի զորս տէր Աստուած վայելել տացէ մինչև 'ի խորին ծերութիւնն ամէն: Ես Մարթա և Շնորհւոր տիկին որ ետուք զաւետարանս գրել 'ի խալալ արդեանց մերոց, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, մեղացն մերոց թողութիւն խնդրեցէք 'ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ առատն է տուրս, և զձերն թողցէ գյիշողացդ 'ի միւսանգամ գալստեան իւրոյ»:

1· Աւետարան .

«Փառք անքննելի սուրբ Երրորդութեան Հաւր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն: Նորոգեցաւ սուրբ Աւետարանս 'ի Թուականին Հայոց, ՌՂՋ· 'ի հայրապետութեան տեառըն Փիլիպոսի, և Առաջնորդութեան Սանահնու Սարգիս եպիսկոպոսին ձեռամբ Մըկըրտիչ դպրի:

«Որ ողորմի Տէրն ամենայնի հոգւոյ սորա ստացողի, Ղարախանին և կողակցին Ոսկեհատին, և որդիքն Դաւիթն, տէր Օհանէսն, Աստուածատուրն, Սարգիսն, Ամիրխան,

Յուլուխան, Գալուստ և Նազարն, դուստրն Շնահաւորն, և հանգուցեալ որդին Շահնազարն, հայրն Ղարախանին, Աստուածատուրըն, մայրն Մուրվաթն: Բաց սորայ Դաւիթըն, հանիկն Մուրվաթն, եղբայրն Ամիխանն, Տամուրն, հանգուցեալն Առաքելն, քոյրն Պահրի խանն, Շամանդուխն, Կուլպուտախն, Միրամարգն: Սա յիշատակ անջնջելի, բարի զաւակ հոգւոց սոցին, յորժամ որ գայ Տէրն երկնային, անձառ փառաւք իւր հայրենին, Նստի աթոռ իւր դատանին, գիւան առնէ մարդկան ազգին, յայնժամ աչաւքն քաղցրակին, հայի սիրով յանձն սոցին, և բարբառովն աստուածային, գոչէ 'ի վեր ըստ հաւտապետին, եկայք աւրհնեալք հաւր իմոյ ժառանգեցէք զվերինն Երուսաղէմ: Հայր մեր"»:

«Ջվերջին ստացող և Նորոգող սուրբ Աւետարանիս, զՏիւրիկեցի Անտոնի որդի Խոջայ Սիմաւոնն, և մայրն իւր զՄանանդն, և քորքն իւր՝ զԱրզուն, զՆազլուն, և ըզՄուրվաթն: Եւ զպապն իւր զՄուրմանչէն, և զհանիկն իւր զՄարգարիտն, և ժրագըլուխ ամուսինն իւր զՄարիամն, և զորդին իւր զնորաբողբոջ Անտոնն, և հօրեղբայրն իւր զԲաղտասարն, և զՄելիքոն. և միւս մեծ պապն զմկդսի Ամիրշէն, և կողակցին իւրոյ, և քեռոյն իւրոյ Սեդրակին, զէգէլին, Իշխանին, Պօղոսին, Միսակին, և Անտոն վարդապետին, և ամենայն արեանառու մերձաւորացն յիշեցէք և Աստուած ողորմի ասացէք: Արդ՝ ես Տիւրիկեցի մեղապարտ Սիմաւոնս, և կողակիցն իմ Մարիամն և որդին իմ Անդոնն, գնեցինք զսուրբ Աւետարանս, և տվինք վախմ և յիշատակ 'ի դուռն սուրբ Խունրկտրու եկեղեցուն վա-

սրն փրկութեան հոգւոց մերոց , ով ոք որ հանդիպիք Ա. բերան Աստուած ողորմի ասացէք աղաչեմ» ։

«Գրեցաւ և նորոգեցաւ , 'ի քաղաքն Թիֆլիս , ձեռամբ Յակոբ դպրի , Թուին ՌՃՁ. և ԽԳ։

«Ի վայելումն խօջայ Սիմաւոնին և ամենայն իւրայոցն ամէն ։ Հայր մեր"» ։

1. Աւետարան ։

«Ուստի և շառաւիղն աւրհնութեան և սեռն բարենշան , սրբազան և գերամաքուր մարդն Աստուծոյ , նախանձեցաւ նախանձ բարի ։ Տեսեալ զոմանս տարփողական սիրով անձնացեալս , զի զՏեառն մերոյ և զԱստուծոյ մատեան յաւետարանի յինքեան գրաւէին . և ապա խորհուրդ մի բարի 'ի մէջ առեալ ասէ թէ ամենայն կեանք մարդոյ անցաւոր տեսանեմ , և ստացաւ զստացուածս զեղեցիկս , նախանձեցաւ նախանձ բարիոք ։ Եւ ապա թախանձեալ զոգնամեղ և զանարժան գրիչս զՍտեփաննոս երէցս , նկարագրել զաստուածախաւս սուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ ըստ յայնմ որ ասէ թէ երանի որ ունիցի զաւակ 'ի Սիոն և ընդանեակ յԵրուսաղէմ ։ Եւ իմ հարկեալ 'ի սիրոյ նորա թէպէտ և 'ի վեր էր գործառնութիւն սորա քան զկար իմ և զարժան , ապա և զանկարութիւն 'ի բաց եդեալ լցի զփափաք սոցա ։ Եւ գրեալ աւարտեցի զսա 'ի գիւղն որ ասի Կալանջ , կարողութեամբն Աստուծոյ ։ Ընդ հովանեաւ սուրբ Նշանեաց 'ի գաւառս Մեղտինու , 'ի Թուին Հայոց ՌԺԸ· ամին ։ Ի թագաւորութեան Սուլթան Սելումին ։ Եւ 'ի կաթողիկոսութեան տէր Խաչա-

տուրին , և 'ի հայրապետութեան տէր Գր-րիգորին :

«Արդ երեսանկեալ աղաչեմ զձեզ ով սրբակրաւն քահանայք, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարգով աւրինակելով, լի սիրտիւ յիշեսջիք զմեղաւորս և զուսուցիչս իմ զՅոհանէս երէցն որ է հոգեւոր ծնողք իմ: Եւ ըստ մարմնի ծնաւղացս Պապին և Թամամին և Մուսէս դպրին և ծնաւղաց իւր, Աստուած լուսաւորէ զիւրեանց հոգին ամէն: Մանաւանդ զստացող սորին : Դարձեալ յիշեցէք զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս , զԿուլառարն , և զիւր որդին զԱստուածատուրն , և զԳասբարն , զՊաղտասարն , զԱբրահամն , և զիւր աղջիկունքն , զերեցկինն և զՆապլուն : Յիշատակ իւրեանց հոգւոցն իւրեանց ննջեցելոցն . և որ յիշէ և Աստուած ողորմի ասէ , Աստուած իւրն ողորմի 'ի միւսանգամ գալստեանն ամէն :

«Եւ եսուն 'ի ձեռն տէր Խաչատուրին 'ի գիւղն Յարուհաձին; և ոչ ոք ունի իշխանութիւն ծախելոյ զսա կամ գրաւ տալու . և եթէ ոք անդգնի , զպատիժն կայէնի առցէ » :

1. Ճաշու գիրք .

«Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածային և պայծառ լուսով, փափաքեաց հոգով և մարմնով, և ջերմեռանդ սրտիւ տեսանել Մկրտիչ քահանայն , և ետ գրել զբոլոր տարեգիրքս տարւոյն , անպատճառ և անթերի , յիշատակ իւր և ծնաւղացն իւրոց , Աւնոփրիոս քահանային , և մաւրն իւր Շայմելիքին , և հաւրեղբարցն իւր պարոն Բուլքարամին , Նիկաւղասին , և Ստե-

փանոսին և մաւրեղբարցն իւր կարապետ վարդապետին, և Յովաննէս հէրապետին, և Ազիզբակին, և զմօրքուեր որդին իւր: ըղ-ցէր Ստեփան եպիսկոպոսն:

«Այլ և յիշեցէք տէր Աստուածն իսրա-յէլի, զասանամայրն իւր զՄուլրուն Մէլիքն, և զդուստր իւր զմեծ խաթունն, որ 'ի տէր Միրաքէշ հէրապետին բազում երախտիք ու-նին, հոգևոր և մարմնաւոր: Քրիստոս Աս-տուած որ ողորմած է և գթած, երկայնա-միտ և բազումողորմ, ողորմութիւն և թո-ղութիւն շնորհեսցէ ամենայն սղալանաց նոցա ամէն: Արդ աղաչեմք զամենեսեան, նախ զվարդապետք և զդասս քահանայից, և սար-կաւագաց և քրիստոսադաւան ժողովրդոց, որք հանդիպիք սմա, տեսանելով կամ կար-դալով, և կամ աւրինակ դնելով, աղաչեմք զձեզ ով սուրբ ծառայք Աստուծոյ, միով Տէր ողորմեայիւ արժանի արարէք, և Աս-տուած որ կարողն է և ողորմածն, ողորմու-թիւն և թողութիւն շնորհեսցէ ամենայն սը-խալանաց մերոց և ձերոց առ հասարակ, յիւր միւսանգամ գալուստն ամէն:

«Արդ՝ աղաչեմ զամենեսեան, յիշեցէք 'ի Քրիստոս զպտացող գրոցս զՂազար երէց և զծնաւղսն իւր՝ և զայլ արեան մերձաւոր-սըն, և Աստուած զձեզ յիշէ յիւր արքայու-թիւնն ամէն:

«Արդ գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի՝ Յովհաննէս քահանայի. 'ի յերկիրս Քաջբերունի, 'ի քաղաքս որ կո-չի Արճէշ, ընդ հովանեաւ կըմբէթա-յարկ և խորանաձեւ սուրբ եկեղեցոյս որ յանուն սուրբ Գէորգայ զաւրավարին կա-ռուցեալ կայ: Ի թագաւորութեան ազգին Նետողաց Սուլթան Ջիհանշային, և 'ի կա-

թողիկոսութեան սուրբ Լուսաւորչին աթոռոյն, տէր Կիրակոսի՝ որ մականուն Խլըլոց կոչի։ Արդ գրեցաւ սա 'ի թուականիս Հայոց ՌԾԴ. թուին, ձեռամբ յոգնամեղ և տխամար գրչի Յովաննէս քահանայի՝ 'ի յիշատակութիւն Մկրտիչ քահանայի, ստացողի և նկարողի։

«... Արդ ես Մկրտիչ քահանայս ուխտ եդեալ էի գնալ յԵրուսաղէմ, և 'ի զբաղմանէս և 'ի ծուլութենէս ոչ շտապեցայ, և յազգմանէ չարին եկաւ Նուրալըանդն 'ի վերայ Արճիշոյ և Թօլանեց զամենեսեանս, և մեր չհանդիպեալ ուխտին՝ առաք զգիրքս և բերաք 'ի Տիւրիկիս և տուաք 'ի Ղազար երէցըն. և նա ետ մեզ Ծ. Փլօրի, և մեք տարաք յԵրուսաղէմ։

«Արդ ես Ղազար երէցս և որդին իմ Յովաննէս քահանայ, գնեցաք զգիրքս 'ի Մկրտիչ աբեղայէս Ծ. Փլօրի, յիշատակ մեր և ծնաւղաց մերոց։

«Արդ ես Ղազար երէցս՝ ուխտ եդեալ էի գնալ յԵրուսաղէմ. և 'ի ժամանակիս դառնութենէն 'ի վերայ ազգիս Քրիստոնէից զոր եղեալ ձիհանչահ Սուլթանն 'ի թախթէն Թաւրիզոյ, և եկաւ 'ի վերայ Եզընկոյ քաղաքին, և էառ զԵզընկայն. և բազում նեղութիւնք էած 'ի վերայ ազգի Քրիստոնէից, և Խութլուպակ պարոնն ոչ հնազանդեցաւ ձիհանչին, զոր հրաման ետ ձիհանչահն, զաւրաց և զաւրավարաց իւրոց զոր գնացեալ առին աւար բազում, և գերի բազում. և ով կարէ պատմել զխեղճ և զաղիողորմն քրիստոնէից ազգիս։

«Եւ դարձեալ անտի, և չուեալ 'ի Կամախ, և առին աւար և գերի բազում, և զխեղճ և զողորմն զոր եղաւ 'ի վերայ Քրիս-

տանէից զոր հրաման Տեառն կատարեցաւ · Թէ մի՛ լինիցի փախուստն ձեր 'ի ձմերայնի , և մի յաւուր շաբաթու ։ Այս 'ի Կամախ կատարեցաւ , և իմ տեսեալ զդառնութիւն ժամանակիս և զծերութիւն անձինս , և իմ յուսահատեալ յԱստուած ապաւինեցայ , թէ այց արասցէ Աստուած փափաքանաց իմոց ։ Եւ ողորմածն և մարդասէրն Աստուած , ողորմեցաւ , և այլ դուռն ողորմութեան եբաց ինձ · զոր եկաւ գիրքս այս 'ի յԱրճիշոյ և եհաս առ մեզ , և մեք տեսեալ զգիրս և զթուղթ և զվայելչութիւն ծաղկի սորա և մեր լցեալ փափաք սրտի , առաք զգիրքս 'ի վայելչութիւն անձին իմոյ և իմ որդւոյ Յովաննէս քահանային » ։

1. Գանձարան. «Ով սիրելի , սիրելի , եղբայրք գովելի , միտ ած որ զայս քեզի խրատ տամ որ լսես , յորժամ որ դու զանձըն երգես , թուղթն թքով տակականես , կամ երկու մատըներս քարշես , հանց որ կապին մնաս գործես , կամ անգէտի ձեռն դնես , խոզաց մարդկան կոխան չինես , զկողն անողորմ 'ի յետ քարշես , և կամ թանաս մատ ու չըրջես , կամ վրան մոմ կաթեցնես , և զիմ գրածն ապականես ։ Այլ յոյժ սիրով նախախնամես , սրբեալ ձեռօք լաթով բանես , 'ի հրոյ 'ի ջրոյ 'ի զատ պահես , մէջն գէշ գէշ գիր չի գրես , երկու երեք չորով պատես , 'ի չորային տեղիք դնես , բոլոր արտաքանձ տաղ ասես , ապա զԱստուած դու տեսանես ։ Ձեռքս մտի և հող դառնայ , գիր յիշատակ առ ձեզ մնայ » ։

— . Նոյն Գանձարան ։ «Շնորհիւք Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի , և

ողորմութեամբն Աստուծոյ, կիսանորոգ եղեւ գանձարանս այս, ձեռամբ իմոյ անարժան Գարսամ դպրիս, 'ի քաղաքն Տիւրիկի, ընդ հովանեաւ սուրբ Խնդրակատար և սուրբ Նշան եկեղեցւոյն, 'ի թուականիս Հայոց. ԹԱԳՆ Է ՃՈԽԱԼԻ։

«Եթէ կամիս իմանալ, թոյէն մինչև ինին որ կարմիր քաշած համարեսցես. և յետ թուելոյն երկոտասանն թիւ յարտաքս հան որ կատարեալ լինի թվականն մեր Հայոց ազգի. դուռն իմաստութեան ընդ դէմ քո բացուի, զայս թագս ճոխալի գլուխդ իջանի։ Քանզի պատճառ կրկին նորոգման Գանձարանիս, եղեն դպիրներն, քանզի վաղուց հետէ քայքայեալ և ամայի գոլով, վասնորոյ կամեցան 'ի լոյս ածել, և 'ի յանգ հանել զսա զի մի՛ մնասցէ ճրագն Աստուածային 'ի ներքոյ մահիճին. այլ կամեցան դնել 'ի վերայ աշտանակի, զի որք մտանեն լոյս տեսցեն, և որք տեսցեն, լուսաւորին և փառաւորեն զԱստուած կենդանի. իրաւի եղբարք, որ սա հոգեւոր գանձ է և ունի ինքեան բազում անկողոպտելի մարգարտաշար պատուական անուն, որով գովաբանէ համայնգամայն սուրբսըն և յաղթող նահատակսն իւրաքանչիւր 'ի յաւուր տօնի իւրեանց, զոր քաղցրաբարբառ դպրներ եղանակեն ազգի ազգի գանով, և համեղ մեղեդիքով, 'ի փառս ամենասուրբ Երրորդութեան Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ այժմ"։

«Ծաներուք ով սիրելի հայրք և եղբայրք իմ, որովհետեւ որ ոչ յայտնի եղեւ մեզ գծողն և յիշատակ երգողաց անուանքն, որ գրէաք, վասնորոյ Աստուած ողորմի և Հայր մեղան անտրտունջ հանապազօր ասէք, որ Տէր Աստուած զանուանս նոցին 'ի դպրութիւն

կենացն գրեսցէ, և զձեզ և զմեզ անդատապարտս պահեսցէ ամէն»։

1. Գանձարան։ «Գրեցաւ աստուածախօսութք տուս որ կոչի Գանձարանս, զոր արարեալ է մեծ բաբունապետն մեր Գրիգոր Կաֆայեցին, որ գաղտափարեալ ունի յինքն գանձս և զտաղս, որ է կատարեալ խորհուրդ եւթնարփեան Հոգւոյն զաւրութեամբ, զորով զարդարէ կաթողիկէ կամար սեփհական. հաստատեալ սեամբք եւթնեակ հոգւոյն մաքրական, որով ազատիմք եւթն չափ մահու մեղացն անխտակրական. և սրբիմք և լինիմք տաճար սուրբ Երրորդութեան ճաշակմամբ սուրբ մարմնոյ և արեան որդւոյն Աստուծոյ մաքրական։ Այլ և գրեցաւ սա ձեռամբ Յովանիսի բազմամեղ և ախմար գըրչի. և իմ անընդունակ գոլով յարուեստս գրչութեան. և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում զոր պարգեւեաց մեզ մարդասէր Հոգին, կոր բազմաչխատասիրեալ եմ 'ի սմա, գրեցի անարժան ձեռաւք իմովք յընտիր և խտոյգ աւրինակէ. 'ի Թուականիս Հայոց, ՌԺ. 'ի յաստուածախնամ գաւառս 'ի Տիւրիկի, 'ի հրեշտակաբնակ մենաստանս, որ կոչի Սիւրղի վանք։ Ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և Յովհաննէս աւետարանչին, և սուրբ Լուսաւորչին. նախ սպասուեալ ծերունի Հաւրս մեր, Յովաննէս եպիսկոպոսի վերադիտողի այսմ Նահանգի, որ այսմ ամի փոխեցաւ 'ի Քրիստոս։ Արդ աղաչեմ, զդասքդ սրբազանից, որք պատահիք այսմ Գանձարանիս եղանակելով, կամ աւրինակելով, կամ տեսանելով միայն՝ յիշեսջիք 'ի մաքրափայլ աղաւթս ձեր զստացող բու-

բաստանիս զխոճայ Աղուպն որ ստացաւ զսա իւր յիշատակ 'ի հալալ արդեանց և իւր ծնաւղացն խոճայ Վարդատին, և մաւրն և իւր կողակցին խաթուն փաշայխն, և որդւոցըն Վարհատին, և Գրիգոր սարկաւագիս, որ մեզ կու սպասաւորէ, և յուժ աշխատելով և զթուղթս կոկելով․ Աստուած զինքն 'ի խոր ծերութիւն հասուցանէ․ և դեռաբոյս մանկանն Ցանկորին, և դստերացն և ամենայն արեան մերձաւորացն ։

«Ցիշելով զբան մարգարէին, թէ Երանի որ ունիցի զաւակ 'ի Սիոն և ընտանի յերուսաղէմ․ վասն որոյ ես գրել զսա և եդ յիշատակ 'ի դուռն սուրբ Առաքելոց՝ 'ի պայծառութիւն եկեղեցեացն, 'ի վայելումն որդւոյ իւրոյ դեռաբոյս մանկան Գրիգորի սարկաւագին․ զոր տէր Աստուած վայելել տացէ մինչև 'ի խորին ծերութեան ։ Վասն որոյ աղաչեմ հայրական գթով, և եղբարական սիրով, սղալմնացս չմեղադրել ։ Ցովանէս եպիսկոպոսն վախճանեցաւ, և ծեր հարեղանիքն հասան․ ժամու սաղմոսն խափանեցաւ, Ովանէս արեղան սուտ հայրապետ եղաւ ։ Մինչև 'ի վարդավառին փոխն գրեցի․ պաւրինակն արուցս առան․ մինչև 'ի վերջն այլ աւրինակէ գրեցաւ ։ Անմեղադիր լերուք, սուրբ ընթերցաւղք, սիրտս 'ի սուգ և 'ի տրտմութիւն կայր․ այլ աղաչեմ, և երես 'ի գետին դնեմ, ով սուրբ քահանայք, սիրով ուղղել. Ներումն և թողութիւն հայցել 'ի Տեառնէ ինձ բազմամեղ անձինս, գթոյ և սղալական մտացս ։ Եւ նա որ պատճառն է 'ի սուրս պարգևաց, տացէ և ձեզ իւրոց անբաւ և բազում բարեացն, ըստ ձերում ախորժականացն, թողութիւն շնորհեսցէ ձերոց սխալ և յակամայ յանցանացն, և

իմոցն բաղում և կամաւոր աղալանացն · զի միաբան վայելեսցուք Հայրական պարգեւացըն , և ընդ այժմէ կացելոցն արժանաւոր եղիցուք · և խոճայ Աղուպն և իւր ծնաւղք- և կողակիցն և իւր որդիքն , 'ի Քրիստոս Յիսուս Տէր մեր , որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն ։ Այլ յիշեսջիք , զՄաւլաւչիկ սարկաւագն , և Յովաննեսուկ սարկաւագն , որ մեզ 'ի ծառայութիւն կան , և զԹուղթս կոկեցին · Աստուած իւրեանց շնորհ տայ ամէն ։

«Եւ ըստ վերոյ ասացելոցս , ես խոճայ Աղուպս ըստացայ զգանձս , և եդի յիշատակ 'ի քաղաքս 'ի Տիւրիկի , 'ի դուռն սուրբ Առաքելոյն յիշատակ անջինջ հոգւոյ իմոյ (և ծնաւղաց իմոց , և զարդ մանկանց նորոյ սիոնի · և 'ի տաւնախմբութիւն տաւնից տէրունականաց և 'ի պայծառութիւն սրբոց դասուցն ամէն ։ Արդ մի՛ ոք իշխեսցէ հանել զսա դրանէ սուրբ եկեղեցոյս . ոչ առաջնորդ եպիսկոպոս , կամ աբեղայ կամ երէց , կամ տանուտէր , կամ իմ ազգէն , կամ որդի , կամ դուստր , կամ քուր , և կամ թէ այլ ոք , ոչ ծախելով ոչ գրաւ տալով , և կամ թէ ումեք բաշխելով , և կամ թէ այլ ինչ իւիք պատճառանաւք ։

«Ապա թէ ոք անդգնի , և լրբութեամբ 'ի դէմ դառնայ այսմ հրամանի , և առնէ զոր ասացաք ոչ առնել , այնպիսին զանէծքըն կայենի և զպատիժն Կորխայ և Դաթանայ կրեսցէ , զմասն և զբաժինն Յուդայի և զխաչահանուացն առցէ · և զդատակցութիւնն ընդ սատանայի և զկամարարացն նորա ընկալցի · և աստ մի՛ հասարակեսցէ զաւուրս կենաց իւրոց . ապա խնամող պահաւղքըն աւ''· » ։

1. Ա–եփոքան ։ «Արդ՝ ես Նուաստ Հոգս, Մեսրապ ծոյլս, անարժանս, և անարուեստս գրիչս որ գրեցի զաստուածաքարոզ Աւետարանս 'ի լաւ և յընտիր աւրինակէն ։ 'ի Թուին Հայոց ՋԿԵ․ 'ի գիւղս որ կոչի Ակն․ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Յովհնայ, և սուրբ Գէորգեայ, և այլ ամենայն սրբոցս ։

«Արդ աղաչեմ զձեզ, ով մաքուր քահանայք և կրօնաւորք, որք հանդիպիք այս սուրբ և աւետաքարոզ Աւետարանիս, կարդայք՝ աւգտիք կամ աւրինակէք, յիշեցէք սրտի մտաւք 'ի մաքրափայլ աղաւթքն ձեր, զփցուն և զխոշոր գրչակս զՄեսրապ, և յանդգնութեան իմոյ ոչ մեղադրել, զի յաւժարութիւն, և փափաք սրտիս մոռացումն եղեւ տկարութեանս այժմ և յաւիտեանս ամէն ։ Ըստացող բուրաստանիս, յիշատակ է սուրբ Աւետարանս Գրիգոր աբեղիս ; և իւր ծնողացն Թորոս երիցուն, և մաւրն Մունաթին, եղբաւրքն Մեսրապ երիցուն, . . . . . . . . . քուրոջն Փաշային, Մաղթումին՝ իւր որդուն, որ ստացաւ զսա Գրիգոր աբեղայն Ակնցին իւր յիշատակ 'ի հալալ ընչից իւրոց բազում փափաքանաւք, և յոյժ աշխատանաւք, յիշելով զբան մարգարէին թէ Երանի որ ունիցի զաւակ 'ի Սիոն և ընտանիկ յԵրուսաղէմ․ յառաջնորդութեան Խաչատուր եպիսկոպոսին․ ով որ զայս Աւետարան գրաւէ կամ ծախէ, կամ 'ի յայս դրանէս հանէ կամ գրաւէ՝ Առաջնորդ կամ ազգական, նա զմասն Յուդայի առցէ» ։

1. Ա–եփոքան ։ « . . . . . . . . . Արդ ես Նուաստ Զաւրվար երէցս զմտաւ ածի զայս ամենայն, և յիշեցի զայն որ ասէ, թէ

Երանի որ ունիցի զաւակ 'ի Միոջն և ըն-
տանեակ յԵրուսաղէմ . և գրեցի զսուրբ
և զկենսունակ Աւետարանս ողորմութեամբն
Աստուծոյ, յիշատակ ինձ և ծնաւղաց
իմոց, Ստեփաննոս քահանային և Նար-
մելիքին, և կենակցին իմոյ Մեհրիմելիքին և
հոգեւոր մաւրն մեր մղտեսի Մինային, և ա-
մենայն արեան մերձաւորացն . 'ի վայելումն
դեռաբոյս զաւակին իմոյ Յովհաննէս սար-
կաւագիս . . . . . » :

1. Աւետարան. Որ է յիշատակ տէր Ներսէս
եպիսկոպոսին, և գրեցաւ 'ի Թուականու-
թեանս Հայոց, ՋԻԹ. 'ի քաղաքիս Տիւրիկոյ,
ընդ հովանեաւ սուրբ Սարգսի տաճարիս.
արդ՝ աղաչեմք զձեզ ով մանկունք Նոր Մի-
ոջնի, որք հանդիպիք այս սուրբ և աւետա-
քարոզ Աւետարանիս, կարդայք և աւետիք
և աւրինակէք 'ի սմանէ, յիշեցէք որտի մը-
տաւք 'ի մաքրափայլ աղաւթս ձեր զՋաւրվար
գրիչս և զվարպետն իմ զտէր Գրիգոր Ջաղ-
րեցն. այլ և յիշեսջիք զբազմերախտաւորն
'ի վերայ մեր՝ զվարպետ Սամուէլն. այլ և
յիշեսջիք զհոգեւորն մեր ծնաւղ, որ երետ
զխոյներուն և զՏնաւրինականացն զինչ որ
խարճ եղաւ. և Քրիստոս Աստուած զձեզ
յերկնից արքայութիւնն յիշէ ամէն: Այլ յի-
շեսջիք զպարոն Մելքիսեդն որ զաւրինակն
շնորհեց: Այլ և յիշեսջիք զառաջնորդք գա-
ւառիս, զտէր Ստեփաննոս և զկարապետ
վարդապետն, որ մեզ աւգնական է յամե-
նայն ալէտս հոգեւոր և մարմնաւոր»:

1. Մաշտոց. 'ի Ս. Լուսաւորչի վանք:
« . . . . Աւարտեցաւ Մաշտոցս . . . . յամի
ՋԺԵ. ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի, և

Ս. Գէորգայ զաւրավարին 'ի . . . (եղծեալ էր մրով) ընդ երկայն աւուրս արասցէ զնա Քրիստոս Աստուած ամէն: Եւ յեպիսկոպոսութեան այս Նահանգի տէր Ստեփաննոս վարդապետի, և տէր Յովաննէս եպիսկոպոսի. ծաղկեցուցէ զնոսա Տէր Աստուած 'ի վերայ ծաղկեալ գաւառնի իւրեանց. եղեւ լրումն սուրբ Մաշտոցիս ձեռամբ ստացանուն քահանայի Հերապետի: Յիշեցէք զստացող սուրբ գրոյս զբարեպաշտ և զերկիւղած կինն Սալչուկ խաթունն, 'ի բարի արմատոյն շառաւեղ . . . յիշատակ իւր և ծնաւղաց նորին Ստեփանոսին և Գուլիզարին, և ջոջ պապուն Ծերուն աղին և մամուն Հէր—Մէլիքին . . . յիշեցէք զՍալչուկ խաթունն և զայրն իւր ըզ Ջանի բէկն, և զաւակոն իւրեանց զպարոն Գորգն, Մուսէհն, Շամշադինն, Միրտիշն, Բուսէն, Նուրային, Ալղուն . . . զխաւջայ Մալհամն, և զծնողսն իւրեանց զՆիկողոսն և զՓիրուզբախտն, և զԲէկի խաթունն, և ըզդեռաբոյս զաւակն իւրեանց զԴաւրմանն . . . զՋանի բէկի ծնողսն զՄարգարէն և զԹանգ խաթունն, Աստուած ողորմոյ արժանի արասրէք . . . և զքուերսն Սալչուկ խաթունին ըզ Համուշն, զՍադաղէն և զԳուլնարն, զԲէկին, զՇայմելիքն . . . Հէրմէլիքն յիշեցէք առաջի անմահ Գառին Աստուծոյ:

« . . . Եւ զԳուլմէլիքն, զԲուսէրի տան մարդն յիշեցէք 'ի Քրիստոս, որ 'ի գիրքս 'ի տես նը են, և Աստուած ողորմի ասասցէք նմա. Աստուած ձեզ ողորմեսցի ամէն. եղիցի եղիցի: (այլ գրով) Այս գիրքս . . . Եղեգնձոր Զքանդարին տղայն Յովաննէս գնեց և երետ յիշատակ իւր հոգւոյն և իւր կողակցին խանդութին . . . »:

1. Անտոքան : «Ի թվին ՃՀԹ. հայրապետութեան տէր Գրիգորի գրեցաւ սուրբ Աւետարանս երկիրս Գեղամայ 'ի սուրբ Ուխտիս որ կոչի Հայրոյ Որձան 'ի դառն և նեղ ժամանակի. եկն երկիրս մեր Տաճիկ մի՝ հարկ խնդրէր ոչ համարաւք այլ թուաքաւք, որ է հակ բեռին . . . »:

1. Շարականն մագաղաթ, պակաս, ստնացուցիւ հանդերձ : « . . . . Եղանակաւորս գրեալ ձեռամբ տէր Յարութի 'ի յերկիրն Կեսարիոյ 'ի գիւղն Տաւմարզայ. 'ի թուականին Հայոցս ՃԼԶ կրկնակի քառից և միակ երից . . . 'ի խագաւորութեան Սուլթան Իպրահիմին, և կաթողիկոս Հայոց Փիլիպպոսի »:

1. Մաշտոց: « . . . Սարգիս ծերունի պատուական քահանայ 'ի սուրբ Ուխտէն Հաւույ թառ՝ զթուղթն պատրաստեաց և ես անյիշելի Դաւիթ գրեցի զգիրքս . . . և ընծայեցաք զսա 'ի սուրբ ուխտս Հաւույթառ 'ի դուռն սուրբ կաթողիկէին և սուրբ Աստուածածնիս և սուրբ Յարութեան և ամենազաւր սուրբ Ամենափրկչին և այլ սրբոց: Եւ եղեւ գրչութիւն սորա 'ի Նախադրական սուրբ Ուխտն 'ի մեծն Արի վանս, և կատարումն գրոցս յԱստուածապահ գիւղաքաղաքիս Գառնի, առ դրան սուրբ և հրաշափառ կաթուղիկէիս և այլ սուրբ եկեղեցեացս. 'ի թվին. ՊՀԲ. 'ի հայրապետութեան տեառն Պաւղոսի Գառնեցւոյ սրբազան կաթուղիկոսի, և 'ի վերադիտողութեան սուրբ Ուխտիս Հաւու թառ՝ հեզահոգի և սրբասէր և մաքրամիտ և մեծազգի արհիապատիւ եպիսկոպոսի տէր Զաքարիայ . . . : Յիշեցէք 'ի սուրբ պատարագն

զՍարգիս քահանայն և զծնողսն նորա զՄեհեւանն և զԱստղիկն. և զբազմամեղ սուտ անուն քահանայ զԴաւիթ գրիչս և զծնողսն իմ . . . » :

— . Կային նաև շատ Մաշտոց, Ճաշոց, Գանձարան, Աւետարան, ևն, մեռեալ և փտեալ վիճակի մէջ անխնամ ձգուած :

— . Վանքիս տաճարի մէջ Ս. Մասունքներ պահպանելու արծաթէ մեծ տուփի մը վրայէն օրինակեցի հետեւեալը :

« Յամի փրկչին 1021. Հայոց թվին ՆՀ. ամին Աստուածընկալ սուրբ Նշանս այս 'ի ժամանակս Յունաց Վասլի կայսերն Կոստանդեայ Դաւիթ որդին Սենեքերիմայ հրամանաւ հօրն բազում ընծայիւք գնաց առ Վասիլ կայսրն հանդերձ ծառայիւք, քահանայիւք և Բշտունեաց Եղիշէ եպիսկոպոսիւ. թէ ըղխորհուրդ Սենեքերիմ արքային ծանուսցեն առ կայսրն. յորժամ հասին 'ի մեծն Պօլիս, կայսրն այն բազում սիրով ընկալաւ զնոսա և կատարեաց զխնդիր Սենեքերիմ արքային և ետ նմա հաստատուն նամակաւ զամենայն երկիրն Սեբաստիոյ հանդերձ ամենայն գաւառօք իւրովք մինչև 'ի գետն Եփրատայ. իսկ յորժամ եկն Դաւիթ առ հայր իւր Սենեքերիմ, ոչ սակաւ ուրախութիւն արար արքային. իսկոյն էառ զսուրբ նշանն Վարագայ և ընդ նմին բազում գործիքն Քրիստոսի և մասունք սրբոց՝ եկն եհաս 'ի Սեբաստիա, զսուրբ Նշանն կանգնեաց անդ, և իշխանացն նորին Կիւրեղ անուն իշխան մի սոյն գաւառն Տիւրիկու յանուն Ս. Լուսա-

ւորչի վանք մի շինեցոյց, որոյ մականուն կոչի Կիւրղի անապատ. սուրբ Աստուածածնայ և սուրբ Նշան եկեղեցիքն մերձ նորին նա շինեաց. աստանօր եդ զսուրբ Նշանն Աստուածընկալ: Նորոգեցաւ մաքուր արծաթիւք և ոսկեզօծիւ նոյն դիտիւ, չորս կողմանց մասունքն ևս ինքն յիշատակ եթող վասն իւր հոգւոյն, բաց 'ի յաշխատութենէն և տուեցելոյն յիւրմէ. Նաև որ էր Ղազարոս արեղայն պատճառ դորա որ 'ի յԱկնա երկրէն մինչև ցժողովուրդ տեղւոյս որ տըւեալ են դմա աշխատող ոսկերիչ վարպետքն և Միաբանքս որ տուեալ ունին՝ վարձն 'ի Քրիստոսէ ընկալնուն. յիշատակն արգարոց օրհնութեամբ եղիցի: Վերանորոգեցաւ ՌՄԿԳ և յունիս Ժ. օրն »:

## ԳԱՍՄԱՆ ԵՒ ԲԵՆԿԱՑ

Յունիս 5: Տիւրիկէն կը մեկնինք: Անմիջապէս կ'ելնի զառ'ի վեր, քարոտ նեղ ուղին, հազիւ ձիու մը սմբակներ կրնան բըռնել, գահավէժ է, և վիհերով սարսափատես: Ժամէ մը կը հասնինք Վանք գեղ Գըզըլպաշի: Դարձեալ ել, բարձր ել, միշտ ել, քար և վախ շատ. Կէօլ դաղին ենք, որ հռչակաւոր է եղեռնագործաց չարիքներով. սարսռեցուցիչ ցուրտ կ'զգանք, ձիւներու վրայէն կ'անցնինք. հովիւք, գոմք, հօտք զարդարած են լերանս արօտաւոր վայրեր: Բոլոր մեր չուրջ երևցած լեռները մետաղի կերպարանք կը ցուցնեն. կ'ըսուէր թէ մագ-

նիսի, երկաթի, պղնձի և արծաթի հանքերով լի են․ արդարեւ տեղ տեղ ալ կը պատահէինք բովերու, որ երբեմն բանած եղեր են, իսկ այժմ խափանեալ։ Լերան գագաթէն Չորեքեան Հիւսէյին կը ցուցնէ մեզ Գամահ, Զմարա և Բենկայ մեծամեծ և գեղեցիկ գեղեր։ Իրենց ծիւնապատ ճակատները վսեմափառ տեսլեամբ մեզ հանդէպ կ'ամբառնան Մնձուր լերինք, այն է Տուժիկի կամ Տէրսիմի մէկ կտորը․ և վերջապէս կոյտ կոյտ բարձրաբերձ սարեր ամենայն ուրեք, որ կը ներկայացնեն Տաւրոսը։ Որչափ չար էր մեր ելքը, գրեթէ նոյնչափ չար էր էջքը։ Հինգ ժամէն իջանք Գամահ գեղը։ Գամահայ դիրքն ու շէնքը խիստ վայելուչ և չքեղ է, իւր տները Տիւրիկի տներէն աւելի ձեւաւոր․ ծառազարդ է և ջրաւէտ։ Այս գեղը հայրենիք է Նորատունկեանց տոհմին․ Ցակոբ էֆէնտիի անուան յիշատակարանը տեսանք եկեղեցւոյ դրան վրայ, անոր ծախքով շինուած էր, որոյ կից կար և վարժարանի մը շէնք, բայց դուռը փակ։ Գեղիս բնակիչք Հայ են, քանի մը տուն Թուրք ալ կայ․ կենցաղավարութիւննին քաղաքացւոց պէս է․ թէպէտ հողագործ ալ են, բայց ընդհանրապէս Պոլիս հացի փուռեր ունին, անոնցմով է իրենց շահ․ և գրեթէ ամեն տունէ մարդ կայ Պոլիս։ Իջեւանեցանք տէր Գէորգ քահանայի տունը, ուր երկու ժամ հանգչելէն և գեղը շրջելէն զկնի մեկնեցանք։ Օրը տա-

րածածեալ է, կը շտապինք Բենիկայ հասնիլ. մեր ուղին դիւր է և զուարճալի. ընտիր ընտիր արտեր, ծառեր, ջրեր, և գեղացին ու գեղուհին տարածեալ են դաշտը. հնձոց վաստակի օրերն են. ջորիներ որոց կը կրեն, կանայք և աղջիկներ դարի կը քաղեն, մանուկները ծառոց հով և ջրոց առքը հովերու և խոտերու վրայ պառկած մրջիւններու բոյները կը խառնեն, որը կ'երգէ, որն ալ արտուտի ետեւէն կը վազէ. Թփոց մէջէն խօսնակ թռչունք ներդաշնակ կը նուագեն. խոտհասուկ ճպուռին ձայն ճը՛ռ ճը՛ռ լսուեցեր է դաշտը, և երամ երամ հաւքեր ելեւէջ կ'ընեն քաղուած արտերու մէջը: արեգակին հուր ճառագայթներ կ'այրէին : Կը դրկուիմ Զմարա երթալէ, ուր շատ Հայեր կան, և լաւ բարեկամներ : Ահա կը մտնենք Բենիկայի ծառաստաններէն, ուր լի են բազմախուռն Թթենիք և այլ մրգաբեր տունկեր : Բեննարարձ ուղղուց մեծ կարաւան մը Պալաթիա կ'երթայ : Կայտառ պատանեակք անոյշ ձայնով խաղ կը կանչեն ծառոց մէջ. հարսունք և երիտասարդք երամ երամ Բենիկայ կը դառնան. գերեզմանատան կշտէն զառիվայր կ'իջնանք, ուր ընտիր տապանաքարեր կան տաշածոյ : Ժամը 12 անցեր էր, արեւուն վերջնալոյս հոգին կը լուսաւորէ մեր ուղին, և ահա Եփրատոյ ափն ենք . . . . Եփրա՛տ ; ո՛ Եփրատ . . . Եփրա՛տ իմ Եփրատ : . . ո՛վ իմ սքանչելի ջուր . . . ոսկեգին

կը յուզես զիս . դեռ կը բաբախի սիրտս , կը թրթռան շրթունքս , կը դողդողան մատունքըս . չեմ կարող նկարագրել զքեզ . և 'ի քեզ զգացածներս . . . . :

Անցանք կամուրջէն , քարերու մէջ , նեղ նեղ , ոլոր մոլոր , վեր ել փողոցներէն . և իջեւանեցանք տէր Յակոբ քահանայի տունը , ուր անմիջապէս մեզ 'ի տես եկան բնակչաց երեւելիներէն , ուսեալ երիտասարդներէն , և վարժապետներ :

Տէր Յակոբ՝ դեռ երիտասարդ , բայց ուսեալ և բարեբարոյ քահանայ մ'է . ինչպէս իւր անունն էր , նոյնպէս և իւր հիւրասիրութիւնը հաւասար նահապետական էր :

Հետեւեալ առաւօտը եկեղեցւոյ սենեակը ժողովեցան Բենկալի ազգայինները , որոնք ամենքն ալ գրեթէ Պոլսոյ մէջ ծանօթ անձինքներ էին . տեսակցութիւնք և հարց ու պատասխանիք իրենց ու մեր կողմէն փոխանակուեցան . պաշտօնս լրացընելէն զկնի՝ երկսեռ վարժարանը այցելեցինք , զորս գոհ աչօք տեսայ , բայց գիտեցի որ կրնային աւելի լաւ վիճակի մը վերածել :

Կարի ստիպումներ ըրին , ես ալ կը փափաքէի քանի մը օր հոն անցունել , բայց պաշտօնս յառաջ կը մղէր զիս : Բենկալի գիւղը խիստ ամուր է , ապաստանարան մ'է կամ ամրոց մը փակած ապառաժներուն , նեղ և խոր կիրճեր ունի յայսկոյս և յայնկոյս , ուստի մեծն Եփրատէս կծկելով՝ սեղ-

մուխով պատուտընթաց կ'անցնի . կամուրջը՝ որ կը կապէ դիմացի դաշտը գեղին հետ , ամեն երեկոյ գանոնով կը փակուի , և եթէ թշնամի ունենան՝ կամուրջը կը քանդեն , որով անանցանելի կը լինի գետն , քանզի կրնան միայն քար գլորելով դիականացնել և ջրոյն հոսանաց տալ յարձակողները : Բենկացւոց մեծն ու փոքր զէնքեր ունին . ամեն ունեւորի մէկ կողմն գիրք շարած են , երկու կողմն զէնքեր , մէկ կողմն ալ փոքր պնաքեր : Ընտիր նժոյգներ ունին . քաջավարժ հեծեալներ են , և արագոտն գիտեն վազել քարեր ու լեռներն : Ովաճըգի , կամ որ նոյն է՝ Դէրսիմի Քրդերը այս կողմի Հայ ու Թուրք գեղացիներէն տուրքեր կ'առնուն , կը կողոպտեն , կ'սպաննեն ևն. միայն Բենկացիք իրենց քաջութեամբ ոչ միայն ազատ կ'ապրին , այլ և կը սարսափեցնեն Քրդերը . դեռ Ովաճըգցի մը ոտք կոխած չէ Բենկայ : Թէպէտ երբեմն երբեմն որսի , ճանապարհի և դաշտի մէջ կը պատահին իրարու , բայց հաւասար քաջութեամբ կը կռուեն մէկզմէկ , և եթէ դէպ լինի , որ դարանակալութեամբ Բենկացի Հայ մը կողոպտեն , կամ վիրաւորեն , կամ սպաննեն Քրդերը , քանի մը պատիկ պիտի տուժեն : Մէկ խօսքով՝ Բենկացի Հայեր՝ հարուստ , քաղաքակիրթ և քաջարի են . և եթէ իրարու հետ միութիւն պահեն , իրար սիրեն ու յարգեն , անհամեմատ են բոլոր Հայաստանի Հայոց մէջ , որոց օրինակ

ալ կրնան լինիլ: Գեղին ստորոտը քանի տուն Թուրքեր կը բնակին՝ զատ, և կ'ապրին Հայոց շնորհիւ: Թրքաց Թաղը կ'անուանուի Ուռքաթ: Իրօք Հուռքաթ եղած է կ'ըսուի գեղիս հին անունը, զոր Սենեքերիմեանց թա-նիկ իշխանն նորոգեր, և անոր անուանը դր-ուեր է Բենկայ կամ Բենկայ տուն:

Երեք եկեղեցի ունին, Հրեշտակապետ, Աստուածածին, և Երեք մանկունք: Վար-ժարան 2. Մեսրոպեան և Ղունեան: Ուսա-նող 120 մանկունք, 60 աղջիկունք:

Գեղի շուրջն են Ս. Թագաւոր, Ս. Նի-կողոս; Ս. Խաչ, Ս. Յակոբ, և Խանակեանց եկեղեցեաց աւերակք:

Բենկայ՝ Տիւրիկու գայմագամութեան, Սեբաստիոյ վիլայէթին վերջինն է:

Յուլիս 6: Ժամը 6 էր մեկնեցանք Բեն-կայէն. քահանայք և իշխանք յուղարկաւոր եղան, և երկու նորահաս տղայք երիտա-սարդք, Պօղոս Մեծատուրեան և Նազարէթ Ալանեան՝ տոհմականութեամբ, կրթու-թեամբ, սրտի բարութեամբ և արիութեամբ հաւասար գերազանց, թուած իրենց կրակոտ ձիոց քամակը, սարասիւք և զէնքերով շըր-շողուն, հեծեալք և նժոյգք մէկ քան զմէկ աչքառոյծ. ձիոց վրիւնջիւններով, հրացանաց պայթիւններով ու շառաչներով թուանք փե-նագլուխը. կապան է մեր անցքը. վարը գա-հավէժ ձորեր, և հեռուանց Եփրատն կը պղտորի, որոյ միւս երեսն կը նշմարուի Արա-

կոյ կամ Նարեկայ լեռան, գեղն, ու վանքին դիրքը· Ապրանք կամ Ապարանք գեղ, և ուրիշ գեղեցիկ գեղեր Թրքաց ու Քրդաց· նոյն կողին վրայ է նաև Նարմէր գեղ Հայոց, եւն: Մեր միւս կողմն են Բենկայի այգեստանք, և խումբ մը աշխատաւորներ կը տեսնանք, որ նոր աղբիւրի մը ջուրը գեղը տանելու ճամբան կը շինեն· սոր համար յատուկ կտակ ըրած էր 15000 ղրշ. հանգուցեալ Մ. Պաղտասար Զայեան, 1000 քօնսօլիտ ալ եկեղեցեաց, 500 քօնսօլիտ վարժարանին, եւն: Ճամբու մը չափ յառաջացած էինք, խնդրեցինք և օրհնութեամբ յետս դարձուցինք մեր քաջարի բարեկամները. մեզ հետ մնացին Գէորգ քաջայաղթ սպասաւորն, Նիկողոս սուրհանդակն, և մեր սարիկանն: Գէորգն ու Նիկողոս կը պատմեն Բենկացւոց և Ոզմճրցւոց կռիւները: Հոս է, կ'ըսէ Գէորգ, ուր եղբայրս որսի ելած ժամանակ Քրդերը դաւով սպաննեցին: Քրդերու բազմութիւն մը կարաւանով կը պատահին մեզ, մենք անոնցմէ և անոնք մեզմէ կը զգուշանանք. տեղերը արիւն կը հոտին. և ահա ժխոր մը տեղի ունեցաւ, Քրդերը մէկանց բարեւի կայնեցան, ամենախոնարհ յարգանօք բարեւեցին մեզ. Գէորգին կը հարցընեն թէ՝ Սա՞ է (զիս ցոյց տալով) Պօլսէն եկող քննիչը, որ Սեւաստն էր: Հասանք Սօսկը ըսուած զուարճալի տեղը, ուր հովեր, պաղ աղբիւրներ և բազմա-

Թիւ ուռենիներ կան . բնակացուց տուարաց մակաղատեղն է ։ Աւեր եկեղեցի մը , որոյ որմոց շուքը եղները հանգչած են ։ Քիչ մը հանգստացանք մենք ալ , և դարձեալ ղառիվեր կը բարձրանանք . քա՛ր , և շարունակ քա՛ր ։ Ձորս ժամէն զկնի կը հասնինք քանի մը թուրք գեղեր՝ ձորերու մէջ զուարճալի դիրքերով և ծառաստաններով ։ Հարանիք կայ ։ Հայ—Հոռոմի գեղի մը քովէն անցնելով՝ ձորակ մը կը բացուի առջևնիս անդընդային խորութեամբ . պտուտաւոր և խանգարեալ է ուղին , սանդխաւոր և նեղ , ժայռերով շրջապատուած , ոչ մարդ և ոչ ձի կրնայ ուղղաձիգ կանգնիլ. ձորակի խոր յատակը քանի մը ջաղացներ կան , վտակ մը կը հոսի , և մեծ ջրոյ ակն մի կայ սառնորակ , դալար ուռենիք միակ զարդ են այս ամայի վայրին . սեպ սեպ բարձրացած են՝ կարծես մինչև երկինք՝ լերկ ու մոյգ քարինք . տեղ մը չկայ այնքան զարհուրանք ազդող մարդումը որչափ հոս , ուր արեւն անգամ չհամարձակիր իւր ճառագայթները տարածել ։ Դէլիքլի—դաշն ենք , կամ Ծակ—քար , որ կամարաձեւ դրան նման բացուած է և այդ ծակի միջէն կ՚անցնի ուղեւորը . երկինք հազիւ ժապաւէնի մը չափ կը տեսնուի . կ՚աճապարենք փախչիլ ելնել այս անդունդէն , ծնկակոտոր և շնչասպառ եղած ։ Ասոր գագաթէն կը տեսնանք Հայ—Հոռոմոց վան կամ վանք գեղ , ապա Ձորակ , վերջապէս

քերդաչէն Անին, որոյ ուրից տակէն մանեկա-
ւէ կը ձգի Եփրատէան անեղ և ծանրացա-
ւումն երեսօք ։

## ԱԿՆ, կամ ԱԿՆԱՑ ՔԱՂԱՔ

Մինչ կ'արժէ՞ս դու, մեծահամբաւ քաղաք, այնքան նեղութիւններ կրել տալ քեզ այցելու եկողին ։ Արդարև երբ ճնշուած՝ քարերէ, խոտերէ, վախերէ, քրտնաթաթախ և արիւնաշաղախ ոլեւէջներէ, յանկարծ կը տեսնես Ակն՝ Ձորակի գագաթէն, այնքան շքեղ շէնքերով և գեղեցկազարդ ծառաստաններով, կարծես արքայութիւն մի է այն. իջնալ պէտք է մինչև կիրճին խոր յատակը, և երկրպագելով Եփրատի Թագաւորութեան պատուանդանին, ապա անցնիլ կամուրջով մը, յայնժամ կը տեսնես թէ այդ արքայութեան հանգիստ կարծած քաղաքը՝ քանի՜ դժուարին և անհելանելի առապար մ'է, ինչպէս մարդ պատէն կամ պարսպէն 'ի վեր ընթանայ. քարերու մէջ ենք, քար կը կոխենք, քարերն 'ի վեր կ'ելնենք, եթէ մխիթարութիւն մը կայ՝ քարաշար սանդուխներն են, խոխոջացող առատ ջրեր, և ծառոց ու բուսոց կանանչ ազարթներ, որ տարածուելով փողոցներու պատերէն դուրս՝ գեղեցկութիւն մը սփռած են ։ Իջեւանեցանք Վերին Թաղի Ս. Աստուածածին եկեղեցւոյ Առաջնորդարանը. Ակըն-

ւրն ու օդը չեն ձգած մեկնիլ . ուր որ
ւլեցայ՝ Ակնցիներու պատահեցայ : Առածը
ըսէ թէ՝ Ակնցու երկու ոտքէն կաղն մին-
ւ Հնդկաստանը հասեր է , մէկ ոտքէն՝ մին-
ւ Չինումաչին » : Յիշեցէք ծիծեռնակը , որ
հօյակապ բոյնը կը շինէ քարի մը կողը , և
եքն արագ արագ կը սլանայ յայս և յայն-
ոյս ; որդն ու կուտ կը կրէ իր ձագուց .
ահա նոյն է Ակնցին , շարունակ կ'երթայ
ու գայ , կը բերէ , կ'սպառէ , և նորէն կը
երադառնայ :

Ակնցի Հայք՝ աւանդութեամբ զիրենք
ը համարին Անւոյ գաղթական . իսկ Ապու-
ղին ու Կամրկապ որ արուարձան են Ակ-
ւոյ , Վասպուրականի գաղթական : Թէ՛ աս՝
և թէ՛ անոնք՝ նախարարութեամբ կը կարծեն զի-
ենք . և իրենց հետ եկող ժողովուրդները
երձակայ գիւղերու մէջ բնակած : Այսօր
ենկարեւոր պարծանք մ'է տոհմականու-
թիւն . անշուշտ իրենք ալ հասկըցած են
թէ՝ անձանց արժանիքն է միայն ճշմարիտ
ազնուականութիւն : Այլ սակայն պէտք չէ
մոռնալ թէ՝ Ակն՝ մեծ Հայերու հայրենիք է
եղած . դեռ դարուս սկիզբները թէ՛ Պոլսոյ
մէջ և թէ՛ գաւառներս մեծամեծ ամիրաներ
փայլեցան , որք օգուտ և պատիւ բերած
են ազգին իրենց պաշտօնութեամբ հանդերձ ,
որ ժամանակի կենցաղավարութեան պտուղն
էր և ազնուութեան արդիւնք . ո՞ւր են ի-
րենց ժառանգութիւններն և ժառանգները . . . :

Ակնայ, Ալուչեխի և Կամրկապայ գեղ-յոց ճոխ և շուայլ կեանքը, ծանր և մեծաքարոյ վարմունքներ, ճարտար շահադիտութիւնք, տանց և կահ կարասեաց մաքրութիւն ու շքեղութիւն, ծառայից բազմութիւն, տիկնանց պերճ զգեստներ և ոսկեղէն զարդեր, ատոնց ֆէրաճէն, լայն ու երկայն թեւերով կողոյն, թանկագին մուշտակը, գլխոց սպիտակ շղարշն, գագաթակալ թեսըն, երեսնոց, և գլխէն 'ի վար վարսերուն խառն փռուած նրբաթել ծոպեր, արծաթէ կոճակներ, և պարանոցն ու բազուկները պճնող մարգարիտներն, ոսկիներն և բատերը, ծանրաճեմ ու ակնածելի խոնարհանքները, եւն. եւն. կը ցուցնեն թէ հասարակ մարդիկ և ժամանակիս որդիք չեն, բայց պէ՛տ հարկ է որ իրենք զիրենք ժամանակիս յարմարցընեն։

Նայելով Ակնայ կիրճին և տեղւոյն ամրութեան, անշուշտ ընտրանօք շինած են հոս իրենց բնակարանները. որսորդներէ հալածուած թռչնոց նման՝ անմերձենալի և անառիկ քարերուն ապաստանած, ուր արեւն և երկինք անգամ իրենց երեսը հազիւ կը ցուցընեն. և ո՛ր կողմդ դառնաս՝ բարձրաբերձ գորշագոյն քարեր կը փակեն աչքէդ հորիզոնը։ Կամաւոր և անըմբռնելի աքսորանք մ'է ընդարձակ հովիտներու և մեծ երկնքի վարժողի մը այս տեղ բնակիլ։ Վա՛յ էր ինձ, որ Ակնայ այգեստաններն, ծովին,

վարագայ հովտին․ Մշոյ մեծ դաշտին, Քաղկեդոնի շրջակայքին և Մարմարային գեղափիւռ և մեծածաւալ երեւոյթներուն վարժուած, կը ճնշուէր այս ժայռերուն մէջ։ Քաղաքիս անուն ԱԿՆ, զոր ԸԿԻՆ ալ կ'անուանեն, այլ և այլ մեկնութիւններ կ'ուտան, բայց ստոյգն այն կ'երեւի, թէ իւր անուն առած է ջրոյ մեծ Ակնէն, որ քաղաքի վերէն խիստ առատութեամբ կը բղխի քարուտ աւազանէ մը․ և ջաղացքներ բանեցնելով, ու բոլոր քաղաքի փողոցներ; և այները բաշխուելով, տուները ոռոգելով, դեռ մեծ մասն կը թափի յԵփրատ։ Ի՞նչ գործարաններ չեն շինուիր այս ջրոյն վրայ և նոյն իսկ Եփրատին վրայ։ Եփրատն իւր ծոգուտները ունի, ձուկ կ'ընծայէ։ իւր ափերով կը զուարճացնէ, իւր շալակով կը բերէ շէնքի և վառելու փայտեր, քալակով ալ ցորեն և այլ պէտքերը։

Գեղեցիկ է Արիգի թաղը՝ Ակնայ հարուը․ կից է Արիգին՝ Ալուչեխն, կարուշլան և կամրկապն, որք կրնան մէկ մէկ թաղ սեպուիլ․ ամենքն ալ ծառազարդ, մրգաբեր․ կամրկապն այգիներ ալ ունի, ամենքն ալ ջրաւէտ։ Անուանի է սպիտակ թութ համով և առատութեամբ։ Կը նստիս աւազանի մը կամ չուիկ աղբիւրի մը քով, վերէն վարգենեաց, խնծորենւոյ, ծիրանի, սալորի, տանձի, բալի եւ, ծառերը՝ նախ ծաղիկներով ապա պտուղներով ծանրացած ճղերը ծռը՝

կը ծառանան գլխուդ վերեւ, քովերդ ալ անկած են մեխակ, մանուշակ և այլ հոտաւէտ բոյսեր ու զանազան հասմիկները, մանաւանդ Ակնայ սուլթան խոշորափառ և բասորագոյն, կծու և գրգռիչ կարմիր պղպեղըն, կեր, արբ, զուարճացիր, և ահա ամբողջ անձդ և չուրջդ կը փռուին ծաղկունք ծառոց, և չոր թութ՝ աւազանին կամ բաժակիդ մէջ, սեղանոյն ու գագաթանդ վրայ Թրըխկ կ՚իյնայ ծիրանի, խնծորի, ևն. կաթուկ մը, կանանչ ոստերը և հասուն պ-տուղներ սիրող թռչուններ քեզ նուագակից և պարայած: Այգիէն անդիէն ալ քաղցր և բարձր ձայնիւ պատանեկաց ու երիտասարդաց խաղ կանչելուն արձագանքները կը բերեն քեզ քարեր:

Ակնայ քաղաքը երկու Եկեղեցի կայ Հայոց, Ս Աստուածածին, և Ս. Գէորգ: Ս. Գէորգ նոր շինուած էր հոյակապ և մեծածախ, քարուկիր, գմբէթաւոր, բայց իւր քովի վարժարանը հին և անկանոն, իսկ վերին թաղի վարժարանը՝ բաւական աղէկ: Վերադարձիս ուրախութեամբ տեսայ որ երկու թաղ միանալով՝ իրենց վարժարանները ծաղկոցի վերածեր էին, և մէկ ուսումնարան մը բարձր ուսմանց համար սահմաներ էին արժանաւոր ուսուցիչներով. բացման հանդիսին ներկայ էի: Կը մնայ իրենց ունելի կարեւոր պակաս մը, այն է աղջկանց վարժարան, որոյ յաջողութեան յուսով կը մնամ:

ԱՊՈՒՋԵԽ. Եկեղեցի 1. Ս. Նշան. փառաշէն. իսկ իւր վարագայ վարժարանը՝ խարխալուած և յետին աստիճան անկարգ. ափսո՜ս գրատան և գրքերուն, ափսո՜ս այս գեղին ու վարժարանի Նախկին համբաւոյն:

ԿԱՄՐԿԱՊ. Եկեղեցի 2. Ս. Աստուածածին և Ս. Գէորգ: Վարժարանը երկսեռ՝ Արամեան և Սանդխտեան. աղէկ ուսուցիչներ ունէին, ապահով եկամուտներ, հետեւաբար և յառաջադէմ աշակերտներ. երկու քահանաներն ալ ուսեալ. Արժ. տէր Կարապետ Երէցեանը՝ առաջնորդական Տեղապահ էր Ակնայ:

ԿԱՐՈՒՇԼԱՑ. Եկեղեցի 1. Ս. Աստուածածին, և մէկ Ծաղկոց՝ խեղճ վիճակի մէջ: Կարուշլայի մէկ կողմն ժայռի մը փակած է Ս. Կոզմոսի և Դամիանոսի մատուռն, որ ընդհանուր ուխտատեղի է, երեք փոքրիկ խորանով, տանիքի վրան ալ ունի երեք կիսախորան, ուր պատարագ կը մատուցուին. մատրան դրան դէմ երկու սենեակ կայ Մատաղատուն անունով՝ ուխտաւորաց համար. խաչքարեր և ծառերը կը զարդարեն այս վայրը, որ Կարուշլացւոց գերեզմանատունն է, և քանի մը Առաջնորդաց շիրիմներ ալ կան: Այս մատրան արդիւնքը Կարուշլացիք իրենց սեպհականած են, իբրև թէ իրենց վարձք բերող կալուած մը լինէր, ուր խիստ յարմար է կեդրոնական ուսումնարան մը լինելու: Եփրատն այս մատրան տակի ժայռը

համբուրելով՝ գլուխը կը դարձնէ յարեւելս։

Ապուշեխին մօտ է Ջերագ թաղ. և Մայր-ընդուրիկ, զոր իբրև ուղղելով կ՚ըսեն Մայր-ընդունակ. Ագրակներու Աստուածածին, Ս. Մինաս, Ս. Թորոս, Ս. Սահակ, լեռան Ս. Թորոս։ Կամրկապայ մօտ է Ս. Ցակոբ, Ս. Թորոս, և Ս. Ներսէս։ Կաշոյ գեղէ մը գտնուանք գրեթէ խառն են կամրկապին, փոքր ձորով մը անջրպետուած։ Կաշոյի բնակիչքը իբր հարիւր տարի առաջ տաճկացեալ Հայք են, կ՚ըսէին. և ամէն մարդ գիտէ թէ տակաւին թաղեր և տոհմեր կան Հայ անունով։ Կը պատմեն թէ Կաշոցիք՝ Թրքաց բռնութենէն ազատելու համար կ՚որոշեն տաճկանալ, և կը տաճկանան. գեղին քահանայն այգին կը գտնուի այս ժամուս. երէցկին կը վազէ գոյժ տալ երիցուն, թէ, փութա՛, գեղացիք ամենքը տաճկցան։ Երէցը կը դառնայ կը պատասխանէ. « Վո՛յ, ֆօրը, նէ պահա հնավլաման՞ մը աշըլէրըմը, չիւն չէքտո՛ն Տաճիկ օլմաղամ »։ Խեղճ երէցկինը այլայլած, մազերը փետտելով կը թողու ժայռի մը գլուխ. ձայն կ՚արձակէ կամրկապցւոց. « Ես մինակ մնացի Հայ. ձեր Աստուած կը սիրէք, կամրկապցիք, իմ հոգւոյն խունկ ծխեցէք, աղօթք ու պաշտօն կատարէք »։ Եւ կամրկապցւոց աչքին առջեւ զինքը կը գահավիժէ, Եփրատին հոսանաց մէջ կը սուզանի. Կամրկապցիք անոր մարմինը կը հանեն կը թաղեն, ամեն տարուան անոր գերեզմանը կ՚օրհ-

նուէ, և ամեն կիրակամուտին կամրկապու մայ-րերը երբ տանիքը խունկ կը ծխեն սոյն ա-ղօթքը մրմնջելով, « Աստուած ողորմի հին ու նոր անցաւորաց, անօրէնէն սպան-ուածին, ծովն ու ցամաքը մեռածին, ճամ-բայ շինողին, աղբիւր բերողին, կամուրջ կապողին, քարերը խատակողին » ևն., կը յա-ւելուն ասել, « Աստուած ողորմի Նաչայի Ե-րէցկին Մամային » ։

ԼԻՃՔ գիւղ, հինգ ժամ հեռի Ակնէն. Եկեղեցի 1. Ս. Աստուածածին ։ Վարժարան 1. բայց քայքայեալ ։

ՆԱՐՎԷՐ գեղ, չորս ժամ հեռի Ակնէն. Եկեղեցի 1. Ս. Մինաս ։ Վարժարան 1։

Ասոնք են Ակնայ վիճակի հայաբնակ գե-ղեր. Թէպէտ Բեէնկան ալ Ակնայ վիճակն է, բայց քաղաքականապէս Ցիւրիկին էր. Նաև Զորակ և Մուշեղկայ գեղերն ալ չորս տուն Հայ կայ, բայց Հայ—Հոռոմի գեղեր են ։ Մուշեղկայ Հայ—Հոռոմաց Ս. Գէորգ տաճա-րին մէջ աջակողմեան խորան և Մկրտու-թեան աւազանը Հայոցս է. Վանք գեղի Հայ—Հոռոմոց Ս. Գէորգ տաճարին կից բա-կին մէջ Ս. ՍԱՐԳԻՍ անուանով մատուռ մը կայ Հայոցս, ուր տարին միանգամ Ս. Պատա-րագ կը մատուցանեն Հայք ։

Գրեթէ ամեն գեղերու մէջ Թուրք կայ ։ Ամեն եկեղեցիք ալ պայծառ և հոյակապ են. տուները և կենցաղավարութիւնները քաղա-քացւոց պէս, ամենքն ալ պանդխտութեամբ

կը փատտկին, և ամենուն տունն ալ՝ շատ, քիչ, գրքեր կը գտնուին. Սաղմոս և Նարեկ, վառօդ և գնդակ մի և նոյն սենեկի մէջ կը պահուին. տնական անօթ և զարդուց զգեստ, հրացան և սուր՝ մի և նոյն պատէն կախուած. ապահովութիւն չկայ առանց զէնքի դռնէն դուրս ելնել. պահոց, աղօթից և աւանդութեանց նախանձախնդիր են. բայց սրտի անկեղծութիւն քիչ ունին, և իրարու որոգայթ լարել խիղճ չեն ըներ. բայց թէ յայլոց և թէ իրենցմէ լսածներս բաղդատելով տեսածիս հետ, շատ բարեփոխուած էին, մանաւանդ յուսատու երիտասարդներ կային. քիչ ժամանակի մէջ կրնան նախանձելի ընել Ակնայ վիճակը։ Երեք ընկերութիւն կար Ակնայ մէջ. Ազգասիրական, Ուսումնասիրական, և Շահաբեր. ոմանց դրամագլուխներ քոնսօլիտ են, ոմանց ոսկի։ Գեղերու մէջն ալ ընկերութիւնք կը յառնեն և կը ննջեն։ Ընդհանրապէս նկատելով՝ վարժապետները պակաս չեն և արժանի են այն պաշտօնին. բայց ուսանողք քիչ են, ահա քաղաքի և գեղերու ամբողջ ուսանողաց թիւ՝ 782 մանկունք, 182 աղջկունք։ Եկեղեցեաց և վարժարանաց կալուածներէն շատը Պօլսոյ մէջն են, ինչպէս նաև անհատներուն ալ։

Քանի մը գեղեր կան Հայ—հոռոմոց, որք են Ջորակ, Մուշեղկայ, Վանք, Ծրզու. որոց բնակիչք գրեթէ երբէք տարբերութիւն չունին Հայոցմէն, իրենց ընտանեկան

և վարժարանի լեզուն Հայերէն է, նամակներ և տումարներ Հայերէն, վարժապետ Հայ, քահանայք անգամ Յունարէն չգիտեն խօսիլ, և շարունակ յարաբերութեանց մէջ են Հայոց ժողովքներու և առաջնորդարանին հետ, միայն քահանայից գլխարկը, եկեղեցեաց զգեստները և ծէսերը Յունական են. եկեղեցական ընթերցուածքները մաս մը Հայերէն են, օրինակ, Աւետարան, Ճաշու գիրք, Ժամագիրք, բայց պատարագն Յունարէնէ Հայերէնի թարգմաներով կ'ընեն, Հաւատամքն և Սուրբ Աստուածն Յունարէն. իրենց անունները արդարև Հայ ու Հռոմէն խառն: Յունարէն լեզու կամ գիր գիտցող խիստ հազուագիւտ է: Ասոնք Յունական կայսերաց բարեպաշտութեան արդիւնքներն են, Քաղկեդոնիկութեան աւարները. երեւի թէ մի և նոյն գեղերէն եղեր են անոնք որ Հայ մնացեր են, ուստի հարկ եղեր է մի և նոյն եկեղեցին կիսել, օրինակ. Վանք գեղի մէկ մասուն Ս. Սարգիս՝ Հայոցս, միւսը Ս. Գէորգ Հայ—Հռոմոց, և Մուշեղկոյ գեղի եկեղեցւոյ մէկ խորան և Մկրտութեան աւազանը Հայոցս մնացը, միւս երկու խորան՝ Հայ—Հռոմոց, եւ: Մաս մը Հայ—Հռոմեններ ալ Չմշկածագու գեղերն անոնք որք մօտ են Ակնայ:

... կան և քանի մը գիւղօրայք, որոց բնակչաց համար նոյնպէս կ'աւանդեն թէ ցանկացեալ Հայք են, և իրենց բարբառոյն

մէջ Հայերէն բառ շատ գործ կ'ածեն․ տան, այգւոյ, թաղի, արտի անունները Հայ են ցայսօր, բայց իրենք շատ քաջախ են։ Ահա այս գեղերէն քանիններու անունները, Փափկեր, Արգօյ, Ագրակ, Ապրանք, Սանդուխ, Վերին գեղի ագրակ, Միջին գեղ, Վան, Ագուբիկ, Սերկեւիլ, Գաղան, Հողդար, Ալոս, Աւերակ, Հապպատ, Թալաշ, Ոսկէք, Հարանոս (իբր թէ կ'ըսեն Հարեզանոց), Բաղմաշէն, Կեճակլի, Փշատի են։ Դարձեալ Նփրատայ միւս կողմն, Չմշկածակու հողը, Ս. Թորոս Նոփլեւի ըսուած գաւառն, ամբողջ գեղարանակները Ցաճկացեալ Հայք են եղած։ Այս ո՞րքան թեթեւ է եղած անոնց հաւատքը, մի թէ որոնք որ ցայսօր մնացեր են Հայ, պակա՞ս բռնութիւններ կրած են․ երեւի թէ իրենց կրօնականներն ալ Կաշոյի երիցու երիցակիցներէն են։ Ո՛հ, մարդ չկրնար առանց արտասուելու լսել և դիտել ասոնք։

Ակնայ և գեղերու Հայ բնակչաց աճումն զգալի կերպով նուազ է․ ասոր պատճառը իրենց կենցաղավարութիւնն է մասամբ մը, և մանաւանդ յաճախ պանդխտութեան մէջ օրեր անցընելն։

Շատ ձեռագիրներ կը գտնուէին յԱկն և իւր գեղերը․ բայց ինչ որ եկեղեցեաց կը վերաբերէր՝ ընտիրները թանգագին անօթոց և զգեստուց հետ գրեր դարաններն պահեր էին պատերազմի երկիւղէն․ իսկ ձեռքի վերայ գտնուածներուն ցանկը և յիշատակա-

րանաց օրինակութիւնը միջոց չունեցայ առ-նելու ։ Ճաշու գիրքէն մեծ դիրքով՝ ընտիր մագաղաթ, ոսկէնկար պատկերազարդ, երկաթագիր Աւետարան մը, կողքերը արծաթապատ, և չորս անկիւնը չորս մասունք զետեղած, ակունքներով, մէկ խօսքով՝ արուեստի և մեծագնի գանձ մը, Ապուշեխու եկեղեցին տեսայ, զոր կ'անուանէին Սասնոյ կամ Աստման Աւետարան. բայց յիշատակարանը կ'ըսէր որ Սեւաստացի երկու եղբարք յօրինած են այն արուեստներ պատկերաց և կողքերուն վրայ, ուրեմն ինչո՞ւ պիտի ըսուէր Սասնոյ Աւետարան, գուցէ լինէր այն սատանութեանց կամ Աստուածային ցասմանց օքերը դուրս հանելու և կարդալու համար ։

Ակնայ և իր շուրջ եղած լերինքն են՝ Սարը չիչէք և Մնձուր լերանց շղթան, այն է Ոլանըք, Դուժիկ, որոյ մէկ թեւն է Խոստա ճանապարհներ խիստ չար են, քար, կաղան, սար ու ձոր ։ Ամբողջ վիճակը լեռնային է, և Քրդեր կամ Գըզըլպաշներ կը վխտան ամեն ուրեք ։ Թէպէտ Հայք բաւական առուտուր ունին անոնց հետ, բայց կարի շատ կը վնասուին. կարաւաններ կը կողոպտուին, անասուններ կը յափշտակուին, գոյքեր և ապրանքներ կը գողցուին, ապահովութիւնք տեղի կ'ունենան. միայն այս տարբերութիւնը կայ, որ Հայերն ալ զինեալ լինելով և քաղաքագիտութիւն ունենալով՝ երբեմն իրենց քաջութեամբ, երբեմն կաշա-

վարութեան միջոցաւ, երբեմն ալ բարեկամութեամբ՝ իրենց աւարներ ետ կը վերադարձնեն ։ Գրեթէ ամենօրեայ դէպքեր էին նախիրը տանել, ջորիներ խլել, Պօլաէն եկողները թալանել, մարդ վիրաւորել, եւն ։ Իբր տարի մը յառաջ Ովաճըրգցի նշանաւոր աւազակ մը կը կալանաւորուի կառավարութենէն և կը ղրկուի Խարբերդ կը բանտարկուի. այս միջոցին առեւտրականութեամբ Ովաճըղի կողմն կը գտնուի Ակնցի Պօղոս անուն Հայ մը, Քրդեր զայն իբրև պատանդ կը բռնեն և Ակնցւոց իմաց կու տան. Եթէ մեր մարդ (Քիւրդն) չազատէք, Պօղոսը կը սպաննենք ։ Երկար ժամանակ կը պահեն. Քիւրդը բանտէն չազատուիր. և խեղճ Պօղոսը որ հնար գտած է եղեր փախչելու, ետեւէն կը հասնին, և քարերու վրայ կը դընեն կը մորթեն. որոյ ողորմելի ընտանիք ամեն առաւօտ երկու ժամէն աւելի լաց ու սուգ կ՚ընէին այն ժամուն, երբ լսեր էին Պօղոսին խողխողման գոյժը ։

Գաւառիս բերքերը կարի նուազ են. միայն քիչ մը չերամ ունին և ճէհրի. բոլոր իրենց պէտքերը դրսէն կը գնեն. հաց, հագուստ, փայտ, եւն ։ Ամեն արուեստները տեղական պիտոյից համար կը գտնուին. Նշանաւոր արհեստն է մանխսա գործել և կօշիկ կարել ։

Միակ վանք մը ունին, Ս. ՓՐԿԻՉ, Ակնէն 3 ժամ հեռի, մօտ Լիճքին և Բենկային, ո-

րոյ մօտ եղած քարի մը վրայի Ս. Երեւումն
մատուռի անուամբ՝ ԵՐԵՒՄՑՆ վանք ալ
կ՚ըսուի ։ Վանահայր և Միաբան չունի. Գա-
ւառական վարչութեան և Առաջնորդին տես-
չութեան ներքեւն է ։ Դիրքը բարձր, հովա-
սուն, և ըմպելի ջուր ունի. շէնքերը մե-
ծաչէն՝ այլ հնացեալ ։ Ծանրագին Ս. անօթ-
ներ և զգեստներ ունի, զորս առ ահի Քըր-
դաց՝ Լիճք գեղի մէջ կը պահեն և մաս մ՚ալ
Ակնայ մէջ ։ Ունի 20 ի չափ ընտիր արտեր,
և Փոլայ մէջ կալուածներ, և այլ և այլ նը-
ւէրներէ տուրքեր և պտղիներ ։ Վանական
խորհուրդ անունով 7—8 անձինք ընտրուած
էին տեղական վարչութենէն, որոց անմիջա-
կան հսկողութեան տակն էր վանքը. ասոնք
անցեալ տարի Հրաշագործ սրբազանը հա-
մոզելով, կամ լաւ եւս իրենք անկէ համո-
զուելով, վանահայր կարգած էին վանքիս,
որ խոստացեր էր թէ՝ Շատ հարստութիւն
ունիմ ես. Ծերացեալ եմ. Ունեցածս վան-
քին կը թողում. Վանքը կը շինեմ. Վարժա-
րան կը բանամ. ևն. ևն. քանի մը ամիս նըս-
տելէն զկնի, կ՚ելնէ պտղիներ կը ժողվէ. Այս
ալ իրաւունքս է ըսելով՝ ծոցը կը ծրարէ,
և մի ալ Բենկացի ուխտաւոր գալու առթիւ
Արքէն ձեռք մը զգեստ, սկիհ, ևն. բերել
կու տայ պատարագ կ՚ընէ, վար կը դնէ.
կը տեսնէ որ ետ ուզող չկայ. Ելէք երթանք,
կ՚ըսէ, ո՞ զգեստք և սրբազան անօթք.
դուք ինծի պէս Սրբազանի պէտք ունիք,

և ես ձեզի։ Եւ գեղէ գեղ ժողովք ըն... յանուն Ս. Վանիցն, կը հանէր Տիւրիկ. ... ղեքի մէջէն ալ կը ժողվէ, և վերջապէս ... վելով հասած էր Սեւաստ, ուր անտանք ... քըն Ս. Սարգիս եկեղեցւոյ անձնական ... ամսաէ 'ի վեր փռուած ու նստած, քանի մ... քահանայ ձեռնադրած էր, և դեռ կը ժող... և կ'օծէր։ Ակնցիք ակն ունէին թէ Ն. Սր... նութիւն իրենց վանքի համար ժողոված... պիտի առնուր դառնար. բայց յանկարծ... մնացան որ վանքէն առեր ու տարեր է... կային ոմանք որ չէին կրնար հաւատալ թէ Արքաղան մը խաբող լինի, տարօղ մ... Բայց ասիկայ հրաշագործն է, և արդար... Ակնցւոց պէս ճարտարները խաբել ու կո... ղոպտել՝ հրաշքի մը չափ գործ է. Չէին հա... ւատար զգեստները տանելուն՝ աւելի իրենց ամօթ բերելուն համար. բայց ո՞ւր են ըն... գեստները, չկան։ Քրդերէն պահպանած էին, և Արքաղանի մը կողոպուտ տուած....

Ակնայ և Կամրկապայ ազգայնոց ստէպ ստէպ թախանձանքները չկրնալով մերժել, Ս. Պատարագ մատուցինք և քարոզ խօսեցանք։ Ազգային զգացմամբ զեղուն անձինք և եռանդագին երիտասարդներ իրենց բանախօսութեամբ և երգերով մեծ մխիթարութիւն ազդեցին սրտիս։ Վերջին գիշերը մեր ազնիւ մտերմին, և իւր բարութեամբ բազմաց ծանուցեալ, Պօլսոյ Գասըը — գեղ բնակող Հազարեանց Կարապետ ...

տունը օթեցինք 'ի Կամրկայ ։

Չեմ կրնար չյիշել կոմըններ լեռն, յորմէ կը բղխին 40 ակունք ջինջ և սառն ջրեր, որդարեւ իբրև սափինք կոյլու, մօտ ընդ մօտ, Ապուչեխու և Կամրկապու վերեւ. տեղի զուարճալի և երանաւէտ, ուր կ'երթան տաք օդերուն գառն ճաշակել. այս ջրերը տասը առու բաժնուելով կ'ոռոգեն յիշեալ արուարձանները ։ Նկատմունք մի եւս, Ակնայ քանի մը գեղերու անունները «կայ» վերջաւորեալ են. ինչպէս Մուշեղկայ, Բենկայ, Արակայ, Աշոտկայ, ևն. կը ցուցնեն թէ՝ կայան կամ տուն եղած են ասոնք Մուշեղի մը, Բենիկի մը, Արայի մը, Աշոտի մը, ևն ։ Գուցէ ժողովուրդն ասոնց պատմութիւններ ալ աւանդութեամբ պահած ունի, ափսո՜ս որ մեր ժամեր չէին ներեր հարցնելու և գրելու այսպիսի բաները, որ պատմութիւն լուսաւորող ճառագայթներ են ։

Ակնայ քաղ. կառավար. գայմագամութիւն է՝ Խարբերդի մեծ միւթասարիֆութեան ներքեւ. գայմագամն իւր ձեռքի տակն ունէր ինն ոստիկան. . . ։

Հեռագիր չկայ Ակն, որուն անչափ պէտք ունին ։

Ուրախութեամբ կը լսեմ թէ Պոլիս գըտնուող՝ Ապուչեխի Հայ որդիք Նոր ընկերութիւն մը կազմեցին, բարեկարգ և յառաջադէմ վիճակի մէջ դնելու իրենց գեղին վարժարանը ։ Ահա գեղեցիկ նախանձ ։

1865ին Ակնայ մէջ Նահապետական նունով ընկերութիւն մը կազմուելով, քա մը տարի ետքը գեղ մը գնեցին Մշոյ դ տին մէջը իմ ձեռքովս. այս ընկերութեա հիմնադիր կը համարուի Թիմուրեան Միսա որ իբր առաջարկութիւն առ իւր ընկեր տետրակ մը հրատարակած է. տետրա պարունակութենէն մաս մը յառաջ կը բե րեմ հոս, որով կը հասկցուի Նահապետա կանաց նպատակն : Ահաւասիկ.

«.... Ամենաքարին Աստուած մի սորվեցուց և պատուիրեց թէ՝ «Քրտամբ ե րեսաց քոց կերիցես զհաց քո, և թէ՝ գոր ծեսցես զերկիր, եւն:

«... Տես երկրագործը իր երկիր բրելո արօրը անզգայ հողոյն կը զարնէ և քաղ քացւոյն անկէց բերք կամ ուտելիք կը հանէ տե՛ս քաղաքացին ալ թէ ինչ կ՚ընէ, երկա ծայրն ալ սուր գործիք մը ձեռքն առա կերպ կերպ խորամանկութիւններով, նեն-գութիւններով և չարագոյն հնարքներով նախ իր հոգւոյն և հետեւաբար ընկերին կը վնասէ. երկրագործը իր ժողված բերքերը ո՛րքան առատապէս քաղաքացւոյ կ՚ընծայէ ու ինքը միայն աւուր պարէնով կը բաւա-կանանայ : Տե՛ս նաև քաղաքներուն բազմա-թիւ մարդիկները, միլիոնաւոր դատարկա-շրջիկները անոնց աշխատանքովը կը կերակ-րուին, պալատները և մեծամեծ տուները

երկրագործին աշխատութեամբը կը զարգարուին և մեծամեծ ամարանոցները և վաճառանոցները դարձեալ երկրագործին քրտնաջան աշխատութեամբը կը լեցուին ։ Այս ամէն բաներու վրայ տե՛ս ինչ կերպ վարմունքով կը վարուի քաղաքացին երկրագործին հետ , անանկ որ զանոնք տեսնալն անգամ նախատինք կը սեպէ իրեն , որն որ արդէն միշտ անոնց մատուցնելովը ժողվուած արդիւնքներն և անոնց աշխատութեան արգասիքներն են որ ինքը առատաբար կը վայելէ։ Թողունք ասոնք , մոռնանք անգամ մը ու տեսնանք թէ՝ ի՛նչ գործ որ բռնենք նէ , մեր ընկերին վնաս մը տուած չենք ըլլար ։ ինչ ալ ըլլայ նէ , ամէն մարդ կը ջանայ որ իւր բաղդը , իւր շահը և օգուտը ընկերոջը վնասին մէջը փնտռէ ․ զորօրինակ՝ եթէ գնող եմք՝ ծախու առնելու բաներնիս թեթեւ գընով մը , կամ արժէքէն շատ մը վար՝ կէս գնով առնել կը ջանամք ․ իսկ եթէ վաճառող՝ ծախելիք բաներնիս կ՚սկսիմք գովել ․ զանիկայ հազուագիւտ բան մը ցուցնել , որպէս զի իր արժէքէն տասնապատիկ աւելի գնով ծախելու կարենամք համոզել ։

« Տեսնանք երկրագործինն ալ ասա՞նկ է , ո՛չ , հապա իւր հողին մէջ ինչ սերմ որ դրաւ նէ՝ ՚ի հարկէ նոյնը պիտի հնձէ ։ Ահա այս է քաղաքացւոյն և երկրագործին մէկ մէկու դէմ ընթացքնին ․ տեսնենք թէ որո՞ւն ընթացքը Աստուծոյ կամացը համաձայն կըր-

նանք գտնալ։ Ամէն բերան կը խոստովան[ի] որ երկրագործինը համաձայն է, և մար[դ]կային ընկերութեան չահաւէտ և օգտակ[ար]

«․․․ Աստուծոյ ահաւոր դատաստան[ին] սարսելով, և ժամանակիս կենաց համար․․․ գիւրին կեանք մը անցունելու տաժանա[կիր] հոգերէն ազատելու համար՝ ցանկացինք ․․․ հաղէփական անուն ընկերութիւն մը կազմե[լ]լու, որպէս զի անով կարենանք երկրա[գ]գործական արդար վաստակոց համար ․․․ խատել և միջոց ձեռք բերել։ Այս ալ մե[ր] քաղաքին դիրքը (Ակնայ) չհամեմատելով մէյմը որ քաղաք տեղ չըլլար անոր համար, և մէկ մ'ալ բաւական հող չգտնուելուն համար, ուստի սանկ հաճութիւն տրուե[ց]ցաւ որ քանի մը անձինք երթանք Հայաս[տ]տանի մէջ մեր Օսմանեան Տէրութեանը հա-ղերուն արգաւանդ տեղ մը գիւղ մը կազ-մել և անդ միակերպ ըստ թուոյ ընկեր ըլ-լացող տանց պարզ տուներ շինել, և պատ-րաստել ամէն երկրագործական վերաբերեալ գործիքները, տեղւոյն կուսակալի հաճա-թեամբ 'ի Կոստանդնուպօլիս դիմել և Տէ-րութեան Բարձրագոյն Դռնէն հրաման առ-նելով՝ քանի տուն որ ընկեր եղած ենք նէ՝ գաղթենք 'ի Նոր Հայ անուանուած գիւղը, քանի մը տուն այս կողմի խեղճերէն տանե-լով և քանի մը տուն Հայաստանի մշակներ 'ի գիւղ բերել բնակեցնելու. մեր դրամը և քաղաքականութիւնը անոնց աշխատութեա-

հետ խառնելով, բնական ընթացքով մեր մարմնոյ կենաց պիտոյքը հոգալով և բարոյականութեամբ ալ մեր հոգւոյն պէտքերը պատրաստելով, տանելով հետերնիս մաքրակենցաղ քահանայ մը և Աստուածային եր-գով զարդարած, իմաստուն վարժապետին, հոգևոր պաշտօնէին զՍուրբ Եկեղեցին զարդարել ամենայն փառաւորութեամբ թէ նիւթականաւ և թէ զինուորեալ եկեղեցաւ, և իմաստուն վարժապետաւն ալ թէ մանչ և թէ աղջկանց մոքերուն անդաստանը սերմանել զբանս Սուրբ գրոց, և ուսուցանել անոնց ճշմարիտ բարոյականութիւն Քրիստոսի կամաց, Քրիստոնէութեան Աստուածահաճոյ ուսում և ընկերահաճոյ քաղաքականութիւն. աւելորդ սեպելով անօգուտ ուսումները որ մեր ընթացքին և պարզ վարուցը չեն վերաբերիր։

« Ինչպէս որ ըսինք, թէ տուները միակերպ ըլլայ պիտի. և զարդարանք ալ չունենայ պիտի, նոյնպէս մեր հագուստներն ալ համեստ ու պարզ ըլլալու է. բաւական համարելով բրդէ և բամպակէ զգեստները, որոնք որ մեր մարմինը պիտի պատսպարեն, ինչպէս որ մեր Նախնի Սուրբ Հարք և առաքինի անձինք այս կերպ պարկեշտ հագուստներով ինքզինքնին կը պատսպարէին, ասոնց պէս Նախնի Սպարտացիք ։ և իմաստուն փիլիսոփայք ալ խորին կռապաշտութեան ատենները։

«... Ասոնց նման կերակուրնիս ալ պարզ և բնական յարմար ընել. ինչպէս որ բնութիւնը պարգեւեր է մեզի, աւելորդ սեպելով արուեստաւոր զեղխութիւնէն յառաջ եկած ամէն բաները, որոնք որ օգուտ չունին ու վնասակար են: Հերիք սեպել մեր աշխատանքովը մեր հողէն ելած բերքերը որ Աստուած կը պարգեւէ, ոչխարին կաթը, մեղուին մեղրը, ցորենին պարզ հացը, ծառի պտուղները, ծովին ձուկերն ու օդին թռչուններն միթէ չի՞ բաւեր մեզի, պարզապէս եփելունը եփել, չեփածն ալ չեփած ուտել որ տեսակներն ալ կը փոխենք ու հազարումէկ տեսակ խմորեղէններ ալ կը հնարենք:

«Եւ մեր անդաստանին պտուղներուն մշակութեան աշխատանաց արդեանցը և ընտանի-անասուններու ու վայրենի ընտանեացուած վաստակներովը բաւական ըլլալով՝ յօտարութիւն չգնալ, և մէկզմէկէ վաստկելու միջոցները խափանելով անանկ կանոն մը հաստատել որ չըլլայ թէ պանդխտութեան երթալու կարօտ ըլլանք, վասն զի շատ կը վնասուինք և կը տանջուինք. որովհետև մարդկային սրտին դէմ է և ընտանեացմէ զատուիլը անտանելի է: Այսպէս ըլլալով մէկ մէկու օգնականութենէ զուրկ կ'ըլլան թէ տուն և կնոջը, թէ հօր և թէ որդւոցն: Տեսէ՛ք ահա երկրագործը ազատ է այս անտանելի վիճակէն և երջանիկ է, և Աստուած

ալ չուզեց որ ասանկ ըլլայ :

«Աստուծոյ պարգեւ ըրած և մեր աշխատութենէն քաղած արդիւնքէն կամ արմըտիքներէն նախ տէրութեան տասանորդը արդարապէս հանել տալու է, և երկրորդ մէկ բաժինն ալ գիւղին հասարակութեան ընծայել՝ առաքինութիւն վաստկելու նպատակաւ, և երրորդ ամէն տուն իւր տարեկան պիտոյքը անթերի լեցունելէն ետեւ՝ աւելցածն ալ աւուր արժէքի գնով ծախել և կամ ծախելու խրկել, ամենեւին չպահել թէ սուղ ծախենք, որ աւելի վնասակար ըրած ըլլանք, վասն զի ասանկով մարդկային ընկերականութեանը մեծ վնաս տուած կ'ըլլանք և Աստուծոյ ժողովրդեան անէծքը կ'ընդունինք, ըստ այնմ թէ՝ «Ցորենը պահողին ժողովուրդը անէծք կու տայ :

«Կանանց հագուստի զարդերն համեստութեան փոխել, փուճ ու մուճ բաներ շինելու ու կարելու տեղն՝ բամպակ և բուրդ մանելու կրթել և զբաղեցնել, որոնք կտաւի և վերարկուի գործածելու համար թէ տունի և թէ յատկացեալ գիւղին մէջէն գործուի :

«Գիւղին գործածութիւնները չորս անձանցմէ բաղկացեալ Տեսչական ժողովի մը ձեռօք տեսնելու համար չորս անձինք ընտրուելով առաքինի և ալեօք պատկառելի ըլլան, որոնք ամէն խնամքները ընելու աշխատին գեղին հասարակութեան օգուտին հա-

մար և այնպէս կառավարեն գիւղի ժողովուրդը, որ ո՛չ վէճի պատճառ ըլլայ և ո՛չ տարաձայնութեան։ Վէճի պատճառ չըլլար երբոր հասարակութեան միօրինակ խնամք տանին և դատաստան տեսնալու գործ մը պատահի նէ, զարմանալով մը խրատունք չաւնեցողին ըսել. Թէ ընկե՛ր, ինչպէս վստահացար որ այդպէս ըրիր, ուրեմն մեղանչեցիր ըսեն. երբ ներում խնդրէ՝ ներեն, ալ բընաւ չըլ յիշելու պայմանաւ, վասն զի Քրիստոս այսպէս կը հրամայէ։

« Իւ տարաձայնութեան պատճառներն ալ վերցունելու փոյթ ունենան. ինչպէս տուները միաձեւ ըսինք, որ միւսն չը ցանկայ, նոյնպէս ալ զգեստները միօրինակ համեմատ ըլլալու է. աս ալ գիտնալու է որ Թէպէտ աղքատը հարուստին հագածին չի կրնար կարողանար հասնելու, բայց հարուստը կրնայ աղքատին համեմատիլ։ Ասոնց պէս տէրութեան օրինաց համեմատ արքունական տուրքերը առանց ուշացընելու վճարելու փոյթ և ջանք պիտի ունենայ Տեսչական ժողովը, անանկ որ ուզած ատեններին մարդ մը գայ ուզէ նէ՝ եկած օրն կամ միւս օրն անմիջարար տան ու ճամբեն։ Ասով իրենց հաւատարմութիւնը տէրութեան իբրև մշտափառ ճրագ մը փայլեցնեն, և դրացի գիւղերուն հետ ալ ամենայն իմաստութեամբ և սիրով վարուելու միջոցներ ձեռք բերելու ենք, որպէս զի երբ դուրսէն անծանօթ

թշնամի մը պատահելու ըլլայ՝ ստիպուին դըրացի գիւղացիք ալ պաշտպանելու զինք գիւղը, կը պարտաւորին նաև դրացի գիւղացւոց մարդասիրութեամբ խնամք տանել, և անոնց մտաւորական և նիւթական պիտոյքներ ընծայել, որով առաքինութիւն ըրած ըլլամք։ Այսանկ կացութեամբ թշնամի բնաւ չենք ունենար և մէկը մեզի հակառակ չի կենար, ինչու որ նախապէս Աստուած հաշտ կ՚ըլլայ ժողովրդեան հետ։ Աստուած այն ժողովրդին վրայ հաճ և հաւան եղած ատենը՝ ո՛վ կրնայ չարիք հասցնել անոր. այլ ինչպէս որ կ՚ըսէ Սուրբ Գիրքը «Օրհնեալ զանդըս և զանդաստանս և զքերս,» արդարև Աստուծոյ ողորմութիւնը ու օրհնութիւնը անանկ տեղեր անպակաս կ՚ըլլայ միշտ։

« Նաև կրօնականի վերաբերեալ հոգերուն, եկեղեցական պաշտօնեայն և իւր ընկեր բարեկիրթ վարժապետը ուսուցանէր անձամբ կրնան ժողով մը կազմել և ամենայն բարեկարգութեան միջոցներով ձեռք բերել և ծաղկեցունել ամենայն փառաւորութեամբ։ Մեր փառասիրութեան բաղձանքը առաքինութիւն գործել և Սուրբ Եկեղեցինիս փառաւորապէս զարդարել պիտի ըլլայ, վասն զի պիտի ըսենք. «Մի՛ մեզ Տէր մի՛ մեզ, այլ անուան քում տուր զփառս.» Այսպիսի գեղեցիկ կարգադրութեամբ և համաձայն Հայաստանեայց Սուրբ Եկեղեցւոյ և մեր Լուսաւորչական դրութիւնները և աւան-

դութիւնները պահելով՝ ի՛նչ զանազան առաքինութեան պտուղներ կ'երեւի և ինչ մաքուր վարքեր կը փայլէ անդ ։ Աս ասանկ ըլլալէն ետքը շատ մը բարի մարդկանց նախանձելի և բարի օրինակ մը կրնայ ըլլալ․ և ո՛վ չի փափաքիր թէ հոգեւոր և թէ մարմնաւոր երջանկութեան պատճառ եղող միջոցին ձեռք զարնել, որ արդարեւ ստուգապէս Նոր մարդ և Նոր Հայ գիւղ անուանելու իրաւունք կ'ունենայ . . . . . . » ։

Արդարև նախանձելի, և բարի օրինակ լինելու արժանի ձեռնարկութիւն, ոչ միայն Ակնայ Հայոց համար, այլ պէտք է ըսել թէ և Պօլսեցւոց և այլ շատ տեղերու համար ։ Այն գեղը (Շքաւդիան) զոր ես գնեցի այս ընկերութեան, իբր 100 ոսկի վճարելով․ ունի իրեն լեռնային և դաշտային մասն, անտառ, արօտնոց, ուստի առատ խոտ կը հնձուի, աղբիւրներ և արտեր, Ս. Կարապետի վանքի հողերուն գրեթէ կից․ 15 երկրագործ տուն կրնայ բաւականանալ ընդարձակօրէն ։ Թիմուրեանի պարզասիրութիւնն ու հաստատամտութիւնը չունեցան միւս ընկերներն․ ո՛րը եկաւ ու վերադարձաւ, ո՛րը երբէք չեկաւ, ո՛րը իր կողմէն ուրիշ մարդ զրկեց, իսկ ինքն Թիմուրեան յետ քանիցս անձամբ գալուն ու գնալուն, վերջապէս ընտանեօք հաստատուեցաւ Մշոյ մէջ․ անշուշտ չկրնալով ՆՈՐ ՀԱՅ գեղն մինչև ցայսօր նա-

հապետական բաղձացեալ վիճակին վերածել. թէ՛ առանց ընկերաց մնալուն, և թէ երկրին ու քաղաքականութեան պատահաբեր դժուարութեանց համար։ Փափաքելի էր որ մեր դրամատէր Հայեր իրենց ուշը դարձնէին Հայաստանի մէջ հողեր գնելու. հոն Լորտի պէս ճոխ պիտի ապրին, Հայ մշակի պէս առողջ, և մեծ ազդեցութիւն պիտի ազդեն տեղական կառավարիչներուն, Թուրք և Քիւրդ պէյերուն վրայ, իբրև օրէնսգէտ և քաղաքագէտ անձինք, և Հնդկաց Ռաճայի մը չափ հարուստ պիտի լինին հողով, բերքերով, ձիերով և բազմաթիւ անասուններով։ Թող չսարսափին այնչափ Հայաստանէն հասած չարիքներէն, միթէ պակա՞ս են նոյն իսկ Եւրոպիոյ և Մայրաքաղաքիս մէջ աւելի չարաչար չարիք, միթէ նոյն իսկ թագաւորներ և պաշտօնակալներ չե՞ն զարնուիր։ Միթէ չուկայի խանութներ, տուները ամեն օր գողոց ձեռքը չե՞ն. միթէ Բերայի փողոցներուն մէջէն անգամ մարդիկ չե՞ն կողոպտուիր, և թաղերու մէջ՝ իրենց տանց մէջ չե՞ն սպանուիր։ Թողունք ինչ որ ախտն ու մոլեգնութիւն կ'սպանեն, եւն, եւն։ Հայաստանի ամենամեծ չարիքը իւր կարող որդւոց հեռի մնալն է; և զանի աղքատ ու անպաշտպան ձգելը. պէտք է հողեր գնել, պէտք է տեղ տեղ փոքրիկ գանձ+ հաստատել, որոնք գոնէ Հայը պանդխտութեան դիմելէ ետ կը կեցնեն, պէտք է օրէնսգէտներ և բժիշկներ երթան հոն. այս

երկու դաստուն ալ մեծ ասպարէզ կայ Հայաստանի մէջ, որոցմով կը պաշտպանուին գոյից և կենաց զոհեր: Հայաստանի մէջն է բուն ՀԱՅԿԱԿԱՆ խնդիրն, և մեք Պէրլինի մէջ կ'որոնենք զայն . . . :

## ԱՐԱԲԿԻՐ ՔԱՂԱՔ

Յուլիս 18: Կամրկապէն յուղի անկանք: Ուղարկաւորաց բազմութիւն: Մանկտին կ'երգէ: Այգեստանեայց գլխէն տուինք իրենց «Մնաք բարով» և առինք «Երթաք բարով», բարձրացանք քարերն 'ի վեր:. Թէպէտ 10 ժամու ճանապարհ է մինչև Արաբկեր, բայց վտանգով լի. ուստի ոստիկաններն հետ երեք ալ կտրիճ զինեալ Հայք Կամրկապէն եկան մեզ հետ: Այն ինչ լեռան միւս երեսէն 'ի վար կ'իջնէինք, կամարակապ աղբիւրին վրայ խումբ մը ձիաւորներ տեսանք. որոց ձիեր կը վրնջէին և ատրճանակներ մուխ, բոց և պայթիւն կ'արձակէին. յուղարկաւոր բարեկամներ էին Ակնէն կանխած, ուր յարգանաց և համակրանաց փոխադարձ համբուրիւ պատահեցանք իրարու: Հոս ժամանեցին մեզ Երզնկայի բանակէն մեկնող Մարաշցի Թեւապետ մը և զինուոր մը, աղէկ ուղեկիցք: Մեր ոստիկան էմին աղան խիստ քաղաքավարի մէկն է, աղէկ ալ հայերէն կը խօսի: Ճամբան մեզմէ անբաժան կ'ընթանայ, քարեր անպատկառ են, գեղերու ծառաստանեայց

միջէն կ'անցնիք ։ Հարանսի ( Հարեղանոց ) ձորոյն մէջ, ջրոյ ափը, թթենեաց շուքը նըստանք 'ի ճաշ․ զբօսալի է վայրը․ գեղը՝ որ վերեւն է, քարերուն միջէն կ'երեւի, ասոր ալ բնակիչք տաճկացեալ Հայք են եղած ։ Կ'ընթանանք․ կիրճ ու կապան․ գետը կ'անջատէ Չմշկածագու և Ակնայ սահմանը ։ Անգին սփռուած են այգեստանք՝ լերանց ստորոտը մինչև ջրեզրը ։ Ջորեպան և Էմին աղան կը պատմեն այս ձորերու մէջ տեղի ունեցած կողոպտումներ և սպանումները ։ Թանձր նաւակ մը կը տեսնենք, որով անցուդարձ կ'ընեն Չմշկածագ երթևեկողներն ։ Այս ձորայն մէջն է Գըլըլ ֆըլըմբըր, Արեան գոյն և արեան հող․ քիչ մը անդին է Առնաւուտի խան, որ ողջ է, բայց ամայի, առ ափն Քրդաց ։ Ցայնկոյս Եփրատայ անդեայք և խաչինք․ մերթ ընդ մերթ հրացանի գնդակի արձակման ձայնից արձագանքներ կը լսենք դիմացի քարերէն ։ Կ'անցնինք դժուար [illegible] քարուտ լեռ մ'ու ձոր մը, Փօփ—օփէլէնի ։ Եփրատ կ'անտեսի ։ Ջառ 'ի վեր պտուտաւոր կը բարձրանանք, բարձր կատարին վրայ տներ պահականոց մը կայ և ցամաք աղբիւր մը, Թուլթ—բէլին է, ծառատունկներ և ինքնաբոյս մացառներ կան ասդ և անդ․ խորին ամայութիւն արշաւիրք կ'ազդեն 'ի մարդ, և ահա քանի մը այծերու մրկմկոց կը լսենք, երջանիկ այծարածն հոգւոյ կատարեալ անդորրութեանը ընկողմնած պրակի մը շուք՝

իւր սրինգը կը հարկանէ ։ Լեռնահովիտ մը կը բացուի մեր առջեւ . — Փառք քեզ, Աստուած ։ Հողոյ երեսը և արտեր կը տեսնանք , ամեն ուրեք հնձողք կ'երեւին ։ Թուրք կանայք և արք փռուած են դաշտը , և ահա Աչոտկայ գեղ, դիրքը սիրուն և շէնքերը վայելուչ , բնակիչքը տաճկացած Հայք են եղած ։ Մեր աջ կողմն , լեռան բարձր թեւին վրայ է Օճախ գեղ Թրքաց , որոյ այգեստանեայք կը հասնին մինչև մեր ճանապարհը ։ Աղբիւրի մը մօտ , ուռենեաց հովանեաց տակ հանգչեցանք . մեր չուրջ կը զարդարեն թըթենիք , մրգարեր այլ և այլ ծառատունկք այգիք , և անպտուղ ծառեր , անդաստանք և մարգագետինք , հնձողք և մանկտիք ։ Աչոտկայ առջեւէն կ'անցնի Խարբերդի ճանապարհն ։ Ասկէ մէկ ժամ տեւեց մինչև Ոսկեգետակ , որ կը բղխի Սարը չիչէկ լեռնէն . իւր ափունքը կը նմանին կոյսի վարսերուն , սաղարթախիտ ծառատունկներով , և իւր ծոցոյն մէջ կը լողային կարմրախայտ ոսկեփայլ ձկունք ։ Աղտոտ գնչուներ իրենց էշերով և ձագերով թաւալած են ջրոյն ափը . մուրացկանութեան տոպրակներ և բուռները բացած մեր չուրջն առին , հաց , թիւթիւն , լաթ , ստակ , ինչ որ տաս , և ինչքան որ տաս , չահ կը համարեն իրենց և շնորհակալ կը լինին ։ — Բայց ինչո՞ւ երկիր չէք գործեր . — Երկիր չունինք , և ոչ բնակարան ։ — Վարձկա՛ն եղիք . — Ծառայ լինել չենք

սիրեր ։ — Բայց այդ ի՞նչ կերանք է , և միթէ դուք գո՞հ էք ։ — Գոհ ենք , եթէ մեզի տուրք չառնուն ։ — Դուք որ երկիր չունիք , տուն չունիք , չահ չունիք , ի՞նչ անունով տուրք կու տաք ։ — Մեր տուրքը , տապրակի վրայ է ; քանի՝ այր և քանի՝ կին ենք ։ մէկ մէկ տապրակ ունինք մուրպալու , ամէն տարի վարձկան մը կը գնէ կառավարութենէն մեր տուրքը , և կուգայ կը թուէ զմեզ , իւրաքանչիւր տապրակէն 30—40 ղրշ․ ոսկի գըրամ կը ժողվէ ” ։ Աս ալ ասոնց ՅԵԳԻՐԻԽՆ է եղեր ։ Քիչ մը հանգչելէն և զովանալէն զկնի՝ կամուրջով մը կ'անցնինք Ոսկեգետակյանկոյս կամ քարակոյտներ , զոր կ'անուանեն Խոշաճեայ Ճոգոյ , և կ'ըսեն , Հին քաղաքի աւերակ է ։ Արդարեւ քաղաք շինելու յարմարագոյն տեղ , ուր բաւական հասկալից ցորեններ կը հնձէին ։ Գետակիս բերանը , ժայռի մը քթին տակը կը ցուցնեն Ս. Փիլիպպոս առաքելոյ անուամբ վանքի մը տեղ , որ շատ ժամանակ չէ աւեր եղած է ․ իւր սեպհական արտերը տիրած են Թուրքեր ․ մինչև ցայսօր ուխտաւորք դեռ կը յաճախեն հոն ։ Մօտ է անոր նաև Ս. Մամաս , աւերակ ։ Ել մը կ'ելնենք , որոյ գլխէն կը տեսնենք Շեփիկ գեղ , գեղեցիկ է իւր դիրքն ու շրջակայքը ․ հընձողներու միջէն կ'անցնինք ․ դեռ քառորդ մը կայ գեղը հասնելու , և ահա վարժապետըն ութն աշակերտօք՝ ծառոց տակէն մեր ճամբան կը կտրէ ․ փոքրիկ մանկունք , գըլ-

խիբաց, երկայն ու խառնակ մազերով, բո-բիկ ոտներով. մէկ շապիկով ու վարտիքով, բեկբեկ ձայնիւ սկսան երգել և կրկնել.

«Անգութ երկինք ալ չըյիշեր մոռցեր է Հայաստանը,

«Անսիրտ Հայեր ալ չեն սիրեր անուշիկ Հայաստանը . . . »:

Սիրտս ծովացաւ ասոնց ձայնէն և ա-տացուածքէն. յուղեալ կը ծփայր արիւնս և արցունքս . . . :

Շքեղ տուն մը կայ առջևնիս, հոն հանդուցին զմեզ հացագործ Սիմոն աղայի տունն էր, որ 'ի զուր իւր բոլոր հարստութիւնը թափած էր այս շէնքին համար. ինքն մեռած էր, միակ դուստրը կարգեր էր Մել-քոն անուն բարեբարոյ երիտասարդի մը հետ զմեզ խիստ շնորհալի ներքով ընդունեց, բողոքական էր այս խնեղձը, և բաւական կա-յին սոյն գեղի մէջ Բողոքական անունով Հա-յեր: Գեղացիները ժողվեցան մեր չուրջ. ինչ հարստահարութիւններ և զրկանքներ կը պատմեն, զորս կրած են և կը կրեն Քրդե-րէ, այլ մեծաւ մասամբ քաղաքի Թուրքե-րէն, պաշտօնատարներէ, ոստիկաններէ և զօրքերէ: Բոլոր գեղացիք ծանր պարտուց տակ էին, և աղքատ: Գեղի հողերը Արաբ-կերի Թուրք պէյերունն էր, որք տասնց ի-րաւանց սեպհականած էին իրենց, կ'ըսուէր:

Հետևեալ օր Թողինք Շեփիկ, մխիթա-րելով գեղացիները որչափ և կրցանք: Իջանք

ձոր մը, ուստի ջուր մը կը հոսի, ծառաստունկներով վայելուչ։ Խիտ խիտ թթենեաց և այլ մրգաբեր ծառոց միջէն կ'անցնինք. քանի մը տուներ կան հոս. Գօզլու կ'ըսուի այս տեղ. պաղորակ ջուր մը վերէն կը թափի։ Մեր աջ կողմն, իբր կէս ժամ հեռի կ'երեւին ծառազարդ բնակարաններ. Հին—Արաբկերն է, զոր Հայք՝ Անդի—քաղաք կ'անուանեն և Թուրքեր՝ Էսկի շէհիր, ուր տակաւին Թուրք բնակիչներ կան և մինարէով մզկիթներ. Հազիւ 70 տարի կայ որ Հայք իսպառ թողած են զայն և գաղթած Նոր քաղաքը։ Գօզլուի գլխէն երեւցաւ Արաբկիր քաղաքի մէկ երեսը շնորհալի տեսքով մը։ Նոր լսած էին մեր գալը. անհամբերանօք կը պատրաստուէին դիմաւորել, բայց արդէն ես մտած էի քաղաքը։

Խառնուեցանք հեծեալ և հետի բազմութեան. Եկաւեանց վարժարանի մանկըտին փողոցը կայնած կ'երգէր. շուկայէն էր մեր անցքը. ամբոխ մեծ, Քիւրդ, Թուրք, Հայ, Գայմագամէն ալ չաւուշ մը, որ զարդարեալ ձի մը կը բերէր, շնորհակալ եղայ առանց հեծնելու։ Դէպ Առաջնորդարան գնացինք, ուր 300ի չափ աշակերտք Ուսումնարանին և Մայր վարժարանին, երկու կարգ բաժանեալ կ'երգէին։ Ի՞նչ էր այսքան հանդիսադրութիւնք. — Արաբկերցւոց ազգային զգացմանց ցոյցք։ Ո՞վ էի ես, — Օտար ազգաց համար, ոմանց՝ Ինկիլիզ, ոմանց

Մուֆթիէ թեթիշ ։ Իսկ ինձ համար ողջունատար
մը , այլ իսկապէ՛ս ես , Գարեգին վարդա-
պետ , որ ոչ միայն չէիր արժէր . չէիր թոյլ
տար , այլ և չէիր սիրեր այնպիսի բաներ ,
չափազանցութիւններ , ուստի ծանր տպա-
ւորութիւն գործեցին յիս , ինչպէս նաև մեր-
ջէն ըրածնին ալ , քրտինքներ հոսեցին
անձնէս ։

Մեծ ուրախութեամբ ողջունեցի Մինաս
և Պօղոս Չէրպէճեանք , Եկաւեան եղբարք ,
Մինաս տէր Միքայէլեան , Յօհաննէսեան , և
այլ բազումք , զորս յանձնէ կը ճանաչէի
Կարնոյ մէջ և անոնց բարեկամութեան կա-
րօտը կը կրէի ։ Անմիջապէս պատուեցին ըզ-
մեզ իրենց ներկայութեամբ Ազգային ժո-
ղովներ և խորհուրդներ . Նշանաւոր անձինք-
ներ , քահանայից և վարժապետաց դասն ,
և այլ անհատներ , բոլորն ալ կարգով և
շնորհալի պատշաճաւորութեամբ ։ Այս Գայ-
մագամն Խուրշէի ժողովքով , և միւս Ա-
տեանները , քաղաքի երևելի Թուրք պէյեր ,
և նոյն օրը քաղաքը գտնուած Գըլպաշներու
գլխաւորներէն Բօրեազ պէյ , Աբբաս պէյ ,
ևն ։ Արտաքոյ կարգի համբաւ հանած էին
մեր անձին և պաշտօնի նկատմամբ . ասոր
համար գայմագամն և բոլոր պաշտօնատար-
ներ [illegible] պէյերը խիստ երկիւղածութեամբ
կը խօսէին , զիրենք արդարացնելու ջատա-
գովութիւններ կ՚ընէին՝ Հայերուն կրկնե-
տալով նոյնը . և երբ փոխադարձ գնացի

ալ մէկ Ուսումնական խորհրդոյ հսկողութեան տակն են ։ Մայր վարժարան ըսուածը ծաղկոց մ'է , ուր 200 աշակերտք ձրի կ'ուսանին ․ Սաղաթիէլեան Կարապետ աղային 'ի կենդանութեան կտակած 50000 ղրշ.ի տոկոսով , որ տարեկան 5000 ղրշ. կը վճարէ , դրամագլուխն իր քով պահելով. և 'ի մահուան 50000 ղրշ. ազգային տնտեսութեան յանձնել կտակած է մի և նոյն պայմանը գործադրել և իւր ու կնոջը գերեզմանը վարժարանին մէջ ամփոփել պարտաւորելով - կանխաւ արդէն տապանաքարերն ալ բերել տուած էր ։ Բոլոր վարժարանաց ծախքն է տարեկան 42500 ղրշ ։ Սաղաթիէլեանի կտակէն զատ՝ 16000 ղրշ ալ Մայր եկեղեցին կը վճարէ , 3500 ղրշ. միւս երեք եկեղեցիք ․ մնացեալը՝ թոշակներէ ։ Վարժարանի կալուածոց սեփականատիրութիւնը Մայր եկեղեցւոյ թաղականաց ձեռքն էր ։ Արժանաւոր ուսուցչապետ մը ունէին , Զրագեան Յակոբ , Ծագ գիւղէն ։ Ուսանողաց թիւն էր 805 մանկունք , 80 աղջկունք ։

Արաբկերի Հայ վաճառականք և վաստակաւոր պանդուխտք ընկերութիւն կազմած էին քանի տարիէ հետէ և դրամագլուխ ունէին Հալէպ եղողները՝ 700 լիրայի , Կարին եղողները՝ 600 լիրայի (քօնսօլիտ) , Պոլիս եղողները՝ 120 լիրայի (երկաթուղւոյ թուղթ), որոց նպատակն էր մի և նոյն , այն է կալուածներ կառուցանել Արաբկերի [վարժա-

Եկեղեցի ունին 4. Ս. Աստուածածին՝ Մայր եկեղեցի, Ս. Յակոբ, Ս. Գէորգ, Ս. Լուսաւորիչ: Մայր եկեղեցին միայն հոյակապ է, ընդարձակ և քարուկիր. միւսներ պայծառ՝ բայց փոքրիկ են:

Հայաբնակ գիւղօրայք:

ՇԵՓԻԿ. Եկեղեցի 1. Ս. Աստուածածին. վարժարան 1: Ուսանող 60 մանկունք, 10 աղջկունք:

ԱՄԲՐԿԱՑ. Եկեղեցի 1. Ս. Նշան: վարժարան 1: Ուսանող 40 մանկունք:

ԱՂԸՆ. Եկեղեցի 1. Ս. Աստուածածին. վարժարան 1: Ուսանող 15 մանկունք:

ՎԱՂՇԷՆ. Եկեղեցի 1. Ս. Աստուածածին: վարժարան 1: Ուսանող 16 մանկունք, 5 աղջկունք:

ՔՈՒՇՆԱՑ. Եկեղ. 1. Ս. Աստուածածին:

ԿՐԱՆԻ. Եկեղեցի 1. Ս. Կարապետ: վարժարան 1: Ուսանող 15 մանկունք:

ՀԱՍԿՆԻ. Եկեղեցի 1. Ս. Գէորգ:

ԷՀՆԷՑԻՔ. » 1. Ս. Աստուածամայր: վարժարան 1: Ուսանող 17 մանկունք:

ԽՈՌՈՉ. Եկեղեցի 1. Ս. Աստուածածին:

ՄԱՇԿԵՐՏ. » 1. » »
վարժարան 1: Ուսանող 30 մանկունք, 10 աղջկունք:

ՍԱՂՄԿԱՑ. Եկեղ. 1. Ս. Աստուածածին:

ԱՆՋՐԳԻ. Եկեղեցի 1. Ս. Նշան: վարժարան 1: Ուսանող 80 մանկունք:

Դէպք մը. — Հէյնէցիք քսան տունէ բաղկացեալ փոքրիկ գեղ մ'է Հայոց. Երփրատի միւս երեսն ու Գամ—րաշ անուանով գեղ մը կայ Քրդաց՝ Զմշկածակու հովանաւորութեան տակ։ Գոմրաշցիք գիշերով անասուն կամ ցորեն գողնալու համար 30 հոգւոյ բազմութեամբ մը կու գան Հէյնէցիքցւոց վրայ. Հայերը կը յաջողին առանցմէ երեք Քիւրդ բռնել, միւս Քրդերը գնդակներ կը թափեն գեղին մէջ, Հէյնէցիքն ալ գնդակով կը պատասխանեն. այս խռովքի մէջ բռնուած Քրդերէն մէկն սպաննուած էր, Հայեր կ'ըսէին թէ Քրդերու գնդակով մեռած էր նա։ Բայց ի՞նչ կար, թող Հայոց գնդակով մեռած լինէր, ոչ, անհնարին է տարբերութիւնը, նոյն իսկ ատենի առջեւ։ վերջապէս յաջորդ օրերը իսկոյն կու տան հատուածարութեան. Եւ ահա իրաց վախճան. դիակն և կալանաւոր Քրդերը կ'արձակուին 'ի Գոմ—րաշ. Գոմրաշցիք մեռած Քրդու արեան գինը կը պահանջեն Հայերէն, և մինչև սպառնալեաց տակ կը դնեն գեղը. Հայք բաւական ծախքեր կ'ընեն, Գայմագամն պիտի Քրդերուն վրայ երթայ. իւր բերած զօրքեր ու ոստիկանները քանի՞ մ'օր Հէյնէցիք կը նստին, կ'ուտեն կը թափեն, և Հայեր իսթինթաքի կ'ենթարկուին. Քրդերու վրայ երթացող չլինէր. Գոմրաշցիք կը կեղծեն իրենց պահանջն ու սպառնալիքն, և երբեմն երբեմն գիշերները խմբովին Հէյնէ-

ցկէի վրայ կը յարձակին․ Հայք իրենց կալն ու արտը ձգած՝ սպառազէն կը պահեն գեղը, բայց վերջապէս գիշեր մը գեղէն քիչ մը բացակայ կալ ընող երեք Հայ երիտասարդներ կը յափշտակուին Քրդերէն և կը տարուին Գոմրաշ, կը կապուին սիւն, կը ձաղկեն զանոնք չարաչար, կը այրեն, անսուաղ կը պահեն, մեռած Քրդուն ընտանեաց վրէժխնդրութեան կը մատնեն, մէկ կողմէն ալ լուր կու տան Հէյնէցիքցւոց թէ՝ եթէ մեր մեռածի արեան գինը և զէնքերը զրկէք, ձեր մարդիկ կ՚ազատենք․ թէ ոչ՝ կը խողխողենք։ Հայք Քէլէշ աղա անունով նըշանաւոր Քիւրդ մը միջնորդ կը ձգեն, 15000 ղրշ․ կը վճարեն, տղայքը կ՚ազատեն, որոց ապրելու յոյս չկար, և դեռ վերջացած չէր խնդիրը, դեռ զէնքեր կը պահանջէին, մի և նոյն ժամանակ մեր կառավարիչներն ալ տուրքեր կը պահանջէին։

Քանի՛ քանի այս օրինակ և ասկէ ծանրագոյն դէպքեր լսեցի, ինչպէս նաև Սաղմկացւոց դէպքը․ բոլոր Զմշկածակի գեղերուն և Խարբերդուն ու Զարսանճագի, և այլ տեղերուն, որոցմէ քանիսը իրենց կարգին պիտի նշանակեմ։ Ուրիշ պատմութիւն մը։

Ցիւրիկու, Ակնայ, Արաբկերու և Մալաթիոյ միջեւ ինկած Սարը չիչէկ և Աղջատաղ լերանց մէջտեղերը կը բնակին Գըւըճանցի Քրդեր, որոց գլխաւորն է Դէլի Ալօն, մարմնով և կիրքերով վիթխարի

գաղան մը, Բ. Դոնէն հրաման կ'ելնէ զօրք հանելու տօր վրայ, և բռնել կամ ըսպաննել։ Արաբկերի կառավարութեան կը յանձնուի այս գործողութիւնք, և Դէլի—Աըլօն իւր մարդերով զօրաց դէմ դնելէն զկնի տկարանալով կը փախչի։ Անոր տունն, գանձըն ու ստացուածքը, որ ամբողջ աւազակութեանց արդիւնք էին, կ'աւարուին, նոյնպէս և գեղը։ Հրաւէր կը տրուի շրջակայ գեղեր ու քաղաքներ, որպէս զի մնացեալներն ու կողոպտեալներն գան, և իրենց գոյքերն ապացուցանեն ու տանին. կու գան, որոց մէկ շատերն Թուրք և Գըզըլպաշ գեղացիներ էին, մաս մի ալ Տիւրիկու Հայ գեղացիներ. Նոյն օրերը Խարբերդի մեծ Միւթասարիֆն այցելութեան ելնելով իւր վիճակները, կը հասնի Արաբկեր. և ահա իւր հետ կը տեսնուի Դէլի—Աըլօն՝ Միւլէյման աղա եղած, հացակից և պատուակից։ Ամեն ելած ու նստած տեղն, շրջած և այցելած տեղերը, «Կէ'լ Միւլէյման աղա, Կ'ի Միւլէյման աղա.» զայս տեսնելով դատախազները՝ խոհեմութիւն կ'ընեն ետ դառնալ իրենց տեղերը, միայն Հասան—Չէլէպիէն տասնի չափ Թուրքմէն կամ Գըզըլպաշ կը մնան իբրև դատախազ։ Միւթասարիֆը մեր ժամանելէն քանի մը օր առաջ մեկնած էր Խարբերդ. Դէլի—Աըլօն — Միւլէյման աղան և անոր դատախազներն ալ հետ տանելով, որ քննութեան պիտի սկսուէր։ Երբ Մալաթիայէն

Խարբերդ դարձայ, տեսայ որ Սիւլէյման աղան տեղւոյն խտարէի աղա Թուրքը ալէյի մը տուն հիւր տրուած էր, և շատ համարձակ կը շրջէր ու ընտանիք ելումուտ կ՚ընէր. Թէ՛ սենեակները և Թէ՛ ամէն տեղերը. զարմանքս իմ լսածներս պատմեցի այդ անձին վրայ, և դիտեցի Թէ ինչպէս կարելի է հասարակաց այսքան ծանուցեալ եղեռնագործ մը և Տէրութեան հրամանին ու զօրացը դէմ դնող յայտնի ապստամբ մը տակաւին քննութեան վերապահել, և եթէ քննութեան ենթակայ՝ ինչպէս խտարէի աղայի մը տուն պատուով հիւր դնել, և Թէ՛ սա քաղաքական օրինաց ու զինուորական օրէնաց կրկին յանցաւոր եղած էր . . . — Խօսքս կարեց Միւթասարրիֆն ; « Իրաւունք ունիս, ըսաւ ցած ձայնով, բայց յանձնարարական (Նամէյէ) բերած է. շատ անհնարութեան մէջ կ՚իյնայ կառավարիչ մը՝ երբ բարձրագոյն պաշտօնատարէ մը, ո՛ և իցէ անձի մը կամ խնդրոյ մը համար յանձնարար գիր կ՚ընդունի. Արլօն Երզնկայ փախած էր, և առանց բուռն միջոցներու՝ վստահութեամբ կրցաւ գալ մեզի՝ գրով մը միայն » :

Դէմ — Արլօյի ըրած հազար հազար ու սարսուելի խժդժութիւնք անլուր բաներ էին. ոչ միայն անասնոց և ստացուածոց ընտիրները՝ ո՛ւր և որո՛ւ քով լինէր՝ հրաման կ՚ընէ և բերել կու տայ իրեն, այլ և ո՛ր գեղ որ երթայ, գեղի աղջիկներն ու կանայքը

աչքէ կ՚անցընէ, հաւնածին հրաման կու տայ գիշերը իրեն զրկելու. չերթացողք և չյօժարողք կը մորթուին: Ալեւոր Քիւրդ հայր մը իւր աղջկան պատիւը խնայելուն համար, Դէլի—Ալօն զանի շամբուր անցընելով մեծ կրակի մը վրայ խորովել տուեր էր անոր ընտանեաց աչքին առջեւը . . . : Ահա այս էր Դէլի—Ալօն, որուն վերջին բարուք ու ընդարձակ վիճակը տեսնելով շատեր, ամենէն չնչին սրիկան կամ Քիւրդն անգամ սկսեր էր Ալօյութիւն ընել:

Երկրիս բերքերն են ցորեն, գարի, կարագ, մեղր, ընտիր և առատ միրգեր, խաղող, չերամի բոժոժ, աֆիոն: Կը սնուցանէ ընտանի կենդանիներ, ունի աղուէս, կուզ, վարշաղ, գայլ, եւն: Բայց Եւրոպայէն ամենամեծ քանակութեամբ մանած կը գնէ մանիսա գործելու համար, և այլեւայլ պէտքեր:

Հողերը՝ որ մեծաւ մասամբ դաշտային է, Թրքաց և Գզլպաշներուն սեպհական են Ֆաքտով. քիչ մաս կայ Հայոց ձեռքը: Լերինքն են Անտիտաւրոսի շղթայն: Անուանիք՝ Կէօլ—դաղ կամ Մէհէկ—դաղի, Ղարաբարայ եւն: Ջրերն են՝ Ոսկեգետակ և Անկոյ վտակ՝ Սարը չիչէկ լեռնէն իջնելով Աղընու հովտէն կը Թափին յԵփրատ. Թուխման—սույու գետակն՝ Աղջատաղէն բղխելով Արգաւանի հովիտէն կը հոսի, բրինձի և ցորենոյ արտերը ոռոգելով, Մալաթիոյ 4 ժամ հեռացած կը խառնուի յԵփրատ:

Արդաւան գաւառի միջէն կ'անցնի Բաղդատի մեծ ճանապարհ, քաղաքէս 6 ժամ հեռի։ Մեծ Հայաստանի կամ Կարնոյ հետ հաղորդակցելու համար կարճ ճանապարհ կայ եղեր Դէրսիմի վրայով, զոր Ակնցիք, Չմշկածագցիք և Չարսանճախցիք ալ պատմեցին, բայց խափանեալ է խանգարուելով՝ և Քրդերու երկիւղէն. այժմ Ակնէն և Երզնկայէն անցնելով կ'երթան Կարին, որ 70 ժամու չափ կը տեւէ։ Հեռագիր չունին, որուն անչափ պէտք ունին։ Երկրիս բնակիչներն են Հայ, Թուրք, Գզլպաշ և Քիւրդ։

Արաբկերու ձեռագիր գրքերէն միայն հետեւեալը օրինակել տուի, թէպէտ սխալներով լի։

«Պատմութիւն սուրբ Գեղարդեանն և այլ Տնօրինականաց Քրիստոսի և Նշանացն։

«Ի սուրբ և փրկական Տնօրինականացն սրբութեանց Քրիստոսի Աստուծոյ մերոյ այսպէս գտաք Գործոց ոսկեգրով 'ի պատմագիր Թագաւորութեան 'ի քաղաքս Կոստանդինուպօլիս, և այսպէս պատմեցաւ, որ ժամ առին զԹագաւորութեան քաղաքն՝ մեծ Թագաւորն Ֆռանկաց բացեալ զմեծ եկեղեցին զսուրբն Սոփիա և մեծ պարսաւանօք գոչէր զամենայն քաղաքն և զՊատրիարքն և զնախարարս սուրբ եկեղեցոյն, և խնդրէր զփրկական սրբութիւնս, և նոքա զոր ունէին ցուցին. և ապա բերին մեծ Գործոցին զպատմարանսն, և էր գրեալ այսպէս. Պատմուճանն Աստուածային որ փորանկեալ էր ամենեւին և զարգիոն նափոր-

տըն տուեալ սուրբ առաքելոցն Գիչեա և Տիմէթէոս, և նոցա տարեալ 'ի Սելեւկիա կղզին և կայ մինչև ցայս աւր. պարէգոտն և զպաստառակալն և զանկար պատմուճանն՝ Աբգարու թագաւորին.. Մաթօս Աւետարանչի տարեալ 'ի Արաբիա՝ միաբաց և կա մինչև ցայսօր. ... գքղամիդ կարմիր և զԲ. մատն պատկին փշոց առաքեալն Մարկոս տարեալ Սպանիա 'ի Վէնէտիկ քաղաք. ... զկրկնափորտն և զմին բեւեռն, և զկաւտըն որ կոչի աքցան, և զվարչամակն որ ոչ կայր ընդ՝ այլ կտաւսն՝ այլ ուրոյն ծալեալ 'ի մի կողմն, տարեալ զայն երկիրն Նաւեաց որ այժմ Համաշէն, մերձ մօտ ի Ճանէք և 'ի Տրապիզոն քաղաքն եդին առաքեալքն 'ի բարձրագիտակ լերին. և ամպ և մէգ չուրջ է զնովաւ, զոր ոչ ոք կարէ ելանել և մըտանել 'ի նա մինչև ցայսօր. իսկ 'ի զարդ 'ի պաստառակին Տեառն որ կապեալ 'ի խաչ ունէր, որ արեամբ թայեալ, որ ոչ ոք կարաց հասանել 'ի ներս, վի որ մերձենայր հրով այրէր, Յոհան Աւետարանիչն ունէր և տարաւ 'ի Ակիսա քաղաք կղզի Յոկաս քաղաք, և կայ 'ի նմին:

«Աստուածամօր պատմուճանն և ծիրանիսն Որմնական կղզոյն կայ. խանծարուրն 'ի Հռոմ քաղաք կա և մոգաբէր հանդերձ տղայութեան 'ի Սելեւկիա կղզոյն Առական քաղաք կա. սուրբ սեղան վերնատան և ղենճակն և այլ սպասքն 'ի Կոստանդնուպօլիս է տարեալ. բեւեռն և սուրբ ձեռացն 'ի նոյն թագաւորացն կա. զարմանաթոռն և պաստառ խնկոցն 'ի Մրակաս կղզոյն... Կատեա քաղաք կա Հայրական տուեալ ըղգիրն կենաց անբաց և անընթեռնուլ տարեալ Գեորոսի Արակլիա կղզին ... քա-

ղաք, զոր սուրբ Բագարատ դարձոյց և զծ-կուռքն խորտակեաց. և կա անդ: Եւ զինուոր գեղարդն, որ զիողսն փրկական աղբեր արեանն եհեղ, առեալ Ղունկիանոսի, որ կուր էր 'ի ծնէ, հարեալ 'ի կողն Փրկչական, առժամայն լուսաւորեցաւ. Աստուածարեամբն ներկեալ սուրբ Գեղարդն, և Փուշ պսակն, Ովսէփ Արեւմաթացոյն այն, և սուրբ Շիշ 'եւղոյն ազնուականին, և Աստուածամօր պատկերն, սուրբ առաքեալն Թադէոս տարեալ 'ի Հայք: Այս է նշան սուրբ Գեղարդեանն, և այսու օրինակաւ ճանաչէք, որ ոչ խաբեն զձեզ նենգաւոր ազգն Ունաց, որ թագաւորք սուրբք և աստուածասէրք բերեալ վերկնային պսակն սուրբ հաւատացելոյն Քրիստոսի, և ամենայն սուրբ եկեղեցիս հոչակապարծանք:

«Եւ արդ սուրբ Գեղարդն Քրիստոսի երկնային գանձն լուսոյ կա 'ի խաւարի ծածկեալ աշխարհի Հայոց, և որք տեսանեն զնա մի' տեսցեն զմահ յաւիտենից, և ոչ իշխեսցէ ձեռն մտանել 'ի սահմանս, և որ թագաւորութեան որ կա իմացեալ և պատուեալ՝ թագաւորութիւն այնմ աշխարհին սակաւն նուաղի ժամանակս: Եւ նմանութիւն Աստուածագիր Գեղարդին այսպէս է. գըմբեթաձեւ 'ի վեր քարշեալ գլուխ նորա, որպէս նիզակին սուր առ հաւասար. և երկնային և հրեշտակաձեւեալ, նման խաչի, փորեալ հաստուածն անդէն Բ. կողմանէ երեսաց սուրբ խաչին բեւեռեալ, և բեւեռմամբ Դ. որպէս Տէրն 'ի խաչին, աղիւսանման, և ԺԲ. օրինակ առաքելոցն, և վայր կողմն փոր նիզակին Դ. մատին չափով, բայց ոչ այլ ինչ քանդակեալ, այլ ամենեւին անարատ և հաւասար. այս է նշան Գեղարդեանն: Տի-

բամօր պատկերն 'ի Հոգւոց վանքն 'ի Թողնյոց գաւառին ։ Եւ Շիշ իւղոյն երկիրն Տարօնոյ 'ի վանքն Եղէգնի․ (1) 'ի ճանաչել Արեւմաթացոյն աջն (2) 'ի Առաքերան գաւառին գեղն որ առաքելոյն Թադէոսի անուամբն է․ և Պսակ փշոց ․ ․ ․ կա՝ ուր նահատակեցաւ սուրբն 'ի Զարեւանդ գաւառի․ և այսպէս օրինակեցաւ տնօրինական սրբութիւն 'ի Հռոմ գրէ 'ի Հայ Թարգմանեցաւ և բերաւ 'ի Հայս, որում էր Թիւն ՃՀՋ․ և Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն ։»

« Յիշատակ է Ղուկասու մեկնիչս, որ կոչի Քարոզ գիրքս Յովանէս վարդապետին և իւր ծնաւղացն, հաւրն Մկրտչին և մաւրն Թավրէզին, և եղբարցն Գրիգորին, Զաքարին, Մարգարին․ հաւր եղբարցն և քուերացն Հարզավարդին, Գոհարին, և ամենայն արեան մերձաւորաց մեծի և 'ի փոքու առհասարակ ամենեցուն ամէն» ։

«Դարձեալ գրեցաւ գիրքս 'ի ձեռանէ Գրիգոր վարդապետին ճերմակ ծովուն ատակն 'ի քաղաքն որ կոչի Կոստանդնուպօլիս․ 'ի Թվ․ ՌՉԴ․ 'ի Հայրապետութեան տէր Փիլիպպոս կաթողիկոսին․ ո՛վ ովք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք 'ի մաքրափայլ աղօթս ձեր զմեղապարտ Յովաննէս վարդապետս որ յանուամբքս եմ միայն և գործովս ոչ, և զծնօղս իմ․ Աստուած զձեզ յիշէ իւր միւս անգամ գալստեան Քրիստոս Աստուած մեր որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն» ։

---

1 Այժմ Ս․ Յօհաննէս կը կոչուի․ ուր կայ մինչև ցայժմ․ մենք ալ ականատես եղած ենք․

2 Սուրբ Աջն ևս Ս․ Յօհաննու վանքն է այժմ ։

«Յիշատակ է Քարոզ գիրքս և Դատաստանագիրքս և կանոն գիրքս Գրիգորի քաջ հռետորի և երջանիկ րաբունապետին մերոյ քաջ և անյաղթ փիլիսոփայի՝ Եպիսկոպոսի և որոշեալ 'ի գործս տնտեսութեան և վարդապետ Հայաստանեայց եկեղեցւոյ, և Պատրիարք մայրաքաղաք և Թագաւորանիստ Կոստանդիանուպօլսոյ և բնածին Կէսարիոյ, թվին ՌՉԵ. պատահեցաւ Էջմիածնայ Խաչատուր վարդապետի աշակերտ Նուիրակ անուն տէր Յովաննէս վարդապետն. մեք մեր կենդանութեան ժամանակին, մեր ձեռամբն յանձնեցանք Գ.Զ. գիրք 'ի ձեռն Յովաննէս վարդապետին, որ մեզ խոստովանահայր եղեւ, և զմեր մահու կեանքն դա կատարեաց. դորա ձեռամբն կտակ արաք. թէ գիրք և թէ այլ աւրանք՝ դա բաժանեաց Շահին Զալապուն ձեռամբն, և իսկանտար Զալագուն. Զ. գիրք Էջմիածնայ և զայլն ասա և անդ: Դարձեալ ով որ չունի իշխանութիւն զայդ Գ. գիրքդ 'ի դորա ձեռացն յափշտակել, զի իւր աշխատանքն է. ո՛վ ընթերցող սուրբ գրոցս՝ թէ հանդիպիք սորա կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք մաքրափայլ յաղաւթս ձեր վերջանիկ րաբունապետն մեր զտէր Գրիգոր վարդապետն, որ 'ի դառն և 'ի վերջ ժամանակիս, և թագաւորութեան խոմայէչացոց Սուլթան Մուրատին, որ եւ բազում զաւրաւք 'ի վերայ Պարսից և յաղթեալ 'ի նմանէ, և արար բազում աւար 'ի գաւառս Հայոց: Եւ 'ի Հայրապետութեան Տեառն Տեառն Փիլիպպոս կաթողիկոսին, և 'ի Պատրիարքութեան Ըսպահանայ Խաչատուր վարդապետին, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս րաբունապետն մեր Գրիգոր վար-

դապետն․ զորս Պատրիարքութեան ժամանակին եղեւ մոլորումն և Ծռազատիկ Հռոմայեցոց ազգին Բ․ ամաւ յառաջ որ բազում նեղութիւն կրեաց 'ի դասոց և ինքնահաւան Յունաց ազգէն, թէ լոյսն մեր է․ և վարդապետն՝ իւր քաջ իմաստութեամբն յաղթեաց նոցա։ Շնորհաւքն Քրիստոսի փառք անզրաւ յաւիտենիւ ամէն։ Հայր մեր"»․

Արաբկերէն կ'շտապէի մեկնիլ, բայց վարդավառի տօնն վրայ հասաւ․ ազգայնոց թախանձանաց և տօնի մեծութենէն պատկառելով յանձն առի կիրակի պատարագել Մայր եկեղեցին, օրհնեցի և մխիթարեցի ժողովուրդը, և իրենք՝ փոխադարձաբար։ Հետեւեալ օր, երկուշաբթի առաւօտ պատրաստ էինք մեկնիլ։ Առաջնորդարանի դուռն և փողոցն ընդ լայն և ընդ երկայն անթիւ բազմութիւն խռնուած էր, Գայմագամն և շատերը Երթաք բարովի եկած էին։ Ժամը 4 էր՝ ելանք։ Քահանայք և վարժարանի մանկունք կարգաւ կեցած՝ «Տէր ուղղեա» ըսին; և «Գնացեք բարեաւ» և ուրիշ հայրենի երգեր երգեցին վառուն խանդով մը․ այլայլած և արտօսրոք անցայ շնորհակալ լինելով։ Եթէ կանխաւ իմանայի, պիտի թոյլ չտայի այդ հանդէսը, բայց արդէն թակարդըն ինկած էի․ և ալ թող տուի ինչ որ կ'ուզեն ընեն, ոչ իբրև ինձ 'ի պատիւ, այլ իբրև իրենց հայրենասէր եռանդեան և ըղձից յայտնութիւն․ իղձեր, զորս յանձն

իմ կը նկատէին, և զիս զրկողներէն կ՚ա-
կընկալէին ։ Ուստի որքան տեւեց քաղաքին
սպառուածքը, նոյնքան ծաւալեցաւ հանդէ-
սըն․ տեղ տեղ ալ ուղերձներ կարդացուե-
ցան, որք լի էին օրհնութեամբ, զգացումով
և ազնիւ փափաքներով, զորս ՚ի դիմաց մե-
ծի և փոքու, արանց և կանանց, կը յանձ-
նարարէին ինձ բերել և ներկայել ում որ
անկ էր ։ Քաղաքի սպառուածքին հետ կար-
ծեցի թէ հանդէսն ալ սպառած էր․ բայց
ահա ձիաւորաց բազմութիւն և մանկաւոյն
երամ, որ թռչնոյ արագութեամբ կը թռին
լեռն ՚ի վեր, և կը շարուին Սպիտակ աղ-
բիւրի լայն աւազանին շուրջը ։ Հազար գո-
հութիւն և օրհնութիւն կը նուիրեմ անոնց
և կ՚աղաչեմ որ ետ դառնան, նոքա խայ-
տանօք կ՚երգեն, և երիցս կ՚աղաղակեն,
«կեցցէ՛ Հայն ու Հայաստան, կեցցէ՛ Պատ-
րիարքն և Պատուիրակք, կեցցէ՛ Գարեգի-
նըն» ․ ատրճանակներ ՚ի հայթ ՚ի պայթ կ՚ո-
րոտան, մանկտին կը մնայ, հեծեալք կ՚ար-
շաւեն ։ Շատ զուարճալի է քաղաքացւոց
ձիարշաւի հանդէսն ․ ձիեր ընդհանրապէս
աշխոյժ, կրակէն և մէկ մէկու վազելէն կը
խրտչին համայն երիվարներ, վրնջելով դո-
փելով յառաջ անցնիլ կ՚ուզեն, հեծեալնե-
րէն ոմանք կը դողան սաստիկ՝ անոնք որ ան-
վարժ են․ ոմանք կը զոռան և արագ արագ
կը յառաջեն ու կը դառնան, անոնք որ
քաջավարժ են ։ Վերջապէս Խալիլ—չաւուշի

աղբիւր կը լինի մեր անջատման կէտ , ուստի բաժնուեցան յուղարկաւորք՝ երթալով այգիի մը հովերուն շունչը և պաղուկ ջրոց շուրջը՝ զառն ուտելու համար . մենք կերած էինք արդէն և բաժին մ՚ալ տուին ։ Տէր-պէտէրեան Պօղոս էֆ. իւր երկու զինեալ Հայ ծառաներով և Ղօլանճեան Նազարէթ աղնիւ երիտասարդն ընկերացան մեզ 'ի պատիւ և յապահովութիւն ճանապարհին . արդէն երկու ոստիկան ալ կառավարութենէն ունէինք ,

Ասոնք գրեցի , որպէս զի մեր ընթերցողներ տեսնան թէ Հայաստանի մէջ ի՞նչ կեանք և ի՞նչ ճաշակ կայ . գրեթէ ամէն տեղն այսպէս ։ Կերթանք ,

## ՄԱԼԱԹԻԱ

Կէօլ—դաղիի կողերէն կ՚անցնինք . օդը գով էր . մեր ձախ կողմը ետեւէ ետեւ կը թողունք Գզըլպաշներու շատ մը գեղեր . զարմանալի քարայրեր կը տեսնանք ճանապարհէն քիչ մը վար , որք աւազակաց որջ համարուած են ։ Երեք ու կէս ժամ յառաջանալով հանգչեցանք սրակներու հով , որոյ մօտ ջաղացքներ կան և գետակ մը կ՚անցնի ։ Բոլոր մեր աջ ու ձախ եղած գեղերը Գզըլպաշ են . ընդհանրապէս ծառաւէտ և ջրաւէտ ։ Կը շարունակենք մեր ուղին . օդը տօթագին է . վերջապէս ժամ 9 էր իջեւա-

նեցանք Գարահիւյիւք գեղը Ալի աղային տու-նը, որ Գզըլպաշներուն Տէրէն կամ մարգա-րէն կը սեպուէր, հարուստ, խորամանկ, և իւր խօսքերն ու կերպերը կարի զգուշաւոր. փառաւոր ընդունելութիւն ըրաւ մեզ Ալի աղան. սոյն գեղի խանէքան Բօրեաղ պէկն և Աղ Ախբայէ 'ի տես էկլան, որք ընդհանրապէս ցաւ և դժգոհութիւն կը յայտնէին իրենց վիճակէն, թէ՝ Աթմանցի, Աղջատաղցի և Դըռըքջանցի աշիրաթ Քրդերը շատ մեծաւ կը հասցնեն եղեր ասոնց, թէ՝ վարձկալներ և պաշտօնատարները հարստահարութիւն և զրկանք կ'ընեն եղեր գեղացւոց, եւ. եւ. Բայց գեղին հասարակութիւն և դրացի բընակիչներն ալ, ինչպէս նաև կառավարութեան պաշտօնեայք կը գանգատէին Ալի աղայէն և Բօրեաղ պէկէն՝ իբրև կէս ապըստամբք, իբրև հարստահարիչք, և գողեր գործածող. նոյն իսկ իրենց անուանած աշիրաթներուն ընկեր և թեւապետ: Զարմանալի էր որ Ալի աղան և Բօրեաղ պէկն երկուքն ալ Գզըլպաշ; բայց զատ աղանդ ունէին, և օրեր եղեր էր որ իրենց աղանդակիցներ և կուսակիցներն առած՝ իրարու վրայ յարձակելով ալեր, հրկէզ և սպանութիւն կ'ընեն եղեր երկուստեք: Թէ՝ ասոնց և թէ՝ այսպիսեաց կռիւներէն օգուտ կը քաղեն քաղաքի մէջ կառավարութեան պաշտօնեայ կամ ազայ եզողներ. Արաբկերի մէջ ամենէն աւելի շահ ունեցողն էր խըլրահիմ

էֆ. որոյ անձն անբաժան է կառավարութեան ատենէն, և ձեռքը տարածեալ է ամեն գեղերու և աշիրաթներու մէջ ։

Գեղիս կից բլուր մը կայ, կը թուի թէ 'ի հնումն բերդ է եղած. կը պատմէին թէ՝ ասոր կողերէն և ստորոտէն աւերակներ կը բացուին, և թէ՝ երկաթի նետ և շղթայի կտորներ եւն. կը գտնուին, զորս խոփ կռել տուեր էին ։ Երեկոյ է, Ալի աղայի հետ տանիքը բարձերու վրայ նստած ենք. դիտակով կը ցուցընէ Կիւմիւշ կամ Կապան—մատէնի ձորը՝ սեղմուած քարալերանց մէջ, ուստի կ'անցնի Եփրատ, անտեսանելի. 'ի սպառուած այդ հանքալերանց՝ Եփրատ կ'երեւի, որոյ ափանց քով յայնկոյս՝ հրուանդանի նման բարձրագագաթ լեռ մը կայ և անոր վրայ շինուածք մը ։ Ալի աղան կ'ըսէ թէ՝ Հայոց եկեղեցի է այն. այլք կը կարծեն թէ՝ կռապաշտից ժամանակէ մնացած է, ոմանք թէ՝ Աստղերը նայելու դիտարան. վերջապէս կը հաստատեն թէ՝ Ս. Ահարոն անուամբ եկեղեցի է ։

Մալաթիոյ ընդարձակ հովիտը կը տարածի մեր աչաց առջեւ. անկէ 11 ժամ է Մալաթիա, այլ սակայն իւր բազմախուռն ծառոց և այգեստանեաց ծաւալը իբրև սեւ գիծ մը կ'երեւի ։

Առաւօտ դեռ արեւ չծագած՝ հեծանք, Տէրպէտէրեանն և իւր մարդիկ, Ալի աղան և Բորեազ պէկն քանի մը ձիաւորով ժամու

մը չափ հետերնիս էկան ։ Արկաւան գաւա-
ռըն ենք . քանի մը գեղեր անցնելով հա-
սանք Թէհէր—քէօյ , ուր Միւտիր կը նստի .
Աստծու խեղճ մի էր , ելաւ հիւրընկա-
լելու զմեզ. իւր բնակարանն ու պաշտօնա-
տունն մի և նոյն յարկն էր , որոյ մէկ կողմն
ցորեններ , չուլեր , չուաններ , և այլ բըժ-
ժանքներ , մէկ կողմն գրագիր մը , ոստիկան
մը , մէկ պուճախն ալ ինքն խսիրի վրայ նըս-
տած , լալկան , անօթի , մերկ , ոչ կրակ ու-
նէր ոչ ճրագ , սուրճ մը անգամ չունէր .
իւր ամսականն էր 370 ղրշ. Թղթադրամ.
գանգատ ըրաւ որ Քրդեր իւր ձին ծեծեր և
տրօտէն վաներ էին , առանց խոտի մնացած
էր , կը վախնար որ զինքն ալ ծեծէին . իւր
ամսականով և այսպիսի գծուծ վիճակով իս-
պառ անպատշաճ էր կառավարութեան ներ-
կայացուցիչ և երկրին վարիչ լինելու . « Ոչ
ծառայ կրնամ ունենալ , ոչ ընտանիքս և ոչ
անձս կրնամ շահել , կ'ըսէր , այս գումարով.
հոս ուրիշ շահեր ալ չկան ; այն ինչ ուրիշ
տեղեր Թէպէտ այս ամսականով՝ բայց կըր-
նայի շահուիլ. . . » ։ Անկէ յետ դարձուցինք
մեր յուղարկաւորները ; բայց ճանապարհի
ապահովութեան համար հետերնիս դրին Ամ-
աղան իւր մշակ Հասօն , և Բօրեազ պէկն
իւր մշակ Ահմատն . Ահմատն կտրիճ ու ճար-
պիկ մէկն էր , իսկ Հասօն կը նմանէր մաղոտ
սատանայ ։

Ամբողջ չորս ժամ կ'երթանք , խմելու

Ջուր չկայ, գեղի և մարդոց երեսը չենք տեսներ, ահագին տարածութիւն մը խատալից, թռչունք անգամ չեն թռիր, ահոտ ու սարսափոտ վայրեր. չարունակ կը պատմեն այս տեղերը պատահած սպանութիւններ և կողոպտութիւններ. Աղջատաղը կը ցուցնեն, Աղջատաղցւոց մինչև այսօր ապստամբ լինելը, առոնց ձեռքով կարաւանաց և բնակչաց հասած եղեռններ և վնասներ, քանի մը տարի առաջ Պարսից Շահզատէի մը սպանելը, եւն: Արեւը կիզիչ է, և դաշտային գնացքը կարի ձանձրացուցիչ. ահա կը հասնինք Բալաբան գեղը, որոյ բնակիչք Գզըլպաշ են. Ալի աղան, Բորեազ պէկն և Տէրպէտէրեանըն դրած էին գեղիս մեծաւորաց Պէկթաշին և Մահմատ Ալիին, որ քանի մը ձիաւորով զմեզ մեզ ապահով հասցընեն Մալաթիա. բայց աս երկուքն ալ գեղը չէին: Հանգչեցանք ուռենեաց շուքը, ջրոց ափը. և մեծ ախորժակով ճաշ ըրինք, թան, պանիր, վարունկ, սոխ և սխտորով ու եղով տապակուած հաց՝ վրան ալ մածուն դրած:

Ծանր հոգածութեան մը և խորհրդեան հետ են մեր ստրիկաններ և Քրդերը. առանձին կը խօսին կը վիճեն, և վերջապէս կը յայտնեն մեզ իրենց որոշումն, այն է գիշերը այս գեղն մնալ, մինչև մարդ առնունք հետերնիս, որովհետեւ ահա կ՚սկսի Եաղլի-խանի դաշտը, որ այնքան սոսկալի հռչակ ունի իբրև աւազակաց ազատ ասպա-

րէզ, և ուր ամեն օր մարդ կը կողոպտուի, մարդ կ'սպանուի։ Ես կը պնդեմ երթալ, Հասօն շատ աղաչանքով ձիոյն ակարանալն ալ պատճառ բերելով՝ ետ կը մնայ. մենք կը հեծնանք և կը քշենք։ Կ'անցնինք Գուրուչայ գետակէն, որ գեղի առջևէն կը հոսի, և յաշնան ու գարնան ահագին կը մեծնայ եղեր։ Անմիջապէս կ'սկսի Եազլի—խան, որոյ լայնութիւնն է 2 ժամ և երկայն՝ 12 ժամ, ընտիր հող, բայց անջուր մնալուն համար՝ անմշակ և անբնակ է. Թօխմախ—սույու գետոյն վերին կողմէն դիւրաւ կրնայ ջուր հանուիլ այս դաշտը, բայց ո՞վ է շինողն։ Ամայութիւն որ տիրած է այս կողմերը, անհուն է և զարհուրելի, անդորրութիւն և ապահովութիւն չկայ, լեռնականաց յափշտակութենէն և կառավարչաց անհոգութենէն դեռ ցայսօր ամայանալու վրայ է երկիրը։ Ահմատը միշտ մեզմէ յառաջ կ'ընթանայ, ամեն կողմն կը դառնայ, կը դիտէ, թէ՛ նա և թէ՛ ոստիկաններ զէնքերը առձեռն ունին. մենք ալ մեր նետիչներ (1)՝ և ձիերու վրայ քաջագօտի զինուորի նման սուր կ'արշաւենք. ժամ ու կէս հասանք Եազլի—խանի մէկալ եզրը, ուստի Թօխմախ սույին խորոխս և բնակակցաց նման բարբարոս արշաւանքով կ'անցնի, քակելով վլցու-

1 Նետիչ բառը գործ կածեն տեղ տեղ փոխանակ հրացանի և ատրճանակի։

նելով ափերը, ողողելով ցորենոյ, բրինձի, բօստանի ընտիր արտեր, որոց ջուրն ալ ինքըն կու տայ, և բերքերը ինքն կ՚ապականէ, ինչի՞ կը նմանի այս։ Մեծ և հին կամուրջով մը կ՚անցնինք, զոր Գըբէ կէօղ կ՚անուանեն, շինուած Սուլթան Մուրատէն, բայց մէկ մասն դիակ և մէկ մասն կմախք դարձած է։ Ասկէ մինչև Մալաթիա խճուղի շինուած է․ հեռագրի թելեր և սիւներ գտանք, խորին ազդեցութիւն ըրին վրաս, զորս Սեւաստու լեռներէն կորուսած էինք։ Բաղդատի մեծ ճանապարհի մէջն ենք։ Անցուդարձներ, մըչակներ, քաղաքացիք և գեղացիք կը հանդիպինք, լոյս աշխարհն ինկանք։ Կամարակապ աղբիւրին քով ծառոց շուքը շնթռկեր են խոշոր շներ, իրենց շոքէն լեզուն դուրս ձգած լըխկ լըխկ կ՚ընեն, անոնց քով կովն ու հորթ, էշն ու քուռակ․ Քրդու աղջիկն ու կեղտոտ պառաւ, և քանի մը բաց գլուխ ու անվարտիկ կուռո, կճէ, փոքրիկ լամուկներ՝ այծերու մօրուքէն կը քաշկռտեն կը մկմկացնեն։ Զովանալով այս ջրով, և զուարճանալով այս տեսարանով, թողինք ու առաջացանք․ հարթ և ընտիր արտորայք կան մեր երկու կողմն, ամեն տեղ կալ կ՚ընեն, ոմանք կը կրեն․ լեռներու կը մօտինք, արեւը կը խոնարհի, զովագին օդը զուարթութիւն կը սփռէ ՚ի մեզ, և Քիւրդ Ահմէտն ու ոստիկանք փոխ առ փոխ «Քօռ—օղլին» և այլ խաղեր կը կանչեն։ Ծառաս-

տանք և վազուն ջրեր կ'ափոփեն մեր տըխնութիւնը՝ ողջունելով զմեզ ։ Մօտ ենք հին Մալաթիա քաղաքին , կլոր երկայն քար մը մը կայ տնկուած ճանապարհին վրայ , որ Յունարէն գիր ունի , և գագաթը քիչ մը փոս ։ Կը պատմեն թէ՝ Սուլթան Մուրատի տնկած քարն է այս , իբր կէս կամ կեդրոն Իւսքիւտարէն մինչև Բաղդադ երթալուն , թէ՝ աղջիկ մը մէկ ձեռքով բարձած այս քարը և Սուլթանի դիմացն եկած է , որոյ քաջութեան 'ի նշան հրամայեց կանգնել կոթող անոր յիշատակին , թէ՝ քարի գլխու փոսին մէջ ափ մը ոսկի դրեր է Սուլթանն և Բաղդատէն վերադարձին տեսեր է որ ամբողջ նոյնութեամբ կը կենայ , զարմացեր Մալաթիոյ բնակչաց քաջութեան և հարըստութեան , որոց տկար աղջիկն քարէ սիւն մը մէկ ձեռքով կը բառնայ , որոց մէջ աղքատ ու կարօտ մէկը չկայ · երանի՜ տուեր այս երկրին , երանի՜ իւր թագաւորութեան։ Բայց այդ քարը և իւր արձանագիրը իմաստասիրելու արժանի առարկայ մ'է ։

Վերջապէս համեղութեամբ , խոշորութեամբ , աղւորութեամբ և առատութեամբ հռչակաւոր Մալաթիոյ մրգաստանեայց մէջն ենք · թթենի , ծիրանի , տանձենի , խնձորենի և այլ պտղատու ծառոց դրախտներ , և զանոնք վայելելու , ժողվելու չորացնելու զբաղող Ադամ—Եւայներ , ամեն ուրեք ։ Այս քաղաքի պարիսպներ , բուրգեր , որք

տեղ տեղ փլած են, խրամներ, որոց մէջ թիւթիւն տնկած են, ականակիտ ջրեր, ուր խումբ խումբ թրքուհիք կտաւ և ճերմակեղէն կը լուանան, մինարէներ, գմբէթներ, քարաշէն տուներ, բաղնիքներ, միջնաբերդ, մեծամեծ քարակերտ շէնքեր, զորս տանց մէջը շրջելու՝ կը դիտենք, ամենուն ալ աւերումն իր ծանր ձեռքով հարուած տուած, ա՛յս է եղեր այն պատմական հին և անուանի Մելիտինէն Հայոց, զոր այժմ կը կոչեն Էսքի շէհէր, Հին—Մալաթիա ։ Ա՛յս քաղաքն է որ հին դարերու մէջ Արեւելեան և Արեւմտեան խուժադուժ ազգաց, ժողովրդոց և իշխանութեանց արշաւանքներ տեսած է ։ Միջագետք՝ որ յաւուրց Աղեքսանդրի՝ Յունաց և Հռովմէացւոց, Բաբելացւոց, Մարաց, Պարսից և Հնդկաց ուժերու, վիրար ջախջախելու, աշխարհակալելու թատր եղած էր, այդ ամենայն անցքը Միջերկրականէն և Բաբելոնէն երկուստեք Մելիտինէն էր, ինքն իսկ երբեմն նպատակ լինելով յարձակողաց, մանաւանդ Միջին դարուն, մասնաւորապէս Հագարացւոց և Թաթարաց արշաւանաց առջեւ. անուանի հանդիսացած է ընդհանուր, Ազգային, և Եկեղեցական պատմութեանց մէջ, որ շատ մարտիրոսներ ունեցած է, այլ իրօք վերջին դարերուն մէջ Թուրքաց շահաստան մը ։ Հազիւ 45—50 տարի կայ որ ձգած են բնակիչք այս քաղաքը, և գնացած ժամ մը հեռի Նոր—Մալաթիան կը բնակին,

ուր յառաջ իրենց այգեստանն ու ամարանոցըն է եղած ։ Սակայն հին քաղաքի դիրքն ու օդը լաւագոյն է Նոր քաղաքէն. — դեռ կան քանի մը հարիւր տուն Թուրք բնակիչք հոն, և Նորէն ալ ամառը շատեր կու գան իրենց պարտէզներ և պտուղները մշակելու և կթելու ։

Ծառաստանք կը վերջանան, քաղաքի ներքին աւերակներէն աչքերդ վեր առնելով՝ յանկարծ կը պատահիս անթիւ գերեզմանաքարերու խռնուածքի մը, ուր կը ներկայանան Մալաթիոյ Թրքաց փաթթոցաւոր գլուխներու կերպ կերպ ձեւեր, որոց երեւոյթն իսկ կը զարհուրեցնեն զմարդ, թէ ի՜նչ սոսկալի անձինք են եղած, որք թէպէտ հողոյ տակ՝ այլ դեռ սարսափ կ'ազդեն տեսնողին ։

Անցանք, և ահա բանակ մը 300 իշոց և 100էն աւելի սպառազէն Քրդաց, տարօրինակ մեծութեամբ փաթթած են իրենց գլուխները, արիւնկզակ մարդիկ, որք կ'երթան Սեւաստ աղ գնելու. բոլորն ալ առանձին առանձին դիտելով զմեզ, իրարու կը խօսէին «Էյվհա ընկ․էչ ա՛, Թէվբէչ ա՛, եւն»։ Մեր ձախ կողմն մօտ ընդ մօտ գեղեր կ'երեւան Թրքաց, ջրերով և ծառերով առատ, և ահա վերջապէս Մալաթիոյ բերանը հասանք ։ Քաղաքի շէնքերը բնաւ չեն տեսնուիր, ժամէ մը աւելի տարածեալ ծառատունկերու անտառ մը կը թուի, բարձրացած բարտենիք և այլ և այլ տունկք թանձր ու խիտ

կը փակեն աչքէդ քաղաքն ու շէնքերը · փողոցները կանոնաւոր և անկանոն, գրեթէ ամբողջովին անմաքուր · Ջրալից առուներ ամեն թաղ, ամեն տեղ տեսածդ՝ թուրքեր են. լամուկները յետին աստիճան լիրբ, սըրիկաները և արբեալները կը վխտան ։ Դըռներու վրայ Շամայ մեծ գլուխներով և երկայն մօրուքներով թուրքերը նստած կը ծըխեն և ծանր ծանր կը խօսակցին, խոժոռ ու խորհրդաւոր հայեացքներ ձգելով անց ու դարձ ընողին վրայ. հոս եկած էին Էրզրումէն գաղթական քանի մը տուն բարեպաշտ Միւսլիմաններ, չկրնալով հանդուրժել հեռաւոր Ռուսի իշխանութեան տակ մնալ և իրենց խղճմտանքը հանդարտել ։

Շուկայի մէկ կողմով շրջելով հասանք Մայր եկեղեցին, Ս. Սարգիս, ուր էր Հայոցըս Առաջնորդարան ։ Ո՛հ Առաջնորդարան, արդեօք ի՞նչ ջրով պէտք է լուանալ զքեզ...։ Քո աղտոտութիւնք, մաշուած շէնքդ, անճահ կահերդ, անկարգ կազմաւորութիւնդ, հսկայ լուոց լեգէոններ, մոծակաց խազախս հեծելազօրք, հետեւակազօր ոջիլներու գումարտակներ, և պաշը պօզուք ճանճերդ, որոցմէ հրջապատեալ իբրև պետ և թագաւոր կը բազմէր վերին անկիւն առաջնորդն Մելիտինոյ Նորին Սրբազնութիւն Տ. Արսալիոն եպիսկոպոս, որ սոյն հանդիսական դահլիճին մէջ ընդունեց զմեզ, ուր վաղվաղակի իմ անարժանութիւնս յայտնեցի այդքան փա-

ռաշուք ասպնջականութեան . և Սարաֆեան Ատուր աղայի տունը նորակերտ մաքուր սենեակով մը գոհ եղայ , ուր գոնէ միայն նիզակաւոր վաշտ մը մոծակներ ( խոշոր և խայթող օէվրէօէնէկներ) նուագներ ածելով սպաս կը հարկանէին մեզ, շարունակ համբուրելով մեր ոտք ու ձեռքերը և երեսները։ — Գտա՛նք։

Յաջորդ օր կառավարութեան մարդիկներէն և ազգայիններէն շատեր մեր գալուստ շնորհաւորելու եկան , ինչպէս նաև Բողոքականաց Մարտիրոս պատուելին , և Կաթոլիկաց եպիսկոպոսի կողմէն՝ երկու եկեղեցականք , զորս Առաջնորդարանը ընդունեցի . այս առթիւ բաւական թեթեւցաւ զօրաց բանակը , վասն զի ամեն եկողին հետ իբրև յուղարկաւոր դաս դաս կ'երթային , բայց պահեստիք նորէն անոնց տեղ կը բռնէին : Քաղաքական ժողով անունով մարմին մը կար , որոց ներկայացուցի իմ պաշտօնական գրերը , և հարկ եղած նախապատրաստութիւնները խնդրեցի :

Երրորդ օրը փոխադարձ այցելութեան շրջեցայ . Միւթասարիֆը փոխուած էր , տեղապահ Մօլլային ներկայացանք . Ո՞րքան արժանի էր այս անձը այնպիսի քաղաքի մը : Կառավարութեան պալատն ընդարձակ շէնք մ'էր , բայց կառավարութիւնը շէն չէր : Նոյն իսկ քաղաքին մէջ և շրջակայքը ամենայն չարիք և եղեռն համարձակ կը գործուէր , կաշառեալ անիշխանութիւն էր ,

և անբարոյականութիւն, յափշտակութիւն, լրբութիւն ու սպանութիւնք՝ տիրական պաշտօնէութեան դարձած էին. սոնց հետ մէկտեղ՝ ապուշներ և խենդեր ալ բազմաթիւ էին, որ զեղխ ու մոլի կենաց հետեւանքներ են: Գրեթէ ամեն ոք այն դրախտագեղ ծառաստանեայց և ջինջ ու առատահոս առուաց ու աւազանաց քով նստած ծաղկապատիկ կակուղ բազմոցներու վրայ, կը կլկլացնէ իւր Նարկիլէն, կը կոնծէ օղին և գինին, կը լափէ խորովածն, գլորիկն (քիւֆթէ) ու բիլաւը, կը խածոտէ բազմազան միրգն 'ի կոկորդն և 'ի ծոցն. դարձեալ օղի, անշուշտ ափիոնի հոտէն և օդոյն տաքէն ալ ազդուելով և ահա կամ թմրեալ իր եղած տեղը կը մնայ, կամ գրգռեալ կիրքերէն կը վարի աստ և անդ զոհեր որսնելու: Մալաթիոյ մէջ ուր կը հաւաստէին թէ՝ տարին առ նուազն 120000 լիրայ կը բերէ ափիոնի վաճառքը, զարմանալի էր տեսնել որ քաղաքացիք շատ աննշան բաժին մ'ունէին այս գումարէն, և այն՝ միջնորդ լինելով և նենգելով և եթ, այլ բոլոր այս բերք մշակողներն և շահողներն վայրենի Քրդերն էին: Դրամատէր հարուստ Հայ չկար այս քաղաք, բաց 'ի քանի մը վաճառականներէ, որք պանդուխտ էին: Թէպէտ կարօտ ոք ալ չկար. և իրենց մեծամեծ տներով, ընդարձակ այգեստաններով, ծառաստաններով, և քիչ մը շահով երջանիկ կը կարծէին ինքզինքնին. Նոր նոր արթըն-

ցեր էր իրենց մէջ դժգոհութեան հոգին, և կը համոզուէին թէ պէտք է գործել և յառաջադիմել թէ՛ նիւթական և թէ՛ մտաւորական ասպարէզին մէջ։ Արդարև Հայոցմէ կ'սպասուէր այս. վասն զի իրենք էին միայն Քրիստոնեայ տարր այդ տեղը. բայց զիրենք ալ զարթուցանող, լուսաւորող և առաջնորդող կը պակսէր։ Կրօնական և ուսումնական վիճակնին մռայլ. Հայ վարժապետ մը ունէին՝ զոր Խօջայ կը կոչէին, կը դասախօսէր տաճկերէն, հայերէն, գիր, թիւ, ձայնաւորութիւն, կառավարիչ էր և տնօրէն և ամենայն ինչ։ Գրագիր էր Առաջնորդարանին, և այլ ուրիշ պաշտօններ ունէր, ո՞վ կրնար գտնել զինքն թէ իրաւ այսքան բանգէ՞տ էր կամ բան մը չգիտէր. իրեն կ'ըսէին՝ Բաւական ես մեզի, դու ամեն բան գիտես, ամեն բանի կարող ես։ Երկու կամ երեք անձինք միայն կրնայ գտնել մարդ ժամանակին պահանջմանց վրայ գաղափար ունեցող. ընդհանրապէս խորին հնութեամբ կ'ապրին իրենց ներքին և արտաքին կեանքով։ Ադիեաման և Պէհէսնի սոյն Առաջնորդութեան թէմն լինելով, ոչ ոք տեղեկութիւն ունէր. բաղդաւոր էի որ դժբաղդ առթիւ մը Արօ անուն Հայ մը այն կողմէն բերուած էր կառավարութեան ատեանը դատուելու. ծեր՝ այլ աշխոյժ անձ մը, որ երկար ժամանակ վարձկալութիւն և գանձապահութիւն ըրած լինելով՝ անձամբ և մանրամասնօրէն գիտէր

Հայոց վիճակն, բնակութիւններ և թիւերը, անկէ քաղեցինք մեր տեղեկութիւնները։ Ինչպէս ամեն տեղ, նոյնպէս և հոս ապսպրեցի որ Առաջնորդարանի մէջ ազգահամարութեան տումար ունենան, և հետզհետէ ծնածն ու մեռածը նշանակեն։ Բայց միթէ ուրիշ խնդրոց տումար կամ արձանագրութիւն կա՞ր, բնաւ։ Ս. Առաջնորդն իւր ձիէն զատ բան մը չէր յիշեր. ամեն օր իւր հոգն ու խօսքն իւր ձիին էր, իւր ծախած ձին, իւր առած ձին...։ Աւա՜ղ, խոր ցաւեցաւ հոգիս։ Մալաթիոյ Առաջնորդութիւնը Սսոյ կաթողիկոսութեան թեմն է։

Ս. Առաջնորդի հետ վանքերը շրջելու գնացինք, որ հեռի չեն քաղաքէն։ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ վանքը՝ բարձր և հովասուն դիրք մը ունի, փոքրիկ տաճարով մը և քանի մը քարուկիր սենեակներով. բոլոր դռները բաց, ամայի, ապականութեանց մէջ. մարդու նշան չտեսանք, այլ իբրև որջ կը բնակին եղեր հոն գիշերները աւազակներ և որկաներ... օդն ու ջուրը սքանչելի, ընտիր արտեր ունի։ Այս է այն վանքը, որոյ կրօնաւորներ շատ ձեռագիր եկեղեցական մատեաններ գրած են, ինչպէս տեղ տեղ յիշատակարանաց մէջ ընթերցայ։ Բայց այսօր այս աւաղելի վիճակին իյնալուն պատմութիւնը լսելու արժանի է։

Այս վանքի մէջ տէր Սահակ անուն քահանայ մը իւր ընտանեօք կը բնակի եղեր,

ինչպէս՝ որ իւր հայրն ալ ըրեր է, ազգին համութեամբ իբրև վանահայր և իբրև մշակ-այս տարի խնդիր ծագելով՝ տէր Սահակին ելեր է սեպհականելու վանքի բոլոր արտերն իւր անձին, բարեպաշտաբար նուիրուած անոր անուան վրայ չեն ըրած։ Ազգային քաղ-ժողովով կը բռնեն զինքն, և իւր տունը վանքէն կը հանեն. Նա կը դիմէ Լուսաւորութեան ատեաններըն, կը դիմէ մինչև Տիգրանակերտ—Վիլայէթ, երկուստեք ծախքեր տեղի կ՚ունենան, մինչև կը հեռագրուի Ս. Պատրիարքին. և Ս. Պատրիարքը կը կանչէ տէր Սահակը Կ. Պոլիս. Նա կարճ ճանապարհը կ՚ընտրէ, կը դիմէ Մալաթիոյ կաթոլիկաց Ղևոնդ գերապայծառին, անոր հովատքն ու խնամքը կ՚ընդունի, յուսալով թէ այնու այսու կարող լինէր տիրելու վանքի հողերուն կամ վանքն կաթոլիկաց ձեռք անցունել, Լուսաւորիչն Պապական դարձընել։ Մի՛ զարմանար անոնց խելքին. Գերապայծառն, որոյ միայն արտաքինն է պայծառ, ինքնին պատմեց ինձ թէ՝ ինչպէս կանխապէս մարդ մը և մատ մը տեղ չեն ունեցած հոս, թէ ի՞նչպէս ժողովրդական հակառակութեանց երևոյն այսօր բաւական թուով կաթոլիկ, մեծ եկեղեցի մը, վարժարան, առաջնորդարան, և այլ կալուածներ ունին, թէ՝ իրենց չնչին մեծ մասն Մալլըմեան Առաքել վարդապետին պարտական են, որ երբեմն Առաջնորդ էր քաղաքիս, և

միջոց մը ինքն իսկ ժողովրդեան մասին մը հետ կաթոլիկ եղած, եւ. եւ: Այսոնք տեղի ունեցած չէին ոչ թէ գերապայծառին համ-ճարեղութենէն 'ու զօրաւորութենէն, այլ Մագըրմեանի չարարարութենէն, ուրիշ Ա-ռաջնորդաց անպիտանութենէն և ժողովր-դեան ազխտութենէն: Զարմացիր արդէն թէ ինչպէս միացեալներն Հայ միացած են ցարդ: Արդէն մաս մ'ալ Բուլղարական են, բայց գրեթէ անխտիր են իրենց եղբարց հետ, ինչպէս իրենց պատուելի Մարտիրոսն ալ ան-կեղծ Հայ մ'է և բարեսիրտ անձն մը:

Շրջեցանք վանքին արտերը, զորս հնձել կու տային Բուլղաց:

Վանքին տաճարի դրան ճակատի վրայ գրուած էր. «Շինեցաւ դուռս Ս. Գրիգորի ձեռամբ Սիմէոնի եպիսկոպոսի. 'ի թուին Հայոց ՌՋԸ. մարտ Գ. յիշատակ ինձ և ծը-նողաց....»: Տաճարի դռնէն դուրս գերեզ-մանի մը արձանագիր, «կանգնեցաւ շիրիմս Փրկչ.·. նահատակ Ստեփան վարդապետին, թվին ՌՄԻՋ. ին»:

Ս. Գրիգորի կամ Լուսաւորչի վանքէն իջանք ԱՆԱՐԾԱԹ ԲԺԻՇԿ; որ պաշտավայրի մէջ փոքր դարի մը տակ աւերակ մատուռ մի է, միայն երկու կամարը ողջ. իւր չուրջը ա-ւերակաց կոյտեր ունի. շէն վանք է եղած. մատրանս առջեւէն կը բղխի մեծ ջուր մը, որ կ'ըսուի Բոհիզար պուշի, ասազան է բալսամ ականց, որոյ պարզ և պաղորակ ծոցոյն մէջ

ծփծփալով կը լողային ձկունք, և մշտադալար սէզն իւր կանանչագեղ գորգերով կը զարդարէր աւազանին շրջանակը. տեղի խիստ զուարճալի, որոյ հողերը Թրքաց ձեռքն էին, իսկ մատուռը՝ քանի մը տարի առաջ կաթոլիկներ գաղտնի ջանացեր են կառավարութեան ձեռքով տիրել և վանք մը կառուցանել, հազիւ արթնցեր են Հայք, և թէպէտ յաջողեր են խափանել կաթոլիկաց շինելը, այլ իրենք գէթ մատուռը նորոգած չեն։

Անարծաթէն անցանք Օրդուզի գեղը, Ս. ՓՐԿԻՉ վանքը, որ բաւական շէն է սենեակներով, պարտէզներով, եւն. ուր անպակաս են ուխտաւորք և երթեւեկք. հող մը ունի բակին մէջ, յորմէ դեղնութիւն ունեցողներ կ՚ուտեն ու կ՚անցնի. ուխտաւորաց մեծ մասն ցաճիկ կանայք են. վանքի դիրքն հովասուն, ջրաւէտ և ապահով լինելուն՝ օդափոխութեան և զուարճանալու համար եկողներ ալ շատ կան, ուր տեղի կ՚ունենան խաղ, դափ, պար, եւն։ Ս. Փրկչի տաճարը խիստ ընդարձակ և հոյակապ շէնք մը եղած կ՚երեւի իւր աւերակէն. արդի տաճարը՝ աւերածոյն մէկ մասն է, որ ծածկեր են. մութ և խոնաւ է, ուր Պատարագ կը մատուցանեն կիրակի օրերը քաղաքի քահանայք շրջանով. փոքրիկ մատուռ մ՚ալ կայ տաճարին աջ կողմն՝ նոյնպէս մութ։ Դրսէն հիւսիսային պատին վրայ դրան մը տեղ կայ

դոցուած , և անոր ճակտին վրայ յունարէն գրով արձանագիր մը ։ Ըստ աւանդութեան, Լէնկթէմուրի աւերածն է եղեր այս մեծաշէն տաճարն , և այսոր հողեր ու կալուածները տիրեր են Թուրքեր ։ Օրդուզի գեղը բազմաբնակ է և դրախտի պէս զուարճալի՝ ծառերով և ջրերով . բնակիչք Թուրք են . և քիչ մ՚ալ Հայք . գրեթէ քաղաքի արուարձան կը սեպուի ։

Դարձանք մեր պաշտօնատեղին ։

Ես , որ ոչ ծովէն ու ցամաքէն , ոչ Չէրքէզէն ու Քրդէն , ոչ տքնելէն և քրտնելէն չէի տկարացած , Մալաթիոյ մէջ օրէ օր , ժամէ ժամ, վայրկեանէ վայրկեան անգամ զգալի ծանրութիւն մը և տկարութիւն մը կ՚զգայի ։ Բոլոր քաղաքը հիւանդ է , ծառոց խտութենէն օդ չխաղար , ջրոց շատութենէն և լերան ստորոտը շինուելէն՝ խոնաւութիւն կայ , արջառոց հիւանդութեան կոտորած՝ չորս կողմը սատակներով լցած , ոչ ոք է որ զանոնք թաղէ . արեւ կիզիչ , աղբ և աղբիւր , փորոտիք և կղկղանք , խոտերու և միրգերու ապականած վիճակը՝ ամեն տեղ թոյն կը սփռեն . բնակիչք զանազան ախտից բռնուած , մարդ չկայ , որ գոնէ տենդ չունենայ , հիւծողականն , վէրէմ , տեղական ախտից կարգէն է . ո՞վ կրնայ ասոնց հասկցնել , առողջապահական զգուշութիւններ , օրէնքները , Աստուծոյ հակառակ խօսիլ էր . և թէպէտ Մէճիտէյի հէքիմն ալ ունէին , բայց կը գանգտէր

թէ՝ երբեք ըամբներս ուշադրութեան չեն առնուր ։ Փախչիլ որոշեցի , և անհապաղեցի վիճակագրութիւնս լրացնել ։

Յուլիս 28 ։ Նոր Մութասարիֆը քաղաք մտած էր գիշերուան ժամ 5ին . առաւօտը գաղուտ շնորհաւորելու գնացինք , որ իջեւանած էր քաղաքի երեւելիներէն Հաճի պէյ անուն ազնուական Տաճկի մը տուն . ընդարձակ սրահ մը , առջեւը բաց , որոյ միջեւէն կը հոսէր գետոյ չափ մեծ՝ սառն և սպիտակ ջուր ։ Ճիտը հաստ , մարմինը գէր , հասակը բարձր , քիչ խօսելու անվարժ , լեզուն ալ Յունաց նման ծեք ծեք Թուրքերէն , Նիրիտցի էր ինքն , և Շ. Գարահիսարէն կու գար ։ Աղէկ ընդունելութիւն ըրաւ , և պատմեց գիշերը քաղաքի մէջ իրեն գալստեան միջոցին պատահած հետեւեալ դէպքը ։

Թուրքի մը տան առջեւէն կ՚անցնէինք , ըսաւ , տանիքէն մարդ մը ինքզինքը վար նետեց և ինկաւ ջուրը . քանի մը հոգի ալ տանիքի միւս կողմէն փախան աղաղակելով և հրացան կրակելով ։ Փաշային մարդիկներէն ոմանք կը կարծեն թէ՝ գողեր են , և հարէմն ու աղջիկը կ՚ուշաթափին՝ կարծելով թէ փաշան զարնուեցաւ . փաշան ալ կը կարծէ թէ ջուր իյնողը հալածեալ մ՚է օգնութեան կարօտ , այն ինչ ոստիկաններէն մէկն ալ զանի զարնել կ՚ուզէր . վերջապէս նա կը յաջողի խոյս տալ , և ասոնք սարսափալից բայց անվտանգ կ՚անցնին ։ Առաւօտեան տաճիկ կին

մը կը ներկայանայ փաշային, թէ՝ Ես այն տանը տէրն եմ. իմ աղջիկս բռնաբարել եկած էին անոնք որ տանիքէն փախան, որոց պարագլուխն էր Ապտ իւլ Գատիր էֆ. ջուր իյնողը: Քաղաքի էն պատուաւոր և բարձրաստիճան անձին որդի էր սա, ինքն ալ նոյնպէս պատուաւոր և ատենական մարդ, որուն քանիցս հրաման ղրկեց փաշան, այլ չկրցաւ բերել տալ: Ամեն մարդ մատ խածաւ:

Մենք ալ պատմեցինք Փաշային մեր գիտցածները, և թէ ինչպէս կը նախատուէին կը հայհոյուէին կը քարկոծուէին Հայեր, իրենց կանայք և զաւակները, իրենց հաւատքն ու պատիւը. և թէ՝ ինչպէս քահանայից ու նոյն իսկ Առաջնորդին ետեւէն «Քէշիշ, օ՛չ օ՛չ» կը պոռային ու քարեր կ'արձակէին, որուն մենք ալ ականատես եղանք, և յատուկ Նաֆըէր գրուեցաւ. բայց գործադրուեցաւ կարծեմ՝ ոչ: Երկու օր վերջն ալ Քրդերը զօրանոցին մօտերը ձիաւոր զօրք մը զարկին. և քաղաքին մէջն ու դուրսը չարագործներով լցաւ: Գորտերն եղան Դիոսի գերանին վրայ: Ընդհանրապէս այս սովորութիւնն ունին Քըրդեր և չարագործներ. ամեն նորեկ կառավարչի մը առաջին օրերը իբրև փորձ քանի մը չարիքներ կը գործեն. եթէ եկողը աչալուրջ և կորուկ իշխանութիւն ցոյց տուաւ, կը հանդարտին, եթէ թոյլ ու չուառ մնաց, ազատաբար ամենայն ինչ կը գործեն:

Հայոցմէ ոմանք առանձին եղած ատեն

շատ վատ բաներ կը պատմէին Ցաճիկ պաշտօնէից և բնակչաց ըրածներէն. բայց երբ իրարու քով գտնուէին, չէին համարձակեր բան մը խօսիլ, և խոհեմութիւն կը համարէին իրենց այս վարմունքն. վասն զի, կ'ըսէին, Դատող ու պատժող մը չեղաւ մինչև այսօր, և եթէ լսեն մեր գանգատ ընելը, պիտի աւելցընեն իրենց չարիքներ։ Դէպք մը, զոր ամենքն ալ կը պատմէին զատ զատ, և կը ժխտէին միշտ այլոց առջև, բայց յայտնի էր թէ ակամայ կը ժխտէին. այն էր, դեռ փոքր միջոց մը առաջ՝ փայտէ խաչ մը կախեր էին շան պարանոցէն, և շուկայի մէջ շրջեցուցած էին Հայոց խանութներու առջևէն, իբրև թէ Ռուսաց նախատինք ընելու նպատակաւ. խոհեմ Հայերը լռութեամբ նայեր էին վրան. և երբ փսփսացեր էին կառավարութեան ականջին, խափանել տուեր էր, և փութացեր էր պատասխանել Հայոց թէ՝ խենդ մ'է եղեր այդ բանն ընողը։ Այլ միթէ շուկայի մէջ բազմող և շան ետևէն քալող այնքան Թուրքերը բոլո՞րն ալ խենդ էին։ Կարի երկիւղով պաշարեալ են Հայք, ոչ իրենց իրաւունքը և ոչ իրենց կրօնքը կրնան համարձակ խոստովանիլ։ Եթէ այսպէս ապրին, լաւ է որ չապրին։

Այսպիսի քաղաքները եթէ Եւրոպական հիւպատոս գտնուի, շատ մեծ տարբերութիւն կ'ընէ ներկայ վիճակէն. դժբաղդաբար աղէկ Միւթասարիֆներու ալ արժա-

նացած չեն․ բայց գոնէ Հայոց Առաջնորդն ժիր և բանիբուն մէկն լինի, գրեթէ կէս միւթասարիֆ և ամբողջ հիւպատոս մը կրնայ համարուիլ, և եթէ լուսաւորուի ժողովուրդըն, կ'արիանայ ինքզինքը պաշտպանելու․ զի գիտութիւն՝ զօրութիւն է ։

Մալաթիոյ քաղաք․ կառավարութիւնը Միւթասարիֆութիւն է, Տիգրանակերտի վիլայէթին ներքեւ ։ Եկեղեցիք Հայոց՝ 3. Ս. Սարգիս՝ Մայր եկեղեցին․ Ս. Յարութիւն և Ս. Երրորդութիւն ։ Վարժարանք 3. Մեսրովբեան, Ներսէսեան և Արշակունեան ։ Ծախք վարժարանաց տարեկան 7000 ղրշ. եկեղեցիներէն ։ Ուսանողք՝ 400 մանկունք ։

Հայաբնակ թէմք ։

ՀԻՆ—ՔԱՂԱՔ․ Եկեղեցի 1. Ս. Ստեփաննոս ։

ՕՐԴՈՒԶԻ գեղ. Եկեղ. 1. (Ս. Փրկչի վանք)։

ԶԸՐՄԽՏԻ գեղ. Եկեղեցի 1. Ս. Էջմիածին։

ՀԷՔԻՄ ԽԱՆ Աւան․ Միւտիրութիւն ։ Եկեղեցի 1. Ս. Աստուածածին ։

ԱՆՍՈՒՐ գեղ. . . . . . ։

ՄՈՒՇՈՎԿԱՏ գեղ. Եկեղեցի 1. Ս. Յոհաննէս ։

ՊԷՀԷՍՆԻ քաղաք․ Գայմագամ․ Մալաթիոյ միւթասարիֆութեան տակ ։ Եկեղեցի 1. Ս. Փրկիչ ։ Վարժարան 1. Ներսիսեան ։ Ուսանող 40 մանկունք ։ Բնակիչք մեծաւ մասամբ Թուրք ։ Կաթոլիկ և Բողոքական Հայեր ալ կան ։

ԱԴԻԵԱՄԱՆ քաղաք, կամ ՀՕՍԱՆ ՄԱՆՍՈՒՐ. Գայմագամ. Մալաթիոյ Միւթասարըֆութեան տակ։ Եկեղեցի 1. Ս. Աստուածածին։ վարժարան 1. Ռուբինեանց։ Ուսանող 50 մանկունք։ Բնակիչք՝ Թուրք, Ասորիք, կաթոլիկ և Բողոքական Հայք։

Հայաբնակ գիւղորայք Պէհէսնիոյ և Ադիեամանի։

ՍԱՄՍԱՏ (Սամուսատ), ԳԱՎՐԱԿ, ԴԱՔԴԸՂԱՆ, ՂԱՆԴԱՐՈՒ, ԿԷՕԼ—ԲՈՒՆԱՐ, ՔԵԱՐՔՈՒՇԷՆ, ԳԸՋԸԼՃԷ—ԲՈՒՂՆԱՐ, ՎԱՐԳԵԱՆԱՑ ԳԵՂ, ԲԱՐԲԱԴՈՅ, ՔՕԼԻԿ, ԲԷՕՅԻՒՔ—ԲԱՂ, ՆԱՌԼԸՃԷ, ԳԱՆ, ՀՈՒՆԻ, ՔԱՎԵԱՐՏԻՇ, ԴԱՐՊԻՇ, ՀԷՆԻՃ, ԿԱՐԿԱՌ, ՓԷՐԴԷՍՈՅ, ԹԷՄՍԻԱՍ, և ՔԱՂԴԷ աւան, ուր Գայմագամ կը նստի։

Վերոյիշեալ գեղերն ամենքն ալ առանց եկեղեցւոյ և առանց վարժարանի են. միայն Քաղդէի մէջ եկեղեցի մը կայ Հայոց Ս. Գէորգ անուամբ։ Իսկ բնակիչքն են Հայ և Քիւրդ, տեղ տեղ ալ Ասորիք և Թուրք կան։

Լերինք Մալաթիոյ. տեղական անուամբ Աղ—դաղ, Բէկ—դաղ, քաղաքին հարաւը. որոց բնակիչքն են արիւնկզակ Քիւրդեր, Մալիկանցիք, Ալիկանցիք, Քավի, եւն. Թէ՛ հասարակաց վնասակար և թէ՛ ցեղ ցեղի սաստիկ ոխերիմ։ Այս լերանց միւս երեսն է, Պէհէսնի և Ադիեաման։ Աղջադաղ լեռն՝ Մալաթիոյ արեւմուտքն է, որոյ բնակիչ Քըր-

դեր Ճ—Ց հազար տուն են. կիսով չափ Գը-
զըլպաշ, որք մեծ չարիք կը հասցնեն Արաբ-
կերու, Հէքիմ—խանի. և Հալէպի ճանա-
պարհաց, ու անոնց մօտ եղած գեղերու և
քաղաքաց, ոչ զօրք կու տան տէրութեան և
ոչ տուրք: Այս լերինք Անտիտորոսի շղթայն
են: Աղջատաղի մէկ ծայրն կը հասնի Մարաշ՝
կեռաձոր փոքր անունը առնելով: Աղջա-
տաղն է ճիշդ այն ՍԵԻ ԼԵԱՌՆ, որ ՍՈՒՐԲ
ԼԵՐԻՆՔ ալ կոչուած են մեր պատմութեանց
մէջ, ուր լի էին Ասորւոց և Յունաց միան-
ձանց վանքեր, ուր նաև մեր Գրիգորիսներ
և Ներսէսներ ծաղկեցան, Շնորհալւոյ օրերը
և անկէց զկնի խիստ հաչակաւոր վանքեր
ունեցանք իբրև Դպրէվանքեր, ուր թէ՛ մեր
երջանիկ Վարդապետաց գրիչին, թէ՛ մեր
դիւցազն Ռուբինեանց, Թորոսեանց, Լևոն-
եանց եւն. սրոյն ու նիզակին փառաւոր հան-
դիսարաններ եղած են: Ինչպէս վերև նշա-
նակեալ ցանկին մէջ կը տեսնուի՝ դեռ եր-
կու գեղ կայ Աղջատաղ՝ Հայաբնակ և Հայ-
անուն, ԱՆՍՈՒՐ և ՄՈՒՇՕՎԿԱՑ. Մուշովկայի
ծերունի տէր Յակոբ քահանայն տեսայ Մա-
լաթիոյ մէջ, որ կը պատմէր թէ՝ բոլոր Աղ-
ջատաղի ձորերն ու բլուրները աւերակներով
լի են. խաչքարերու աւերակոյտներ, զորս
կը յարգեն Գզըլպաշներ և կ՚ըսեն թէ՝ եկե-
ղեցի են եղած այս տեղեր. խաչքարերու
վրայ յաճախ Յունարէն և Ասորերէն գրեր
կը տեսնուին, դուն ուրեք ալ Հայերէն.

բայց Հայոց խաչքարեր յայտնի են, ըսաւ, վասն զի բեւեռ ունին մէջտեղը, թէ՝ Թաւջէօս առաքելոյ օծածներն են այն բեւեռները։ Պատմեց թէ ԴՈՒՐՇՈՒՆԼՈՒ ԳԱԼԱ գեղի Գզըլպաշները աւերակ մը փորեր էին, ուստի չորս խաչաքար ելած էր, և եկեղեցւոյ կամարները կային, Տէր Յակոբը կանչեր էին Քրդերը, և սա գնալով խաչքարերը մէկ կողմ առած էր, եկեղեցւոյ չուրջ քարերով կիսացանկ ըրած էր, և այն խաչքարերու բեւեռները հանելով իւր քովը առած էր, որոցմով հիւանդաց համար խաչհանգիստի ջուր կ'օրհնէր։ Բեւեռի մէկն խնդրեցի և առի։ Սա պատմեց թէ՝ ԹՈՐՈՍԻ ՎԱՆՔ անունով շէնք մը կայ դեռ. և այլ կցկտուր և սրտակտուր բաներ կը պատմէր, ափսոս որ աղէկ ուշադրութիւն ըրած չէր, թէպէտ բաւական աչքաբաց և լուրջ մէկն էր բայց պատմութիւն գիտնալ պէտք էր. սա ազատութիւն ունէր բոլոր Աղջատաղի Քրդաց մէջ արձակ և ապահով շրջելու, վասն զի իբրև աղօթելով և թուղթ գրելով բժշկութեան համբաւ հանած էր, ուստի բոլոր Քիւրդ հիւանդներ զայն կը յարգէին. այս Քրդերը այն աւերակ եկեղեցեաց ուխտ և մատաղ ալ կ'ընեն եղեր։ Տէր Յակոբի հետ Մալաթիոյ ծերերն ալ կը հաստատէին թէ՝ հին քաղաքին Մելիտինէի պարսպին մէկ դուռն՝ Թորոսի անունովն էր, զոր Թօրօս գափուսու կ'անուանեն եղեր Տաճիկները։ Կարօտը սրտիս մէջ մնաց

Աղջատաղը շրջելու, տէր Յակոբի այս կարապետ մը հազուագիւտ էր արդարև ։

Պէհէսնիոյ 3 ժամ անդին Քէսուն գեղին առջեւ ՎԱՍԻԼԼՈՍ անուամբ քարակոյտ մը կայ, որ Գող—Վասլի ապարանք է, կ'ըսեն. յորմէ կէս ժամ հեռի է Կարմիր վանքի աւերակը, և ասոր կից քարայր մը, զոր կ'աւանդեն թէ Շնորհալւոյն առանձին աղօթատեղին է եղեր ։

Մալաթիոյ գրեթէ կռնակին կից էր Աղ—դաղ լեռը, ուստի կը հոսէին քաղաքին այնքան առատ և զուլալ ջրեր. լեռան գըլուխը, կ'ըսէին, Եդեմայ պէս դրախտ մի էր բիւր ծաղիկներով և ջրերով. ուր սակայն այն օրերը ոչ ոք կ'իշխէր երթալ, զի Քրդերէն կ'սպանուէր իսկոյն ։

Թէ՛ Մալաթիոյ, թէ՛ Պէհէսնիոյ և թէ Ադիեամանայ երկիրը մեծ մասամբ հովիտ է, որոց միջէն գետակներ կը հոսին և կը խառնուին Եփրատ ։ Երկրին պիտոյից համար պարզ արուեստներ կան ։ Բերքերն են՝ աֆիոն խիստ ընտիր տեսակ, չերամի բոժոժ, տորոն, ցորեն, գարի, թիւթիւն, բամբակ, բրինձ, ընտանի և վայրի կենդանիք, ընտիր միրգեր՝ թութ, մըշմըշ՝ որ փոքր բայց համեղ ծիրան է, ցեղ ցեղ տանձեր և խնծորներ, խոշորահատ խաղող և չամիչ, մասնաւորապէս Պէհէսնիոյ և Ադիեամանայ մէջ, խոյոճ և սեւ սալոր, եւն. որոց չորցուցած չիրերը շատ երկիրները ծանօթ են ։

ճանապարհները խիստ բանուկ են և դիւր, յարաբերութիւն ունի Հալէպու, Մարաշու և Իսքէնտէրունի հետ. Տիգրանակերտու, Խարբերդու, Սեւաստու, Կարնոյ և շրջակայ փոքր քաղաքաց հետ. և իբրև պորտ է Բաղդադի և Կ. Պոլսոյ մէջ: Բնակչաց զգեստը տեղական կապոյտ կտաւէ զպուն և ասուէ վերարկու է ընդհանրապէս, Շամայ և Հալէպի կերպասներն ալ կը հագնին, ամենքն ալ պճղնաւոր են: Կանայք թէ՛ Թրքաց և թէ՛ Հայոց խիստ հոյէմ են, ծածկեալ և անտեսանելի:

Վիճակիս բնակիչ ցեղերն են Հայոցմէ զատ՝ Թուրք, Քիւրդ, Գզըլպաշ, Ասորի:

## ՁԵՌԱԳՐԻՔ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ Ի ՄԱԼԱԹԻԱ

1. Աւետարան.

— Ի սկիզբն Աւետարանի, ոսկեզօծեալ տողերով.

«Տէր իմ Քրիստոս լոյս գերարփի,
«Որ շրջեցար մարմնով յերկրի.
«Եւ զայս մատեանս աւետալի,
«Մեզ հնչեցեր ձայն ցնծալի.
«Դու զտէր Կոստանդին հովիւ բարի,
«Կաթողիկոսն Հայոց սեռի.
«Զոր փոխեցեր 'ի յայսմ ամի,
«Ցաթոռ նստո՛ ընդ Պետրոսի: Ամէն:

ԶԺԶ.

«Եւ զծառանգող այս մատենի,
«ԶՊարոն Հեթում համքակ բարի.

«Որ է որդի նա Լեւոնի ,
«Որդւոյ Հեթմոյ մեծ արքայի ·
«Զահեա կենաւք յերկարելի ,
«իւր ծնողաւքն և այլ զարմի ·
«Եւ 'ի քո փառս հայրենի ,
«Հաղորդս ընկալ քեզ կրկնակի ։ Ամէն։

— Ի վերջն Մատթէոսի · «զԱստուածապատիւ տէր Կոստանդին կաթողիկոս յիշեցէք 'ի Քրիստոս» ։

— Ի վերջն Մարկոսի · «Ընդ մետասանիցն Համադասեա Քրիստոս զարքազան կաթողիկոսն տէր Կոստանդին ստացող սորա և զեղբաւրորդին նորին Թորոս քահանայն ։ Եւ մեզապարտ գրչի սորա շնորհեա մեղաց թողութիւն» ։

— Ի վերջն Ղուկասու · «Ընտրելոց մետասանիցն հաղորդս ընկալ Քրիստոս Աստուած զտէր Կոստանդին կաթողիկոսն Հայոց ստացաւղ քոյին բանի · և Թորոսի քահանայի եղբաւրորդւոյ նորա շնորհեա' դասել ընդ սուրբս քո ։ Եւ քեզ փառք յաւիտեանս» ։

— Ի վերջն Յովաննու · Յիշատակարան · «Փառք համագոյ և միասնական սուրբ Երրորդութեանն և միոյ Աստուածութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս ։ Շնորհիւ Յեսուն սկսեալ և ողորմութեամբ նորին յանգ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածային երկրպագելի և համբուրելի սուրբ Աւետարանս ։ Յամի ՉԺ և Է երորդի թուաբերութեանս Հայկազեան տոմարի , աստուածապահ դղեակս Հռոմկլայ , ընդ հովանեաւ սուրբ տաճարապետիս սուրբ Փրկչին մերոյ և սուրբ Աստուածածնին և սուրբ Լուսաւորչին մերոյ հրա-

մանաւ և ծախիւք երջանիկ հայրապետին Հայոց տեառն Կոստանդեայ որ զԱստուածահաճոյ վարուց իւրոց և բարի անուան համեմատ ունէր զպատմութիւն։ Որ և 'ի կենաց իւր 'ի ձեռն քաջակրաւն քահանայի Թորոսի եղբաւրորդւոյ իւրոյ ետ գրել զսա իմոյ անարժանութեանս Թորոսի մականուն Ռոսլին կոչեցելոյ։ Եւ նուիրեաց զսա կտակ հոգւոյ իւրոյ, և ծնողացն և գեղեցիկ մանկանն Հեթմոյ որդւոյ Լևոնի որդւոյ Հեթում թագաւորի։ Եւ ինքն կատարեալ զկեանս իւր հանգեաւ 'ի Քրիստոս կալեալ զաթոռ հայրապետութեան ամս Խ և Ե։

«Որ. և 'ի շնորհացն Աստուծոյ և հրամանաւ թագաւորին Հեթմոյ, յաջորդէ զաթոռն սուրբ տէր Յակոբ այր բարի և վարդապետ հին և նոր կտակարանաց, անապատական վարուք ճգնեալ։ Ի ժամանակի յայսմիկ մեծն Անտիոք գերի վարեաց զբազումս անաւրէն արքայէն Եգիպտացւոց, և բազում եղեն սպանեալք և գերիք նորա և կործ Աստուածածնակ սուրբ և հռչակաւոր տաճարացն որ 'ի նմա։

«Զոր ոչ է պատմել զհրաշատեսակ վայելչութիւն գեղոյ նոցա որք հրով սպառեցան։ Յայսմ երկիւղէ և չարաշշուկ համբաւոյ զարհուրեցան բազում գաւառք, և առաւել աշխարհս Կիլիկեցւոց։

«Եւ մինչ յայսմ մեծի տագնապի և 'ի դողման էաք, բացաւ առաւաւտ խաղաղութեան մարդասիրին Աստուծոյ, և մեծն Լևոն թագաժառանգն Հայոց զերծեալ եղեւ խնամաւքն Աստուծոյ յերկաթի հալոցացն 'ի ծառայութենէ և 'ի ձեռաց նոյն արքային Եգիպտացւոց։ Եւ բազում պատւով և ընծայիւք եկն յաշխարհ և 'ի հայրենի աթոռ

իւր, և եղեւ խաղաղութիւն երկրիս և խն-դութիւն Քրիստոնէից։

«Ի նոյն աւուրս եղեւ գրաւ գրչութեան սորա զանազան նիւթուք, և երանգ երանգ գունովք, առ 'ի սիրալի լինել որդոց սրբոյ եկեղեցոյ։

«Վասն որոյ աղաչեմ զձեզ, ով որդիք լուսոյ մաւր Սիոնի, որք վայելէք սովաւ յիշեսջիք աղաւթիւք 'ի Տէր զարժանաւորսն ամենայն բարեաց յիշատակի սուրբ հայրապետն զտէր Կոստանդին ստացող սորա և զծառանգող սորին զծիրանածին մանուկն Հեթում, և զհայր իւր Լեւոն թագաժառանգ և զմայր իւր բարեպաշտուհի նուիրեալ 'ի թագուհի Հայոց, Կիռան կոչեցեալ։ Բարեպաշտաւնեայն Հեթում երախտագործ Հայոց և ինձ անարժանիս, որդաւք և դըստերաւք իւրովք և ամենայն զարմիւք. որոց ննջեցելոցն հանգիստ և ողորմութիւն պարգեւեսցէ Քրիստոս Աստուած, և զմնացեալսըն անխռով խաղաղութեամբ պահեսցէ, և երկնաւոր թագաւորութեան հաղորդս արասցէ ամէն։ Յիշել աղաչեմ և զարհագոյն քահանայն Թորոս որ զծախս գրոցս երկրորդեաց զոսկին։ (Այլ գրով) «Բազմամեղ գրիչս աղաչեմ յիշել զանարժանութիւն իմ, և զծնաւղս և զորդիս և զուսուցիչս և զամենայն երախտագործս իմ և զկազմաւղ սորա։ Եւ Քրիստոս Աստուած զձեզ յիշեսցէ . . .»։

1. Աւետարան.

«Ձմեզաւք մեռեալ հոգին պետէր Միմէոնի արքեպիսկոպոսին Մալաթիոյ վրայ դիտողին, և իմ որդի Ռուբէն բէկին, վարժեալ ձեռամբ վարդապետին Առիստակէս բարունապետին. վերջին կազմողս 'ի Մելի-

տենին, 'ի ձեռն սրբոյն Գրիգորին. 'ի ՉԳ. Թուականին, 'ի յունիս ամսեանն ԻԲ. ին. ով որ կարդայ 'ի յատենին, նա մեզ ասէ զՔրիստոս որդին. և զՀայր մեր յերկինքն 'ի յետ նորին, նա թողցի իւր մեղքն և իւր ծնաւղին, և ժառանգէ զերկնից զբարին, և Աստուածածնորմի իմ վարդապետին, Առիստակէս րաբունապետին, և ինձ անարժան և անպիտան ծառային, տէր Սիմէոնի արքեպիսկոպոսին, և ծնաւղաց իմոց առաջին և վերջին, հոգևորին և մարմնաւորին, և ամենայն արեան մերձաւորացն, ամենին. ով որ ասէ լի սրտիւ զՏէր ողորմին, նա Քրիստոս թողու զիւր անցանքն և զնախնեաց նոցին, ամէն. Ա. Բ. ամէն:

«Սուրբ Աւետարանս այրած էր Յովան գլուխն և մենք խիստ աշխատեցանք և վերստին աշխատեցաք նորոգել զսուրբ Աւետարանս յիշատակ մեզ և ծնաւղաց մերոց և ամենայն արեան մերձաւորացն ամէն:

«Սուրբ Աւետարանս որ կազմել են նա ՃՄՉ. գիրք է, որ և շնորհօք սուրբ Հոգւոյն և ներութեամբ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ զանց առնէ զմեղս մեր և ոչ նախատէ զմեզ բազում աղալանաց մերոց. և այս զշնորհս բազում որ 'ի խորոց սրտէ յառաջանաք խնդրէ. որ և յետնեալ ծառայս ձեր, ծառայից Աստուծոյ, մեղօք փտեալ, և 'ի բարի գործոց եմ հեռացեալ, միայն անուամբ եմ կոչեցեալ այլ և բարեաց դատարկացեալ. Աբրահամ եպիսկոպոս, որ եմ որդի տէր Մկրտիչ քահանային վերադիտողի Մելտինու քաղաքին, տեսի զսուրբ Աւետարանս որ Ղուկաս և Յոհան գլուխքն եղծեալ էր որ գրոց նշմարանք ոչ կայր զըրեալ, նորոգեցի վերստին. ով սրբասէր վար-

դաստեալք և քահանայք և մանկունք եկեղեցւոյ, երես 'ի գետնի դնելով աղերսեմ 'ի սրբութենէ ձերմէ, հայցեմ, յորժամ որ ընթեռնույք զսուրբ Աւետարանս 'ի յատեան, յիշեցէք 'ի մաքրափայլ յաղօթս ձեր զմեղօք լցեալ Աբրահամ աբեղայս և զհայր իմ տէր Մկրտիչն՝ Քրիստոս որդի ասելով և Հայր մեր որ երկինք 'ի հետ նմին ասելով. որ և խնդրեմ բազմաստ ատեանէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, զձեզ յանուանէ յիշեցէ իւր սուրբ արքայութեանն ամէն և հազար ամէն։ Նորոգեցի գրերն թվին ՌՃՂԳ. ամսեանն մայիսի ծէ. ամէն»։

(Այլ գրով). «Ով սուրբ կարդացողք յիշեցէք 'ի սուրբ յաղաւթս ձեր զԱբրահամ ոսկերիչս և զծնաւղսն իմ, զհայր իմ զԿիրակոսն և զմայրն իմ զԱլամ տիկին, և զեղբայրն իմ զԳրիգորն, և զկողակիցն իմ զԽաթունհին, և զծնաւղս իւր զՈւմէտն և զԱչքոտն, և զդեռաւորոյս պատանեկս մեր զԱստուածատուրն սարկաւագն, և զամենայն արեան մերձաւորս իմ 'ի Քրիստոս. և ձեզ յիշողացդ, և մեզ յիշեցելոցս, ողորմեսցի Քրիստոս Աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս ամէն»։

«Որ կամակից եղայ սուրբ Աւետարանիս գալ 'ի սուրբ Առաքելքն . . . . . . . . որ. ժամուն և պատարագին մանկայկից ըլնիմ. ով սուրբ քահանայք աղաչեմ աղաչեմ զձեզ որ յիշէք 'ի սուրբ յաղաւթս ձեր։ Յամենայն տարի 'ի Յայտնութեան պատարագ մի անխափան կատարեցէք ինձ և ծնաւղաց իմոց ամէն»։

(Այլ գրով). «Ով սուրբ հայրապետք վարդապետք, քահանայք և կրաւնաւորք և սարկաւագունք և ուսումնականք և կարդացողք

սուրբ Աւետարանիս, որ է բերանն Քրիստոսի, և ընթերցողք 'ի սուրբ Եկեղեցի, յիշեցէք 'ի Քրիստոս և 'ի սուրբ Մաքուր յաղօթս ձեր զմահդասի Կիրակոսն, տիաւք մանուկ և մըտաւք կատարեալ, որդի մահդասի Գեհնամին, որ երեք վերստին կրկին նորոգել և պարդարել զսուրբ Աւետարանս, յիշատակ իւր և ծնողաց իւրոց մահդասի պարոն Գեհնամին, և փաշայ Մելիքին հանգուցելոյն 'ի Քրիստոս; և հաւրեղբաւրն պարոն Յովանիսին և հարազատ որդոյն պարոն Դաւթին. և քուերցն իւրոց Խուանդ խաթունին, Կիրայ խաթունին, Մանայ խաթունին, Սառայ խաթունին, և դեռաբոյս զաւակին իւրոյ Մարիամին, և կողակցին իւրոյ Հոփիսիմէին, և ամենայն արեան մերձաւորացն: Եւ մեծ հաւրն իւրոյ պարոն Կիրակոսին, և մեծ մաւրն իւրոյ Կիրայ խաթունին . . . :

«Եւ սա՛ երեք զանիրաւ մանուկն որ չէ մեր սեփական, և էր Աւետարանս այրեալ և կրկին երեք նորոգել զսուրբ Աւետարանս. Նա Քրիստոս որդին Աստուծոյ նորոգեսցէ դհոգիս մղտեսի Կիրակոսիս, և ըզննջեցելոցն սորայ զկենդանեացն և հանգուցելոցն յիշատակացն և անյիշատակացն: Յիշեցէք 'ի Քրիստոս և զմեծ հայրն իմ զՊատուականն, և զմեծ մայրն իմ զՂուշլու Մելիքն և Աստուած զձեզ յիշէ ամէն: Եւ մի՛ ոք իշխեսցէ զսուրբ Աւետարանս ծախել կամ ածել կամ առնել թէ իմ է. եւ մըղտեսի Կիրակոսս որդի մղտեսի Գեհնամին Վօշչի արի իմ ամէն ազգիս վերայ, ով որ զայս պատուէրս չկատարէ, նա զանէծքն 'ի յԱստուծոյ առնէ, և 'ի սուրբ Աւետարանէ. Հնաղանդեալքն աւրհնին յԱստուծոյ և 'ի սուրբ Աւետարանէս ամէն և Բ. ամէն: Ի

յոր տեղ որ կենայ, նա առաջ հինգշաբթին աւուրն զպատարագն մեր ննջեցելոցն մատուցանեն. և խնամ տանաւղքն զաւրհնութիւն 'ի սուրբ Աւետարանէս առնուն. 'ի թվին Հայոց ՋԳ. Նոյեմբեր ԺԱ. 'ի փառս Աստուծոյ ամէն:

«Ով որ չունի իշխանութիւն, կամ առնուլ, կամ ծախել, կամ գրաւել, կամ սուրբ Ստեփաննոսի դրանէն հանէ. ով որ յանդըգնի՝ բանիւ եղիցի»:

(Այլ գրով). «Զվերջին կազմող սուրբ Աւետարանիս զբաղումեղ գրիչս, աղաչեմ զձեզ յիշել 'ի Տէր զՀարապետ աբեղայն. կազմեցի 'ի դուռն սուրբ Ստեփաննոսին, ՌԾ. թվականին, 'ի փետրվար ամսեանն ԺԲ.ին. ով որ կարդայ 'ի յատենին նա մեզ առէ զՔրիստոս որդին, և զՀայր մեր յերկինքն 'ի հետ նորին, նա թողցի իւր մեղքն և իւր ծնողին, և ժառանգէ զերկնիցն զբարին...»:

Յուլիս 29. Իմ վերջին օրն է Մալաթիոյ մէջ. պանդուխտ վաճառական և բնիկ ազգայինք Մ. Առաջնորդի հետ անհնարին թախանձանքներ ըրին, հարկ եղաւ զիջանիլ Ս. Պատարագ մատուցանելու և քարոզ խօսելու. Նոյն օր իրենց մեծարանքները վայելեցի, փոխարէն իմ մեծարանքներս նուիրելով:

Կեսարացի ազգայինք, և 'ի մասնաւորի Եփլյէնի Սերովբէ և Սարգիս եղբարց Մեծ. Տեարց գործակալք հարի յաջողակ և բարձր տեղ կը բռնէին գրեթէ ամեն պատահած տեղերը վաճառականաց դասուն մէջ. Մալաթիոյ մէջ անոնց գործակատարն էր Մ. Յօհաննէս Եփլյէնկ, ճարտար և եռանդուն

երիտասարդն, զոր ամբողջ Մալաթիացիք ՀԱՃԻ ՓԱՇԱՑ կ'անուանէին։ Քաղցր պարտաւորութիւն է ինձ հոս յիշատակել թէ յիշեալ ազնիւ և ազգասէր եղբարք, Տեարք Ս. և Ս. Կիւլպէնկ, յատկապէս յանձնարարականներ տուած էին ինձ, որոց շնորհիւ մեծ դիւրութիւններ վայելեցի ամեն ուրեք, ուր որ անոնց մարդ կը գտնուէր, և բաց 'ի երեք փոքր քաղաքներէ, միւս ամեն տեղերը կը գտնուէր։ Նս մեծ էջեր պիտի նուիրէի ընդարձակ գովեստներ հիւսելու այս պատուական հարազատաց, որ ազգին պատիւն են վաճառականութեան հրապարակին վրայ, ու Նախախնամութենէն շնորհք մը տուեալ ազգիս կարօտելոց և ազգային ուսումնական ու բարեպաշտական հաստատութեանց, ընկերութեանց և ընտանեաց՝ իրենց յայտնի ու գաղտնի նպաստներով. և բարերարութեամբ. պիտի ներբողէի զիրենք, որ շատ գաւառներու մէջ վաճառականութեան ճեղքեր յառաջ բերելու ձեռնտու և քաջալերիչ հանդիսացած են, զորօրինակ քանի մը տեղեր ափիոն մշակել տալով. Եւ բայց գիտնալով իրենց համեստ խոնարհասիրութիւնն և երկիւղած բարեպաշտութիւնը կը լռեմ, որպէս զի անհաճոյ գործ մը ըրած չլինիմ, և փոխանակ պատուելու զիրենք, որում այնչափ արժանի են, վշտանալու առիթ տուած լինիմ։

Յուլիս 30։ «Մնայ բարով Մալաթիան»

ըսինք և մեկնեցանք. Ս. Առաջնորդն, քաղաքական ժողովը և այլ պատուաւոր անձայինք՝ ձի հեծան. Օրդուզի վանքը հանգիստ մը ըրինք, ուր ուխտաւորաց բազմութիւն ալ կը գտնուէր. բակի ջրալից աւազանին շուրջը բոլորուելով Մալաթիոյ ժէյֆ մը տեղի ունեցաւ զուարթագին. միայն փաշայի թիւրիմացութիւն կամ անքաղաքավարութիւնը կտրեց մեր սիրտերը պահ մը, զոր աւելորդ կը համարիմ նկարագրել, այս իւր կողմէն երկու անձինք յուղարկաւոր, և երկու ոստիկան առհահորդ ղրկեց: Ժամ Ց էր, մեք ճանապարհն ինկանք: Դաշտային էր մեր ուղին, 4 ժամէն Եփրատայ եզերքն էինք, բայց երկու ժամ եւս շարունակելով Իզօղլու գաւառի միջով գետոյն անցքը հասանք: Օդոյն տօթը կը խարշէ մեր անձը, և մոծակներու միլիոնները կ'եռան կը ղեռան ջրոյն երկու կողմն, ո՜վ կրնայ առանց հազարաւոր վէրքեր ընդունելու անցնիլ այս հրոսակներէն, որք ոչ թագաւորի հրամանի կ'անսան, ոչ ոստիկանները բանի տեղ կը դնեն, ոչ վարդապետ կը ճանչնան, ոչ տըկարին կը գթան, ոչ զօրաւորէն կ'ակնածեն, ոչ կրակէ, ոչ գնդակէ, և ոչ սուրէ կը վախնան: Անձնատուր եղանք: Հոս Եփրատը կրկնապատկեալ է, վասն զի Մուշէն եկած Արածանին՝ որ Ճապաղջուրէն և Բալուէն կ'անցնի, Արաբկերու, Խարբերդու և Չմշկածագու միջոցը կը խառնուի Կարնոյ և

Ակնայ մեծ ճիւղին ։ Նաւ մը կայ ջրոյն վրայ մեծ և խոր . խոշոր գլուխ Քիւրդ մը՝ իբրև Գաբտան Նաւուն կառարը կայնած , թանձր և կոշտ գերան մը ղեկ ըրած է , որոյ վերին ծայրէն կլոր ու ծանր երկաթ մը կայ կախուած , այս երկաթը շարժելով՝ ղեկը ուզած կողմն կը դարձնէ . չորս Քիւրդեր ալ չորս գերան իբրև թի գործ կ'ածեն , Նաւուն մէկ գլուխը բարձր և միւսը գետնին հաւասար , տակէ կը մտնան մարդիկ և անասունք և իրարու խառնուած կը կայնին Նաւուն փորը . տասն վայրկեան տեւեց մեր անցքը ։ Թէպէտ գետափը գեղ մը կար , բայց կարի հաշակեալ էր անոր մոծակաց և լուոց բազմաթուութիւնն ու բարբարոսութիւնը , ուստի և այս իրաւամբ Պէրլինի Քօնկրէն ինքնավարութիւն և անկախութիւն տուած էր անոնց՝ իրենց որոշեալ տեղը ։ Անցանք կէս ժամ վեր ; ծառաղարդ գեղի մը մէջ , Ապտուլլահ աղայի տունը պայծառ լուսնակով տանիքին վրայ բազմելով և ննջելով, հանգիստ և զըւարճալի գիշեր մը անցուցինք այն Քրդու գեղը ։ Տանուտէր Ապտուլլահ աղան Մալաթիոյ մէջ բանտարկեալ էր , ըստ վկայութեան բազմաց՝ ինքն աղէկ , հարուստ ու պարկեշտ մարդ լինելուն համար ։

Առաւօտ լուսոյ աստղ ծագեց և մեք ձի հեծանք . Եփրատի ափերով կ'ընթանանք ; որոյ պարզ և ջինջ ծոցոյն մէջ բոլորեալ լուսինը կը լողայ . ամեն կողմէն բարձրաբերձ

լերինք լուսնակով և ստուերով գեղավայր. խորի՛ն լռութիւն և դադար համայն 'բնութեան. տեղ տեղ պուրակաց և թփոց բոյլերու մէջ թեւաւ թափ կը զարթնուն թառած թռչունք, Եփրատայ եզերքներէն փուլ փուլ կը փլչին հողեր շառաչմամբ ջրոյն մէջ, գետը երբէք զուարթ չէ, հեծութեան կերպարանք մը ունի, և իւր ձայնը կը նմանի վշտացելոյ մը կամ խոցելոյ մը հեկեկանաց: Ուղեւոր սագ մը նստած Եփրատին ալեաց վրայ կը նաւի յառաջ՝ գրեթէ անբաժան մեզմէ, պահ ընդ պահ իւր գեղեցիկ գլուխը և երկայն պարանոցը պարզելով ուշադիր կը դիտէ զմեզ: Ջրամէջ է մեր գնացքը, և լերանց կողերու վրայ աստ և անդ գեղեր կան, պրակ պրակ ծառոց միջէն խոխոջելով կը թափին ջրեր և կը ծուարին Եփրատայ մայրենի ծոցը: Մեր ձախ կողմն կը տեսնանք ապառաժ մը տաշուած և վրան բեւեռագիրեր. տաճիկաններ կը պատմեն թէ՝ Նուշըրվանի գիր է այն, և թէ գանձ ունի այս քարը, իւր մէջը պահուած, ո՛վ որ այդ գիրը կարդայ, գանձը կը հանէ: Քիչ մը յառաջանալով, Եփրատ հրաժեշտ կու տայ մեզմէ, մըտնելով ապառաժներու մէջ, նեղ կիրճով մը կ'անցնի երթալ Հոռմկլայ: Արտագին բարեւներ և երկրպագութիւններ յանձնարարեցինք իրեն: Եւ ահա հեղեղատէ մը կ'անցնինք, որոյ միւս եզերքը շինուած կայ կոփածոյ քարերով ընդարձակ խան մը և մըզ-

կիթ մը, Քէօշքիւք խանն է այս, որ լքեալ ու ամայի կը մնար իւր սենեակներով։ Այս խանէն վեր, ձախակողմն ապառաժներու վրայ ամրոցներու նմանող աւերակ շէնքեր կան. ոստիկանք կ'ըսեն՝ թէ Հայոց եկեղեցի կայ հոն։ Զառիվեր կ'ելնենք. մօտ երկու ժամ գնալով կը հասնինք Խարբերդու հովիտը, շէն և մեծամեծ գեղերով ճոխ, որոյ երեւոյթը կ'արդարացնէ այս առածը՝ «Խարբերդ օվասի, ըլճան օվասի» Ամբողջ հողերը մշակեալ։

Մեծ բազմութիւն մը կու գայ ՚հանդէպ մեր, ծերունի Հնդիկ իշխան մը, որ իւր երկիրները Անգղիացւոց յանձնելով՝ փոխարէն 25000 Անգղ. ոսկի տարեկան առնելով՝ երկար տարիներէ 'ի վեր կը բնակէր Բաղդադ, այժմ կ'երթար Փարիզի արուեստահանդէսը. իրեն առջեւէն ու ետեւէն կ'երթային սեւամորթ և աղտոտ ծառայից բազմութիւն և քանի չափ ոստիկաններ։ Հասանք ԽԱՆ գեղը, որ քաղաք մը կ'արժէ, բնակիչք թուրք են, որոց մէջ խանէքաններ շատ կան։ Աղբիւրի գլուխը հանգչեցանք քիչ մը, և ուղղակի քշեցինք Սօրսօրու վանքը, ուր ժամանեցինք 5 1/2 ժամէն։ Այսօր 13 ժամ ճամբայ ըրինք։ Թէ՛ Մալաթիոյ ժանդերէն և թէ ճանապարհի տքնութենէն ու տաքութենէն ընկճուած էր անձնս։ Օրհնեալ լինի Սարգիս վարդապետի հիւրասիրութիւնը, որ ըստ ամենայնի սփոփեց և հանգոյց զմեզ. «Վա՛նք՝ վարդապետի կեա՛նք» ըսած է առածը։

Տիգրանակերտու ձեռագիրներէն առնելով՝ Հայոց նշանագիրներէն մաս մը կը դնենք հոս

| | |
|---|---|
| երկինք | ցորեան |
| երկիր | անդաստան |
| աշխարհ | բուրաստան |
| արեգակն | դրախտ |
| արեւելք | պտուղ |
| արեւմուտք | ցանք |
| փայլակն | հոգի |
| առաւօտ | գլուխ |
| գարուն | կերպարանք |
| ամառն | ճակատ |
| աշուն | ունք |
| ձմեռն | լեզու |
| աղբիւր | բերան |

անդամ

որովայն

եղբայր

երկուորեակ

քաղաք

դրունք

դուռն

աշտարակ

բուրգն

թագաւոր

ծառայ

իշխան

որոգայթ

խոնարհ

հաւասար

երկիւղած

ճշմարիտ

արդար

պարկեշտ

հանդարտ

համարձակ

կեղծաւոր

բանաւորկու

մեղաւոր

անզգամ

պոռնիկ

ամբարիշտ

ամբարտաւան

ապստամբ

դաւաճան

նախանձ

անիրաւ

| | |
|---|---|
| գաւազան | անասուն |
| տուագատատ | զուարակ |
| հանդերձ | եղջիւր |
| արուեստ | յափշտակել |
| հանճար | պատսպարան |
| դաստիարակ | խորհուրդ |
| երաժիշտ | համեմատ |
| գուսան | օգնական |
| ողջոյն | բազում |
| ողջակէզ | ամենայն |
| պատարագ | այսչափ |
| սողոմոն | այսուհետև.. |
| առիւծ | խնկզրանէ |
| վիշապ | փոխանակ |
| Թռչուն | ահաւասիկ |

ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻՆ

# ՑԱՆԿ



# ՎՐԻՊԱԿՔ

| ԵՐԵՍ. | ՏՈՂ. | ՍԽԱԼ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|
| 104. | 26. | *վանդ ակագործ.* | *քանդ ակագործ.* |
| 204. | 18. | *ըլուրներ.* | *բլորներ.* |
| 243. | 8. | *խսոտերէ.* | *խորերէ.* |
| 247. | 20—21 | *Արիգի* | *Արեգի* |

Առ . . .

## Գարեգին վարդ. Սրուանձտեանց

Ընկալայ մեծաւ հաճութեամբ զգեղեցիկ նուէրդ զՀամով-Հոտովն անուն մատենիկ, որ հոծ եւ խիտ է ցանկալի տեղեկութեամբք զհայրենեաց մերոց, մանաւանդ ժողովրդական երգովք, առասպելօք, ազգային աւանդութեամբ եւ այլն:

Շնորհ ունիմ անխոնջ վաստակողիդ վասն պարգեւիդ, եւ խնդրեմ ընդունել իբրեւ փա-կաւամասն տրիտուր զքանի մի հարիւր Ֆրանքս (600) ի սատար տպագրութեան Բ. հատորոյ Թորոս Եղբօրդ:

Ողջ լինել ցանկամ...

ՄՈՍԿՈՒԱ — ՄԿՐՏԻՉ ԷՄԻՆ

17 Յունուարի 1886

# ՆԱԽԱԲԱՆ

Կը ներեն *Թորոս Աղբար* ընթերցողք, որ հինգ տարի է ի վեր զիրենք առաջնորդած ու հասուցած են Խարբերդը, ուր այսչափ ժամանակ կը մնան, այն ինչ ես տաս գաւառներ շրջեցայ:

1878 Ապրիլ 30ին առաջին ուղեւորութեանս թուականն է:

Սեւ ծովէն Խարբերդ երթալու համար երեք ուղիներ կան.

1. Սամսոնի նաւահանգիստէն՝ Ամասիոյ եւ Սեւազի վրայօք.

2. Կիրասոնի նաւահանգիստէն՝ Շապին Գարահիսարու եւ Ակնայ վրայօք.

3. Տրապիզոնէն՝ Երզնկայի եւ Ակնայ, կամ Խօզաթի վրայօք:

Թորոս Աղբար առաջին մասն՝ Սամսոնի ճիւղը առաջնորդուած, երկրորդ մասն՝ Տրապիզոնի ճիւղը պիտի առաջնորդէ. եւ ընթերցողները շրջեցնելով ի Խարբերդ, պիտի տանի ու ցուցնէ այն տեղերն ու իրերը, զորս առաջին մասին մէջ խոստացեր է:

Ձեռագիր մատենից ցանկ եւ յիշատակարանք գրքիս վերջը դրինք:

Կանխաւ ներողութիւն կը խնդրուի, եթէ ուրեք ուրեք խոտորինք մեր խոստմունքէն. քանզի այն օրէն ցայսօր շատ բաներ նոյնը չմնացին, եւ շատ ճամբաներ փոխուեցան. զարմանալու չէ ուրեմն եթէ մեր ընթացքն եւ Թորոս Աղբօր երգերն ալ իրենց եղանակը փոխած լինին։



# ՅԻՇԱՏԱԿ

1879 Ապրիլ 26, երեկոյ, Կ. Պոլսոյ Գատը գիւղի Ազգ. Արամեան վարժարանի սրահին մէջ ընթրիք մը պատրաստուած էր: Այդ սեղանին շքեղութիւնն ու պերճանքը ոչ բազմատեսակ խորտիկներ եւ ըմպելիներ էին. այդ բաները կարի համեստութեամբ կարգադըրեալ էր, այլ անոր իսկական շուքն էր գեղին պատուաւոր, զգայուն եւ ուսեալ Ազգայնոց՝ նոյն սեղանոյն շուրջ խմբուիլն. տարեւորն եւ երիտասարդն: Արդարեւ քաղցր էր նկարագրել սրահին պատշաճաւոր հանդերձանքն, եւ հանդիսականաց արժանիքն ու անուանքը, բայց թոյլ տուեալ չէ ինձ. զի ադոնք կը կազմեն այն դասն, որոց գործքերը վայելեր ու կը վայելէ Ազգն, եւ որք փոյթ չ'ունին հռչակելու իրենց անձնը: Ահաւասիկ այդ է իրենց ճշմարիտ արժանիքն։ Հոն եղողները ամէնքն եւս Հայ էին իսկապէս:

Ուղեւորելու հանդէս կը կատարուէր այն ընթրիքով, կրօնաւոր մը կը ճամբէին. որում կը յանձնէին իրենց իղձեր եւ բարեւներ, սիրտեր եւ փափաքներ. հոգեկան ընծաներ եւ աւանդներ։ —Անծանր եւ քաղցր բեռն։

Աննկարագրելի են արդարեւ այն բանախօսութեանց խանդն ու համը, այն մրմնջանաց հագագն ու ծայնից ընդհատումն, ափ ծափն ու հառաչանքն. որ իրարու կը յաջորդէին:

Միթէ մարդու մը լա՞լ կամ գոռա՞լ պէտք է բարձրաձայն իր զգացածը յայտնելու համար. սակայն բուռն զգացողք չեն կրնար լալ. կը կարկամին, եւ կը ցամքին այնպիսեաց արցունք իբրեւ աղբիւր մը, որ

շատ անգամ փոխանակ ակնէն դուրս հոսելու, երկրի երակաց մէջ պատռուածքէ մը ի խոր կը սուզանի։ Եւ այս կը պատահի գարնանային օրերը, ձիւներու հալուցքին. երբ բնութիւն անհանդուրժելի անձկութեամբ կը դիմէ գարնանանալ գեղալից գեղեցկութեամբ. ջուրեր կը յորդին հողին թոքերէն։ Այսպէս որը հեղեղօրէն կ'ըղձաքանէր, որը բարբառն ու աչքը միանգամայն կը խցէր. բայց ամենուն հոգին զեղուն էր ներքուստ։ Պանդուխտ էին։

Շատ բարեւ կը ղրկէին իրենց տառապեալ մօրը, կարօտ՝ իրենց եղբարց եւ քոյրերուն. անձո՜ւկ՝ իրենց հօրենական տան վրայ ծագող արեւուն. համբո՜յր հողին, ջրոյն, քարին, խաչքարին, տաճարին. ողջո՜յն ողջ մնացողին. խո՜ւնկ հանգուցելոց գերեզմանին։ Անոնցմէ մինն ալ հացիկ մը տուաւ, որ տանիմ կուտ տամ իմ « Թորոս Աղբար » Թռչունին։

Ահա ա՛յս էր մեր ընթրիքն. ա՛յս էր մեր խորտիկն ու խառնելին. առոնցմով յագեալ էինք։

Ո՛վ երեկոյ խորհրդաւոր. ո՛վ սեղան եւ սեղանակիցք անմոռացք։ Ես հաւատարիմ եղայ Ձեր եւ իմ ուխտին. ես մատուցի Ձեր բարեւներն ու համբոյրներն տեղն ի տեղը. մխիթարուեցան Ձեր մայրն եւ Ձեր ազգականները. այցելեցի Ձեր նախնեաց տան ու տաճարին. գտայ հողակոյտներու տակն ու վրան Ձեր Հարց դամբարանները. գրեցի վէմերու եւ տեղերու անունները, ջրեր եւ լեռներ, որք հաւատարմապէս կը պահեն իրենց կոչումն եւ յիշատակներ։

Տրջեցայ այն երկիրները, որ պարապ տեղ մը չունի առանց հայու նշանի, եւ եթէ ուրեք ուրեք բնակիչքը փախած կամ փոխուած են. դեռ հողին երեսը

կամ աւերակաց ներքեւ աւանդութիւններ թողած են ։ Իսկ այն տեղերը ուր կան եւ կ՚ապրին հայեր, կ՚երգուի Տարական , կը կարդացուի Աւետարան . կ՚օծուի եւ կը պաշտուի խաչն. կը պսակուին Հարսն ու Փեսայն. կոչնակին ձայնը կը լեցնէ պուրակներն ու բլրակները. վանքերը ուխտի կերթան . սրբոց խունկն ու մատաղը կը նուիրուին . քահանայն կը պատարագէ , մամիկներ կ՚աղօթեն . կը ծնրադրեն . կը յուսադրեն. կը փրկեն։ Այսպէս չէն է Ձեր հօրենական տունը . այսպէս կեանք , սէր , եւ հաւատք ունին Ձեր արենակիցք :

Եւ իմ աւետարանութիւնս էր իրենց թէ՝ Լուսաւորուեցէք եւ կը նորոգուիք, աշխատեցէք եւ կ՚ապրիք . սիրեցէք եւ կը փրկուիք։

Կը փրկուիք Աստուծով . կը փրկուիք ձեզմով . աչքերնիս յերկինս , աչքերնիս Ազգին, աչքերնիս Օսմ. մեր Վեհափառ Սուլթանին:



# ՏԵՍՈՒԹԻՒՆ

1879 տարւոյ գարունը՝ մեր Օգոստափառ Սուլթան Համիտ կայսրն՝ իւր նախարարապետ Վսեմ. Խայրէտտին փաշային օրով, հրամայած էր որ Թուրքիոյ Հայաբնակ գաւառաց համար Քօմիսէրներ ղրկուին, որոց պաշտօնն էր ուշադրութեան առնուլ ժողովրդեան դժգոհութեան պատճառները, եւ գոհացնել երկրին բնակիչները: Վսեմ. Եուսուֆ փաշան՝ Ազարէկեան Սարգիս էֆէնտիին հետ որոշուած էին Տրապիզոնի, Կարնոյ եւ Վանայ վիլայէթներուն բաժնին. Վսեմ. Ապէտին պէյ (այժմ փաշա) Մանաս էֆէնտիին հետ՝ Սեւազի, Խարբերդի, և Տիգրանակերտի վիլայէթներուն բաժնին:

Ապրիլ ամսոյն Քօմիսէրները իրենց սահմանեալ վիճակները կ'երթային: Ասոնց հասնելէն առաջ ոգեւորութիւն մը կը տիրէր ժողովրդեան վրայ, եւ սարսափ բռնած էր երկրի չարերն ու անիրաւները: Պետութեան մը ընելիքին համաձայն գործեցին այդ բարձր պաշտօնեայք: Կայսերական գանձը զոհողութիւններ ըրաւ. Արդարութիւնը ինքզինքը ցոյց տուաւ. կեղեքիչները հաւատացին թէ ինչպէս Աստուած յերկինս, նոյնպէս եւ կայսրն իր գահոյից վրայէն կը յիշէ իւր ժողովուրդը, կը կամի երկրին շինութիւնն ու

բնակչաց բարօրութիւնը. կը հաճի պաշտպանել աշխատաւորն, եւ դատել անոնց յափշտակիչներն ու լլկողներն: Այո՛, այս ամէնը տեսան եւ հաւատացին. և այն օրէ հետէ զգալի փոփոխութիւն մը կայ այդ երկիրներուն: Ընդհանրապէս ընտրանօք պաշտօնեայք կը կարգուին գաւառները, Քիւրդ ցեղապետներու և շեխներու երեսէն եղած աւերումները նուազած են: Եթէ երբեք Կարսի եւ Պաթումի գաղթականք, ու ի տեղիս տեղիս Զարքազք վնասներ կ'ընեն տակաւին. անոնք ալ պիտի հանդարտին շնորհիւ մեր Վեհ. Սուլթանին, իւր արժանաւոր մեծ եպարքոս Վսեմ. Սայիտ փաշային, եւ այլ իմաստուն նախարարաց, որոց անծանօթ չէ այդ վիճակը:

Բարւոքմանց սերմունք սկսած են ցանուիլ գաւառաց մէջ: Կրթական գործը առաջնութիւն ստացած է կառավարութեան առջեւ: Հասարակաց առողջութեան վիճակին հոգ կը տարուի: Ճանապարհներ կը շինուին: Ափիոնի, բամբակի, և այլ այսպիսեաց օգտակա՛ր մշակութիւնք կը քաջալերուին: Հասարակաց փոխառութեան (էմնեաթի) սնտուկներ կը վերահաստատուին: Գիւղախումբերու (Նահիէի) վարչութեան կազմութիւնը գրեթէ ամէն վիլայէթի մէջ կատարուած է. որ տեսակ մը ինքնավարութիւն և ինքնապաշտպանութիւն է: Տեղական (Պէլէտիյէ) ժողովներ ամէն ուրեք կան: Առեւ-

տրական ու Դատական ատեանները հաստատուած են ։ Նոյնպէս և վարչական (իտարէ) ժողովք ամէն պաշտօնէութեանց կեդրոնը , ևն. ևն ։

Ասոնց ամէնի մէջը անխտիր կ'ընտրուին ու կ'առնուին մահմէտականն ու քրիստոնեայն , տեղ տեղ պէլէտիյէի ըէիս , Թիճարէթի ըէիս , ընդհանուր դատախազ և մուավին , մալ միւտիրի , ևն. եղած են Հայք ։ Իսկ դատական կամ վարչական ժողովոց հայ անդամք , ինչպէս նաեւ Առաջնորդք , եթէ բանգէտ ու ողջամիտ անձինք են , գրեթէ իրենց ձայնին կը բերեն ժողովոյն հաւանութիւնը , եթէ իրենց դիրքն ու ջանքը երկրին օգտին համար լինի ։ Իսկ եթէ կը գտնուին այնպիսիք որ միայն որոշումներ , տեղեկագիրներ , և հաշիւները կնքելու համար կ'անդամակցին ժողովոյ մը կամ պաշտօնէութեան մը , եւ կը լինին գործիք վնասակար անձանց եւ անարդար պաշտօնէից , դոքա կամ իրենց անգէտ ու ապիկար լինելէն է , կամ շահասէր լինելէն ։

Եթէ ժողովուրդն ունի իւր իրաւացի դժգոհութիւնները դատերու , կալուածագրութեանց , հարկերու բաշխմանց և հաւաքմանց ևն. համար , բայց կը դժգոհին անոնք ոչ տէրութենէն և ոչ օրէնքներէն , այլ գործադրիչ անձինքներէն ։

Ուրեմն բարեխնամ կայսեր , կառավարութեան նպատակն է գոհ ընել իւր երկիրն և

ժողովուրդը․ պէտք է հաւատով վարինք մենք ալ նոյն նպատակին։ Մեզի բաւական է որ կառավարութիւնը տայ այդ երկիրներուն համար լաւ կառավարիչ և արդար դատաւոր, պաշտօնեայք՝ որք ժողովրդեան վիճակը հասկնան, եւ համբերութեամբ ու քաղցրութեամբ վարուին անոնց հետ․ ինչպէս նաեւ խիստ ու անաչառ լինին յայտնի չարագործաց համար։ Մեզի բաւական է, եթէ եղեալ օրէնքն առանց թիւրելու ի գործ դրուին։ Արդարութեան և անխտրութեան համար հաւատք ունենանք, մենք ալ սիրենք աշխատիլ, մենք ալ սիրենք ծառայել երկրին ու կառավարութեան չինարար կոչման, իբրեւ բուն մեր շահուն և յառաջադիմութեան։ Անյուսութիւնը թողունք, եւ երբ հրաւէր կ'ընդունինք, կամ կ'ընտրուինք այս ինչ պաշտօնին, այն ինչ ժողովոյն գործակցելու կամ անդամակցելու՝ չհրաժարինք։ Շինութեան համար՝ չինենք, նպաստելու՝ նպաստենք որքան կարող ենք։ Եթէ իրաւունք կ'ուզենք վայելել այս հողին վրայ, պարտական ենք մեր բոլոր ոյժեր թափել հոն։ Այո, այսպէս պէտք է ընենք մենք։

Երբ մեք փոխանակ մեր տեղը կենալու, փոխանակ հեռացեալքս ալ հոն վերադառնալու, եւ ուժով մեր մտաց, ուժով մեր հոգւոյն, ուժով մեր մարմնոյն և նիւթոյն այդ երկիրները զարգացնելու, և տէրութեան ոյժն աւելացնելու, կը պակսինք օր ըստ օրէ

մեկնելով ի հեռաւորս, թողլով մեր արտն ու արմատը գօսացած։ Միթէ իրաւունք կը մնա՞յ մեզ այլ եւս գանգատիլ թէ Քիւրդն, Զարքաղն ու Մուհէճիր կը լեցուին այդ գաւառները։ Ասոնք բարի են դեռ։ Եթէ մի այլ ցեղ եւրոպական ազգերէ յաջողի մուտ գտնել, ոտն ածել այն տեղերը, ոչ ևս կեանք կը մնայ մեզ պէս ժողովրդեան մը։ Եւ ո՞ւր պիտի ապրինք, ամենայն ինչ կորած է յայնժամ մեզ համար, եւ մենք կորած՝ ամէն բանի համար։ Քան զամենայն առաւել ազգու կը հարստահարէ զմեզ անհոգութիւնն ու անգործութիւնն, որ մեծ պատճառն է մեր աղքատութեան։ Ինչո՞ւ մեր բամբակներէն և մեր բուրդերէն մեր գործած տարազները չենք գործածեր մենք. միթէ տէրութիւն բռնութեամբ կը վաճառէ՞ մեզ Եւրոպայի ապրանքները։ Ինչո՞ւ խանգարուած են Ամասիոյ, Թօխաթի, Ակնայ, Արաբկիրի, Խարբերդի, Մալաթիոյ, Տիգրանակերտի, Վանայ, Բաղիշոյ և այլ գաւառաց հազարաւոր գործարանները կերպասեղէնի, կտաւեղէնի, չիթի, մանիսայի շալի, չիլայի, և տեսակ տեսակներու։ Ամենէն անծանօթ և աննշան գեղերու մէջը՝ մտած է Ամերիկայի և Անգղիոյ ապրանքն՝ հագնելու և կահաւորելու։ Ո՞րքան անճինք կ'ապրէին և կրնան ապրիլ այն գործարաններով։ Թող գողը տանի, թող տէրութիւնը հարկէ, ժողովուրդ մը չկործանուիր, բայց սարսափելի կործանումն է երբ զմեզ

անգործութեան կը դատապարտեն, գործն ու գործողները կը խափանեն, և այնքան մեր սեպհական շահերէ զմեզ զրկելէ զկնի՝ ծանր ծանր կողոպուտներ կ'ընեն., տանելով մեծ քանակութեամբ դրամ մեզմէ, փոխարէն՝ թողլով մեզ չռայլութեանց վարժութիւնը և նորաձևութեանց ճաշակ։

Այժմ այս վիճակի մէջը ուրիշ բան չկայ ժողովրդեան մեր գաւառները, բայց միայն պարտք առնուլ, մուրհակ տալ, դրաւ դնել, իր անասունն, իր արտն, իր պարտէզն, իր տունն, և ի լրանալ պայմանին անտրտունջ թողուլ ադոնք, և մեկնիլ։ Պարտքով կը վըճարէ տէրութեան հարկը, պարտքով կը գնէ իր և ընտանեաց ապրուստն ու հագուստն, պարտքով դատ կը վարէ և ծախքեր ուղղակի եւ անուղղակի կը հոգայ դատարանին՝ այնչափ, քան զոր յոյս չունի շահելու, եթէ երբէք իրաւունք վաստկի. պարտքով պանդխտութեան ճամբու ծախքը կը հոգայ, պարտքով հարսնիք կ'ընէ. պարտքով եւրոպայէն եկած կօնեաքին ու իքսիրին գինը կը վճարէ....։

Թէ յիշեալ արհեստները, և թէ երկիրը մշակելու համար, մեծ միջոց մի է տեղական և աժան տոկոսով փոխատուներ հաստատել կեդրոն գաւառները։

Ի Կ. Պոլիս և այլ ուրեք պանդխտելով շահելու յոյսը՝ գլխաւոր պատճառ մի է գաւառացւոց, որ իրենց ոյժն ու կեանքը ի-

րենց երկրէն դուրս կ'սպառեն. այն ինչ եթէ այնքան տքնութիւն և զոհողութիւն կրեն իրենց տեղը, պիտի ապրին լաւապէս հողն ու արուեստը մշակելով, եւ իրենց արդիւնքով ապրելով. պանդուխտներն՝ որ իրենց սերընդեան հետ, կը լքանեն կը պակսեցնեն երկրին գործն ու արդասիքը, եւ դոքա են որ կը բերեն գաւառները շռայլութիւն և այլ և այլ մոլութիւններ, և մահացու ախտեր:

Ողբալ, անիծել, և գաղթելու նպատակ ունենալ. այս է բազմաց մեր գաւառացւոց վիճակը, միշտ հանգիստ որոնել: Որոնել անշուշտ հանգիստ կենաց՝ բնական և կրթական ճաշակ մի է, բայց առանց վաստակելու, առանց տքնելու զայն ունենալ՝ անբնական է: Այլք իրենց զոհողութեամբ ձեռք բերած տեղն ու ասպարէզը չեն տար որ ուրիշ մը վայելէ: Այդ բանը մենք կ'ընենք միայն: Եւ, տեղափոխութիւնը՝ մեծամեծ դժուարութիւն ու զոհողութիւն կը պահանջէ, մինչեւ բնակարան մը ու հաց մը գտնէ մարդ և վայելէ: Տանք այդ աշխատանք մեր բնակած տեղւոյն, և առանց կորուստ անձին ունենալու գտնէ՝ կը վայելենք անտարակուսելի բարիք և հանգիստ. ողբն ու անէծք ցնծութեան և օրհնութեան կը փոխուին մեր մէջը, և մեր վրայ արժանիք ու բարձրութիւն նկատելով մեր Վեհապետն և այլք, պիտի բարձրացնեն կրթեալն, վաստակաւորն օգտակարն իր երկրին և պետութեան մէջը:

Մարդ հասցունենք, Մարդ ունենանք, Մարդ լինինք։

Ես առիթ ունենալով ներկայ գտնուիլ կայսերական քօմիսէրի գործողութեանց՝ քանի մը տեղեր, տեսած եմ իմաստուն կուսակալաց և պաշտօնէից ոմանց խնամքն ու աջակցութիւնը մեր ազգային շահերուն մէջը, ուր ընդհակառակն օտար պետութեանց մարդիկներէն կային որ կը ձնային կամ կը չրջէին միշտ յուզելու և խռովելու հայ ժողովուրդը ընդդէմ հայութեան, դժգոհ ցոյց տալու զհայն ընդդէմ տիրող կառավարութեան. բողոքել և կռուել տալ Հայն ընդդէմ Թուրք և Քիւրդ բնակակցութեան, և դժբաղդաբար մեր զանազան դասերէն ալ շատերը անգիտօրէն կը գտնուէին՝ ջանքեր ու ցոյցերը նուիրելու այդ օտարին շահ առթող և մեզ կործանումն բերող մեքենայութեանց. անշուշտ խաբուած էին ոչինչ բաներով կամ սուտ խոստմամբ։ Բայց այս ընթացքը ո՜րքան վնասներ բերաւ գաւառաց, բաց մը տեղի ունեցաւ ի մէջ կառավարութեան և Ազգ. պաշտօնէութեան, ի մէջ Հայոց՝ և ի մէջ բնակակից Թրքաց և Քրդաց։ Եւ հետեւանքն եղաւ ծանր, մինչեւ պարզուեցաւ թէ ժողովուրդն անմեղ էր։

Շատ տխուր էին այն ձայները որք այս և այն գաւառներէն կը լսուէին, թէ՝ Հայքս Անգղիացի կը դառնանք. այսինքն Անգղիական եկեղեցւոյ կրօնքը կ'ընդունինք. թէ՝

Ռուս կը դառնանք. այսինքն Ռուս եկեղեցւոյ կրօնք կ'ընդունինք. տեղ տեղ ալ՝ այլակրօնութեան դիմելու ձայներ հանին, տեղ տեղ ալ՝ գաղթելու։ Անշուշտ ընթերցողաց յայտնի են թէ՝ այլակրօնութեան փափաքն ի՞նչ կ'ակնկալէր այն այլազգներէն. յայտնի են նաեւ թէ՝ այսօր դոքա ոչ Անգղիացի, ոչ Ռուս, ոչ այլակրօն են. այլ որպէս էին, նոյնպէս եւ մնացած են Հայ, և իրենց տեղն են։ Բայց ո՞րքանի կշռեցան ազգին վրայ այդ կեղծ ու պատիր անխոհեմ ցոյցերը։ Նրբամիտները դիւրաւ կրնան խելամուտ լինել թէ Հայուն կանչել կուտային այդ խաղերը մեր օտար ու սուտ բարերարները, որոնցմով տագնապ աւելցուցին Հայուն, աշխատութիւն աւելցուցին մեր բարեխնամ կառավարութեան, բայց իրենք խնդացին, ու ծափ զարկին խաղացին և այժմ հանգիստ կ'ըննեն։ Հա՞րկ է յիշել Տիգրանակերտը, Վանը, Բաղէշը, Մուշը, Կարինը, և ողբալին՝ Ալաշկերտն...։

Ոչ, եղբարք, այս չէր մեր ընելիքը, այդ ճանապարհ դէպ ի բաղձալին չէր հաներ։ Այդ կեղծ բարերարները ոչ հայուն հօրեղբայրն էին և ոչ հայուն քեռին, այլ աւելի ճարպիկ որսորդներ ու մսագործներ, որ զմեզ, էրէ վայրիի, պատրաստ ոչխարներու, և պարարակ կովերու տեղ դնելով, մեր փարախէն կուզէին խրտեցնել, հեռացնել, և իրենց ձեռքը ձգելով ի սպանդ մատուցա-

նել․․․։ Բայց մենք մարդ ենք և որդի մարդոյ։ Ո՛րքան աղուէսուց, գայլոց, արջոց և առիւծոց դարեր ու դարանակալութիւններ անցուցեր է հայն, հաւատարիմ Մնալով իր Աստուծոյն, իր եկեղեցւոյն, իր խաչին, իր գրքին ու Աւետարանին․ իր տաճարին, վանքին, արտին, հողին, ջրին, իր հօրենական տանն ու գերեզմանին, և իր տիրող Թագաւորին, որ ազատութիւն տուեր է ապրելու և պաշտելու իր ազգային նուիրական սրբութիւնները, հաւատքը։

Խաղողը իր բուսած հողին վրայ կը հասուննայ, մանուկն իր մօրը ջերմիկ ծոցը կը զարգանայ։ Եւ պտուղը հասուննալու, հունձք հնձելու եղանակն՝ ամառն է։

1881—82ի ձմեռը՝ կեդր․ վարչութեան որոշմամբ ի Բաղէշն էի Վանէն եկած, տեղւոյն հայ ժողովրդեան ծանուցեալ ծանրագոյն խնդրոյն առթիւ։ Օրհնեալ է Աստուած որ յաջորդեց ի փառս իւր։ Անտի Թեղուտայ վանքն ու գեղը, և Մշոյ Առաքելոց վանքը Արուեստասիրաց ընկերութեան բացած երկրագործական վարժարանը տեղեկագրելու համար պաշտօն տուած էր ինձ Սովելոյ կեդր․ պատուական Յանձնաժողովն։ Ապրիլ ամիսն էր երբ անցայ Մշոյ դաշտը, այդ հիանալի, հոյակապ և մշտամատաղ դաշտը և իւր շրջապատող անտառոտ լեռները, Ջուխուլայ շամբերը, ամբողջովին ողողեալ էին ձեանց հալքերով, և գեղեցիկն

արեգակն ծլեցուցեր էր հազար ու բիւր տեսակ կանանչներ ու ծաղիկներ, բնութիւնը յուսալից ոգելից վերածնած էր գարնան զեփիւռին հետ. կռունկն, արագիլն, սարեակն և հազար կերպ թեւաւորք ու եղանակաւորք կը կենդանացնէին այդ օրհնեալ հողն. ձիեր, քուռակներ, գոմէշներ, եզներ, կովն և իւր հորթը, մագին իւր գառնուկը, այծն և իւր ուլը, կը վրնջային, կը կարկաչէին, կը բառաչէին, կը բայէին, և այնքան անուշութեամբ ու երանութեամբ կը լնուին մեր սիրտերը, որ այլ եւս դրախտին չէինք ցանկար, զի դրախտը գտած էինք...։ Վերջապէս ընդ երեկն կը հասնինք Ա. գիւղն Հայոց, ուր տեսայ ժողովեալ գրեթէ՝ գեղացի բոլոր Հայերը, որոց դէմքին վրայ խորին վիշտ և վարանումն կը տիրէր։ Ողջունելէն և զիրենք հարցունելէն ու օրհնելէն զկնի, —կը զարմանամ, ըսի, ինչո՞ւ լուծք չէք հաներ, ինչո՞ւ արտերը չէք հերկեր, այգիները չէք փորեր. տունը նստելու պարապ մնալու ո՞ր է....։—«Մենք պիտի չվարենք, չփորենք, չցանենք, չանկենք այլ եւս», ըսին ինձ, դառնութեամբ սրտի..., և ծանուցեալ բացատրութիւնները երկարօրէն մտիկ ըրի, որոց եզրակացութիւնն էր թէ՝ —Մեր եզներն ու կովերն անգամ կուշտ խոտ ու յարդ չեն ուտեր, և մենք միշտ անօթի, մերկ, տուրքի ու պարտքի տակ, արեւու ու ձիւնի տակ կը մեռնինք... ոչ կամք կայ և ոչ կա-

լողութիւն որ աշխատինք... ուրիշներ ենք որ երկրէն ելնենք․ ամբողջ ձմեռն մինչեւ օրս այդ կը մտածենք․ բայց խօսքերնիս չենք կրնար համաձայնել․ ո՛ւր երթանք, կ՚ըսենք Ռուսի հողն երթանք, Ա՛մու հողն երթանք, Մըսըր երթանք, մեռնինք՝ խօ մեռնինք, իսկ եթէ ապրինք՝ կտոր մը մարդու պէս ապրինք... այս ի՞նչ է մեր քաշածը...։

Այժմ վարանման վիճակն իմ վրայ տիրեց․ բաւական վշտակրելէս զ՚կնի, խօսեցայ թէ ի՛նչքան անհնարութիւն, դժուարութիւն, կորուստ և մահ կայ գաղթելու ճանապարհին վրայ, և թէ՝ լաւ է քիչ մը եւս սպասել, համբերել, Թագաւորը պիտի յիշէ իւր ժողովուրդը, Աստուած պիտի ողորմի վերջապէս, օրեր պիտի փոխուին, չարերը պիտի պատժուին, աղէկ կառավարիչներ և արդար դատաւորներ պիտի ղրկէ Թագաւորը, և զձեզ պիտի մխիթարէ և այլն։

Մինչ ես օրինակներով կը ջանայի համոզել զիրենք թէ՝ Ամէն երկիր գիշեր կը լինի, խաւար կունենայ, բայց չէ՞ որ Աստուած ամէն օր առաւօտ կը բանայ, լոյս կուտայ մեզ, ձմեռուանէն յետոյ՝ կուգայ գարուն․ ամէն աշնան՝ չորցած, քաղուած, տրորուած ու գօսացած հողը՝ Աստուած կրկին կը կանանչեցնէ գարնան արեւով․ կը հալին ձիւները, կը տաքնան օդերը, կը ծաղկին դաշտն ու ծառերը, այսպէս և մեր վիճակը կը նորոգուի շնորհիւ մեր հայրախնամ վեհ․ Սուլթա-

նին ։ Ցանկարծ ծերունի մը իբրեւ կցորդ-իմ ձայնիս կրկնեց, ու մատով ցոյց տուաւ գեղի առջեւի մարգագետինը, — «Եղբարք, տղաք, տեսէք սա չայիրը․ գեղի տաւարը, գնացողի էկողի գրաստները ամէն օր կը կոխկռտեն ու կը կրծեն, հէմէ կանանչ է, կանանչ է, ինչի՞, որ իր արմատը կը մնայ իր տեղը․ մեր ազգ ալ է որ մինչեւ այսօր այնքան կոխկռտուեր, ծամուեր, քաղուեր է, նորէն կանանչցեր է իր տեղին վրայ․ մենք կը չորնանք, կ'ոչնչանանք, թէ որ մեր տեղն ու մեր հողը փոխենք․ եկէք, մ'ընէք, Աստուծոյ ողորմութիւն շատ է, Թագաւորի ռահմ շատ է…»։

Այս ծերունւոյն խօսքերը եւ տուած օրինակը կրնան ամէն տեղի Հայոցս վրայ ալ տպաւորութիւն ունենալ։ Արդարեւ ժողովըրդեան մը ու ազգի մը կեանքը հոգեկան կապեր ունի իր ծնած հողին ու արեւին հետ, իր հօրն ու մօր գերեզմանին հետ, գետին եւ արտին հետ, աղբիւրին եւ ծաղկին հետ, աստղին ու ամպին հետ, վանքին եւ սուրբին հետ, թռչնոյն եւ անտառին հետ, թմբուկին ու պարին հետ, գոմին եւ գոմէշին հետ, հորթիկին եւ գառնուկին հետ, թոնիրին եւ մուխին հետ․ «Ո՞ տայր ինձ զծուխն ծիրանի, եւ զառաւօտն Նաւասարդի, զվազելն եղանց, եւ զվագելն եղջերուաց, մեք փող հարաք եւ թմբկի հարկանէաք»։ Ահա քեզ Թագաւորի մը հոգեկան կարօտ․ մեր Արտաշէսին։

Ո՞րքան հապա ժողովուրդ մը, որ կրնայ մաշուիլ և կորչիլ այդ կարօտութեանց պատճառաւն անգամ։ Դիտուա՞ծ է արդեօք, երբ մէկը առաջին անգամ իր ծնած տեղէն պանդխտութեան դիմէ ուր որ լինի, գնացած տեղը հիւանդութիւն մը կ՚ունենայ, և չը բացատրուիր թէ ո՞ւր տեղը կը ցաւի. օդոյ և ջրոյ փոփոխութեան կուտան շատեր այդ բանը, բայց ոչ, պէտք է ըսել հայրենական տան կարօտը կրելու հիւանդութիւնը. ես իսկ յաճախ ենթակայ եղած եմ, շատերու վրան ալ տեսած եմ։ Ո՞ւր կը մնայ հապա գաղթականութիւնը. որ ըսել է՝ անդարձ պանդխտութիւնը։ Սիրտ և հոգի կրող գաղթականի մը հարցուցէք, թէև ունենայ փարթամ և անդորր վիճակը, հառաչանօք կը յիշէ իւր թողած վայրը....։ Ու միթէ ամէն գաղթողը կը յաջողի՞. հազարներէն հազիւ մէկը։ Ինձ ծանօթ է թէ քանիցս մեր գաւառներէն գաղթել ուզողները՝ դրացի պետութենէն պատասխան ընդունած են բնա՛կելու Կովկասէն հեռու։ Ինչո՞ւ։ Որպէս զի չտեսնան Մասիսը, չտեսնան Այրարատը, հեռի Գեղամայ ծովէն, Արագածի հովերէն, հեռի նոյն իսկ Տփղիսի հայերէն, որք կենդանի շղթայ մի են այդ լերանց, հողին ու ջրին, և հողմոց տալուն առնելուն։ Այս գիտեն պետութիւնները թէ՝ խոտն իր արմատին վրայ կը զարգանայ և կը կանանչի։

Միթէ հար՛կ կա՞յ պատասխանելու ա—

նոնց, որք կ՚ըսեն թէ բարեկեցիկ վիճակը հերիք է ազգի մը կեանքին համար, երբ նա մանաւանդ կը տանի իւր հետ իւր կրօնքն ու լեզուն, կը կառուցանէ եկեղեցի, վարժարան, ունի քահանայ, ուսուցիչ, և ալ ինչո՞ւ պիտի կորսուի նա։

Իմ ընթերցողաց ծանօթ է խորամանկն Շահաբաս, որ Սպահանի մէջ ամէն ընդարձակութիւն տուաւ իր տարավարած Հայոց. անձամբ կը պատուէր անոնց կրօնական տօները, կը շնորհէր և կը նպաստէր փառաւոր եկեղեցիներ շինելու, կը պսակաւորէր կղերն, բայց միշտ ախ ու վախ կը լսէր Ջուղայեցի գաղթականներէն։

— Ի՞նչ կը պակսի ձեզ, ահա տուն, պատուական վայր ձեր բնակութեանց, ազատութիւն, համակրանք, վաճառականութիւն, շահ, վայելեցէք և Շահին համար աղօթք ըրէք։

— Էջմիածնէն զրկուեցանք, հառաչեցին ամէնքը իրենց սրտերէն...։

Էջմիածին. բառ մի էր, որ ժողովրդեան հազար տեսակ հոգեկան խղճերը կը բացատրէր։ Բայց և քիչ մնաց որ այս անմեղ ու բնական խղճը անհետ ընել տար զԷջմիածինն, որպէս զի անհետէր Հայոց սրտերէն ու հոգիէն այն կարօտը։ Մտածեց Շահն քակել այդ Աստուածաշէն հիմունքը, և Սպահանի մէջ կառուցանել զայն։ Հազիւ զգալով անմեղները իրենց նուիրական զգացմանց յայտ-

նելուն ծանր մեղքը և անոր ծայրագոյն հետեւանքը, յաջողեցան համոզել զՇահն և միայն քանի մը քարեր բերել տրուեցաւ Էջմիածնէն. և Ս. Լուսաւորչին աջը...:

Անցաւ սակայն հետզհետէ այդ սերունդն, և գաղթականութեան հատուածներն աստ և անդ բաժիններ տուին: Հնդկաստանի Հայք ամենէն երջանիկ գաղթակա՞նք եղան: Յիշե՞նք նաեւ ի Լեհաստան գաղթեալ Հայք, և մեծաւ մասամբ այսօրուան Ռումանիոյ Հայք. եւն. ամէնքն ալ Հայ լեզուն և Հայ կրօնքն իրենց հետ տարած, ու բաւական տարիներ ալ պահած էին. բայց թուել գիտցող մը թող բաղդատէ այսօր գաղթելոց և մնացելոց թիւերը, և քննէ թէ ի՞նչ պատճառաւ սպառեցանք:

Կ. Պոլիս և իւր շրջակայքը տարբեր պատճառներ ունին. այս մայրաքաղաքը միշտ հաղորդակցութեան մէջ է ամէն երկրի Հայոց հետ, և գաւառները սոյն կեդրոնին հետ, ուր պանդուխտներն անպակաս են, ամ յամէ եւս կը նորոգի այստեղի պանդուխտներու բնակութիւնը: Ակնցի, Կեսարացի, Մշեցի, Վանցի, և այլ Գաւառացի ո՞ր թաղի մէջ չգտնուիր, ո՞ր տունը, ո՞ր խանը, ո՞ր նաւահանգիստը, ո՞ր եկեղեցին, շատերն ընտանեօք, շատերն ալ հոս ամուսնացեալ. անպակաս են և եկեղեցականք:

Այստեղ մանաւանդ Օսմ. Բարեխնամ Կայսերութիւն մեծամեծ խնամքով պահած

է Հայերը․ և, որ յատուկ ուշադրութեան արժանի է, միա՛կ կայսերութիւնն է, որ չներեր իւր հպատակաց, մանաւանդապէս Հայոց, գաղթելու իր հողէն, ջանալով զոհ ընել զիրենք։

Պատուական և օգտակար էր այն սովորութիւնը, երբ Էջմիածնի նուիրակները կը շրջէին Հայոց մէջը, թէ իրենց բնիկ հողին վրայ բնակողաց և թէ գաղթելոց օրհնաբեր և ողջունաբեր լինելով, Հայոց՝ և Հայոց մէջը․ եկեղեցւոյն՝ և իւր մայր Աթոռոյն մէջը․ ոչ միայն չնորհաբաշխ և նուիրահաւաք էր անոր պաշտօնը, այլ և խնդրա՛կ և բանբեր։ Հարցուցէք պատմութենէն, և քննեցէք, կը տեսնաք որ նուիրակաց անհետանալէն զկնի, կորուստներ սկսեր են մեծամեծ յաջողութեամբ կլնուլ զՀայն։ Օտարաց գործունէութեամբ լեզուն ու կրօնքը կողոպտուած Հայոց վանքի Եպիսկոպոսն ու Մայրապետն դեռ կը պահեն Լուսաւորչի պատկերն և կը յիշեն ջերմեռանդութեամբ սուրբ Էջմիածինն՝ յԱւստրիա կամ ի Բոլոնիա․ ինչպէս կը գրեն տեղեկագիրք և այցելուք։ Նոյնքան օգտա՛կար էր նաև Մշոյ սուրբ Կարապետի նուիրակն, որ կը շրջէր ուր որ Հայու հոտ առնէր, և ցայսօր այդ նուիրակութեանց արգասիքն է, որ Մոզդոկէն, Աժտէրհանէն, Խրիմէն, Նոր Նախջեւանէն, Կովկասէն, Պարսէն, Ռումանիայէն և Թուրքիոյ գրեթէ ամէն գաւառներէն ա-

մէն տարի ուխտ ընողներ, ուխտ էկողներ բազմաթիւ են այդ սուրբ հողոյն վրայ կա-ռուցուած սուրբ ուխտին, մուրատատուր սուրբ կարապետին, ուր էկողները կրօնա-պէս մխիթարուելէն զ՚ինի, հոգեպէս և մտա-ւորապէս ալ կը ճաշակեն քաղցրութիւն յի-շատակաց, տեսութիւն վայրաց, մեր անմահ նախնեաց։

Ա՜հ, ուխտաւորութիւն, ինչ հզօր և սրբա-զան կապերով կը կապես մեր կեանքը մեր արմատին։ Ուխտաւորն երբ իր աչքով տես-նէ այդ երկիրները, այլևս անփոյթ և ան-տարբեր չմնար երբ լսէ թէ՝ այդ վանքը կը կործանեն քանի մը կրօնաւորաց կիրքեր և աշխարհականաց ոմանց շահերը․ անփոյթ և անտարբեր չկրնար կենալ, երբ լսէ թէ, կը գայթակղի, հաւատափոխ կը լինի ժողո-վուրդ այս և այն պատճառաւ, և թէ՝ կը գաղթեն այդ երկրէն հայերը․․․։

Անսպառ են այս նիւթոյն վրայ գրելիք, բայց ես կը փութամ այստեղ դնելու ըն-թերցողաց աչքի առջև մի պատճէն բարձրա-գոյն Հրամանագրին, զոր Բ․ Դուռն հաճե-ցաւ Ազգ․ Պատրիարքարանի խնդրանաց վրայ գրել հայարնակ գաւառաց կուսակա-լութեանց։ Կը հրատարակեմ զայն ցոյց տա-լու համար թէ Օսմ․ կայսերական կառավա-րութիւնն որքան բարեմտութեամբ և հայ-րաբար կը հոգայ իւր Հայ ժողովուրդն, որ կը յանձնարարէ պատրիարքարանէն ղրկուած

վարդապետին «պատիւ, ընդունելութիւն և ի հարկին ամէն դիւրութիւն և ձեռնտուութիւն», ըստ խնդրանաց Ամեն. Ս. Պատրիարք Հօր, որոյ պաշտօնն էր «խրատել Հայ բնակիչները. հարստահարութեանց պատճառաւ հայրենիքենին թողլու նպատակէն ետ կեցնելու»...: Վայելեցինք արդարեւ յանձնարարեալ կայսերական շնորհքները, և դիւրութիւն ընծայուեցան. գործեր գործուեցան, զորս այստեղ մանրամասն յիշատակել աւելորդ կը թուի:

Ա.հաւասիկ Հրամանագրին Հայերէն:

## ԹԱՐՋՐԱԳՈՅՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐ

### ԽԱՐԲԵՐԴՈՒ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՈՒՂՂԵԱԼ

Համար 29

Մեծաշուք Տէր,

Այդ կողմերու Հայ բնակչաց՝ Քրդերէ եւ ուրիշ անձերէ կրած հարստահարութեանց պատճառաւ **Հայրենիքնին** թողելու նման դիտումներ ունենալնին՝ իրենց պատրիարքարանի կողմանէ իմացուելով զանոնք իրենց սոյն նպատակէն ետ կեցնելու, եւ իրենց **Հայրենեաց** մէջ մնալու համար խրատելու եւ յորդորելու պաշտօնով՝ Դարեգին վարդապետն այդր ուղարկուած ըլլալով, եւ յիշեալն Խարբերդի (*հոս գաւառները կը բուէ*) կողմերը երթալուն՝ իրեն նկատմամբ պատիւ եւ ընդունելութիւն ցոյց տալու, եւ

ի հարկին ամէն դիւրութիւն եւ ձեռնտուութիւն ընծայելու մասին՝ վերոգրեալ տեղերու, իշխանութեանց հարկ եղած հրամանները ի գործ դնելու համար՝ Հայոց Բարձրաշնորհ պատրիարքին կողմանէ խնդիր մատուցուած լինելով, կարեւոր եղածն ի գործ դնելու եւ կատարելու շնորհն ընելնիդ կը յանձնարարուի ներկայ գրութեամբ։

Գօ Րէճէպ Ձ (Կնիք)



# ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ



## ՄԱՍՆ Բ.



### ՀՐԱԺԵՇՏ

Ապրիլ 28 է, մեք արդէն տեղաւորուած ենք Թիմաւօ շոգենաւը։ Աջը համբուրած եմ Ս. Հայրիկին, Աջը համբուրած եմ Ներսէս Ս. Պատրիարքին, մնաք բարովն լսած եմ բարեկամաց և ծանօթից, Բերայի խորհողներուն, Ղալաթիոյ խօսողներուն։ Եւ թէպէտ առ փղձուկ սրտիս կը ծովանան աչերս, և կը փակուին ծովէն անդին տեսնելու, բայց սիրտս միշտ բաց է հոն, հոն կը շրջի, հոն կը խօսի, Գատըգիւղ, այո՛, սակայն ահա շուրջս, ի նաւին կը գտնեմ այդ գեղը, ազնիւ Յովակիմ էֆ. Յ. Յովակիմեան և իր հետ եղողները, ներկայացուցիչք Գատըգեղցւոց։ Մնան բարով։ Ժամն 8 է, նաւապետը նշաններ կուտայ, անիւներ կը դառնան, հիանալին Վոսբորը կը ծփայ գեղեցկափայլ։

Մնան բարով իւր շքեղութիւնք։

Թիմաւօն ունէր իւր մէջ կայսերական քո-

միսէր Վսեմ․ Ալէտին փաշան և երկրորդն Մանաս էֆէնտի։ Արդէն շնորհ ըրած էր Ամեն․ Ս․ Պատրիարքն ներկայել և յանձնարարել զիս Ն․ Վսեմութեան, գեղեցիկ պատեհութիւն էր նաեւ որ միեւնոյն նաւուն մէջ կը գտնուէինք։

Ապրիլ 30․ Քօմիսէրներն ելան ի Սամսոն, որք պիտի անցնէին Սեւազէն, Խարբերդէն, և երթային Տիգրանակերտը, ուստի պիտի սկսէին իրենց պաշտօնը, որ երեք Հայաբնակ մեծ կուսակալութեանց ընդարձակն և առաջինն էր, իբրեւ այցելութեան և բարեկարգութեան ալ առաջինն։

Իսկ մեք մայիս 1 ին ելանք Տրապիզոնը։

## ՏՐԱՊԻԶՈՆ

Առաջնորդարանը իջեւանեցանք, Ս․ Առաջնորդը՝ Տ․ Մատթէոս եպիսկոպոսն՝ բացակայ էր։

Ազգին պատիւ կը բերէ Առաջնորդարանի նորակառոյց շէնքն, իւր դիրքն և իւր հանդերձանքն։ Շատ մխիթարուեցայ քաղաքիս ամէն ինչ արժանեաց մէջ տեսնալով, բացի եկեղեցիներէն և եկեղեցականութենէն, որոց վրայ ցաւելով կ'ըսեմ՝ լքեալ և նսեմ էին մնացած, թէպէտ զգալի էր իրենց ալ, և կը խօսուէր նկատողութեան առնլու։

Բարեկամաց, Ազգային պաշտօնական մարմնոց, վարժապետաց այցելութիւններ

վայելեցի, և փոխադարձաբար կատարեցի։ Երկսեռ վարժարանն համեստ և անձայն ընթացք մը ունէր, որոյ տնօրէնն էր Էթմէքճեան Սահակ էֆ. ծանուցեալ ուսումնականն և գրագէտ, ազնիւ թարգմանն «Ինքնօգնութեան», և արժանի անձն իւր կոչման, որ հոգւոյ խաղաղութեամբ և խղճով կը վարէր կրթական տեսչութիւնն, առանց աղմուկ հանելու, առանց ինքնագովութեան, և առանց ազգային գործերը խառնելու, ինչպէս կ՚ընեն շատերը դժբաղտաբար, և իրենց պաշտօնը թողլով ժողովուրդը կը յուզեն պէսպէս պատրանօք։

Նայելով տարւոյն քաղաքական և նիւթական անձկութեանց, մանաւանդ այս քաղաքին՝ որ զգալի անկում մը ցոյց կուտար իւր նախկին շահեկանութեանց, որ յառաջ եկած էր վերջին պատերազմէն, անշուշտ խստապահանջ լինելու շատ իրաւունք չունէինք. սակայն չէինք կարող իսպառ անտարբեր լինել և չխօսիլ իրենց պէտք եղածն ու կարելին. բաղդատելով Տրապիզոնը՝ Տրապիզոնին հետ, զոր աւելի պայծառագոյն տեսնել անհնարին չէր։

Չէի կարող լռել օրուան պահանջները իրենց յիշեցնելէ, որոցմէ յոյս ունէի, զի կը ճանչնայի արդէն այն պատուական և կարող անձնաւորութիւններ, որոնց փորձը տեսնուած էր, և որք դեռ կարող էին լաւագոյն փորձեր ընծայել, բայց «պատճառ ունինք»

կ'ըսէին : — Այսօր այդ պատճառը չկայ այլ եւս :

Քաղաքիս ազգային կրթասիրութեան նշան էր տեսնել մասնաւոր վարժարանաց բացուիլը, Սարըեան Մկրտիչ էֆէնտիէն և Գ. Հայկունիէն են. Սարըեանն սակայն նոյն օրերը մեկնեցաւ իր վարժարանէն և քաղաքէն, Պօլոյ Արեւելեան Դպրոցասիրաց ընկերութենէն կարգուելով տեսուչ Տարօնոյ և Բաղրեւանդայ գաւառաց մէջ բացուած վարժարանաց որ ծանօթ է ցարդ Միացեալ ընկերութեան վարժարանաց ընդհանուր տեսչութեան պաշտօնով: Ոմանց նման երբէք չեմ կրնար պարսաւել մասնաւորաց վարժարանները, այդ յարկերը զանազան տեսութեամբ օգուտ կ'ընծայեն դաստիարակութեան թէ իրենք իրենց մէջ, և թէ նոյն իսկ Ազգային կամ Թաղային վարժարանաց. բաւական է որ այդ դռները բացող անձն' լինի արժանաւոր կրթութեան կոչման, բանգէտ, համեստ, լուրջ, և չհանէ իր վարժարանէն դաս մը խմաստակաց, որք լուսաւորութիւն և գիտնականութիւն կը համարին բանի տեղ չդնել իրենց ծնողքը, մեծերը, երախտաւորները. որք ազատութիւն կը համարին կրօնքն, կրօնից բարոյականն, եկեղեցին, եկեղեցւոյ օրէնքն, Աստուծոյ երկիւղը, մարդոց պատկառանքն, և յոռի ու թիւր գաղափարներով կ'ելնան ժողովրդեան մէջը, որոց պատճառած գայթակղութիւնք

և մոլորութիւնք ատելի ու խորշելի կը կացուցանեն վարժարանները և ուսմունքն յաչս հասարակաց։ Այսպիսիներ միայն մասնաւոր վարժարանաց մէջ ոչ, այլ Ազգային և Ընկերական վարժարանաց մէջն ալ երեւցած են դժբաղդաբար, և ասոր մի միայն պատճառն է վարժապետի ու տեսչի լաւագոյն ընտրութիւն չընելը։

Մենք քանի մը փարայի միրգ առնելու համար, մեծ խնամքով կը քննենք կը դիտենք, կը հոտուըտանք, երկար հարցուփորձ կ՚ընենք, որպէս զի մեր ստակն ի զուր չերթայ և մեր ստամոքս չաւրուի, սակայն վարժապետի, վարդապետի, ժողովականի ընտրութեան երբեք հոգ չենք տանիր. հերիք է որ լրագրի մը մէջ մէկը ինքզինքն գովել տուած լինի, հերիք է որ լեզուն կը դառնայ, ո՞վ է, ի՞նչ է եղեր, ի՞նչ է ըրեր, ի՞նչ գիտէ, ինչո՞ւ կուգայ, ուստի՞ կուգայ։ Ո՞վ կը հարցունէ։ Այդպիսիք մեծամեծ գումարներ յումպէտս կը փճացնեն Ազգէն, և հոգեկան ու մարմնական կեանքը միանգամայն կը խանգարեն։ Անշուշտ կը հասկնայ ընթերցողը թէ այս գրածներս Տրապիզոնի համար չեն, այլ ուր ուրեք որ այսպիսիք կան։

Տրապիզոնի պատմականն, քաղաքականն և նկարագրականն ծանօթ լինելով ընթերցասիրաց, աւելորդ է կրկնել, մանաւանդ լրագրաց մէջ յաճախ կ՚երեւի իր հին և նոր երեւոյթներով, նոյնպէս և իր Ազգա-

յինն։ Սակայն փափաքելի է, իբրեւ քաղաք մը՝ որ կը գտնուի այսքան մերձաւոր յարաբերութեամբ ի մէջ Հայաբնակ գաւառաց, Մայրաքաղաքիս եւ Ռուսահայոց, ունենայ այնպիսի վիճակ մը, որ օրինակելի եւ նախանձելի լինի խորերը գտնուած Հայ ժողովրդեան։ Լուսաւորութեան եւ քաղաքակրթութեան սահմանին մօտ մի դուռն է Տրապիզոն, որոյ չեմէն անցուդարձ կ'ընեն ամէն տարի հազարաւոր հայեր, որ կրնան օգտուիլ։

Պատրիարքարանէն սպասելիք ունենալով, եւ քանի մը մասնաւոր՝ այլ կարեւոր յանձնարարութեանց առթիւ հարկ եղաւ ինձ տասներկու օր մնալ ի Տրապիզոն։ Այդ օրերու մէջ Իզմիրի առաջնորդ Գեր. Տ. Մելքիսեդեկ սրբազանն եկաւ, որ կ'երթար ի սուրբ Էջմիածին եպիսկոպոս ձեռնադրուելու. եկան Արժ. Հայր, Տ. Ղեւոնդ վարդապետ Փիրղալէմեան, Տ. Մեսրովբ վարդապետ Երուսաղէմի, որ կ'երթային Վանը. եւ Տ. Վահան վարդապետ Տ. Մինասեան, որ Պատրիարքարանէն կ'երթար ի Կարին իբրեւ պատուիրակ, զորս հիւրասիրեց Առաջնորդարանն։

Անմոռանալի կը մնայ ինձ այն տարուան «Համբարձման տօնը», որ սուրբ եկեղեցւոյ մէջ ջերմեռանդութեամբ եւ խուռն բազմութեամբ կատարուեցաւ. եւ սուրբ պատարագէն ու աւուր պատշաճի քարոզէն զ'ինի,

դաս մը պատուաւոր և զգայուն ազգայիններէն հանդէս մը հանդերձեցին ի պարտիզի Ռումուտեան եղբարց, դալարեաց վրայ, կանանչ թուփերու շուքը, ծաղկեալ ծառոց և վարդենեաց մէջը սեղան մը, և ազնիւ բազմականք համատիպ կը հանդիսանային դալարին, կանանչին, կարմիր վարդին և պտղաբեր ծաղկին։ Հոն կիրթն ու վայելչութիւն, խանդն և յոյս ջերմագին կը փայլէին ի սէր և ի պատիւ Տօնին։ — Շատ ապրին։

## ԿԻՒՄԻՒՇՀԱՆԷ

Մայիս 12ին մեկնեցայ Տրապիզոնէն և 14ին հասայ Կիւմիւշհանէ։ Տրապիզոնէն մինչ ի Կարին շինուած ճանապարհով կ՚երթանք, որ կ՚անցնի Զղանայ լեռնէն, անտառոտ, զուարճալի։ Մօտ առ մօտ խաներ շինուած են, և անտառներու մէջը սփռուած զառ ի վեր և զառ ի վայր Լազերու տները կը զարդարեն ու կը գեղեցկանան։ Շալակաւոր և աշխատաւոր կանայք, ծառախիտ ձորեր, ջրոց խոխոջն, թռչնոց դայլդայլը, և Լազ պատանեաց պարկապզուկն ու կայտառ պարերն կանանց և աղջկանց երամով՝ զոր կը կատարեն ի գնացս ճանապարհին, զմայլումն կ՚առթեն։ Տեղ տեղ ալ մատուռներ, ձայն զանգակաց, երէցն ու ժիր պառաւունք՝ աղօթից մրմունջներով կը շնուն այդ վայրերը։ Աստ ամենայն ինչ

նուագաւոր է, ուղեւորն հետի կամ հեծեալ՝ կ'երգէ. այծն, ոչխարն, կովն, որ կը սփռին յարօտ, զանգակաւոր են. բեռնակիր էշն, ջորին, ձին ի ձայն զանգակաց՝ զորս կը կրեն իրենց լանջերէն, կողերէն, եւ յետուստ ի կախ, կ'ընթանան ծանր բեռանց տակ անտըրտունջ, պարսիկ չարվադարն (գրաստապան) հավայը կը կանչէ, այլք գնտակ կ'արձակեն, եւ հրարձակներու որոտալից արձագանքը ժայռէ ժայռ անդրադարձելով անդունդն ու անտառը ահեղ կը թնդացնեն, որոց ձայնէն խուռն ու արագ կը թռին թեւոց բախմամբ երամք զանազան թռչնոց. հողմոց ընչմամբ վայրենի ծառոց սաղարթալից գլուխներ իրար խառնուած կը ծռին կը շտկուին ծովու կոհակաց նման, եւ սօսափիւնն կը դաշնակաւորէ միւս բոլոր ձայներն ու եղանակները: Մերթ ընդ մերթ Մայիսին սիւքը կը մատուցանէ քմացդ զմայլելի անուշահոտութիւն մանուշակին եւ երփն երփն ծաղկանց՝ ծածկուած ծրարուած պարարտ պրակներուն ծոցը: Ոտքիդ առջեւ մրջիւններու կարաւանը, կաղնեաց եւ մայրեաց թիկանց վրայ փեթակները եւ մեղուաց ժրավաստակ բիւրք: — Հանգիր առուակի մը եզերք, աղբիւրի մը գլուխ, կամ խանի մը դուռն, ինչ որ ուզես կը բերէ խանճըին, կամ բաց քո խուրջինն, ծծէ ըմպելին, ծծէ օդը, զուարճացիր տեսարաններով, վայելէ մայիսի արքունական պերճանքն եւ բնու-

թեան բարիքը, նայէ երկինքը, և փառք տուր Ստեղծողին։

Կիւմիւշհանէի ձորը, ուստի կ՚անցնի ճանապարհը, թէպէտ տօթագին է ամառը, սակայն ի գարնան սքանչելի է, զարդարեալ պտղաբեր ծառաստանօք, որոց պտուղները համեղ, խոշոր և ազնիւ տեսքով, տարուան ամէն եղանակի մէջ կրնայ գտնել ուղեւորն, հռչակաւոր է իւր տանձն ու խնձորը։ Այժմ կը թողունք մեծ ուղին, որ կ՚երթայ Բաբերդի միջով ի Կարին, և կը խոտորինք յաջ։ Քիչ մը զառ ի վեր կը բարձրանանք, և ահա Կիւմիւշհանէն, գոգաւոր և մանեկաձեւ դիրքով. սակայն տխուր քաղաք մ՚է. շատ տներ անբնակ և աւերակ լքեալ, իսկ չէն մնացածները կը ցուցնեն թէ փայլուն օրեր տեսեր է սա, երբ կը հանէր իր հանքերէն արծաթն ու ոսկին, և արդիւնաւոր աղբիւր մի էր Օսմ. Պետութեան գանձուն, որոց դադարման հետ՝ դադարած էր գրեթէ ամբողջ կեանքը բնակչաց, որք սակայն մեծ յուսով կը սպասէին թէ վերստին պիտի սկսուին բովերը, զի քննիչներ կուգային կ՚երթային, և կը հաստատէին թէ առատ նիւթ կայ այդ հողին աղիքներու մէջ։ Արդէն կ՚իմանք թէ գործն սկսուած է։

Հետաքրքրական էր տեսնել և լսել բացուած ու բանուած բովերը։ Դեղնակարմիր գոյնով տնկուած քար մը կը ցուցնեն, զոր կ՚անուանեն Ալ չուխայով քար, և ամէնք

ի մի բերան կը հաստատեն թէ առատ ոսկի կայ այդ քարին տակը, ասոր մօտ տեղ մը կը ցուցնեն երկար փլածոյ մը, ուր արծաթ հանելու համար աշխատող յոյներէն քառա-սուն անձինք փլածին ներքեւ մնացեր մե-ռեր են, քառասունին անունն ալ Պաւլօ, քառա-սունի ընտանիք և բարեկամք այս աղէտին առթիւ լալով կը լեցնեն քաղաքը՝ կրկնելով «Պաւլօ, Պաւլօ»։ — Ո՞վ է այս Պաւլօն, և ի՞նչ մարդ է եղեր, զոր կ'ողբայ ամբողջ քա-ղաքը։ Կը պատասխանեն «Ամէն մէկ իր Պաւ-լօն կուլայ, քառասունն ալ էին Պաւլօ»։ Ասկէ չինուեր է առածը թէ «Ամէն ոք իւր Պաւլօն կուլայ», և տեղին կը կոչուի Քըրք Պաւլօ։

Քաղաքիս բնակիչներէն շատեր ցրուած էին մերձակայ քաղաքները և գեղերը, և գեռ կը գաղթէին, զի ուրիշ արուեստով և ա-ռուտուրով չէին կրնար ապրիլ հոն, իսկ մնա-ցելոց տնական և եկեղեցական անօթներ ու զարդերը ծանրագին արծաթեայ էին, որք յօրինուած էին առատութեան օրերու մէջ։

Վայելչաշէն էր Հայոց եկեղեցին, իսկ վարժարանը գրեթէ չունէին։ Բնակիչք երեք ազգէ են, Թուրք, Հայ և Յոյն, առողջ՝ կայտառ և սիրուն են։

Կէս ժամ հեռի է քաղաքէն Ամենափրկիչ վանքն Հայոց, փոքր բայց գեղեցիկ ձորակի մը ծոց. իր շրջապատը կը բարձրանան լեռ-ները, յորս թէպէտ կը գտնուին գեղեր, բայց սովորաբար աւազակաց վայրեր են։

Այն վանքը իր շէնքերով, ծառաստանով, ջրերով, խիստ զուարճալի ու սիրալի է, մանաւանդ սուրբ տաճարին սիրուն և վայելուչ շէնք մի է։ Կիւմիւշհանէի Հայ ազաներ կը կառավարէին վանքը, որ ունէր ոչխարներ, դուար, արտեր, կարասիներ, անօթներ, եկեղեցական ընտիր զարդեր։ Երբեմն երբեմն վարդապետ վանահայրներ եղեր են, բայց չեն շարունակած, յորոց միոյն՝ կը պատմէին, Եօզղատցի հաշակեալ Աբրահամ վարդապետ, որ այդ վերջին օրերը գնացեր էր Պաթում, և այն տեղ մեծ տուն մը գնելով կը նստի եղեր. — կեր, արբ, և ուրախ լեր....։

Կիւմիւշհանէն Տրապիզոնի թէմ է, և Ս. Առաջնորդն աշխարհական փոխանորդ մը ունէր հոն։

# ԵՐԶՆԿԱՅ

Մայիս 16 ին քաղաքէս մեկնեցանք յԵրզընկայ։ Անմիջապէս սկսանք ել մը, որ կը հանէր Մուսալլայ անունով բարձր լեռ մը։ Որքա՜ն զով է օդ, և ի՜նչ պաղ պաղ ջրերէ կը խմենք։ Լեռան գանգի տարածութեան վրայ լճակ մը կը տեսնանք, որոյ մէջն ու եզերքներբ երամ թռչնոց կը ճչուուղեն և կը թռչտին, ուղեկիցներս կը բացատրեն թէ՝ Այգըր գօլու կ'ըսուի այս լճակը, և թէ հրեղէն ձիեր ունի իր մէջը։

Խիստ մօտէն կ'երեւին Շ. Գարահիսարու լեռներ, ահա Գավուր տաղին: Իսկ մեր միւս կողմէն կը ցուցնեն իրենց գլուխները Բաբերդու լեռներ, որ կամարաձեւ կը հակին դէպի Երզնկայ, երկու գօտիներն եւ ձիւնապատ, կլոր շրջանակի մը, կամ լուսեղէն ձիւնեղէն պսակի ձեւով: Կը պատահինք կապաններու, անտառներու միջով կը կտրենք կ'անցնինք, շատ մը գեղեր կան մեր շրջապատը, կ'իջնանք Տօղսան տօղաշմայէն, որ եզան չուիկի պէս պտուտաւոր և նեղ ուղիով զառիվայր մի է, և ահա խորունկ ձոր մը անտառալից, ուր լի են բնութեան գեղեցկութիւնք և հաւուց գեղն ու գեղգեղանք. Մշոյ ճշնաւոր ծաղիկն և Վարագայ գինեբուկն....: Ո՞ր հոգին է բերեր արդեօք: Ֆընտըխլըի տէրէ կ'ըսուի այս ձորը: Սակայն այսքան զմայլմանց մէջ աւազակաց սարսափը կը դառնացնէ մեր ամէն ճաշակը, ձիոց տանտարողներ կը լսուին քիչ մը հեռուստ, և մեր կարաւանը արագօրէն կ'ընթանայ: Արդէն ըսած էին մեզ թէ ահալից է այդ ճանապարհը, բայց ես չէի ուզեր վախնալ: Քիչ մը եւս, և ահա ձորը լայնցաւ մեր առջեւ. ապահով եղանք, զի հասած էինք Թուրքի մեծ գեղի մը բերան: Գեղին ուռենեաց ներքեւ, վճիտ և պաղ ջրոյ մը եզերքը իջանք հանգչելու. առուին քովերը մանկտին և հորթիկը կը խաղան անմեղութեամբ ցատկռտելով, և մի ալեւոր ծերունի

Թուրք բազմեալ կը գիտէ զանոնք հաճոյալիր աչօք և քաղցր ժպիտով։ Ահմէտ բաբան, այս էր ծերունւոյն անունը, պահ մը թողուց այն տեսարանի երջանկութիւնը և մեզի դարձաւ, որքան բաներ կը խօսի, դարումը՝ կամ ալ աւելի օրերու կենդանի պատմութիւնն էր, կը պատմէր քաղաքական նշանաւոր անցքեր և անձինքները, կը պատմէր թէ՝ ինքն գտնուած է անձամբ շատ դէպքերու մէջ, և կը պատմէր կանոնաւոր ու առանց չափազանցելու, իսկ իրեն համար կ'ըսէր 150 տարեկան եմ։

Ելնելով այդ յիշատակեալ տեղէն կը շարունակենք մեր ուղին, կը հասնի ձորն ու անտառը, և իրիկուան մեր իջեւանը եղաւ Փիքոն գեղ Թրքաբնակ, իբր 150 տնէ բաղկացեալ, գեղին ամենէն երեւելին, աղէփա Շէրիֆ էֆէնտի, հիւրընկալեց զմեզ իր ընդարձակ սենեակը, որոյ կէսն բարձրայարկ էր և գորգերով փռուած, պատուհանները լեցուն գրքեր շարուած, այս մասն սենեկին յատկացեալ էր աղօթելու, ուր Ղուրանը փոքր գրքակալի մը վրայ դրած բաց՝ կ'ընթեռնուին, իսկ վարի մասն՝ բուխէրիկը մշտավառ, քովը փռուած ու բազմած էր ինքն Շէրիֆ էֆէնտին, գիրք մը երկու ձեռքով բռնուած, երբեմամբ անձին կը վէրծանէր լռին։ Մեծարանօք բարեւեցինք զինքն, ինքն աւելի յարգանօք ընդունեց, կրակի միւս կողմն փռել տուաւ մեր տեղը, այնինչ մեր

սուրճն ու թէյը կուզէինք պատրաստել, խստութեամբ յանդիմանեց զմեզ, և խլելով գիրքը, ինքն իր ձեռքով բովեց, ծեծեց, եփեց և հրամցուց մեզ նոր խահուէ: «Այս իմ պարտքս էր, ըսաւ, այսուհետեւ ինչ կ'ուզէք խմեցէք»: Ընթրիքն ալ մաքուր և պատուական պատրաստուած էր: Մեր հանգստութեան համար արգիլեց նոյն իրիկուն գեղացիներուն որ չժողվուին հոն, ուր սովոր էին կրօնի և հասարակաց խնդիրներով զբաղիլ: Հանգիստ քնացանք: Իսկ առաւօտ գրեթէ ամբողջ գեղացին, որոց մեծ մասն այրի կիներ էին և աղքատ պառաւները, մերկ մանուկներ, աղմկալից լեցուեցան սենեակը, ոստիկաններ եկած էին գեղը ոչխարի տուրք առնուլ, և այլ մնացորդ տուրքեր ժողվելու, գիւղերը տնէ տուն շրջելով՝ որոնք կարողութիւն չունէին եղեր դրամ տալու, և ահա պաշտպանուելու կուգային Շէրիֆ էֆէնտիէն. Նա կուլար սրտի ցաւէն, ու կ'ըսէր, «Ի՞նչ ընեմ, այս կանանց շատերուն էրիկն կամ եղբայր, կամ տղան պատերազմի մէջ մեռած են, կամ գերի գնացած. որբեր ու այրիներ ամէն ունեցածնին ծախեցին կերան, մէկ այծով կամ կովով մը իրենց գառն ոգեպահիկը կ'ընեն, զայն ևս չեն թողուր. անշուշտ եմ որ բարեխնամ Կայսրն իմանալով ասոնց վիճակը, պիտի գթայ և թոշակ իսկ սահմանէ այս խղճալեաց»: Այլ սակայն անողոքելի կը մնային հարկահանները, և այդ-

ողորմելեաց խումբ մը. ճամբայ հանին գաւառագլուխը տանելու ։ Իսկ միացելոց համար դիւրութիւն մը գտած էին, հար՚կահաւաքաց հետ անասուն գնող չէլէբ եկած էր, որ գրաւեալ անասունները կը գնէր, և այն գումարէն հարկի բաժինը կը հանէին, թէ աւելնար տիրոջ կուտային ։ Մեր մեկնելու ժամն հասած էր, շնորհակալ եղանք Շէրիֆ էֆէնտիէն, և մոռնալով այս արտաճմլիկ տեսարանէն, ճամբայ ելանք ։

Մայիս 17. Այս աւուր մեր ուղին հանգիստ է և զուարճալի, հովիտ մ'է, որոյ միջով կ'անցնի Գայլ դետ, և գաւառն կ'անուանի Քէլ-ֆիւղ, հովտին մէջտեղը, գետին մօտ շինուած է Զիւղղիկ մեծ գեղն կամ Աւան, որ ունի 230 տուն Քիւրդ և Թուրք բնակիչ. 20 տուն Հայք Կիւմիւշհանէէն եկած էին հոս և կ'աշխատէին դարբնութեամբ, դերձակութեամբ և այլ արուեստներով. ոչ քահանայ ունէին և ոչ եկեղեցի, ամենախեղճ ստրուկներու վիճակ մ'ունէին. որոց կրածները, զոր կը պատմէին, եթէ ստոյգ է, չէր արժեր իրենց ապրիլն ու շահուիլն ։ Ցայս վայր Կիւմիւշհանէի գաւառն է. բայց իշխանութիւնը գրեթէ անուանական և եթ է ։ Իսկ անկէ անդին Երզնկայի կը վերաբերի ։ Անհանգիստ հանգիստ մը առինք ի Զիվղիկ, և ելանք մեր ուղին, խիտ առ խիտ գեղօրայք են մեր աջն ու ձախը և արտօրայք մշակեալք,

Գայլ-գետը կ'առոգէ այս ձորը և օղակ օղակ օձի պէս պտոյտներով կ'ընթանայ, վերջապէս սպառեցաւ ձորն, և ահա լեռ մը, որոյ գոգէն կը բղխին Գայլ-գետի աղբերակունք։ Մեր իջեւանն եղաւ Գալօր գիւղը Թրքաբնակ։ Հեռի չէր ասկէ Սատաղ գեղն, որ նշանաւոր է իւր աւերակաց մէջէն գըտնուած հնութիւններով, որք են զանազան դրամներ, թերափներ, արծաթեայ զարդեր, ոսկիէ կուռք, և դեռ որոնողներ կը գտնեն։ Աղ-տաղ, կամ սպիտակ լեռն, այս է Գայլ-գետի ականց և Սատաղի լեռան անունը, որոյ միւս երեսը կը հայի Երզընկայու ընդարձակ դաշտին։ Աղբերաց չըթներէն կը քաղենք շուշան և գիներբուկն, լերան կողերէն գարն ու խաւարծիլ։ Հասած ենք ի գագաթն։ Այդ լայնածաւալ հովիտն, Երզընկայու քաղաքն, բազմաթիւ գիւղօրայքն ի դաշտին, պղտոր Եփրատն, Տէրսիմի բարձր լերինք, և ամբածրար սրբազանն սեպուհ դպան աչքիս. դպան սրտիս։ Դարեր ետեւէ ետեւ շրջանով կը ներկայանան յիշողութեանս, անպատմելի տպաւորութեան ներքեւ, ու յափշտակութեանց մէջ կը գըտնուիմ...։

Ո՜ դաշտ, նուիրական յիշատակներով լի։ Լուսաւորչի և Տրդատայ հանդիպաւորութեան արժանի։ Ո՜վ կրնայ նկարագրել քո շուքն անցեալ աւուրց, ո՛վ՝ պատմել տրտմին այն սրտերուն, մեր սրտերուն։ Տեսի՛լ հիանալի։

Սպիտակ ցլոյ զոհերն Անահտայ ոսկի արձանին աստ ի Սատաղ (*) ուր ի մէջ այնքան չքեղափառ հանդիսաւորութեանց, Տրդատայ ծառայն, Քրիստոսի ծառայն, խաչին լուսով կը ճառագայթէ, իր աչքն երկինքն է, Սեպուհն է, փառաւորեալ և պերճացեալ նշանաւ խաչին ի հանդէսն կը մտանէ․ սէգն Տրդատ, իւր ահեղ բանակն և նախարարք կ'սպառնան, կ'ողոքեն, կը չարչարեն․ Նա միայնա՛կ կը նահատակի, արիւնէ արիւն, մահէ մահ, երկաթէ յերկաթ, վիրապէ ի վիրապ փոխուելով կ'ուժովնայ, կը փայլի, կը զօրանայ, կը յաղթէ, և օր մը այդ տեսարանը կը փոխէ ի հակառակն․ Առիւծն Տրդատ՝ Աստուծոյ գառն կը դարձունէ, Անահտայ դաշտը՝ եկեղեցւոյ հովիտ, լեռներ ու բլուրները խաչին պսակաւ կը զարդարէ, Սեպուհն՝ երկնից կը հաւասարէ, և անոր անդնդային խորերը՝ երկնից կամար կը յօրինէ, Սերովբէից դասուք ձորերը կը լեցնէ։

(*) Անահտայ արձանն ու մեհեանը այնքան հռչակաւոր և յաճախ յիշատակեալ մեր հին մատենագրաց մէջը, յԵկեղեաց գաւառ, յԵրէզն աւան, առ Գայլ գետով, կը Թուի Թէ Սատաղն է բուն մեհենի տեղն եղած, Գայլ գետը հոն, հնութիւնք և հետք մեհեննեաց հոն։ Չկայ Գայլ գետը Երիզայի կամ Երզնկայի դաշտին մէջ, և չկայ Երզնկայ քաղաքին մէջ ու մօտն նշան հնութեանց, որով նշմարուի Թէ եղած է Անահտայ մեհեան: Սատաղն լերան վրայէ, և դաշտին միւս երեսը, Թէպէտ հեռի չէ Երզնկայէն. Սատաղէն գտնուած էր ոսկի Գլուխն Անահտայ իբր 20 տարի յառաջ, և որ այժմ ի Լոնտրա է

Երզնկայ դաշտային քաղաք է․ դիւր և արձականիստ, իւր ամէն կողմերը խիտ առ խիտ գիւղօրայք են ծառաւէտ, ջրաւէտ և մշակեալ արտօրէիւք, դաշտը կը ձգի յարեւելից յարեւմուտս, երկու ծայրերը հակեալ ընդ հիւսիս եւ հարաւ, ունի իւր մէջ ճահին վայրեր, ապականուած հանքային ջրերով, մաս մի եւս չորաղ, և մաս մը՝ աւազալից, անգործածելի ըրած են իրենց բռնած երկիրը։ Դաշտի Արեւելեան ծայրը կը սկսի այն լեռներէն, որոյ միւս երեսն է Դերջանու գեղեցիկ գաւառն, ուստի Եփրատն կուգայ և նեղ անցքէ մը կը մտնայ Երզնկայի լայն արգանդը, իսկ Արեւմտեան ծայրն է Սեպուհ լեռն, որոյ կողէն կուշտէն ճամբաներ կան կամախ երթալու, բայց բուն ապառուածքը կը շօշափէ կէրջանիսի գաւառն, որ կիյնայ Գէլ-գետի, Շապին Գարահիսարի, Արմտանի, և կամախի միջև։ Եփրատը դըտիկ մը պէս ձգուած է Երզնկայու դաշտի մէջքին և սորտին վրայ, տեղ տեղ բոնթեր յօրինած։ Գրեթէ չորս կողմէն խուշոր լեռներով շրջապատեալ կը տեսնուի այս դաշտը, յորս աւելի վեհ դիրք և ձև մը ունի Տէրսիմի, զանազան ձորերէ ջրեր կը հոսեն, և բնակչաց ծառայելէն զկնի, կը թափին յԵփրատ։ Վանքերը ամենէն գեղեցիկ դիրքը գրաւած են լերանց բարձկաց, լանջաց, և ստորոտներուն վրայ։ Եկեղեաց աշխարհ, եթէ «Եկեղէ» բառը առանձին նշանակու-

թիւն մը չունի, արդարև Եկեղեցեաց գաւառ ըսուելու յարմար է. բայց միթէ «եկեղեցին» Հայերէ՞ն էր քրիստոնէութենէն յառաջ, և միթէ գաւառիս մերձակայ գըտնուած «Վերին կեղի, Ներքին կեղի» անունով գաւառնե՞րն ալ եկեղեց կամ եկեղեցեաց գաւա՞ռ կը նշանակեն, գուցէ «կեղի, Էկեղի» կոչումն առած լինին իրենց դիրքէն, կամ անտառուտ եղած են ի հնումն, որոց հետք կան ցայսօր իսկ. և, կեղի, որ կը գրուի նաև «Քեղի» լինի տեսակ մը անտառի փայտերու անունը, յորմէ նաւեր կը շինուին, զի քեղի «նաւի ղեկ» կը նշանակէ, արդէն իր մօտի լեռներ անտառալից են, և ցայսօր մեծ առուտուր կընէ Երզնկայ Կէրջանիսի փայտերովը որ կը վաճառէ այլ գաւառաց. կամ այլ պատճառաւ մը, որ հետազօտելի է, ինչպէս Արմուտան գաւառակ Տանձենիքէն կոչուած է, ուր ցարդ կայ «Տանձիկ» անուն գեղ մը, և այս բնական ու սովորական է: կայ նաև «կեղիս» անուն գեղ մի 'ի Խիզան:

Երզնկայ՝ 'ի նախնիս կը գրուէր Երէզ աւան. Երիզա, յետոյ յորջորջուած է Երզնկայ: Ուրիշ առթիւ դիտել տուած եմ ընթերցողաց թէ՝ ԿԱՅ կը նշանակէ կայան, տուն, օթեւան, աւան, կրնանք ըսել նաև ապատանարան, ամրոց, ինչպէս ցոյց տուած ենք Մուշեղ-կայ, Բեն-կայ, Բենիկի տուն կամ ամրոց, որ ցայսօր իւր դիրքը կը պահէ. Ա-

չոռ-կայ. ևըն. Եկեղեաց մէջ Երէզնաւանը կար, բայց քաղաք չէր. քաղաք ձեւանալէն զկնի եղեր ԽՐՁՆԿԱՑ. իսկ թէ Երէզն բառ մարդո՞յ անուն է, թէ դիցական կոչումն. շատ հին է, զոր չենք ուզեր կրկնել:

Երզնկայ պատմական քաղաք է, և ինչպէս կրօնական ճոխութեամբ նշանաւոր, առաւել ևս բարբարոսաց և օտարաց տնանկոխութեամբ, և երկրաշարժէ յաճախ կործանմամբ անցեալ մը ունի: Մեր ժամանակները սակայն յամ յամէ կը բարգաւաճի շնորհիւ Օսմ. մեր վեհափառ կայսերութեան, որ հաստատելով բանակատեղի այս քաղաքը, զօրաց և զօրապետաց ներկայութեամբ ապահոված է, և աւերակներ գեղեցկացած է շքեղ շէնքերով, առեւտուրով, արուեստներով, և քաղաքակրթութեամբ: Հաղորդակցութեան մէջ կը գտնուի Սեբաստիոյ, Խարբերդի, բոլոր Տէրսիմի, Կարնոյ և Տրապիզոնի կուսակալութեանց ու գաւառաց հետ յորոց կ'օգտուին Երզնկացիք. բաղդաւորութիւն է իրենց համար չորրորդ բանակին սպարապետ Վսեմ. Նաֆըզ փաշան, որ երկրագործութեան և արուեստից քաջալերիչ է, ճանապարհաշինութեանց հզօր հսկող, գիտութեան և ճարտարապետութեան ծաղկեցուցիչ, և որ մեծն է՝ ամէնու հետ հայրաբար գիտէ վարուիլ, և յառաջադիմութեան ու կենցաղագիտութեան հոգի ներշնչել, աշխա-

տեսէր և խաղաղ պահել մեծն ու փոքրը, զօրաւորն ու տկարը։

Մխիթարական էր տեսնել մեր Ազգայնոց մէջ Մանիսայի և այլ տարազուց գործարաններ և գործողներ. ուրախալի էր տեսնել վարժարանաց համար ունեցած այնքան եռանդն ու արդիւնքն։ Պատուաբեր երիտասարդութիւն մը կար այդ քաղաքին մէջը, որոց մի խումբը հիմնած և ցարդ կը կառավարէ Ընկերական վարժարանն կանոնաւոր և արդիւնաւոր ընթացքով։ Պատիւն էր Երզնկայի օրիորդաց Քրիստինեան վարժարանը, և կեդրոնական ուսումնարանն տղայոց. բերկրութեամբ կը տեսնուէին և նախակրթարանք փոքր մանկանց, և կրթութեան նպատա՛կաւ հիմնուած ընկերութիւնք։ Գիշերօթիկն չկար մեր առաջին գնալուն. փլած տեսանք զայն յետ երկու տարւոյ, և և այժմ չկայ այլ եւս։ Ափսոս, որ ասուպի մը պէս երեւցաւ և անցաւ անհետ։

Մեծին Ներսիսի Պարթեւ հայրապետին Ս. չիրիմն և սրբազնագործ Աջն համբուրելու երջանկութեամբ լցայ. ափսոս որ չժամանեցի Զարչարանաց Լուսաւորչին կամ Տատասկի վանքն երթալու, որ ի դուռն Տաւրոսի, Մէրչան պօղազին կառուցուած է, գնացինք նաեւ Սուրբ Նիկողոս վանքն, որ հիանալի օդ և տեսարան ունի։ Մեծին Ներսիսի աջը քաղքի Ս. Սարգիս եկեղեցին կը գտնուէր, ուր կային նաեւ հատընտիր մա-

4

սուքներ, որոց վրայ գրուած են մեր Հաւաքած յիշատակարանաց կարգին, ինչպէս նաեւ տեսած ձեռագիր մատեաններու վրայ։ Ս. Ներսիսի վանքն ալ, շիրիմն ալ անշուք էր, ընդհանրապէս չքեղ չէնքեր չեն Երզնկայի վանքերը, յորս կը բնակին քահանայ վանահարք իրենց ընտանեօք, և վանքն է իրենց իբրեւ տուն կամ ագարակ, լի անասուններ, անմաքրութիւններ, և տաճարն խիստ քիչ խնամեալ։

Քաղաքի Ս. Նշան եկեղեցին, առաջնորդական Աթոռոյն տակ՝ յեցեալ ի սիւն, գտայ իւր ժամանակին, և Հայոց եկեղեցւոյն Նշանաւոր Սոփեստոս, Աստուածախօսն և երգախօսն Յօհան Պլուզ վարդապետ Ծործորեցին. Աւաղ, որ զՍեպուհն գերազանց նուագեր էր, և Հայաստանեայց եկեղեցին քան զարեւն ի վեր բարձրացուցեր և փայլեցուցեր էր, ինքն ինկեր էր նոյն եկեղեցւոյ աթոռոյն ոտից տակ նսեմ, անտես և անյիշելի, որոյ վրայ ամենայն անտարբերութեամբ կը բազմէր Սրբազանն, և ոտները կը կախէր։ Յիշեցուցի՛ որոց անկ էր։

Դեռ Գեր. Հմայեակ Սրբազանն Պոլիսէն Նոր Առաջնորդ պիտի գար, Երզնկայի ժողովուրդը քանի մը հազար ոսկի պատրաստած էր նոր գերեզմանատուն մը գնելու և շինելու, վարժարանաց վիճակը բարձրացընելու, Թատրոն և Առաջնորդարան կառուցանելու, զորս լրացուցած և կը վայելեն

այժմ։ Արդարեւ Երզնկան կենդանի և յառաջադիմելու շաւղին մէջ տեսնալով բերկրեցայ ի հոգի, կարող էր օրինակելի քաղաք լինել մեր գաւառաց շատ մը քաղաքաց։

Երզնկայի մանրամասն տեղագրութիւն և վիճակագրութիւն գրուած են քանիցս և հրատարակուած լրագիրներէն, աւելի ընդարձակ'ն կ'ընթեռնունք յԱրեւելեան Մամուլն, զոր գրած է Ընկերական վարժարանի առաջին ուսուցիչ Պ. Ս. Ամատեան ուսումնական և բնական տեսութեամբ։

## ԿԱՄԱԽ

Մեկնելով քաղաքէս կ'ընթանանք յարեւմուտս մեծ բազմութեամբ Ազգայնոց, գոհութիւն իրենց։ Հեռզհեռէ կը ցուցնեն մեզ Հայրապետ, Թիղ, Ջուխտակ սուրբեր, Ծոխա, Խախ, ևն. և վերջապէս կը թողունք դաշտը, ու բարձրանալով հասած ենք լերան մը սկաւառակի վրայ, յորում է ԿԱՅԻ ՓՈՍԻ Ս. Յակոբայ վանք, ջուրն, օդն, արօտն հիանալի և սառն, գեղեցկակերտ է Ս. Տաճարն, յորում կայ փոս մը ջրհորի ձեւով, ուր կը ճգնէր՝ եղեր Ս. Յակոբ, յաջմէ խորանին առիւծ՝ և ի ձախմէ եզն, քարակոփ խոյակաց վրայ։ Իսկ դրսի շէնքերը աննշան են։

Մեր ուղին լեռնային է, Սեպուհն այս

կողմէն երեք փեղկի բաժանեալ կը տեսնուի, առաջնոյն վրայէն կ'երթանք մենք։ Ղըզըլբաշ Քրդերը, ընտանեօք և զաւակօք բազմութեամբ նստած են այս լեռան գագաթը տօնի հագուստներով և աղօթելու կերպով. հոն կայ ուխտատեղի մը ՍԵՐԲԷ անուն և գերեզման մը, ուխտ կ'ընեն հոն։ Այս Սերբէէն մերթ ընդ մերթ կ'արձակուին կայծակունք և որոտմունք և լոյս, և կը տարածին Սեպհոյ ամբողջ մասերուն վրայ։ Տեղացիք կը հաւատան թէ այն գերեզմանէն կ'ելնեն այդ նշանները։ Ինչ որ ալ լինի, խորհրդաւոր է այդ ուխտն և նշանները և Սերբէ անունն, արդեօք լեռն իր անունն առեր ասկէ, թէ զուգադէպ մի եղեր է։ Զառ ի վեր, զառ ի վայր յառաջ կ'երթանք. մեր փափաքն ու նպատակն է դիմել յԱւագ վանք, մայրիք և մացառք մեզ ճամբայ կուտան, խոր, խոր կ'իջնանք, և ահա կուզես նեղ ձոր ըսէ, կուզես հեղեղատ մը, սեղմուած բարձրաբերձ լերկ և լեռջ ժայռերու մէջ. մութը կոխեր էր, վանից ճրագները տեսնալէն յառաջ՝ վանից դամբռեր թնդացուցին հաչիւնով այդ անդունդը, և մեր խումբէն ասըրճանակ ու փանքէն հրացաններ դղրդեցուցին պահ մը այդ Սրովբէական սրբազան վայրն, ուր, սակայն, հոգիս հալար յուզմանց մէջ էր։

ԱԽԱԴ ՎԱՆՔ կ'ըսուի նաեւ Թադէոս Ա-

ռաքելոյ վանք, և Լուսաւորչի Անապատ. որ Սեպհոյ բոլոր ուխտատեղեաց կամ մատրանց աւագագոյնն է, և միւս փոքրերը այս վանքով կը կառավարուին։ Զարմանալի չէ թէ այսպիսի խոր և անտես ձորոյ մը մէջ Թադէոս Առաքելոյ օրէն հիմնուած եկեղեցի եղած լինի, և քրիստոնէութիւնը իւր հալածանաց օրերու մէջ մինչ ի սուրբ Գրիգոր Լուսաւորիչն՝ քահանայ և հաւատացեալները սնուցած լինի աստ հանդերձ անապատականներով և ճգնաւորներով. որո՛յ յարմար քարայրներ, խոռոչներ, և ծածուկ ձորերը պատրաստ կ'ընծայէր Սեպուհն, և իբրև ապառաժ ու անբնակ լեռն՝ կրնար խուզարկուելէ թագուն մնալ, ինչպէս Վարագայ լեռան համար կը կարծուի թէ՝ նախ քան զՀռիփսիմեանս, կը գտնուէին Հայ Քրիստոնէից ծածկեալք, որոց քով ապաստանեցան Հռովմայեցի կուսանք։ Ի Սեպուհ եւս կոյսն Մանի սրբոց սրբութեան հոտ մը առնլով դիմած էր, և Ս. Լուսաւորիչ այդ լեռը իրեն աղօթարան ընտրած, յոր կը մնար երկար ժամանակ անծանօթ զինքն որոնողներէն. այլ սակայն կենակից հոգեղինաց, երգակից հրեշտակաց, և Սերովբէք զինքն գտած էին, իրեն կը դասակցէին և կ'սպասաւորէին, և երջանիկ հոգիք իրեն կը հանդիպէին։

Երանեալ հոգիք, Բեթլէհէմի քարայրին մէջ ննջած Աստուածը գտան, ծագեալ լոյսը տեսան, և հրեշտակաց հետ «փառք ի բարձունս»

երգեցին։ Երանեալ հոլիւք Սեպհոյ Մանեայ այրին մէջ Աստուածարեալ անձին ճառագայթը կը տեսնային, և Լուսաւորչին լուսափայլ հոգին ի լոյսն անմատոյց ցոլանալուն հանդիպելով, սրբասնեալ մարմինն «փառք ի բարձունս» երգով կ'ամփոփէին։

Արդարեւ այս անդնդային խորեր, և երկնաբարձ լեռները այնքան վսեմութիւն և սրբութիւն կ'ազդեն հայու մը հոգւոյն, որ կը կարծէ թէ երկնից կամարի մէջ կը շրջի, ամենայն քարինք լոյս կ'արձակեն, Աստուած կը շրջի հոն, ճառագայթներով լցեալ, անմահութեան բուրմամբ զմայլեալ, «խորին խորհրդով, գեղապանծ լուսով բերկրեալ, կենդանի կառօք, զօրօք հրեղինաց պարփակեալ, աջոյն Յիսուսի պատուեալ, Գողգոթայի խաչելոյն տեղւոյն համանմանեալ» ինչպէս կը նուագէ հոգւով Յօհան Պլուզն իւր մեծ և սքանչելի քնարովն, «Լերինք ամենայն, այսօր ցնծացէք ընդ մեծապայծառ փառսն Սեպուհւոյ դերաղանց լերին »....։

Տեղ կայ, ուր մարդու սիրտն ու քնար քար կը դառնայ. քար կայ՝ որ քար կտրած սիրտեր և խորտակեալ քնարներ կը շարժէ։ Ինչպէս երբ գտնուի մարդ տեսարանի մը մէջ, և իր չորս դիհէն ձայն քաղցրանուագ զինքն շրջապատող հազարաւոր բերնէ կամ գործքերէ միախոխակի լսէ, կամ լուսաւոր երեւոյթներ, շարժմունք և բոմբիւնք յա-

ջրդարար ցոլանան ի վեր և ի վայր, առջեւ ու ետեւ, յաջ և ի ձախ, կը շարժէ մարդն իր դէմքն ու աչերը լսելու և տեսնալու անոնց քաղցրութիւնն, անոնց հրաշալիք, այս վիճակ կունենայ Սեպուհի ուխտաւորն, թէ բարձրանայ ի բարձունս լերանց, թէ իջնայ յատակս ձորոց, թէ անցնի այրերու առջեւէն, թէ ջրի մը հանդիպի, թէ ժայռի մը և թէ քարամէջ բուսած ծառի մը:

Սեպհոյ ամենէն բարձր մասն է «Գոհանամք»ը, որոյ գլուխը շատ հեռու տեղերէ կ'երեւի. իսկ դեռ չէն մատուռներն են այդ լերան մէջն ու վրան՝ ՄԱՆԻԱՅ ԱՅՐ, ՀԱՆԳԻՍՏ Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ, ուր ամփոփուած ու գըտնուած է մարմինն Աստուածարեալ. ՍԱՐՈՎԲԷՔ ՔԱՐՈՎԲԷՔ, կամ ՍԱՐՈՎԲԱՅ ՎԱՆՔ: Յանկալի վայր մի է նաեւ Մաղկումարդ ըսուածը:

Այս լերան վրայ եղած ազգային սրբազան աւանդութիւն մը կայ, թէ սուրբն Տրդատ, որ իր վերջին օրերը ճգնութեամբ ընդ Աստուած լինելու նուիրեց, հետեւելով հետոց իւր և բոլոր Հայոց վարդապետին, լուսաւորին, քակեց իր մէջքէն այնքան յաղթանակներով պսակեալ սուրը, որ ծառայեր էր ջնջելու Այրարատեան տան թշնամիները, ծառայեր էր ուղի բանալու Քրիստոսի աւետարանին, և բարձրացնելու յաղթական նշան Ս. Խաչին. այն դիւցազնական և ահեղ սուրը ի ձեռն Սուրբ Լուսաւորչին ձգեց

այս լերանց մէջ, որ չինկաւ գետին, այլ միայն կախման օդին մէջ, ի ձեւ խաչին, որոյ շուրջը շրջանակեալ շող մը կը փայլի, որ լոյսն է լուսոյն մշտավառ կանթեղին Ս. Լուսաւորչին, որ նոյնպէս կը կենայ անչուան կախուած, անշէջ վառուած, երկուքն եւս կը տեսնուին աչաց արժանաւորաց: (*)

Ո՜ սար և խաչ Տրդատայ, ո՜ լոյս անշէջ մեր Լուսաւորչին, ես կը հասկնամ ու կը հաւատամ Ձեր խորհրդաւոր գոյութեան:

Ահա և ասոր երգը. «Խորհուրդ խաչելոյն գերահրաշ տեղւոյն Գողգոթայ ծածկապէս ի սմին լերին տեսանի, զէնն արքայական, սպանման գործի կենաց, արքային՝ ի կենաց գործիս նուիրեալ. որով փրկեսցէ զմեզ յաւիտենից մահուանէ» — Ամէն —. Նշան և խորհուրդ փրկութեան յաւիտենից մահուանէ....:

Ցօհան Պլուզ, յաւիտեան անմահ քո երգն ու քնար, յաւիտեան օրհնեալ քո բան և յիշատակ: Ո՛վ քեզ նման, ոչ ոք քեզ նման կրցեր է շարժել այս ժայռեր, ոչ ոք քեզ չափ՝ շարժել մեր սիրտեր:

Աւագ վանքը երեք տաճար ունի, Ս. Աստուածածնի և սուրբ Կարապետի տաճարները փոքրիկ են, և կ'աւանդեն թէ՝ Ս. Աստուածածինը՝ Թադէոս Առաքելոյ հիմ-

(*) Տես ի Համով-Հոտով. երես 361. 362:

նածն է, իսկ մեծ տաճարն՝ որ է յանուն Ս. Թադէոսի Առաքելոյն, վայելչակերտ. և Ս. Կարապետինը՝ Ս. Լուսաւորչէն հիմնարկեալ կ'աւանդեն: Առանց գմբէթի են տաճարները, իսկ փայտեայ դռները՝ իրենց երկփեղկին վրայ ունին քանդակներ. Ս. Թադէոսի դրան վրայ քանդակեալ տասն պատկերք Առաքելոց, և ի միջի Յիսուս, երեք Առաքեալք ևս ի ներքոյ՝ հանդերձ Պօղոսիւ, և յիշատակարան փորագրեալ խոշոր և երկարաձեւ երկաթագրով: Վանքիս Ս. մասունքներ և ձեռագիր մատեանները իրենց յիշատակարաններով գրած ենք իրենց կարգին:

Ս. մասանց հետ կը գտնուի արծաթ. կլորակ տուփի մէջ ծրարուած ՏԵՂ.-ՏԱՓ կոչուածը, ձեռքի մը չափ, մոխրագոյն փայլուն քար, որոյ վրայ նուրբ արուեստով քանդակուած կայ երկու արծուի, յաջմէ թագաւոր ի ձախն թագուհի, և ի կեդրոնին՝ մասունք կամ ակն դնելու տեղ մը, ուր Ս. Լուսաւորչի ակրայն դրած են եղեր, որ ինկած էր և տեղը պարապ մնացած: Այս գործ հիանալի և աննման, կ'աւանդեն թէ՝ Կոստանդիանոս ընծայած է մեր Տրդատին, կամ Սեղբեստրոս՝ Լուսաւորչին: Շատ անցորդք և հնախոյզք յատկապէս հեռի տեղերէ եկած են զայս տեսնելու, և հիացեր են, շատ ալ ջանացեր են արծաթով կամ այլեւայլ խոստմամբ և հատուցմամբ հանել

ղայն վանքէն, ինչպէս նաեւ հնարքներ ու հրապոյր ի գործ դնելով, սակայն չեն յաջողած:

Բոխորանեան տէր Յարութիւն քահանայն է վանահայր Աւագ վանից և առաջնորդ թէմից, որք են Արմուտանի, Կէրճանիսի, և Կամախու գաւառները: Մի հսկայ, պատկառելի, հարիւր երեք ամեայ, պարթեւ հասակ, սպիտակ և երկար մօրուք, ուժեղ բազկով, զօրաւոր ձայնով, ծանրախօս և լուրջ ծերունի մը, իւր տոհմը հարիւրաւոր տարիներէ ի վեր քահանայ և վանահայր և առաջնորդ են եղած բնակելով իրենց ընտանեօք այդ վանքը: Տէր Յարութիւն ունի զաւակներ, թոռներ, և թոռանց զաւակներ, որք առ հասարակ կը բնակին վանքը, թէ քաջ մշակ են, թէ քաջազէն, որով կրնան պահպանել վանքն Տէրսիմի աւազակներէն և այլեւայլ կողոպտիչներէ, երբեմն ալ զոհեր տալով առնլով. արդ՞արեւ այդ ամայի վայրը՝ իր չինութեամբ և սրբութեամբ պահպանել ամենայն չարչարանօք և չարեօք որքան գոհութեան արժանի է, նոյնքան և զարմանալի է որ ազգայիններէն եղեր են և կան ոմանք որ կը չարանան և չարակամութեամբ կը խօսին ու կը ջանան հանել վանքը այդ անձանց ձեռքէն, և առաջնորդի, վարդապետի, կամ ժողովականներէ կազմեալ տեսչի ենթարկել, որպիսեաց ձեռքով միշտ խանգարմունք տեսնուեր են, իսկ

չինութիւն երբէք. մանաւանդ թէ՝ այդ դերդաստանին վարձատրութիւն ալ ընել արժանի է, որ իրենց կեանքը այդ սուրբ տան վրայ դնելով, անոր հետ կը պահպանեն ամբողջ սուրբ Սեպուհն և սրբավայր ուխտատեղիք, ուր վարդապետներ չորս օր չեն կրնար դիմանալ, և բան մը իրենք կողոպտելով պիտի փախչին և մնացեալն ալ քրդաց և այլոց կողոպուտ տալով թերեւս։

Տէր Յարութիւն քահանայն այս վերջին տարիներս կորսնցուց իր աչաց տեսութիւնը. և Սահակ Նահապետի պէս տեսայ զինքն երկբորդ ուխտիս՝ նստած ի մահճի, զաւակունք, հարսունք, թոռունք իր չուրջը. մօտեցայ համբուրեցի աջը և օրհնութիւնը խնդրեցի։ Ինքն ևս համբուրեց և օրհնեց։ Ապա հարցուց թէ՝ գիտէ՞ արդեօք աչքը լուսաւորելու դեղ մը, — Ձեր աչքերը պիտի բացուին, հայր, պատասխանեցի, և լուսաւոր տեսլեամբ զՔրիստոս պիտի տեսնէք։ « Խոստովանիմ և հաւատամ. ասաց նա հոգւոյ ամենայն զօրութեամբ. յոյս ունիմ զՔրիստոս տեսնելու, բայց քանի որ նա կամի մնամ այս աշխարհիս մէջ, աշխարհի լոյսն ալ կուզեմ վայելել, օրհնեա՛լ եղիցի կամք տեառն »։ Եւ ապա սկսանք հարցումներ։ Մի կենդանի պատմութիւն է նա ամբողջ մէկ դարու, շատ երկիրներ շրջած, շատ ականաւոր անձանց ծանօթացած, դէպքերու և անցքերու ճշգրիտ նկարագիրը կ'ընէր, իր գլխէն և ձեռքէն ան-

ցածները կը թուէր կանոնաւոր ոձով և եռանդուալից, պարապ չէր շրջած, հարեւանցի չէր անցած, ամէն բանի խորամուխ և իր դատողութիւնն ու դիտողութիւնն ունէր իրաց վրայ, կ'օրհնէր զյիշատակ վարդապետի մը, որ զինքն էջմիածնէն խրատեր իր տեղը ղրկեր էր իր պատանեկութեան օրերը, ապա թէ ոչ՝ պիտի կորսուէի, կ'ըսէր, ոչ հոգւոյս և ոչ մարմնոյս յիշատակ պիտի մնար... եւն. ու մեծապէս կը գոհանար իւր զաւակաց և թոռանց վրայ։

Տէր Յարութիւնի որդին տէր Վրթանէս քահանայն այժմ կը վարէ հօր պաշտօնները։

Վայելելով այս օրհնեալ տան և օրհնող նահապետին շնորհալի հիւրընկալութիւնը, հեղեղատն ի վար կ'ընթանանք, երկրպագելով սրբազան հողին և քարերուն, կ'անցնինք մանքի ջաղացներէն, և տնկովի ծառոց պրակներէն, ովասիսի նման են այս տապառաժներու մէջ, կը մտնենք Գառնի գեղը, կը տեսնենք Թըմկըներ գեղ, և կ'ելնենք դուրս ձորէն, քիչ մը յառաջանալով կը գտնենք մեծ պողոտայն՝ որ Երզնկայէն կուգայ Եփրատայ քովէն։ Անձուր՝ որ Տէրսիմի այս մասին անունն է, մեր ձակտին կը զարնէ իւր զովը, և մեր աչաց առջեւ կ'արձանանայ բարձրաբերձ պարսպանման սպիտակափառ ձիւնազարդ, որ իր վրայ ծագած մայիսի արեգակն արծաթափայլ կը շողշողացընէ և մեր բիբերը կը խողտեցնէ։ Անձու-

րի այս երեսը որքան վեհ և ահաւոր՝ նոյնքան քնքոյշ և գեղադէմ է, ժայռեր և պատառուածքներ ունի, կանանչներ և դալարիք փռուած են միւս տեղերը։ Շէն և աւերակ գեղերը բազմաթիւ կ'երեւան, և ահա կը յիշեցնեն մեզ այն մեծ գաղթականութիւն Հայոց, որք այս գաւառէն փոխադրուած են ի Թէքիրտաղ, Կէլիպօլու քաղաքներ և գիւղերը։ Այսպէս նաեւ քիչ մը յառաջ երթալով պիտի տեսնանք Կամախի բերդաքաղաքի ամայութիւնն, և անդին գտնուած գեղերուն մինչեւ Ակնայ սահմանը, և նոյն իսկ Ակնայ գիւղօրէից շատերուն փոխադրուիլը Նիկոմիդիոյ կողմերը, ուր հաստատելով Հայք՝ իրենց թողած գեղերու անուանները իրենց նոր բնակած տեղերուն վրայ դրեր են, որպիսի է Միջագիւղ կամ Օրթա գեղ, Բաղչաճիկ կամ Պարտիզակ, եւն եւն. և միեւնոյն անուանները դեռ կը մնան հին գեղերու վրայ։

Հեռուանց կ'երեւի մեզ մեր պատմութեան մէջ անուանի անառիկ ամրոցն կամ բերդն Անի, իր ետեւի կողմէն կ'անցնինք, աւերակ յորում կան սակայն շէնքերու մնացորդներ և եկեղեցեաց, և հին մզկիթ մը իր մինարայով։ Աւերա՜կ, որ իր դիրքով զարմանալի է, արդարեւ ամրոց անառիկ. աւերա՜կ, յոր պահուեցաւ գանձն Խոսրովիդուխտ Արշակունին Արշակունեաց արքունի գանձերով. աւերա՜կ որ կը խօսի անխօս մեր սրտին հետ, և Եփ-

բատին հետ, որ իրարու լեզուն կը հասկնան և իրարու վրայ կուլան: Բերդին տակ, ձորաբերանը շինուած է այս աւանը, վտակ մը կը հոսի Մնձուրէն ի վայր բերդին ոտները թրջելով, և կը բաշխուի բնակչաց թաղը, արտերուն և պարտէզներուն, այս ջուրը կը բերէ իրեն հետ գարնան և աշնան առատութեան միջոցին՝ հնութեանց կտորներ, դրամներ, փոքրիկ կուռքեր, քարակներ, զորս կը հանէ աւերակաց մէջէն, կամ պահուած հողադարաններէն, և ջրոյն նուազման օրերը մանուկները կ'երթան կը ժողվեն, որոցմէ քանիներ տեսանք, և շատերը վաճառուած էին ու կը վաճառեն շրջող հնախուզաց: Պղնձագործ ուսթա Յարութիւն, որ իր արհեստին բերմամբ կը շրջի քրդերու գեղերն ալ, շատ այդպիսի նիւթերը ձեռք բերած ու ձեռքէ հանած էր, ես գնեցի իրմէն փոքրիկ կուռք մի՝ կանացի, ոտները բեկած. և մի կարմիր քարակն՝ քանդակեալ մօրուօք, գլուխ մի սաղաւարտով, որ ունի նետ եւ աղեղն եւ մի աստղ եւս իւր վրայ, զոր երեք կողմ դարձնելով՝ երեք պատկեր կը ներկայացնէ, գլուխ մարդոյ, ձի և աքաղաղ:

Օդն անառողջ էր աւանիս, բայց գրեթէ տասն վայրկեան անդին մի գեղեցիկ թաղ կայ Տաճկաց, այգիներով եւ ծառերով, վայելուչ տուներով, հոս կը նստին հին տոհմականք Կամախու, բայց ամենէն աւագ

տոհմն է Սաղըր օղլիին, որ տակաւին իր բարձր ազդեցութիւնն ունի բոլոր գաւառին վրայ, կը յարգէ զինքն կառավարութիւն, կը վախնան իրմէն Քրդերը, բայց չէ գիտցած դեռ երկրին խաղաղ բնակչաց համակրութիւնն ու գոհութիւնը վաստկիլ, զի մերթ ընդ մերթ դժգոհութիւն եւ գանգատի ձայներ հանած է իր դէմ, թէպէտ ինչպէս կառավարութիւն, նոյնպէս եւ ամէն անցուդարձ ընողներուն պատուադիր հիւրընկալ գտնուած է եւ քաղաքավար ոմն է։ Իր տունը աւանին մէկ կողմն առանձին շինուած է ճաշակով։

Եփրատայ ձախ կողմէն է մեր ուղին, կը հանդիպինք չէն եւ աւեր գեղերու, աւեր եկեղեցիներու, եւ միւս երեսը գետոյն կը տեսնենք նոյն տեսարանը։ ՂԱՍԻԼՆ կ'անուանեն քարի տակի մեծ գեղ մը, այս բառը՝ Ս. ԹԱԴԱՒՈՐՆ է, զոր յունացուցած են յետաբնակ յոյնք, այս գեղի բնակիչ Հայք իրենց հետ տարած են Թիքիրտաղ Ս. Թադաւոր եկեղեցին եւ խաչը, զոր ունէին աստ եւ այսպէս կը բացատրեն, թէ՝ այն բեւեռն է այդ Ս. խաչը, որով գամած էին Քրիստոսի խաչափայտին վրայ Պիղատոսի գրածը «ԹԱԴԱՒՈՐ ՀՐԷԻՑ». այս էր Քրիստոսի մահապարտութեան յանցագիրը, եւ որ եղաւ պաշտելի հաւատացելոց Ս. Թադաւոր, որոյ մի մասն է Պոլսոյ Գատը գեղի Հայոց եկեղեցւոյ Ս. Թադաւորն։

Լեռնակող է մեր ճանապարհը, եւ երեկոյեան իջեւանն ըրինք Հողիս գեղ, որոյ բնակիչք Հայ-հոռոմ են։ Հետեւեալ օրը անկանոն եւ վտանգաւոր ճամբաներով կ'իջնանք Ավչէն գեղ, Թողլով Եփրատը որ կը մտնէ նեղումեղ կիրճերը, կորսնցունելով իր երեսը բայց ոչ ձայնը, սոսկալի եւ ամեհի ժայռեր պտոյտէ պտոյտ եւ խորէ խոր վիժելով նազելին Եփրատը չարաչար կը հարստահարեն, որ սակայն մշրուելով ու փրփրալով ազատ եւ աւելի աղւորցած կելնէ դուրս քանի մը ժամ յետոյ։

Ավչէն ծառազարդ է, եւ չէն գեղ մը եղեր է, բայց ա՛լ ինկած էր, իրմէն հեռի չէ Խանի գեղ, որ ձորի մը մէջ 7—8 տունէ կը բաղկանայ։ Խանիէն կելնենք դժուարին ել մը, ուստի կերեւին ցիր եւ ցան գիւղօրայք· սարսափելի է այս ուղին, Տէրսիմի քրդերու որջ եւ ասպարէզ, ամէն քարի տակ ստուերներ կերեւան, եւ կը սարսռի անցորդի ոսկորը, զի այն ինչ կը քալես, գնտակի մը ձայն կելնէ, եւ ահա ինկած ես, կամ կողոպտեալ կամ դիակնացեալ։ Սակայն այս տարիներ մեծ տարբերութիւն կայ, զի հեռագիր, Թաթարի անցք, զօրաց անց ու դարձը եւ լաւագոյն հսկողութիւնք հետազհետէ անհետ կընեն այն չարերը ու չարիքը. արդէն նոր պողոտայ մի եւս Երզնկայէն յԱկն եւ ի Խարբերդ կը շինուի, որ ապահով կընէ երթեւեկն։

Այլեւս սպառած է Կամախը, անցած ենք Ակնայ սահմանը, կիջնանք Բաղըրսագ տէրէ-սին, աղեաց ձոր, որ կրնայ ըսուիլ մահու ձոր, եւ անկէ ելնելով զուարճալի ջաղացքներու եւ ջրերու մէջէն կը բարձրանանք ԽՈՍ-ՏԱՑ լեռն, լեռն բարձր, ցուրտ, քարոտ եւ ահոտ. սքանչելի է իր աղբիւրին ջուրը՝ անոյշ եւ սառն։ Արդէն քարի աշխարհի միջեւ ենք, թէպէտ 1—2 գեղի պէս չէներ կը տեսնենք, բայց ամենեւին քարերու մէջ ենք։

Ակն նկարագրուած է Թորոս Աղբօր Ա. մասին մէջ։

Մայիս 28 է. մենք պիտի մնանք միջոց մը այստեղ, իբրեւ Ակնայ Առաջնորդ։

## ԿԱՊԱՆ ՄԱՏԷՆ ԵՒ ԽԱՐԲԵՐԴ

Թորոս Աղբօր Ա. մասն Մալաթիայէն արեւմտեան գծով տարաւ զմեզ ի Խարբերդ, իսկ այժմ հիւսիսէն կ՚իջնանք։

Երզնկայի և Կամախի Եփրատը, որ այլ եւս Ակնցի է, կը տանի զմեզ Ակնէն, անցնելով Արաբկիրու Հայարնակ գեղերէն, որոց նկարագիրն եղած է, կը հանէ զմեզ ի Կապան-Մատէն, ուր մեր Եփրատը միացեր է արդէն Մշոյ կամ Բալուայ մեծ ճիւղին։ Այս այն ճիւղն է որ կը բղխի Բագրեւանդէն, մեծ մաս մի եւս՝ Բինկէօլէն, և ժողվելով Ալաշկերտի, Խնուսի, Մանազկերտի, Պուլանըխայ, Մշոյ, Կինճի, Ճապաղջուրի, և Բալուի լերանց ու

աւազանաց ջրերը , մէկալ ճիւղէն քանի մը պատիկ աւելի ճոխ և զօրաւոր կուգայ կը դրկէ իւր ջուրը ։ Այս ճիւղն է որ ի գիրս կ'անուանուի ԱՐԱԾԱՆԻ , այլ Մշոյ և միւս գաւառաց բնակիչներէն կը կոչուի ՄՈՒՐԱՏ , իսկ Բալուէն ազգին՝ Բալուայ գետ , որ այլ եւս. Կապան–Մատէնի առջեւ կը կորսնցունէ իր անունը , և միւս ջրոյն անուամբ Եփրատ կամ Ֆրատ կը յորջորջուի մինչեւ ի Ծոցն Պարսից , ուր կ'երթայ լիացնել Ովկիանոսի արգանդը ։

Կապան–Մատէնի առջեւ կոշտ նաւերով անցուդարձ կ'ընեն մարդն ու դրաստ դանդաղ և վտանգալից ։ Ժամանակի կորըստեան հետ , ապրանաց , անասնոց , երբեմըն ալ մարդոց կորուստ կը պատահին ։ Խորունկ է և ծաւալուն այս տեղի ջուրը . որքան պէտք կայ կամուրջի մը շինութեան . բայց որովհետեւ չոգենաւ բանեցնելու ալ խօսքեր կար ասկէ ջրին ընթացքին հետ . ուստի կը մնայ առանց կամուրջի . չոգենաւին շինուիլն ալ դիւրին չէ ։

Կապան–Մատէն շատ նշանաւոր եղած է իբր երսուն տարի յառաջ . մեծ կուսակալ կը նստէր հոն . որոյ ենթակայ էր Դէրսիմ . Խարբերդն և Տիգրանակերտն՝ իրենց գաւառներով . մեծ քանակութեամբ արծաթ կը հանուէր ասկէ , բովերը կը կենան և հետքերը կը տեսնուին . դեռ տասն տարի յառաջ կըպեղուէր . այս հանքերու առթիւ գործաւորաց ,

վարպետաց, առեւտրականաց, շահադի-
տաց կարի բազմութիւն մը կը բնակէր հոս
Յունաց, Հայոց, և Տաճկաց: Ակնայ Ապու-
շեխցի Արփիարեան Հայ ամիրայք՝ ամիր կամ
տեսուչ էին հանքերուն, և իրենց ազդե-
ցութիւնը շատ մեծ էր թէ բոլոր գաւառաց
մէջ և թէ նոյն իսկ կուսակալին և ամենայն
պաշտօնէից առջեւ, զանազան արտօնութիւն
վայելեր են եղեր Արփիարները Օսմ. վեհ.
կայսրերէն իրենց գործունէութեամբ և հա-
ւատարմութեամբ. ոչ ոք կայ այն երկիրներու
մէջ, որ չ'գիտնայ Արփիարենց անունն. ու-
նին աղանք իրենց ետեւէն թողած օրհնու-
թեան և բարութեան յիշատակները, ունին
սակայն և զիրենք անիծողներն: Իրենց տու-
նըն յԱպուշեխ խիստ ընդարձակ և հոյակապ,
այժմ բոլորովին տեղն անյայտ, հրկէզ եղած,
այլ ցարդ իսկ մոխիրներու մէջէն կը գտնուին
գնով նիւթերը: Ոսկին ու արծաթ, մարգա-
րիտն ու ադամանդ. ակերճանքն ու զարդ,
ծառայք և երիվարք համրանքով չեն եղած:
Անոնցմէ էր Մ. Գասպար ամիրայն, որ գը-
րեթէ վերջին փառքն եղաւ այդ տան. և որ
գտնուած է հռչակաւոր Օսման փաշային և
կայսերական բանակին հետ, որ Վանայ լե-
րանց ապստամբ Խան Մահմուտ և Խան Ափտա-
լը իրենց ցեղերով ձերբակալեց: Այս անձն
պետութեան և թէ ազգին օգտակար ծառա-
յութիւն ըրած է, ի վերջոյ նորէն Վանը
դարձեր, և հոն կը հանգչի, հոն է իւր գե-

բեգմանը։ Արփիարենց տոհմի մեծ ճիւղը կը ներկայացնէր Յարութիւն աղան, որ իր տունը փոխադրած էր Խարբերդու Մէզրէն. այժմ հանգուցեալ, թողած է որդիք, որոց աւագն է Նշան էֆէնտին, յառաջադէմ կառավարութեան պաշտօններու մէջ։ Կան այլ և այլ մանր ճիւղեր ալ ցրուած աստ և անդ, և մաս մը՝ Ապուչեխի մէջ, այլ սակայն հին Արփին չունին։

Կապան-Մատէնի այժմեան կերպարանքը կարի տխուր է, քաղաքի երեք մասէն աւելի աւերակաց կոյտ մ'է. Յոյնք երբէք չեն մնացած, որք թողած են հոյակապ և ոսկեզօծ եկեղեցի մը, իսկ Հայոց 100 տունք կը մնան, որք ունին Ս. Աստուածածին եկեղեցի մը շքեղ զարդերով, պատուական ընդարձակ շէնք մը, որ կը մնայ յաճախ առանց քահանայի. կար և մէկ եկեղեցի ամայի, վարժարան մը՝ առանց վարժապետի, Առաջնորդարան մը՝ որ կը ծառայէ հիւրերու։ Իրենց Առաջնորդն կը նստի ի Չմշկածագ. և Չմշկածագու գայմագամն կը նստէր ի Կապան-Մատէն։

Ծանօթ է արդէն թէ Կապան-Մատէնը Տաւրոսի կողն է, կամ Տէրսիմին ոտքը. մենք Երզնկայէն ելնելով՝ Կամախէն և Ակնէն մինչև աստ շարունակ այդ լերան շուրջը և երբեմն ալ թեւոց վրայ կուգայինք. այս ժայռեր և կապոյտ կողերը գրեթէ ամէն տեղ զիրենք կը մատնեն թէ առատ հանքեր ու-

նինք կապարի, արծաթի, պղնձի. ինչպէս
Ակնայ Ս. Փրկիչ վանուց առջեւ երբեմն բան-
ուած ու ձգուած պղնձի հանք. և այս տա-
րիները գտնուած ածուխի հանք, որ մօտ է
Ակնայ՝ Ջմշկածագու Վարդենի գեղին տակ,
Եփրատի եզերքը: Կապան-Մատէնի օդը ա-
ռողջարար չէ. ունի տեսակ տեսակ մրգե-
ղէններ, և բանջարեղինաց ու մրգեղինաց
մշակութիւնը յաջողակ է. առեւտուր, ար-
հեստք դադարեալ: Մարդն ու քաղաքը հո-
գեվարք էր: Նեղ, քարուտ. զառի վեր և
զառի վայր ճամբայ մը ունէր. սակայն այս
տարիները շինուեցան. ուղեւորն կը հանդի-
պի խաներու և գիւղերու, և ապա կը հաս-
նի Արփաւուտ գեղը. ուստի հաճոյական կ'ե-
րեւի դաշտն Խարբերդու, լի մեծամեծ գե-
ղերով, մշակեալ արտերով, վաստա'կաւոր
գեղացիներով: Կապան-Մատէնէն ի Խարբերդ
քաղաք կը տեւէ ութն ժամ: Խարբերդի գիւ-
ղօրայք կամ հովիտն եր'կու մասի բաժնուած
է, Ուլ-ովա և Գուզ-ովա: Մենք Մալաթիայէն
Սորսորու վանք էկած էինք Ուլովայի միջով.
իսկ այժմ կը հանդիպինք Ղուլէի-վանքին,
որ Գուզ-ովայի մէջ է: Ուլովայի գեղօրայք
աւելի արգասաւոր են և ծառազարդ և այ-
գեւէտ քան զԳուզ-ովային: Ուղղակի կ'իջ-
նանք Մէզրէն, որ քան տարիէն աւելի է
կառավարութեան կեդրոն եղած է ի դիւ-
րութիւն գեղացւոց, քաղաքէն ժամ մը հեռի:
Բուն քաղաքը կը գտնուի լեռան մը ծուն-

կին վրայ, բարձրադիր․ ուստի կը նայի ընդարձակ հովիտին․ օդն առողջարար, առեւտուրն յաջողակ, ունի հին բերդ մի, որոյ չէնքն ու պարիսպները դրուած են ապառաժի վրայ․ բայց այս պատճառ մը չէ որ Խարբերդը կոչուի Քար-բերդ, զի բազում ուրեք կը գտնուին այդպիսի բերդերը, որք սովորաբար կոչուած են կամ շինողին անուամբ, կամ գաւառին, աւանին անուամբ․ ինչպէս Վանայ բերդ, Կարսայ բերդ, Բաղուայ դերդ, Մուշեղկայ բերդ, Բա-բերդ, Վահկայ բերդ, և այլն։ Վերջին տարիներս մեր Լրագիրներ և Թղթակիցներ իբրեւ նոր գիւտ մը՝ փոխեցին Խարբերդի անունը և ցարդ կը գրեն Քարբերդ, ես հետաքրքիր եղայ և գտայ այդ քաղաքին կամ լեռան մօտ ու ստորոտն՝ դէպ ի Գուզ-ովան, քաղաքի մը դրից չափ ընդարձակ աւերակ մի շինութեանց, որոյ մէկ կտորը դեռ կ՚անուանուի ԽԱՐ, և որ այժմ գեղ է Թրքաբնակ․ այն տեղն է Ծառուկ անուն գեղ մը, Հարսկեն, Խոչիկ, Զախըղի մըրզայ, Էկոբ Մեզրէ և Քորփէ գեղերը, և իրենց մէջն ու շուրջը մեծամեծ շինութեանց աւերակներ, ու հիմերը կը տեսնուին։ Քորփեցիք կը պատմեն թէ իրենց գեղէն ներքնուղի մը կայ, որ բերդը կը հանէ, և Էկոբ մեզրէի մօտերը նոյնպէս ստորերկրեայ վիհեր բացուեր են երբեմն, որք յատկապէս կերտուած են եղեր։ Աւելի չեմ ուզեր երկարել տեսութիւնս, ասկէ պարզ

կ՚երեւի, որ Խար-քաղաքին կամ աւանին բերդն է Խարբերդ, և Խարի բնակիչք ի ժամանակի պատերազմաց կամ ապստամբութեանց կ՚ապաստանէին այս բերդը, և հոն կը փոխադրէին իրենց ընտանիք և կարասիքը. և վերջապէս Խարն ամբողջ փոխադրըւեր է ի բերդ, բնակութիւննին հաստատելով հոն. և չիներ են քաղաք, որ սակայն երբէք քաղաքի տեղ չէ իր բարձր և զառիվեր դիրքով:

Այս բացատրութիւնը ես հրատարակած եմ Արեւելեան Մամլոյ մէջ եւս, սակայն մեր գրագէտք տակաւին կը շարունակեն գրել Քարբերդ, փոխանակ Խար-բերդի, զարմանալի է: Խորին զգուշութիւն պէտք է մեր գրողներուն, երկիւղած լինելու է և պէտք չէ որ յանդգնին փոխել տեղերու անունները, զի կրնայ շատ անգամ մէկ բառ միայն մեծ լոյս մ՚ընծայել պատմութեան. մանաւանդ մեր հին մատենագրութեանց, յիշատակարանաց, և ժողովրդեան բերնի մէջ երբէք լսուած չէ Քար-բերդ, կամ ըստ ոմանց՝ Կար-բերդ, կ՚ուզէ Ինճիճեան լինի այսպէս կոչողն. կ՚ուզէ Գազանճեան, ոչ Կար-բերդ և ոչ Քար-բերդ, այլ ԽԱՐ-ԲԵՐԴ, և ահա ԽԱՐՆ, և ահա ԲԵՐԴՆ:

Խարբերդի շուկան և խանները բաւական ճոխ են. շէնքերու մէջ նշանաւոր են մզկիթներ, բաղնիքներ, Ասորւոց և Հայոց եկեղեցիք. և երեւելեաց տները. Ջուրը առատ

չէ, բայց ընտիր և բաւարար։ Բերդն իր հը- նութեամբ՝ դեռ ամուր է և չէն տեղեր շատ ունի, կ'ըսուէր թէ բեւեռագիր ունեցող քար մ'ալ կայ։ Փողոցները լայն և նեղ, եւ և էջ, տեղ տեղ մաքուր, բայց մեծաւ մասամբ անմաքուր. նոյնպէս են և բնակիչք, կենցաղ- նին, հագուստնին, խելքերնին հին և մթին, դժուարին է որոշել ուներորն և չուներորն. քաղաքակիրթն ու անկիրթն. բացի քանի մը ծանուցեալներէ։ Այդ տեղի Հայ ազգն որքան կրօնասէր և եկեղեցասէր, նոյնքան զարմանալի է տեսնել թէ՝ մասն մասն հերձ- եալ են, և չնչին խնդրոց համար եղած կան Բողոքական, Կաթոլիկ, Լատին. դարձեալ Հայ, բողոքականութենէ Լատին, լատինա- կանէ Կաթոլիկ, դարձեալ Հայ. Հայ՝ և վե- րստին Բողոքական. քաղաքացւոց շորշոփ դպած է նաեւ գեղայցւոց, որք մի և նոյնը կ'ընեն։ Լատինք ունին՝ Փաթէրաներ, Կա- թոլիկն ունի Գերապայծառ, Բողոքականք ունին Միսիոնարներ։ Այս վերջինները շատ են՝ և զօրաւոր։ Բաւական չքեղ են այդ այ- լակրօնից Առաջնորդարանք և Առաջնորդք. ունին եկեղեցիներ և վարժարանները, Կա- թոլիկաց ու Լատինացը՝ Մէզրէի մէջ. իսկ Միսիօնարաց՝ քաղաքի մէկ կողմը եւրոպական ճաշակով ընդարձակ և մեծածախ չէնքեր. Գօլէճ Արմենիան, զոր կը կառավարեն Մի- սիոնարք, ունի իր մէջը ոչ միայն բողոքա- կանաց, այլ և Հայոց մանուկներէն, աղջիկ-

ներ ալ կը դաստիարակեն, և վարժարանը գիշերօթիկ է և ցերեկեայ։

Ասորիք շարժում մը չունին դէպի կրթական յառաջադիմութիւն, թէպէտ հարուստ եկեղեցի մը կայ, որ հռչակաւոր ուխտատեղի է, և իրենց մէջն ալ ընչաւէտ մարդիկ կը գտնուին։ Ասոնք կը խօսին հայերէն։

Իսկ Հայոց վիճակը ողբալի էր արդարեւ։ Արդէն տեղացի բէկերէն ու կարդայողներէն՝ տգիտութեան թանկը ծանրացած էր Հայ ժողովրդեան վրայ, որուն սովորած էին տանիլ, և յոյս ունէին թէ բարեխնամ կառավարութեան շնորհիւ պիտի անհետին այդ բաները, ինչպէս արդարեւ բաւական տարբերութիւն եղած է ցայժմ. սակայն իրենց մտաւորական և հոգեւորական վիճակին անյոյս կը թուէին։ Տեղ մը՝ ուր այնքան օտարազգի վարպետ որսորդներ կը գտնուին, հարկ էր հոգեւոր ժիր մշակներ և ծաղկեալ վարժարաններ ունենայինք, կարգով կանոնով ժողովներ, հաւատարիմ և ուղղամիտ գործիչներ, վարդապետողներ։

Հայոց Առաջնորդութեանց մեծագոյն վիճակներէն մէկն է Խարբերդ, և սակայն իր հովիւներէն ոչ անձնադիր, ոչ դիւրիչ, ոչ ուղղիչ եղեր են, այլ կռուարարք, կեղեքիչք, ատեցողք սրբութեան, անհոգ լուսաւորութեան, անփոյթ կրթութեան. ոչ միայն չեն առաջնորդած, այլ գայթակղութեամբ լցուցած են այդ երկիրը։ Իրենց վարքը չինարար

չլինելով, եթէ երբէք խօսած ալ եղեր են բան մը, ազդեցութիւն չեն կրցած գործել. «Հան նախ զգերան յականէ քումմէ»։ Ի՞նչ շինութիւն կրնային ստանալ մի ծանօթ եպիսկոպոսէ, և անոր յաջորդող մի վարդապետէ, որք իրենց ուխտն առ Հայ, Սուրբ եկեղեցին, և անձնական առաքինութիւնը չկրցան պահել։ Դոքա երբեմն առաջնորդ էին Խարբերդի։

Աղ անհամեալք։

Ի՞նչ շինութիւն տեղացի վարդապետներէն, որք յաճախ և մէջ ընդ մէջ Առաջնորդ կամ Տեղապահ են եղած, և կամ վանահայր, բնակելով ի գիւղս և ի տունս և ցայսօր քարինք գայթակղութեան, մէջ գլորման եղած բոլոր ժողովրդեան և նախատինք Հայ կղերականութեան։

Ի՞նչ շինութիւն կրնային ստանալ մի այլ Առաջնորդ վարդապետէ, որ քահանայի մը մօրուք կ՚ածիլէր այնքան չնչին պատճառի մը համար, որ՝ քաղաքական ժողովոյ Ատենապետին աքացի զարնելով, հանդերձ հայհոյութեամբ, բարձր սանդուխէ մը ի վայր կը տապալէր թաւալգլոր. որ՝ Ս. վարդապետին հետ կռուելով՝ հայհոյալից, «Գնա... կանաչը ես կը կապեմ գլուխդ» կ՚ըսէր. որ՝ կառավարութեան մէջ և կուսակալին առջեւ Պ. վարդապետին հետ իրարու վրայ յարձակելով, միմեանց մօրուք եւայլն կ՚անարգէին հաւասար անպատկառութեամբ. որ՝ Սուր Բարթողն իր ձեռքին և խելքին

գործիք ըրած, կը դատապետէին փեսայն եւ հարսն, աղջիկն ու իր նշանածն։ Ծանրածանըր զեղծումներ կը գործուէին յանուն օրինաց. եւ բոլոր տգէտ ժողովուրդը ստութեամբ ու Ազգասիրութեամբ, շող-մող պատրանօք եւ սպառնալեօք իր ետեւը կը ձգէր։ Նա շուտով ալ եպիսկոպոս պիտի լինէր։

Յետ նորա այժմ Ծգնաւորեան Սրբազանն է Առաջնորդ, որ բաղդատմամբ իւր նախորդաց՝ արդարեւ ճգնաւոր կը սեպուի. բայց անփորձ եւ անպտուղ ոք է։

Ի՞նչ ընէ ժողովուրդը այսպիսեաց ետեւէն առաջնորդուելով, որոց ձեռքը լոյս չկայ, որոց հոտն անոյշ չգար։

Ծգնաւորեան Սրբազանի նախորդի օրումն էր մեր այցելութիւնը, զոր բազմեցուցած էին քաղաքին ամենէն անշնորհք թաղը, վարձեալ տան մը վերնայարկը։ Այդ Առաջնորդարանին մէջ ի զուր կարդացուեցան մեր տարած գրերը, եւ ի զո՜ւր՝ մեր խօսքեր։ Ոչ ոք էր որ լսէր, ոչ ոք որ հասկնար, ոչ ոք որ օրուան պահանջն զգար։

Կարի բորբոքեալ էր գլուխն, «Գինի նոր ի տիկ հին», եւ տիկն պատռեր էր։

Եթէ կային բանգէտներ, ծածկեր էին վրենք։

Մենք անձամբ սկսանք ոգնիլ վիճակագրութեան, եւ քահանաներէն ոմանք, ու Ծէֆէրեան Գէորգ էֆէնտին եւ այլք օգնեցին։

Քաղաքի եկեղեցեաց մէջ ամենէն պայծառն

է Ս. Յակոբ. եւ ապա՝ Ս. Կարապետ. իսկ Ս. Նշան եկեղեցին ի Սինամուտ Թաղ, գրեթէ ամայութեան կերպարանք ունէր։ Ս. Ստեփաննոս նոր էին նորոգեր ի հիմանց՝ ծանր գումարներ մսխելով, որ սակայն իր գմբէթով հանդերձ վերէն վար ճեղքուած էր, եւ գաղրեցունէին պիտի հոն ժամերգութիւն։ Այս եկեղեցւոյ բակը կը շինէին կարգ մը սենեակներ, որ կրնար վարժարանի կամ Առաջնորդարանի յարմարիլ։

Վարժարաններն այցելեցինք. եկեղեցեաց սրահները փոքրիներու մէջ նստած էին մանկունք. քանի մը երգ երգեցին սրտառուչ, որ կարծես ծանր բողոք մ'էր իրենց ծնողաց դէմ, քաղաքացւոց և ժողովականաց դէմ։

Խեղճ ու լքեալ մանկունք, իրենց տան քունջ ու պուճախէն հանուած գիրքեր մը կը գործածէին իբրև ընթերցարան. եւ ընթերցողքն էին 7-8 տարեկան փոքրեր. Թաթն ու ֆալախան ամէն վարժարանաց մէջ կար, և Թաթի մը վրայ սոյն բարոյականը արձանագրուած,

«Գանք և կշտամբանք վարուց ուղղութեան, կարգեալ ի խրատ բարուց մանկութեան»։

Հասկցա՞ք, ո՜ մանկավարժք և դաստիարակք, բան սորվեցէք «Մանկանց վարուց և բարուց ի խրատ»....։ Ս. Յակոբ եկեղեցւոյ բակը, նեղ սենեկի մը մէջ ցոյց տուին մեզ 14 հատ մատղաշ աղջիկներ, եւ մի հասակաւոր՝ նոյն սէուէն, որ կը կոչուէր Վարժուհի, տարեկան 400 ղրուշով վարձեալ։ Այս Թա-

ղի Հայք կարող անձինք են , և իրենց մօտ աչքի առջեւն է Մխիթարայց երկսեռ կըրթարանն , և անոնց ժողովարանն , բաւական ալ տրամադիր կը տեսնայի զիրենք լուսաւորութեան և յառաջադիմութեան . բայց , վարդապետ և վարժապետ չկայ , կ'ըսէին . վարժապետք ես՝ դրամ տուող չկայ , կը պատասխանէին . երկու կողմանց ըսածն ալ ճըշմարիտ էին , բայց ամուլ և անպէտ ճշմարտութիւն :

Ա . Նշանի բակի վարժարանը անկախ էր , հոն վարժապետ մը ունէր իր առջեւ ծնրակապ նստեցուցած 25 ի չափ մանուկներ փոշէթաթախ , և ինքն հեռեւող էր Արիստոտէլի , ճեմելով դաս կուտար : Մանուկ՝ մէյ մը գրքին վրայ , մէյ մը վարժապետին վրայ արագ արագ աչք կը տնկէր , կրկնելով անոր ըսածը մեքենաբար , և երբեմն անձին , մշտելով ընկեր զընկեր , և հեգնութեան ցոյցեր ընելով վարժապետի ետեւէն . և ահա փայլակի պէս կը դառնար կը տեսնար վարժապետ , և կայծակի ուժով ձեռքի փայտը կ'իջեցնէր զարնելով խորտակելով անխտիր թեւը , թիկունք , ճիտ , քիթը , մէջքը , գլուխը , աչքը , բերանը : Անշուշտ շատ մեծ պատիւ կը գտնէր երեկոյ այն ջախջախեալ մանկանց ծընողաց առջեւ , որ կը կրթէր իրենց տղան : Այս վարժապետը՝ ամէն մէկ տղայէն շաբաթը տասն փարայ կ'առնար , եւ այս էր իւր թոշակն . սակայն այդ մատաղները երգեցին

մի երգ մելամաղձոտ եղանակաւ. այն էր

«Ափսոս քեզ Հայոց խեղճիկ ժողովուրդ,
Ցիրուցան եղած անտեղ, անխորհուրդ,
Հարիւր ու հազար ցաւի դիմացաք,
Ձեր քաղցրիկ երկրէն դուրս-ոտ չդրաք,
Հիմի ձեր հօր մօր դերեզման թողաք,
Տներն ու ժամերը ուրիշի տուաք....:»

Մանկունք, հերիք, կը խորտակէք սիրտս
... մանկունք այրիք....:

Սմբատեան Ընկ. վարժարանն առանձին շէնքի մէջ էր. այցելեցի, տեսայ ընկերութիւնը, տեսայ կանոնները, տեսայ վարժապետներ, վարժարանի գրասեղաններ, և սրահի պատկերներ. հարկ չկայ ըսելու թէ միակ բարեկարգ և յուսալից վարժարան պիտի լինէր, որուն շատ ալ հոգ տարած էր ընկերութիւնն. բայց այդ օրերը ինկած էր. աշակերտաց երգեր լսեցի, իրենց կարգերը տեսայ, ուսմանց ցանկն ընթերցայ, և ուսուցչաց բացատրութիւնը լսեցի: Կ'արժէր որ այդ մեծ գաւառը ոյժ ընծայէր այս միակ յարկին, որ կրնար մրցիլ Միսիօնարաց ջանքին դէմ, այլ աւաղ մարելու վըրայ եղած կանթեղի մը կը նմանէր: Մեր դիտողութիւնք եւ քաջալերութիւնք թողինք իրենց:

Խարբերդցւոց հագուստի եւ կահուց նիւթերը գրեթէ բոլորովին տեղական է. մանաւանդ երկրագործներունը. կտաւն, կապոյտն, մանիսայն, եազման, կօշիկն, եւայլն.

թէ՛ քաղաքը եւ թէ՛ գեղերը արուեստաւորներ շատ կան. երկաթագործ, հիւսն, կաշէգործ, ոստայնանկք, իրենց մանրամասնութեամբ: Հայոց ձեռքով բացուած էր գործարան մը ի քաղաք. գործարան մը ի Մէգրէ, Հայ գործաւորք եւ Հայ վարպետք կը հանէին Շամի եւ Հալէպի ապրանաց տեսակներ բամբակէ եւ կերպասէ: Քաղաքի եւ Խոյլու գեղի մէջ մեծ քանակութեամբ գոմէշի եւ եզան կաշիներ կը տաբաղին: Բարտաշութիւն, որմնադրութիւն, բրուտութիւնն ալ անուանի է:

Այս գեղեցիկ եւ ծաղկեալ աշխարհ, իւր ժողովրդեան քրտնաջան աշխատութեամբ արգաւանդ է. ոչ միայն հացի բերքերով այլ զանազան հունտերու մշակութեամբ. որոց համար ջանացի քիչ մը ընդարձակ տեղեկագրել, գաղափարելով՝ որքան կարելի էր հաւաստի աղբիւրներէ:

Ափիոն, որ դեռ երեք տարի էր սկսած էին, եւ այժմ աւելի յառաջ տարան, տարին 10,000 ոսկւոյ: Խօզայ եւ Թեղ աբրշում. 1,000 ոսկւոյ: Մորթ այծու եւ ոչխարի՝ 2,000 ոսկւոյ: Մուշտակցու աղուէս, կուզ, գայլ, նապաստակ՝ 5,000 ոսկւոյ: Կթուն՝ նուշ եւ մէհլէպ՝ 2,000 ոսկւոյ: Մեղրամոմ՝ 250 ոսկւոյ: Ասոնք Թուրքիայէն դուրս կամ Եւրոպա կը տարուին. իսկ Թուրքիոյ զանազան գաւառները կը ղրկէ Բամբակ եւ կտաւ՝ 30,000 ոսկւոյ, Գինի՝ 500 ոսկւոյ, այնինչ

1,800,000 քաշ գինի կ'ելնէ, զոր ամբող-ջովին տեղացիք կը ծծեն. Մորթ դաբա-ղած, այծու և ոչխարի, 2,000 ոսկւոյ. Շուշ-մայի, կտաւատի, կենէ կէրչէի իւղ, 1,000 ոսկւոյ։ Իսկ Իփէկլի և Թիրէլի կէզի և մա-նիսա, խէժ, գարի և ցորեն, եւն. 4,000 ոսկւոյ։

Առնցմէ զատ գաւառին մէջ կը մխուին, ցորեն 1,200,000 Պօլսոյ քիլօկրամ. միւս բերքերն են գարի, եգիպտացորեն, գըլգըլ, բրինձ, սիսեռ, լուբիա, բակլայ և զանազան բանջարեղէնք և միրգեր։ Ընտանի կենդան-եաց հօտք և ջոկք նուազ են, զի արօտա-վայրեր քիչ են, երկիրը բազմաբնակ և մշակ-եալ լինելուն համար. սովորաբար Ալաշկեր-տի, Կարնոյ և Մշոյ կողմերէն կը գնեն եզն, գոմէշ, խաշինք, իբր 5,000 ոսկւոյ։ Կաշի (չը բանուած), գոմէշի և եզան՝ 4,000 ոսկւոյ։ Տիգրանակերտէն, Հալէպէն, Այնթապէն զա-նազան պէտքեր, և մօտակայ գաւառներէն ալ՝ իբր 30,000 ոսկւոյ։ Ջուխայ, Ամէրի-գան, Սուրճ, Շաքար, Կազ, Կլայեկ, Լե-ղակ, Գըրմըզ, Մանած, Պղինձ, Երկաթ, Քէօսէլէ, եւայլն. Եւրոպայի ապրանք՝ իբր 200,000 ոսկւոյ։

Աւելի մանրամասնութիւնք կը թողունք։ Հողերն մեծաւ մասամբ Բէկերու սեպհակա-նութիւն էին և թափուն իրենց վրայ ըրած քիչ բացառութեամբ։ Գեղացիք առ հասա-րակ Մարաբայ էին, բայց հողատուրք մա-

լաքաներ կը տային տէրութեան ։ Կային Մեզրէ բնակեալ Ակնցի Հայք և քաղաքէն ոմանք , որ բաւական հողերու տէր էին եղած , և մաւրաքայ ունէին ։ Խարբերդի բէկեր կամ հողատէրեր կատարեալ աւատներ են , և հին օճախլեր ու վուճուհլեր են , իրենց երկրագործներն ալ կատարեալ ստրուկներ , այնքան ստրկացած էին որ չէին գիտեր թէ իրաւունք ունէ՞ն կամ կարո՞ղ էին ձայն ունենալ բողոքելու իրենց բէկերուն կամ տէրերուն լլկմանց , և զրկմանց դէմ , զորս իբրև սովորութիւն և տիրական իրաւունք ի գործ կը դնէին գեղացւոց և անոնց ընտանեաց ու զաւակաց վրայ ։ Աննըկարագրելի են և անասելի մեր իմացածները , սակայն նուազած են հետզհետէ և կը նուազին բարեխնամ կառավարութեան շնորհիւ ։ Ցաւալի էր տեսնել թէ այդ եղեռնագործ և սրբապիղծ անձանց առջևէն ու ետևը Հայեր ալ կը գտնուէին , իբրև գործիք և իբրև ընկեր ։

Խարբերդու գեղերը տեղ տեղ ական բանալով (քէհրիզ) ջրեր հաներ են , որոց նմանն Վանայ և Սալմաստի կողմն ալ կ'ընեն , թէպէտ տեղ տեղ ալ ինքնահոս առուներ կան ։ ՍԵՒ ԳԵՏԱԿ կանչեն Ուլ-ովայէն , և ԱՐԾՈՒՐԱԿ գետակը՝ Գուզովայէն , որ կ'ոռոգեն արտորայք , կը դարձունեն աղօրիք , և յարմարութիւն ունին գործարաններ բանեցնելու ։

Ցորենոյ, գինւոյ առատութեան երկիր է Խարբերդ իւր գաւառներով: Քաղաքի հօ-ղերը, և գրեթէ ամենայն գեղերը և մեծա-մասամբ Ուլ-ովան այգիներով լի են, բայց շատ չեն գիտեր հանել. այդչափ անչափ և պատուական գինին գրեթէ բնակիչներու մէջ կը սպառի, անոնչան է մերձակայ այլևայլ գա-ւառները ղրկուածն վաճառուածն: Դիւրին է գուշակել թէ արբեցողներ բազմաթիւ են, և իւր հետեւանքները շատ, մանաւանդ ձմեռ-ուան պարապ օրերու մէջ: Կռիւներ թշնա-մանքներ, և անվայել վարմունքներ՝ թէ ի խօսս և թէ ի գործս կը վարեն զիրենք յաճախ ի դատ, և տուգանաց կ'ենթարկեն: Նոյնպէս այս երկրի Ազգային և դատական ընդհանուր խնդիրներ են յիշեալները, և աղջիկ ու կին յափշտակելու, առևանգե-լու, հասի չհասի, և այլ զբաղումներ, որոց երեսէն շատ ալ դրամ կը մսխեն: Առած մը ունին թէ՝ Աստուած Խարբերդցին ստեղծած ատեն հարցուցեր է. Ի՞նչ բանով գոհ կը լի-նիք երկրի վրայ, ի՞նչ կ'ուզէք որ տամ ձեզ: Պատասխանած են. — Հաց, գինի, կին: Արդարեւ կարծես այս երեք բառերէն զատ իրենց համար հոգ կամ փափաք չկայ. բայց կենաց այդ երեք պայմաններն ալ չարաչար կը վայելեն, ոչ իբրեւ Աստուծոյ օրհնութիւն այլ պատիժ: Մարդ կրնայ ըսել թէ՝ երիկ մարդերէն աւելի՝ կանայք և աղջկունք կարի աշխատասէր են, սփռուած դաշտին և այ-

գիներու մէջ արեւակէզ կը տքնին մշակութեամբ, խտիր չկայ մատղաշին և տարեւորին, գեղեցկին և անգեղին, և իրենց սովորութիւնն է երեսնին պատատել նոյն իսկ դաշտին մէջը․ և կոշտ ու անվայելուչ հագուիլ նոյն իսկ տներու մէջը․ այսպէսով հանդերձ կը վտանգուի յաճախ իրենց համեստութիւնը բէկերէ, աղաներէ, և սրիկաներէ ։ Գինիի չարիք խօսեցանք արդէն, և որ բաժին է նա յիշեալ երեք դասերուն ։ Իսկ ցորենոյ համար, որ այսքան առատ է, կան գեղեր որ կարօտը կը քաշեն, և թէ աւելցած են՝ հետեւեալ տարին չ'ապրիր ։ Բամբակն և միւս հունտերը կրնան աղնուանալ, բովանդակ երկրագործութիւնը քիչ մը դիւրացնելու կերպեր եթէ գործադրուին, այս գաւառը արագապէս չափազանց կը հարստանայ ։

Մտածեր և գործադրել ձեռնարկած էին Ծովքէն — մեր Թորոս աղբօր Լիճքէն, — վտակ մը բանալ ջուր հոսեցնելու Ուլ-ովան, որ շատ դիւրին և շատ օգտակար կը լինէր, բաւական ալ աշխատուեր էր, հորեր և ականներ բացուած էին պատերազմէն առաջ, բայց խափանեալ կը մնային ։ Եփրատն ամենամեծ օգուտներ կրնայ ընծայել գաւառիս, որոյ ետեւէն առջեւէն ծովածաւալ կ'ընթանայ, և իւր այժմեան վիճակով ոչ միայն անպէտ կ'անցնի, այլ ծանր վտանգներ և վնասներ ալ կը գործէ ։

Մշոյ, Վանայ կամ այլ գաւառաց նման բազմաթիւ պանդուխտներ չհաներ երկրէն՝ խարբերդն, թէպէտ կ'երեւնան Թիֆլիզի և Կ. Պոլսոյ մէջ ցանցառ, բայց մեծաւ մասամբ Ատանայի կողմն կ'երթան ի գարնան բամբակի և այլ մշակութեան կ'աշխատին, և աշունը կը վերադառնան։ Մարդկային ծննդոց աճումն կանոնաւոր է, ծեր և ալեւոր մարդ շատ կան. առոյգ, պնդակազմ, և առողջ են. հիւանդութիւնք թեթեւ, ժանտամահ չկայ, հազիւ բժշկաց հետ ծանօթութիւն ու յարաբերութիւն ունին. անշուշտ իրենց քրտնավաստակ կենաց արդիւնքն է և կլիմայի շնորհքը. բայց եթէ մաքրութեան և քիչ մը առողջապահութեան զգուշութիւն գիտնան, ա՛լ աւելի բարեբաստիկ պիտի ապրին։

Երկիրը մեծաւ մասամբ դաշտային է. բայց իւր զանազան դիրքերն ալ ունի, ուստի և ըստ տեղւոյն տարբեր է կլիմայն։ Տեղ կայ որ ձմեռն մշուշապատ է, սառնամանիք կ'ընէ, եւ ամառն՝ տօթագին։

Քաղաքէն քիչ մը վեր քարադագաթ մը կը ցուցնեն, զոր բուզլուխ կ'ըսեն, այդ քարին տակ գտնուած այրը խիստ զով է յամարան՝ և ջերմ ի ձմերան, ջրեր կը կաթին քարերէն և սառն կը կտրին. տապ օրերու մէջ այս սառոյցը կը գործածեն, և զուարճութեան համար քարայրը կ'երթան ուտել և ըմպել։ Այդ տեղը կը գտնուի նաեւ

Ասորւոց վանք մը, որ անուանի ուխտատեղի է, ուր հեռուստ կը դիմեն Ասորիք եւ քաղաքիս ու շրջակայից Հայք եւս կը յաճախեն։

ԽՕԹՆԱԿՆ՝ քաղաքի եւ Հիւսէյնիկ գեղի միջոցն է, ձոր մը՝ որոյ մէկ կողմի լերկ քարերէն եւ պատռուածքներէն ջրեր կը վիժեն իբր եօթն ճիւղ, հովոց եւ շուք տեղ մի է, աւազաններ շինած են, ուր զուարճանալու կ'երթան։

Հիւսէյնիկ գեղը ամենէն մերձ է քաղաքին, բազմահայ, մեծաւ մասամբ արուեստաւոր են բնակիչք, դրեթէ երկրորդ քաղաք մի է։ Նոյնքան եւ աւելի ծաղկեալ է Գազրիկ (քէսիրիկ) գեղ եւ այլ քանի մը գեղերը։ Մէզրէն, որ եւ կը կոչուի՝ ՄԱՄՈՒՐԱԹ-ՈՒԼ-ԱԶԻԶ, ուր կը նստի կառավարութիւն, եւ ուր այսքան տարիէ ի վեր թէ պաշտօնատուններ եւ թէ հարուստ եկւորներու տուներ շինուած են, որոց մեծ մասն Ակնցի Հայեր են, խան եւ խանութ բացուած են, այլ դեռ չկրնար ըսել թէ Եւ քաղաք եմ։ Դեռ գիւղ է արդարեւ։ Բուն քաղաքը նախանձելի ջանքեր ըրեր է ու կ'ընէ որ կառավարութիւնը իր մէջ փոխադրէ, սակայն չի յաջողիր, ընդհակառակն անխնամ ձրգուած է. ոչ պահակ, ոչ ոստիկան, ոչ դատական եւ առեւտրական ատեան, եւ ոչ եւ այլն. որոց պակասութեան համար մեծապէս կը բողոքէին քաղաքացիք. դէպքեր ալ

յաճախ տեղի կունենային . արդարեւ կ'արժէր ապահովութեան եւ խաղաղութեան համար բան մը ընել այդ քաղաքին , ուր այնքան ապրանքներ եւ ապրողներ կը գըտնուէին ։

Խարբերդը հետզհետէ իւր դիրքով կարեւորութիւն ստացաւ , եւ միւթէսարրիֆութենէ վիլայէթի վերածուեցաւ ։ Գտնուելով Տէրսիմին եւ իւր գաւառաց մօտ , կամ աւելի լաւ է ասել , ի մէջ Տաւրոսի լերանց , ունի յարաբերութիւն այդ լեռնագօտիններու եւ լեռնամիջեայ բնակչաց հետ , կը համարուի կեդրոնավայր . ուստի կրնայ քաղաքակրթութիւն սփռուիլ յիշեալ երկիրները . ուր արդէն յառաջ բանակատեղի է եղեր , ինչպէս կը կենան դեռ մեծամեծ չէն եւ աւերակ զօրանոցներ , եւ այս տարիներ ալ կը խմբուին հոն ի հարկին զօրաց բազմութիւն ։ Թէպէտ Տէրսիմին մէջը , ի Խոզաթ , նոր վիլայէթ մը կազմուեցաւ եւ Խարբերդի ինչպէս նաեւ Երզնկայի քանի մը գաւառներ անոր ենթարկուեցան , բայց մեծ գործողութիւնները կ'ընէ Խարբերդ ։ Բաղդատի ճանապարհին ալ իբրեւ պորտ կը նկատուի Խարբերդ . հոս կը միանան եւ կը բաժնուին Տրապիզոնի ու կարնոյ ճանապարհը , Սամսոնի եւ Սեւազի ճանապարհ , որոց մեծ մասն կառուղի շինուած է , եւ մնացեալն ալ յառաջ կը տարուի փութով , եւ արդէն մինչ ի Տիգրանակերտ շինուած է ճանապարհ ։

Խարբերդ հեռի է ցամաքային ճանապարհով՝ Իւսկիւտարէն կամ Պօլիսէն 260 ժամ. Սեւաստէն 60 ժամ. Մալաթիայէն 18 ժամ. Կիրասոնէն 60 ժամ (Շ. Գարահիսարով և Ակնայ վրայով). Կարինէն 60 ժամ (Երզնկայով, բայց 30 ժամ է Տէրսիմի մէջով). Խաքէնաէրունէն, որ Հալէպու նաւահանգիստն է, 80 ժամ. Մուշէն 26 ժամ. Տիգրանակերտէն 25 ժամ. Բաղդատէն 240 ժամ։ Ժամերը բեռնակիր գրաստի ընթացքով հաշուեալ են։ Իսկ Բալու, Չարսանճագ, Չմշկածակ, Ակն, Արաբկիր, Կապան մատէն, Արղընու մատէն Խարբերդի չուրջն են եւ միշտ անմիջական յարաբերութեանց մէջ իրեն հետ իբրեւ իւր մերձակայ գաւառներ։

Վանքեր։ Ի Խարբերդ չորս վանք կար Հայոցս, երեքն Ուլովայի մէջ են, և կը կոչուին իրենց մերձակայ գեղերու անունով։

Ս. ՍՈՐՍՈՐՈՅ ՎԱՆՔ, Սորսորի գեղին մօտն է, Մէզրէէն մէկ ժամ հեռի, տասնի չափ գեղացւոց տներ կից շինուած են վանքի պարսպին, և տանիքները՝ վանքի տանիքին, մեծ տգեղութիւն և անչքութիւն է այս՝ վանքին համար, որոյ մէջ նստողներն են վանքին մարաւներ իրենց ընտանեօք և անասնովք։ Վանքին սենեակները ապականութեամբ լի էին և աւեր դարձած. միայն երկու մեծ սենեակ կար վերնայարկ, չէնքն ամբողջ հողաղիւսէ են։ Տաճարը՝ Ս. Գէորգի անուամբ է, փոքր, անշուք, մթին, խրթին, խոնաւ,

նկուղի մը կը նմանի. եթէ չցուցնեն և չը-պեն քեզ, կարելի չէ գտնալ դուռը, և ոչ հաւատալ թէ Ս. Տաճարն է այդ: Միարան, ժամասաց ոչ ոք կայ, ոչ աղօթող, ոչ խունկ, ոչ կանթեղ, ոչ պատարագ, ոչինչ վերջապէս: Այս վանքս իբր թէ Սարգիս և Պետրոս վարդապետաց նախապապ քահանայ մը հիմնած լինելով, ատոնց ցեղին սեպհականութեան պէս համարուած է, և վանքին արդիւնքները երբեմն միութեամբ, երբեմն փոփոխակի, երբեմն զիրար յաղթահարելով՝ կը տիրեն. իսկ եթէ իրենցմէ զօրաւոր Առաջնորդ մը գտնուի, նա կը տիրէ, երբեմն ալ աշխարհականաց՝ բաժին աւարի կուտան: Վանքին զբաղմունքն է երկրագործութիւն մարաբաներու ձեռքով. անասուն երբէք չունի: 81 հատ ընտիր արտեր ունէր, ջուրն առատ, թափու եղած չէին հողերը: Վանքի պարըսպին մէկ կուշտն էր մեծ այգի և պտղատու ծառեր, ունէր նաեւ քանի մը հազար հատ բարդի ծառեր, որ հետզհետէ կտրելով ու աճեցնելով լաւ շահ կը բերէր: Վանքին հասոյթն էր՝ իր արտերէն հարիւր քիլէ ցորեն, (1 քիլէն 56 հօխա է). իսկ թեմական գեղերէն՝ 24 քիլէ ցորեն ու գարի, և 2000 ղրուշի բամբակ կամ բամբակի գին, իբրեւ պտղի: Վանքն ունէր եկեղեցական ընտիր զգեստներ և անօթներ, որ կը պահուէին ի Մէգրէ Պետրոս Վ. ի տունը. և մաս մը՝ ի քաղաք:

Վանքիս պարսպի դրսի մեծ դրան ճակա-

տին դրուած քարի մը վրայի արձանագրութիւնն է. «․․․ Ամին անեղին Աստուծոյ և անմահին շինեցաւ դուռս ի Թվին Ջ. Կ. Ա. ի Փառիշահութեան Շահ Աբբասին, ի Հայրապետութեան Տէր Յվս. ով. կարդաք, Աստուած ողորմի ասացէք աշխատողաց»։

Բ. ԴԱՏԽՄՈՒ ՎԱՆՔ. Դատեմ գեղին մօտ, չքեղ և կամարակապ գմբէթաւոր քարաշէն տաճար մի ունի Ս. Աստուածածնի անունով, կ'աւանդեն թէ ի ձեռն Ս. Թադէոսի Առաքելոյն հիմնեալ, շէնքը հին՝ բայց անեղծ մնացած է։ Իսկ խուցեր և բոլոր միւս շէնքերն աւեր, կործանեալ, ապականութիւն տիրած էր ամէն կողմն, ոչ եկեղեցական կար և ոչ տիրացու. վանահայրն էր պառաւ տնտես մը, և տուն մը Հայ մարաբայ։ Թուրք մարաբաներ ալ կային, որոց կանայք և մանկտին լեցուեր էին վանքը. բայց բուն պահապանքն էին քանի մը խոշոր գամբռեր։ Ընտիր այգիներ և պտղատու ծառեր կան վանքին շուրջը. ունէր 150 քիլէ սերմամուտ արտեր՝ վանքին հողը, 60 քիլէի սերմամուտ արտեր՝ Դատեմ գեղին հողը, 15 քիլէ սերմամուտ արտեր՝ Խոյլու գեղին հողը. ամէնն ալ մարաբայի տրուած, և թափու եղած չէին։ Այս արտերէն կ'ստանայ վանքն տարին 100 քիլէ ցորեն, 50 քիլէ գարի, 100 հօխա բամբակ։ Խնն գեղ թէմ ունէր, որոցմէ կ'ստանար պտղի։ Այս հասոյթները Առաջնորդարանին յատկացեալ էին։

Գ. ԶԱՐԴԱՐԻՋԻ ՎԱՆՔ. Մօտ Զարդարիջ գեղին և Իչմաին, ուստի կը բղխի առատ ջուր։ Այս վանքը իւր պարիսպներով, խցերով և տաճարով աւերակ էր բոլորովին. Թէպէտ ունէր իր վանահայրն կարապետ վարդապետ անունով, որ կը նստէր գեղը, և կը կուտէր ու կուտէր հասոյթները։ Արտերէն շատը գեղացիք և դրացիք տիրեր էին. ունէր պարտէզներ, այգի և ծառեր, և թէմ՝ 24 գեղ։ Արդեանց որքանութիւնը չկրցի իմանալ. այս վանքն ու վանահայրը Առաջնորդարանի տընօրէնութեան ներքեւ էր։ Սուրբ տաճարն էր Ս. Աբդլմսեհի անունով.

Դ. ՂՈՒԼԷՅԻ ՎԱՆՔ. Ղուլէ գեղին մօտ. Գուզովայի մէջ, և Մէզրէէն ու քաղաքէն $1\frac{1}{2}$ ժամ հեռի։ Նայելով միւս վանքերուն՝ այս վանքը քիչ մը կը նմանէր վանքի։ Տաճարը՝ Ս. Գէորգի անուամբ. և 14 կտոր սենեակներ ունի, հին և նոր, բաւական կոկիկ։ Վանքին շրջապատները կային ծառեր և պարտէզ։ 60 քիլէ սերմամուտ արտեր ունի, զորս կը մշակէ մարաբաներով, կը պահէ կովեր և խաշինք։ Իբր թէ ֆէրման ունենալով՝ թափու ըրած չէին հողեր։ Արտերէն կ՚առանար 60 քիլէ ցորեն և գարի. 60 քիլէ ալ պտղի. թեմական գեղերն են 16։ Վանահայրն էր անուանի Գէորգ Վ. Ծերունի, խորագէտ, հնարագէտ, բազմափորձ կամ փորձանք անձըն, որ վախճանեցաւ անցեալ ձմեռն։ Իր եղբայր Տէր Թերովբէ քահանայն յաջորդած

է իրեն, որ կը բնակէր վանքին մէջ իր՝ ընտանեօք և որդւովք։ Այս վանքը պատմութեանց մէջ կոչուած է Մովսիսավանք. Մըշոյ Առաքելոց վանքի Ս. Թարգմանչաց մահարձաններու նման բարձր խաչաքարեր ունի գերեզմանատան մէջ, որոց ոմանց վրայ արձանագրութիւնք և թուականք կան, զորս օրինակած եմ յիշատակարանաց կարգին։ Նոյնպէս՝ Ս. տաճարիս նորոգութեան ժամանակ՝ 1839 թուականին, տուփով մը մասունք և փոքրիկ շիշով մը Ս. Միւռոն գըտնուած էր Ն. Շնորհալւոյ կնքով զմռսած և մագաղաթի վրայ վկայագիր, Հեթում թագաւորի կնքով, Ո. Հ. Ն. Թվ. մի այլ մագաղաթ՝ երեք եպիսկոպոսաց կնքով, որոյ մանրամասնութիւն հրատարակած եմ Արեւ. Մամլոյ 1884 մարտ ամսաթուով, եւ յիշատակարանաց կարգին պիտի յիշենք։ Կորսըւած էին այս բաները, մեք աղերս եւ սպառնալիք ի գործ դնելով, հազիւ գտնուեցան քանի մը բարեսէր անձանց ջանից շնորհիւ, որք էին Տեարք, Գէորգ Ծափէրեան, Մ. Սեդրաք Միսաքեան, եւ Առաքել Թիքինճեան։ Մեծաւ փափաքանօք կուզէի տեսնել այդ ցանկալի սրբութիւններ եւ համբուրել. պատասխանեցին,—Վաղ առաւօտ։ Եւ առաւօտ բերին փայտէ տուփ մը բաց, որոյ մէջ մասունքներ կային, եւ երկու կտոր մոմշոր՝ վրան դրոշմուած կարմիր մոմով կնիքներ Հեթում թագաւորին։ Մէկն պարապ էր,

*իսկ ՚միւս մոմշորի մէջէն պատառ մի հնագոյն թղթոյ եւ վրան խոշոր տառերով գրուած ։ (Օրինակն տես ի յիշատակարանաց կարգին) ։ Պարապ մոմշորն ծրար էր այն մագաղաթին, որոյ վերայ գրուած էր վկայականն կամ վաւերականն Ս. Միւռոնի շիշին, եւ որ շիշին հետ կորսուած էր ։ — Ո՞ւր է մագաղաթն եւ շիշ ։ Պատասխան չեն տար ։ Գէորգ Վ. ի փորին գալարը կը բռնէ, կը դեղնի, եղբայրն ու եղբօրորդիք շփոթ մը ունին, երկիւղի մէջ են, կերթան կուգան, իրարու կը փըսփըսան, եւ վերջապէս կ՚ըսեն — Կորսուած է շիշն եւ մագաղաթ ։ Կայծակ զարկաւ ըղեղիս, եւ նետ մը՝ սրտիս . . . ։ Իբր թէ վեց ամսէ ի վեր կորսուած են եղեր ու վարդապետին չեն յայտնած ։ — Ո՞ւր կը պահէիք, ըսի ։ Տարան զիս վարդապետի սենեակ, ուր պատի դարակի մը մէջ դրուած էին վարդապետին քթախոտի թէնէքէ կլոր երկար տուփեր, գաւաթօզներ, — Ահա ասոնց մէջ եւ այս տեղ դրուած էին. կ'ըսեն ։ — Ո՞վ կը մտնէ այս սենեակը, — Ոչ ոք բաց ի վարդապետէն եւ մեզմէ, դուռն ալ միշտ կըղպուած է ։ — Ուրեմն կորուստ չկայ, կ՚ըսեմ. կամ կը ծածկէք, կասկածելով որ մի' գուցէ հետս տանիմ. կամ վաճառեր էք բողոքականաց կամ կաթոլիկաց (*) ։*

(*) Զի աղոնցմէ ոմանք ցեղէ ցեղ, տնէ տուն, և վանքեր ու եկեղեցիներ կը շրջին ձեռագիր մատեանք, կամ որ և իցէ հնութիւնք կը գնեն. ու կը ղրկեն ձեռքէ ձեռք մինչեւ Լոնտրա և այլ ուրեք՝ իրենց շահուն համար. այսպիսով բաւական ուարներ տարեր են զաւառներէն ։

Կ'ուրանան եւ չքմեղ կը ձեւանան վարդապետեանք. կառավարութեան յանձնել կ'ըսպառնամ զիրենք։ Յիշեալ երեք ընկերներս կ'երաշխաւորեն։ Ես Զարսանճաքն էի, գրած էին թէ գտնուեցան, եւ Տիգրանակերտէն վերադարձիս տեսայ եւ համբուրեցի շիշն, որոյ մէջ թանձրանալով Ս. իւղն՝ կիսոյ չափ մնացեր էր— և շիշին ձեւն ու չափը, կնիքներն, մագաղաթն օրինակեցի։ Մեր տէրտէրի տղայք ծախած էին, եւ ետ առած։ Ո՞րքան համոզեցի որ կամ Ս. Էջմիածին, կամ ի Ս. Երուսաղէմ, կամ Պօլսոյ Ս. Փրկիչը ղրկէր պահպանուելու համար. բայց անհնար էր ծերունւոյ յամառութեանը յաղթել։ Վախնամ օր մը կորսուին։

Խարբերդի մէջ այս չորս վանքէն զատ, Գազրիկ գեղին կից բլուրի մը վրայ կար աւերակ մը Ս. Մամաս անունով։ Նոյն գիւղի բնակիչ բազմածանօթ եւ բարեպաշտօն Մ. Յօհան էֆ. Եաղճեանն ձեռնարկած էր շինել մատուռն եւ սենեակներ, ուր կուզէր հաստատել նաեւ վարժարան մը, բոլորը իր ծախքով։ Մեծագումար ստակներ մսխած է Յիշեալ անձն եկեղեցւոյ եւ վարժարանի համար, և շատ յիշատակներ ունի աստ և անդ, մանաւանդ իրենց գեղի հոյակապ եկեղեցւոյ կառուցման և զարդարանաց։ Կտակագիր յօրինած և վաւերացուցած է Պատրիարքարանով. և Ս. Մամասայ շինութեան համար բաւական ծախք ըրած, այլ թերի

կը միայ։ Այս բոլորէն Հռովմայեցւոց արձանագրութիւններ գտնուեցան վանքին հիմունքները պեղած ժամանակ ձերմակ քարերու վրայ քանդակագրուած, այդ քարերը իւր տունը կը պահէ Եաղձեան էֆ. որոց օրինակները հրատարակուած են քանի մը տարի յառաջ Լրագրաց մէջ, որքան կը յիշեմ իմաստն պիտի լինի այս թէ՝ «Այդ սահմանը Հռովմայեցւոց իշխանութիւնն է, և այն կողմերու համար կարգած են Տիգրան անունով մէկը թագաւոր կամ սահմանակալ»։

Խարբերդու վանօրէից վրայ գրելու աթիւ կը դիտենք թէ մեր նախնիք յատկացնելով վանական հաստատութեանց զատ զատ թեմ և թեմական արդիւնքը, պաշտօն սահմանած են վանքերուն որ վանահայրն կամ վանականները փոխադարձ օգտակար հանդիսանան այդ թեմականաց, այցելութեամբ, քարոզութեամբ. բարեկարգ պահեն անոնց եկեղեցիներ, լուսաւոր անոնց հոգւոյն եւ միաց հրագը. քահանայ հասցունեն անոնց, մխիթարութիւն եւ խաղաղութիւն աւետարանեն. առ Աստուած, առ կայսրն, առ Ազգն, առ ընտանիս պարտաւորութիւն ուսուցանեն. անոնց վշտակրութեանց եւ վտանգուելու միջոցին յոյս քաջալեր լինին. եւայլն։ Իւրաքանչիւր գաւառի մեծութեան ու փոքրկութեան համեմատ թուով վանքեր սահմաներ են. անոնցմէ մին Աթոռ անուաներ են, որոյ վա–

նահայրն է միանգամայն Առաջնորդ բոլոր թեմին․ եւ միւս վանքերը օժանդակ իրեն։ Արդէն հազիւ կրնան բաւականանալ մեծ վիճակի մը համար մէկ Առաջնորդ եւ 5–6 օժանդակ, որ կը կրթուին հովւութեան պաշտօնին մէջ։ Մեծ վիճակները, որպէս է Խարբերդը, մէկ Առաջնորդով անկարելի է կառավարել․ մշակութիւն պէտք է ժողովրդեան։ Երանի պէտք է ըսել այն գաւառին, ուր Առաջնորդն կամ գտնուած վարդապետներն փոխանակ շինելու, աւերելու գոնէ չ՚ջանան։

Զարմանալի չէ՞ որ մենք այսքան պատրաստ շէնքեր–վանքեր և հասոյթներ ունինք, և չենք կրնար կղերականութեան եւ դաստիարակութեան օգտակար ընել․ այն ինչ Ամերիկացին եւ Եզուիտն աւելի քիչ գումարներով մեծ գործեր կը տեսնէ այդ տեղերը ի շահ իւր եւ ի վնաս մեր։

Զարմանալի չէ՞ որ Հայն, այդքան խորին տգիտութեան եւ ներքին դայթակղութեանց մէջ, արտաքին թշուառութեանց եւ օտարաց հազար հնարից առջեւ դեռ կը դիմանայ ու ՀԱՅ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ կը մնայ։

Խարբերդի գաւառին մէջ ամենէն նշանաւոր վայր եւ վանքն է Ս․ ՆՇԱՆ Ծովքին կամ Ծովք–դղեկին, ուր շնորհալից շնորհքներով զարդացեր մեր Ս․ Ներսէս Շնորհալին, որ այժմ աւերակ է, անբնակ, եւ մեր ԹՈՐՈՍ

ԱՂԲԱՐ հաւքին բնակավայր։ Ութն ժամ հեռի է Ծովք Խարբերդէն դէպ յԱրեւելեան հարաւ, Տիգրանակերտ գնալու ճամբուն բերանը։ Սոյն գծով կ'երկարին լեռներ դէպի Մալաթիա, որոյ գօտւոյն վրայ կիյնան Կարկառ եւ Պուճախ։ Ծով՝ լերան վերայ եւ լերանց մէջ խնկամանի մը կը նմանի բաժակաձեւ. ջուրը վճիտ՝ այլ քիչ մը լեղի, նուակով 4 ժամ կը տեւէ իր երկայնքը եւ 1 ժամ լայնքը. իսկ խորունկ տեղերը մինչեւ 170 գրկաչափ է. ջրերը թէ իր մէջէն կը բղխին եւ թէ շրջապատով լեռներէն մէջ կը թափին։ Ծովք կամ Կէօլճիւկ գեղը շինուած է Ծովքին հարաւային ափը, զարդարուած ծառատունկերով, ճիշդ իւր հանդէպն է կղզին կամ դղեակը, որ նախ թերակղզի է եղած կից այժմեան գեղին՝ ցամաքէն. բայց երբ հետզհետէ ջուրը կտրեր է ցամաքին պարանոցը, դղեակի բնակիչքը դուրս ելեր են եւ հաստատեր են արդի Կէօլճիւկ գեղը. ամենքն ալ Հայ են. ծերունիք կը պատմէին թէ իրենք ծնած են ի դղեակն եւ մկրտուած ի Ս. Նշանի աւազանն։ Հազիւ 50 տարի կայ այս փոփոխութիւնը։ Լիճն զանազան թռչնոց հետ՝ ունի եւ քանի մը տեսակ ձուկեր, զորս ուռկանով կ'որսան ծովեցիք, յորս անբաւ կը գտնուի տեսակ մը մանր ձկանց, զորս կ'անուանեն Խրտուտ. եւ կը չորցնեն աղելով ու կը պահեն՝ ամբողջ մերձակայ գաւառաց բնակիչք։ Մենք ճաշակեցինք ձկանց

ամէն տեսակէն, խորովելով կրակետղի վրայ առ ծովեզերբ Թարմ Թարմ, կերանք ու կերանք. բայց ինչո՞ւ չէինք կշտանար... սուրբ և պատուական համ ու հոտ, Շնորհալւոյն կերած ձկանց զարմ և սերունդ։ Նաւակով քառորդէ մը հասանք ի կղզին, որ իսկապէս ապառաժի մը կտոր է, որոյ հողային մասերը լափեր է ջուրն. այս քարին վրայ կը մնան որմունք փլած տաճարին Ս. Նշանայ։ Տաճարին սեմէն դուրս ցիր ու ցան քանի մը գերեզմաններ կը նշմարուին՝ կրօնաւորաց և քահանայից. անշուշտ շատ նշանաւոր անձանց ոսկերք եւս կային ամփոփուած, որք աննշմարելի են դարձեր։ «Հոգւոց» ըսինք այդ հանգուցելոց, և արտասուալից փափաքանօք համբուրեցինք քարեր որմոց և սեմոց Ս. տաճարին, յորս Թռչունք բոյն դրած էին, և շարժումներ ընելով ձայն կ'արձակէին դէպ ի մեզ։ Ի՞նչ կ'ըսէին, ինչ կը ցուցնէին...։ Տաճարին կամարն քակուած, և քարեր գլորուած կային յայս և յայն կողմն, մանրերն ալ շաղախով մէկտեղ պաղաղ պաղաղ ինկած։ — Տխուր օրինակ Հայ ազգին կենաց։ Թէպէտ բան մ'էին, շէնքի մը կը վերաբերէին, բայց իրենց բուն տեղէն ինկած խումբ խումբ և ցրիւ. Թէպէտ անշարժ, անկենդան, բայց կը խօսէին կը հասկցնէին թէ՝ մեք վէմ ենք ապարանից, դղեկին, տաճարին, այլ աւա՜ղ, լուռ ու վերցնող չունէին։

Շատ հետազօտեցի գտնուածոց հետք մը գտնալ այդքան քարերու վրայ, հազիւ այս փշուրները ժողվեցի։ Տաճարի որմին աջակողմը փոքր խաչքարի մը վրայ փորագրուած ՑՇՏԿ Է ՍՈՒՐԲ ԽԱՉՍ։ ԱՄԸՐ...»։ Եւ Տաճարին արեւելեան որմին դրսի ճակատին վրայ դրուած լերջ քարի մը երեսը խոշոր խորագրով փորագրուած։




Ծոփաց հռչակաւոր դղեակն եւ իւր Ս. Նըշանայ վանքն՝ այսօր ծովակուր եղած լինելով, մեր տեսած բեկորներն ալ պիտի ծածկուին ջրով եւ անհետանան ընդ փոյթ, զի ջուրերը օրէ օր կ'աճին եւ կը բարձրանան. իսկ եթէ վտակներ հոսեցնեն ծովէն, մեծ գանձեր պիտի բացուին մեզ այդ ջրոյ տակէն։ Կէօլճիւկ գեղն է հայաբնակ, եւ բնակիչք կը կոչուին «Ծովեցի»։ Կար եւ մի գիւղ լճակիս մօտ քրդաբնակ, զոր կ'անուանէին «Քիւրդ կէօլճիւկ», իսկ հայաբնակն՝ «կավուր կէօլճիւկ»։

Մնան բարով Թռչունները, մնան բարով ձուկեր, քարեր եւ աւերակներ, մնայ բարով Թորոս Աղբարը... ո՞վ միւսանգամ եւս տայր ինձ համբուրել եւ ողջունել զՁեզ։

Ես տեսայ կրկին այս սուրբ ծովիկը տարիէ մը զկնի, եւ կը տեսնամ միշտ զինքն ի սրտիս, եւ առ ինքն զիս...։

Երբ դարձանք ի Կէօլճիւկ, ուռկաններ ձգած էին վերստին ծովուն մէջ, ուռկան ինքնին էր ծովն, որ Հայ եղողի սրտերը կ՚որսայ, Հայուն՝ որ միանգամ իր աչքն կամ ուշքը հոն ձգէ։

Կէօլճիւկի եկեղեցին շինուած է Ս. ՆՇԱՆ անունով, ունին և մաս մը Ս. Նշանէն, ուռ որ ուխտաւորք կը դիմեն շրջականներէ. բայց անշուշտ Շնորհալւոյ Ընդհանրականին մէջ յիշատակեալ Ս. Նշանը՝ Աթոռոյն հետ փոխադրած էին ի Հռոմկլայ։ Զարմանալի էր որ միայն երկու ձեռագիր աւետարան կրցայ գտնել, յորոց մինն գրուած էր Վարագայ քովի Արգելանոց կամ Ս. Գրիգորի վանքը։ Օրինակներ տես ի կարգի յիշատակարանաց։ Բայց ինչպէս կ՚աւանդէին՝ թէ գրքեր և թէ այլ թանկագին բաներ Բարձրահայեաց վանքը կը պահպանուէին։

Նայելով պատմութեան մեզ աւանդածներուն, տարակոյս ունեցած են ոմանք թէ՝ Շնորհալւոյն հօր Ապիրատ իշխանին կառուցած դղեակն, կամ Գրիգորիսին ու Ներսիսին ծնած վայրն ու կաթողիկոսական աթոռն՝ չլլինէր այս Ծովք-դղեակ. այլ զանազան յիշատակներէ և պարագաներէ կը հետեւցնեն թէ՝ Ապիրատին կամ Շնորհալւոյն Ծովք դղեակն պէտք էր գտնուէր Մարաշու սահմանին մէջ և Սեաւ սուրբ լեռնէն հեռու չլլինէր. կամ՝ գտնուելու էր Ճօսլիններու երկիրներուն մօտ, եւայլն։ Սակայն ինչ-

պէս յայտնի է, Մարաշու քովէր Լիճ կամ
ծովիկ չենք ունեցած և չունինք, իսկ
Խարբերդի այս Ծովիկը խիստ մօտ է Սեաւ
լերան, զի Սեաւ լեռն է Աղձատաղ, որոյ
վրայ գրած ենք Թորոս Աղբօր Ա. մասին
մէջ, Մալաթիոյ հետ։ Աղձատաղի մէկ ծայրն
կը վերջանայ Եազի-խան ըսուած ընդարձակ
ու ամայի դաշտավայրը, և Եազի-խանն Եփ-
րատով բաժնուած է Խարբերդէն։ Մեր այս
Ծովք ունի կարճ գծերով ճանապարհներ Սեւ
լերան հետ հաղորդակցելու, աւելի կարճ
Հռոմկլային հետ, մի օրեայ գնացիւք։ Աղ-
ձատաղը երկարօրէն կը ձգի մինչեւ Մարաշ-
Թեսան՝ որ մօտ է Մարաշին, հեռի չէ Խար-
բերդէն. և զարմանալի չէ թէ Մարաշի տի-
րապետողաց սահմանն հասած լինի երբեմն
մինչեւ մեր Ծովքն։ Նոյն իսկ Խարբերդը շատ
յարաբերութիւն ունեցած է իբրեւ մերձա-
ւոր՝ Կիլիկիոյ և Խաչակիր պետաց հետ, մին-
չեւ իսկ Եգիպտոսի սուլթանին, Հալէպի՞ա-
միրայից և Ֆրանկ իշխանաց, Անտիոքի և
Եդեսիոյ տիրողաց հետ, ուրեմն կրնար խառ-
նուիլ մեր Ծովքն յիշեալ տեղերու և տիրող-
ներու անուանց հետ։

Ինչպէս կրնայ տեսնուիլ Մատթէոս Ուռ-
հայեցւոյ պատմութենէն, և ուրիշ կողմով ալ
նկատելով, Արեւելեան հիւսիսային և Արեւ-
մըտեան և Հարաւային Հայոց հետ հաղոր-
դակցելու մեծ յարմարութիւն ունէր այստեղ։
Իսկ դղեակն՝ շինուած է իբրեւ ամուր դիրք

մը , և ապահով տեղը, պարսպեալ չորից կողմանց պարսպաձեւ լեռներով և ջրով պատեալ, ինչպէս էր դիրքն Աղթամարայ իւր բերդով և տաճարով, յետոյ երկոցունց ալ ցամաքը կորուած, դղեակն կործանուած· Թէպէտ Աղթամարն մեծաշէն և հոյակապ կը կենայ իւր տաճարով, և անհամեմատ է ծովն ծովկէս, ժայռն ժայռիս։ Այսպէս շատ բերդեր կամ դղեակներ կան երեք կողմէն ջրով պատեալ, որ ի հնումն զօրաւոր կը համարուէր ; և հոն կ'ապաստանէին իշխանաց քով՝ մեր եկեղեցական հովուապետք եւս։ Աստ նստելով հանդերձ՝ դիւրին էր վայելել պաշտպանութիւն Քրիստոնեայ իշխանաց, որ մօտ էին, աստի Սեաւ լերան կրօնաւորաց և կրօնաստանաց այց առնել դիւրին էր նոյնպէս։

ԾՌՓՔ՝ յիշատակեալ պատմութեանց մէջ, երկու են, մին է սա, հին ՀԱՆՁԻԹին մէջ, միւսը Նփրկերտին, ուր մեր Շնորհալին չէ երեւցեր։ Այլ անշնորհք երեսով, փիթխարին հասակաւ և ուժով, Անգեղեայն Տորք· որ «որձաքարեր մատերով կը փշրէր, եղնգով արծուիներ կը քանդակէր վիմաց վրայ, և բլուրներ կը վերցնէր դնէր»։

## ԽԱՐԲԵՐԴԻ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ԹԵՄՔ
## ԿԱՄ ՀԱՅԱԲՆԱԿ ԳԻՒՂՕՐԱՅՔ

ՔԱՂԱՔ ունի 4 եկեղեցի։ Ա. Մ. Յակոբ, որոյ տարեկան հասոյթն իբր 4000 ղուրուշ

ժողովրդեանէն ։ Բ. Ս. Կարապետ, հասոյթ 5000 ղուրուշ ժողովրդեանէն, բաղնիքի մը չորս բաժինէն մէկն Ս. եկեղեցւոյս, երեքն տաճկաց է, որոյ արդիւնքէն՝ 2000 ղուրուշ. մէկ պարապ տեղ մը և մէկ խանութ եւս ունի, որոցմէ արդիւնք չառնուր. կալուածագիրք երկու Հայ մեծատանց վրայ են ։ Գ. Ս. Ստեփանոս, հասոյթ 1500 ղուրուշ ժողովրդենէ, և 450 ղուրուշ մէկ խանութէ ։ Դ. Ս. Նշան, հասոյթ 1000 ղուրուշ ժողովրդենէ, 600 ղուրուշ բաղնիքէ մը, 600 ղուրուշ երեք և կէս խանութներէ ։ Իւրաքանչիւր եկեղեցւոյ որահը ծաղկոց մը կայ մանր մանկանց, որոց թիւն էր 150, և աղջիկ՝ 50 ։ Քաղաքի մէջն է Սմբատեան ընկերութեան վարժարանն, որ ունէր աշակերտ 70, տարեկան ծախքն էր իբր 25 ոսկի, ընկերութեան բաժիններէ և հանգանակութենէ ։ Իսկ միւս ծաղկոցներու տարեկան ծախքը 3850 ղուրուշ, զորս կը հոգային եկեղեցեաց հասոյթէն, թոշակէ, բարեպաշտօն ոմանց նուիրատուութեամբ եւայլն ։

ՀԻՒՍԷՅՆԻԿ գիւղ. 1 եկեղեցի, Ս. Վարդան ։ Վարժարան երկսեռ՝ Հայկեան և Վարդանեան, ծախք վարժարանին տարեկան 2100 ղուրուշ, եկեղեցիէն և Հայկ. Ընկերութենէն ։ Աշակերտք՝ 100 մանկունք, 60 աղջիկ ։ Տունք Հայոց 418 ։

ՄԷՋՐԷ. — ՄԱՄՈՒՐԱԹ-ՈՒԼ-ԱԶԻԶ. որ է կառավարութեան կեդրոն ։ 2 եկեղեցի, Ս.

Աստուածածին և Ս. Սարգիս։ Տունք Հայոց 246։ Վարժարան 2-3, կը բացուին ու կը գոցուին. աղջկանց համար ալ կար, նոյնպէս բաց ու խուփ։ Երկսեռ աշակերտացուք 200էն աւելի, և եթէ ծախք ընէին՝ 4800 ղուրուշ որոշեր էին՝ եկեղեցիներէ և թօշակներէ։

| | | | | |
|---|---|---|---|---|
| Վերին Մէզրէ. | 1 եկեղեցի | Ս. Լուսաւորիչ | Տունք Հյց. | 14 |
| Սօրսօրի. | » | Ս. Կարապետ | » | 173 |
| Եղէգի. | » | Ս. Գէորգ | » | 126 |
| Քէօրիկ (Գազրիկ) | » | Ս. Աստուածածին | » | 314 |
| | ունի վարժարան մը 170 աշակերտօք | | | |
| Մօրենիկ | » | Ս. Պարսամ | » | 97 |
| Սարայ | » | ոչ գոյ | » | 14 |
| Ղուրբար Մէզրէ | » | Ս. Կիրակոս | » | 6 |
| Հօղէ | » | Ս. Գէորգ | » | 178 |
| Մուրի | » | Ս. Աստուածածին | » | 57 |
| Ծէմսի | » | Ս. Աստուածածին | » | 48 |
| Արօսիկ | » | Ս. Գէորգ | » | 40 |
| Ախսուր | » | Ս. Աստուածածին | » | 36 |
| Խանավիկ | » | Ս. Աստուածածին | » | 20 |
| Տըղաչի | » | Ս. Փրկչ. և Ածծին | » | 80 |
| Գօնազ ալմազ | » | Ս. Աստուածածին | » | 34 |
| Վարդենիք | » | ոչ գոյ | » | 7 |
| Սարը զամբօ | » | Ս. Աստուածածին | » | 80 |
| Հաւուկ | » | Ս. Աստուածածին | » | 18 |
| Խըրաջ | » | Ս. Գէորգ | » | 38 |
| Մունզար օղլու | » | Ս. Մինաս | » | 79 |
| Ալամիշիկ | » | Ս. Գէորգ | » | 18 |
| Վերին խօխ | » | Ս. Աստուածածին | » | 140 |
| Վարի խօխ | » | ոչ գոյ | » | 15 |
| Կարմրի | » | Ս. Թորոս | » | 90 |
| Տնթիլ | » | Ս. Սարգիս | » | 108 |
| Խրխիկ | » | Ս. Գէորգ | » | 10 |
| Փարչանջ | » | Ս. Փրկիչ | » | 220 |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Վարդաբիլ | 1 | եկեղեցի | Ս. Գէորգ | Տունք Հյց. | 61 |
| Թլանցիկ | | » | Ս. Սարգիս | » | 17 |
| Եէնիջայ | | » | Ս. Աստուածածին | » | 16 |
| Քէյլի | | » | Ս. Կիրակոս | » | 30 |
| Մօլլա-քէնտի | | » | ոչ գոյ | » | 2 |
| Գեղ վանք | | » | Ս. Նշան | » | 38 |
| Երզմնիկ | | » | Ս. Աստուածածին | » | 60 |
| Գասեմ | | » | Ս. Աստուածածին | » | 200 |
| Խոյլու | | » | Ս. Ստեփաննոս | » | 279 |
| Այու պաղի | | » | ոչ գոյ | » | 3 |
| Զարդարիչ | | » | Ս. Խաչ | » | 30 |
| Իչման | | » | Ս. Նիկողոս | » | 160 |
| Աղքնաի | | » | Ս. Կարապետ | » | 60 |
| Քունկ | | » | Ս. Փրկիչ | » | 190 |
| Կէօլնիւկ (Ծովք) | | » | Ս. Նշան | » | 60 |
| Նազրակ | | » | Ս. Մինաս | » | 42 |
| Ընկըզիկ | | » | ոչ գոյ | » | 4 |
| Հանի սէլի | | » | Ս. Սարգիս | » | 18 |
| Աշվան | 2 | » | Ս.Գէո. և Ս.Սարգ. | » | 58 |
| Հարսէնք | | » | Ս. Աստուածածին | » | 37 |
| Իքիլ | | » | Ս. Մամաս | » | 11 |
| Տառուկ | | » | Ս. Սարգիս | » | 25 |
| Արփաւոտ | | » | Ս. Գէորգ | » | 70 |
| Զօքալի | | » | Ս. Գէորգ | » | 40 |
| Գուլայ | | » | Ս. Աստուածածին | » | 200 |
| Քզմքօէն | | » | Ս. Աստուածածին | » | 210 |
| Զօրչիք | | » | Ս. Գէորգ | » | 60 |
| Արզուրուկ | | » | Ս. Աստուածածին | » | 30 |
| Այվօն | | » | Ս. Աստուածածին | » | 120 |
| Հաքուսի | | » | Ս. Աստուածածին | » | 180 |
| Քօրփայ | | » | Ս. Գէորգ | » | 175 |
| Գառքնկէրտ | | » | Ս. Թովմաս | » | 32 |
| Սինան | | » | ոչ գոյ | » | 8 |

*Վարժարան չնշանակուած գեղերէն ոմանք ի ձմերան կը ժողվեն իրենց տղայք ախոռ—*

ներու մէջ, կամ յարմար տեղ մը, և կը կար-
դացնեն, շատերն այդքան ալ չունէին ։ Տասն
երեք գեղերու Հայք՝ Բողոքականներ ունին
իրենց մէջ՝, վեց գեղեր՝ Կաթոլիկ կամ Լա-
տին ունին ։ Թուրք՝ գրեթէ ամէն գեղերու
մէջ կայ. իսկ Ասորին՝ ի քաղաք, միւս տե-
ղերը աննշան են ։

## ՉՄՇԿԱԾԱԳ

Օգոստոս 11, մեկնեցանք Խարբերդէն ։
Գուզ-Ովայէն է մեր ճանբան, որ յետադարձ
մը կը համարուի. զի շատ ուրիշ գծով մը
կը դառնան Կապան-Մադէնի և Արաբկի-
րու Ովայի, ու Ակնայ մէկ մասին ետեւը, ուր
կ՚իյնայ Չմշկածագն և իր գեղերը ։ Գուզ-
Ովան՝ որ Ուլ-Ովայի նման քնքոյշ և զարդա-
րուն չէ, սակայն ունի մեծամեծ և խիտ դե-
ղեր. արտօրայքը թէպէտ քարուտ, այլ շատ
բարեբեր ։ Հնձոց օրեր լինելով, գեղացին իր
ամբողջ ընտանիքով տարածուած էր դաշտին
մէջ, ուր կնոջ աշխատութիւնը շատ է՝ քան
արանց, և մանր մանկտին հորթիկներու, ոչ-
խարաց, և քուռակներու հետ խառնուած կը
թռվռայ, կը հսկէ, կ՚երգէ և կը զուարճա-
նայ ։ Աշխատութեան և անմեղութեան քաղցր
տեսարան... ։

Աշվան գիւղն եղաւ մեր իջեւան, որ Գուզ-
Ովայէն դուրս է, Բալուայ Ջրոյն—Եփրատին
վրայ, և բարձր դիրք մը ունի, բեղմնաւո-

րութեամբ անուանի, որ ունէր նաեւ շատ պտղաբեր ծառեր։ Գեղին հողերը Խարբերդ-բնակող ակնցի քանի մը Հայոց սեպհականութիւնն էին, որ թթենիներ ալ տնկած ունէին. եւ շերամ կը մշակէին, ճաշակով տուներ շինած էին։ Գեղիս սէխն ու ձմերուկն հռչակեալ է համեղութեամբ։ Շնորհքով քահանայ մի կար հոս, Տէր Կարապետ։

Գետն սահմանագլուխ է Խարբերդին, որոյ միւս երեսը Չմշկածագի հողն է, կամ Տէրսիմի. քրդերը յաճախ կ'անցնին Ջուրէն եւ ատոնցմէ ոմանք կը կողոպտեն Աշվանցիները տանց եւ արտերու մէջ։ Գեղիս Թորոս քահեան նոյն տարին աղէտ մը անցուցեր էր։ Իբրեւ ունեւոր եւ խօսքի տէր մարդ՝ որոշուած է եղեր քրդերէն որ վերցնեն զինքն եւ տունը աւարեն. Գիշեր մը յանակնկալս կը պաշարուի իր տան մէջ. եւ Թորոսն այլ ոք կեղծելով ինքզինքն, եւ իբրեւ կամեցող Թորոսի կորըստեան, կ'սկսի ինքն հայհոյել զԹորոս քահեան, ու կ'օժանդակէ քրդերուն որոնելու զինքն. յարկէ յարկ, ծակէ ծակ որոնելու միջոցին, կրցեր է ճարտարութեամբ խաբել եւ ծածկել իր անձն. լուսոյն դէմ չարագործներ կը մեկնին, ժամադրելով ուրիշ գիշերուան մը համար. բայց Թորոսն այլ եւս տունը չէր պառկեր։ Դարձեալ այս գիւղէն եօթն տարու աղջիկ մը յափշտակեր էին չարագործք եւ Ջրէն անդին անցուցեր էին, վեց ոստիկան եւ հարիւրապետ մը գեղացւոց հետ Ջրէն անդին

կեցած սպառնալեօք չարագործներէն աղջի-կը՞ դարձուցեր էին ծնողաց. որսացեալ գառ-նուկը դողասարսափ ծնողաց գիրկն ինկած էր, մահու երկիւղի մէջ։ Այսպիսի դէպքեր Աշվանցիք և քանի մը այլ գիւղացիք կը պատ-մէին պաղարիւնութեամբ։

Մօրկ ընելով գեղացւոց, յուսադրեցինք զիրենք բարեխնամ կառավարութեան անու-նով. և առաւօտ ելանք մեր ուղին։ Թէպէտ թանձր և կոշտ նաւեր կային, բայց ես որո-շեցի հունէն անցնիլ. քանի մը կարիճ երի-տասարդներ ջուրը մտան, և մենք հետեւե-ցանք անոնց ընկղմելով և յառնելով։ Օրհ-նեալ ջուր, որ այնքան բարութեամբ և փափ-կութեամբ վարուեցաւ հետս։ Հոս կուգար իրմէն. հոս մահու և անմահութեան. ջուր՝ որ կը բերէր իր հետ դրախտի ծաղիկ, և օ-ձու չապիկ. ջուր՝ որ կուգար Գայլագիտէն, Ալաշկերտէն, Խնուսէն, Մանզկերտէն և Մու-շէն, որ կրեր էր դիակներ, խառնուեր էր արիւններ, և բաղադրուեր էր աղի ու դառն արցունքներէ։ Արցունք մ'ալ իմ աչքերէս։ Ջուր՝ սակայն, որ ունէր և կը նուիրէր յոյս. թէ կ'անցնին չարիքներ, ինչպէս կ'անցնին իմ ալիքներս. և եւեւէ եւեւ մաքուրն և կենդանին կը յաջորդէ, բաւական է որ Ակն անսպառ հոսէ, կեանքն իւր ընթացքը չ'կա-սէ, վտակն իր ճամբան և իր տեղը չ'փոխ-խէ։

Գետոյն միւս երեսն է Աշկան կամ Աշ-Գա-

նի դեղը, դաշտաղիր։ Վտակ մը կուգայ ուղղակի Չմշկածագ քաղաքէն, մարդ առանց առաջնորդի կրնայ այս վտակին հետօք ուղղակի քաղաքը երթալ, որոյ շուրջ գեղեր կը գտնուին, նայելով իրենց կ'անցնինք, շնորհքով շէնքեր կան գեղերու մէջ։ Հողն ու մարդը աւելի կայտառ են այս կողմը, բայց Տէրսիմցիներուն ոտնակոխ, ճամբան վատթար է ու աւեր։ Չորս ժամէն մտանք Չմըշկածագը, որ ունի զարդարուն պարտէզներ. զուարճալի ձորեր, ցիր և ցան մեծամեծ և մանր քարերով, կարգ մի եւս բարձրացած ժայռերը պարսպաձեւ, բրգաձեւ, և քաղաքին հանդէպ շատ մը չինուած քարայրեր, Բէկ օղասի, Բայրամ բաբա, ևն. անունով։ —ինչե՞ր են տեսեր, ինչեր անցուցեր այս այրերը։

Առաջնորդարանը իջանք, բայց հոգեվարք էր այդ յարկը, ուստի իրիկուն Իգնատիոսեան Միքայէլ էֆէնտիի տունը իջեւանեցանք. և ամէն ցերեկները ընդունելութիւնք, տեսակցութիւնք և մեր գործքերը կուգայինք կատարել Առաջնորդարանը, ամէն րոպէ նայելով սրտառուչ երկիւղիւ կորած գերաններուն, փտած նեցուկներուն և խարխալեալ պատերուն. մանաւանդ այն ժամերուն, երբ մեծադղորդ գոչմամբ կը ժողովէին ի նիստ Ազգային ժողովները և իրենց արժանաւոր Առաջնորդն Տ. Պետրոս Վ. Ներկարարեան, մարմնով և ձայնով արդարեւ գե-

բազանց անձին նախագահութեան տակ, պոռչտելով իրարու դէմ. մէկզմէկ նախատելով, որոց բոմբիւնէն կը սարսէր և փոշի կը թափէր դողդոջուն յարկն։ Անշուշտ իրաւունքը միշտ հուժկու և շատ բոռացողին կը լինէր։

Քաղաքիս փողոցները և շուկան խառն ի խուռն են, բայց բաւական կանոնաւոր շէնքեր կը գտնուէին, ամենէն շքեղ և ձեւաւոր շէնքն էր Հաճի Թահար բէկի տունն. և ինքն էր բոլոր բէկերէն աւագագոյն և քաղաքավար. ինքն էր ամենէն աւելի հողեր և գիւղեր ունեցող, երկրի բարեաց եւ այլն հեղինակ, որ ունէր զինքն յարգողներ, այլ բազմաթիւ եւս էին դժգոհներ և հակառակորդներ։ Քանի մը այլ Բէկեր ալ կային. և քանի մը Աղաներ, որք նոյնպէս հողատէր, գեղատէր էին, և գեղացի մարաբաներ՝ իբրեւ իրենց ճորտեր. գրեթէ ամէնքն ալ երեսանց փափաղող էին բարեկարգութեան. բայց ամէնքն ալ իրենց պաշտպանութեան տակն ունեցեր էին դատապարտելի մարդիկներ։ Այլ դեռ Մալաթիոյ և Խարբերդի անուանիներէն բարի էին սոքա։ Այս երկիրը յաճախակի վնասներ կը կրէր նաեւ Տէրսիմի քրդերէն, որոց հետ խառն է ընակութեամբ, և քաղաքիս մէջ կային թէ ըննիկ և թէ գեղացի անձինք որ կը ցուցնէին զիրենք միականի, ոտնակոտոր, թեւահատ, երեսը կտրուած. ևն. որ չարագործներէ խեղացած էին ընդհանրապէս։

Քաղաքիս արուեստներն եւ առուտուրն խիստ սահմանաւոր էր. եւ կառավարութիւնը՝ Միւտիւրութիւն, Կապան-Մատէնի գայմագամութեան տակ, աստ պաշտօնատուն չ'կար: Յետոյ առանձին գայմագամութիւն եղած է, եւ այժմ Տէրսիմի-Խոզադու վիլայէթին ենթակայ, յորմէ 8 ժամ հեռի է: Թաղերը զանազան դիրքեր ունին: Իւչ-Բէկ Թաղը զատ մաս մը կը կազմէ քաղաքին: Բնակիչք են Հայ եւ Թուրք: Եկեղեցիք Հայոց 2. Ս. Աստուածածին եւ Ս. Թորոս: Ս. Աստուածածին եկեղեցին՝ մթին. նսեմ, ցած, եւ գերաններ կախուած էին աղօթողաց գլխին, որոց ներքեւ կը ծնրադրէին: Վարժարանն երկու:

Ծաղկոցը կամ Նախակրթարանն խիստ ողորմելի էր, անձուկ, անլոյս, առանց օդի, ներքնայարկ, ուր տեսայ քանի մը թօշնած ծաղկունք-մանկունք. եւ դեղնած մարած աղջկունք: Եօթնամեայ աղջկան մը ձեռքը դասագիրք մը կար, որ ծանր եւ մեծ էր քան զաղջիկն, Բողոքականաց տիպ մեծադիր Աստուածաշունչ մը, ըսին թէ՝ բոլոր միւս դասագրքերը լմնցուցեր էր. եւ «իսկզբանէ արար»էն մինչեւ «չորրորդ թագ. գիրքն» ալ ասոր վրայ կարդացեր էր, եւ իրօք ջուրի պէս ալ վարժ էր, կը վազէր:

— Տեսա՞ր Մանկավարժութիւն...: Եւ այսպէս մէկալ աշակերտներն էին:

Վերին յարկը սրահ մի եւս կար իբրեւ ու-

սումնարան, որոյ ուսուցիչը լաւ էր, բայց դժգոհ։ Հայոց Միացեալ Ընկ. անդամոց նպաստներով բարձր Նախակրթարան մը բա-ցաւ հոս, որոյ չէքն չքեղ է եւ ընդարձակ։ Այժմ կառավարութեան պաշտօնատուն եւ Ազգ. Առաջնորդարան ալ շինուած է։

Քաղաքիս և գեղերու բնակիչներէն շատերը թէ Հայ և թէ Տաճիկ Պօլսոյ մէջ սովորաբար գործ ընելով, թէ հաւատով եւ թէ կենցաղավարութեամբ կոկիկ եւ քաղաքավարի են, անոնցմէ շատերն ալ կալուած եւ հասոյթ ունէին, ու հանգիստ կ'ապրէին։ Ազնուականաց տուներ, որոց նմաններ յԱկն և յԱրաբկիր ալ կը գտնուին։

Անդորրութիւն կենաց եւ ապահովութիւն գոյից կարի գոհացուցիչ էր այդ օրերը վասըն զի Ալի-Շէֆիք բէկ կայսերական կառավարութենէն եկած էր բարեկարգելու Տէրսիմն, եւ իր հրամանին տակն ունէր զօրքեր, Նորին վսեմութեան հետ կը գտնուէր նաեւ Երզնկացի Կիրակոս էֆէնտի Գազանճեանն։ Միւս կողմանէ ալ Խարբերդու կառավարութիւնը քանի մը կարեւոր խնդիրներ կարգադրելու փոյթ կը ցուցնէր, որ պարտաւորած էր զիս մասնաւորապէս, եթէ կարգադրելի՝ բայց կարելի կարգէն խնդիրներ տեսնամ, գրեմ. եւ արդարեւ քանի մը բաներ կարգադրուեցան։ Զօրաց մաս մը քաղաքի մէջն էր, իսկ Ալի-Շէֆիք բէկ Ներսեսը կը գտնուէր։ Իմ պաշտօնս

ընցնելով՝ փափաք ունեցայ Կարմիր վանքն երթալ. բայց նոյն գիշերը զօրքերը քաղաքէն մեկնած էին Ագրակ գեղը՝ Քրդաց մէկ ցեղապետ Տիապ աղան ձերբակալելու եւ անոր անասունները ու գոյքերը գրաւելու։ Ագրակին կից էր Կարմիր վանքն։ Սարսափ տիրեց քաղաքին, կրնար ճակատամարտ տեղի ունենալ, կրնային Քրդերը փախչիլ եւ գեղերն ու քաղաքը աւարել, համբաները բռնել, եւայլն. այս էր իրենց ենթադրածը. ուստի եւ զիս կը համոզէին որ վանքը չերթամ։ — Պիտի երթամ ըսի։ Ոչ ոք ընկերացաւ ինձ, որպէս զի չերթամ։ Բայց ես հետս առի Խուչ-Բէկի ութսունամեայ Տ. Մանուէլ սպիտակափառ տէրտէրը, որ իր մանկութենէն ի վեր Տէրսիմի լերանց մէջն անցուցեր էր, Հալւորիկի սուրբ Կարապետ վանքը մնալով, եւ ծանօթ էր ճանապարհին, չարին եւ բարիին, Դաւրիթի Սաղմոսին եւ Գողիաթի երկաթին. աշխոյժ եւ բարեպաշտ ծերունին հետս եկաւ։ Ափսոս միայն իւր հեծած երիվարն միականի եւ հարստահարեալ էր. բոլորովին հակառնեայ իւր հեծեալին։ Մեզ հետ կար նաեւ անմազ գլխով ոստիկան մը, որ կը դողդողար։ Հազարի գեղը մեր ձախ կողմէն կը տեսնանք և կ՚անցնինք, տեղ տեղ ծառերու ետեւէն, թուփերու և քարերու տակէն, ձորերու մէջէն շարժումներ կը նշմարենք, որք իսկոյն կ՚անհետին, Քրդերու աղջիկ եւ կին են, փախած

թագչած այդ տեղերը, զմեզ ալ զօրական կարծելով՝ վախէն խոտերու մէջ կը պահուէին։ Ժամ ու կէս երթալով հասանք վանքին դիմաց որ շինուած է բլուրի մը վրայ, անմայութեանց մէջ։ Բայց նախ ելանք Սգրակը։

Գեղը լուին եւ տխուր էր. Քրդերու կանայք միայն կ'երեւէին, քանի մը ալեւորները, եւ Հայերը։ Զօրքն եկեր ու Տիապին և Գօչօղլի Մուստաֆային անասուններ եւ գոյքերը տարեր էին, սակայն Տիապն ու Գօչօղլին խոյս տուած էին։ Մենք տեսանք Տիապին մայրը, հուժկու եւ յաղթանդամ կին, զոր քանի մը զօրքեր կը տանէին, կամ ինքն կ'երթար, նժոյգի մը վրայ նստած, թուրը մէջք, ատրճանակներ կապած, եւ քանի մը գրաստները բարձած։ Գեղին Սէյիտը կը բացատրէր մեզ թէ՝ Տիապը՝ դեռ 25 տարեկան բարեսիրտ երիտասարդ մի է, բայց իր մայրը խիստ չար կին մի է, որդին իւր մօր չարութեանց զոհ կ'երթայ։ Տիապի տունը փառաւոր չէնք մի էր գեղին մէջը, ամէնք կը պատմէին անոր հարստութիւն, և Քրդու կանայք կ'աւաղէին զինքն։

Հայոցս հնադոյն եկեղեցի մի կար գեղին գլուխը, որուն քով կը բղխին երկու ակունք սառնորակ, ջինջ, և առատ ջրոց, այս ականց վրայ ընդ հովանեաւ ընկուզենեաց նստանք, և Սէյիտն ու գեղացի Հայք պատմեցին զօրաց գալն ու գնալն եւ իրենց գեղին հին եւ նոր անցքերը։ Ես նայելով գեղին աջանչելի դրից

ընդարձակ գերեզմանատան, հրապուրիչ տեսարաններուն, զանազան հարցումներ կ'ընէի։ Քիւրդ Ջանթիկ եւ Մողործորցի Մարգար քեահեան կը պատասխանէին։ Նոքա մեր քովի երկու ականց համար ըսին. «Այս մէկին մէջ կոյս աղջիկ մը կայ, որոյ ձայնը երբեմն երբեմն կը լսուի, և ջուրի եկող գեղի աղջիկներուն կ'երեւայ, հրեղէն է։ Նա կը բռնէ կը գոցէ ջուրը երբեմն, եւ երբ մատաղ կտրենք, ջուրը թող կուտայ»։

—Ահաւասիկ Նայեադ մը։ Ջուր մը, արդարեւ արժանի Յաւէրժահարսանց։ «Իսկ մէկալ ակնէն ելած ջուրը Անկջի ջուր կ'ըսենք. որու ականջը ցաւի կամ գոցուի, կուգայ կը մըտնէ այս ակնէն ներս, որ ական չինուած է, եւ 10 քայլ յառաջ երթալով կը հանի քարէ աւազանի մը, ուստի այս ջուրը կը բղխի. հոն մոմ կը վառէ. ջուրէն կը կաթեցնէ ականջը, եւ դուրս կ'ելնէ առողջացած»։

—Արդարեւ ջուր մը, որոյ չափազանց պաղութենէն գուցէ այս բանը կը լինի։ Ունին աղբիւր մի եւս գեղէն վար. զոր Դողի աղբիւր կը կոչեն. որոյ ջրով կը լուացուին դողցըւողներ եւ կը բժշկուին։ Բազում սուրբ ծառեր ալ կային. որոց վրայ լաթի բժժանքներ կապած էին։ Գեղիս հողն ու բոյսն ալ զօրաւոր է։ Ա՛յս էր Ագրակն երբեմն հարիւրաւոր տներով հայաբնակ գեղ մը, որոյ հողն, բոյսն ու ջուրն բանաստեղծական եւ նուիրական, արժանի պաշտելի լինելու. բայց

քուրդը խրթնեցուցած էր զինքն ։

Ագրակէն դարձանք Կարմիր վանք․ որոյ սահմանը ձորով մը կը բաժնուի․ ընդարձակութիւն վանքի հողերուն երկու ժամով կը շրջապատուի․ ընտիր երկիր, խոտաւէտ եւ մացառուտ 200 քիլէի սերմամուտ արտեր ունի, զորս թափու ընել տուած էին Մուրատեան Աւետիս էֆ․ի անուան, բայց մեծաւ մասամբ Ագրակցիք կամ Տիապ տիրած էին՝ իրենք կը մշակէին․ ուրիշ անուանի քիւրդ մը դըրուած էր վանքը՝ իբրեւ պահապան եւ իբրեւ մարաբայ միացեալ հողերուն ։ Կարմիր են հողն՝ եւ քարինք այս բարձրաւանդակին, որոյ վրայ շինուած է վանքը, այս է պատճառ Կարմիր-վանք կոչուելուն ։ Տաճարը՝ որոյ տեղը միայն յայտնի էր, եւ քովի փոքր մատուռն մը կամարն ու երեք որմերը միայն կային Ս․ Նշանի անուամբ կառուցեալ եղեր է․ երբեմն հռչակաւոր ուխտ, ուր բազմաթիւ ձեռագիրներ գրուած են ։ (Այլէ Սեւ լերան Կարմիր վանք, ուր Բարսեղներ եւ Ստեփաննոսներ ծաղկեր են) ։ Տեսայ կուրանալի աչքովս այն տաճարին սրբավայրը անասնոց աղբերով լի, ուր երբեմն «խումբ առեալ դասք քահանայից, սարկաւագաց, դպրաց եւ կղերիկոսաց կը մատուցանէին բուրումն անուշահոտ խնկոց, ստաշխից եւ կինամոնաց» ։ Յաջկոյս որմին քակեալ խորանին քարի մը վրայէ օրինակեցի «Յիշատակ է Ս․ խաչս Մխիթար քահանային ի թվ․ ՉԻ․»

իսկ ի ճախմէ՝ «Ս․ Խաչս Մինայ անտեսին․ Թվ․ Ջ․ Ի․ ։»

Քանի տարիներ առաջ՝ Խարբերդի Ղուլայ վանքի Գէորգ Վ․ Առաջնորդ լինելով Չըմշկածագի, իբր 40 հազար ղրուշի հանգանակութեամբ եւ ժողովրդեան աշխատութեամբ պարիսպ մը կանգնեցուցած է չըրջապատ վանուցս եւ երկու մեծ սենեակներ, ընդարձակ ախոռ մը, եւ մարագ մը, բայց մատուռը մնացեր աւեր, աջակցութեամբ Մուրատեան Փիլիպպոս եւ Աւետիս էֆէնտիներուն։ Երբ կը հանիս պարսպի դրան առջեւ, դրան շէնքն եւ ճակտի փառաւորութիւնը կը հիացնէ զքեզ, որոյ վրայ քանդակեալ է Օսմ․ Թուղրան, եւ երկու կողմը աստղ ու մահիկ։ Իսկ ներսը տեսանք արդէն։ Դրանէն քիչ մը հեռու նորաշէն աղբիւր մը կայ, զոր շինելու համար Հրաշագործ Սրբազան վեց հազար ղուրուշ հանգանակեր էր ժողովրդէն։ Աղբիւրին ճակատը գրուած է «Սուլթան Համիտ Խան, կեցցէ յաւիտեան։ Աղբիւր բարեհամ բժշկութեան, հաւատացելոց սրբութեան»։ Եւ այս աղբիւրի աւազանին մէջ խաչահանգիստ կ'ընէ եղեր ուխտաւորաց։ Շատ քիչ է մնացեր Սրբազանն այս տեղ․ կ'երեւի թէ շատ չէ բաներ իւր պրոպատիկէն․․․․․։ Վանքիս գրքեր եւ գոյքերը քաղաքի մէջ կը պահուէին։

Չմշկածագ՝ թէ ի քաղաքին եւ թէ ի գիւղօրայս ունի աւերակները, արժանի հետա-

զօտութեան, հանգար եկեղեցիներ եւ վան-քեր ալ կան, յորս երեւելի է Խաչիշարու Ս. Կարապետի վանքն, որոյ շէնքին մնացորդը դեռ հոյակապ եւ գեղեցկակերտ՝ իրաւամբ կը գրաւէ մարդոյ հիացումն եւ արցունք կը քամէ տեսնողաց աչքերէն. ուր «ԻՋ վարդա-պետք կային երբեմն բացի սարկաւագներէ-տիրացուներէ եւ սպասաւորներէ». Ճշմարիտ դպրութեան վանք մը եղեր է. իւր բազմա-թիւ ձեռագիրներ եւ անօթներ տեսանք Ցաղ-թուկ գեղը, զորս տես ի կարգի յիշատա-կարանաց։ Մեծաշէն վանքի մը աւերակ եւս կայ Վ.ասկաւան գեղին կից, զոր կը կոչեն Վաշիկաշ-վանք, որոյ մէկ խորան դեռ շէն, եկեղեցի է գեղացւոց։

## ՉՄՇԿԱԾԱԳՈՒ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ԹԵՄՔ

**Պաղամ.** Տունք Հայոց 280: Վարժարան 3. տարեկան ծախք վարժարանաց 6200 ղրուշ։ Աշ. 180 մանկ. 15. աղջ. (բացի Միաց. Ընկ. վարժարանէն) :

### ՀԱՅԱԲՆԱԿ ԳԻՒՂՕՐԱՅՔ

**Հազարի.** 1. Եկեղ. Ս. Երրորդութիւն. վարժարան 1։ Աշ. 45 մանկ. 10 աղջիկ։ Տունք Հայ. 50 :

**Մամա.** 1. եկեղ. Ս. Գէորգ։ Վարժ. 1։ Աշ. 20 մանկ. 10 աղջ: Տունք Հայ 40 : Իբր 36 տան չափ եւս Հայ-Հոռոմք։

**Խնգրկիկ.** Հայ-Հոռոմ են. 8 տուն :

**Սաքիրկէս.** եկեղ. ոչ գոյ։ Տունք Հայ. 2։ —Հայ-Հոռոմ 2 տուն։

**Բազաքուն.** 1. եկեղ. Ս. Աստուածածին։ Տունք Հայ. 21։

**Միասուն.** (կէմիճի). 1. եկեղ. Ս. Աստուածածին : Վարժարան 1 : Աշ. 55 մանկ. 5. աղջիկ : Տունք Հայ. 54 :

**Կարմրի.** 1. եկեղ. Ս. Աստուածածին : Վարժարան 1. Աշ. 20 մանկ. 5 աղջիկ : Տունք Հայ. 40

**Մարօրխայ.** 1. եկեղ. Ս. Աստուածածին : Տունք Հայ. 35 :

**Սիսնա.** 1. եկեղ. Ս. Յօհաննէս : Վարժարան 1 : Աշ. 25 : Տունք Հայ. 32 : (Մանկապարտական անուամբ Ընկ. մի կայ):

**Բրեխի.** 1. եկեղ. Ս. Գէորգ : Տունք Հայ 26 :

**Բրասեիֆ.** 1. եկեղ. Ս Աստուածածին : Տունք Հայ 3 :

**Թակէ.** (Թեքէ) 1. եկեղ. Ս. Թորոս : Տունք Հայ. 5 :

**Ցաղքուկ.** 2. եկեղ. Ս. Մինաս և Երեք Մանկունք : Վարժարան 1 : Աշ. 25 : Տունք Հայ. 25 :

**Խաղիօար.**—Աւերակ հոյակապ վանք Ս. Կարապետ : Տունք Հայ. 3 :

**Ջրնձոր.** 1. եկեղ. Ս. Աստուածածին : Տունք Հայ. 3 :

**Փաշա-մէզրէ.** եկեղ. ոչ գոյ : Տունք Հայ. 3 :

**Մանկունակ.** եկեղ. ոչ գոյ : Տունք Հայ. 3 :

**Սօզանի.** 1 եկեղ. Ս. Գէորգ : Տունք Հայ. 6 :

**Բրաղի·** եկեղ. ոչ գոյ : Տունք Հայ. 6 :

**Բաղրաթիլ.** 1. եկեղ. Ս. Յակոբ : Տունք Հայ. 12 :

**Թումա-մէզրէ.** 1. եկեղ. Ս. Լուսաւորիչ : Տունք Հայ. 26 :

**Բաղչէնիկ.** 1 եկեղ. Ս. Աստուածածին: Տունք Հայ. 15:

**Ղարասար.** 1. եկեղ. Ս. Թորոս : Վարժարան 1 : Աշ 30 : Տունք Հայ. 24 :

**Էրեց-Սզրակ.** 1. եկեղ. Ս. Խաչ, վարժ. 1 : Աշ. 30: Տունք Հայ. 34 :

**Սրղական.** եկեղ. ոչ գոյ : Տունք Հայ. 4 :

**Խաչօուն.** եկեղ. ոչ գոյ : Տունք Հայ 6 :

**Սզրակ.**—Կարմիր վանքի մօտ : Եկեղ. Ս. Յակոբ : Տունք հայոց 9 :

**Վասկաւան·** եկեղ. Վասլիկայ-վանք : Տունք Հայ. 18:

**Ուլուղայայ.** 1. եկեղ. Ս. Մինաս : Տունք Հայ. 4:

**Կապան-մասէն.** Աւան. 2. եկեղ. 1. վարժ. Աշ. 50. Տունք Հայ. 100

Հայարնակ գեղերէն գրեթէ շատ քիչ կան որ Թուրք եւ Քուրդ խառն չունենան․ տեղ տեղ Բողոքական ալ կայ։ Թուրքեր առ հասարակ բարեկիրթ են եւ դժգոհութիւն չեն պատճառեր։ Աւելի ազնիւ են Ս․ Թորոս Նահիէի գեղերու բնակիչ Թուրքեր, որք ընդհանրապէս Պոլիս կառավարութեան դրաները, նախարարաց տները, եւ մինչեւ կայս․ պալատան մէջ պաշտօն վարողներ են։ Մաքուր եւ ծանրագնի կահ կարասիներ ունին․ եւ ճաշակաւոր տներ։ Իրենց գեղերու անուններն զուտ հայերէն են․ ունին թաղերու, տներու եւ այգիներու անունները․ զորս կը կոչեն «Տէր Պօղոս բաղի, Մինաս թաղի, Թորոս էվի» եւն։ Նկեղեցեաց տեղերը, իրենց գործածած բառեր եւ ինչ ինչ սովորութիւններ կ'ապացուցանեն այն աւանդութիւնը թէ՝ Հայ են եղեր, եւ յետոյ տաճկացած։ Իրենցմէ շատերն ալ կը խոստովանին զայս։

# ՁԱՐՄԱՆՃԱԳ

Մեկնելով Չմչկածագէն, լեռնոտ ուղիով, տեղ տեղ ալ ձորէ եւ փոքր հովիտէ անցնելով, իջեւանեցանք ի Ցաղթուկ գեղ, որուն մօտիկ են Բրաստիկ եւ Թակէ փոքրիկ գեղերը, սիրուն, ջրաւէտ եւ ծառազարդ, որոց բնակիչ Հայք թէեւ սակաւաթիւ՝ այլ չէնքով չնորհքով էին․ իրենց խօսքեր եւ

կենցաղն մարդավարի ։ Աստ չենք ուզեր քըրդի մը անիրաւութեանց վրայ խօսիլ զորմէ գեղացին խնդիր տուած էր կառավարութեան, մեծ ջանք կ՚ընէին եւ մեծ յոյս ունէին կառավարութեան վրայ ։ Ցաղթուկ գեղի մէջ մեր ասպնջականն էր Պետիկեան Յակոբ աղան, անկեղծ, բարեսիրտ եւ առատասեղան անձն, նահապետ՝ իւր անուան համաձայն. դեղացիք ամբողջ գոհութիւն կը յայտնէին թէ ի՞նչպէս անձնուիրաբար հասարակաց օգտին համար տիւ եւ գիշեր կը ջանայ, զոհողութիւն կ՚ընէ, ու գեղի վնասիչները՝ իրեն անձին թշնամի են եղեր, ըսպառնալիք ու վտանգ հասցնելով իրեն, բայց Աստուած պահպաներ էր զինքն, եւ օրհնութեամբ լցեր էր իւր շտեմարանն եւ իւր ընտանիքն ։

Այդ երեք գիւղի հայերն ալ ժողված էին Պետիկեանին տունը, եւ իրենց գիտութեամբ հոն ի պահ դրած էին Խարդիշարու Ս. Կարապետի վանքին եկեղեցական անօթներ եւ մատեաններ ։ Ձեռագիրներու յիշատակարանները օրինակեցի. եւ ամէնքն միասին հաճեցան ընծայել ինձ մի մեծադիր Աւետարան, ընտիր, մագաղաթ. «գրեալ ի Հըռովմկլայ, յաւուրս Հեթմոյ արքայի եւ Կոստանդին կաթողիկոսին» ։ Արդարեւ անգին պարգեւ. օրհնութիւն եւ գոհութիւն իրենց ։ Այդ Աւետարանը իբրեւ իմ յիշատակ ես նուիրեցի Ղալաթիոյ Ազգ. Մատենադարանին,

գրելով Նաւիրողաց յիշատակն եւս։

Օգոստ. 20էր մեր Ցաղթուկէն ելած օրն, պահ մը ձորերու միջով գնացինք, ապա ելք եւ մացառներու կը պատահէինք. մեր մէկ կողմն կը տեսնանք Խադիշար գեղը լեռան մը գոգը, եւ գեղի տներէն վեր յաղթ ընկուզենաց մէջէն բարձրացուցած իր ջախջախեալ գլուխը կը ցուցնէր մեզ Խադիշարու Ս. Կարապետի հռչակաւոր ուխտին հոյակապ տաճարն՝ աւեր և ամայի։

Երկու ժամէն կ'իջնանք Սակէտի գեղը՝ երբեմն հայերով լի, այժմ 7 տուն միայն ունի, ընտիր հովիտ մը, զոր քրդեր եւ աղաներ տիրած են ամբողջովին. ուր կայ կարմիր քարերով աղւոր եկեղեցի մը. խաչքարեր, մահարձաններ իր չուրջը. կը փափաքեմ համբուրել, բայց տաճարին դուռը քարերով շարուած է, մէջը խոտ են լեցուցեր...։ Այլ եւս Զարսանճագն ենք, չարչարանաց աշխարհը։ Մեր գնացքը Խարբերդի ետեւէն է։ Կ'անցնինք Փայիկ եւ Աղզոնիկ գեղերէն. վերջնոյն մօտ կայ մի գեղեցկակերտ եկեղեցի, եւ գրեթէ կից անոր՝ մի մեծաշէն տուն, որ Յուսուֆ աղայինն է։ Ապա Ավչաքար գեղն ընդարձակ եւ վայելչադիր, ուր հանգստացանք քիչ մը, ուտելով համեղ ձուազեղ եւ մածուն, եւ մեղրահամ ձմերուկն։ Աստի քարուտ ճամբաներով հասանք Գումրաշ գեղը քրդաց, ուր մեզ առաջնորդող ոստիկան Թէլօն յանձնարարութիւն ունէր ի-

րեն հետ որոցմէ որ անկ էր, եւ զմեզ թողլով՝ առանձինն յառաջացաւ գեղապետ Ցէյզօյին վրանը, եւ այդ անհեթեթ յաղթանդամ քրդուն քանի մը բաներ աւանդեց։ Ցէյզօն քաղաքավարութիւն ընելու համար եկաւ զմեզ հրամցուց որ նստինք եւ ճաշենք, մենք շնորհակալութեամբ հրաժարեցանք։

Օրը կը մթնի, եւ մենք թէպէտ կը տեսնանք գեղերը եւ Բերդակու բարձր բերդին գագաթը, բայց բաւական հեռու է Բերդակըն, ուր որոշած ենք իջեւանիլ։ Րամազանի լուսինը երեքօրեայ է. Բալուայ ջուր կամ Եփրատ սկսաւ փայլփլիլ եղջերաձեւ Մահիկին լուսով.—Օ՜, ի՜նչ ոգեւորութիւն կ՚ազդես յիս, ո՜ ջուր։ Բայց մենք ճամբան կորուսինք, ինկանք Հին Բերդակի աւերակաց մէջ, եւ կողմէ կողմն դառնալով հազիւ Բերդակայ այգեստանները մտանք. գիշերուան ժամ երեքին մօտ էր՝ դժուարութեամբ հայու մը դուռը զարկինք, տանուտէրք-Մանուկ եւ Գասպար ալեւոր եղբարք, հազար զգուշաւորութեամբ ներս առին զմեզ։ Պառկեցանք տանիքը։ Բերդակէն անդին մեր ջորեպան եւ ոստիկանն ճանբայ չ՚գիտեն. պաշտօնագիրն ղրկեցի Միւտիրին եւ ձիաւոր ոստիկան մը խնդրեցի մինչեւ ի Փէրին։ Շատ քաղաքավարութեամբ ներողութիւն խընդրեց ոստիկան չունենալուն, բայց վստահացուց թէ՝ երկիւղ չ՚կայ, եւ թէ՝ կը ջանամ մէկը գտնել մինչեւ առաւօտ։ Առաւօտ էր,

մենք ծառերու մէջ, ջրերու եզերքը նախաճաշիկ կ'ընէինք, կ'ըսէինք եւ կը լսէինք Բերդակցի Հայոց հետ. եւ ահա տասներկու տարեկան քուրդ տղայ մը ներկայացաւ աշխուժիւ, յայտնելով թէ՝ Միւտիրէն ղրկուած էր մեզ հետ ի Փէրին ուղեկցելու։ —Անունդ ի՞նչ է. —Սըլօ։ Ես Զաւթիա եմ։ Քիչ մը վարանեցանք։ Նա մեծ աշխուժիւ խօսեցաւ, —Ես կտրիճ եմ, ճամբաները քաջ գիտեմ, կրնամ ձեզ ապահով տանիլ, այդ կողմի մարդիկը բոլորն ալ կը ճանչնամ ես։ Զուարճացանք իր ձեւին եւ խօսելուն վրայ, եւ ընդունեցինք զինքն։

Քահանայն եւ քանի մը անձինք հետս եկան, ժամէ մը աւելի կը տեւէ Բերդակայ մէկ ծայրէն միւս ծայրը, տներ եւ այգիներ ցրիւ ցրիւ տարածուած, չէն եւ աւեր, դիրքը ճաշակով ընտրուած է, եւ ըստ այնմ նաեւ դրախտներ ու բնակարաններ եղած են։ Իւր հին բերդը Բալուայ ջրոյն երկու կողմը կը գտնուի, այս ջուրը կը կտրէ Խարբերդի լեռները եւ Տէրսիմն իրարմէ։ Բերդակն ամուր եւ գեղեցիկ դուռն մի է համայն Տէրսիմին, եւ այդ լեռնագաւառաց բնակչաց գլխաւոր տեղին, ուր դեռ ամէն շաբթու օր մը կը ժողվուին ի վաճառ (բազար)։ Բերդակ շատ շուտ կը ծաղկի, եթէ քաղաք կամ կեդրոն մը լինի։ Իր մէջի հին շէնքեր կը ցուցնեն Բերդակայ հին բնակչաց վայելչասիրութիւնը. իսկ արդի բնակիչներ հետզհետէ կ'եղծանեն մնացեալնե-

րը, եւ իրենց մէջ՝ Թէպէտ չէխի. կարդացողի, Թէքքէի, մէտրէսէի պէս բաներ ունին, բայց մեծաւ մասամբ զուրկ են բարի վարմունքէ։

Հայք եւս կրթութենէ զուրկ, եւ ժամանակի անտեղեակ են, ունին արտեր, այգիներ, քանի մը մանր արուեստներ, բայց աղքատ են։

Գեղին վերին ծայրը հոյակապ տաճարն Ս. Թորոսի՝ կանգուն կը կենայ, մեծամեծ վիմօք, գմբէթով, ընդարձակ եւ գեղեցկակերտ շինուած մը, որ հիացումն եւ պատկառանք կ՚ազդէ մարդոյ. Թէպէտ գըմբէթն ինկած է, այլ կամարներ եւ խորանները կը կենան. առաջին կամարին մէջ նոր պատ մը քաշելով, ըրեր են եկեղեցի Հայք որոցմէ իբր 30 տուն կը բնակին հոս։ Ս. Տաճարի միւս մասերը լի էին քարերով, հողերով, աղբերով։ Իսկ դրսի դրան տակէն կը բղխի մեծ ակն ջրոյ սպիտակ, բարեհամ եւ սառնորակ։ Ս. Թորոս մեծ վանք է եղեր, կ՚ըսեն տեղացիք, եւ սար Թեմն է «Ս. Թորոս Նահիէն», այժմ Զմշկածագու գաւառ համարուած։ Այդ գեղերու Հայոց համար գրուած է արդէն Թէ տաճկացած են ժամանակաւ։ Ս. Թորոսի տաճարը կ՚անուանուի նաեւ Ս. ՏԻԿԻՆ։ Ո՞ր Հայ տիկնոջ յիշատակն է արդեօք։ Կը ցուցնեն մեզ նաեւ երկու աւեր եկեղեցիներ. եւ եթէ ընդունինք՝ ամենուրեք այս գաւառիս մէջ լի էին վան-

քեր եւ եկեղեցիներ : Համբուրելով զՍ. Տիկինն , մեկնեցանք :

Դեռ գեղին ծառերու միջով կ'անցնէինք , եւ ահա խումբ մի մարդոց , որոց ամեհի ձիոց վրնջիւններ , անոնց վրայի արծաթեայ եւ պայծառ սարաններ , ծառաներ , եւ հեծելոց հագուստն ու կապուստը կը ցուցնեն թէ՝ նշանաւոր անձինք են . արդարեւ Զարսանձագի կառավարութեան Տաճիկ եւ Հայ ազաներն եւ Հայոց առաջնորդ Յովհաննէս վարդապետն էին , որք բողոքած լինելով իրենց գայմագամին վրայ , կանչուած էին ի Խարբերդ՝ դատուելու : Տեսակցեցանք , եւ Առաջնորդն խոստացաւ փոյթ վերադառնալ :

Հինգ ժամ անցեր էր , հասանք Փաշավանք գեղ , որ Խասք պէյի սեփականութիւնն էր , ուր կը բնակէին ութսուն տունէն աւելի Հայք , որոց տները , այգիներ , հողերը , մացառները , լեռները ամբողջ պէյին կը վերաբերէին . եւ մէկ բոպէի մէջ կրնար պէյն զիրենք հանել այն տեղէն , կամ մէկին տունն ու այգին՝ միւսին տալու : Ասոնց վրայ պիտի խօսինք : Ապա կը հանդիպինք Հայոց Վասկերտ գեղը՝ ծառազարդ եւ սիրուն դիրքով . ուր է մեծակառոյց տունն Քիւչիւք աղային , որ տէրն է այս գեղին : Ժամէ մը զկնի կ'իջնանք ՄՆՁՈՒՐԻ գետը , (մունզուր սույի) , որ կուգայ Մնձուր լեռնէն , ջուր յստակ , երկնից օրինակ , պատուական կար-

մրախայտներ իր մէջ կը խայտան․ իսկ վըրայի կամուրջը կը յիշեցնէր վերջին դատաստանին մազէ կամուրջն, բեկբեկուած, կախուած, վրայէն անցնողն զինքն կը պատրաստէր յաւիտենական աշխարհին համար․ այլ երբ անցանք, խմեցինք ու խմեցինք այդ անյագելի ջրէն, լուացուեցանք, եւ կազդուրուեցաւ մեր ողջ անձն։

Աստի փոքրիկ ել մը ելնելով, մեր առջեւ տարածեալ կը տեսնենք նեղ հովիտ մը, որոյ մէկ եզերքէն կը հոսի գետակ մը։ Փէրինի մօտէն կ՚անցնի այս ջուրը, բայց խիստ ծանօթ կը թուի ինձ իւր տեսքն եւ իւր համըն ու հոտը։ Ջուր, դու կուգաս Տարօնոյ Ս․ Կարապետի սարէն։ Իննակնեան աղբերաց վերեւէն․, դու Մէրգէմէրու ջուրն ես, Բինգօլի Թոռն, որ Վարդոյ գաւառէն կը մտնես ի Քեղի, եւ հոս՝ Քեղուայ ջուր կը կոչուիս։

Ջուր, ո՞ւր այդպէս շտապ շտապ, փախէ փախ, հարցմունք ունիմ քեզ, պահ մի պահ, բան մի բան, ասա ինձ ու գնա։

Կը փախչէր նա լալագին, կարծես հալածիչներ ինկած էին ետեւէն, եւ կ՚երթար կը փարէր Մնձուրայ վտակին, երկուքը մէկէն իբրեւ քոյր եւ եղբայր կը մտնէին Բալուայ Եփրատին մայրենի ծոցը։

Երեկոյեան ժամն 12 է, հասանք Ջէրին գեղը քրդաց, կալւորները այս զովագին ժամուս խաղ կանչելով ցորեն կը կասեն, գեղին

գամբռները հաչելով վրանիս կը վազեն․ քըր-ղայց տուէք, կըճէք եւ լամուկները զմեզ կը դիտեն։ Դեռ ժամ մը կայ մինչեւ ի Փէրին։ Քսան վայրկեանէն հասած ենք Փէրինի այգեստանները, այգիներու մէջով է ճանբան։ Ի՞նչ գեղեցիկ լուսնակ գիշեր, չէն այգիներ, գետակին տեսքն ու ձայնը․ ահա Փէրինի կալերը, եւ գեղի տներէն ճրագներ իրենց շառաւիղները կը բլբլացնեն։ Նեղ ու քարուտ փողոցներէ անցնելով մտանք Հայոց եկեղեցին․ եւ ի վերայ տանեաց հագչեցանք։ Հոն էր Առաջնորդարանը։ Հետեւեալ օրը Ազգ․ ժողովականներ եւ երեւելիներ կանչելով եկան ի տես, ընդհանրապէս մեծ յուսահատութեան մէջ էին, մէկ քանիներ հազիւ կ'ուզէին պատմել իրենց վիճակը, եւ խստիւ կը պահանջէին՝ որ Պատրիարքն ու կեդր․ վարչութիւնը ունենային մեծ ոյժ․ քանզի Թագաւորին եւ Նախարարաց քով կը նստէին, կը տեսնուէին, եւ կը խօսակցէին։ Կ'ուզէին որ հասկցնէի սոնց կրածները Պատրիարքին եւ Վարչութեան․ եւ այսքան տարիէ ի վեր իրենց յարուցած դատը գլուխ հանէին, դատապարտել տալով Չարսանճագի անիրաւ բռնաւորներ, իրենց տալով մշակելու երկիրներ, տէր ընելով զիրենք իրենց տներուն եւ այգիներուն եւն։

«Մեր խնդիրը յարուցանելէն առաջ աւելի քիչ չարիք կը կրէինք, կ'ըսէին, այժմ տասնապատիկ ծանրացած է մեր դատն ու

գրկանքն , մեր կնիկները եւ մեր աղջիկներ մեր չեն , ինչափի տուրքը մենք կուտանք՝ կալուածն աղային է , հողային տուրքը մենք կուտանք՝ հողն աղային է , եզն ու քրտինքը մեր՝ արդիւնքն աղային է ։ Աշխարհիս երեսը թռչունն ու մրջիւնն իրենց բոյն մը ունին . Ջարսանճագցի ժողովուրդն տուն ու հող չունի . . . ։ Ալ մեր ինչո՞ւն համար է Պատրիարք , ինչո՞ւ Առաջնորդ , ինչո՞ւ համար էկեր ես դու հոս . . . ։

Այնքան սաստիկ յուզմամբ եւ կրիւք կը խօսէին , եւ այնպիսի լեզուով մը , որ երեք օր ընդունայն եղան բոլոր իմ յուսադրութիւններս եւ յորդորներս , ապա տասնի չափ անձինք քիչ մը մեղմացուցին իրենց խստութիւնը ։ Ի՞նչպէս ալ մեղադրէիր , լրագրի երես տեսած չէին , քաղաքականութենէ եւ աշխարհի ընթացքէ անտեղեակ , մերձակայ քաղաքներու հետո անգամ անհաղորդ , ուսմունք , գիրք իրենց անծանօթ , խորհ՚ն կարեւորութեան արժանի ։ Իրարու վրայ ալ անվստահ էին , կը վախնային որ մէկնումէկ մատնէր պէյին թէ գանգատ ըրած է նա պէյին վրայ ։ Եթէ այրի կին մը , կամ աղջիկ մը , կամ տուն մը կամ այգին՝ պէյը կը խլէր մէկէն կուտար միւսին , մեծ պատճառն հայերն էին , որ կամ իրենց մատնութեանց վարձքի տեղ կ՚ստանային , կամ աւելի գին , կաշառք , կապալ կուտային պէյին , խնդրելով որ զայն առնէր Մարտիրո-

սէն տայր Կիրակոսին ։ Կային այնպիսի կարգ մը հայեր ալ, որք իրենց այս տարօրինակ ճարտարութեամբ, կաշառք կ'առնուին ժողովրդեն զոր կը մատնեն, պատիւ կը գտնէին պէյերէն՝ որ հնարքներ հնարեն ։ Ոմանք եւս բողոք յարուցանել կուտային ժողովրդենէն պէյերու վրայ, եւ ծախք կը ժողվէին, պարգեւ կ'ստանային պէյերէն եւ բողոքը կը խափանէին, կամ գոհութեան գրեր անգիտաբար ժողովրդեան կնքել կուտային ։ Ցաւալի էր տեսնել Հայերէն շատեր արբեցող եւ հայհոյիչ, որովհետեւ գաւառը առատ գինի կը բերէ, եւ զոր կրնան փոխադրել ի Կարին եւ ստակ վաստկիլ, բայց լաւ համարած են խմել ամբողջ, եւ անկարգութիւն ու վնասներ չահիլ անձանց ։ Ցաւելով կը գրենք այս ճշմարտութիւնները ։

Գաւառիս Հայն ագէտ լինելով հանդերձ՝ իր պահքին, հաւատքին եւ աղօթքին պինտ է, յաճախ փորձ ըրած են բողոքականք եւ չեն յաջողած որսալու ։ Ինչպէս բնական է այսպիսի տեղեաց, կախարդական բաներու վրայ շատ կը խօսին, եւ թուղթ նայելու, թուղթ գրելու շատ կը հետեւին ։ Ֆրանգ Կարապետ անուանեալ ճարտար ու զուարճախօս հայ մը կը խօսէր թէ՝ — « Հայր սուրբ, այս երկիր դիւանական բաներու շատ կը հաւատան, իմ խելքս չհասնիր ։ Իմ հարս հիւանդ եղաւ, ըսին դիւանական է, որ չորս գիրք Աւետարան կարդալ կուտայի ։ Զօր

ըրին թէ թուղթ հայել տուր, հայել տուր։ Ա՛յ հա՛յ, դիւանական է ըսին․ Ջին կայ։ Ո՛վ բերենք, ո՛վ չբերենք, թիլ դեղի Մօլլան բերենք, էնի ջիներ կը ժողվէ։ Կնիկ մարդ անխելք է, բայց խօսքը անց է, չկրցայ փողպատս (եախաս) ազատել, մօլան բերինք։ Եկաւ, նստեր կը պտպտայ (մնջիկ կարդալ), եղէգ մը ուզեց, դանակ մը հանեց, գետնէն դանակի բերնով կը ժողվէ եղէգի մէջ կը լեցնէ։ — Դօ էդ ի՞նչ է կը ժողվես, մօլայ։ — Ջին է, դեւ է կը ժողվեմ։ — Ո՞ւր է, — Ահա հա՛, կ՚ամեն ինծի, չե՞ս տեսնար։ — Չէ, աղբէր, քօռնամ թէ բան մը կը տեսնամ։ Աչքերս կը չփեմ,. բան չկայ։ — Մենք կը տեսնանք, կ՚ամեն։ — Էհ, աղէկ։ ժողվեց լցեց եղէգը, բերանը ամեց, որ չը փախչին, տուեց ինծի ու ասաց․ — Գիտի տանիս տեղ մը խորես։ Տեղ մը ցցուց։ — Է՛, փարայ տուր։ — Աղէկ, թէ որ հարսս աղէկցաւ տամ։ — Չ՚է, փարայ տուր։ Զօր արին։ Հանինք երկու հինգ ղուրուշնոց տուինք։ Զերթար։ Նեղեցայ։ Գնաց որ եաքէն գայ մնացածն առնէ։ Հարսս չաղէկնար։ — Էս ու էն կ՚ամեն․ — Դու չես հաւատար։ — Է՛, հիմայ դեւերը ժողվե՞ց մօլան։ — Հա՛։ — Կեցէք, ամի։ Եղէգը զարկեր էի առաստաղը, վար առի․ ահ ու որոտում ինկաւ նստողներու մէջ, թէ՝ վա՜յ, դեւեր պիտի ելնեն դուրս։ Մումը բացի, եղէգի ծայրը դրի մէջ բերնիս․ — Աղբէր դուք մէ՜

վախնաք, դեւեր Թող մտնեն իմ փորը ։ Բան չկայ որ մտնէ ։ Շատ այսպէս խաբեբայ բաներ ։»

Գ. Գասպար որ գիտնականութեան համբաւ ունէր, խառնակ գրերով տետրակ մը ցոյց տուաւ ինծի, «Սողոմոնի» էր տետրակին անունը, որոյ մէջ մարդոց բաղդ կամ ճակատագիր կը նայէր ։ Կենդանակերպից անուանք կարգաւ գրուած են, Խոյ, Կարիճ, Կշիռ եւայլն ։ Իւրաքանչիւր կենդանակերպին հանդէպ գրուած է «Ծնեալն եթէ կին է, աչեղ լինի եւ գեղեցիկ, առաջին այրն մեռանի, երկրորդով երանելի լինի ; իմաստուն եւ բաղդաւոր, այլ ի զաւակ չցնծայ,» եւայլն եւայլն ։ «Եթէ այր ծնանի, մեծագլուխ լինի, կարիճ, ինչ բանի ձեռք ձգէ, յաջողի, կնոջմէ խաբի, բայց վախճան բարի լինի. եթէ հիւանդանայ՝ ոչ մեռանի, այլ նոր բաղդի տիրանայ » եւայլն ։ Այս Խոյին ։ Կարիճին ալ՝ ձախորդ կամ յաջող կերպ մը, նոյնպէս եւ Կշիռին. եւայլն ըստ կարգին ։

Խեղճ կինը կամ այրը հաւատալով Թէ իրեն համար նախասահմանուած է լինել աղքատ, հիւանդ, դժբախտ, կը հալի չարունակ այն վիճակին մէջ ։ Ուրիշ մը, Թէ՝ երիտասարդական հասակին մէջ մեռանի պիտի, Թէ՝ ամուսինէն կամ ի զաւակաց չցընծայ. եւ այլն ։ Միշտ ախով ու վախով իր կեանքը կանցունէ ։

Անդին՝ «Գեղեցիկն, աչեղն, բաղդաւորն, իմաստունն» կը զօրէ կը զօրէ որ Սողոմոնի ըսածին պէս լինի, եւ չկրնար: Աւելի ճախորդն կայ, մինչեւ անգամ կը գուշակէ թէ «Այս կինն անհամեստ պիտի լինի կամ պարկեշտ, գող կամ արդար, սպանող կամ հաւատարիմ,» եւայլն:

Տիրելով այսպիսի գաղափարը գիրը՝ նայել տուողին երեւակայութեանը վրայ, կասկածներ անպակաս կը լինին տունէն: Բայց վարպետ Սողոմոնը ադոնց դէմ գրուածներ հնարած է, որ դիմեն թուղթ նայողին եւ գիր մը գրել տան կնոջ կամ առն հաւատարմութեան համար, եւ ամէն բանի համար: Թղթի վրայ պէտք է տող մը աննշան գծեր գծել, եւ ասոր տակը Արաբերէնի պէս քանի մը բառեր, եւ այդ թուղթը կարել պէտք է այն անձին գլխոյն կամ թիկանց ծածկոյթին վրայ, կամ այլ տեղը, կամ թաղել ճանապարհի վրայ եւայլն: «Սողոմոնին» աւելի ընդարձակ էջերը նուիրուած են ախտից եւ հիւանդութեանց, որ կ՚սկսի այսպէս. «Վասն գլխացաւի եւ փորացաւի, ծննդականի կամ թոքացաւի», եւայլն: Եւ ապա, —«Կոչեաց Սողոմոն զդեւսն եւ ասէ. Ասա ինձ զի՞նչ է անուն քո: Ասէ դեւն, անուն իմ Սէրլիք է, եւ մեք թուով բազում եմք:

Ասէ Սողոմոն, Զի՞նչ չարիք առնէք մարդոյ:

Ասէ դեւն, մեք բնակիմք ի ջուրս եւ

ի Ջրհորս , հարկանեմք զմարդ եւ զարհուրեցուցանեմք , խաւարեցուցանեմք զաչս եւ ցաւեցուցանեմք զմէջս եւ զգլուխս , երեւիմք երբեմն ի ձեւ աղջկան , երբեմն ի կերպարանս անասնոց ։

Ասէ Սողոմոն ; Ասա ինձ , ով պիղծ , զի՞նչ է ճար եւ դարման այդ ցաւոց ։

Ասէ դեւն․ Սեւ ագլոր զենուլ, արիւնով գրել [illegible] զայս Թլըսմ, ի ջուր դնել եւ խմել, չորս գըլուխ Աւետարան կարդալ, եւ Ս․ Յակոբայ մոմ վառել, եւ հարիւր ծունր դնել» ։

Այսպէս ամենայն ցաւոց համար մէկմէկ դեւ կը կանչէ Սողոմոն , որք իրենց անունը կուտան , եւ թէ՝ շատուո՞ր են թէ սակաւաւոր․ թէ՝ ուր կը բնակին , թէ՝ ի՞նչ կերպարանք կը կրեն․ որը շան , որը ձիու , որը եզան , որը գայլու , որը խոզի , որը կատուի , որը գերեզմանները կը բնակին․ որը փողոցները , որը ծառոց ստուերները , որը տներու մէջը , որը տանիքը , որը այգին , որը դաշտը , որը աւերակները ։ Թէ՝ ամենայն ախտից եւ հիւանդութեանց պատճառողք սատանաներն են , բայց բարեպաշտօրէն կը յայտնեն որ այսինչ ախտով բռնուածն այնինչ վանքն երթայ , Անարծաթ բժշկաց գերեզմանը յուխտ կը խրկեն ծննդականն , ոտքի ցաւէ բռնուողն՝ Ս․ Խաչի վանքը , սրտի ցաւէ բռնուողը Նարեկ թող կարդալ տայ , եւ գլխացաւն՝ Աւետարանը , եւայլն — ։

Գիշեր մը նստեր էինք եկեղեցւոյ տանիքը , ուստի կ'երեւին դաշտ եւ արտօրայք , եւ գիւղօրայք զուարճալիք , եւ Թեղուայ գետն ոլորուն կը հոսէր գեղին մէկ քովէն , լուսափայլելով լուսնակին լուսով , որոյ ջրոց մէջ մերթ ընդ մերթ չփուելով հոյն խոշորաձայն խշրտոցներ կը հանէր . — « Հայէ , հայէ , հայր տուրք , կ'ըսէ Ցրանգ կարապետն , վիշապներն եկան ջուր խմելու , վիշապ կը լինին այն օձերը որ եօթն տարի ադամորդւոյ երես չտեսնան , թեւեր եւ եղջիւրներ կունենան . մեծ են մեծ հա , մարդ , գազան , կը կլլեն , թէ որ Աստուծոյ հրամանքով հրեշտակներ երկաթէ զընջիլով չքաշեն երկինքը , երկրի երես մարդ չմնար կը կլլեն ։ Կը քաշեն կը քաշեն , կը թողեն հա՛նա բանձր լեռներու վրայ հազար կտոր կ'անեն » — ։

Փէրինէն կէս ժամ հեռի Հոշէ անունով Հայու գեղ մը կայ աչքերնուս առջեւ ջրէն անդին , գեղին վերեւը ճրագ մը կը վառի , կը ցուցնեն ինծի եւ կը պատմեն թէ՝ « Տարուայ չորս եղանակի մէջ Աստուծոյ գիշեր այս ճրագը կը վառի . ասկէ պարզ կը տեսնանք ։ Հոշեցիք չեն տեսնար . մարդ կը ղըրկենք որ երթան տեսնան թէ ի՞նչ է այն , գեղին քով կը հասնին , ճրագը կը կորսուի , բայց միեւնոյն ժամանակ ասկէ կ'երեւի ։ Սուրբի տեղ է ի՞նչ է այն , չենք գիտեր , մեր պապերն ալ միշտ տեսած են » ։

Արդարեւ ես ալ կը տեսնայի , բայց մէջ

ընդ մէջ կը մարէր փարոսի նման եւ դարձեալ կը լուսէր ։

Հոշէ ինչու ըսուած է այս գեղը ։ — Կը պատմեն թէ « Տիարպէքիր չշինուած , ուզեր են այդ քաղաքը հոս շինել , ընդարձակ հիմունքներ եւ կոփածոյ մեծ քարեր կան այստեղ , հիմն կը ձգեն եւ ամէն օր հիմանց վրան շէնքը կը շինեն , առաւօտ կ'ելնեն կը տեսնեն որ գործիք կորսուած են ։ Վարպետը կը հարցնէ՝ Գործիքն ո՞ւր է ։ Կը պատասխանեն « Հոս չէ , Հոս չէ » ։ Ուրեմն մեր շինելիք քաղաքին տեղը հոս չէ , տեղւոյն անունը կը մնայ Հոս չէ , Հոշէ ։ Յառաջ կ'երթան շինողները մինչեւ կը հասնին Տիարբէքիրին տեղը , հոն ճարտարապետն իր գործիքը կը գտնէ , կրողներն են կրած ։ Աստուծոյ կամքն այստեղն է , կ'ըսէ , ու կ'սկսի քաղաքը շինել » ։

Տէրսիմի Քրդաբնակ տեղերու վրայօք այնքան շատ բաներ կը պատմեն , որ եթէ ստոյգ լինէին , յատուկ հետազօտութեան արժանի պէտք է համարել այս լեռն ամբողջ , ուր ոչնչացած եւ դեռ չոչնչացած բաներ կրնան գտնուիլ ։ Պատմածներէն մաս մը հաւանական կը թուէր , կային չափազանցութիւնք եւս , մինչեւ առասպելաց կը հասցնէին ։ Քանի մը գեղերու անունները տուին , որոց աւերակաց մէջէն ամաններով արծաթ եւ ոսկի դրամներ ու զարդեր գտած են Քրդեր ։

Այս հաւանական է , տապատակութեանց

եւ մարտից օրերը թաղուած գանձեր են, որոց տէրերը կամ մեռնելով կամ չդառնալով, մնացած են թաղուած տեղերը։

Բարայրերը կ՚ըսէին, յորս լցուն հին գրքեր կան հայերէն. եւ այրերու դռները չարուած, տեղ տեղ բացուեր եւ երբ ձեռք ձգեր են որ գիրք մը հանեն, բոլորը փտած ու ապականուած՝ վար թափեր են մոխրի պէս։ Այս եւս կրնայ ճշմարիտ լինել դժբախտաբար, որ եւ բացատրութիւն չպահանջեր։

Բարայրեր կամ քարուկիր շինուածքներ, կ՚ըսէին, որոց մէջ սնտուկներով լցուն են ոսկի եւ արծաթ, եւ այլ կահ կարասիներ ու զէնքեր, բայց ոչ ոք կրնայ ներս մտնել կամ ձեռք կարկառել. զի աղաղակներ եւ որոտմունք կը լսուին, եւ չահէն կը մեռնին։ Մանաւորապէս հետեւեալը պատմեցին չորս անձինք, բայց «Մենք լսողաց ենք ըսին, տեսողաց չենք»։ Իբրմյեան Մանուկն իբրեւ իր աչքով տեսած այսպէս պատմեց,— «փէրինէն չորս ժամ հեռի Տէրսիմի ներքը Ղռան Աչիրաթէն Ապտուլլահ անուն քուրդն բլրոյ մը վրայ իրեն համար տուն մը կը շինէր ասկէ քան տարի յառաջ։ Ղռան մեծ քաղաքի պէս տեղ է եղեր եւ ունի չատ աւերակներ, քուրդըն իր տան հիմունքը պեղած ժամանակ քարուկիր կամարակապ ներքնատչէնք մը բացուեցաւ, պատահանէն, դռնէն նայեցանք որ կոյտ կոյտ ոսկի եւ արծաթ դրամներ, սըն–

տուկներ, մաքուր եւ ընտիր զէնքեր, ձիոց սանձ ու թամբեր, եւ կերպ կերպ հագուստներ. քրդերէն մէկը զինքն ներս նետեց եւ սնտուկ մը գրկելով դուրս վազեց, բայց ինկաւ մեռաւ, գանձուց պահպանող Աներեւոյթներ չարաչար զարկեր էին զինքն: Այդ սնտուկով ոսկին Աբդուլլահին տունը կը կենայ. կը տեսնան, բայց չեն կրնար ձեռք տալ կամ հատ մը վերցնել, իսկոյն կը մեռնին, Աներեւոյթ պահապան կայ քով: Աբդուլլահ իր տունը շինեց այդ կամարակապին վրայ, որ կ՚ըսուի նաեւ Եղերի տուն. ծակեր թողած ունի, ամէն մարդ կրնայ նայիլ տեսնալ պատմածներս, ինչպէս նաեւ տան մէջը դրուած սնտուկն ու ոսկին արծաթն» — : Այս Աբդուլլահն ուրիշ տեղերէ ալ գտած ունի եղեր հին դրամներ, Երմոյեան կ՚ըսէր թէ, «Նա երեք հատ ոսկի տուաւ ինծի՝ ամէն մէկն 12 տիրէմ. պղինձ ղուրուշնոցի մեծութեամբ, տարայ Խարբերդը փոխանակեցի մէկն 1140 ղրուշի Թվէնքչեան Գէորգէն» :

Այս ստոյգ էր թէ հին դրամներ եւ այլ հնութիւններ բաւական կը տեսնուէին այս գաւառի բնակչաց քով, եւ շատն ալ ժողվեր էին ու կը ժողվէին շահադէտներն: Պատմեցին նաեւ թէ փէրինի քովերը տաճիկ մը փորելով գանձ հանեց, վերցնէր պիտի, Աներեւոյթները՝ սեւ արաբ էին, չարաչար զարկեր էին զինքն, ցաւէն ու ահէն լեզուն լալ

եղաւ եւ ականջները խուլ։ — Անշուշտ իր երեւակայութեան պտուղ։ Ծածկեալ գանձուց համար նեւ արարք կամ աներեւոյթներու պահպանութիւնը սովորաբար ամէն գաւառի ժողովուրդը կը խօսի։ Հոս մեծ հաւատք ունէին բամի, զանազան հմայութեանց, եւն։ Թող առասպել լինին մեր ըսածները, սակայն կը թուի թէ՝ այդ ամուր լերանց խորշերը իրօք բաներ կան յայտնուելիք։ Արշակունեաց օրերէ հետէ, իբրեւ ամրոց, իբրեւ ապաստանատուն, իբրեւ դարան կրնանք նըկատել Տէրսիմն, ինչպէս նաեւ լի են բերդերու, դղեակներու, վանքերու, շիրիմներու հետքերը, որք ոչ միայն Ազգ. պատմութեան այլ նաեւ քաղաքականութեան եւ գիտութեան ալ նիւթ կը մատակարարեն։

Ես շատ փափաքեցայ շրջել միանգամ այդ խորերը, բայց պաշտօնս չէր ներեր, եւ զօրաց բանակն ու քրդերը մեծ շարժումներ կ'ընէին. միայն Մեծկերտը գնացի, ուստի երեք ժամ հեռի կը գտնուէր նոյն օրը Ալի Շէֆիկ պէյն զօրաց հետ, եւ հրաւիրած էր քրդաց երեւելիները, որոց առաջարկեր էր երեք պայմաններ. 1. տուրքեր վճարել եւ զօրք տալ, 2. մարդահամար ընել. 3. զէնքերը բերել յանձնել։ Այս երրորդ պայմանը ծանր թուած էր իրենց. եւ անհնարին խորհրդոց մէջ էին։ Մեծկերտը ունէր քարաժայռ բերդ մը, որոյ ուսին վրայ գոգաձեւ շինուած էին տուները. շէնքեր եւ աւերակ-

ները կը ցուցնէին թէ ի՞նչ կարեւոր դիրք եւ դեր ունեցեր՝ այս բերդաւանը. որոյ չորս կողմն լեռնապատ է, եւ խոր ձոր մը ունի առջեւ։ 7—8 եկեղեցեաց աւերակներ կը տեսնայինք եւ նշանաւոր խաչքարեր, երկու եկեղեցի ալ քարի մէջ փորուած՝ գեղջէն դուրս որ կ՛ըսուէին Դալասուրբ եւ Քառասուն մանկունք։ Օդն ու ջուրը աննըման։ Մեր գնալու եւ գալու ճամբուն վրայ էին Խուզուլջուխ, Կօքթափայ եւ Տամիթաղ գեղերը հայաբնակ։ Մեծկերտն ալ հայաբընակ էր. իբր 25 տուն թուրք միայն կային, եւ հին՝ այլ գեղեցկաշէն գմբէթով ու մինարէթով մզկիթ մը ունէին, յորում կար սուրբի մը գերեզման։ Բնակչաց կեանքը խիստ աննախանձելի էր։

Առաջնորդ Հայր Սուրբ վերադարձած էր Խարբերդէն. իր ուշադրութիւնը խնդրեցի պատմական եւ իրական հնութեանց վրայ։ Նա ցոյց տուաւ ինձ փոքրիկ կուռք մը եղջերաւոր ցուլի, որ գտնուած էր Փէրինու արտի մը մէջ հօտաղի մը ձեռքով. եւ այլ քանի մը բաներ։ Նա ընծայեց ինձ տատասկ բեւեռ մը Ս. Լուսաւորչի չարչարանաց վանքէն, եւ մի այլ դատասկ ունէր, որ կլոր պնդուկի մը չափ էր փուշ փուշ, փափագանօք համբուրեցի։

Վիճակագրութեան չսկսած՝ եկեղեցիները այցելեցի, մթին եւ ողորմելի շէնքեր. նոյնպէս են եւ եկեղեցականները. բայց գոնէ կը

գոնուին, եւ ժողովրդեան հոգեւոր պէտքերը կը հոգացուին։ Ո՞վ հոգացեր զիրենք, ո՞վ կրնայ մեղադրել զիրենք։ Օրհնեալ լինի Արարատեան ընկերութիւնը, որ մեր առաջարկութեան վրայ վարժարան մը հիմնեց ի Փէրին, զոր կը կառավարէ ցարդ Միացեալ ընկերութիւնն. մեծ բարիք մ'եղաւ այդու երկրին. ինչպէս նաեւ Զմշկածագի վարժարանն։

Կուզեմ ծանուցանել ընթերցողաց Զարսանճագի աղաներ կամ պէյեր յանուանէ, որք թուով 25 են։

1. Փաշավանքի Խասք պէյ։ 2. Խարէսիկի Օսման պէյ։ 3. Վասկերտի Քուչուկ աղա։ 4. Մարջամակի Իբիշ, Մահմատ եւ Աբդի աղայք։ 5. Բալէշիրի Հիւսէին, Մուստաֆայ եւ միւս եղբայր։ 6. Վերին Հաւսիկի Սալման աղա։ 7. Կալուգարի Յուսուֆ աղա։ 8. Խլունիկի Մահմատ աղա եւ եղբայրն։ 9. Գալանդարի Աբուշ աղա։ 10. Փէրինու Սաւրգ եւ Օսման աղայք։ 11. Բաղնիքի Նահիբ աղա։ 12. Ղուշչիի Օսման աղա։ 13. Սայիտլիի Իսմայիլ աղա։ 14. Ղայաշիի Զիլֆի եւ Սէֆօ աղայք եւ միւս եղբայրն։ 15. Զորակի Իբիշ եւ Մահմատ աղայք։ 16. Կոտարէճի Յուսուֆ եւ Թօսուն աղայք եւ միւս եղբայրն։ 17. Ուրցի Ահմատ աղա եւ եղբայրն։ 18. Կօքթափայի Ահմատ պէյ։ 19. Կորճանի Ալի աղա։ 20. Աղ-մազրայի Իբիշ աղա։ 21. Իսմայիլցիկի Սուլէյման աղա,

Աբօշ աղա եւ Օսմանի որդիք։ 22. Վահնայի Իսմայիլ աղա։ 23. Ջէրինի Քուչուկ աղա։ 24. Սորիխայի Ահմատ աղա եւ հօրեղբօրորդիք։ 25. Բաղչիչի Հաճի Մուսթաֆա աղա։

Ահա ասոնք են երկրին տէրերը, ամենէն առաւել Իսաք պէյն է որ ունի 36 կտոր գեղ ու մազրայ, անկէց վար ունեցողներ կան 12, 10, 6, 4, եւն. կտոր գեղերը։ Ասոնք բոլոր իրենց գեղերու հողերը իրենց անուան թափու ըրած են առանց բնակիչներէն հարցունելու, միայն Մեծկերտը եւ Սըղձով գեղերու հայք՝ եւ չնչին մաս մ'ալ Բերդակցիք իրենց վրայ թափու ունին, այլ սակայն հողային եւ կալուածական տուրքերը ինչպէս նաեւ ի հարկին խաճները գեղացիները կը վճարեն, որ կը գրուին ի հաշիւ աղաներուն, եւ անոնց անուան քօչաններ կը տրուին, անշուշտ յայտնի է թէ՝ գեղացին մարաբայ լինելով բերքերը կը բաժնեն աղային հետ։ Առանց աղայի հաւանութեան եւ հրամանին եղած ամուսնութիւնք շատ ծանրագնի կը նստի ժողովրդեան։ Կան աղաներ ալ որ կուզեն իրենց գեղը եկեղեցի եւ քահանայ գտնուի, գոհ ապրին, որպէս զի չփոխադրուին ուրիշ աղայի մը հող։ Այս պէյերու ահէն է որ Տէրսիմի Քրդեր ամէն կողմ վնասներ կը գործեն, բայց Չարսանճագին վնաս մը չեն կրնար տալ։ Իսաք պէյը յաճախ ամբաստանուած է, որ թէպէտ գովելի մէկն չէ, բայց միւս աղաներն են մե-

ծառ մասամբ բողոքել կուտան, որպէս զի ապարէզն իրենց մնայ եթէ նա իյնայ, իսկ եթէ չյաջողին Հայք պիտի նեղուին իրմէն եւ իրենց դիմէն։ Ամէն աղան իր տեղը ճըշմարիտ խսաք պէյ մի է։ Բարեխնամ կառավարութիւնը քանիցս քննիչներ ղրկած է հոն, օրինաց արդարութիւնը գործադրելու համար։

Փէրինու հայերէն մաս մը արհեստաւոր լինելով, մանաւանդ Ղալայչի եւ զինագործ, ազատ ելեւմուտ ունին Տէրսիմցւոց մէջ, անոնցմէ ոմանք, եւ յատկապէս ծերունի Ոսկեթա Յակոբն հետաքրքրական տեղեկութիւններ տուին։ Քաղուածք մը կը դնեմ այստեղ։

«Տէրսիմն երկու մասի բաժնուած է. Առաջին մասն կը կազմեն Մնձուր լերինք, եւ այս է Տուժիկ ըսուածն, այս մասին մէջն է Ովանճուխ անուանի լեռնահովիտն խոտաւէտ, ջրաւէտ եւ մացառոտ։ Երկրորդ մասն է բուն Տէրսիմն, որ կը տարածուի Քղիի, Դերջանի եւ Երզնկայի կողմը, ուր է Խուզուլջանն։ Կան ոմանք որ Տէրսիմն երեք մասի կը բաժնեն, Մնձուրն ու Տուժիկը զատ զատ առնելով, որք իրարու մօտ սրածայր լեռներ են։

«Ովաճըխի կամ Տուժիկի բնակիչ Քրդաց նշանաւոր ցեղերն են, որ աշիրաթ կ՚ըսուին, Շէխհասանցիք, Փիլովանցիք, Խարաբալցիք, Աբասանցիք, Քոչ-ուշաղցիք, Բալգյարանցիք.— Այս ցեղէն են Խըռ-ուշաղի, եւ Քօփուզ

ուշաղի հռչակեալ եղեռնագործք —. Կամ ուշաղցիք, Շամ-ուշախցիք, Բահդիարցիք, Ըռուտանցիք, Շեխմահմատցիք, Խըրդանցիք եւայլն։

— «Տէրսիմի մասին բնակիչ ցեղերու նշանաւորներն են. Զըրրանցիք, Սուրանցիք, Աշանցիք, Արեցիք, Գուրեշանցիք, Չեխմահմատցիք, Հայտարանցիք, Դեմանանցիք, Ցուսուփանցիք, Լոլանցիք, Շատեցիք, Իզօղլուցիք, Ղռանցիք, եւայլն։ Կը յիշուին նաեւ Գօչար ուշաղի, Բազկար-ուշաղի, Ասլան-ուշաղի, Բրիմ-ուշաղի, Բէկ-ուշաղի եւայլն»։

-Տէրսիմն եւ Տուժիկն կը բաժնէ մէջտեղէն Մնձուրի գետակը — Մունզուր սույի. — բայց ներքին միջավայրերը այս լերանց լի են այլեւայլ ջրերով, անտառներով, հովիտներով եւ զարդարուն ձորերով, այնքան դժուար համբաւ ունեցող եւ դրսէն խոժոռ երեւցող այս լեռները՝ գեղեցկութեամբ լի են, եւ կը զմայլեցնեն զմարդ։ Բաց ի ծանուցեալ գեղերէն, ընդհանրապէս Քուրդ բնակչաց տները ցիր ու ցան են՝ շինուած անտառի փայտերով, իրենց հացը կորեկ է եւ գլգըլ, ոչխար ու կով ունին բազմաթիւ, եւ ջորի. բոլոր տեղերը կամ հետի կամ ջորիով միայն կարելի է գնալ, զի ուղիներ դիտմամբ աւրած են, եւ անտառներէ, ժայռերէ, եղեւէններէ պէտք է անցնիլ։ Այս Քրդաց լեզուն Զազայի է, եւ կրօնքը Գզլբաշի, Հազրէթի Ալին է իրենց մարգարէն, Առաքեալն

եւ Սուրբն։ Ունին իրենց կրօնականներ եւ կրօնապետներ, որոց տոհմը սրբազան է, եւ կը կոչուին Սայիs, Sksk։ Ուղեւոր մը եթէ Սայիտ մը առնու իր հետը, կրնայ անվտանգ ամէն տեղ շրջիլ, ինչպէս կ'ընեն շատեր։ Անոնք յայտնի են ամէն տեղ. որք ունին իրենց ծուխեր, զորս կը հովուեն եւ անոնցմէ սահմանեալ հասոյթներ կը ժողվեն. գիր եւ մատեան չունին, բայց աղէկ բարոյական խրատներ կ'աւանդեն, եւ տարեկան տօներուն ժողովուրդ համախմբուած ժամանակ՝ հաղորդութեան պէս արարողութիւն մը ունին հացով եւ գինիով, զորս զատ զատ ամանի մէջ կը դնեն, եւ Սայիտն հրապարակաւ կը յանդիմանէ զմեղաւորն, որ եթէ խոստանայ այլեւս չընել մեղք, իւր խղճին կը ձգուի մերձենալ ու հաղորդուիլ. բայց կան անզեղջ մեղաւորներ ալ՝ զորս կը զրկէ Սայիտն հաղորդելէ, եւ իր այցելութիւն կը կտրէ այնպիսիներէ, յայտարարելով հասարակութեան որ անոնք ալ յարաբերութիւն չունենան եւ անոր հացէն չուտեն։ Ամուսնական սրբութեան կարի նախանձախնդիր են։ Ջունին յատուկ աղօթատեղի, բայց տեղ տեղ սուրբ Skskներու գերեզմանները գմբէթով շինած են եւ աղօթողներ կարգած, ուր ուխտի կ'երթան. յաճախ ուխտ կ'ընեն նաեւ Հայոց շէն կամ աւեր տաճարներուն, որոց քարերը կը համբուրեն, խունկ կը ծխեն, մոմ կը վառեն, մատաղ կը կտրեն,

հիւանդաց վրայ Աւետարան կարդալ կուտան եւ երկիւղածութեամբ կը համբուրեն զայն. եկեղեցւոյ զգեստ եւ անօթ կը գողնան, բայց Աւետարանը կը համբուրեն ։ Կնաթողութիւն չունին, եւ բաժանութիւն է մէկէ աւելի կին ունենալ ։

Սայիտներ կամ Տէտէներ թէ այցելած գեղերը եւ թէ տօնի օրերը երգելով կը կարդան, կան որ սազ մը կը չալեն հետը, եւ յափշտակեալ ոգեւորութեամբ, սրտաճմլիկ եղանակաւ կ'երգեն Աստուծոյ արարչագործութիւնը, կամ Աբրահամի պատարագելը իւր որդին, կամ Յակոբ նահապետը, կամ Յովսէփ գեղեցիկը, եւայլն. բայց միշտ Ալիի անունը կը խառնեն մէջը ։ Խորին տպաւորութեան տակ ունկնդրութիւն կ'ընեն միւսները ։ Այս երգոց մէջ կը յիշատակուին Ադամայ հետ՝ Եւան, Աբրահամու հետ Սառան, Յակոբայ հետ՝ Ռաքէլ, Յովսեփայ հետ՝ իւր ողջախոհութիւնն, որոյ բարոյականն, երկու սեռին եւս օգտակար կերպով կը բացատրեն ։ Հայ քահանաներ եւ վարդապետները կը պատուեն, ինձ ալ պատահեցաւ որ ծունկս եւ կուրծքս կը համբուրէին եւ աղօթք կը խնդրէին ։ Հայ քահանայի մը յիշատակը կ'ընեն ոմանք, որ ասոնց մէկ մեծ Սայիտը ազատեր է հաւատոյ հալածչաց ձեռքէն, պահելով զայն իր տանը մէջ, եւ անոր փրկանքին համար իր եօթն զաւակները զոհեր է. երգ մը կամ չարական մը յօրինած

են քահանային օրհնութեան յիշատակին, յորմէ մաս մը թարգմանելով կը դնեմ այստեղ։

«Մտիկ ըրէք, Աստուծոյ մէկ գործը պատմեմ։
—Հայ քահանայն իր եօթն որդիք նահատակել տուաւ,
Ողբալով օրհնենք անոնց յիշատակը։
Սայիտ Հիւսէյին սպանիչներէն հալածեալ,
Հայ քահանային ապաստանեցաւ,
Քահանայն իր եօթն որդիք զոհեց,
Սայիտ Հիւսէյինն՝ ազատեց։
Աստուած օրհնէ Հայ քահանայն։
Նա ի վերջոյ ի բանտ մատնուեցաւ։
Սայիտ Ջաֆար բանտը մտաւ ծածուկ,
Համբուրեց Հայ քահանային օրհնեալ աչքը.
Եւ անոր օրհնութիւնն առաւ։
Բանտին մէջ կ՚աղօթէր Հայ քահանայն.
Անոր աղօթքը երկինքը կը հասնէր։
Վերջին դատաստան պիտի ընէ Յիսուս,
Հասան և Հիւսէյին Յիսուսի քով պիտի կենան,
Ջարերուն պատիժ պիտի խնդրեն, բարիներուն վարձք։
Յիսուս լոյս է, Ալին ճառագայթ,
Լուսեղէն կարմիր թագով պիտի պսակեն մեր գլուխը։
Նա դրած է իր գլուխը կարմիր թագ,
Բոցի պէս կարմիր, կարմիր վարդի նման,
Կարմիր ձիու վրայ, աղեղն ի ձեռին լարուած։
Օրհնենք Հայ քահանային յիշատակը...։»

Այս բարոյական ունեցող Սայիտներու հովուած ժողովրդեան մէջ, զարմանալի է որ, կը գտնուին այնքան անագորոյն սպանիչներ և աւազակներ, կը պատահի երբեմն ալ մարդ յափշտակել տանիլ․ բայց կսպաննեն՝ երբ դիմադրութիւն տեսնուի կամ գնտակ արձակուի իրենց վրայ, ապա թէ ոչ՝ կողոպտանքով կամ կամաւոր տուրքով մը կը բաւականանան, զոր իրենց իրաւունք կը համարին յԱստուծոյ սահմանեալ։ Եւ եթէ իրենցմէ մարդ սպաննուած լինի կամ բանտարկուած, որոց ձեռքով որ եղած է, անոնց գեղէն ու ցեղէն մեծ վրէժներ կը հանեն, մարդ կը յափշտակեն, մինչեւ նոյն գեղացիք իրենց բանտարկեալն արձակել տան, կամ սպանեալոյն ծանր փրկանք վճարեն․ ապա թէ ոչ իրենց տարած անձն չարչարելէն եւ մեռցընելէն զկնի, երկար ոխ կը պահեն եւ քանի մը անձինք ալ կ'սպաննեն։ Զօրքերէ սաստիկ կը սարսափին, բայց գեղացի ու քաղաքացի Հայն եւ Տաճիկ մէկ հաշիւ են իրենց քով։ Երբեմն նաեւ իրենց մէջ ցեղ ցեղի դէմ ալ կռիւներ կ'ընէ։ Այդ ցեղերը բաշխում ըրած ունին գեղերը իրենց վրայ, եւ իւրաքանչիւրն իր գեղերէն տարեկան տուրք կ'երթայ կ'առնու․ Նոյն իսկ Ակնայ վանքն, եւ բոլոր գիւղօրայք Ակնայ, Արաբկիրի, Չմշկածագի, եւայլն։ Բենկայ գեղացիներ եւ Արմուտաններ իրենց քաջութեամբ ազատ են այս հարկէն, յորս Քուրդն չհա-

մարձակիր մուտ գործել· կան քանի մը այսպիսի տեղեր, բայց անոնք իբրեւ պագոդա կը հաշուեն։ Տուրքերն են Թիւթիւն, տրեխ եւ քանի մը հարիւր ղուրուշ դրամ, ըստ բնակչաց, թեթեւ բաներ։

Պատահեցանք անգամ մը Հասային, գեղի մը մէջ, եւ հարցուցինք. թէ — Ի՞նչ բանի համար տուրք կապած են, երբ Աստուած հրամայած է միայն Թագաւորին տուրք տալ։ — «Մենք ալ Աստուծոյ հրամանաւ կ'առնունք, ըսաւ Հասան, զի երբ Աստուած հազրաթի Ալին աշխարհ ղրկեց, պատուիրեց թէ՝ Գնա՛ քարոզէ, քեզմով հաւատացողներն իմ զինուորներս են, զէնքով պէտք է տարին։ Հազրաթի Ալին ըսեր· Եա՛ Խուտա, հապա ո՞վ անոնց համար հաց ու հագուստ պատրաստէ։ Աստուած ըսեր· Անոնք որ քեզմով չեն հաւատար ինձ, իրենց վաստակէն հաց ու հագուստ թող տան, իմ զինուորներս ալ թող անոնց պահապան լինին։ Մենք կը պաշտպանենք եւ զոհ կուտանք մեր անձը տուրք վճարողներուն, բայց չվճարողները կողոպտելով սպաննելով Աստուծոյ կամքը կը կատարենք։ Իսկ գողութեան համար աղօթքով կը խնդրենք յԱստուծոյ, որ արդար վաստակներու չհանդիպինք, այլ որք խաբէութեամբ, տոկոսով, անիրաւ եւ զօրաւոր միջոցներով ունեցած են հարստութիւն, թէ դրամ լինի, թէ ապրանք, թէ անասուն, զանոնք ղաւաք ընէ մեզ։ Այսպէս մեր ձեռք

*բերածները Աստուծոյ յաջողութիւնն է, որոյ արդարութեան գործիքն ենք»:*

*Անշուշտ ամբողջութիւն չեն կրնար կազմել մեր գրածները Տէրսիմին եւ իւր բնակչաց վրայ, բայց մենք այսքան կրցանք ձեռք բերել:*

*Այժմ անցնինք Չարսանճագի Առաջնորդութեան թեմի վիճակագրութեան:*

## ԹԵՄ Ա.

ՓԷՐԻՆ. *գիւղաւան, ուր կը նստի գայմագամն, եւ առաջնորդն, (վիլայէթ Խօզադ): 1 եկեղեցի Ս. Աստուածածին: Վարժարան 1, աշակերտ 100, ծախք վարժարանին տարեկան 300 ղուրուշ: — Այժմ Միացեալ ընկերութեան նախակրթարան. — Բնակիչք Հայ, Թուրք եւ Քուրդ: Տունք Հայոց 318:*

| | | | | |
|---|---|---|---|---|
| **Թաղնիք.** | 1 եկեղ. | Ս. Մինաս. | Տունք հյց. | 13 |
| **Դուրջի** | » | Ս. Աստուածածին | » | 20 |
| **Թիլ** վերին | » | ոչ գոյ | » | 8 |
| **Սէյիդլի** | » | » | » | 4 |
| **Դայաչի** | » | Ս. Մինաս | » | 10 |
| **Այվադլի** | » | Ս. Մինաս | » | 9 |
| **Քուրակ** | » | Ս. Կարապետ | » | 13 |
| **Խոտարին** | » | Ս. Գէորգ | » | 27 |
| **Ուրց** | » | Ս. Մինաս | » | 21 |
| **Դուրինա** մազրա | » | ոչ գոյ | » | 6 |
| **Ռասու** | » | Ս. Լուսաւորիչ | » | 25 |
| **Դուզուլջուխ** | » | Ս. Աստուածամայր | » | 20 |
| **Խօք բափիա** | » | Ս. Կարապետ | » | 40 |
| **Խարնան** | » | Ս. Աստուածամայր | » | 12 |
| **Իսմայիլցիկ** | » | Ս. Աստուածամայր | » | 25 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Շոհմի | 1 եկեղ. | ոչ գոյ | Տունք Հյց. | 4 |
| Հոսէ | » | Ս. Աստուածածին | » | 25 |
| Ցանկ | » | ոչ գոյ | » | 3 |
| Վասկերտ | » | Ս. Թորոս | » | 35 |
| Աղմագրա | » | Քառասուն մանկունք | » | 30 |
| Բուռիկ վերին | » | Ս. Յովհաննէս | » | 10 |
| Մարջումակ | » | Ս. Յակոբ | » | 9 |
| Նոր գեղ | » | Ս. Գէորգ | » | 12 |
| Թանց | » | Ս. Սարգիս | » | 24 |
| Մարկիկ | » | ոչ գոյ | » | 12 |
| Պալասար | » | Ս. Սարգիս | » | 30 |
| Սորփիա | » | Ս. Աստուածամայր | » | 22 |
| Սրղնով | » | Ս. Յակոբ | » | 36 |
| Ղարաբուղնար | » | ոչ գոյ | » | 8 |
| Հաւսիկ վերին | » | Ս. Մինաս | » | 14 |
| Հաւսիկ ներքին | » | Ս. Անտոն | » | 15 |
| Խանար վերին | » | ոչ գոյ | » | 6 |
| Խանար ներքին | » | » | » | 4 |
| Ղուասարիչ | » | Ս. Յակոբ | » | 24 |
| Ղալհայդար | » | ոչ գոյ | » | 3 |
| Խըրնիկ | » | Ս. Յակոբ | » | 15 |
| Շէնցիկ | » | ոչ գոյ | » | 8 |
| Կասսայ | » | Ս. Կարապետ | » | 17 |
| Սըմաղ | » | Ս. Գէորգ | » | 10 |
| Խարէսիկ | » | Ս. Կարապետ | » | 22 |
| Փասավանք | » | Ս. Սարգիս | » | 89 |
| | | վարժարան 1. աշակ. 40 | | |
| Ղալանուխ | » | ոչ գոյ | » | 4 |
| Բերդակ աւան 2 | » | Ս. Ած. ծին և Ս. Շամունէ | » | 60 |
| Թիլ բերդակոյ | » | Ս. Սարգիս | » | 40 |
| Վահնայ | » | Ս. Գէորգ | » | 8 |
| Սաղման | » | Ս. Գէորգ | » | 4 |
| Ակ-սաքար | » | Ս. Գէորգ | » | 38 |

## ԹԵՄ Բ.

ՄԵԾԿԵՐՏ. *Աւան. գայմագամութիւն. մի-*

*լայէթ Կարին. (այժմ միւթէսարիֆութիւն. վիլայէթ Խօզաթ). Փէրինէն, հեռի 5 ժամ։ 2 եկեղեցի, Ս. Աստուածածին եւ Ս. Յակոբ։ Տունք Հայոց 80։*

| | | | | |
|---|---|---|---|---|
| **Լազվան** | 1 | *եկեղ. Ս. Աստուածամայր* | *Տունք Հյց.* | 12 |
| **Ցամի-բաղ** | » | *Ս. Գէորգ* | » | 25 |
| **Դիլան օղլի** | » | *ոչ գոյ* | » | 10 |
| **Դանա բուրուն** | » | » | » | 15 |
| **Թուրուսմակ** | » | » | » | 4 |
| **Տօրսան** | » | *Ս. Սարգիս* | » | 25 |
| **Գարմսի** | » | *ոչ գոյ* | » | 4 |
| **Խոզբնզեղ** | » | *Ս. Յուսիկ (սատ է գերեզ. Սրբոյն)* | | 5 |
| **Ջուխուր** | » | *ոչ գոյ* | » | 4 |
| **Հազէզ** | » | » | » | 3 |
| **Փախ** | » | » | » | 4 |
| **Լամբ** | » | *Ս. Գէորգ* | » | 5 |
| **Մասսան** | » | *Ս. Սարգիս* | » | 25 |
| **Մարխոյ** | » | *ոչ գոյ* | » | 6 |

**ԹԵՄ Գ.**

**ԽՈՋԱԴ**. *Աւան. այժմ վիլայէթի կեդրոն, որ հետզհետէ սիրուն քաղաք մը կը ձեւանայ։ 1 եկեղեցի, Ս. Փրկիչ։ Տունք Հայոց 19։*

| | | | | |
|---|---|---|---|---|
| **Ընձդակ** | 1 | *եկեղ. Ս. Սարգիս* | *Տունք Հյց.* | 28 |
| **Ողզունիկ** | » | *Ս. Սարգիս* | » | 7 |
| **Սորքիան** | » | *ոչ գոյ* | » | 12 |
| **Սազեսիկ** | » | » | » | 8 |
| **Փայեկ** | » | » | » | 12 |
| **Սրկան** | | *Եկեղեցին է Ս. Կարապետի վանքն* | » | 10 |
| **Ջամբեղ** | » | *Ս. Մինաս* | » | 10 |
| **Դացսակ** | » | *Ս. Յակոբ* | » | 6 |
| **Սին** | » | *ոչ գոյ* | » | 7 |
| **Հալէորի** | » | *Ս. Աստուածամայր* | » | 7 |

Բնակիչք խառն են գրեթէ ամէն գեղի մէջ Թրքաց եւ Գզլբաշ Քրդերու հետ, տեղ տեղ ալ հայախօս Ասորիք կը գտնուին, որք անխտիր խնամութիւն կ՚ընեն Հայոց հետ. եւ անոնց կրօնական կարգեր Հայ քահանայք կը կատարեն: Հայաբնակ փոքրիկ գեղերէն քանիները մէկ քահանայ ունին, որ այցելութեամբ կը հովուէ: Ժողովուրդ մաքուր Հայերէն կը խօսի, Քուրդն, Թուրքն ալ Հայերէն գիտեն:

Վանքեր. Գաւառիս բազմաթիւ վանքերէն միմիայն ՀԱԼԻՈՐԻԿԻ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՔԸ ողջ է. Փէրինէն 18 ժամ հեռի դէպի Յերզընկայ, մօտ է նաեւ Չմշկածագին, շրջապատեալ Քրդերով եւ անտառներով. տուն մը Հայ կայ բնակեալ վանքին մէջ երկար ժամանակէ հետէ, որք թէ կը մշակեն վանքին հողեր եւ թէ որդւոց յորդի իրենցմէ վարդապետ մը կամ քահանայ մը վանահայրութիւն կ՚ընէ, մեր օրովն էր տէր Պօղոս քահանայն, որոյ գերդաստանը կը բաղկանար 65 անձերէ: Վանքին աղան կամ տէրն էր Սայիտ Իպրահիմ, որոյ ցեղին տարէց տարի վանքն կուտայ 30 քիլայ ցորեն. (քիլան 100 հօխայ էր):

ԵՐԿԱՆԻ կամ ԵՐԿԱՆ ԸՆԿՈՒԶԻ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ վանքն ալ աւելի հոյակապ եւ մեծագործ շէնք է, բայց քանի մը մասեր քայքայուած, ընտիր ճարտարապետութիւն, որոյ ձեւն եւ քանդակներն Եւրոպացի ուղե-

ւորաց իսկ հիացումն պատճառեր, եւ օրինակած են ոմանք: Վանքը շինուած է Հայոց Ն.Ի.Դ. թուին: Տաճարն Ս. Աստուածածնի անունով է, որոյ դրան ճակատին վրայէն օրինակուածն է հետեւեալը, զոր Առաջնորդէն ստացայ. «Այս է խորան մօր տեառն, յորմէ ծնաւ Յիսուս Քրիստոս ի յայրն Բեթղեհէմ. յորովայնի հաճեցաւ, եւ ի սրտին բնակեցաւ, եւ Ս. Հոգին հովանացաւ, աղաչեմ զքեզ Ս. Աստուածածին բարեխօսեա վասն ծառայի քո մեծ Մխիթարիս զորդիդ քո Աստուած մեր դաւանելոյ», եմ ի թիւ... ման... գանձէ... թշնամւոյն, որ առաքեալք մեր նահատակեցան Քրիստոս վասն քո սուրբ ծննդեանդ. եւ զկնի զխոտանս շինեցի, ի թվին Ն. Ի. Դ.»:

Յիշենք քանի մը աւերակ վանք եւ եկեղեցիք: Փերինու քով, Ջրին եզերքը Կարմիր վանք եւ Ս. Լոյս վանք. եկեղեցի մը եւս Աւքանդ ըսուած տեղը: Լուսաւորիչ գեղին քով՝ բլրի վրայ Ս. Քառասուն մանկունք վանք հոյակապ: Փաշավանք գեղին քով՝ բլրի վրայ Ս. Յովհաննէս ընդարձակ վանք: Բերդակայ Ս. Թորոս կիսաւեր վանք շքեղակերտ, որ եւ Ս. Տիկին: Ձորակ գեղին քով՝ ձորոյն մէջ Ս. Վարվառ եւ Ս. Աստուածամայր: Գուշչի գեղին քով՝ Ս. Անտօն: Հոչէի քով՝ Ս. Պօղոս: Բաշխիշի քով՝ Ս. Սարգիս: Մեծկերտի քով՝ Ճերմակ վանք, Ս. Փրկիչ, Պօղոս Պետրոս, Ս. Գէորգ, Ս.

Աքանաս, Ս. Եղիա, Ս. Սարգիս, Ս. Մեսրովբ: Լամբ գեղին քով՝ Ս. Աստուածամայր եւ Ս. Թորոս: Մաղաւնի քով՝ Ս. Կիրակոս եւ Ս. Յուղիդայ: Խողընգեղի մօտ՝ Ս. Յովսիկի կիսաւեր վանքն: Դաշտակի մօտ՝ Ս. Թումաս: Սին, Թուրուշմակ, եւ Փախ գեղերու մօտերը՝ մէկ մէկ եկեղեցեաց աւերակ: Խօզադու Քրդարնակ յին գեղին մէջ ինն սրբոց իննեակ եկեղեցեաց աւերակք: Հագէգին մօտ՝ չորս եկեղեցիք: Զուխուրին մօտ՝ Վանֆակ վանքն: Հաւորի գեղը՝ 12 եկեղեցիք աւերեալ. եւայլն:

# ԲԱԼՈՒ

Օգոստոս 28 ին յառաւօտուն մեկնեցանք Զարսանճագէն. Գղիի ջուրն անցնելով անմիջապէս կ'սկսի Բալուայ հողն: Միշտ զառ ի վեր կը գնանք, եւ երկու կողմերնիս ձորերու մէջ լի են փոքրիկ գեղեր: Ուղեկիցներս կը ցուցնեն Բալուայ լեռները, կը տեսնանք գլորակ բարձր գլուխ մը՝ Գղիի Սուրբղոս լեռն է. կ'երեւի բուն շղթայն Տէրսիմին մինչեւ Մնձուր, սուր եւ գլոր ժայռերով, եւ Թաֆման լեռն, որոյ միւս երեսն է Ճապաղջուր. Կննայ լեռները, որոց միւս երեսը կ'իյնայ Մշոյ դաշտը: Պահ մը կը յագուի սիրտս Մշոյ յիշատակներով: Հինգ ժամէն սկսանք իջնալ ի Բալուայ հովիտն: Ի հեռուստ կ'ողջունենք Բալուայ բերդի քարեայ

գլուխն, սիրտս իրեն կը քաշէ այդ կապոյտ ծայրը, աչերս չեմ կրնար հեռացնել իրմէն, այդ քարին մէջն է Հայոց լուսաւորութեան արդանդն, Հայկական գրոց գանձարանն, այն պաշտելի քարայրը, յորում Աստուածային Մեսրովբ ճգնեցաւ, տքնեցաւ, մինչեւ ծնաւ ազգ մի ողջոյն. անտի ծագեց մեր լոյս արեւն։

Կէս ժամէն աւելի զառ ի վար կ'իջնէինք, ընկերներս ետ էին մնացած, երիվարս կը վազէր, կանխաւ որոշած էի որ Հաւաւու Քաղցրահայեաց Ս. Աստուածածնի վանքը պիտի իջնայինք, ուխտ ընէինք, հանգչէինք եւ անցնէինք։ Բալուայ քարին յառելով ուշքս եւ աչքս, մոլորած էի. յանկարծ զիս գտայ ընդարձակ այգիներու մէջ, որոց ծայրը մեծ եւ շնորհքով գեղ մի կայ. ձայներ լսեցի, որ կը կանչէին զիս. ետ դարձանք ճամբուն վրայ։ Հաւաւ գեղն էր այն եւ իւր այգեստանն։ Վանքին դուռը իջանք, սիրուն է վանքիս դիրքը եւ իր շուրջ եղած այգիք, ծառաստանք եւ ջուրք կ'աւելցնեն վայելչութիւնը. իր առջեւ կը տարածուի գեղեցիկն Հաւաւ կանանչագեղ այգեստանեօք. եւ քաղցր աչքով կը դիտէ հովտին մէջ սփռուած ու հանդիպոյ լեռնակողման վրայ եղած շէն ու վայելուչ գեղեր։ Դռնէն դուրս մեծ աւազան մը ունի թթենեաց հովանեաց տակ, եւ ի ներքոյ վանքին ջաղացն է։ Վանքին ներսը ամենայն ինչ աւերակ էր, տապակա-

նուխթիւն եւ խառնակութիւն ։ Չորս շուն, չորս ջուրդ, երկու տնտես կանայք, հինգ կով, մէկ էշ եւ մէկ ձի, եւ մի կաղ վանահայր Մանուէլ վարդապետ ։

Ահա Հաւաւու վանք ։ Որոյ հայեացքը արդարեւ քաղցր, բայց մեր տեսածն էր խիստ դառն ։ Ս. Տաճարն փոքրիկ եւ շատ սիրուն շէնք մ'էր, բայց միւս շէնքերուն մէջ խճողուած եւ կորսուած էր դրսէն ։ Հոս գտանք վիճակին առաջնորդական տեղապահ Նաթանեան Պօղոս վարդապետ. որ երեք քահանայից հետ կրօնական ժողով կազմած էին, եւ կը յուզէին այս ժամուս՝ վանքէն կորուսեալ ոսկի խաչի մը եւ պանակիի մը խնդիրը ։ Հրաւիրեցին նստելու. եւ Նաթանեան Հայր սուրբ իւր անտանելի սիրելութեամբ արգելք եղաւ մեզ նոյն օրը մեկնելու ։

Վանքին ձեռագիրներ աչքէ անցնելով՝ յիշատակարանները կ'օրինակէի, բայց Նաթանեան Հայր սուրբն ժամանակ չտար, կը խօսի, կը բռայ, գանգատներ կ'ընէ գաւառէն եւ պաշտիարքարանէն, որոց կոդմանէ կարծես պարտականն ես էի ։ Իմ վրաս կը թափէր իր դարդերը, եւ ըրած ու ընելիք մեծագործութիւնները պատմելով կը պահանջէր որ իրաւունք տայի իրեն ։ Հազիւ հասկցայ իր միտքը, եւ սկսայ գովաբանել իւր առաքինութիւնները ու իմաստութիւնները, աղատելով օձիքս ։

Տանիքը ննջեցինք, որքան կենսատու էր գիշերուան օդն եւ չքնաղ՝ երկնից գոյնն ։

Բուսական ձեռագիր մատեաններ կային վանքս, որոցմէ քանին հրաշագործ Սրբազանն վասն ի վերուստ ըրած էր կ'ըսէին. զի այս տեղն ալ նստեր էր նա եւ հանրագրութիւն ժողվեր էր զինքն առաջնորդ ընելու:

Հետեւեալ առաւօտուն արեւուն ծագման հետ յուղի ինկանք, անցնելով Մրջման մազրայ եւ Ջինազն Հայ գեղերէն. հովիտի միջով մտանք քաղաքը: Առաջին թաղ՝ ուր մուտ գործեցինք, Ջովիա կ'ըսուէր, բոլորովին տաճկաբնակ. տները հողաշէն եւ անշուք: Մշոյ Եփրատն կը հոսէր, յայնկոյս գետոյն բազմաթիւ այգեստանք, եւ բարձրաբերձ լերինք հանքալից: Պահ մի եւս, եւ ահա մտանք բուն Բալուն:

Բալու բերդաքաղաք է, բլուրէն ի վայր տարածեալ են շէնքերը. իսկ գագաթն է բերդն. որոյ բարձրագոյն կատարը ապառաժ ցցուած քար է. զինքն կը շրջապատէ Մշոյ Եփրատն երեք կողմանէ. որով թերակղզի մը կը ձեւանայ, թաղերը, շուկայն եւ կառավարութեան պաշտօնատունք այս բաժնին մէջն են: Ջրոյն վրայ կամուրջ մը կայ, յորմէ անդին կիրճ է եւ կապան: Մենք գնացինք դէպ յառաջնորդարանն, Առաջն. Տեղապահն հեռու է, եւ Ընդհ. ժողովոյ դիւանն, Վարչութեան Ատենապետն եւ այլք եւս կան, սակայն ընդ երկար կ'սպասենք դուռը, զի ներսը լի է անմաքրութեամբ, անասնոց աղբերով:

Համբերութիւն։ Վերջապէս մաքրուեցաւ, ներս գնացինք։ Ժողվել տուի անմիջապէս ժողովները, եւ հրաւիրեցի Առաջն. Տեղապահն իր պաշտօնին գլուխը, որոյ հետ գըժտած էին, կամ ինքն անոնց դէմ. հարկ եղած յորդորներն ըրինք։ Ներկայեցի իմ պաշտօնագրերս, իրենց աջակցութիւնը խնդրելով ինծի։ Ղրկեցի գայմագամին՝ կուսակալութեան հրամանագիրը, եւ քիչ մը ետքը փոխադարձ այցելութիւններ կատարուեցան։ Հոն էր նաեւ Արղընի մատէնու Մութասարիֆ Ռումի էֆ. որ մի եւ նոյն ժամանակ տեսուչ էր Արղընու եւ Կապան մատէնի հանքերուն, որոյ իշխանութեան ենթակայ էր Բալուայ գայմագամութիւնն։ Ռումի էֆ. գիտուն եւ քաղաքակիրթ անձն մի էր. գոհ էին իրմէն տեղւոյն բոլոր ժողովուրդ, գոհ եղանք եւ մենք։

Օդն ու ջուրը խիստ ծանր է այս քաղաքին, եւ մարդիկ դեղնած, գրեթէ ճերմակ մազերով մէկը չես տեսներ, քիչեր կան որ յիսուն տարին լրացնելէն զկնի մեռնին։ Կենաց ճաշակը խանգարեալ, միտքերն եւս հիւանդ. Թութի օղին ծանրահամ և վնասակար, ջրի բաժակով կը խմեն. եւ կռուարար, խաբող, հայհոյող անձինք են մեծաւ մասամբ։ Գեղացիներ ընդհակառակն գերազանց կեանք ունին, ազնիւ վարմունք, առողջ անձն։

Հոս իսկոյն առաջին իրիկուն առողջութիւնս աւրուեցաւ, շունչս կը կտրէր, մէջքս ու

ծնկներս կոտր կոտր կը լինէին, եւ ճակատս կարծես կացինով կը զարնուէր. հինգ վեց տարիէ ի վեր անտես բարեկամս եկած էր, որոյ հետ շատ ժամանակ անցուցած էինք երբեմն, դողն եւ ջերմ։ Չ'ախորժեցայ իր այցելութենէն, բայց վերջապէս տապալեց զ'իս ի մահիճս, սաստիկ էր տապն, եւ լեռներ կը թաւալէին գլխուս։ Ա՛հ մայրիկ, ո՞ւր պիտի նայէր ինձ, ահա այս ժամերուն համար վարդապետին ըսած են «Աստուած օգնական»։ Շատ աղաչեցի զԱստուած։ Առաւօտ ողջ ելայ։ Երկու օր հաց ու ջուր չ'ճաշակեցի. հանգիստ ըրի, թէպէտ կը տանջուէի ի տապոյ։ Երրորդ օրը Տէր Մեսրովբ քահանայն հետս առնելով, առանց այլուս իմաց տալու, զի հետս էկողներ կը տանջէին զիս իրենց անտանելի կռուաբանութեամբ, ինչպէս կ'ընէին Առաջնորդարանի մէջը, եւ ելանք ի բերդ։

Հին եւ վիթխարի պարսպաց աւերներ ու բեկորները կոխելով վեր կ'ելնենք. քայքայեալ մեծ դուռն մը կը մտնենք միջնաբերդը. ուր շտեմարանաց եւ սենեկաց աւերածներ, գետնայարկ կամարափուլ շէնքերը մէկը միւսին ետեւ կը ներկայանան մեզ. դեռ ողջ է զնդանատունը եւ մի քանի սենեակ. բայց ատոնք բան մը չեն արժեր իմ աչքին։ Կը դառնանք ի հիւսիս, ուր ապառաժ եւ լերջ քարեր են մեծամեծ, հոն եզերքին վրայ քարին երեսը տաշուած, վրան բեւեռագիր

անեղծ, մաքուր, 22 տող վերը եւ 7 տող վարը քանդակուած, մէջ տեղը բաց ձգուած էր, ուր տող մը արաբերէն գիր փորագրած էին. Այս «Գրման քարի» կողէն զառի վայր, նեղ, սանդղաձեւ, գրեթէ մրջման շաւիղով իջանք քարայրի մը բերան, որոյ մէջ փոքրիկ քարայր մի եւս կայ, երկուքին ալ առաստաղն ու պատերը սեւցած. երկուքի մէջն ալ բեմի պէս անկոփ քարերով շարուածք, եւ պատերուն վրայ բազմաթիւ խաչեր փորուած։—Ահա Ս. Մեսրովբայ ճգնարանն, ըստ Տէր Մեսրովբին։

Ծունկերուս վրայ ինկայ, հոն, ուր Սրբոյն ծնկները մաշուած էին, լզեցի այն քարեր եւ փոշիները, յորս շրթունք եւ ճակատ Սրբոյն բիւրիցս քսուեր էին նուիրելով իր խորհուրդն եւ իղձերը Աստուածային իմաստութեան. հոն դրի երեսներս, եւ չէի ուզեր վերցնել այն ժայռերէն, ուր նստեր, կռթներ, խոկալով եւ տքնելով Հայ ազգին եւ Հայաստանեայց եկեղեցւոյն լոյս եւ կեանք ճարելու ճգնութեամբ...։ Քա՛ր, ո՛ քարայր, Հայոց արեւուն լուսնակամար, ուստի ծագեցաւ մեզ ճառագայթ դպրութեան. «յոր խորհրդեամբ ճշմարիտ լուսոյ փառաց անեղին նկարագրեցաւ մեզ գիր կենդանի յարգանդ մաքուր մեծին Մեսրովբայ, անմատոյց լուսոյն երկրպագեսցուք»։ Կից քարայրիս, արտաքոյ դրան. կայ մի տաշածոյ երեք մեծ գրատախտակի նման, արդեօք Հայ տա-

ռերը ձեւակերպելու տախտա՛կն էր Սրբոյն։ Ինչպէս նաեւ երկու այլ քարայրեր, որոց առաջինն աւելի լուսաւոր եւ ընդարձակ է, ունի սրահ մը, եւ երկրորդն՝ կրկին պատերով սենեակ մը, որոյ առաջին սենեկէն ներսը, դրան հանդէպ, քարայրին ճակատը փորուած եւ կոկուած մեծ քառակուսի մը, եւ փորուածոյի աջ անկիւնը վերէն ծակեր կան ականջաձեւ, յորմէ մարդ մը կրնայ իր ձեռքն երկնցնել. եթէ արմունկդ կիսածալ ընես դէպ ի լանջքդ՝ գրեթէ նոյն ծակին ձեւը կ'առնու, եւ այն դիրքով կրնայ մարդ մը իր թեւը դնել այդ ծակին մէջ.—Ս. Մեսրովբայ դպրոց կ'անուանեն այս քարայրը, ըստ Տէր Մեսրովբն, եւ կ'աւանդեն թէ՝ այդ ծակէն ելած է ԹԱԹԸ եւ այս տաշածոյին վրայ գրեր է Ա. Բ. Գ.—։ Արդարեւ երբ այդ տախտակին յառէր խոկալով Սուրբն իր ուշքն ու աչքը, պէտք էր որ այս անկեան ծակէն ելնէր Թաթն եւ գրէր «ոչ իբրեւ ի քուն երազոյ». այլ բացորոշ յայտնութեամբ Աստուածային «Որ զանմարմին պարունակող բանին զգրաւորական գիմաստ հոգւոյն շնորհէր որդւոց Թորգոմայ, յայտնեալ տեսլեամբ ի ձեռն սուրբ Վարդապետին... Նմանեալ Մովսէսին, բերելով զգիր օրինաց ի Հայս, որով լուսաւորեցան ազգ որդւոց Թորգոմայ։» Շարական։

Հայոց դպիրք, յուխտ գնացէք այս քարայրին, երկրպագէք Ս. Մեսրովբայ դպրոցին։

կան երկու այլ քարայրեր ալ, միոյն մէջ կը գտնուի ջրի հոր մը։ Ասոնց մէջը խունկի եւ մոմի մուխերը սեւցուցած են., մանաւանդ ճգնարանին, ուր բարեպաշտօն կանայք կ'եր-թան կ'աղօթեն իրենց զաւակաց համար։ — Աւելորդ է ըսել թէ Ս. Մեսրովք պատ-րաստ գտած է այս այր ու վայրը, որ իրմէն յառաջ ո՞վ գիտէ ի՞նչ նպատակի համար կ'ե՞ր կոփեր են. դուրսի քեւեռագիրն ալ մտածել կուտայ թէ՝ շատ հինուց գործ է, թերեւս յիշատակարանաց դիւանը կազմելու մտքով տաշուած լինին. եթէ այսպէս, զուգադի-պութիւն մ'է Ս. Մեսրովքին։

Այս ուխտագնացութիւնս ոչ միայն հոգիս զմայլմամբ եւ դոհունակութեամբ լեցուց, այլ եւ ջերմն ու դողն ալ փարատեց անձ-նէս։ Կարի քաջառողջ կը զգամ զիս։ Եւ ո-րովհետեւ Բալուի պաշտօնականները ոչ ու-նէին եւ ոչ ալ ձեռնարկեր էին վիճակագրու-թիւնը պատրաստել, հարկ եղաւ մանաւո-րաց դիմել, եւ քանի մը գեղեր ալ անձամբ շրջիլ։ Ներքի գեղը նոր վարժարան մը շի-նած էին, ուր մեր Վարագայ միաբաններէն Ներսէս վարդապետ դասատուութիւն կ'ը-նէր եւ եկեղեցին կը հովուէր. ծառազարդ, այգեւէտ, վայելչադիր գիւղ մի է, եւ իւր օդն ու ջուրը պատուական։ Հանդիպելով մի քանի գեղեր եւս, իրիկուն մը օթեցինք Հաւաւ գիւղը, որ ամենէն ընդարձակ եւ նշանաւոր գեղն է Բալուայ մէջ, ոչ միայն

իր այգեստաններով, ջրերով եւ բազմաբնակութեամբ, բնակիչ Հայք եւս գերազանց տարբերութիւն մ'ունին. եկեղեցիներ, եկեղեցականք, վարժարանը, երիտասարդութիւնը եւ ամէն դասու անձինք, քաղաքավար, եռանդուն, աշխատասէր, սրտոտ, բանգէտ: Հաւաւ կրնար օրինակ հանդիսանալ գաւառաց ամէն գիւղաբնակ Հայոց: Գեղին բոլորտիքը բարձր խաչաքարեր կան տնկուած, նման մահարձանաց կամ ցասման խաչերու, զորս օծեր եւ տնկեր են ի պահպանութիւն ժանտամահէ եւ երկրաշարժէ, որոց յաճախ ենթակայ եղած է գեղն յառաջնումն: Բայց բնակիչք իբր աւանդութիւն կ'ըսեն թէ՝ երբ Թադէոս առաքեալն եկեր այս գեղը քարոզելու, գեղի կռապաշտ մարդիկ ծաղրելու համար զԱռաքեալն ելեր են առջեւն ու ետեւը « հաւ, հաւ », ձայնելով շան պէս հաչեր են, Ս. Առաքեալն անիծեր զիրենք որ իրենց մարդկային բարբառը կորսնցուցեր են եւ ինչ որ խօսին եղեր «հաւ, հաւ» միայն կ'ըսեն, ուստի գաւառացիք զիրենք անուաներ են հաւհաւցիք, աստի է մնացեր գեղին անունը, յետոյ զղջալով Ս. Առաքելոյն դիմեր են, որ գեղն եկեր, զիրենք օրհներ մկրտեր, բժշկեր, եւ այս խաչ քարերն օծեր դրեր է գեղին չուրջը: — Բայց մեր լեզուով Հաւ կը նշանակէ նաեւ պապ: Ունէինք նաեւ Հաւուճիք:

Բալուայ գեղերու հայերը մեծաւ մասամբ

թէ ի Պօլիս եւ թէ ի գաւառս ճարտարապետ, հիւսն եւ որմնադիր են, իրենց տեղն ալ այգեգործ եւ երկրագործ, Պօլսոյ ազգայնոց մէջ նշանաւոր անձինք եւ գերդաստաններ կան ծանօթ՝ Բալուայ հովիտէն։

Բալուայ գեղերու եւ քաղաքի աւերակներէն հին դրամներ եւ այլ իրեր կը գըտնուէին, բայց շատն վաճառած էին, ինչպէս նաեւ ձեռագիր աւետարան, շարական, նկարէն, և մագաղաթեայ ընդհանրապէս։ Խարբերդի միսիոնարաց եւ շահադէտ ոմանց կողմանէ շրջողներ պակաս չեն այսպիսի գաւառները. եւ մենք շատ բան արդէն ձեռքէ հանած ենք այսպէս։ Քաղաքի տէր Պօղոս քահանայն ընծայեց ինձ սեւ փայտեայ խաչ մը, որ քանդակուած էր ձեռքի մը չափ տախտակի վրայ, զոր հանած էր Ս. Թորոս ըսուած ուխտատեղւոյն հողերէն, եւ ես զայն ընծայեցի Ղալաթիոյ մատենադարանին։ Յիշեալ տէրտէրն յայտնեց թէ իր ձեռքով գիրքեր եւ այլ նիւթեր վաճառուեր են Խարբերդցի բողոքականի մը, յորս կը յիշէր նաեւ ոսկի մը, որոյ վրայ յունարէն գրուած էր, եւ կարդացեր ու թարգմաներ են «Վասիլիոս, Արմենիոս, Արշաւուս. — Թագաւոր Հայոց Արշակ»։ Ս. Սահակ եկեղեցւոյ ճախակողմեան խորանին վերեւը դարան մը կար, որոյ առջեւ վարագոյր մը կախուած էր եւ կանթեղ մը կը վառէին, 16 տարի յառաջ այդ դարանը նորոգելու միջոցին շիշ

մը միւռոն գտած էին հոն, տեսանք չիշը որ մէկ քաշ բան կ'առնուր մէջը, բայց քիչ մը մնացեր էր միւռոն, զի եկեղեցիները գործածեր էին, սակայն վկայագիր կամ այլ բան չկար։

Բալուայ կանանց ազգ՝ Խարբերդու եւ Զարսանճաքի գեղերու կանանց նման չիթով կամ եազմայով կը ծածկեն բոլորովին իրենց գլուխն ու երեսները, եւ չեն երեւար ու չեն խօսիր մարդոց, բայց կարի աշխատաւոր են եւ տնարար, եւ բարեպաշտ։ Դեռ առաջինն էր քաղքի մէջ աղջկանց վարժարան մը բանալ, ուր քանի չափ մանրուկներ կծկած էին փոշիներու մէջ, քաղաքի մանկանց վարժարանն եւս ողորմելի էր։ Աստուած գթայ ձեզ անմեղներ, այդ ի՜նչ դատապարտութիւն է։ Թէպէտ պաշտօնական մարմնոց, հարուստներուն, եւ եկեղեցւոյ բեմէն ամենեցուն՝ ազդու յորդորներ խօսուեցան, բայց ի զուր կ'անցնէին մեր խօսքեր։ Անոնք իրենց կիրքերն ունէին, ուրիշ բան չէին ճանչնար, կիրք եւ թշնամանք իրարու դէմ, որոց յարմարած էր եւ իրենց Հովիւն...։ Ցաջողակ էին զիրար հայհոյելու, մատնելու, խարդախելու, բզկտելու մէջ, մանաւորապէս քաղաքի առաջաւորները, որք երկրի պէյերու մարդիկն են, եւ միւլթէզիմութիւն եւ ագատութիւն ալ կուռնենան կառավարութեան մէջ։

## ԲԱԼՈՒԱՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՀԱՅԱԲՆԱԿ ԳԻՒՂՕՐԱՅՔ

ԲԱԼՈՒ *քաղաք. (գայմագամ՝ Արղնի Մատէնի միւթէսարիֆութեան տակ), Առաջնորդանիստ։ Եկեղեցիք Հայոց 4, Ս. Սահակ, Ս. Լուսաւորիչ, Ս. Աստուածածին, Ս. Կիրակոս։ Եկեղեցիք ունին կալուածք 12 խանութ եւ 4 մաղազայ։ Կալուածագրեր՝ Տ. Գէորգեան Մ. Յովհաննէսին, Արփաճեան Մ. Կիրակոսին եւ Թիւթիւնճեան Համբարձումի անուններովն էին։ Ասոնցմէ զատ կան նաեւ 2 աղբիւր, 1 ջաղաց, եւ 2 խանութ եւս Ազգային կալուած։ Վարժարանք 4. աշակերտ* 200 *մանկունք եւ* 20 *աղջիկ։ Տունք Հայոց* 550։

| | | | | |
|---|---|---|---|---|
| **Սղամ.** | 1 *եկեղ.* | *Ս. Խաչ.* | *Տունք հյց.* | 35 |
| **Ձէք** | » | *Ս. Թորոս* | » | 70 |
| **Խարազէլիկ** | » | | » | 12 |
| **Հազար գոմ** | » | | » | 20 |
| **Դաւթի մեզրէ** | » | | » | 24 |
| **Բասարապ** | » | | » | 10 |
| **Քէնկէոլի** | » | | » | 20 |
| **Խանար** | » | | » | 15 |
| **Ուզունովա** | » | | » | 25 |
| **Ուզունովայի մեզրէ** | | | » | 6 |
| **Գուլիօկէր** | » | | » | 20 |
| **Արմբչան** | » | | » | 47 |
| **Նոր գեղ** | » | | » | 48 |
| **Նորգեղի մեզրէ** | » | | » | 20 |
| **Նորօինակ** | » | | » | 5 |
| **Մրջման մեզրէ** | » | *Ս. Գէորգ* | » | 27 |
| **Խարաքափ** | » | *Ս. Աստուածածին* | » | 23 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| **Արդզան** | 1 եկեղ. | *Ս. Մինաս* | *Տուն Հյց.* | 31 |
| **Դամիշլի** | » | | » | 11 |
| **Դավաջի** | » | | » | 15 |
| **Ապրանք** | » | | » | 20 |
| **Չինազն** | » | *Ս Յակոբ. վրժ. 1. Աշ 45* | » | 45 |
| **Սազրաս** | » | *Ս. Թորոս* | » | 55 |
| **Չայիրի մեզրէ** | » | | » | 13 |
| **Նրխի** | » | | » | 28 |
| **Խօսմաս** | » | *Ս. Աստուածածին* | » | 82 |
| **Իսաքէկ** | » | | » | 30 |
| **Գումբէթ** | » | | » | 20 |
| **Դամբար-օղլի** | » | | » | 3 |
| **Թափայ** | » | *Ս. Մինաս* | » | 40 |
| **Գիլիմլի** | » | | » | 4 |
| **Կըրքոյ** *կամ* **Կրքոցիկ** | | | » | 8 |
| **Եղ** *կամ* **Օղու** | » | *Ս. Կիրակոս* | » | 27 |
| **Խարախայայ** | » | | » | 1 |

**Հաւաւ** 2 *եկեղ. Ս. Աստուածածին եւ Կաթողիկէ. վրժ. 1, կոչուած Գօլոյ Զուխուր խանի 2 սենեակ. աշ.* 90 *մանկունք.* 30 *աղջիկ Տուն Հյց.* 160

| | | | | |
|---|---|---|---|---|
| **Թիլ** | 1 եկեղ. | | » | 25 |
| **Թըրխէ** | » | *Ս. Սարգիս* | » | 44 |
| **Նաջարան** | » | | » | 15 |
| **Սըրին** | » | *Ս. Աստուածածին* | » | 17 |
| **Պաղին** | » | | » | 170 |
| **Քուրդիկան** | » | | » | 4 |
| **Դէմիրջի** | » | | » | 2 |
| **Նըքցի** | » | | » | 20 |
| **Խաչարի մեզրէ** | | | » | 2 |

*Վանքեր։ Երկու վանք ունի Բալու, Հաւաւոյ վանք կամ Քաղցրահայեաց Ս. Աստուածածին, եւ Պաղինու կամ Ս. Խաչի վանք, երկոցունց մէջն ալ միաբան ոչ որ. միայն առաջնոյն մէջ վանահայր մը կայ Մա—*

նուէլ վարդապետ։ Հողերը թափու բրած չեն, իբր թէ Ֆէրման ունենային։ Հաւաւոյ վանքին 30 քիլայ սերմանու արտեր կան, (1 քիլան 400 օխա է), մարաբաներով կը մշակեն, ունի նաեւ 1 ջաղաց, եւ 3 այգի չէն, 3 այգի աւեր, եւ մաս մը անտառ։ Վանքին հասոյթն է 10 քիլայ ցորեան իր արտերէն (ամբողջը չմշակեր), եւ 30 քիլայ ցորեն ու գարի թեմերէն պտղի։ 60 օխա բամբակ իր արտերէն, եւ 60 օխա բամբակ պտղի։ Իր հողային սահմանն ու անտառը կը չրջապատէ երկու ժամով։ Թեմական գիւղ 34. եւ քաղաքը։ Իսկ Ս. Խաչի վանքն ունի ութ քիլայի սերմանու արտեր, 1 այգի եւ 1 ջաղաց։ Հասոյթն է 10 քիլայ ցորեն եւ 60 օխա բամբակ իր արտերէն, զորս կը մշակէ վանքն իր լուծքերով եւ մշակներով, 6 քիլայ ցորեն եւ 300 ղուրուշ պտղի, թեմական գիւղ՝ 5։ Հողային սահմանի չրջապատն է մէկ ժամ։

— Մարդ կը զարմանայ թէ ինչո՞ւ Առաջնորդն որտունջ կ'ընէ իր ապրուստին, երբ պսակադրամին եւ հոգեբաժնին հետ այս վանքերու հասոյթն ալ Առաջնորդարանին յատկանան, զի չէնքերու ծախք չունին, բոլորովին աւերակ են երկու վանքի չէնքերն ալ՝ բացի տաճարներէն. կամ ինչո՞ւ գաւառական տնտեսական խորհուրդը գանձելով ասոնք չկրնար մատակարարել չափաւորապէս Առաջնորդի և Առաջնորդարանի ծախքը։

Մեսրովբեան ընկերութիւն մի կար ի քաղաք, որ կը նպաստէր վարժարանին, եւ Բարեսիրաց ընկերութիւն մը, որոյ նպատակն էր Թաղին աղքատ ազգայնոց գլխահարկը վճարել, ունէին 4 խանութ կալուած եւ 40,000 ղուրուշ դրամագլուխ, որոնցմէ շահ ու տոկոս կը գոյանար տարեկան իբր 7000 ղուրուշ, եւ գանձապետն էր Ուղունեան Աւետիս։ Ահա մի միայն գեղեցիկ գործ Բալուայ քաղաքացւոց։

Ժողովուրդը մաքուր հայերէն կը խօսին, եւ տեղական պիտոյից ամէն արուեստները գիտեն թէ քաղքցիք եւ թէ գեղացիք, շատ ալ աղքատ չունին։ Գաւառին ներքին բերքերն են ցորեն, գարի, բամբակ, շուշմայ, կտաւատ, ոսպ, սիսեռ, կանեփ, խաղող, գինի, պանիր, իւղ, մեղր, ընտանի անասուններ, դուրսեր կը ղրկէ խէժ, չրէզ, ոչխարի եւ այծի մորթ, բուրդ, մեղրամոմ, նուշ, սորս (խօյուն պօյա կամ աչի պօյասի, որ հանքային հող է), բամբակ, կուզ, աղուէսենի, եւայլն· լերանց մէջ կան պղնձի եւ արծաթի հանքեր, Հաւաւոյ եւ Նոր գեղի մօտերն ալ հանքածուխ։ Երկու հովիտ ունի Բալահովիտն 6 ժամ երկայն եւ 3 ժամ լայն· իսկ Աշմուշատն-Սամուսատայ հովիտն 3 ժամ երկայն եւ 1 ժամ լայն է։

Հողերը պէյերու եւ աղաներու սեպհականութիւն են բոլորովին դրեթէ, եւ անոնց վրայ Թափու եղած. առանց Թափուի հո-

ղեր ալ չատ կան պէյերուն եւ աղաներուն, յորս քիւրդեր կը բնակին եւ խմառ կը վճարեն. բնակիչք Հայ եւ Քիւրդք յաճախ ջանքեր ըրած են, խնդիր մատուցած են կառավարութեան, սակայն չեն կրցած յաջողիլ պէյերէն իրենց վրայ դարձունելու հողերը. հարիւրէն մէկը հազիւ Հայոց սեպհականութիւն կայ, զորս մասն առ մասն գնած են, բայց հոս՝ տուն եւ այգին գեղացւոյն սեպհականութիւնն է։

Ամբողջ Բալուն 460 գեղ է, յորմէ 30ն վագըֆ է, եւ անոնց հողն ու տասանորդը յատկացեալ է չէխերու կամ ճամիներու։ Պէյերու մէջ ամենէն գլխաւորն է Սաւրզպէյն որ քաղաքակրթութիւն ալ գիտէ, եւ ընդհանրապէս Բալուայ պէյեր Չարսանճագի պէյերու չափ անագորոյն չեն, եւ ոչ ժողովուրդն՝ անոնց չափ սորուկ, թէպէտ հոս ալ հողային տուրքը գեղացին կուտայ, այնինչ հողին տէրը պէյն է, գեղացին իր եզներով, իր սերմով, եւ իր աշխատանքով կը վարէ, ցանէ եւ կը հնձէ, եւ տասանորդը արդիւնքէն տալէն զկնի, մէկ բաժին իրեն, մէկուկէս բաժին պէյին կուտայ, տեղ տեղ ալ կայ որ՝ տասնէն ութն ինքն կ՚առնու եւ երկուք աղային կուտայ։

Հողատէր աղաներէն եւ պէյերէն զատ են Պուլանըքի եւ Կօքտարայ Նահիէի Զազայ Քրդեր. Իզօլ, Ղուան, Շատէ, Զաքան աշիրաթներ, եւ Քուրումցիք, Մաղարացիք,

Ուզումցիք, Փայանտցիք, Այրանիխէրեցիք, Կօզէրեցիք, Փիաղացիք, Քարօրցիք, Թօթիկցիք, Աղմէզրէցիք, Քասաքօփրուցիք, Ալխատեցիք, Բալխայեցիք, Ոչինցիք եւն։

Թէ Հայոց հետ խառն եւ թէ առանձին բնակող այլ ազգերն են Թուրք, Կուրմանջի Քուրդ, եւ Զազայ Քուրդ։ Վերջիններ աւելի բազմաթիւ են, որք Տէրսիմցոց լեզուն եւ կրօնքն ունին։

Մչոյ Եփրատն կամ Արածանին անցնելով Բալուէն Աչմուշատ եւ Մարզուտ նահիաներու մէջ Բրինձի մչակութեան կ՚օժանդակէ, եւ իր վրան նաւակներ ու քալակներ կը բանցունեն։ Գաւառին ճանապարհները լեռնոտ եւ խանգարեալ են, միայն դէպ ի Խարբերդ դիւր է, որ կը տեւէ 12 ժամ։ Ունի դիւրութիւն կառուղի շինելու, որ Աչմուշատի միջով կ՚երթայ կը խառնուի Բաղդատի մեծ պողոտային Խարբերդի եւ Արղընի միջոց, կոյճուկին քովեր։

## ԱՐՂԸՆ ԿԱՄ ԱՐԿԸՆԻ

Մեկնելով Բալուէն, դժուարին զառ ի վեր ճանապարհաւ մը կ՚երթանք լեռնակողմն կապան, եւ տեղ տեղ խիստ քարոտ, որ կը յիշեցնեն մեզ Ակնայ ուղիներ։ Բալուայ Եփրատն քովերնէս կը սահի, երբեմն կ՚երգէ, երբեմն կը հեծէ, երբեմն կը սրտմտի, երբեմն կ՚արտասուէ, կը նեղնայ, կը լայննայ,

միշտ կը խօսի, ինչե՜ր կը խօսի. — «Գրէ՛, կ'ըսէ, թող կարդան զիս Հայեր... թող յիշեն զիս... սիրեն զիս...»: — Բայց, ո՜ ջուր ցանկալի, որո՞ւ համար գրեմ, մեր Վօսփորացիք՝ այժմ Վօսփորն ու Ոսկեղջիւրն կ'երգեն. մեր Տէլէմաքները Մարմարայի ափերն ու կղզիները կը յածին. Դանուբն, Նեղոս, Սէն, Թէյմզ: Նէվան կը պաշտեն, Լուտաս կը ճաշակեն, եւ անոնց չէն, հանդիստ, զուարճալի բերկրանաց ու գեղեցկութեանց կը փարին, բազումք իրենց հաճոյքն ու քնարը այն վայրերուն նուիրած են: Դու գեղջուկ ես, կ'ըսեն, տխուր ու ողորմուկ ես, լաց ու արցունք չեն ախորժիր այժմ: Դու թշուառ ես: Երբ զարդարուիս, երբ զուարթանաս, յայնժամ զքեզ պիտի սիրեն....: — Իրենցմով, իրենցմով, գոռացին ջրեր, պիտի բերկրիմ, զարդարուիմ եւ զուարթանամ ես:

Աշմուշատայ դաշտն ենք, կը տեսնենք իր աւերակները, եւ իր հովիտին մէկ մասը ողողեր էր գետն: Մեծ գեղն Պաղին՝ կը յիշեցնէ թէ Պաղնատուն դաւառի մէջ կը գտնուինք. ահա Թիլ գեղն, որոյ կից է Ս. Խաչի վանքն: Մենք իջեւանեցանք Թրխի գիւղը:

Հետեւեալ օրուան ուղին նոյնքան դժուարին է լեռնոտ եւ քարուտ, առատ անձրեւ ալ կը տեղայ, եւ Արղընու հովիտն՝ որոյ մէկ ծայր կը հասնի մինչեւ Տիգրանակերտը, անհուն տարածութեամբ կը պար-

զուի մեր աչաց առջեւ ։ Երեկոյեան ժամեր-գութիւնն աւարտած էր, մտանք Բարձրա-հայեաց Ս. Աստուածածնի վանքը, որ շին-ուած է ապառաժ ահագին բարձրութեան մը վրայ որ կը կոչուի Արկնոյ բերդ, եւ ար-դարեւ բերդին պարսպի բեկորներ եւ ողջ մնացած մասեր կան ։ Վանքին թէ Ս. տա-ճարն եւ թէ միւս շէնքերը քարաշէն են, թէպէտ հոյակապ շէնք չունի, բայց նայելով երկրին այլ շինուածոց, իբրեւ նշանաւոր հռչակուած է, բազմաթիւ՝ այլ խառն ի խուռն սենեակներ ունի, աղբիւր չկայ ուս-տի երկու մեծ ստունիճ ունի ջրալից ։ Առաջ-նորդարանին դարպասը ամենէն չքեղ շէնքն է, ընդարձակ եւ կոկիկ, իր ճակատն եւ մէկ կողմն շինուած են գրադարանները, յորս զետեղուած են տպեալ եւ ձեռագիր բազ-մաթիւ մատեանները բաւական խնամքով պահպանուած ։ Ձեռագիրներու ցանկն տես ի յիշատակարանս ։

Գրադարանաց անկիւնը փոքրիկ դուռ մը կայ՝ վրան նկարուած Երիքովէն ողկոյզ կրո-ղաց պատկեր մը, այս դռնէն ներս փոքրիկ սենեակ մը յախճապակիով, եւ մէջը հազ-ուագիւտ եւ թանկագին անօթներ, սափոր-ներ, եւայլն ։ Երկու դարակաց դռան կը ծածկեն երկու ահաւոր պատկերներ Պօղոս եւ Պետրոս առաքելոց, մէկն բանալին ի ձե-ռին, միւսն սուր, սենեակը կը կոչեն չաՆաղ օՏԱսի, արքայութեան օթեւան ։ Մեծ դար-

պարին Արեւմտեան ճակատը՝ չինողին անունը գրած է. եւ անկէ կը բացուի դուռ մը վանահօր առանձնասենեակը. ուստի կը մտնեն մառանն ու չտեմարանը անօթոց, եւ ի տուն գինւոյ։

Ս. Տաճարն գմբէթաւոր է, բարձր, քառակուսի, ամուր քարուկիր։ Դրան ճակատը գրուած «Աւժանդակութեամբ Աստուծոյ եւ հրամանաւ Աւթման Շահին կանգնեցաւ խորան Ս. վերադիտողութեամբ Նգչ. Մկրտիչ եպսի. Թվ. Գ. Գ.»։

Ս. Տաճարին մէջը յախճապակիով է մինչեւ կամարները, ունի մէկ խորան յանուն Ս. Աստուածածնի... սեղանոյն վրայի Տիրամօր պատկերը հռչակաւոր է, զոր Ցոյնք եւս կը պատուեն. աւանդելով թէ՝ Ս. Ղուկաս Աւետարանչի ձեռանկարն է։ Մենք չօշափելով տեսանք որ նուրբ կաշի պէս նիւթով մը ծեփուած է, եւ այդ նիւթոյն վրայ նկարուած էր Ս. Աստուածածին՝ Քրիստոս մանուկն ի գիրկն, արծաթ շրջանակի մէջ առնուած, եւ շրջանակին վրայ յունարէն տառերով թուական, 1786։ Իսկ Քրիստոսի կուրծքին վրայ հայերէն գրուած «Ցշտկ է Մատանու գահանից իշխանաց եւ համօրէն ժողովրդոցն, աւուրըն Սարընցի Կարապետ վարդապետին. Թվ. հայոց ۱۲۳۶, մարտ ժե»։ Տախտակէ պատուանդանին վրայ, ուր կը հանգչի պատկերն, սպիտակ գրերով գրուած. «Նկարեցաւ պատկերս ի Ղալաթիա. յիշա-

տակ Եղիազար վարդապետին · ի դուռն Բարձրահայեաց Ս · Աստուածածնին · Թվ · Ռ · Ճ · Դ · » : Ս · սեղանոյն ետեւ , աջակողմն գրուած է « Եօթն բեռ սրբոց մասանց , ի մատուռնս » : Արդէն յայտնի է որ վանքիս շինողն է Նազաշ Մկրտիչ եպիսկոպոս , եւ աւելի բարեզարդած է Եղիազար Անթապցին , պատրիարք եւ կաթողիկոս , անուանին իբր դար մը առաջ : Նազաշն՝ Մուֆարղինէն , որ է Նփրկերտ կամ Մարտիրոսաց քաղաք · Շմաւոն եպիսկոպոսի զետեղած բիւր մարտիրոսաց նշխարներէն մեծ մասն փոխադրած է այս տեղ , եւ շատ մ՚ալ Մշոյ Ս · Կարապետ եւ Տարօնոյ միւս վանքերը · բայց յաւանդութենէ կ՚ըսեն թէ՝ Նազաշէն յառաջ մատուռ կար այստեղ Թադէոս առաքեալէն հիմնուած :

Ս · Տաճարին մէջը ճրագ մը տեսանք վրան արծաթ մէջը հողէ , զոր կը վառեն կայծակի օրերը , եւ կ՚անուանեն « Արնէ ճրագ , կայծակի ճրագ » , վանքն իր դիրքով յաճախ ենթակայ է կայծակի : Այդ ճրագի արծաթին վրայ գրուած « Յիշատակ է ճրագս արնէ ի տաճարն Բարձրահայեաց Ս · Աստուածածնայ , ի Նորին Առաջնորդ Աճէմեան Կարապետ վարդապետէն , որ է ինքն շաղեալ արեամբ մարտիրոսաց , ի յապահովութիւն տեղւոյս միաբանից ի կայծական , ի Ռ · Մ · Ջ · » :

Այդ ճրագի ձեւով շինուած հողէ ճրագ մը

հետս բերի եւ դրած եմ Ղալաթիոյ Մատենադարանը ։

Մի այլ յիշատակագիր չէնքերու նորոգութեանց․ «Շնորհիւ տեառն վերստին նորոգեցաւ Ս․ վանքիս բոլոր խցներն, Կոստանդնու Գրիգոր Պատրիարքի փոխանորդի Սաընցի Կարապետ վարդապետի ձեռամբ, եւ նորին աշորդ Պօղոս վարդապետին, Թվ․ Ռ․Մ․Ժ․Գ․ին»։ Սոյն Կարապետ վարդապետին, ինչպէս եւ այլ Առաջնորդաց գերեզմանք Ս․ տաճարի դրան կից են, ահա երկու տապանագիր․

Ա․ «Աստ ամփոփի նշխար ի դիր, Կարապետու արհի պետին, որբոյ ուխտիս արի դիտին, եւ մեծագործ... զի համայն չէնք թէ արտաքին, միանգամայն եւ թէ ներքին, արհւոյս ջանիւք կերտել յանգին»։

Բ․ «Սահակ արհի մեծ բաբունիս, տեսուչ համթայ եւ սուրբ ուխտիս,
Ծնեալ յԱմիթ, սնեալ յաստիս, ննջեալ յայժմիկ ի տապանիս,
Մանկութենէ հասեալ յալիս, հոգայր պիտոյս մենաստանիս,
Զարդք եւ շինուածք եւ կարասիս, ընդ նոր մատրանս կազմեաց արհիս,
Բուրման խնկոց միշտ արժանիս, վարձ իւր հայցէ տալ զողորմիս,
Դուք որ ունիք զայս տան բարիս, եւ կամ որ գայք ուխտ տաճարիս։

կցեալ հազարն երկհարիւրիս, յեօթանասնին որ Հայիս.
Համ տեսչութեան քան եօթնիս, թիւ կենացն վաթսուն հնգիս»։

Վանքէն վեր, ապառաժին բուն գագաթը կը գտնուի Տանկաց Թէքքէն զիգզի փէղամբար անունով, ուր չիրիմ մը կայ զարդարուած։ Քանի մը կարդացողներ կը նստին հոն, ունի ուխտաւորներ։ Վսեմ. Աբէդին փաշան վանքը մէկ գիշեր օթելով, իրեն հետ առիթ ունեցանք Թէքքէն երթալու եւ Գերեզմանը տեսնալու։ Պատմութիւնն մեզ կ'ըսէ թէ՝ Այս ապառաժն էր Հարբէկ իշխանին բերդ, յորում սպանաւ նենգութեամբ, եւ թէ՝ այդ գերեզմանն լինի այն քաջ՝ այլ դժբաղդ Հարբէկին չիրիմը, որ եղաւ նախատինք Յունաց։ (Մատթ. Ուռհ.)

Վանքիս Ս. անօթներ եւ Ս. զգեստներ մեծ հուշակ ունէին, զորս դժբախտաբար չի կրցինք տեսնել, զի պատերազմի օրերէն ի դարանի կը պահուէին. այսպիսի ամայի տեղ մը զգուշութիւն եւ փորձառութիւն թելադրած էր զիրենք ընել այդ բանը, եւ մի նոր պարսպի պէս պատ մը շարած էին վանքին արեւմտեան ժայռերու վրայ, ուստի աւազակներ մտած էին քանիցս, եւ ի վերջոյ այնտեղը կենալով քարկոծեր էին վանքը։ Այստեղի անօթներ եւ մատեաններ եւ զանազան հազուագիւտ նիւթերը գաւառիս մէջ գտնուած վանքերու եւ եկեղեցեաց ա-

ւերմանէն յետոյ հետզհետէ ժողվուեր էին, իբրեւ ամուր եւ ապահով վայր, եւ զորս այնքան խնամօք ու արթնութեամբ պահպանել ներկայ վանահայր Յովհաննէս ծերունի ու առաքինի վարդապետին շնորհքն էր, արդարեւ սուրբի պէս մարդ մը, իւր մաքուր ու անբասիր վարքով, հեզ ու քաղցր բնաւորութեամբ, շէնարարութեամբ եւ անտեսագիտութեամբ աննման, համբոյր եւ սպիտակ ալեօք, որ կ'արժէր հազար ցուցամոլ եւ պոռոտախօս՝ բայց անարդիւնք վարդապետ եւ եպիսկոպոս. սակայն եւ այնպէս Հրաշագործի հրաշքներուն քանիցս հանդիպած էր, եւ վանքին կարգադրութիւնները խախտելէն ու զանազան կորուստներ պատճառելէն զկնի, անգամ մը եւս յաջողած էր պատրել զպատրիարքարանն եւ վանուցս տեսչութիւնն ստանալ, խոստանալով որ գիշերօթիկ վարժարան եւ տպարան հաստատէր վանքը։—Մինչեւ Ե՞րբ խաբուի ազգն այսպիսի գեղեցիկ այլ պատիր խոստումներէն, դժբախտաբար միայնակ չէ Հրաշագործն այս հրապուրիչ արհեստը գործածող։ — Վանահօր մեծ պակասութիւնն էր կանոնաւոր տոմար եւ արձանագրութիւն չունենալ, որոյ համար հրահանգեցինք զինքն։

Թեմական Հայք, ուխտաւորք, եւ շրջակայ այլ ազգք գրեթէ կը պաշտեն այս արժանաւոր անձն, որ թէպէտ այնքան ուսեալ մէկը չէ. բայց բարեմիտ եւ բարեգործ

է, եւ այս շատ հազուագիւտ բան է մեր այժմեան կրօնաւորաց մէջ։ Վանքն ունի երեք վարդապետ եւս, որք վանական կարգով կը պաշտեն ի Ս. տաճարին սաղմոսիւք, ժամերգութեամբ եւ պատարագաւ, եւ կը շրջին թեմերը այցելութեամբ ու ժողովրդոց հոգեւոր գործեր նայելէն զկնի, անոնց նուէրներ կը բերեն վանքը։ Թեմերէն վեց որբ տղայք եւ եօթն սպասաւոր երիտասարդք կային վանքը, ուր կը ծառայէին եւ կը կարդային։ Այգիներ եւ արտերը կը տարածուէին լեռան ստորոտը, 38 կտոր արտ ունէր, 5 խանութ՝ Մատէնի մէջ, 2 խանութ՝ Ջերմուկի մէջ, 4 տուն Տիգրանակերտը, 1 տուն՝ Արղնի։ Մշակութիւն մարաբաներով էր, թափուն «Մարիամ դուստր Յովակիմայ» անուամբ։ Կալուածներու եկամուտէն զատ, իբր 100 ոսկի եւ երթեւեկաց բազմութիւն ու անոնց համար մսխանքը մեծ տեղ մը կը բռնէր։ Պարտք երբէք չունէր։

## ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ԹԵՄՔ ԿԱՄ ՀԱՅԱԲՆԱԿ ԱՒԱՆՔ ԵՒ ԳԻՒՂՕՐԱՅՔ

---

## ԱՐՂՆՈՅ ՄԱՏԱՆ

Բարձրահայեաց վանքը վիճակին աթոռն է. եւ վանահայրն՝ Առաջնորդ։ Իւր թեմերուն քաղաքական կառավարութեան կեդրոնն է Փախըր մատան կամ Արղընոյ մատան.

ուր կը նստի Մութասարըֆ՝ հանգստ տեսչութեան համար, եւ որ դեռ քաղաքի կերպարանք չէ զգեցած․ օդն ալ ծանր է։ Ցայտնի է թէ մեր Օսմ․ կայսերութեան արդիւնաբեր հանքերէն մին է այս, ուր կան մեծամեծ բովեր, եւ փարպետաց ու գործաւորաց բազմութիւն, մեծաւ մասամբ յոյն։ Վանքէն 2 $^{1}/_{2}$ ժամ հեռի է, ի հարկին առաջնորդ կ՚երթայ կուգայ հոն։ Մատանը գտնուելով գրեթէ ընդ մէջ Խարբերդի եւ Տիգրանակերտի, երբեմն մէկին երբեմն միւսի վիլայէթին ենթակայ է։

Բնակիչք են Թուրք, Ցոյն, Զազայ քուրդ եւ Հայ։

Մէկ եկեղեցի Հայոց, Ս․Աստուածածին, որ ունի կալուած 20 ու կէս խանութ, 2 տուն, 2 ջաղացք, եւ պարտէզ մը, կալուածագրերն են «Մարիամ Ցովակիմեան» եկեղեցւոյ անուամբ, եւ կը պահուէին եկեղեցպան Մկրտիչեան Նալբանդ Սարգսի քով։ Վարժարան 1, Աշակերտ 50․ տունք Հայոց 163։

## ԱՐՂՆԻ ԱԻԱՆ

Բուն Արղնին, իւր հին ու ամուր բերդով եւ իբրեւ նախկին քաղաք հեռաչեւոէ ինկած է․ քանի մը հին ու նշանաւոր գերդաստանք դեռ կը բնակին հոն Թրքերէ եւ Քրդերէ, բայց մեծ մասամբ անկիրթ եւ անբարեբարոյ են միացեալք։ Հայք եւս անկիրթ եւ գիրար բղքտող։

Միւտիր կը նստի աստ, Մատանի մութասարըֆութեան տակ։ Ունին այգիներ, պարտէզներ, կը մշակեն արտեր։

Երկու եկեղեցի Հայոց, Ս. Սարգիս եւ Ս. Սարգիս։ 2 վարժարան (փակեալ)։ Տունք Հայոց 252։

Փայամշի գիւղ. 1 եկեղեցի Ս. Աստուածածին։ Տունք Հայոց 30։

## ԱԿԻՂ ԱԻԱՆ

Ապառաժներու մէջ շինուած ամուր բերդաւան մը, որոյ քարափոր բերդն, բուրգեր, եւ քարայրէ գերեզմանները հիացումն սարսափ եւ հետաքրքրութիւն կը պատճառեն տեսողաց. գերեզմանները փորուած են յատկապէս, եւ կը ցուցնեն իրենց դիրքով թէ՝ երեւելի արանց շիրիմներ եղած են, այժմ թափուր. երկու սեւացեալ քարայրեր իրենց փորածոյ ձեւերով կարծել կուտան թէ մեհենի տեղ են եղած, եւ այս անմատոյց վայրը ոչ միայն շիրմաց՝ այլեւ գանձուց եւ կարասեաց դարան են։ Բայց ո՞յք են եղեր այստեղի նախկին բնակիչք. ո՞րքան պակաս են մեր հին պատմութիւնք եւ նոր տեղագրութիւնք այս հին ու հիանալի աշխարհին վրայ։ Բազմաց թերեւս ծանօթ է Ակիլ անունն. դարձեալ օրհնեալ լինի մեր ծեր Խորենացին, որ Բ. Արտաշէսի մեծ խնամակալին Սմբատայ համար կը գրէ...

«Սմբատայ տեղի տուեալ գնաց զկողմամբք Ասորեստանի, իւրով կամաւ թողու զիշխանութիւն զօրացն Հայոց, ընդ որ խանդայր Արտաւազդ, եւ հրամանաւ Արտաշիսի բնակի ի Տմորիս, ի յԱղձնի, հաստուցեալ զբազմութիւն գերւոյն, քանզի էր ի ծերութեան կին արարեալ յԱսորեստանեայց հուպ յայն կողմանս, զոր յոյժ սիրեաց, վասն այնորիկ եւ զնովին կողմամբք բնակեցաւ»։

Արդ ահա կողմն Ասորեստանեայց, ահա Ակիղ, որ անշուշտ ձեռագրի սխալմամբ եղեր է Աղկի։ Սմբատ գիտէր Հայ աշխարհի բոլոր կիրճերն ու ամրոցներ. Սմբատայ ընտրութեան եւ բնակութեան արժանի է Ակիլ։ Իսկ թէ ո՞յք յառաջ կամ յետոյ քան զնա, չգիտեմ։

Այժմ Ակիլոյ բէկերն ազնուութիւն ցոյց չեն տար, ոչ անձանց եւ ոչ վարմանց մէջ. Զազայի լեզուով կը խօսին։ Մարմնաւորական, հոգեւորական եւ բարոյական ախտ են դոքա այդ կողմի բնակչաց, որոց վրայ ոչ թէ միայն լսելով կը գրենք, այլ մեր աչքով զիրենք եւ իրենց ըրածները տեսնալով։ Անոնց քանի մը գնտակներ ալ նոյն իսկ մեր ականջի քովէն գծալով անցան։ Անշուշտ բարեխնամ կառավարութիւնը իր աչքը կը կարկառէ հոն եւ անոր պէս տեղերը, որոց կարգին կը յիշեմ Ջերմուկն եւ Ջնքուշն, յորս կը բնակին աշխատասէր եւ խաղաղ հպատակք Օսմ. կայսերութեան. սակայն

այդպիսեաց լլկանաց եւ զրկանաց մէջ։

Ակլայ ամրոցի ետեւէն խոր ձայռերու միջով կ՚անցնի Տիգրիս երթալ ի Տիգրանակերտ, եւ իւր կողն ու կուշտը տարածեալ են այգեստանք։ Ակլայ ետեւի լեռներն են Մշոյ եւ կինջի լեռները։

1 եկեղեցի Հայոց, Ս. Նշան։ Տունք Հայոց 200։ — Ս. Նշան՝ որում ուխտաւորք եւս կը դիմեն, երկաթէ մեծ խաչ մի է, իբր հարիւր պաստառներով պատատուած, կոթը միայն կը համբուրեն. կ՚աւանդեն թէ՝ այն տաշտին մասն է, յոր Տիրամայրն զՄանուկն Յիսուս կը լուար։ կօլձուկէն բերուած է հոս։ Ծիշտ այս մեծութեամբ եւ այս աւանդութեամբ Ս. Նշան մի եւս վանայ Արծկէի Աքանչելագործ վանքը կայ։

Փիրաճ գիւղ, 1 եկեղեցի Ս. Աստուածածին. տունք Հայոց 40։

Հրեղաճ գիւղ. 1 եկեղեցի Ս. Աստուածածին. տունք Հայոց 42։

Թիլ քաղղաs. Տունք Հայոց 45։

Հօփիկ. 1 եկեղեցի Ս. Գէորգ. Տ. Հ. 15։

## ՋԵՐՄՈՒԿ ԱԻԱՆ

Ջերմուկը իւր անունն առած է ջերմուկ ջրերէն, որ երկու աւազանով իրարու մօտ կը բղխին, շէնքով ծածկուած, մէկն կանանց յատկացեալ, միւսն արանց, յաճախ ի պէտս առողջութեան եւ մաքրութեան ոչ

միայն մերձականներէն, այլ եւ ի հեռուստ կուգան այս ջրերը, որ մօտ են աւանին: Աւանը լեռնամէջ է, աղտոտ անձաչակ չէնքերով, նոյնպէս եւ բնակիչք, յոր Հայէն, Թուրքէն եւ Քրդէն զատ կան նաեւ Հրեայք: Ծառազարդ, այգեւէտ, եւ ջրաշատ է աւանը, տեղը փոս, ամուր լերանց մէջ, որոյ վրայ բարձրացած կարգ մը քարեր ի հեռուստ կը կարծուին թէ՝ պահապաններ են կեցած բերդին վրայ, բայց տեղացիք «Հարսնեւորներ» կամ հարսնէք կ'անուանեն, ու Թուրքեր՝ Կէլինճիք, ու կ'ըսեն Աստուծոյ օրինաց հակառակ պսակ ուզեր են ընել, Աստուած քարի դարձուցեր է զիրենք: Ջերմուկի օդը ծանր է արդէն, ապականութիւնք ալ լի, որք ժանտաթոյնի պէս կ'ազդեն մարդոյ, բնակիչքը վատոյժ եւ վատառողջ են: Խուժադուժք հոս ալ լի են:

1 եկեղեցի Հայոց, Ս. Աբդլմսեհ: Մատուռ մը լեռան կողն, բայց գեղին մէջ եւս ունէին յարկ մը աղօթելու, եւ եկեղեցի մը շինելու համար հրովարտակ առեր էին, տեղական արգելքներ յարուցեր էին ոմանք, որոց երեսէն բաւական ստակէ ելեր էին, մենք ալ գրեցինք ի Խարբերդ դիւրացնելու համար: Գրեցինք նաեւ քանի մը եղեռնագործաց համար, եւ արդիւնքը տեսած էին ժողովուրդք, որոց հետ մենք ալ գոհ եղանք Վսեմ. փաշայէն:

Մէկ վարժարան. աշ. 48: Տունք Հայոց 278:

Այս գաւառները Թէպէտ լեռնային մասեր ունին, բայց մեծաւ մասամբ դաշտային են․ Բարձրահայեաց վանքէն անսահման հորիզոն մը կը տարածուի դաշտային երեւոյԹի մը, որոյ ծայրն կը հասնի Տիգրանակերտ քաղաքը, զոր չkoղ կ'անուանեն․ Արղնոյ ծայրը աւելի մշակեալ է հողն, աւեր եւ լքեալ գեղեր շատ կան, որոց բնակիչները չկրնալով դիմանալ յաճախ ասպատակուԹեանց, որ տեղի կունենար յառաջագոյն Քուրդ եւ Արաբաքուրդ ցեղերու մէջ, տեղափոխուեր են յԱրղնի եւ այլ ուրեք։

Կը մշակեն բամբակ, ցորեն, գարի, կտաւատ, բրինձ եւ այլ զանազան ընդեղէնք․ կը բուծանեն ընտանի անասունք։ Ընտիր մրգեղէն ունին, եւ նուշ եւ նուռն։ Իսկ խաղողը այնքան ազնիւ եւ այնքան շատ, որոյ նման Հայաբնակ գաւառաց մէջ չկայ տեղ մը, չգիտեմ ինչու Արղնոյ 'գաւառ կոչած են եւ ոչ՝ խաղողոյ։ Դեղին, սեւ, կարմիր, սպիտակ խաղողներ, խոշորահատ, անուշահոտ, մեղրածորան, որ սոսինձի պէս կը փակչի ուտողին մատները, նրբամորԹ, սակաւակուտ, մսոտ։ Զատ է գինւոյ խաղողն որ նոյնքան առատ է եւ պատուական իւր գոյնն ու համը։ ԳրեԹէ լեռներն ամբողջ որԹատունկ են․ Հողը դեղնակարմիր է․ այգիներ ոչ պատ ունին ոչ պառիկոն, որքան կուզեն Թող ուտեն, Թող տանին ուղեւորք։ Ասկէ կ'երԹան շատ հեռա-

ւոր գաւառները այնքան մեծ քանակութեամբ չամիչ, պաստեղ, եւ կերպ կերպ քաղցրաւենիք ալիւրով շաղուած, եւ ռուբ (բէքմէզ) կ'ու խաղողոյ մեղր, զոր եփելով կը պատրաստեն ։ Թէ անուշ է, թէ հաց է, եւ թէ քաղցր կեր ։ Կը վաճառէ նաեւ խէժ, գղթոր, տորոն, գանգուլ (անթուֆ), որ գղթորի տեսակ մ'է, բամբակ, բրինձ, բուրդ, փոստ, աղուէս, գայլ, նապաստակ, կուզ, եւայլն ։

Մատանի պղինձէն զատ, որ շատ առատ է, ունի նաեւ Հրէդան դեղին մօտ արճիճ, ծծումբ, զաճ, խարաբօյայ, եւայլն ։ Տեղական պէտքերու համար արհեստաւորներ են Հայք, որ զուտ Հայերէն կը խօսին ։

Քանի մը գեղերու անուններ կը յիշեմ, որք այժմ Քրդաբնակ են, բայց իրենց մէջ ունին չէն կամ աւեր եկեղեցիք Հայոց ․

Հաբարման, Հասուբ, Ախոռներ, Հալբաբ Ս․ Թորոս, Հիլար, Մալան, Բալախու, Թըլխըձոր, Օհան աղբիւր կամ Բակուր, Վառի գեղ, Ս․ Եղիա գեղ, (քըռլար քիլիսայ), Հերսընի, Կարմիր քար, Ագրակ, Մանտիքան, Թըլղասի, Թըլխում, Զանգաբիլ, Եկնի քեօյ, Լաղարի, Խան գեղ, Տօղան, Ալմասին, Քարբիլ, Կավուր քեօյ, Այլու, Ղուլֆախիր, եւայլն ։ Ասոնցմէ զատ՝ Ջերմուկայ մէջ՝ փլուկ եկեղեցի մը ։ Արղնոյ մէջ Ս․ Փրկիչ եւ Գաւրիլիա ուխտատեղիք ։ Ակլըոյ քովեր՝ Անապատ վանք մը՝ աւերակ, Թովմաս առաքեալ

եւ Սուլթանըմայ վանքեր՝ աւերակ։ Հրէդան գեղի մէջ՝ Ս. Յակոբայ վանք աւեր։

Կօշմուկ գեղը՝ Թէպէտ վանքիս Թեմ է. բայց Խարբերդի վերաբերելուն համար այն կարգին գրած ենք։

## ՉԸՆՔՈՒՇ

Ջերմուկէն վեց ժամ գնացինք ի Չընքուշ, որ Մամանու ենթակայ աւան մի է լեռնամիջեայ, շինուած քարաբլուրի մը վրայ եւ իւր չորս կողմն քարաբլուրներ. իւր երեսներ եւ կողերը գեղեցիկ են ծառատունկերով եւ չէնքերով, առջեւը փոքրիկ հովիտ մը կայ, ջուր մը կը զատէ աւանն այս հովիտէն։ Ուղին քարուտ եւ ահուտ է, մանաւանդ Սախալ թուրքաճ ըսուած նեղ տեղը. սակայն չատ տեղեր ալ զուարճալի. երկու ժամէն աւելի այգեստանեայց մէջէն կ՚անցնէր մեր ուղին, պտղալից համեղ խաղողներով։ Վանքը քառորդ ժամ բացակայ է աւանէն, շինուած հովտիկին բերանը, հոն դիմեցինք։ Սիրանուայեաց Ս. Աստուածածին կ՚անուանուի. կոկիկ եւ սիրուն չէնք մի է, այգիներու եւ ծառերու մէջ, իր առջեւի տարածեալ արտերն իրենն են, եւ դրան առջեւ գերեզմանք Չնքուշցւոց։ Վանահայր Մալաթիացի Մինաս վարդապետ կը տագնապէր տապով։ Խեղճը երկու տարիէ հետէ այս տենդը կը քաշէր երկու օր անգամ մը։

Ցերեկը դռներ գոց էին վանքին, մեզ դիմաւորեցին խոժոռ դամբռեր, որոց ահագին աղմուկէն տանիքն ելան մեզ տեսան եւ դռները բացին: Վանքիս շէնքերու նման՝ աղէկ էր իւր տնտեսութիւնն ալ. իւր հասոյթն էր երկու ջաղացքներէն. հողերէն եւ այգիներէն եկած արդիւնքը. իսկ Թեմ ունէր Չընքուշն եւ Ադիշ գեղը:

Նախորդ վանահայր Տիգրանակերտցի Բաղդասար վարդապետ, որ 40 տարի չարունակ պաշտօն վարած է. իր օրով շինել տուած է վանքիս Ս. Տաճարն եւ այլ շէնքերը. Չընքուշայ եւ Ադիշոյ եկեղեցիները, քարուկիր եւ վայելչակերտ, ունեցած է շատ մը եղբայրք, եւ իւր բարեվարութեամբ ու բարեգործութեամբ սիրելի եղած է երկրի Շեխերուն, Թրքաց, Քրդաց եւ Հայոց, որք առ հասարակ Մեծ Դեsե կը կոչէին զինքն, եւ Հայք ամէն պատարագին կը յիշեն նորա անունը ի կարգի «Հանգուցեալ րաբունապետաց եւ շինողաց սուրբ եկեղեցւոյ». իւր գերեզմանին ալ ուխտի կ'երթան: Այս երանելոյն անուան վրայ քափուր էին գրած վանքին արտեր եւ ջաղացքները, որոյ մահուանէն յետոյ մաճիլիղ գրուած էին, որոյ դատին ընդ երկար աշխատութիւն եւ ծախքեր եղան, եւ պատրիարքարան մեծ ջանքեր ըրաւ:

Վանահայրն առաջնորդ էր միանգամայն, բայց ոչ ժողովուրդն իրմէն եւ ոչ ինքն ա-

նոնցմէ դոհ էին։ Տկար էր ինքն, եւ անվարժ արդի օրինաց. թէպէտ կամքն ու վարքը խիստ բարի։ Կ՚աշխատէր վարժարան մի շինել վանքին մէջ, ուր իր օրով ալ բաւական շէնքեր աւելցուցած էր։ Հոս ալ խնամքով պահպանուած մատեաններ շատ կային. (ձեռագիրներու ցանկն տես ի յիշատակարանս)։

Ս. տաճարին դրան ճակատին վրայ արձանագրուած էր.

« Թվին Փրկչին 1841. Հայոց 1290։ Հանդերձ բոլոր շինուածովքն ի հիմանց վերստին կանգնեցաւ Ս. եկեղեցիս, Օսմանեան բարձր հրամանաւ Սուլթան Մաջիթին, եւ բազում ջանիւք եւ վաստակովք Տիգրանակերտցի տեառն Բաղդասար րաբունապետի եւ տեղեացս առաջնորդին եւ աշխատութեամբ արանց եւ կանանց, ուստերաց եւ դստերաց Ջնքուշոյ եւ Ադիշոյ բազմութեան, որք վասն քիրաջի, աւազոյ եւ փայտի կրելոյն յոյժ աշխատեցան. իսկ տրովք Աստուածասէր ժողովրդոց, եկամտից եւ մերայնոց, ընկալցի Աստուած։

« Սա է դուռն Տէրունական,
Աստ բազմեալ երկնից Արքայն,
Որք հաւատով դիմեն եւ գան,
Գտցեն ճարակ, դեղ թողութեան։»

« Եթէ ոչ տէր շինէ զտուն ի նանիր վաստակին շինողք նորա»։

Ջնքուշի բնակիչք երբէք հողագործութիւն

չունին, այգեգործ են եւ տեղական արհեստներով զբաղեալ, գրեթէ ամէն գարուն կը ցրուին զանազան քաղաքներ ու գեղերը, կաշիի, կօշիկի, գրաստի եւայլեւայլ նիւթոց փոխադրութեամբ, առեւտրով կ'աշխատին, ձմեռները կը ժողվուին իրենց տները։

Հոս ալ չարագործներ չեն պակսիր որոց գործերն կարելի չէ պատմել։

Աղիշոյ Հայք գրեթէ բոլորն ալ ի Պօլիս պանդխտելով կ'ապրին, հացագործ են մեծաւ մասամբ։

Զնխուշ 1 եկեղեցի կայ Հայոց․ Ս․ Կարապետ․ 1 վարժ․ աշ․ 125։ Տունք Հայոց 500։

Աղիշ․ 1 եկեղեցի կայ Հայոց․ Ս․ Կարապետ․ որ ունի կալուած Պօլսոյ Խասգեղի մէջ 1 խանութ, եւ գեղը՝ 1 ջաղացք։

Կալուածագրեր Պղտոյենց Ս․ Յարութիւնի անուան են։ Վարժ․ 1, աշ․ 100։ Տունք Հայոց 500։ Կայ մի աւեր եկեղեցի եւս։

Խաունկը բնակին Թուրք եւ Քուրդք, Հայոց մէջէն կաթոլիկ եւ բողոքական ալ կայ, լուսաւորութիւն չէ մտեր մէջերնին․ Աւետարեր լրագիր ինչ որ գրէ՝ այն միայն գիտեն։ Հասակաւոր եւ ծեր այր մարդիկ օղ ունին ականջնին, իսկ կանայք քօղով ծածկուած են մինչեւ մահուան օր, երբ հողով կը ծածկուին։

Սեւարակն եւ Զնքուշն եւս կցելով Արղընոյ, Ջերմուկայ եւ Ակիլոյ հետ, մէկ առաջնորդական թեմ կազմելու է, կեդրոնն

ունենալով Արղնոյ Մատանն, ուր միւթէ-սարիֆն կը նստի, որոյ ենթակայ են յիշեալ գաւառներ, որք կրնան երկրորդական առաջնորդ մը պահել եւ իրենց գործքերը խնամքով նայել տալ· զայս առաջարկած եմք եւ կը կրկնեմք վերստին Պատրիարքարանին։

Վերոյգրեալ տեղերու լեռնային մասն կը կազմեն Արղնոյ Մատէնն. Ջերմուկ, Ակիլ, Կէօլճիւկ եւ Զընքուշն։ Անուանով լեռներն են Մէհրապ եւ Հազար Բաբա, Սիահ Տաւուք, Արդլմսեհ լեռն, ուր ուխտատեղի կայ սրբոյն անուամբ, Կոմայրկոյ լեռներ, որք Խարբերդի լերանց շղթայն են։ Արղնոյ մօտ՝ Կարմիր քար լեռն—Սաքըզլը տաղ—, Էլի տաղի, եւն։ Իսկ հովիտներն են՝ Արղնոյ Մատէնի քով Բէյրմասու ովան, Արղնոյ առջեւ Կէմրէ, Ղլիչ եւ Էլխան ովաներ, որ Տիգրանակերտի մեծ դաշտին մասն կը կազմեն։ Ակիլոյ հողերու եւ գեղերու տէր կը համարուին գրեթէ տեղացի պէյերը, քիչ հողեր կան թափու եղած ժողովրդեան վրայ. իսկ միւս տեղեր մեծաւ մասամբ թափու են իբր թէ Պէյերուն վրայ։

Փոքրիկ Ջրերէն զատ՝ Արղնոյ Մատէնի գետակ եւ Ակիլոյ վտակն կ'երթայ կը թափի Տիգրանակերտի Շատը։

Խարբերդի մեծ պողոտայն Մատէնու եւ Արղնոյ առջեւէն կ'անցնի։ Ընդհանրապէս վատառողջ օդ ունին Մատէն եւ Ջերմուկն։

# ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ

Սեպտեմբեր 12ին մեկնեցանք Բարձրահայեաց վանքէն՝ ի Տիգրանակերտ երթալու։ Միաբան Ս. Հարք «Ճանապարհ» երգեցին. վանահայրը «Տէր ուղեա» աղօթքն ըսաւ. եւ Տիգրանակերտցի ուխտաւորաց մանկունք «Մնացեք բարեաւ», եւ «Ուրախ լուրեր տար ի մեր տուն...» քաղցրաձայն եղանակեցին։ Արտայոյզ օրհնեցի մանկտին, համբուրեցի պատկառելի Ս. Հօր աջը. եւ արագօրէն կ՚իջնէինք մեծ զառիվայրն, ծանր ու խոր հայեացքներ ձգելով մեր չուրջը։

Արղնոյ Շեխ աղան յատկապէս իր մարդը դրաւ հետերնիս, կառավարութենէն ալ երկու ոստիկան ունէինք, դարձեալ կը սարսափեցնէին զմեզ մեր գնալիք ուղւոյն վըտանգներն պատմելով. միեւնոյն ժամ «Շեխ աղայի մարդ հետերնիդ է, ապահով էք» կ՚ըսեն։ Անշուշտ հասկցուեցաւ այս խօսք։ Ժամ ու կէս շեղակի գնալով իջանք խանին դուռը, եւ բռնելով մեծ պողոտայն՝ յառաջացանք այդ ամայի եւ անեզր դաշտին մէջ։ Տօթ է օդն։ Արտօրայք հնձուած են։ Հազիւ կը պատահինք Քրդաց վրաններու. տեղ տեղ անդեայք եւ խաշինք. հատ հատ ֆէլահի ցեղ անցորդներ սեւամարմին, անվարտիք, շապիկ մը եւեթ հագած՝ որոյ փողպատով կը ծածկեն իրենց գլուխը արեւու

կիզմանէն ։ Երկու ժամ անգամ մը կըհասնինք ջրհորի մը, ուր դոյլ կայ ուր դոյլ չը կայ ։ Քրդաց[1] մէկ երկու գեղէ կ'անցնինք, ուր բնակիչ կայ ուր չկայ ։ Արեգակն կը խաշէ զմեզ. քարջինի ծառ մը՝ ադենական դրախտի չափ արժեց մեզ, մենք հասկցանք թէ անապատին մէջ ի՞նչ է ովասիս ։ Սակայն այդ երանութեան ծառոյն հովանւոյն ներքեւ փռուած էին խումբ մը մերկ ու սեւացեալ մարդիկ, մանկտիք եւ ընտանիք. բոշաներ էին իրենց կարասաբարձ էշերով եւ պահապան շներով. արգիլեցի ոստիկաններ որ չդպչին այդ մարդոց, որոց արդար իրաւունքն էին վայրի ծառեր եւ անոնց հովերը. նոքա մեզի թողած են քաղաքներ, շէներ եւ պարտէզներ ։

Սակայն մեր ըրածին փոխարէն չէր որում պատահեցանք քիչ մ'անդին, ջրհորի մը բերան, ուր դոյլով ջուր կը հանէին իրենց էշերուն, քաջաբար մէկ կողմը հրեցին ոստիկանները, եւ թող չտուին ոչ մեր գրաստներուն մերձենալ խմելու աւազանէն եւ ոչ մեզ կաթիլ մը տուին դոյլէն, մինչեւ որ յագեցուցին իրենց էշերը ։ Երկու ժամ գնացեր էինք, մի անմեղ Քուրդ իր թեւին տակ կապած թեթեւ տիկէն քասայով մածնաթան մատոյց մեզ. արդեօք այդ համն ունի՞ նեկտարը. համեղ եւ թանկագին թան ։

Իրիկուան իջեւանեցանք Կէյիկ Թափա գեղի Քրդաց վրանները ։ Բչէր քահեան հիւր–

ընկալեց զմեզ։ Բէչէրի վրանը եղէգներով երկուքի բաժնուած էր, անդին էին ընտանիք, եւ կ'աշխատէին կաթն ու եղը պատրաստելով, տղաքնին օրրելով, չուլ ու չուալ գործելով, եւ այլն։ Վրանաբնակ կեանքը հաճոյական երեւոյթ կ'ընծայէր, գիշերը գեղեցիկ էր եւ զով. այդ լայնածաւալ դաշտին հորիզոնը վսեմ եւ ընդարձակ, պայծառ աստղալից երկինք. Ռամազանի աւթիւ մօլլայ եւ դաւրիշ կը շրջին գեղերը, իրիկուան աղօթքէն զ'կնի հանդիսաւոր ընթրիք մը տեղի ունեցաւ, սեղանակից էինք մենք, եւ կերակուրն էր կաթն, մեղրով մածուն, թան ու փիլաւ, եւ հացով ճմուռ, զոր եփած էին իւղով սոխի եւ սխտորի հետ։ Հացէն զկնի մարդիկ ելան դաշտին վրայ գոհութեան աղօթքն ընելու, եւ կանայք ու աղջկունք ժիրաժիր կը շարժին, անցուդարձ կ'ընեն, վրանէ վրան կը մտնան կ'ելնեն, քաղցր քաղցր կը խօսին, իրարու տ'նազ կ'ընեն։ Մեծամեծ կրակներ կը վառուին իւրաքանչիւր վրանի առջեւ, բոցերով լուսաւորութիւն կը լինի, ծուխերով մժիկները կը հալածուին, եւ այս բոցն ու ծուխը իրենց անոյշ հրապոյրն ունին անապատին գիշերուան մէջ։ Փոքրիկ լաքէճները կը խաղան շուներու եւ լակոտներու հետ, անոնց ձայնով կը հաչեն, լակոտներն ալ ցատկռտելով, կոտըրտուելով, աչք ու ականջը սրելով, պոչ երերցընելով «հաւք ու հաւք» կ'ընեն եւ կը լի-

զեն մանկիկները ։ Կովերը կը բառաչն, ձիերը կը վրնջան, զանգակները կը զնգան եւ մերթ ընդ մերթ ահագին ձայներ կը հանեն եւ յարձակում կ՚ընեն. շուն մը կայ եղեր կատաղած, որ կը վազէ վրաններու մէջն ու շուրջը, յանկարծ քրդաց միաձայն լօլօներ, եւ շանց «հաւր ու հաշտը» դղրդեցին դաշտը ։ — Սպաննեցէք կատաղին, կը գոչենք ։ Բայց տէրը կը պաշտպանէ եւ չթողուր, կը կապեն ամրապինդ ։ Անկարելի եղաւ մեզ ննջել ։ Եւ ահա մի նոր տեսարան եւ նոր արարուած. երկու դավրիշներ վրանատեղւոյն մէջտեղը, ընդարձակ հրապարակը մեծ կրակ մը վառեցին եւ սկսան թմբուկ ածել ու խաղ կանչել որոտալից, ամբոխն ամբողջ խռնեցաւ հոն, քրդուհիքն ալ նազանօք իրարու ձեռքէն բռնած հոն կը դիմէին կիսաժամու եւ զուարթագին. խաղին նաքարաթը կը լսէինք մենք, որ էր «Վայ Մուխթար փաշայ... Շեխ Ջալալադին» ։ Դարձաւ եւ պատմեց ուղեկիցներէն մին թէ՝ «Իբրեւ հաւատոյ ու պետութեան պաշտպան կը դրուատեն զՇեխ Ջալալադին, ջանադի երանութիւններ տալով անոր» ։

Երկու ժամ մնացեր լուսոյն ։ Ուղեկիցներ խորհուրդ կուտան որ Բչէր քեահեան հետերնիս առնենք ապա հեծնենք. երկիւղալից է ճամբան, եւ երկիւղի մեծն Բչէրն ինքն է ։ Կ՚ախպենք, յանձն կ՚առնու ։ Մութ, քարոտ եւ դարուփոս կ՚ընթանանք ։

Ամենէն վտանգաւոր վայրն Դէվէ ֆէչիrs ըսուածն է, ուստի ջուր մի կ'անցնի, հոն քանի մ'օր առաջ վանքէն Տիգրանակերտ դարձող ուխտաւորներ կողոպտուած էին, Բշէրը կը պատմէր այդ դէպքը, եւ մեր խնամքը կը խնդրէր բարեխօսելու կուսակալին, զի իւր վրայ կասկածներ կային։

Վերջապէս ծագեց լուսոյ աստղը, յուսոյ աստղը. անցած էր գիշերն, անցած էին վտանգներ։ Աստղին հետ իրեն երեւնոցի մաս մը բոցերանգ գունով ցըցուց մեզ լուսինն, որում երեքօրեայ կեանք մնացեր էր, որ պիտի նորէր. մահիկն իւր արուսեակով որքան գեղեցիկ կ'երեւէր, գունաւորեալ արեգական կայծերէն, որ տակաւ տակաւ կ'արծածուէր ճառագայթիւք. մահիկ՝ թեւակարմիր, մաշեալ, դալկացեալ, իբրեւ գերեզմանի դուռը հասած, հիւծեալ մահկանացու մը, որ պիտի թաղուէր իսպառ եւ կորսուէր երկու օրէն. բայց պիտի նորէր նորոգուէր շուտով արեւուն երեսով, նոր կեանք սկսելով։Օրինակ յարութեանմարդոյն։

Օրն ալ նորեց, լուսացաւ։ Անհետացած են գողն ու գազան. ամենայն ինչ կերպարանափոխ եղած է։ Այսպէս կը փոխուին դարեր, տարիներ, չարեաց ու տառապանաց վիճակներ, գիշերուան մը անցքի նման. եւ կեանքով ու լուսով կը վայելեն զրկեալք երկնից եւ երկրիս վայելչութիւնք քաղցր աչօք։ Լոյսը յոյս է, եւ յոյսը լոյս է ի խա-

ւարի նստելոց։ Քանի՛ մեծավայելուչ է առաւօտն եւ չքեղափառ ծագումն արեւուն այսպիսի ընդարձակ հորիզոնի մը վրայ։

Ողջո՛յն քեզ, Տիգրանակերտի առաւօտ-ողջո՛յն քեզ, դաշտի եւ լերանց արեգակն։

Բչէրը ետ դարձուցինք. հեռագրի թելերը կ'առաջնորդեն մեզ։ Նրանք ուղտուց կարապետութեամբ իշոց զանգակաւոր ներդաշնակութեամբ բեռնաբարձ դիմացնիս կուգան կ'անցնին։ Անցուդարձը կը շատնայ։ Մօտ մօտ գեղեր կը տեսնենք, որք առանց ծառի եւ առանց ճիւղի են։ Յանկարծ մեր ոստիկանը կ'աղաղակէ. Ահա Տիգրանակերտի մինարէից ծայրեր։ Արդարեւ բերկրանօք ողջունեցին մեր աչքեր քաղաքին տեսիլը, բայց դեռ ժամ ու կէս պէտք է մինչեւ հասնինք։ Յառաջ երթալով՝ կամարաչէն աղբիւր մը գտանք ճանապարհէն քիչ մը շեղ, զոր շինած էր Հաճի Իզզէթ փաշայն. հոն վազեցինք, լուացուեցանք, խմեցինք այդ կենդանի ջրէն, եւ կամարին շուքին տակ հանգչեցանք։ Ջո՛ւր կենդանի, քո սքանչելի ջինջ երեսիդ, քո սթափիչ սփոփիչ ձայնիդ կարօտը կը քաշէի։

Սեպտ. 13, ժամը ճիշտ 2 էր, մենք հասած էինք քաղաքի պարսպին դուրս, կառավարութեան պալատին առջեւը, որ չքեղ եւ գեղեցիկ չէնք մ'է. Նորա հանդէպն է զօրանոց, հոն հիւանդանոց, հոն արհեստանոց հոն տպարան, եւայլն։ Անցքին երկու

կողմը ջրեր եւ ծառեր կան ։ Այս վայելուչ կէտէն անդին Տաճկաց ընդարձակ այլ տխուր գերեզմանատունն է ․ եւ ահա քաղաքին պարիսպները, անապական եւ հաստատ շէնք, որ կը շրջապատէ բոլոր քաղաքը ։ Կարնոյ դուռն կամ Էրզրում գափուսու ըսուած մեծ դռնէն ներս մտանք ․ դրան ճակատէն կախուած կան քարեայ եւ մետաղէ ձուլուած ճիւղաւոր մեծ գնտակներ, եւ քարերու վրայ փորագրուած Քուֆի գրուածքներ ։ Դրան դրանդին կամ վերին ճակատը, որ միակտուր տեւադոյն քար մի է, ունի իր վրայ հին Յունարէնի խոշոր տառերով գրուածքը ։ Դռնէն ներս անմիջապէս պահականոցն է, եւ մասնաւոր շուկայ մը, քառակուսի մինարայով մզկիթ, բաղնիք, խանութներ, տուներ ամենքն ալ տաշուած սեւ քարերով շինեալ, փողոցներն եւս ամբողջովին քարայատակ, տներու շէնքերը բարձր են եւ ձեւով ու շնորհքով կ'երեւին դրսէն, իսկ փողոցներ անձուկ, եւ անցքեր պտուտաւոր ։ Վերջապէս բաւական յառաջ երթալով հասանք Հայոց մայր եկեղեցին Ս․ Կիրակոս, եւ իջեւանեցանք յԱռաջնորդարանն, ուր թէ Ազգայնոց, թէ կառավարութեան, եւ թէ ուրիշ ազգաց կողմէն այցելութիւններ ընդունեցինք, փոխադարձը կատարելով հետեւեալ օրը ։

Այս քաղաքը գտնուելով այնպիսի դիրքի մը վրայ, որ կապ ու կեդրոն կը համարուի

ընդ մէջ արեւելեայց եւ արեւմտեայց, եւ երբեւ դուռն ընդ մէջ Հարաւոյ եւ Հիւսիսոյ, նշանաւոր տեղ բռնած է պատմութեանց մէջ. հոս Պարթեւք եւ Հռովմայեցիք, Բիւզանդեան պետութիւնք եւ Պարսիկք չափեր ու չափուեր են իրարու դէմ. Սկիւթիոյ եւ Արաբիոյ արշաւանաց յաճախ ասպարէզ դարձած, եւ իւր սկիզբն ու մէջ ընդ մէջ Հայ անունով ու գործերով փայլած. ցայսօր խսկ մեր Օսմանեան հզօր պետութեան երեւելի քաղաքներէն մին կը հանդիսանայ ու մեծ վիլայէթ է. զօրաւոր ամրոց եւ կարեւոր անցք Պարսկաստանի, Բաղդատի եւ Հնդկաստանի ցամաքային սահմանաց առջեւ. երբէք պակաս չեն եղած իր մէջ եւ իր վրայ նշանաւոր դիպուածներ, որ յաճախ փոփոխեր են եւ կը փոփոխեն իւր վիճակն ու կերպարանքը, բայց միշտ պահուած է իւր դիրքը։ Տիգրանակերտցիք յոյժ կը պարծին իրենց քաղաքով եւ կ'անուանեն զայն մայրաքաղաք. բայց քաղաքն այնքան չկրնար պարծիլ իւր քաղաքացիներով։

Ամբողջ քաղաքն պարսպապատ է, որ ունի չորս դուռն եւ 72 բուրգ, հարաւային անկիւնը Պէն ու Սէն կոչուած, երկու շքեղ բուրգեր կան Ուրփա քուլէսի եւ Տակիրս քուլէսի, առաջինն ունի 12 լուսամուտ գեղեցկակերտ, յորս ժամէ ժամ արեւը մուտ կ'ընէ կ'ելնէ, գործ ճարտարագործ եւ վայելուչ, որում նայիլ չհիանալ կարելի չէ։

Հին բերդը, Նսֆի սարայը, որ միջնաբերդն է եղած, կը գտնուի քաղաքին հիւսիսային անկիւնը, հոն էր բանդն, ոստիկանութիւն, հեռագրատուն, հիւանդանոց եւայլն. ունի ընդարձակ բակ, եւ ի մէջ բակին, քանի մը հինաւուրց ծառեր, զանազան քարեր, որք երբեմն ծառայած են կախաղանի եւ գլխահատութեան: Զարհուրելի յիշատակներ, այժմ կը մնային լքեալ: Իսկ բանտն ճոխ էր կալանաւորներով շղթայապիրկ, անոնցմէ շատերը հռչակաւոր աւազակապետ եւ սպանիչներ էին, որոց զոհերն էին ոչ միայն խաղաղ գիւղացիներ կամ կարաւանները, այլեւ պաշտօնական անձինք եւս: Տեսանք նշանաւոր Ռըզկօն եւ Միհր Ալին, եւ այլք ի կապանս:

Բուն բերդը աւերակի կոյտ է դարձեր, վրան երեք թնդանօթ դրուած: Այդ աւերակոյտին տակը շէնք լինելու էր, զի ոտքը տրոփելուն խորին արձագանք մը կ'ելլէր. արդէն կ'ըսէին թէ ջրամբար է, եւ իւր ստորոտէն առատ ջուր կը բղխէր ցայնօր: Սոյն աւերակի կողերուն վրայ պատուհանի կամ փոքր դրան ձեւով տեղերը կային, ի հնումն նշանաւոր անձանց գերեզմաններն են կ'ըսէին, եւ մէջերնին ոսկերք կ'երեւէին: Բերդիս դրսի դրան կողմի երեսէն դեռ կը տեսնուին աւերածոց վրայ քարեր, որոց վրայ քանդակուած են առիւծներ եւ այլ հզօր կենդանիներ: Զնդանը դեռ ողջ էր,

որ շինուած է բերդի դրան վրան ։ Իսկ ներքին կողմն մէկ անկիւնը հոյակապ, բարձր ու ընդարձակ շէնքերու որմեր եւ քայքայուած յարկեր կը կենան․ ատոնցմէ մին եկեղեցի է եղած ըսին ։ Մզկիթի գմբէթի նման շէնք մը՝ արտաքուստ կապարով ծածկուած, ըրած էին Տապոյ, յոր մտնալու համար նախ պէտք է մտնալ աւելի հոյակապ եւ մարդոյ հիացումն գրաւող մարմարեայ սիւներով եւ շքեղ կամարներով տաճար մը, քառակուսի մեծ գմբէթով, բայց գագաթը փլած, թէ գագաթէն եւ թէ դռնէն անձրեւներ ներս վազելով ամբողջ շէնքին հիմեր ու օդը ապականեր են ։ Մահմասքըր կ՚անուանեն զայս Թուրքեր, եւ կը կարծեն թէ եկեղեցի է եղած․ բայց երբէք խաչ կամ գիր, կամ այլ նշան մը չէր տեսնուեր ։

Ասիական հին զէնքեր, նիզակներ, նետ եւ զրահներ, ինչպէս նաեւ նոր զէնքեր եւ զինուորաց հագուստն ու այլ պէտքերը պահուած էին աստ եւ ներսը, ուր ամէն մարդ չկրնար մտնել ։ Ներսի շէնքն ի յարեւմուտս եւ յարեւելս եօթնական հատ խորանաձեւ տեղեր կային, երբէք աննման որեւիցէ շէնքի մը ։ Վերջապէս այս կրկնատաճարք, ինչպէս կը կարծէին ոմանք, հաւանական էր թէ Շէմսի կրօնից տաճար եղած լինէր, եւ յետոյ մզկիթի փոխարկած, իւր քովը աւերակ մ՚ալ կը ցուցնէին քառակուսի մինարէով ։ Քառակուսի մինարէ քանի մը հատ

կայ այս քաղաքը, ումանք կ՚աւանդէին թէ այդ ձեւ միմարէ ունեցող մզկիթները նախ Շէմսիներու (*) ազօթավայր են եղեր, յետոյ այդ կրօնքը Մահմետականութեան մէջ ձուլուեր ու ինքն անհետացեր է, բայց այդ նշանը թողած են։

Այդպիսի կրօնք ունեցողներու վրայ քաղաքի ծերերը դեռ կը խօսէին յաւանդութենէ։ Մենք լսեցինք բաւական բան՝ ծերացեալ այլ կորովամիտ եւ բանիբուն Տէր Սահակ Աւագ քահանայէն։

Հին բերդէն ելանք պարիսպներու վրայ շրջեցանք, ուստի ամբողջ քաղաքը եւ շրջակայքը պարզ կը տեսնուին։ Մեզ առաջնորդող ծեր ոստիկան մը կը պատմէ թէ՝ Այս քաղքի շինող Աղջիկ Ղալը սոյն պարսպաց վրայէն կը քալէ կ՚երթայ եղեր ժամ ու բաղնիքը։ — Տիգրանուհի՞ն։ Քաղաքիս մէջ նշանաւոր են շէնքով եւ ընդարձակութեամբ մեծամեծ մզկիթներ, երեւելի տները հարուստ անձանց, բաղնիքներ, մատրասաներ, եւ եկեղեցիք. գրեթէ սոնց ամէնի մէջը կը գտնուին աւազաններ եւ հոսող ջրեր։ Ամենէն պատուական ջուրն է Համըլար, զոր մեծ առուով մը ծածկեալ՝ բերած են Գառաջայ տաղ լեռնէն, եւ բաշխած քաղքի մէջ։ Խաներ եւ շուկաներ բազմաթիւ եւ բազմամթերք, արուեստներն ալ բաւական յաջողակ. կերպասի, բամբակի, բուրդի զա-

(*) Կը նշանակէ արեւապաշտ։

նազան եւ ճաշակաւոր տարազներ կը գործուէին, ճարտարապետութիւնք իւր պարագայիւք եւ միւս տեղական պիտոյից արուեստք ծաղկեալ էին ։

Հարուստներու տնական կարասիք եւ կենցաղավարութիւն գեղեցիկ խառնուրդ մի է պարսկականէ, թրքականէ, արաբականէ եւ եւրոպականէ․ բայց բնոյթք խորին ասիական են ։ Բնակիչք եռանդոտ, դիւրագրգիռ, սրամիտ, սակաւապետ, ցքւոյ ընտանի, արագաշարժ, բայց եթէ կրթութեամբ եւս ազնուանային, մեծ յառաջադիմութիւն կ՚ընէին․ բարեկիրթները քիչ են ։

Քաղաքն ամբողջ գահ է, յարեւմտից եւ ի հիւսիսոյ երկայնեալ դաշտին ծայրը դըրուած․ արեւելեան եւ հարաւային կողմէն աւելի բարձր է իւր դիրքը, կառուցեալ ապառաժներու վրայ, որոյ ստորոտէն պտոյտ կ՚ընէ Տիգրիս մահիկաձեւ շրջապատելով զքաղաքն ։ Ի հարաւ հակեալ են պարտէզներ եւ մրգաւէտ ծառեր ու շերամի թթենիք գետոյն ափունքէն մինչեւ պարսպի պկճ ու սկճի բուրգերը․ իսկ յարեւելս, յանկոյս գետոյն է Ղըթըրբըլ գեղեցիկ գեղն Հայոց եւ Ասորւոց․ ուր անթիւ աղաւնիք կը սնուցանեն յատուկ շէնքերու մէջ, եւ անոնց աղբը շահաբեր վաճառք է ներկի ու ձմերուկի մշակութեան ։ Հոն՝ գետոյն երկու եզերքները, եւ մէջէմէջ ձեւացած կղզիաձեւ աւազաններուն մէջ կը հասցունեն խոշոր, ա-

ռատ եւ մեղրահամ մեղրայոյն ու կլօրն, եւ ամառն ու աշունը քաղաքացւոց հանդիսավայրն կը կազմեն ջուրն, պտուղն, եւ ծառաստանք, յորս արք եւ կանայք, մանուկն ու ծնողք, քորք եւ եղբարք թռչնոց երամի պէս կը լեցուին, կը լուացուին, կուտեն, կը խմեն, կ'երգեն, կը խաղան։ Մեծ կենդանութիւն։ Եւ, երբեմն անտեղութիւնք։

Քաղաքի Հոռոմի դռնէն դուրս ելնելով իբր քսան վայրկեան դէպի դաշտը գնացինք Աչի-Բուղնար գիւղը, ուր կայ Հայոցս շքեղ եկեղեցի մը ընդարձակ բակով եւ սենեակներով, իբրեւ վանք շինուած, որ եւ ուխտատեղի է քաղաքացւոց։ Սոյն գեղը իր անունը առած է աղբիւրէ մը, որ առատ ջրով կը բղխի գեղին մէջը, խնամօք շինուած եւ պահպանուած. Պարսիկներ եւ Գզլըբաշները ուխտի կուգան այս աղբիւրին, եւ ջրէն առնլով հետերնին կը տանին, հաւատալով թէ Ալին բղխեցուցած է զայն հրաշիւք, եւ է իրենց համար սուրբ։ Գիւղիս բնակիչք են Հայ, Քուրդ եւ Քըլդանիք։ Գիւղս զարդարուած է խաղողոյ այգիներով եւ մրգաբերներով. առատ է իւր ջուրն, բարեխառն եւ զուարճալի օդն ու դիրքը։

Քաղաքի պարսպէն դուրս եւ գրեթէ կից են Պուզլուղ ըսուած փոս ու քարաշար աւազաններ, յորս ձմեռը ջուրեր կը լեցուին եւ կը սառին, ապա մեծամեծ կտորներ

կտրելով կը տանին հորերու մէջ կը պահեն. բոլոր ամառը կը գործածեն։

Այս գծին վրայ կը տեսնուի բազմակամար երկարաձիգ չէնք մը, որոյ վրայէն կ'անցնի Համրվար մեծ ջուրը եւ կը բաժնուի քաղաքի մէջ։ Արեւմտեան պարսպին երկու դռներն են Տաղ գաբուսու եւ Հոռոմ գափուսու, այս դրանց առջեւ կը գտնուին Տաճկաց եւ Քրիստոնէից գերեզմաններ։ Մեծ կառուղին Խարբերդին որում կը միանայ Կարնոյ եւ Սեւազի ուղին, կամ Տրապիզոնի ու Սամսոնի գիծը, ուղղակի Տաղ գափուսին կը բերէ. իսկ միւս կառուղին՝ որ Հալէբէն կուգայ Սեւերակի վրայով Հոռմին գուռը կը մտնէ։ Բաղդատի ուղին Մէրտին գափուէն կ'ելնէ ի հարաւոյ եւ Տիգրիսի վրայէն հաստակամար գեղեցիկ կամուրջով մը կ'անցնի։ Նոր դուռն կամ Եէնի գափուն յարեւելս կը բացուի եւ կ'իջնայ դետը։ Կարնոյ կամ Լեռան դրան կողմը Թրքաց գերեզմանատան եզերքը խարխալած գմբէթ մի կայ, որոյ ներքեւի փոսը լի է, կ'ըսէին, մարդոց գանկերով եւ թեւոց ու ոտից ոսկորներով, զորս ի պատիժ կը կտրէին երբեմն ներքին բերդին մէջ, ուր դեռ գլխատման քարը ցոյց տուին, եւ հատեալ անդամները սոյն գմբէթին խորը կը ձգուէին։

Այցելեցի Հայոց գերեզմանատունը, ուր հետաքրքրական է տեսնել իւրաքանչիւր տապանաքարի վրայ քանդակուած մեռելոյն

արուեստի կամ կեանքի նշանը, զորօրինակ· պայտարին՝ մուրճ եւ աքցան, դերձակին՝ մկրատ եւ ձեւի տախտակը, ոսկերչին՝ արծաթէ կերտուածոց տեսակները, վարսավիրային՝ սանտր, ածելի եւ կոնք, ոմանց ալ օղիի շիշ եւ բաժակ· կանանց՝ քարքաշ եւ ասղնեգործութեան տեսակներ եւայլն։

Կարգ մը կար վարդապետաց, որոց մէջ կային Էջմիածնայ նուիրակներ եւ Սրապիոն եպիսկոպոս Ամթայ, որ եւ կաթողիկոս Էջմիածնի, սոյն տապանագրով «Սա է տապան մարմնոյ տեղի, Աստուածաբան վարդապետի Ուռհայեցւոյ Սրապիոնի, Կաթողիկոս Գրիգորիսի, հայրապետիս վախճան լինի, Թվին Հայոց Ռ. ամի. ԾԵ.եակ եւ մի. պարզ թուով լինի (ստորեւ եղեալ) Թվ. Ռ.Մ.Ե.»։

Անցայ որոնել ազգին վաստակաւոր, անմոռաց, եւ միշտ անմահ Սիպիլեան Հ. Կղեմէսի գերեզմանը, որ Հայ կաթոլիկաց կարգին եզրը թաղուած էր խառն ընդ Հայոց հողոյն, եւ մի քանի սեւ ու կոշտ քարեր կուտած էին այս ամէնարժան անձին մարմնոյ վրան։ Անոր որ այնքան տարի տքնած էր Հայոց աշխարհն ուսումնասիրելու եւ Ազգային Թանգ. հնութիւնք ի լոյս ածելու. յիշելով իր քրտինքը, իր արդիւնաւոր կեանքը, իր ազնիւ բարքը, զոր լաւապէս գիտեն ամէն անոնք որ ճանչցած են զինքն, լացած են իրեն եւ տեսած են իւր հաւաքածոյքն ու գործքը վերջին տարիներուն մէջ, «Հօ-

գուց մը» մրմնջացի, եւ կաթ մը արցունք իր հողոյն ցօղելով մեկնեցայ։

Հեռի չէ սատի Հասարակաց պարտէզ կամ Միլլեր պաղչասին, շինուած Խամայիլ փաշային օրով, որոյ պատճառաւ յուզմունքներ, եւ քննութիւններ ծագեր էին. տեղւոյն բնական դիրքը գեղեցիկ էր ապառաժի մը վրայ՝ կցեալ այլ պարտէզներուն, կը նայէր Տիգրիսի ջրոյն եւ տարածեալ ընդարձակ դաշտին, բայց մէջը դարձած էր այծու դրախտ...։ Ուզեցի միւս պարտէզները շրջիլ, բայց արգիլեցին, ըսելով. վտանգաւոր է, աւազակներ կը դառնին հոն հիմայ։ Արդարեւ զարմանալի էր այս, վասն զի անմիջապէս պարսպին կից են այգիք, սակայն չէի կրնար չհաւատալ, փորձերը կը տեսնէինք ամէն օր։ Նոյն իսկ քաղաքի պարսպէն ներս այնպիսի դէպքեր տեղի կունենային որ զարմանալի չէր եթէ պարսպէն դուրս ալ պատահէր։ Իսկ ինչ որ գաւառներ ու գեղերը կը գործուէր, անթիւ եւ անօրինակ բաներ էին։ Վիլայէթն խիստ ընդարձակ, ելուզակ ցեղեր ու չարագործներ բազմաթիւ. օրերն ալ թէպէտ դադրած էր պատերազմն, բայց նպաստաւոր էին այնպիսեաց, որ համարձակութիւն առած էին պատերազմի միջոցին չարիք ի գործ դնել բնակչաց վրայ, օգտուելով զօրաց եւ զինուորաց բացակայութենէն եւ կառավարութեան զբաղմունքներէն։

Խուլք ու Խիաճ գաւառի մէջ Թէլօ անուն

մէկը, որ անբաւ հարստութիւն ալ ունէր, անհնարին կեղեքումներ գործած էր, եւ անգամ մը անձրեւի բռնուելով կը մտնէ հով-ուի գոմը, կրակը վառել կուտայ եւ խեղճ հովիւը երկու ձեռքի ու երկու ոտքի վրայ կորացնելով աթոռի տեղ կը գործածէ, նստե-լով կռնակին վրայ իւր լաթերը կը չորցնէ։ Ուրիշ անգամ մը իր ձիոյն թամբը կը դնէ գեղացւոյն պառեկը, սանձը կը զարնէ բե-րանը, եւ կը հեծնէ չորքոտանւոյ մը պէս կը վարէ ժամու մը չափ։ Թէլօյի թեթեւ հաճոյքներն են այսպիսիք։

Լճէ աւանը, որ 12 ժամ հեռի է Տիգրա-նակերտէն, բռներ էին Սօֆի Բէյ մէր անունով մէկը, որ արդարոյ եւ բարեպաշտի անուն հանած էր եւ այդ աւանը կը բնակէր։ Գի-շեր մը մէկին տունը գող կը մտնէ, եւ տնե-ցիք՝ ըստ տեղական սովորութեան տանիքը պառկած լինելով, վար կը վազեն, ճրագ կը վառեն ու կը տեսնան որ մօրէ մերկ մարդ մը խառնակ մազերով, խառնած մօրուքով, չուանի մը կտոր գօտի բրած եւ դաշոյն մը մէջքն անցուցած, կատարեալ ճիւաղ մը կամ ուրուական մը, անձայն եւ անշշունչ իրենց առջեւ կը կենայ, նախ կը զարհուրին, ա-ղօթքներ կ'ընեն բայց ճիւաղը չի հալածուիր, կը դիտեն որ տանը մէջ եղածներ ժողված, ծրար կապած ու ճիւաղին առջեւ կը կենայ, կը խելաբերին, ձայն կ'արձակեն, փայտով զէնքով դրացիք կը դիմեն, ուրուականը

ինքզինքն պաշտպանելու կամ ազատելու համար միշտ անշշուկ՝ տանիքը կը վազէ եւ անոր վար կը նետուի աւելի ցած տանիքի մը վրայ, ուր անկողնոյ մէջ մայր մը իր մանկիկներով կը քնանար, ճիշտ աղւոնց անկողնոյն վրայ, ցաւէն ու սարսափէն ահագին կը ճչէ կինը եւ մանկունք. ուրուականը կ՚ելնէ փախչելու, վարէն ալ կը հասնին, կը պաշարուի, եւ կ՚սկսի կեղծ մեռեալ կամ իրօք ուրուական մը ձեւանալ, անշունչ դիակի մը պէս կը պառկի, վրան կը հասնին, կը խթեն, կը մշտեն, կը կամթեն, ձայն չհաներ, որպէս զի չճանչցուի, վերջապէս իւր տնեցիքն ալ այս հանրական չփոթութեան հետ հոն կը վազեն, եւ տեսնելով իրենց Ս. Քէմէրը այդ վիճակին մէջ, կը կարեկցին, անոււնը կուտան, սար վրայ հայն ու տաճիկը կը թքեն զինքն, կը կապեն եւ կը յանձնեն կառավարութեան, ուր դարձեալ ճիկ չհաներ, կը բանտարկուի, եւ անոր տունը հետազօտելով գտնուած էին քանի մը տարիէ հետէ այլեւայլ գողօններ։

Քանի քանի այսպիսեաց պատմութիւններ կ՚ընէին, որք ապաստանարան ընծայած էին աւազակաց, եւ որոց տուները անբռնաբարելի կը կարծուէին, իբրեւ Աստուծոյ ծառայի տուն։

Իսկ հռչակաւոր Չէթան բէկի արարք որքան բազմաթիւ՝ նոյնքան բազմօրինակ եւ

չլսուած քստմնելի բաներ էին, ինչպէս եւ այլոց նմանեաց. ասոնց վրայ նոյն իսկ զինուորականներն անգամ բողոքող էին կուսակալաց, զի չարիք միայն բնակչաց վրայ չէր մնար, այլ կը ծաւալէր պետութեան շահուն ու անձանց եւս, եւ վերջապէս ինչպէս պատժուած էին քանիցս, վերստին պատժուեցան կայսերական գօմիսէր Վսեմ. Ապէտին փաշայի օրով։

Քաղաքիս բնակչաց տնական կեանքի երեւոյթը պարկեշտ է, պարկեշտօրէն կը հագուին նաեւ կանայք։ Թրքուհիք փողոց ելած ատեն սեւ կերպասէ սաւան՝ իսկ Հայք սպիտակ կը հագնին. մեծ պատիւ է կանանց դեղին կօշիկ կամ ջիզմէն, նոյնը տարածեալ է մինչեւ Սղերտ, Բաղէշ, Խարբերդ, Մալաթիա եւ այլ մերձաւոր գաւառները։ Ճակատներէն, երեսներէն, պարանոցէն եւ լանջքէն ի վար ոսկի, արծաթ եւ մարգարտեայ զարդեր ունին առ հասարակ ըստ աստիճանի, գագաթանց վրայ կօտիկ եւ վրան լաչակ կամ եազմա, ականջներուն վրայ մանեկի ձեւով բան մը ունին որ կը հասնի մինչեւ երեսներուն կէս, գինդը ոչ միայն կանանց՝ այլ եւ արանց ալ վրան սովորաբար կը տեսնուի. հետզհետէ շրջազգեստի եւ այլ նոր ձեւերու գործածութիւնք մտած էին, բայց խառնելով իրենց արդէն ունեցածին հետ։ Թէպէտ արանց չափ նաեւ կանայքն

եւս բամբասուած են իբրեւ արբեցող, բայց բացառութիւնք են աղոնք. Նոյնպէս բացառութիւն է որ կին գինեպան կը գտնուի։ Ազնիւ, աշխատասէր եւ տնարար տիկնայք բազմաթիւ են։

Արք սովորաբար կը հագնին զպուն, էնթարի, մանիսայէ եւ տեղական տարազներէ։ Ծաղկեալ է արուեստ մանիսայի, կէզիի, սաւանի եւ այլ տեսակ կերպասեղինաց, ասուեղինաց եւ բամբակեղինաց։ Իբրեւ արուեստաւոր՝ ճարտար են. իբրեւ վաստակաւոր՝ ամէն գործի հետամուտ են։ Եւրոպական ապրանքներ խիստ քիչ եւ նոր սկսած էր մուտ գտնել։ Տեղական նիւթերու վրայ ընդարձակ առուտուրներ կ՚ընեն, իսկ ցորենոյ եւ ոչխարի վաճառականք մեծապէս կը շահին տարւոյն յաջողութենէն։ Թուրքերէն սակաւաթիւ են վաճառականք. բայց ազարակ եւ կալուած եւ անուղղակի հասոյթ ունեցողք շատ կան, արհեստք եւ առեւտուրք մեծաւ մասամբ Քրիստոնեայք կ՚ընեն։ Երեւելի օճախներ եւ փուճուհներ կան Թրքաց, որոնցմէ նշանաւոր անձինք յառաջ եկած են իբրեւ գրագէտ եւ ընթերցող, դիւանական, դատական, փարչական ճիւղերու մէջ, եւ Քրիստոնեայք պակաս չեն միար օրէնսգիտութեան եւ գրականութեան կողմանէ։

Անգղիոյ եւ Գաղղիոյ փոխ հիւպատոս կամ գործակատար, Ռուսիոյ հիւպատոս եւ Պարս-

կի չահպէնտէր կը նստին քաղաքը, որք ունին իրենց յատուկ պաշտօնատուներ եւ աղէկ դիրք։

Արդարեւ զարմանալի քաղաք է Տիգրանակերտը, ուր կը տեսնուին ասիական զանազան ցեղեր եւ բարբառներ, Թուրք, Արաբ, Ասորի, Քուրդ, Եզիտի, Զազայ, Յոյն, Հայ, Քիլտանի, եւ նոյնպէս բազմազան են նաեւ ի կրօնս. Մահմետականութիւն իր բաժանմամբ, եւ Քրիստոնէութիւն իւր տեսակներով։ Հայք՝ ըստ Հայաստանեայց եկեղեցւոյ, Հայք՝ Պապական եւ Պապականք և Հասունեան եւ անտի Հասունեան՝ Լատինականք, Հայ՝ բողոքական, եւ Բողոքականք՝ երիցական եւ եպիսկոպոսական, Հայ-Հռոմք։ Ասորիք՝ ըստ նախնի եկեղեցւոյ, Ասորիք՝ պապական եւ բողոքական։ Ասոնք ամէնը բնիկ են, եւ ունին առանձին եկեղեցիներ եւ եկեղեցականներ, բայց գըլխաւորաբար բոլոր բողոքականաց ներկայացուցիչ կը համարուէր Պօյաճեան Թովմաս էֆէնտի, որ յԱնգղիա ուղեւորած է, բազմածանօթ անձն։ Յունաց եւ կաթողիկաց՝ իրենց քահանայն կամ վարդապետ, Քիլտանեաց՝ քիլտանի Ապտ-իշու եպիսկոպոս, որ Հռոմ ալ գնացած է։ Ասորւոց՝ կաթողիկոսն կամ փոխանորդն։ Բայց Հայոց Առաջնորդն ամենէն բարձր եւ գործօն դիրքն ունի իբրեւ առաւելագոյն ժողովուրդ ունեցող։

Ափսոս, սակայն, Առաջնորդ պէտք էր այդ-տեղին։

Բոլոր այդ Քրիստոնեայ տարր հայերէն կը խօսին, եւ զիրենք Հայ կ'անուանեն. Եթէ հարկ լինի ցեղի մը կամ ազգի մը վրայ խօսիլ, կ'ըսեն՝ Ասորի Հայ, Քիլտանի Հայ, Ներմանի Հայ եւայլն։ Եւ ամէն անգամ եթէ Քրիստոնէից հանուրին վերաբերեալ խնդիր մը ծագէր, միւսները կը հաւաքուէին Հայոց Առաջնորդարանն. հոն կը խորհէին, որոշումըն կուտային եւ անոր միջոցաւ կը բանակցէին կառավարութեան։ Իսկ հոգեւոր պէտքեր ու պաշտամունքներ իւրաքանչիւրին հովիւն ըստ իւր ծիսի կը կատարէր։ Թէպէտ այսքան բաժին բաժանեալ էին ի կրօնս, բայց գրեթէ չկար հակառակութիւն կամ չարախօսութիւն իրարու դէմ։ Եւ կային որ անուանապէս կը վերաբերէին միայն այս ու այն բաժանման, եւ այն՝ անձնական խնդիրներով։

Մի բանգէտ առաջնորդ, իմաստուն հովիւ մը, Ս. Աւետարանի ոգւոյն եւ Ս. Հարց ընթացից ծանօթ քարոզիչ, վարքով եւ խօսքով աղ եւ լոյս եկեղեցական, ճշմարիտ դաստիարակութիւն մը, մեծ գործ կը տեսնայ քիչ ժամանակի մէջ այդ քաղաքի մէջ եւ իւր գաւառաց, ուր ժողովուրդը կարծուածէն առաւել փափաք ընծայող է եւ պատրաստ ընդունակութեան տէր. կամք ունի եւ զոհողութիւն կ'ընէ, բայց ուղեցոյց չունէր։

Մոլորեցուցիչներ էին իրեն խօսողներ, ուսուցողներ, եւ տգէտ, այո՛ տգէտ իւր Առաջնորդն։

Գտնուող բարեմիտ եւ լուսամիտ անձինք ժողովուրդին աչքին ցուցուած էին իբրեւ խաբեբայք եւ չարք, կ'արհամարհուէին նոքա, կը նախատուէին եւ կը գանակոծուէին թէ տեղացի լինէին եւ թէ եկք, որպէս զի ժողովուրդ չբանար իր աչքը, եւ ասպարէզ մնար կեղծ ժողովրդասիրաց, ազատօրէն յափշտակելու, խորելու, եւ իրենց յաջողութեան վրայ խնդալով՝ ազգին մէջ խռովութիւն եւ յետադիմութիւն աւելցնելու, վահան ու գործիք ընելով իրենց տգէտ առաջնորդը։ Այսպիսիք դժբախտաբար միայն Տիգրանակերտի մէջ չեն, եւ՛ իրենց վարպետներն ալ Պոլիս կը նստին։

Այսպիսիք են որ սահմանադրութեան, լուսաւորութեան, յառաջադիմութեան, կրօնի եւ բարոյականի անուան տակ ազգն ու ժողովուրդը կը վրդովեն, օգտակար եւ յարգելի անձինք, որ իրենց դիրքով, ձիրքով, կամքով եւ դրամով օգնած են ի դէպս այլ եւ այլ նեղութեանց եւ փորձութեանց՝ ազգին, իբրեւ դաւաճան, մատնիչ, հարստահարիչ կը հանդիսացնեն յաչս ժողովրդեան, զորս հայհոյել եւ թշնամանել կուտան, ու իրենք անոնց տեղ կ'անցնին գործելու։ Եւ եթէ չյաջողին բան մը ընել, զիրենք արդարացնելու համար դարձեալ այն դասը կը

ցուցնեն իբրեւ արգելք եւ հակառակք. իսկ երբ անկումն կրեն, դուրս կը քաշուին պահ մը հրապարակէն, եւ ժողովուրդ կը դիմէ իր Թշնամանած անձին, յորս կը գտնուին բարեսիրտներ ու անյիշաչարներ, որ իրենց պարտքը կը կատարեն առ ժողովուրդն։

Ո՛ ժողովուրդ, քո անունով, եւ նոյն իսկ քո վնասով, քո անձնականութեամբդ ինչե՞ր կը գործեն իրենց շահուն համար։ Եթէ ինկար, քո յիմարութենէդ էր կ'ըսեն, եթէ յաջողեցար, բախտախնդիրներ կ'ելնեն ուսերուդ վրայ, Մենք ըրինք, կ'ըսեն։ Եթէ բարիք մը շնորհուի քեզ նոյն իսկ մեր վեհ. Սուլթանէն եւ իր կայսերական կառավարութենէն, քեզ պարտիչներ կը կայնին առջեւդ ու կ'ըսեն, Մենք աշխատեցանք, այն ինչ իրենց աշխատութեան պտուղն էր ունեցածդ անկումն եւ զրկումն։

Անշուշտ ճշմարիտ աշխատողաց համար չեն այս գրուածքս։

Տիգրանակերտի Հայք յոյժ ջերմեռանդ են աղօթելու, ամէն օր անպատճառ եկեղեցի պիտի երթան, նոյնքան ջերմեռանդ են նաեւ Ս. ուխտատեղեաց, մասնաւորապէս Ս. Երուսաղէմի. հազուագիւտ են մըղտեսի չեղողներ։

Իբրեւ աշխատասէր եւ սակաւապէտ ժողովուրդ՝ ուրախալի էր տեսնել որ բնիկներուն մէջ գրեթէ մուրացիկ չկար, անկեալք, հիւանդք եւ կարօտեալք կը խնամ-

ուէին Հայոց Ազգասիրաց ընկերութենէն, ինչպէս նաեւ այլեւայլ երկիրներէ ու գաւառներէն յաճախակի պատահած տնանկք եւ ուղեւորք կը հոգացուին․ կը մտածուէր հիւանդանոց մը շինել, որ այնքան պէտք ունէր այդպիսի քաղաքի մը համար, եւ որ մեծ ապացոյց մը պիտի կանգնէր իրենց մարդասիրութեան եւ պատուաւորութեան առաջի Աստուծոյ եւ առաջի քաղաքակրթութեան։

Ընկերութիւններ կային Անձնուէր., Հայրենասիրաց, Մեսրոպեան, որք բացած ունէին վարժարաններ մանկանց, եւ կիրակի օրերը չափահասից գրել կարդալ ուսուցանելու եւ բանախօսութիւններ ընելու։ Գատանեաց ընկերութիւն, որ Ազգային պատմութենէն ներկայացումներ կ՚ընէին։ Համազգային ընկերութիւն, որում անխտիր անդամակից էին Հայ կաթոլիկ եւ բողոքական։ Բայց ցաւ է ըսել թէ այդ ընկերութեանց տեւականութիւնը սակաւ եղած է, բուն իրենց նպատակէն դուրս գործածելով իրենց ընթացքը․ ուստի եւ դժտութիւնք, եւ խափանմունք արդէն սկսած էին, միայն Անձնուէր ընկերութիւնը, որ կանուխէն կար, աւելի արդիւնաւոր հանդիսացած է, եւ կը տեւէր։

Երկու վարժարան ալ կար երկու եկեղեցեաց բակերը, բայց լքեալ, եւ մի աղջկանց վարժարան Ս․ Կիրակոս եկեղեցւոյն կից,

եթէ վարժարան կարելի էր ասել, բայց գոնէ սկսուածք մ՚էր։

Ս. Կիրակոս եկեղեցւոյն բակը շինուած է Առաջնորդարանն, եւ սոյն եկեղեցին է մայր եկեղեցի քաղաքին, որ ինչպէս յայտնի է հրկէզ եղաւ, եւ փութաջանութեամբ բարեպաշտ անձանց շուտով վերականգնեցին տարի մը յառաջ 1883ին։ Վաթսուն եւ վեց տարի յառաջ եւս հրկէզ եղած եւ վերստին շինուած լինելուն յիշատակագիրը եկեղեցւոյն ճակատի քարին վրայէն օրինակած եմ, որ ահաւասիկ. «Եկեղեցիս այս պանծալի, եօթնախորան զարմանալի, զոր էր շինեալ Գեւորգ պետի, սոյն քաղաքիս առաջնորդի, զկնի ութսուն եւ ութն ամի, կրեաց զաղէտըս սոսկալի, համայն արդեամբ իւր գովելի, ի մուտ ժամու հրկէզ զինի։ Այցելութեամբ Տեառն Յիսուսի, հրաշիւք սրբոյն Կիրակոսի, հրամանաւ արքային Պօլսի, յետ եօթն ամսոյ կրկին շինի, տրովք եւ արդեամբք Հայոց ազգի, ի փառս անուան Տեառն Յիսուսի»։ Վարի յիշատակարանին վրայ գրեալ էր թվական «1818»։

Դրան աջ կողմը քանդակուած ուրիշ թըւական մը «Շինութիւն Ս. Կիրակոսին Ռ.Ճ.Հ.Ը.» Նոյն կողմը որմոյն դրսի երեսը քարի մը վրայ «Մատնեցաւ Ս. Թորոս Ջ. Կ. Է. Թվին։»

Թէ բերանացի աւանդութենէ եւ թէ ձեռագիր յիշատակներէ իմացանք որ Ս. Թո-

րոս եկեղեցին է այժմեան Ղուրշունլու ճամին. ժամանակին փաշան ուզելով ճամի մը շինել տալ, կը փորձէ նետ մը արձակել, եւ թէ ուր իյնար նետը՝ այն տեղն էր Աստուծոյ հաճոյական վայրը, նետն կ'իյնայ Հայոց Ս. Թորոս եկեղեցւոյն վրայ, իսկոյն ճամիի կը փոխուի, եւ նոյն փաշայն հրաման եւ ձեռնտուութիւն կ'ընէ Հայոց որ փոխարէն Ս. Թորոսին կը շինեն Ս. Կիրակոսն այստեղը, ուր գերեզմանատուն էր Հայոց։

Երկրորդ եկեղեցին է Ս. Սարգիս, որոյ տաճարը գեղեցկաշէն է, ընդարձակ բակեր, խուցեր եւ առաջնորդարան մը ունի պարտիզով, հանդերձ ջրոյ մեծ աւազանաւ մը։ Հոս կ'իջեւանեն եղեր Ս. Երուսաղէմայ եւ Էջմիածնայ նուիրակներ։ Հոն իջեւանեցան նաեւ Կ. Պոլիսէն ղրկուած Ազգային պատուիրակներ 1879ին, Պօյաճեան Յովհաննէս էֆէնտին եւ իւր ընկեր Գարեգին վարդապետ, այս տողերը գրողն։ Այստեղ գործուեցան այն ազգասիրական խըժդըժութիւնք, որ նարինջաղախ ըրին մեր անձինք եւ փշրեցին մեր երեսներ, մեր կուրծք եւ մեր թիկունքը, նախատանաց, երկաթներու եւ բիրերու հարուածներով, յառաջխաղաց յարձակմամբ երկու մէյհանէճի ամազոններու եւ բագոսեան դիւցազանց, բոլորն ալ գինով՝ որոց գլուխ կը գտնուէր պատշաճապէս մականուանեալ Գ. քացախն. զանգակներ կը հնչուէին, Փիլիպ-

պոս եպիսկոպոս օրհնութիւն կը կարդար․ եւ իւր քարտուղարք ու խորհրդականք հրահանգ եւ խրախոյս կուտային․ շուկայն կը դոցուէր, քաղաքն կը դղրդէր, — Դուրս նետենք պատուիրակներ, սպաննենք Գարեգին վարդապետը որ աչք ունի Առաջնորդ լինել մեր քաղաքին․ մեր Եպիսկոպոս կ'ուզենք որ․․․ եւ ամէն բանէն պիտի ազատէ զմեզ․ որ եօթն Ղուլի հետ թելով կը խօսի․ կեցցէ Փիլիպպոս Սրբազան —»։

Այս էր այն արշաւանաց եւ յաղթանակի երգը։

Յետ այնորիկ պիտի դղրդէր Պոլիսն, երեսփոխանաց ծանօթ մաս մը, լրագրութիւնք, պատրիարքական պաշտօնն ամիսներով շարունակեցին մեր վրայ իրենց բուռն դատաստաններ, մինչ մենք կը հեծէինք մեր վիրաց տակ, եւ կը գործէինք մեր պարտականութեան համեմատ։ Արդարութիւն սակայն ներկայացոյց այդ եպիսկոպոսը Ս․ Պատրիարքին, որում չհանդուրժելով ներող եւ հեզահոգին Ներսէս դաւազանաւ խօսեցաւ հետ։ Ներկայացաւ նա Վեհ․ Գէորգ կաթողիկոսին, եւ աքսորի եւ ի կարգէ դադարման արժանացաւ Ն․ Օծութենէն․ ժողովուրդն ծանրագնի զիղջ կրեց, անագան ուրեմն հասկցուեցաւ թէ հիւպատոսի մը խաղն էր այս ամէնը, որուն խաղալիքն էր Սրբազանն եւ իր հերոսներ։

Այսքան մը եւ եթ հարեւանցի յիշատա-

կաւ փակենք այս անցքը, ի պատիւ նոյն քաղաքացի բարեխիղճ ազգայնոց, չուզելով դատել կամ վշտացնել նոյն իսկ գործող միամիտներ, որ խաբուած լինելով ըրին ինչ որ ըրին, կարծելով թէ Ազգի օգտին կը ծառայէին. «Ոչ գիտէին զինչ գործէին:»

Ս. Կիրակոս եւ Ս. Սարգիս եկեղեցիներ ունէին բազմաթիւ եւ ծանրագին զարդեր, եւ շատ մասունք: Ի Սուրբ Սարգիս կայ Ս. Բեւեռ, բիւրեղի մը մէջ զետեղուած, ցուցամատի մը չափով, բամբակի մէջ ծրարուած արծաթէ պատուանդանի մը վրայ յանգուցած, որոյ երեք կողմն կնքոյ ձեւով յունարէն եւ լատիներէն փորագրեր կան. բիւրեղին վարի կողմը ճաթռտած է երկու տեղով, Ս. Բեւեռը չերեւիր. արդեօք մէջէն հանուած չէ՞. թէպէտ այժմ լաւ հսկողութեամբ կը պահուի արծաթ տապանակի մը մէջ, եւ միայն Ս. Խաչի տօներուն, ու Խաչվերացին կը հանեն ի տես, եւ բազում ուխտաւորք կ՚երթան. կը համարին թէ Քրիստոսի խաչափայտի մէկ բեւեռն է, կամ մաս մը, որում յիշատակագիր մը չկար: Բայց կ՚աւանդէին թէ ասկէ իբր 160 տարի յառաջ ապստամբութիւն մը տեղի կ՚ունենայ Բաղդատի կողմերը, եւ Քիլաանցւոց մեծ եկեղեցի մը կը կողոպտուի, լուսարարը այս Ս. Բեւեռը կը զետեղէ աշտանակի մը մէջ, եւ աւարողաց հետեւելով կը հասնին Տիգրանակերտը, ուր ի վաճառ կը հանուի աշ-

տանակը, լուսարարն կ'աղաչէ Հայոց որ գնեն զայն, յայտնելով անոնց թէ ի՞նչ գանձ կար անոր մէջը, եւ այսպէս կը գնեն Հայք եւ կը դնեն յիշատակ ի Սուրբ Սարգիս։ Լուսարարն ընդունելով հայութիւն կը մնայ ի Ս. Սարգիս եւ կը պաշտէ Ս. Բեւեռը, բայց կ'իմանան Հայք թէ նա միտք ունի գողնալու զայն, կը պահեն, մինչեւ կը մեռնի լուսարարն։ — Եթէ արդէն հանած չէ Ս. Բեւեռն, զի այդպիսի օրինակները, եւ բիւրեղին ջախջախումն կասկած կը պատճառեն դժբախտաբար։

Եկեղեցեաց մէջ տպեալ եւ ձեռագիր շատ մատեաններ կան, ձեռագրոց ցանկը պիտի տեսնուի յիշատակարանաց մէջ, տանց մէջն ալ շատ կը գտնուէին։ Ալգալեան Պ. Մկրտիչ ազնուաբարոյ եւ ուսումնասէր երիտասարդն, այժմ հանգուցեալ, առաջնորդեց զիս ի տես Չէնէսիզեան Հ. Մեսրոպին, որ Վիէննայի Մխիթարեան ուխտէն էր, բանասէր եւ գրասէր անձն մի, որ շրջած էր Հայաստանի զանազան կողմեր. բազմաթիւ ձեռագիրներ կրկտած ու նորագոյն ծանօթութիւններ հանած էր, եւ Տիգրանակերտի ու Միջագետաց առանձին պատմութիւն մը յօրինած էր՝ դեռ ձեռագիր ու թերի, զի աչաց լոյսը տուժած էր, եւ անլոյս կը նստէր իր սենեկին մէջ. ունէր բաւական թուով ընտիր ձեռագիր մատեաններ, որք իր գանձեր եւ միակ մխիթարանքն էին։

Տիգրանակերտի ձմեռը խիստ կծու ցուրտ կ'ընէ, թէպէտ շատ ձիւն չտեղար. իսկ ամառն չափազանց տաք է. մանաւանդ պարիսպներ եւ փողոցները, սալայատակներ եւ շէնքերը՝ ամբողջ սեւ քարերով շինուած են, արեւու ջերմութենէն կարծես ջեռացած բաղնիքի մէջ կը գտնուիս, այնչափ կը տաքնան այդ քարեր եւ իրենց ջերմութիւնը կը զարնեն մարդոյ երեսին եւ մարմնոյն: Ամառն ամբողջովին տանիքները կը ննջեն փայտաշէն բարձր մահճակալներու վրայ, ուր, իբր թէ ազատ ըլլալ միայն տեղական կարիճի խայթելէն, որ ամէն տուներու մէջ գրեթէ անխտիր կը գտնուին, սեւ, թանձր եւ կլոր են, զզուելի եւ սոսկալի. Զար ագրապ կը կոչեն. թունաւոր եւ դժնդակ է իւր խայթոցքը, սարսափելի կը ճչացնէ խայթուած անձը, անմիջապէս կը հասկնան թէ կարիճ խայթեր է, կը վազեն օգնութեան, պատրաստական դեղ ունին, կարծեմ կէօզբաշի է, որով կը խարեն խայթածն եւ շրջապատն, որ նոյնքան կը կսկծեցնէ մարմինը: Տանիքը բացօդեայ ննջելով՝ սառն հովերէն ալ տենդի կը բռնուին, գրեթէ չկայ անձ մը որ պարբերաբար տենդ չունենայ, եւ այս պատճառաւ ընդհանրապէս դժգոյն են բնակիչք: Ամենամեծ փորձութիւն է այս քաղաքին այն պալարը, զոր Տիարպէքիրի եարա կը կոչեն. եւ զոր կը հանեն ոտից եւ ձեռաց վրայ, երեսի վրայ, ոմանց ալ քթին, ճակատին եւ

աչքին կը պատահի, սարեկան եւս կ՚անուանեն, զի տարին մը չափ կը տեւէ, ապա կ՚անհետանայ, տգեղ հետք կամ սպի մը թողլով տեղը. գրեթէ բացառութիւն չկայ, երկու սեռէն ալ մեծ ու փոքր կը հանեն, նոյնպէս եւ դուրսէն գնացողք, որոնցմէ ոմանց զաւակացն ալ կ՚անցնի երբ իրենց երկիրը վերադառնան։ Դիտելի է սակայն որ մարմնոյն բաց մասերուն վրայ կը հանուի, եւ կարծողներ կան թէ ծաղկի նման ճանճեր վէրքի մը թարախը կը փոխադրեն ուրիշի մը։

Կարիճէն զատ, օձեր եւ այլ վնասիչ սողուններ եւս կը գտնուին, սովորութիւն մը ունին որ մանկանց ոտներ ու պճեղները փոքրիկ զանգակաց շարք մը կը կախեն, ոմանք նաեւ բազուկներն ալ, որպէս զի զանգակաց ձայնէն փախչին եւ չհպին մանկանց խայթիչները, բայց այս բանը միանգամայն եղած է մանկանց սիրելի հաճոյք մը եւ զարդ, շատերը արծաթէ կը շինեն. մանուկն շատ կը զուարճանայ ոտքի ելնելու եւ թաթիկները շարժելու։

Յիշելու արժանի շատ բան կը մնայ, մանաւանդ տնական կեանքէն, ինչպէս պրզեշ, որ հացէն առաջ կը պատրաստեն մեծ սինիի մը վրայ գոյնզգոյն տեսակ տեսակ թունդ ըմպելեօք, հոն կը դասաւորեն իբր քսան տեսակ մեզէ, չաքարներ, պահարներ, բոված կթուններ, չամիչներ, արմաւ, խմորե-

ղէնք եւայլն․ կը խմեն ընդ երկայն, ծխելով Թէմպէքին եւ Թիւթիւնն, կը գրգռուի արիւնն եւ ուղեղներ, տաք տաք խօսքեր եւ վէճեր կ'սկսին, ոմանք կը Թմրին, այնուհետեւ հացի սեղան կուգայ, ափսոս կերակուրներ ոչ ոք կուտէ։

Պատուական օշարակներ, եւ Շարապի հարիր կը շինեն, վարդ կամ մանիշակ շաքարի հետ եփելով։ Պտղոց եւ գրեթէ ամէն տեսակ մրգեղինաց առատութիւն է, իսկ իւր ձմերուկն ու սեխը Թէ համով եւ Թէ մեծութեամբ ոչ մէկ տեղ չկայ։ Տիգրիսը առատ ձուկ կ'ընծայէ, միսն ու կարագը աժան եւ ընտիր, Թէ գաւառին մէջ սպառելիք եւ Թէ դուրսերը վաճառելիք նիւթերն են ցորեն, գարի, շերամի հունտ եւ բոժոժ, ափիոն, շուշմայ, բրինձ, կորեկ, սիսեռ, ոսպ, կտաւատ, քուշնայ, ձօլպան, շրէշ, բամբակ, ընկոյզ, պտուղ, պընտուկ, դըղԹոր, տորոն, խէժ, անԹուֆ, փորիկ, շաղկալօր, նուշ, Թուզ, խաղողի չամիչ, չորցուցած սեւ սալոր՝ աչպալիէ, մեղր, մոմ, այլեւայլ մրգեր, Թիֆթիկ, սեկ, չքանուած կաշի եզանց եւ խաշանց, բուրդ, կարպետ եւայլ փռոցներ, հագուստի եւ զարդուց տարազներ՝ որ իրենց մէջ կը գործուին, բամբակեայ, կերպասեայ եւ շալեղէն․ իսկ խոշոր ձիթապտուղ կ'ելնէ Տէրկէն, որ 12 ժամ հեռի է քաղաքէն․ եւայլն։

Դրսէն կը ներմուծէ տարին իբր 80 հա-

զար լիրայի՝ ներկեալ մանած եւ մալիֆա-թուռայ, եւ իբր 20 հազար լիրայի զանա-զանք․ այսինքն լեղակ՝ մեծ քանակութեամբ, գըրմըզ, սուրճ եւ շաքար, քէօսէյէ եւ վի-տօլայ, ահթէրիյէ եւ թուհաֆիէ, քարմի-ցայ, ապակի, ղալայ եւ նիշատիր, երկաթ եւ պղինձ, թէնէքէ եւ վառելու կազ, եւ այլն։

Այսուցմէ զատ Պարսկաստանէն, Բաղդա-տէն, եւ Հալէպէն եւ հիւսիսային Հայաս-տանէն տեղական ապրանքներ եւ այլեւայլ պէտքեր իբր 25 հազար լիրայի։

Որոնող մը կրնայ շատ ընտիր եւ հազ-ուագիւտ թանգարուեստ նիւթեր գտնել Տիգրանակերտի մէջ․ Հնդկաստանի, Ճաբոնի, Պարսի եւ Չինի ապրանքներէն եւ անօթ-ներէն, նոյնպէս կը գտնուին հին դրամներ, հին զէնքեր, եւն․ առոր անոր քով։

Քաղաքն ալ կը թուի թէ իր շէնքերու եւ փլատակ տեղերու տակ ունի հնութիւններ, փողոցներու մէջ յաճախ կը տեսնուին աւե-րակներէ հանուած զանազան ձեւով մար-մարեայ քարեր եւ սիւներ․ եւ կը պատմէին որ եթէ թոյլտուութիւն լինէր կրկտել, հին շէնքեր եւ այլեւայլ հնութիւններ յարեւ-ակիտ գան։ Շուկայի մէջ տեղ մը կը ցուցը-նեն, որոյ ներքեւ ծածկեալ կայ հին շէնք մը, կ'ըսեն, որ ունի ոսկի գօտիով սիւն մը, եւ այն սիւնին տակ՝ գանձ կայ, զորս հին ա-ւուրց շէխեր եւ կարդացողներ միայն գիտեն

եւ իրենց յաջորդաց կ՚աւանդեն, եւ այդ տոհմին կը կարծուին Շէմսի կրօնին կրօնապետաց սերունդէն, ժամանակին մահմէտական եղած։ Վհուկները, աստղագուշակները, եւ կերպ կերպ հմայութիւն ընողները բազմութեամբ լի է այդ քաղաքն եւ իւր գաւառը, դաս դաս կանայք մեծաւ մասամբ, եւ արք, ունին նկարներ իրենց ճակատուց, երեսաց, ձեռաց, բազկաց վրայ. անոնց տեսակները եւ գոյնս ունեցող ցեղերը կը գըրաւեն դիտողի մը ուշքը. ես օրինակել տըւած եմ Շիշմանեան Գ. Մկրտիչ Խոսրովին, որ հանճարեղ եւ աշխատասէր պատանի մ՚էր, լի եռանդով, եւ գեղարուեստից եւ ուսմանց փափագով. բայց ափսոս կը պակսէր իրեն յառաջադիմելու եւ կատարելագործելու ասպարէզը. թէ նա եւ թէ իրեն նըմաններ որքան կը գտնուին ազգին մէջ. որոց հանճարը կը մնայ անմշակ. որք կրնային մէկ մէկ լաւ վարպետներ լինել, եւ մեծ օգուտներ ընծայել գիտութեան եւ պատմութեան։ Ցիշեալ պարոնին օրինակել տուի նաեւ պկՃ ու սկՃի բուրգերը, որոց պատկերները ահա կը դնենք այստեղ։ Երանի՜ թէ դիւրութիւն լինէր մեզ պէս ուղեգրաց, ամէն նշանաւոր շինից, աւերակաց, վայրաց, եւ անձանց պատկերներ առնելու, որով մեծ օգուտ ու հաճոյքը կը լինէր ընթերցողաց համար։ Բայց առ այժմ կը մնանք զրկեալ։

Մարմնոյ վրայ նկարը, որ սովորաբար ա-

սեղով կը ծածկեն ու կապոյտ մելանի գոյն մը կ'առնու, ինչպէս մեր մահտեսիներու ձեռաց եւ բազկաց վրայ եղածները։ Ամէն բանգէտը գիտէ թէ՝ քրիստոնէութեան կամ Երուսաղէմ ուխտի գնացողին յատուկ չէ այն նկարն, այլ շատ հին է մարդոց մէջ. Նկարն վերջին դարերը գտնուած վայրենի մարդոց վըրայ ալ տեսնուած է. եւ ընդհանրապէս Ափրիկէի կամ Արաբիոյ աշխարհաց, կամ անոնց մերձաւորակ ցեղերուն մէջ յաճախեալ։ Արդեօք այդ նոր գտնուած երկիրներու մարդն մեր հարաւարնակաց հաստուա՞ծն է եղեր ժամանակաւ, որ իր վրայ կը պահէ այդ սովորոյթքը։ Բայց ինչ որ ըլլի՝ կը թուի թէ, այդ նկարը խորհրդանշան մը, յիշատակ մը կամ յուշարար մի է կրօնական գաղափարի մը, սիրելւոյ մը, կամ նուիրական ու հաճոյական առարկայի մը, որպէս մահտեսիք կը նկարեն Քրիստոսի Ս. Յարութիւն, Ծնունդ, եւն. եւ ինչպէս երբեմն Մարգարէն ի դիմաց Իսրայէլի, որ գերի կ'երթար ի Բաբիլոն, Սիոնի կարօտն զգալու, չ'մոռանալու, և միշտ աչքի առջեւն ունենալով զայն՝ օտարութեան չվարժելու, այլ միշտ յիշելու համար Աստուծոյ քաղաքը, կ'ըսէր «Ի վերայ բազկաց իմոց նկարեցից զքեզ, Երուսաղէմ»։ Այս նուիրական եւ յոյժ սիրալի գաղափարին հետ՝ կար ուրեմն այդ նկարի արուեստն ու սովորութիւնն եւս այն օր։

վիճակիս գաւառները ու գեղերը թէպէտ անձամբ չ՚կրցայ շրջիլ մանրամասնօրէն, բայց արդէն նախածանօթութիւն ունէի, եւ բը-նակիչներէն շատերը գտնուեցան Տիգրանա-կերտը․ որք գոհացուցիչ տեղեկութիւններ կրցան տալ։ Թէպէտ Առաջնորդարանի կող-մէն ալ գրողներ ղրկուած էին․ բայց անոնք ուրիշ մանած ունէին ներկելիք․ ի զուր սպասեցինք եւ խնդրեցինք անոնց։

Սղերտ Տիգրանակերտի վիլայէթին կարե-ւոր մութասարիֆութենէն մին էր, որուն կը պատկանէր Սասունք եւ գրեթէ այն լեռնա-գաւառաց մեծ մասն, յետոյ այդ տեղերը եւ Սղերտն տրուեցան Բաղիշոյ վիլայէթին․ յորս քրդաց մեծ բազմութիւն մը և բաւական Եզիտներ կը գտնուին, եւ ադոնց բնակակից Հայք եւ սակաւաթիւ Ասորիք ամէն կերպով կը նմանին քրդաց՝ բացի կրօնական տարբե-րութենէն․ շատերը նոյն իսկ քրդախօս են, եւ արանց ու կանանց հագուստն, կենցաղն նմանօրինակ են, այնպէս որ եթէ եկեղեցի, քահանայ, եւ քանի մը կրօնական բառեր, իրենց անունները․ ու ծէսերը չ՚տեսնուին, դժուար է զանազանել, թէ եւ յաճախ անուն-ներ ալ կան քրդերէն։ Եւ որովհետեւ քրդաց զանազան ցեղեր ու սահմանակիցներ սաէպ չնչին պատճառներով զինակռիւ կ՚ընեն միմ-եանց հետ, Հայն ալ անխտիր իր գտնուած տեղւոյն ու ցեղին հետ կռուի կ՚երթայ հա-կառակորդին դէմ, ուր կը գտնուի նոյնպէս

Հայ. այս է պատճառն որ զինեալ են եւ վարժ, մինչեւ անգամ կանայք, ի հարկին: Սասնոյ մասին մէջ ամիրա ցեղէ քրդեր կան. որ ունին իրենց իրրեւ ստացուածք գեղացիները, որոցմէ թեթեւ՝ այլ անհրաժարելի տարեկան տուրքեր կ'առնուն. ուստի շատ անգամ եթէ մէկ ամիրայի Հայն ուրիշ ամիրայի մը մարդոցմէն կամ այլուր սահմանին մէջ կողոպտուի կամ կեղեքուի, ի պաշտպանութիւն հայուն կռիւ կը ծագի ամիրայից մէջ մինչեւ գոհացում տրուի: Կը պատահի այս մարտից օրերը՝ որ ամիրայք ի վրէժ միմեանց ինչպէս նախիր կամ ոչխարը կը յափշտակեն ոսոխին, նոյնպէս եւ անոր հայն, որոցմէ ոմանք կը խողխողուին եւս: Զարմանալի է որ այդ ամիրայք իրենց վրայ բաժնած են նաեւ հեռաւոր գաւառներէ հոն գնացող անձինք, զորօրինակ, Իզմիրցին մէկինն է, Պօլսեցին մէկին, Պուրսացին ասոր, Կարնեցին, Վանցին, անոր, եւն. եւ այսպէս եթէ այդ երկիրներէն ով հանդիպի, կամ բնակի այն կողմն, իր ամիրայն ծանօթ է, իւր իրաւասութեան տակը կ'առնու, և անոր անունով կը ճանչցուի:

Այդ կողմերու Հայոց մէջ թէպէտ Բողոքականները շատուց յաջողած են մուտ գըտնել բայց որսեր չ'ունին: Ինչպէս Սղերդի, նոյնպէս եւ Ռընտվանի մէջ, Հայոց Միացեալ ընկերութեանց ձեռքով եւ Սովելոց Յանձնաժողովոյ նպաստիւք բացած վարժարաններ մեծ բարիք եղան այն ժողովրդոց:

Տիգրանակերտի Առաջնորդական վիճակը
տասն գաւառէ եւ գաւառակներէ կը բաղ-
կանայ։ Բայց ասոնց մեծ մասն Մշոյ Ս. Յօ-
հաննու վանքին, Ս. Առաքելոց վանքին, եւ
Սասնոյ Մարաթի Առաքելոյ վանքին թեմերն
են. յորս ամէն տարի նուիրակներ կը շրջին.
երեք տարին անգամ մ՚ալ Մշոյ Ս. Կարա-
պետի նուիրակն կուգայ. եւ այս թեմերը
այդ վանքերուն յոյժ արդիւնաւոր պտղատու-
ներն են. որք ունին անկեղծ ջերմեռանդու-
թիւն եւ պնդութիւն Ս. եկեղեցւոյ օրինաց,
կանոնաց, պահոց եւ աղօթից. իրենք ալ մեծ
բազմութեամբ կը դիմեն ուխտի, եւ խոս-
տումներ, ու զանազան նուիրանքներ կը մա-
տուցանեն։ Այս թեմերէն՝ Սլիվանու, Գը-
չէրիկու եւ Բահրամի Հայք քրդախօս են.
իսկ մնացեալք հայերէն կը խօսին։

## ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ԱՌԱՋՆՈՐԴԱԿԱՆ ԹԵՄՔ

## ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՔ, ԱՒԱՆՔ ԵՒ ԳԻՒՂՕՐԱՅՔ

Ա. Տիգրանակերտ քաղաք. առաջին աս-
տիճանի վիլայէթ, կեդրոն Առաջնորդու-
թեան։

Բնակիչք՝ Թուրք, Քիւրդ, Հրեայ, Քիլ-
դանի, Ասորի, Յոյն, Հայ։ Քրիստոնեայք
ունին կաթոլիկ եւ Բողոքական մասեր։
Եկեղեցիք Հայոց 2. Ս. Կիրակոս եւ Ս.
Սարգիս։ Վարժարանք Հայոց 7. ուսանողք
400 մանչ. 80 աղջիկ։ Ծախք վարժարանաց

տարեկան 22,800 ղրուշ կը հոգայուէր եկեղեցիներէն, ընկերութիւններէն, եւ փոքր մաս մը թոշակներէն։

Կալուածք 2 եկեղեցեաց՝ քառասուն տուն, 2 եւ կէս փուռ, 2 ծիթաղացք․ 6 խանութ, 2 տընկ․ 1 պուղհանէ, 1 պարտէզ, 1 արտ՝ տասն քիլէ սերմամուտով․ որոց տարեկան հասոյթն էր միջակ հաշուով 12,250 ղրուշ Ս․ Կիրակոսին, 10,200 ղրուշ Ս․ Սարգսին․ իսկ ժողովրդեան հասոյթ կամ անուղղակի արդիւնքը՝ 22,000 ղրուշ երկու եկեղեցեաց։ Ազգ․ ուրիշ կալուածներ կան քաղաքին մէջ․ մէկ ու կէս տուն Ս․ Էջմիածնայ, եւ 28 խանութ ու 50 տուն Ս․ Երուսաղէմայ։ Ս․ Երուսաղէմայ տեսուչն եւ գանձապետն էր Յոհաննէս էֆ․ Մինասեան պատուաւոր եւ պատուական անձն։

Քաղաքին շուրջը գտնուած Հայաբնակ գիւղօրայք, խառն՝ Ասորի, Քիւրտանի, Եզտի, Քիւրդ, Հայ՝ Բողոքական եւ Կաթոլիկ։

| | | | |
|---|---|---|---|
| Ղըբըրբըլ | | Տունք Հայոց | 20 |
| Հայ-Եղիկ | 1 եկեղեցի Ս․Եղիա | » | 35 |
| Քաբիկ | » Ս․Քրիստափոր | » | 7 |
| Քասիմն վերին | | » | 2 |
| Ճարաբի | | » | 8 |
| Ջրղսօր | | » | 6 |
| Խըմկրի | | » | 2 |
| Բաղչաջիկ | | » | 8 |
| Ծըռնիկ | 1 եկեղ Ս․Աստ․ վրէժխնդիր | » | 32 |
| Դարք-զօլ | | » | 9 |

| | | |
|---|---|---|
| Թըլխաս | Տունք Հայոց | 2 |
| Գարաբաշ 1 եկեղ. Ս. Սիմէօն սիւնկց. | » | 8 |
| Չաֆոյ | » | 10 |
| Սաղու-գեղ 1 եկեղ. Թուխմանուկ | » | 82 |
| Գարա Սաֆաղ | » | 8 |
| Անշայ-գեղ | » | 6 |
| Դավալու | » | 8 |
| Զօրավայ } Սաղու գեղին մօտիկ | » | 4 |
| Արզօղլի } | | |
| Ալի-բունար 1 եկեղ. Ս. Ա.Ծ.ծին | » | 15 |
| Էրընչիլ | » | 20 |
| Չարուխչի | » | 6 |
| Գարա-ֆիլիսայ | » | 6 |
| Քասիան վարին | » | 6 |
| Սեյըմի | » | 2 |

Բ. Թեմ. Տերըկ աւան եւ գաւառակ: Միւտիր ընդ վալիութեամբ Տիգրանակերտի: Բնակիչք՝ Ասորի, Քիւրդ, Հայ. կը գտնուին կաթոլիկ եւ Բողոքականք:

| | | |
|---|---|---|
| Տերըկ աւան 1 եկեղ. Ս. Գէորգ. | Տնք. Հյ. | 60 |
| Բէյրօկ | » | 5 |
| Ս. Դանիէլ. — վանք է Հայոց | » | 2 |

Գ. Թեմ. Բչէրիկ գաւառ: Միւտիր ընդ գայմագամութեամբ Ռըզուանու. Միւթասարֆութիւն Սղէրտ: Գաւառագլուխն է

| | | |
|---|---|---|
| Էյմեսի գեղ | Տունք Հայոց | 22 |
| Շանաղերիկ | » | 8 |
| Աշըֆ | » | 6 |

| | | |
|---|---|---|
| Թըլզօզ | Տունք Հայոց | 5 |
| Ղանքար | » | 30 |
| Բալա քալայ | » | 8 |
| Ֆէրիկ 1 եկեղեցի | » | 60 |
| Մէրէնան » | » | 20 |
| Գոնդէ-չանոյ » | » | 105 |
| Ղոչան » | » | 50 |
| Սինան » | » | 50 |
| Դէրըկոյ-Ամոյ | » | 11 |
| Միրզայ-բէկ | » | 2 |
| Շեխչօբան | » | 1 |
| Գէր-սիրան | » | 7 |
| Ջիզարլու | » | 30 |
| Էլէն 1 եկեղեցի | » | 15 |
| Բլէյ-դար » | » | 50 |
| Բարըսըլ » | » | 15 |
| Քաֆէրզոյ | » | 3 |
| Քաֆէրզոյ միւս | » | 15 |
| Բազ-բուք | » | 6 |
| Շէմս, (չըմըս) | » | 5 |
| Ջէրչըլ 1 եկեղեցի | » | 32 |
| Բասորիկ | » | 15 |
| Բասորիկ միւս 1 եկեղեցի | » | 25 |
| Բա-հազրիկ | » | 10 |
| Քէրսի | » | 10 |
| Քոռիկ | » | 11 |
| Թըլ-մէրչ | » | 5 |
| Ամսոյ | » | 10 |
| Գոնդըկ | » | 8 |
| Րէշիկ-մօլայ էմէր | » | 2 |

| | | |
|---|---|---|
| Բէ-խաւմս . — Համանուն նահիէ . — | » | 5 |
| Չընազկար | » | 10 |
| Ազիկ վերին | » | 5 |
| Ազիկ վարին | » | 12 |
| Մըղրավաշ 1 եկեղեցի | » | 20 |
| Խաչցի գեղ | » | 15 |
| Սուլյան | » | 3 |

Դ. Թեմ: Սլիվան գաւառ: Գայմագամ ընդ վալիութեամբ Տիգրանակերտի: Բնակիչք՝ Քիւրդ, Քնչու, Ցոյն, Ասորի, Հայք: Գաւառագլուխն է

Մուֆարղին Աւան. — ի հնումն՝ Նփրկերտ, կամ Մարտիրոսաց քաղաք —: 1 եկեղեցի, Ս. Սարգիս: Տունք Հայոց 80: Երկու եկեղեցիք եւս կան հոյակապ, աւերակ, Ս. Աստուածածին եւ Մարտիրոսաց տաճար Ս. Մարութայէն կառուցեալ: Կայ եւ մի հոյակապ մզկիթ Պարսից՝ աւերակ:

| | | |
|---|---|---|
| Բաշոյ | Տունք Հայոց | 7 |
| Թըրպէ սըքի 1 եկեղեցի | » | 60 |
| Խոշավայ | » | 5 |
| Ալի-բէնկի | » | 3 |
| Հէյէն 1 եկեղեցի | » | 70 |
| Բա-մայսան | » | 4 |
| Հաջիչայ 1 եկեղեցի | » | 50 |
| Քոռիք | » | 5 |
| Կավշան | » | 4 |
| Ցէրայ 1 եկեղեցի | » | 80 |
| Սալըկայ 1 եկեղեցի | » | 25 |

| | | |
|---|---|---|
| Չըողլի | Տուն Հայոց | 20 |
| Թուրէշ | » | 15 |
| Քընիաղ 1 եկեղեցի | » | 60 |
| Հիւսէյնա 1 եկեղեցի | » | 70 |
| Մէր-էյիա | » | 30 |
| Ասլոյ | » | 38 |
| Ազդի | » | 5 |
| Շարափիկայ | » | 3 |
| Գաշ-ֆէօյ | » | 3 |
| Զաքալ | » | 10 |
| Քէլան | » | 5 |
| Գաշ-պէօյիւֆ | » | 15 |
| Ղուրքի | » | 10 |
| Ջէրալ | » | 25 |
| Քլէսայ | » | 10 |
| Շըվֆաք | » | 15 |
| Փիրէ-ղալան | » | 7 |
| Ասըշէ 1 եկեղեցի | » | 30 |
| Բըլ-բըլ | » | 14 |
| Զընգըն 1 եկեղեցի | » | 40 |
| Հալդայ | » | 14 |
| Բոշաս | » | 20 |
| Բաշխայ 1 եկեղեցի | » | 30 |
| Մալէ-Մըլֆոյ | » | 2 |
| Յարհանդի | » | 8 |
| Բա-շըմըղ | » | 5 |
| Հանի-Զարֆազ | » | 3 |
| Տէրկէ-վան | » | 2 |
| Զօրէ | » | 4 |
| Գոնդէ-լալէ | » | 2 |

| | | |
|---|---|---|
| Թախըրկ | Տունք Հայոց | 1 |
| Տէրուն | » | 10 |
| Տասրնայ | » | 2 |
| Թատրկանէ-ֆէշէ | » | 5 |
| Թըլմին | » | 2 |
| Փէրուշան | » | 4 |
| Տէրվիշ-փէյլիվան | » | 3 |
| Վէյ-սըրկան | » | 2 |
| Բա-խուս | » | 3 |
| Օմէրայ | » | 2 |
| Գուզալ-դարայ | » | 15 |
| Ալօղինայ | » | 5 |

Ե. Թեմ։ Հազրոյ գաւառ։ Միւտիր ընդ գայմագամութեամբ Սլիվանու։ Բնակիչք՝ Քիւրդ, Ասորի, Հայ, ուր կան նաեւ Բողոքական։ Գաւառագլուխն է

Հազրոյ աւան. 2 եկեղեցի, Ս. Աստուածածին եւ Ս. Շամունէ։ Տունք Հայոց 176։ Վարժարան 1, Աշակերտք 50։

ԶԱՑԱԲՆԱԿ ԳԻՒՂՕՐԱՅՔ

| | | | | |
|---|---|---|---|---|
| Տատաշ | | | Տունք Հայոց | 2 |
| Այնտաւ | | | » | 2 |
| Շեխան | | | » | 6 |
| Ռասուլ-այնը | | | » | 12 |
| Քուվէրճին | | | » | 30 |
| Ագրահ | 1 եկեղեցի | | » | 45 |
| Տէրսըլ | » | | » | 21 |
| Բաշնեղ | » | 1 վարժարան | » | 70 |

| | | |
|---|---|---|
| Խըճիկան | Տունք Հայոց | 10 |
| Փիրաման | » | 6 |
| Հայսէրիկան | » | 10 |
| Գուլէ-միրան | » | 11 |
| Մահրան | » | 6 |
| Թըրշիղ | » | 5 |
| Գոման | » | 2 |

Ձ. Թեմ: Լըճէ գաւառ: Գայմագամ ընդ վիլայէթութեամբ Տիգրանակերտոյ: Բնակիչք՝ Թուրք, Քիւրդ, Ասորի, Հայ: Գաւառագլուխն է

Լըճէ Աւան. 1 եկեղեցի Ս. Աստուածածին: Տունք Հայոց 200:

ՀԱՅԱԲՆԱԿ ԳԻՒՂՈՐԱՅՔ

Օփուլ (ֆում). 1 եկեղեցի Ս. Կիրակոս: Տունք Հայոց 90:

Սառնիս 5 եկեղեցի Ս. Թովմաս, Ս. Սարգիս, Ս. Յակոբ, Ս. Թորոս, Մար-շամոյ, փլած: Տունք Հայոց 17:

Մաղախտան (մօլլայ) 1 եկեղեցի Ս. Շամունէ:

| | | |
|---|---|---|
| | Տունք Հայոց | 20 |
| Հարբախնայ | » | 45 |
| Գըր | » | 30 |
| Հէզմաս | » | 1 |
| Շըկակայ | » | 1 |
| Հէրաֆ | » | 1 |
| Բա-մըթին | » | 2 |
| Շամ շամ 1 եկեղեցի | » | 44 |

Ծաս-խայֆ Տունք Հայոց 10
Հալիալ » 8
Նունևաս 1 եկեղեցի » 7
Անբաղ » 7
Հեզան » 1
Սարդայ » 6
Գոյման 1 եկեղեցի » 40

Է. Թեմ։ Հեյնէյ գաւառ։ Միւտիր ընդ-գայմագամութեամբ Լճէու։ Բնակիչք՝ Քիւրդ, Հայ։ Գաւառագլուխն է

Հեյնեյ Աւան. 1 եկեղեցի Ս. Աստուածածին. 1 վարժարան, աշակերտք 80.

Տունք Հայոց 295

ՀԱՅԱԲՆԱԿ ԳԻՒՂՕՐԱՅՔ

Կարաս » 20
Հավրէ » 7
Ջառայ » 5
Ծումայիկ » 11
Բալինչնէ » 10
Քար-բըշ » 3
Խըոչիկ » 3
Տըքնէ 1 եկեղեցի » 60

Ը. Թէմ։ Բէշար գաւառ։ Միւտիր ընդ-գայմագամութեամբ Լճէու։ Բնակիչք՝ Քիւրդ Հայ։ Գաւառագլուխն է

Բէշար գեղ 1 եկեղեցի Տունք Հայոց 12

ՀԱՅԱԲՆԱԿ ԳԻՒՂՕՐԱՅՔ

Րիզ 3 եկեղեցի աւերակ » 60

| | | | | |
|---|---|---|---|---|
| Նորշէն | | | Տունք Հայոց | 30 |
| Մօրընդառ | | | » | 8 |
| Հէրֆի | | | » | 1 |
| Եղ-մուկ | | | » | 4 |
| Անդու | 1 | եկեղեցի աւեր | » | 8 |
| Մրզակ | 2 | » » | » | 30 |
| Դաշանիկ | | | » | 2 |

Թ. Թեմ: Խուլփ գաւառ. Միւտիր ընդ գայմագամութեամբ Սէլիվանու: Բնակիչք՝ Քիւրդ, Հայ: Գաւառագլուխն է

Անհարօնֆ գեղ. 1 եկեղեցի Ս. Եօթն Մանուկ: Տունք Հայոց 60

ՀԱՅԱԲՆԱԿ ԳԻՒՂՕՐԱՅՔ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Ընծֆար | 1 | եկեղ. | Ս. Գէորգ | » | 55 |
| Գեղըրվան | 1 | եկեղ. | Ս. Ստեփանոս | » | 58 |
| Խնուպ | 1 | » | Ս. Սարգիս | » | 20 |
| Բասոր | 1 | » | աւեր | » | 15 |
| Շողէֆ | 1 | » | » | » | 15 |
| Ֆրէ-մօրի | | | | » | 10 |
| Գաշիէ-մասուր | | | | » | 21 |
| Գայբըռնէն | | | | » | 5 |
| Խոռոչ | | | | » | 5 |
| Քուէ | | | | » | 12 |

Ժ. Թեմ: Խիան գաւառ. Միւտիր ընդ միւթէսարըֆութեամբ Սղերդի: Բնակիչք՝ Քիւրդ, Հայ: Գաւառագլուխն է

| | | | |
|---|---|---|---|
| Փարկայ գեղ, 3 եկեղեցի. Տունք Հայոց | | | 105 |
| Սաղտու (սըլտըն) 1 » | | » | 38 |
| Ընկուզնակ 1 եկեղեցի | | » | 60 |
| Եղի 1 » Ս. Եղիա (*) | | » | 76 |
| Իշխանձոր | | » | 70 |
| Սեւիդ (մօտ գիւղիս է Սեւիդոյ վանք Ս. Աստուածածին) | | » | 12 |
| Արտկունք (երկու թաղ է) | | » | 20 |
| Հարուըզ (խըրըզը) 1 եկեղեցի | | » | 10 |
| Բահնմեղայ 1 եկեղ. Քառասուն Մանուկ | | » | 30 |
| Արխունըդ 1 եկեղ. Ս. Թովմաս | | » | 20 |
| Քերմի 4 եկեղեցի | | » | 96 |
| Բացի 1 եկեղեցի | | » | 30 |
| Հօսնէր | | » | 8 |
| Հաւկունք 1 եկեղեցի աւեր | | » | 8 |
| Խըլովիկ | | » | 10 |
| Փուրխ 1 եկեղ. | Այս ութ գեղեր | » | 7 |
| Տըվաշինկ » | կը կոչուին Տայլո- | » | 10 |
| Հազմանք » | րիկ. բաւական ա- | » | 15 |
| Հայոզկնք | ռատ երկաթ կը | » | 5 |
| Հոսնուս | հանեն իրենց հան- | » | 5 |
| Հարթիկ | քերէն : | » | 5 |
| Վերին գեղ | | » | 12 |
| Մէզրէ | | » | 15 |
| Հարթիւոյ 1 եկեղեցի | | » | 15 |
| Շըմունակ 1 եկեղեցի աւեր | | » | 4 |
| Ռապայ 5 եկեղեցի աւեր | | » | 5 |

(*) Ս. Եղիա եկեղեցւոյ վրան հող չեն լեցուցած, միայն տերեւներով ծածկած են. եւ կ'ըսեն՝ «Մեր սուրբը չէ մեռեր, հող չ'հէմլէր, կնիկլէ չը հէմլէր յինէ, կոյս է» : — Հէմլել՝ վայլել կամ ներել կը նշանակէ :

| | |
|---|---|
| Բռ-խոռան<br>Գալիկ-գոզան<br>Ասողան բերդ<br>Տափըրկ<br>Ավկեր | Այս գեղերուն մինակը գիտ-ցող չկար․ միայն գիտեմ թէ Գալիկ-գոզան բազմահայ գեղ մի է, եւ բնակիչք համբաւ ունին արիութեան։ |

ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ՎԱՆՔԵՐ

1․ Մակարայեցւոց վանք կամ Ս․Առաքեալ․ Լճէ աւանէն 3 ժամհեռի՝ յԱրեւելեան հարաւ, որ ունի 12 կոռր արտ 21 քիլէ սերմամուտ, արտերէն 8 հատն ջրարբի են․ ունի 1 տուն՝ Ազրակ գեղը․ 2 ջաղացք, 3 այգի եւ 3 ծա-ռաստան պարտէզ՝ վանքին չուրջ եւ Շամչամ գեղը․ եւ 2 կոռր անտառ։ Հողերը թափու եղած են․ վանքն իր լուծքով եւ մշակներով կը վարէ ցանէ։ Թէմ ունի 15 գեղ, որոցմէ կ՚առանայ տարին 109 քիլէ ցորեն եւ գարի։ Ջաղացքներէն՝ 10 քիլէ։ Այգիներէն՝ գինի 400 լիտր, որ է 2400 հօխայ։

Այս վանքին վանահայրն էր Յովհաննէս Վ․ Աստանացի․ իսկ այժմ՝ Տիգրանեան Սրբա-զանն է։

2․ Թրջլոյ վանք, Ս․ Թովմաս Առաք-եալ, ուր կը նստէր Մխոյ անունով աշ-խարհական Հայ մը իւր ընտանեօք, վանքին պարտէզներ եւ այգիներ կը մշակէր, վանքին անունով ժողովք կ՚ընէր իբրեւ վանահայր։ Արտեր չունէր այս վանքը։

3․ Այն-բըրըղ վանք Ս․Թովմայի անուամբ, Հազրոյ աւանին մօտ․ուր երբեմն վարդապետ, երբեմն աշխարհական վանահայր կը դրուի,

մշակելի արտեր չունի, բայց պարտէզներ եւ այգիներ կան, եւ ընտիր ջրոց երկու աւազան, որոց շուրջ զուարճալի օրեր կ՚անցունեն՝ քաղաքէն եւ այլ տեղերէ գնացողք, յամարան։ Այն-ըբրըղ կը նշանակէ Պայծառ ակն, բիւրեղեայ ակն ջրոց։

4. Ս. Դանիէլի վանք Տէրըկի մօտ, որոյ հողային կալուածներ երկար միջոցէ ի վեր քրդաց ձեռքն է, եւ մաս մը՝ երկու տնուոր Հայոց, որ կը նստին վանքին մէջ։

Վիճակիս դիրքը մեծաւ մասամբ դաշտային է։ Անմշակ՝ բայց մշակելոյ յարմար հողեր կը գտնուին. բերրի՝ այլ ջուր չունին, եւ օդն տօթ է մասնաւորապէս Ղարբ Նահիէն, որ մեծ դաշտին հարաւը կ՚իյնայ եւ կը տարածի Խարաջայ ըսուած լերան կողերը եւ ստորոտը, ուր 60 գեղի չափ աւերակներու հետք կան. այս հողերէն մասն մասն Տիգրանակերտի քաղաքացիներէն ոմանք թափու ըրած են. բայց ամենամեծ մասն կը մնայ ասոր անոր ձեռք առանց թափուի։ Այս լերան ստորոտն ու վրան հազարաւոր քըրդեր վրանաբնակ կը շրջին. լերան մերձակայից օդն ընտիր է, եւ ջուրն է Համրվար վտակն, որ կը հոսի Խարաջայ տաղէն, եւ քաղաքին քովերը կը մտնէ Տիգրիսին ծոցը։

Աւելորդ է կրկնել լեռնային գաւառները, որ կը վերաբերին Սասնոյ եւ Մշոյ լերանց. իսկ անոնց միջով հոսած ջրերն են՝ Ամբար գետ, որ Հէյնէէն անցնելով արտեր կ՚ոռոգէ,

ջաղացքներ կը դարձունէ, եւ Պչէրիկէն անդին կը միանայ Տիգրիսին ։ Բաթման գետը, որ Սասնոյ Բռնաշէնէն կուգայ Խիանը, անտի կ'երթայ Պչէրիկը եւ Բաթման գեղէն կ'անցնի, ուր կամուրջ մի եւս կայ, եւ Քէօփրիւ գեղին առջեւ կը միանայ Տիգրիսին՝ արտերը ոռոգելէն եւ ջաղացքները դարձնելէն յետոյ ։ Խարզանայ կամ Ռընտվանու գետ, որ նոյնպէս արտերը ոռոգելէն եւ ջաղացքները դարձնելէն զկնի՝ կը թափի ի Տիգրիս ։ Ամենէն մեծ ջուրն է Շատ կամ Տիգրիսը, որոյ ծագումն եւ ընթացքը գրեցինք կանխաւ ։ Բոլոր այդ ջրերը իրենց մէջ ունին առատ եւ ընտիր ձուկեր ։ Քաղաքացիք Շատէն կ'որստան. ահա անոնց տեսակներուն ոմանց անունները, Շաքօթ, Որըք, Կարմըրախայտ, Օձաձուկ, Պահրան, Ծառոյ, Ակրի, Ջուլ, Ջըհուտ՝ որ Մօրուքով ձուկ ալ կ'ըսուի, Խալղան-բուղայ՝ որ կրիայի ձեւ ունի, եւն ։



# ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ ԱՌԹԻՒ

## ՔԱՆԻ ՄԸ ԽՕՍՔ

«Գիրք փակեալ կուռք են։»
—. Ի յիշտկրնէ Ս. Կիր. վանից Երզնկայի—։

*Մեր օրէն իբր 500 տարի առաջ, խաւարի եւ հալածանաց դարուն, Հայաստանեայց եկեղեցւոյ գրոց լուսաւոր մի խօսքն է, զոր կը դնեմ գրուածքիս ճակատը. «Գիրք փակեալ՝ կուռք են»։*

*Հայոց եկեղեցին եղեր է եւ է ամենայն ինչ՝ Ազգին համար։ Հայ ազգն ոչ միայն իւր գոյութեան պահպանութիւնը կը պարտի իւր եկեղեցւոյն, այլեւ միշրանք եւ նշմարք նախնեաց եթէ ազատուած են եւ մինչեւ մեզ հասած, ի շնորհս եկեղեցեաց. եւ վանօրէից է։ Ասոր համար թագուհիք իրենց գանձերը, տիկնայք իրենց զարդերը, ընչեղք իրենց դրամն; հողն, այգին, կալուածն եւայլն, ի կենդանութեան եւ յետ կենդանութեան նուիրած են, եւ ցայսօր ունեւորք կը նուիրեն այն սրբազան յարկաց եւ հաստատութեանց, «Յիշատակ ի Սիոն»։*

*Եւ, բազումք՝ խաչ, սկիհ, զգեստ, աւետարան, շարական եւայլն, կռել, կարել եւ գրել տալով, կամ խորան մը, յարկ մը կառուցանելով, իրենց անունն օրհնութեան ար-*

ժանի ըրած են, եւ ի Քրիստոսէ վարձք ստանալու հաւատով աշխարհէս մեկնած, եւ յաշխարհի ապրած են։

Իրենց եւ իրենց սիրելեաց անունն նուիրեալ մատենից մէջ եւ շինուածքի մը վրայ դրոշմել տուած են, ոմանց ալ պատկերները նկարուած կամ քանդակուած կան, համդերձ իրենց տոհմական պատմութեամբ եւ Քրիստոսասէր հոգւոյ իղձերով. որք արժանի են տեսնալու, զմայլելու, եւ խնամքով պահպանուելու ազգին մէջ անմահապէս։

Արդարեւ կորուստ մեծ կորուսած է Հայն, եւ այն՝ ոչ միանգամ, եւ ոչ երկիցս, այլ բազմիցս, կորուստ մ՚ ինքնին եղած է Հայն անհամար բազմութեամբ ցիրուցան լինելով, տեղէ տեղ փոխուելով, ազգէ յազգ անցնելով, որք ի գնալն եւ ի մնալն աւանդած են եկեղեցւոյն ինչ որ զերծուցած են աւարէն եւ մահուանէն, ընդ որ եւ իրենց վիշտն եւ փափագը, և շինուածոց և աւերածոց, լաւաց եւ վատաց, դիպուածոց եւ արարուածոց յիշատակները, որ կը տեսնուին մագաղաթներու վրայ, մատենագրութեանց մէջ, աւետարանի կողը, եւ ամենայն մատենից մէջը, էջը ու վերջը։

Ժամանակի դժբաղդ պատահարներ արդարեւ աւարեր, այրեր եւ ապականեր են անթիւ եւ անգին կեանք ու գոյք Հայոյն, տապալեր են շէնքը քաղաքաց, աւանաց, բերդից եւ ապարանից, ի տեղիս տեղիս

մուրճն ու փայտատն քանդեր են նաեւ որբավայրից հոյակապն ու ամուրն, բայց, այդ-այն ժամանակները միայն, երբ մարդն ապաստաներ անոր մէջը, զի յաճախ գիտենք որ արշաւանաց երեսէն վարեալք եւ վտարեալք իրենց գոյքն ու կեանքը ամրացուցած են վանօրէից եւ ամրակուռ եկեղեցեաց մէջը. ահա յայնժամ աւարիչք պաշարեր եւ քանդեր ու կողոպտեր են զայն։ Առանց այս պատճառին՝ կը տեսնանք որ սովորաբար մեր վանքեր եւ եկեղեցիներէն շատերը մնացած են զերծ, պատկառանք կարծես ազդելով անագորոյն աւերչաց։ Բռնաւորներէն եղեր են ոմանք ալ որ զիրենք յանձնարարած են կրօնաւորաց աղօթից եւ շնորհներ թողած են, հրովարտակներ տուած են այս եւ այն վանքին։ Վանքերէն եւ եկեղեցիներէն շատերը Հայ բնակչաց փախստեամբ լքեալ մնալով աւրուեր են ամայութենէն, գիտենք այնպիսիներ ալ որ ներքին յափշտակութեանց եւ անկարգութեանց երեսէն աւերակ դարձած են։

Կարի տխուր է տեսնել մեր վանքերու անշէն եւ ինկած վիճակը նոյն իսկ մեր ձեռքով, մեր օրով։

Որքան մեղաւոր եմք որ մեր նախնեաց մեզ թողուցածը դոնէ պահել եւ վայելել չգիտենք։ Ի՞նչ դժուարութիւն կայ, որ իւրաքանչիւր գաւառը իր մէջը կամ վանք մը կամ եկեղեցի մը յատկացնէ թանգարան հին

մատենից, ինչպէս ըրաւ ի Վարագ մեր Ս. Հայրիկն, եւ հոն խնամքով հաւաքեն, կարգաւորեն ու պահեն այդ գանձերը ապականութենէ եւ յափշտակութենէ. յափշտակութիւն, զոր չեն կատարեր եղուզակներ, այլ զօշաքաղք, որոց ձեռքով կը վաճառուին Աւետարաններ եւ զանազան ընտիր ձեռագիրներ ու կը փոխադրուին յարեւմուտս, իբրեւ հնութիւն եւ հրաշալիք արուեստից, մնացեալներն ալ հողոյն տակ, կաթիլներուն տակ, փոշիներու մէջ կ՚ոչնչանան եւ կ՚անհետին։

Ա՛հ, որքան մեծ յոյս ունէինք Ղալաթիոյ Մատենադարանի հաստատութենէն, ինչեզան հիմնադիրք եւ ընկերք, ինչ եւ քանի՜ հնութիւնք կրնային հաւաքել այնտեղ, եւ զանազան ձեռագիրք եւ յիշատակարան ի լոյս ածել, պարբերական հանդէս մը հրատարակելով, զոր այսօրուընէ իսկ սկսիլ չահ է։ Ես զիս կը դնէի այդ քաղցր ծառայութեան մէջ իմ տկարութեանս չափով աշխատելու թէ այդ յարկին տակ, եւ թէ վասն այդ յարկին շրջելով դուրսերը։ Ես յոյս ունիմ թէ կան ու կը գտնուին գերազանց կարող անձինք յօժարաբար աշխատակցելու, եթէ միանգամ գործն սկսէր։

Ստոյգ է թէ Ս. Էջմիածին, Ս. Երուսաղէմ, Վենէտիկ, Վիէննա, Արմաշ, Վարագ, եւ այլն, իրենց չափով արդիւնաւորած են Հայ գրականութիւնը եւ ունին մատենա-

դարաններ, ունինք բաւական անհատներ ալ, որ փայլած են ու կը փայլին պիտանի վաստակներով. բայց քան զամենեսեան առաւելն կրնայ ընել Ղալաթիոյ Մատենադարանն, զի յարաբերութեանց ամենէն յարմարն է թէ հայրենի գաւառաց հետ եւ թէ հեռացեալ գաղթականաց հետ. այո՛, եւ յոյժ դիւրութիւններ ունի։

Այդ յարկը կարող է եւ ազգային մատենագրաց եւ գրագիտաց ընծայել միջոց, ուր գտնան իրենց պէտք եղած գիրքը եւ օգտուին. փորձով գիտենք թէ որքա՛ն բան գրողներ կան մեր մէջ, որ առ ի չգոյէ գրեանց՝ ստիպեալ են չգրել, կամ սխալ եւ ընդ տարակուսանօք գրել։

Դառնալով մեր յիշատակարանաց վրայ, ընթերցողն կը տեսնէ թէ ուրեք ուրեք յապաւած ենք կրկնութիւնները, տեղ տեղ ալ արդի տպագրական օրինաց անպատշաճները. այսու ամենայնիւ դարձեալ կը մնան հետաքրքրական եւ բանասիրութեան արժանի։

Հայոց մատեաններն ալ Հայ մարդոց պէս գերութիւն եւ գաղթականութիւն կրած են, կը տեսնես Վանը գրուածներէն եկած են յԱկն, Բաղէշէն՝ Տիգրանակերտը, Տիգրանակերտէն՝ յԱյրարատ, Սասունէն՝ Կիլիկիա, Կամախէն՝ Նիկոմիդիա եւ Պրուսա, Կարինէն՝ ի Խարբերդ. Մուշէն՝ ի Սեւազ, Կիլիկիայէն ի բազում գաւառս եւ ի Պոլիս,

Անիէն՝ ի Ռումանիա եւ ի Լեհաստան, Տըփխիսէն՝ ի Վան, Էջմիածնէն՝ ի Հնդկաստան, Ջուղայէն՝ ի Զմիւռնիա, եւայլն. է որ գաղթողները հետ տարած են, է որ գողերէ եւ յափշտակիչներէ գնած ու գերեթափ ըրած են։

Կարի օգտակար կը լինէր եթէ ծանօթութեամբ հրատարակէինք յիշատակարանները, բայց ես անձեռնհաս կը գտնուիմ ժամանակի եւ այլ միջոցներու առջեւ, այդ գործը որչափ օգտակար՝ այնքան ստուար կը լինէր։ Արդէն մեր Վարագայ միաբանակից Փիրղալէմեան Գեր. Ղեւոնդ վարդապետ կատարած է զայդ իւր ճոխ օրինակութիւններով, որոց վրայ բաղդատութիւն եւ պատմական դիտողութիւն աւելցուցած է իւր կողմանէ, թէ Նորին Հայրութեան փոյթն ու տքնութիւնն, եւ թէ ազգային բանասիրութեան փափաքն իրապէս գոհ պիտի լինի, եթէ յաջողէր այդ աշխատասիրութեան հրատարակութիւնը։

Յիշատակարանաց տպագրութիւնը յոյժ պիտանի գործ մի է, որ կը լուսաւորէ պատմութիւնը, կը ցուցնէ անյայտ եւ չփոթեալ անունները անձանց եւ տեղեաց, կ'ուղղէ տարեգրութիւնները, կը յայտնէ իրողութիւններ եւ սովորութիւնները։ Ջերմ օրինակ կ'ընծայէ Աստուածպաշտութեան, օրինակ հայրենասիրութեան։ Նշանաւոր մի ցանկ կը բանայ մեր աչքին առջեւ անուա-

նախոչութեանց արանց եւ կանանց, յորս թէպէտ այլազգի անուանք յաճախ են, այլ կան նաեւ ընտիր ընտիր ազգային անուններ ։ Կը բացատրուի թէ ի՞նչ ըսել է եղեր Վանք, ի՞նչ՝ Անապատ, ի՞նչ՝ Դպրոց, ի՛նչ Մենաստան, եւ, թէ ի՞նչպէս եւ քանի՞ գեղեցիկ վաստակներ ունեցած են այն արտասուաց դարուց Հայ կրօնաւորներ ու անապատաւորներ, որոց մնացած արդիւնքն է որ ցայսօր գեռ այնքան բազմաթիւ Աստուածաշունչ, Աւետարան, Շարական, մաշտոց, ճաշոց, ժամագիրք, ճառընտիրք, պատմութիւնք, եւայլն եւայլն. գեղեցկագիրք և գեղանկարք լի են մեր մէջը, այնքան գերի եւ կորուստ տալէն զկնի ։ Մարդ կը համարձակի ըսել թէ՝ տպագրածներէ աւելին ունինք, եւ որք իբրեւ չքնաղ գործ եւ արուեստ եւ զարդ եւ նկար եւ վայելչութիւն արժանի են յատուկ ուշադրութեան, ինչպէս արդէն կը գնահատուին Եւրոպացի գիտուններէն ։

Այսպիսի ազգի մը ու աշխարհի մը մէջ՝ մեր երկրի հակոտնեայք եկեր են աւետարան կը տարածեն. ազգի մը ու աշխարհի մը՝ որք այսքան ունին. եւ իրենց համար՝ «Գիրք փակեալ՝ կուռք են», եւ այս գրքերով կըրթած են ապրիլ ու չփճանալ, որոց կրածին քառորդին չափ եթէ պատահէր այլ ազդաց, այդ ազգաց, թերեւս չկային այսօր ։

Այժմ իմ հրատարակելիքներն են քանի մը

օրինակ Բաղէշէն եւ Վանէն օրինակուած , եւ այնուհետեւ սոյն գրքուկիս ընթացքին համեմատ կ՚սկսինք Երզնկայէն  կը վերջացնենք ի Տիգրանակերտ ։ Անշուշտ ինձ պատահածներէն զատ դեռ բազմաթիւ ձեռագիրք եւ յիշատակարանք կան նոյն իսկ իմ շրջած տեղերը ։ Ինչպէս շատ եւ շատ կը գտնուին մանաւանդ Վանայ կողմերը ։



# ՁԵՌԱԳԻՐՔ

ԵՒ

# ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

---

## ԲԱՂԷՇ

### Ի ՎԱՆՍ ԽՆԴՐԱԿԱՏԱՐ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

1 *Աւետարան.*

*«Փառք...։ Սրբասէր եւ իմաստուն քահանայ Խաչատուր... ստացաւ զսա անջնջելի արձան ի մխիթարութիւն անձին իւրոյ եւ յոյս փրկութեան անձին իւր եւ ննջեցելոց իւրոց։ Ես յոգնամեղս եւ փցունս ի գրչաց Աբրահամս... յանձն առեալ կատարեցի... գրեցաւ ի կղզիս Լիմն, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Ս. Կարապետին եւ Ս. Գէորգեայ զաւրավարին, յիշեցէք զ...եան Զաքարիա որ զհաւատս Հայոց նոր գնեաց ի յանաւրէն առաջնորդաց եւ զեկեղեցիքս ազատեաց Աստուծոյ տեսչութեամբն եւ ձեռաւք իւրովք։ Ընդ նմին եւ զառաջնորդս տեղւոյս յիշ. Տէր Յօհաննէս, ի Թուիս Ջ. Ծ. Ե. երրորդի Հայկազեան սեռի, ի դառն եւ ի վշտաբեր ժամանակիս, յորում ամի եւ ըստ մեղաց մերոց այս ամենայն հարկապահանջութիւնս եկն ի վերայ մեր։ Յիշեցէք...»։ — Այլ գրով — «Փառք...։ Զվերջին ստա-*

ցաւղ Ս. Աւետարանիս զՍարգիս քահանայն եւ....: Թվին Պ.Ղ.Գ.»:

1 Մաշտոց եւս.

«... Գրեալ... ի մեծ Թվականիս Հայոց ի Ռ.Հ.Ե. ամի ի քաղաքս որ կոչի Խիզան, ընդ հովանեաւ Ս. տաճարացս Ս. Ցարութեան եւ Ս. Աստուածածնիս, Ս. Սարգսի զօրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսին եւ սրբոյն Գէորգայ որ է սակաւ մի հեռի, եւ աւարտեցաւ ընդ հովանեաւ Ս. տաճարիս որ յանուն Ս. Գամաղիէլ առաքելոյն կառուցեալ կայ: Ի կաթողիկոսութեան Տէր Գրիգորիսի, ի Թագաւորութեան աշխարհակալ արքային Սուլթան Սուլիման խոնդքարին, եւ ի մերոյ Քուրդ պարոնին Սօլթան Ահմատ բէկի: Ի յայսմ ամի գրեցաւ Ս. գիրքս, ի դառն եւ ի չար ժամանակիս, զի յամէն դիմաց դառնութիւն եւ վիշտն պատեր է Հայոց տառապեալ ազգս, զի յամէն դիմաց գառնութիւն, պատուհաս կուգա ի վերայ Հայոց ազգիս, սով, սուր, գերութիւն, մահ, չարժ եւ տապալումն, ժանկ, մարախ, Թրթուր, Ջորեակ, դալուկ, հեղեղ անԹիւ եւ անհաշիւ, որ ոչ կարեմ ընդ գրով արկանել: Այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց, բայց գոհանամք զԱստուծոյ Թէ զայս կեանքս չունինք, զՔրիստոս ունիմք յոյս եւ ապաւէն: Բարեխօսութեամբ Ս.Աստուածածնին եւ ամենայն ընտրելոց բարձցէ Տէր Աստուած զամենայն պատիժ պատուհասի յարարածոցս, մանաւանդ ի Հայոց տառապեալ ազգէս եւ հաշտեսցի ամենազօրուԹն Աստուած ամէն: Աստուած լուսաւորէ զՑովհաննէս վարդապետի հոգին, որ զմեզ կերակրէ ի գրել սորա... յիշման

արժանի առնէք... զքահանայն Պետրոս Մխիթար զստացող սորա եւ զծնողսն իւր զԵատուշէն եւ զԹիլլիփաշէն... եւ զիս... գծողս, Սարգիս սուտանուն եւ զծնողսն իմ զԿարապետ քահանայն եւ զԲնարն եւ զուսուցիչն իմ զշնորհազարդ եւ զբանիբուն Յովսէփ վարդապետ Աղթամարցին, եւ զհոգեւոր հայրն իմ զՎարդան քահանայն, եւ զիս, եւ զկողակիցն իմ որ աշխատեցաւ ի կոկել թղթին, եւ զմերձաւորսն իմ եւ զերախտաւորսն...։ Եւ արդ կացցէ սա ի դուռն Խնդրակատար Ս. Աստուածածնին. եւ ատենի սաղմոսարանս եւ ղատիֆա չուրջառն վակասովն եւ կլապիտոն խաչովն, եւ զխաչակալն կազմել ետ, եւ զեկեղեցւոյ սալերն նորոգեաց Տէր Մխիթարն։ Եւ արդ գրեցաւ սա յաւաջնորդութեան Ս. Ուխտիս Խնդրակատար Ս. Աստուածածնիս Ներսէս մեծ րաբունապետին, եւ աշակերտաց իւրոց Ներսէս վարդապետին, Հերապետ վարդապետին եւ Դաւիթ վարդապետին եւ Յովհաննէս վարդապետին, եւ Գրիգոր աշակերտին, Մարտիրոս կրօնաւորին, եւ Ստեփանոսին, Ղազարին եւ Աբրահամին»...։ (Անմեղադիր եւ անէծք)։

— Ի լուսանցս ուրեք ուրեք «Վա՜յ եւ եղուկ Ռ.Ռ.» եւ զուարճալիք կային։ Ահա մէկ քանին։ — «Աստուած լուսաւորէ զտէր Վարդանի հոգին, զի մեզ խաղող եւ խնծոր կու բերէ»։ «Ոտնալուայն աւարտեցաւ, իմ տէր տէր»։ —«Եղուկ ու վայէ ահագին, մեղօք մեռեալ խեւ Սարգսին, որ աղտոտեց ըզիւր հոգին, զոր չէ պատեհ կարգաւորին»։ — «Աստուած լուսաւորէ զՅովհ. վարդապետի հոգին, զի զմեզ մեղրով ու Ռ. բարով կու պատուէ»։ — «Աստուած լուսաւորէ

զվարդան կրօնաւոր քահանայի հոգին, զի մեզ մեղր ու խնձոր կու բերէ»: (Թաղման գանձին էջը գրուած) «Ոտանաւոր է, զինչ կ'ասես կուգայ»:

— Այս մաշտոցիս մէջը քահանայի ձեռնադրութեան կարգին մէջը նզովքները յանուանէ չեն յիշուած, ինչպէս նաեւ «հետեւիս»ները: Այլ միայն ի կարգի աստիճանացն այսպէս. «Ունի՞ն զդաւանութիւն ուղղափառ խոստովանութեան հաւատոյ ի սուրբ երրորդութիւնն եւ ի մարդեղութիւն Քրիստոսի Աստուծոյ մերոյ ըստ երից Ս. ժողովոցն. եւ հրաժարի՞ն յամենայն հերձուածողացն թէ ոչ: — Այո հայր սուրբ... եւ նզովեմք զամենայն հերձուածողաց դասքն զԱրիոս, զՄակեդոն, զՆեստոր, եւ զամենայն երկաբնակաց դասքն»....:

1 Գանձարան.

— «Փառք... Արդ ես յետինս ի կարգաւորաց եւ անարժանս ի քահանայից... Վարդան սուտանուն, խաբեբայ եւ ոչ քահանայ, շնորհիւ Տեառն սկսայ եւ աւարտեցի զսուրբ տառս... ի Թվ. Հայոց Ռ. եւ ԺԶ. ի Բաղէշ քաղաքի եզերն, ի գեօղս Մարգորգ, ընդ հովանեաւ Ս. Գէորգեայ զաւրավարին, ...թագաւորեաց.. որդեսէր սօլթան Սէլիմ ի կաթողիկոսութեան մերոյ Տէր Բարսեղին, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս. եւ Տէր Միքայէլէն, եւ ի մերոյ սուրբ ուխտի առաջնորդութեան, Խնդրակատար Ս. Աստուածածնին Ներսէս բանիբուն եւ երջանիկ րաբունապետին, որ զգանձարանս ետ գրել յշտկ... Շնորհաւորին, եղբօրն Մուրատշէն եւ քուերն Թնքուշին... դարձեալ յիշեցէք

զԲարունապետն մեր զՏէր Ներսէս Բաղիշեցին, եւ զհոգեւոր զաւակն, որ են աշակերտք իւր զՆերսէս բանիբուն եւ քաջ րաբունապետ Ամկեցին, զՀէրապետ վարդապետ զԴաւիթ վարդապետ, զՅովհաննէս վարդապետ եւ զԳրիգոր աշակերտն, եւս առաւել զմիաբանքն իւր զՂազար աբեղայն, որ յայսմ ամի հէրպետ էր; եւ զՅակոբ կրօնաւորն եւ զԱբրահամն եւ զայլսն ամենայն զօտար եւ զբնակսն, զտնտես եւ զսարկաւագունս, զմշակս, եւ զայնոսիկ որ երախտիք եւ աշխատանք ունին ի վերայ Ս. Վանուցս:
Դարձեալ յիշեցէք... զտէր Ներսէս, որ ետ գրել զայս զանձարանս եւ զաւետարանն, եւ զերկու ձեռք ժամու հանդերձն, զպղնձագործ Մախսուտի արտերն, զմահտեսի Մուրատի արտն, եւ արծաթի սկիհ մի ետ շինել եւ եդ ի դուռն խնդրակատար Ս. Աստուածածնին ոխֆ եւ յիշատակ...:
Դարձեալ յիշեցէք զգրիչս... եւ զԱնղալատն (մայր է), եւ զկողակիցն իմ որ աշխատեցաւ ի կոկել թղթին, եւ զեղբ, զբուսիկ, զքուերքըն զԳուլստան, զՍալչուկն, զՆունուֆարն եւ զէթարփաչէն...»:

— Լուսանցներէն քաղուած քանի մը կտորները: —

«Նոր կիրակէին սաս (զանձս), ու կարմիր հաւկիթ կեր, ու գառին միս, ու գինին մի խմայեր, եթէ ի ձեռդ ընկնի»: «Գանձ Ղազարու սատ գրեցայ, յառաջ մատիր Գօզալ բաբայ, թէ ձայն ունիս ար՛եկ սաս, որ ժողովուրդն զուարճանայ, ապա թէ ձայնդ չէ սըրա, ի զատ կացիր դու եւ հազա»: — «Վեց կիրակին է, Գօզալ բաբա... ուսթա ի մըսրի»: «Գանձս գրեցաւ Լուսաւորչին, Հայաստանեայց հայրապետին, էր Նա զաւակ

պիղծ Անակին, զոր չընացաւ ի սուրբ շիրմին, շուները ծնաւ զգառն ի շեղջին, զլուսատու այր հրաշալին, որ ի շնորհացն Թադէին ծնաւ Գրիգոր սքանչելին»: «Յօհաննու եւ Եպիփանու, անոյշ ասա որպէս մեղու, չըլնի զըռաս նըման իշոյ, կատակ լինիս ծաղր ամենու»: «Աստուած լուսաւորէ զԹնքուշ մամու հոգին, որ զմեզ հազար բարով կու պատուէ»: «Երրորդ կիրակէին ասա պահոց, 'ւ ի սրտէդ հան զմեղաց բոցն, զքո ընկերոջ սիրտն մ'էներ խոց. եւ 'ոչ լսես զէջ պառաւուց. զինահա՛ր ի զա[illegible] կացիր անկողնոց, զի արժանանաս անմահ ջրոց»: «Եղբայր ընտիր դու զգանձդ ասա, որ չլինի տեղըն մնայ, ես գրելով չի ձանձրացայ, ասելով փորդ յի՛նչ կու ցաւայ, աչքդ ի յերդիքըն կու մնայ, կ'աղաղակես Թէ կը լուսնայ. կ'ասես ասա, զբաներդ ասա, Թէ չէ զարկի, Աստուած վըկայ»: «Թէ ձայն ունիս անոյշ եւ լաւ, բաներդ քեզ է քան ըզ փլաւ, ապա Թէ չես ի բանդ իրաւ, վեր կալ ասա Թէ լուսացաւ»: — Գօզալ բաբայ, Գօզալ քաչիշ. . . :»

## 1 Յայսմաւուրք

«Աւրհնութիւն... Աստուծոյ, որ ետ կարողութիւն... մատնադեղեւ գրչիս Վարդանի հասանել յաւարտ այսմ Աստուածաշունչ կտակիս, յամի Ռ·ԻԴ· Թըվականիս Հայոց, ի խնդրոյ Ս· րաբունապետին Ներսիսի...: Պայծառ ջահքն եւ անաղօտ լապտերքն եկեղեցւոյ տէր Գրիգորիս վկայասէրն եւ տէր Ներսէս շատաշնորհն եւ Կիրակոս անուն ոմն բանիբուն վարդապետին հոգ տարան եւ ամենայն ազգաց ժողովեցին զպատմութիւն նահատակութեան սրբոցն... եւ

ստուգիւ որոնեալ քննեցին թէ յորո՞ւմ ժամանակի եւ յորո՞ւմ ամսեանն եւ կամ ի քանիս ամսոյն է դիպեալ Նահատակութիւն նոցին, նաեւ զտէրունական տաւնից պատահմունսն ի քանի՞ս ամսոյն, եւ զԱստուածածնին եւ զխաչին եւ զեկեղեցւոյ, զամենայն ի մի տումի հաւաքեցին եւ գրեցին Հայի եւ Հռովմայեցի ամսով, եւ անուանեցին զաս Յայսմաւուրք: Իսկ ի վերջին ժամանակիս, որ էր Թուականն Հայոց Պ. եւ Ծ. վարդապետ ոմն չնորհալի Գրիգոր անուն ի մայրաքաղաքէն Խլաթայ՝ Ծերենց կոչեցեալ, յոյժ կորովամիտ, հանճարեղ եւ բանիբուն, եւ անհամեմատ քարտուղար, որ է գրագիր, ոչինչ նուազ դոլով սա յառաջին Ս. վարդապետացս զորս յիշեցաք յանուանէ, եւ այնչափ փոյթ էր եւ թէզ ի գրելն, մինչ զի անթիւ են եւ անհամար գրեալքն ի նմանէ, եւ զամենայն զոր ինչ եւ առնոյր ի գին գրելոյն՝ աղքատաց եւ կարօտելոց բաշխէր. սա գրեալ եւ ընթերցեալ բազում անգամ զառաջին կարգեալ Սրբոց գիրքս, եւ զի էր կարճառօտ բանք նոցա, եւ ինքն ըստ իւրում իմաստութեան յաւել ի գիրքս այս բազում չահաւէտ եւ աւգտակար բանս ի Հարանց վարուց եւ ի պատմագրոց, եւ տէրունական տօնից եւ զգլխաւորաց սրբոց ճառս եւ գովասանութիւնս, է որ յինքենէ եւ է որ ի Տօնապատճառէ ի յառաջին Ս. վարդապետացն ասացեալ, եդ ի գիրքս եւ համբաստացոյց զսա: Այլ եւ գանձս բազումս ասաց յինքենէ՝ ի վերայ անուան իւրոյ, եւ տաղ եւ մեղեդիս, եւ եթող գրովք յիշատակ իւր ի պայծառութիւն Ս. եկեղեցւոյ եւ ի զուարճութիւն մանկանց Սիոնի: Եւ զկնի սահմանեալ կենաց ժամանակի իւրոյ

մարտիրոսական մահուամբ եւ յաշխարհէս նահատակեալ սրով յանիծեալ զօրացն Բռօչկանից, ի վանքն Ցիպնայ ի Պ. եւ յ ՀԴ. թվականի Հայոցս. եւ անդ է թաղեալ Ս. Նշխարք ոսկերաց նորա ի վանքն Ցիպնայ (Սիփանայ վանք): Արդ այսպիսում լուսազարդ տառիս ցանկացող եղեւ Տէր Ներսէս մեծ րաբունապետն... բայց վա՜յ է ինձ... որ ոչ ետես կատարեալ զգիրքս, այլ փոխեցաւ առ Աստուած...: Եւ ես յաւարտ հանի զսա ի յԱստուածապահ մայրաքաղաքս Բաղէշ, զի սկիզբն գրոցս ի գեօղն Հօրմըզ եդի ընդ հովանեաւ Ս. Քրիստափոր զօրավարին, եւ զաւարտ գրին ի գեօղն իմ ի Մարգորգ, ընդ հովանեաւ Ս. Սարգիս զօրավարին, զոր ի ներքս Բայիկցուն (ցեղ քրդաց) ելայ եւ եկի ի քաղաքս Բաղէշ. եւ աստ աւարտեցի զգիրքս ծաղկելով եւ կազմելով, ընդ հովանեաւ Ս. Սարգիս զօրավարին եւ Ս. Աստուածածնին եւ Ս. Ստեփանոսին եւ Գէորգեայ զօրավարին, ի հայրապետութեան տէր Գրիգոր կաթողիկոսին եւ մերոյ Առաջնորդի խնդրակատարի Ներսէս րաբունապետի Ամկեցւոյն... ի փաթշահութեան աշխարհիս ինքնակալ խոնդքարին Սուլթան Մուրատին, որ յայսմ ամի... եղեւ նոր փաթշահ: Ի թուականին Հայկազնեան տոմարիս յինն հարիւր եւ ի ԿԶ. ամին, յիշատակ...»:

## 1 Մեկնութիւն Սաղմոսաց.

«Փառք...: Գրեցաւ մեկնութիւնս հոգէնուագ սաղմոսի Դաւթի Աստուածահօրն, ի մեծ թուականին Հայկազնեան տոմարի Ռ.Ծ.Ի. ի մայրաքաղաքս Բաղէշ, ընդ հովանեաւ Ս. Սարգսի զօրավարբն եւ այլ սուրբ եւ Աստուածաբնակ տաճարացն, որք

կան հաստատ ի միասին։ Ի հայրապետութեան Ս. Էջմիածնի Տ. Յակոբայ։ Եւ զատացող լուսազարդ տառիս եւ զփափագող Աստուածաբան մատենիս զԴաւիթ երիցս երանեալ հռետորն եւ զանյաղթ փիլիսոփայն... որ զամենայն Աստուածաշունչ գիրսն առ ինքն հաւաքեաց, որպէս մեղուն զնիւթս ծաղկանց, զորս ինքն գրեաց ձեռամբն իւրով եւ զորս ետ գրել այլոց, եւ զպէտս գրչացն լիապէս հոգայր, եւ միշտ հանապազ կայր յընթերցումն Աստուածաբան մատենից, եւ անձանձիր ի խրատել եւ յուսուցանել... հանգուցէ (տէր) զհոգի... զհարազատ եղբօրորդւոյն իւրոյ (Դաւթի) զիսահակ դպրին, որ մինչդեռ ի վարժս ուսման կայր, յանկարծ եհաս մրրիկ դառնութեան սուրն Աստուածառաք, եւ եբարձ զնա տարաժամ մահուամբ յաշխարհէս, որպէս զծաղիկս նունենեաց հարեալ ի կարկտէ, եւ եթող դառն կսկիծ վարդապետին, զի սնուցեալ էր զնա իբրեւ զվարդ ի մէջ կոկոնի... Դարձեալ զայս եւս ծանիք, սիրելի հայրք եւ եղբարք մեր ըստ հոգւոյ, որ Բ. գիրք է ի միում տփի, առաջին գիրքն որ է Մեկնութիւն Սաղմոսին Դաւթի՝ այն Թումայի է գրեալ, եւ միւսն որ է Մեկնութիւն Կաթողիկէիցն՝ այն ի քաղաքն Վան է գրեալ ձեռամբ Գրիգորի երիցու»....։

— Կրկին էր յիշատակարանս նոյնիմաստ այլ տարբեր ոճով։

Սաղմոսի մեկնութիւն ունէր սոյն խորագիր. «Աշխարհալոյս եւ տիեզերալոյս վարդապետին Վարդա(նայ) պարզ եւ լուսաւոր խորին խորհրդով եւ դժուարագիւտ լուծմամբ եւ բանիւ, մեկնութիւն արարեալ սաղմոսիս, շարժեալ ի Հոգւոյն սրբոյ եւ յարհիականէն

Հաղբատոյ եւ յաշ (ակերտաց) իւրոց, յոյժ աշխատեալ մտաւոր բանիւք զոր ցուցանէ առաջիկայ ամբարեալս ի վարժումն մանկանց Սիոնի, նաեւ զորբոցն ամենայն ի մի հաւաքեալ ձեռնհաս սիրողացն...» — Իսկ ի սկիզբն Մեկնութեան կաթողիկեայց թղթոցն ի ստորին էջն գրեալ էր. «Տեառն Ներսիսի Հայոց կաթողիկոսի, արարեալ· մեկնութիւն Առաքելական բանին»: — Ի վերջն Մեկնութեան կաթողիկեայց գրեալ· «Առաջին գլուխ ընդդէմ Նոյա՝ որք ասեն ոչ գոլ Աստուած: Երկրորդ ճառ՝ թէ մի է Աստուած: (Երրորդը չկար): Չորրորդ գլուխ՝ ընդդէմ կռապաշտիցն: Գլուխ Ե. ընդդէմ Մանեայ»:

## Ս. ԱՄՐՏՈԼՈՒ ՎԱՆԻՑ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ (*)

1 Աստուածաշունչ. Պատկերազարդ, ոսկէնկար, չքնաղարուեստ:

«Փառք...: Ս. կտակարանիս... Աստուածաշունչ տառս, եղեւ լրումն սուրբ գիրն եւ ծաղիկն ի մեծ թուականին Հայոց ի Ռ. եւ ի ԽԳ. ամին, ձեռամբ Մարտիրոս քահանայի եւ եղբարբք եւ որդւով իմով Սարգիս եւ Գրիգորիս քահանայիւքն, ի քաղաքիս Խիզան, ընդ հովանեաւ հրաշազարդ սուրբ տաճարացս սուրբ Յարութեան եւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Յովհաննիսին եւ սուրբ Ստեփանոսին եւ սուրբ Գրիգոր Լուսաւորչին, Ս. Սարգսի զօրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսին, ի հայրապետութեան գերահրաշ եւ սուրբ Աթոռոյն Էջմիածնայ

---

(*) Համբաւաւոր է սոյն Մատենադարան. ցոյց չեն տար այլոց. դուրս եղածները միայն տեսայ ես:

տեառն Դաւթի, եւ ի կաթողիկոսութեանն Աղթամարայ Տէր Գրիգորիսի։ ... ի դառն եւ ի նեղ ժամանակիս, յորում նեղիմք ի հարկապահանջութենէ ... եւ յայլ ազգի ազգի պատերազմաց, միթէ եւ խաղաղարարն Աստուած աշխարհիս խաղաղութիւն պարգեւեսցէ։

Արդ այսմ լուսազարդ գրոյս ցանկացող եղեւ սրբասէր եւ հեզահոգի բանիբուն եւ Աստուածաբան երիցս երանեալ քաջ րաբունապետն Տէր Բարսեղ եւ ետ գրել զսուրբ գիրքս յիշատակ ... ։ Կրկին աղաչեմ յիշել զՏէր Բարսեղ եւ ... զհոգեւոր որդիքն զՅօհաննէս եւ զՀայրապետ աշակերտքն, այլ եւ զհոգեւոր ծնօղն իւր զարի եւ զերջանիկ զԲրգաթենց Յովհաննէս րաբունապետն ... ։»
—Նախ քան զյիշատակարանս կար ութոտնեայ ոտանաւոր 67 տունէ քառատող. ի վերայ իմաստից Ս. Գրոց. եւ վասն յիշատակարանի. ահա քանի մը տող.

1. «... Մարտիրոս հողըս Հիզանցի,
Յօժարութեամբ ի յանձն առի,
Սիրով սրտի կատարեցի ...
զՀուրն ի սրտէ իմ անցուցի։
2. «Եւ յետ գրոյն որ ծաղկեցի։
Բազում ջանիւ ես հոգացի.
Մինչ զամենայն ժողովեցի,
Ի մի տեղի ամբարեցի։
3. Երանգ երանգ ծաղկով լըցի,
Եւ զանազան զարդարեցի.
Ոսկի յաճախ ոչ խնայեցի,
Այլ բաւական լիացուցի։
4. Որպէս լուսին որ լըրասցի,
Եւ արեգակն մէջաւրէի.
Ծառն որ ծաղկի պտղով ի լի,
Գարնանային յեղանակի։

5. Այսպէս եւ սա է Նազելի,
Աստուածաչունչս հիանալի.
Ի տեսանել ըզսա յերկրի,
Սեղծողն երկնից փառաւորի։

— Նոր կտակարանի դասակարգութիւն յայսմ ձեռագրի է այսպէս։ Յետ Յովհաննու Աւետարանի՝ Յայտնութիւն Յովհաննու։ Ապա՝ Գործ Առաքելոց։ Ապա՝ կաթողիկեայց։ Ապա՝ Թուղթք Պաւղոսի, հանդերձ ընդարձակ կանխաբանութեամբ. ցանկօք համառօտութեամբ, տնովք եւ համարովք, վկայութեամբք. մանրախոյզ։ — Ի վախճան Թղթոցն Պօղոսի ի կարգին՝ «Գրեցի եւ կարդեցի ըստ կարի Սոփքերոն, զգիրսս Պօղոսի առաքելոյ, յաւրինեալ եւ դիւրահաս ընթերցուածովք եղբարց մերոց, յորոց ամենեցունց չմեղադրութիւն յանդգնութեանս խնում հայցեմ, զի աղաւթիւք որ վասն մեր լինիցին, զզիջանելդ Ձեր ընդ իս ընդունիցիմ։ Արդ օրինակեցան գիրքս այս ըստ կեսարացւոց օրինակաց՝ որ կան յարկեղս գրոց սրբոյն Պամփիլեայ, խրովք ձեռաւք գրեալ»։

Յետ այսորիկ գրուած կայ՝ «Թելադրութիւն, «Գլխաւոր եմ եւ Աստուածեղէն կրաւնիցն վարդապետ, եթէ ումեք զիս յանուէթ տայցես՝ ազնիւ օրինակ փոխանակ ընդ իմ առնուցուս. զի հատուցանողքն չարք են։»

— Պատասխանի, «Գանձ ունիմ զքեզ հոգեւոր բարութեանց եւ ամենայն մարդկան ցանկալի յօրինուածովք եւ պէսպէս զարդուք զարդարեալ։ Այս սակս ճշմարտութեամբ, ոչ տաց զքեզ վայրապար յանուէթ, եւ ոչ դարձեալ նախանձեցայց ընդ աւգուտ ուրուք, այլ յորժամ տաց զքեզ յանուէթ սիրելեաց իմոց՝ ազնիւ աւրինակ քո փոխանակ առից»։

— Աստ գրուած է՝ Նաւարկութիւն Պաւղոսի Առաքելոյն ի Հռովմ. «...Հարիւրապետն՝ որ տանէր զՊաւղոսն ի Հռովմ՝ Յուլիոս անուն էր, ի գնդէն որ կոչի Սեբաստեան, եւ ելին ընդ նմա Ղուկաս եւ Արիստարքոս, եւ նաւն էր Ադրամիտտացի. մտին ի նաւն ի Կեսարէ մինչեւ ցԶմիւռն Լիկէացւոց, եւ անտի առին Աղեքսանդրացի նաւ մինչեւ ի Մելիտէս կղզի, եւ դարձեալ այլ Աղեքսանդրացի նաւ գտին, որ ունէր զԴիոսկուրացւոց նշանն, յոր մտին եւ ելին ի Հռովմ»։

Ասկէ զկնի են՝ Թուղթք Կորնթացւոց առ Ս. Առաքեալն Պաւղոս, եւ Ս. Պօղոսի պատասխանի թղթոյն։

## ԿԱՐՄՐԱԿ ԵԿԵՂԵՑԻ

### 1 Աւետարան.

«Փառք...։ Որ ետուր կարողութիւն Վարդանի... բանի խնդրողի, հասանիլ յաւարտ ... չարագրեցաւ ի խնդրոյ... Սիոն միայնակեցի... ոչ ունելով մանկունս ըստ մարմնոյ՝ ստացաւ զսա որդի ըստ հոգւոյ. զաւակ իՍիոն. եւ յիշատակ բարի յԵրուսաղէմ... Վարդան աբեղայս... յանգ հանեալ կատարեցի ըստ իմում կարի զխնդիր սորա. ի Թուականին Հայոց ի Չ. Ժ. ամի, յամսեանս մեհեկի...։ Սկիզբն սորա ի վանս որ կոչի Կողուց, ընդ հովանեաւ Ս. Լուսաւորչի եւ Կարմիր ակն Ս. Նշանի... ի ժամանակս որ զԱջն ի Սսոյ բերին ի յէջմիածինն. ի հայրապետութեան Տ. Գրիգորի... ի թագաւորութեան Ջհանշի, որ ազգս Քրիստոնէից ի հալածական կայր....։» — Վերջին յիշատակարան մի եւս կար, «Ռ. Ղ. Թուին, եդեալ ի դուռն Ս. Կիրակոսին»։

1 Աւետարան. «Զմրուտ» անուանեալ, ոսկեզօծ, չքնաղերանգ պատկերօք եւ մաքուր տառիւք ։

Սոյն Աւետարանի գիրն եւ պատկերքն համանման են Արմնօղլու Աստուածաշունչին. ի սկիզբն յիշատակարանին կայ ոտանաւոր «ի Մարտիրոսէ». որոյ եղբայրն է Տէր Սարգիս նօտար Աւետարանիս ։

...«Շնորհիւ տեառն սկսայ ... եւ կատարեցի ... զլուսազարդ Աւետարանս ի լաւ եւ յընտիր աւրինակէ, ի մեծ Թուականին Հայոց ի Ռ. եւ ԾԳ. ամին, ի քաղաքիս որ կոչի Հիզան, ընդ հովանեաւ Ս. Տաճարացս, Ս. Յարութեան, Ս. Աստուածածնին, Ս. Յովհաննէս Մկրտչին, Ս. Ստեփանոսին եւ Ս. Գրիգորին, Ս. Սարգսի զաւրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսին ։ Ի Հայրապետութեան Հայկազեան սեռի Էջմիածնին Տ. Մելքիսեդի, եւ մերոյս կաթողիկոսութեան Աղթամարայ Տ. Գրիգորիոյ ։ Ի թագաւորութեան սուլթան Մահմուտ Խոնդքարին, որ ի յայսմ ամի մեռաւ, եւ արեւելեան թագաւորին Էդիլ փաթշահ Շահաբասին ... յիշեցէք ... զանարժան սուտանուն Սարգիս Հիզանցիս, եւ զպատուական հայրն իմ զՏէր Սարգիս վարպետն եւ զԽանումն, եւ զհօգեւոր հայրն իմ եւ զմարմնաւոր եղբայրն իմ զՏէր Մարտիրոս վարդապետն, որ բազում աշխատանք ունի ի վերայ մեղաւորիս թէ ի սաղմոս եւ կամ շարական, կամ ձայնաւորք պաշտեցնել, եւ կամ գիր եւ ծաղիկ ուսուցանել ։ ... Նաեւ զմեծ պապքն իմ զԿարապետ քահանայն եւ զՎարդան քահանայն, եւ զմեծ մարքն իմ զԲնարն եւ զՄանիշակն, եւ զաներն իմ զՄահտասի Էդլչէն ։ ... Դարձեալ յիշե. զատացող Ս. Աւետա-

րանիս զքարեմիտ եւ զԱստուածասէր տանուտէրն զՄ․ Խօջայ Աստմն եւ զծնողքն իւր զՄխիթարն եւ զԽանաղէն, եւ զեղբարքն զխօջայ Աստուածատուրն եւ զԽօջայ Ախիջանն, եւ զկողակիցն զԽանաղէն, եւ զորդիքըն զԱմիրաղին զՋիրաքն, զՇիրաքն եւ զՄիրաքն եւ զԱլէքսիանոսն, եւ դստերաց զՂարիպխաթուն եւ զՄարգարիտն, եւ զքուերքն զՍօլթանաղէն, զՋանաղէն եւ զԳուլաղէն… եւն։ Կացցէ սա անջինջ յիշատակ… ի դուռն Ս․ տաճարացս Պետրոսի Ս․ Առաքելոյն»։

—Երկրորդ յիշատակարանէն։ «Յիշեցէք… զվերջին ստացող… Աւետարանիս, եւ ողորմի ասացէք մեծահաւատ եւ կուսակրօն մրղտեսի Զմրութին եւ… եւրին անջինջ յիշելիք… ի դուռն Կարմրակայ… Ս․ Նշանին եւ Ս․ Աստուածածնին եւ Ս․ Կիրակոսին եւ Ս․ Ցուղիտային…։ Ես Մ․ Զմրուխտ որ գըրեցի զՍուրբ զԱւետարանս զայս վկայութեամբ Աստուծոյ ամենակալի, եդի յիշատակ հոգւոյ իմոյ ի Ս․ Կարմրակ եկեղեցին… յիշեցէք… զՏէր Իգնատիոս քահանայս զվաճառող Ս․ Աւետարանիս անգին եւ անհամեմատ․ ճ․ ղրուշ․ որ է ձրի տուրք։ Ռ․ Ճ․ Կi․ Թվին։»

## ԿԱՐՄՐԱԿ ԵԿԵՂԵՑԻ

### 1 Աւետարան․

Ցշտկրնը․ Թաւիած։ Ի վերջն Մարկոսի գրեալ։

« Տարտամս յիմանտս սուրբ գրոց, որովք սնա
յարբունս տիոց․
« Ահա կարաւտ ոցին համոց, գտայ գերեալ
յաւտար հոգւոց։

« Ուստի հարեալ սրտիս ի խոց, եւ տոչորմանըս որ կայ յիս բոց.
« Զայս սրսկեմ կաթս անձրեւոց, ըղձեռահիւսըս սուրբ գրոց։
« Միթէ գնացիւք այսու գետոց, իմ զովացի ծարաւ հոգւոց,
« Եւ սփոփեսցի յիւրոց ցաւոց, սրբեալ տաճար տեառն աւթանոց։
« Այսու յուսով յերկս վաստակոց, կամ ի հոգունց մէջ ի հոգոց.
« Զի արծարծեալ ճրագիս իմ բոց, մի խըրթնասցի յաւտար հողմոց...»։

## ՇՈՂԻԿԵԱՆՑ ՏՈՒՆ

### 1 Աւետարան.

«Փառք...։ Շնորհիւ տեառն սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զԱ. Աւետարանս ի մեծ թուականին Հայոց Ռ. եւ ի ԻԷ ամին. ի քաղաքիս որ կոչի Բաղէշ եւ ի վանքս Գոռայ, ի դուռն Ս. Յօհաննիսին, եւ հէրպետին Տէր Թումա մղտեսի կրօնաւորի։ Ի Հայրապետութեան Տեառն Ս. Էջմիածնին Տէր Թադէոսին։ Ի թագաւորութեան Սուլթան Մուրատ Խոնդքարին, որ յայսմ ամի... Սուլթան Մուրատն, զաւրագլուխն իւր զՀալափաշէն դճ.ռ. ոգւով առաքեաց ի յԱռզռում զի շինեսցէ զՂարս։ Եւ առեալ զաւրսն եւ եմուտ ի Վրաց տունն, դիմեաց ի Տփխիս քաղաքն, եւ ... միաբանեալ ընդ Վրացւոցն դիմեաց յարեւելս, անցեալ զԿուր գետն եւ էառ զՇրուան եւ զՇամախի... եւ ինքն դարձաւ եւ եկն եւ բնակեցաւ ի յԱռզրում...։ Եւ կրկին զաւրաժողով արարեալ ի յԱռզրում անթիւ անհամար, եւ Խոսրով փաշէն ի Վան Քուրքուտանաւքն

(Քուրդաստանաւքն) միահամուռ, եւ Շարաւխանն՝ Շարաւ բէկի Թոռն ապստամբեալ ի Շահէն փախուցեալ եկն ի Վան առ Խօսրով փաշէն, եւ նա բանիւ խոնդքարին գերագոյն փառաւք մեծարեաց եւ զպապուտեղն զԲաղէշն իւր Թումանովն պարգեւեաց նմա եւ կացոյց զաւրագլուխ զաւրաց իւրոց։ ... Բայց յայսմ հետէ զլինելոցն Աստուած գիտէ...»։

Այլ «Յիշատակ Տէր Մելքիսեթ կրօնաւորին... ի դուռն Ս. Սարգսի եւ Ս. Գէորգայ զօրավարացն... գծող Եղիա վարդապետ... ծաղկեալ եւ կազմեալ ի Բաղէշ ի վանքս Գոմոց ի դուռն ամենօրհնեալ Ս. Աստուածածնին եւ Ս. Գէորգեայ, յառաջնորդութեան տեղւոյս Տ. Սարգիս արհի եպիսկոպոսի։ ... Աստուած ողորմի ասացէք Միրաքի որդւոյն Կարապետին որ բեմի ծածկոց մի երետ Ս. Գէորգ զօրավարի դրան... յիշեցէք զՎանգայ Մուքայելէնց Մուրատն որ արտ մի ովլխ ետ Ս. Կարապետայ... զԲաւզու Թումէն որ արտ մի երետ Ս. Կարապետի... Աստուած ողորմի Բաւզայու Մխիթարին, որ մականուն դդում կոչի, որ զարտ ետուր Ս. Կարապետայ...։ Աստուած ողորմի Վանգայ Դիլաքին... որ զՄամայի կտորն վերեւ Ջաղցին Ներքեւ Գ. ծառ էին ոհվ արար ի դուռ Ս. Գէորգայ, յիշեցէք զԴիլանն, որ ետուր զԿէծկըդար գետով դէն արեգդէմի տակ, Ս. Գէորգայ... եւ Ս. Աւետարանիս ոխֆ... յիշեցէք զԱւետիս եպիսկոպոսն, որ սաքիբ եղաւ... Աստուած ողորմի Վանգայ Տէր Սարգսին, որ առաւ երկու արտ ի Մըրթայի Բէզիկանց մէկ Տէր Սախակից, մէկ Վարդոյից եւ արար ոխֆ Ս. Գէորգայ... Աստուած ողորմի Յովանիսի հաւրն Մարտի-

րոսին... որ զկարմրնճի արտ ճոթով ոհֆ արար Ս. Գէորգայ զաւրավարին...։

## ԱՆԴ ԳԻՒՂ

### 1 Յայսմաւուրք.

«...Նկարեցաւ սաձեռամբ Կարապետի, ընդ Հովաննեաւ Ս. Գէորգի որ ի Բաղէշ քաղաքի. անմեղադիր լերուք ծաղկի... եւ ասացէք տէր ողորմի... որ յայս տարիս սեւ ու սուգի, եւ յամսեանն Մեհեկի, յանկարծ անկայ ես ի սուգի, ոչ գիտէի զինչ գործէի... ունիմ (յանձինս) բազում նեղիչ, եւ ի սրտիս կրակ այրիչ... որ մոլորեալ եմ ի ցաւիս... դատարկացեալ յիմ արուեստից... կու դառնանայ սիրտս ի միորին, եւ կ՚արտասուէ աչս լալագին... գիրք եւ բանք Աստուածային, յառաջագոյն ինձ ծանուցին, թէ մի՛ գնար ընդ թշնամին, հայր քո եւ մայրն բարի կամին, եւ իմ չլուեալ զպատուէրս նոցին, անկայ ի գուբ խիստ խորագին... ով եղբայր իմ ես քեզ ասեմ, դու մի լսեր չար ընկերին, զի հանց կսկիծ որ ես տեսայ, դու չի տեսնես չար եղբօրէն... Թէ քահանայ եւ թէ դպիր, եւ թէ հայր (սուրբ) յանապատին... յորժամ առնես զպատարագ, յիշեա զհոգի Կարապետին. Թէ հարցանես դու զայս տարին, էր ի թուին Ռ․Ճ․Խ․Ե․ին։

—Առ տէր Վարդան քահանայ, գրող տառիս... «Քո գալդ լինի վեր երեսիս, քո գարշապարդ ի յիմ սրտիս, քո պատարագ ի յիմ հոգիս, եւ քո աղօթք ի յիմ մարմինս, մխիթարիչ ինձ դու լինիս, որ դու գիտես զիմ ցաւ սրտիս, դու քահանայ, եւ ես»... (յիշեցէք) զԲալուեցի Վարդան քահանայն

եւ զհայրն զսարկաւագ Խաչատուրն, որ մարտիրոսական մահուամբ կատարեցաւ...»

### ՎԱՆԻԿ ԳԵՂԻ ԵԿԵՂԵՑԻՆ

#### 1 Աւետարան.

« Յիշատակ Տէր Մարտիրոս ճգնաւորին եւ իւր ծնողին... գրեալ ձեռամբ... Կարապետին, ի Թուականին Ռ.Լ. ի յերկիրս Խլաթայ, ի գիւղն Սողած, ընդ հովանեաւ Ս. Թադէոսի աւծեալ խաչին, (որ) Խոզուձորոյ խաչ անուանի, եւ Ս. Ստեփանոս Նախավկային, եւ Ս. Ատովմ զաւրավարին, ի յիշատակ Տ. Մարտիրոս մահատեսուն... (տէր Աստուած) դատաւորէ զհոգի սոցա յայն փառքն՝ որ ոչ անցանէ, ի յայն կեանքն՝ որ անկողոպտելի է, յայն կերակուրն՝ որ անքաղցելի է, ի յայն կեանքն՝ որ անծերանալի է, ամէն»։

#### 1 Աւետարան եւս.

«...Որոյ ցանկացող եղեալ մ. Աւետիսն եւ կողակիցն Մուղալ խաթունն, որ զատեալ եւ մեկնեալ էր ի մանկութենէ իւրմէ յամենայն կրից եւ ի հոգոց աշխարհիս, եւ բարձեալ զխաչ իւր հանապազ եւ ընթանայր զհետ կոչողին Քրիստոսի... գրեցաւ սա ի Թուականիս Հայոց Ռ.Ճ.Լ. ձեռամբ Կարապետ գրչիս... ի սոյն դառն ժամանակիս... բազում ջանիւ եւ աշխատութեամբ, յընտիր աւրինակէ.,.»։

# Վ Ա Ն

## ՍՈՒՐԲ ՎԱՐԴԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ

1 *Աւետարան. Մեծադիր, երկաթագիր, մագաղաթ։*

*«... Անէնի աղախին Քրիստոսի դուստր Ջաջռոյ Խաղբակեանց (Իսաղբակեա՞նց) ամուսին Կուկին որդւոյ Աբասայ Սեւատեանց իշխանազեանց միաբանեցաւ Խորանչատոյ սուրբ Աստուածածինս յիշելով զբանն Եսայա մարգարէի Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն, եւ ետու զծախս Ս. Աւետարանիս ստանալ զսա ինձ զաւակ հոգեւոր յեկեղեցի յիմանալիս Եմ. (Երուսաղէմ), ի ժամանակս թագաւորութեան դստեր Թամարին թոռին Գէորգեայ, եւ ի տէրութեան Այրարատեան նահանգին եւ Խաչենոյ մինչ ի կողմանս Ջարեքին Աթաբակ Իւանէի, յայսմ ժամանակի ինքնակալ տանս Ռսնա Վարհամ եւ Ասադն եղբայր իւր։ Ի հայրապետութեան տեառն Յովաննիսի, ի Ո.Հ.Գ. թվականիս, եւ շինող եւ Առաջնորդ վանիցս Վանական վարդապետն հաստատեաց ինձ աւուր մահուան իմոյ Ա. քառասունք. Ը. աւր անբիծք, եւ յամէն տարի Ա. աւր ժամ յիշատակ ինձ. Ցինանցն, յաւուր տաւնի Աւետեաց Աստուածածնին։ Արդ եթէ ոք զայս Աւետարանս յայս եկեղեցւոյս հանէ ի մերոց կամ յաւտարաց, նզովս առցէ. եւ իմ խղճոյս տէր է. կատարիչք հրամանի դրոյս աւրհնեալ եղիցին յԱստուծոյ։ Ամէն»։*

—*Իմիւս երեսն դրեալ*—«*Արդ զայս պատուական Ակնս Շափիւղա գնեցի եւ ի դերոյթենէ ազատեցի ես Մելիք Ցովասափս, որ տանէ*

գիս հանդերձեալ կեանս յաւիտենից, եւ յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողացն հաւրն Վարդէլին եւ մաւրն Ազիզին. եւ կողակցին Մարգարիտ խաթունին, եւ դեռաբուս վարդափթթիթ ծաղկեալ արմատենի Մէլիքզատին, եւ դստերացն Աղայուն եւ Աղայ սուլթանին, եւ զոքանչին Սուլթանաղին, եւ կողակցուն իմոյ Բէկխիսխանին որ հանգուցեալ է առ Քրիստոս. յին բերանով Աստուած ողորմի ասացէք պապոյն իմոյ Կարապետին եւ կողակցուն Գուլիխսային, հաւրեղբաւրն Մուրատին եւ կողակցուն Դունայ խաթունին, եւ Գրիգորին եւ կողակցուն Խանումին, Պարսամին Փաշաջանին, Մակարոսին եւ կողակցուն Էթարփաշին եւ եղբաւրն Սուլթան Խաջին եւ կողակցուն Շահում խաթունին, եւ որդւոյն Խաւջայ Պարսամին եւ կողակցուն Գաւզալաղին, եւ որդւոյն Ասլանին եւ դըստերն Խանումաղին, եւ միւս եղբաւրն Աղաջանին եւ կողակցուն Գուլբահարին եւ որդւոյն Ախիջանին եւ կողակցուն Մարգարտին, Արիջանին եւ Նուրիջանին. եւ միւս եղբաւր Տէր Մկրտիչ կրաւնաւորին. հաւր եղբաւրն Յովհաննէսին եւ կողակցուն Ջանաղին եւ դստերն Սառին, Թաթարին, եւ որդւոյն Մուրատին. Աղայ Մէլիքին, Կարապետին եւ կողփկցուն Թուրվանդին: Այլ եւ Աստուած ողորմի ասացէք Մէլիք Յովասափին, որ Ս. Աւետարանս գնեց եւ յիշատակ եդեր ի դուռըն Ս. Վարդանայ զաւրավարին պահապան եւ զաւրացուցիչ դեռաբոյս մանկանն Մէլիքզատին, եւ քաւիչ մեղաց Մելիք Յովասափին եւ կողակցուն Մարգարտին եւ զոքանչին Սուլթանաղին, կենդանեաց եւ ննջեցելոցն . . .»

— Ի միւս երեսն նոր գրով գրեալ —.

«Դարձեալ աղաչեմ զձեզ ով Աստուածասէր քահանայք եւ ժողովուրդք յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զհեզահոգի տանուտէրն զՊարոն Մէլիքնազարն եւ զկողակիցն իւր զՅամասիայ խաթունն եւ զորդին իւր զվարդափթիթ զԱմիրզատէն եւ զԱղայսայ խաթունն եւ զմեծ պապն զՄէլիք Յովսափն եւ զծնողքն իւր զհայրն Վարզէլ եւ զմայրն Ագիզ... եւ զդեռաբոյս եւ զփթթեալ վարդենին եւ զծաղկեալ արմաւենին եւ վարդափթիթ բուրաստանն զԱմիրզատէնն...»։ —Ի չորրորդ երես. այլ գրով գրեալ—. «Յանուն տեառն ամենակալին Աստուծոյ ես։ Վն։ ու Գոհարն։ զմեր որդիս Յակոբ։ Ա։ ամաց. տուաք Խորանչատայ Աստուածածնիս յընծայումն ի ձեռն։ Տր։ Յով։ Տըւեցի։ Որ ոք արտաքսեալ ջանայ՝ ինքն ելցէ ի կենաց գրոյն»։ —Դարձեալ այլ գրով— «Կամաւ հզաւրին Աստուծոյ ես Դոյր միակեցըս վախուցեալ ի մեղաց իմոց, յոյս ունելով ի սուրբ ուխտս Խորանաչատս։ Ի հոլալ արդեանց իմոց միաբանեցայ ի ձեռն Տր. Յովհ. Տվեցի։ Աղաչեմ զձեզ որդիք եւ ըսպասաւորք սուրբ ուխտիս յիշեսջիք յաղաւթըս ձեր զմեղուցեալ Դոյրս, եւ ասասջիք Տէր Աստուած բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածնիս ողորմեա եւ թողութիւն շընորհեա ամենայն յանցանաց Դոյրին. եւ որք յիշէք յիշեալ եղիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ...» —Ի վերջն Ղուկասու Աւետարանի գրեալ— «... կազմեցաւ Աստուածաշունչ Աւետարանս, ի յաթոռս Սիւնեաց Սոթադէլի սուրբ Առաքելոյս, նորոգել ետ Ղասումն յիշատակ իւր եւ իւրայնոցն ամենայնի։ Ջեռամբ՝ անարժան Ալէքսիանոս աբեղայի։ Ջ. Կ. Ջ. թուականի, ի յաթոռակալութեան

Տէր Շմաւոն եւ Տէր Ստեփաննոսի Սիւնեաց նահանգի։ Արարիչն Աստուած զամենեցուն կեանք հանգիստ եւ արքայութիւն պարգեւէ աստ և ի հանդերձեալն ամենայնի։ Դարձեալ աղաչեմ զձեզ ով քահանայք, որ կարդայք զՍուրբ Աւետարանս, յիշեցէք զՂասումն, որ ետ կազմել զՍուրբ Աւետարանս, յիշատ իւր եւ ծնողաց իւրոց հաւրն իմոյ Խեմշին եւ որդւոց նորին, Պարաթին, եւ հաւրեղբաւրն Ալթունին եւ որդւոց նորին, եւ զհաւրաքոյրն իմ Ջանաղէն, Այնամէլիքն։ Դարձեալ յիշեցէք զՂասումն, եւ զհանգուցեալ որդւոյն Խոնդամիրն, որ ի Քրիստոս փոխեցաւ. եւ կենդանի որդւոյն Իւանի, Ախի, Սարգուլ, Փիր Սուլթան, Պաալին. յիշատակ մեզ եւ մեր ծնողաց....։»

Իվերջն Մարկոսի գրեալ կէս երկաթագրով.

«Ես Վանականս գրեցի իմով ձեռամբս ի Տփխիս քաղաքի ի դրան սուրբ Քառասնիցս, զի գերեալ էր Աւետարանս ի Տավրըշոյ ի Մուղան ի Թաթարէն եւ յետ երից ամաց աստ բերել անվնաս վաճառեցին ի Ո. Զ. Ե. Թըւիս, զոր փառաւոր աւագերէց Սարգիս հասարակ պատուական քահանայիւք եւ Աստուածասէր ժողովրդական տանուտերաւք բազում ծախաւք եւ աշխատութեամբ գնել ետուն ի մեզ։ Որոց տացէ Քրիստոս փոխադարձ զՍուրբ արքայութիւն եւ զդրախտն, արձակել ի կապանաց մեղաց, եւ հանել ի խաւարէ ի լոյս անմատոյց. աստէն պահելով ի շինութեան եւ ի խաղաղութեան. Բարեխաւսութեամբ Սուրբ Աւետարանիս եւ ամենայն սրբոց իւրոց։ Ամէն»։

— Այլ գրով — «Գրիգոր յիշել աղաչէ, ով սուրբ եղբարք։ Աւետիսն է ողորմութիւն խնդրողն ի Քրիստոսէ»։

## ԱՅԼ ԵՒ ԱՅԼՔ

### 1 Աւետարան.

(Բերեալ ի Մոկաց գաւառէ ի Վարագ)·

... « Տանուտէրն սիրուն տեսեալ զՍուրբ Աւետարանս անկեալ ի ձեռն անաւրինաց վասըն մեղաց մերոց, ծաղիկն եւ գիրն ապականեալ եւ աւերեալ եւ Թուղթս բաժանեալ ի միմեանց, յայնպիսի նեղութենէ՝ նա ետ կաշառս եւ ազատեաց եւ ետ վերստին նորոգել եւ զարդարել ձեռամբ Կիրակոսի... յիշեցէք զսիրուն եւ զծնողսն իւր զՍտեփան եւ զՇամիկն » ...

— ... « Տանուտէրն Պետրոս ստացաւ (զսա)... յիշատակ իւր... եւ մաւրն Խէրխաթունին, եւ կողակցուն Բաղդատին... եւ քըւերն Գոհարին եւ քւեր դստերն Մրջանին... յիշեցէք զԴշխոյն... զՇաքարն... եւ զայրն զէզզտին... եւ զԽաթունշէնն... եւ զորդին Մուղալն...։ Գրեալ ի Վանքաղաք, ի թվին Ջ. Խ. Դ. ի կաթողիկոսութեան Էջմիածնի Սարգսի, եւ Աղթամարայ՝ Ստեփաննոսի, ի թա... Հասան բակին... յիշեցէք Զաքարիա գծող... եւ զուսուցիչն իմ զԿարապետ քահանայն որ նահատակեցաւ ի յԱրճէշ քաղաքիս...։ »

### 1 Մաշտոց.

« ... Աւարտեցաւ սուրբ գիրքս այս Մաշտոց յընտիր աւրինակէ, ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, ի Հայրապետութեան Տեառն Դաւթի, եւ թուականիս Հայոց Պ. Ծ. Գ. ի դառն ժամանակիս։ Արդ ցանկացող եղեալ սմա պատուական քահանայն Կիրակոս, եւ ետ զսա յԱստուածապահ

գիւղն Գանձակ ի դուռն սուրբ եկեղեցեաց Տիրամաւր Աստուածածնի եւ Ս. Ստեփաննոսին նախավկային եւ Ս. Սարգսի զօրավարին, յիշատակ հոգւոյ իւրոյ եւ... Էլխաթունին... եւ Ստեփաննոս կրօնաւորին... եւ դստերցն Շնահվորի, Խոնդ խաթունի եւ Խաթուն մելիքի, եւ պապերցն Թադէոսի եւ Յովհաննէսի...: եւ Թաթուլի, եւ Դաւիթ քահանայի... յիշեցէք գրիչս զԴանիէլ սարկաւագ եւ զծնողսն իմ զԿարապետ քահանայն եւ զԴուռմելիք, եւ զեղբայրն իմ զԹումայ սարկաւագն... եւ զվարդապետն իմ Զաքարայ փիլիսոփայն... դարձեալ յիշեցէք զտանուտէրքն զԳրիգոր եւ զՍարգիսն եւ զԹումաշահն եւ զՌէս տիրացուն եւ զեղբայր նորին զՏէր Աւագն եւ...»:

—«Ես Կիրակոս քահանայս ստացայ զսուրբ գիրքս ի հալալ արդեանց իմոց եւ ետու զսա նուէր ի դուռն սուրբ եկեղեցւոյս, եւ մի ոք իշխեսցէ զսա հեռացուցանել կամ ծախելով կամ գրաւելով կամ իւր սեպհականելով. եւ ով որ յանդգնի... մասն զՅուդային առցէ եւ զխաչահանուացն, եւ զհերձուածողացն զԱրիոսին եւ զՆեստորին, եւ նմա թողութիւն մի՛ լիցի կամ փրկութիւն ոչ ի յայս կեանքս և ոչ ի հանդերձեալն, ամէն. եղիցի»:

Վանայ Նորատուզ գաւառակի (Անձեւացեաց) Քանքրուար կամ Քանքուար գեղի Ս. Թադէոս Առաքեալ եկեղեցւոյ ձեռագիր Աւետարանի յիշատակարանէն.

... «Զտառապեալ անձս Վանեցի, Սահակ դպիր յիմար գերի, զՍուրբ Աւետարանս ծաղկեցի ձեռամբ իմով մեղսամածի»...
«Մ. Աւէտն է ստացող Սուրբ Աւետարանիս.
«Ամիր Աղէն է եղբայր Աւէտին».

Ասոնք գրուած էին խաչի պատկերի երեսը, եւ Մ. Աւէտին ու Ամիր Աղայի քոլըզով՝ Ջէլօյի հագուստով պատկերներ նկարուած յաջ եւ ի ձախ խաչին։ Ի վերջ Աւետարանին... «Յիշեցէք... եւ հաւատարիմ Աւէտն եւ զիւր եղբայրն Պ. Ամիրաղէն, զհայրն Խլղաթ, զմայրն զԹուրվանդէն, Շուշանն, զորդիքն իւրեանց... զՄիրաքն... զՍալւարն, Զմրութն, զ՚Զարուխն Եղիսէն... Ես Թադէոս սուտ անուն քահանայ սկսայ եւ կատարեցի զՍուրբ Աւետարանս ի մեծ Թըւին Հայոց Ռ. Ճ. եւ Ժ. ամին ի մայրաքաղաքն Վան, ընդ հովանեաւ Ս. Էջմիածնայ եւ Ս. Առաքելոյն Թադէոսի եւ ի Հայրապետութեան Տէր Յակոբ կաթողիկոսի... Աւէտըն եւ Ամիրաղէն ստացան զսա յերկրին Արծրունեաց եւ եդին ի դուռն Բասկըթու Ս. Ստեփաննոսին...»։

## ՄԱՆԱԶԿԵՐՏ

Ս. Սարգիս հին եւ հոյակապ եկեղեցւոյ դրան ետեւ գաւթի սեան արձանագիրն է։

«Ի Թվիս ի Չ. Ջ. Ը. իս կանգնեցաւ Ս. Նշանս ի ձեռն Վասլի սրբասէր քահանայի, ի յիշատակ Սարգիս պատուական քահանայի որդի հարազատի Պետրոսի քահանայի, որք երկրպագանէք Ս. Նշանիս, յիշեսջիք»։

Մանզկերտի հիւսիսային մէկ բուրգին քարի մը վրայի յիշատակագիրն է «Ի Թվականիս Հայոց Չ. Ջ. Գ. կանգնեցաւ բուրգս ձեռամբ Կիրակոսին։ Աստուած ողորմի»։

Տաճկերէն արձանագիր մը եւս կայ։

Մանազկերտու Նորատի գիւղ Ս. Յօհան Օձնեցւոյ անուամբ տաճարին տեղը՝ որ գերեզմաննոց էր, մատրան մը հետքը կայ.

եւ երկու հսկայ խաչարձանք, որոց վրայ գրուածներն են.

Ա. «Ի Թվիս Ռ. Ծ. Գ. Ես Հայրապետս որդի Վարդանայ կանգնեցի զկենսունակ, զկենսակիր, զկենդանատու նշանս զայս կառուցեալ աջոյ անեղին Աստուծոյ, եւ բարձրացեալ բանիւ որդւոյ միածնի եւ հաստատեալ շնորհաւք Հոգւոյն սրբոյ, ի բարեխաւսութիւն ինձ եւ ծնողաց իմոց, եւ կենակցի իմոյ Եղնկան, եւ Անդրոս... (քարը եւ գիրն ի հող թաղեալ, բանն մնայ թերի)։

Բ. «Ռ. Կ. Թվիս, եւ յիշխանութեան Սէվդնին ես Մարտիրոս որդի Վարդանայ կանգնեցի վէմ եւ արձան պատուական ընտրեալ նշան յաղթութեան նկարեալ արեամբըն Յիսուսի Քրիստոսի ի փրկութիւն եւ ի բարեխաւսութիւն ինձ եւ ծնողաց իմոց եւ կենակցի իմոյ... (անընթեռնլի) եւ անդրանկին իմոյ ... (պակասն ի հող թաղեալ)։ — Նոյնգեղի հասարակաց գերեզմանատան մի խաչաքարի արձանագիրն է.

«Ռ. Ծ. Թ. Թվիս, կանգնեցաւ խաչս ի բարեխաւսութիւն տիկնոջն Հռիփսիմեայ»։ (*)

Հետեւեալ գիրը, ուղղեալ առ Մելքիսեդ կաթողիկոսն, ի Ս. Աթոռն Էջմիածին. Փիրզալէմեան Գեր. Ղեւոնդ վարդապետին օրինակածներէն կը դնեմ այս տեղը զոր գաղափարած է Վանայ Ս. Վարդան եկեղեցւոյ Տէր Կարապետ քահանայի ձեռագրէ մը,

(*) Վերին Պուլանըխայ Խօթանլու գեղի Ս. Գէորգ եկեղեցւոյ սեղանի առջեւը քար մի կար վերեւը խաչ՝ վարը բեւեռագիր։— Հայոց ձորոյ Իշխանի Գոմ գեղի Մ. Յօհաննիսի դրան առջեւ Արտամետու քարերէն բեւեռագրով քար մը կար դրուած։

թեպէտ թուական չունի, բայց դէպքն եւ անձինք ծանօթ են ի պատմութեան, Մելքիսեդ անբարի կաթողիկոսին կուզզեն զայս, այն է Իլովի չար ժառանգ Նիկոլ եպիսկոպոսին ձեռնադրողն, եւ կը հաստատէ Առաքել պատմագրի գրածները, տեղ տեղ ալ նոր բաներ կը յայտնէ։

«...ի Վասպուրական նահանգի, եւ ի Վան քաղաքի. եւ իւրոյ շրջակայ թեմի գաւառացըն եղեալ ամենայն առաջնորդացն, վարդապետացն, եպիսկոպոսացն, քահանայիցն, տանուտէրացն, իշխանացն, եւ դօլուաթաւորացն, արհեստագիտացն եւ երկրագործացըն։ Եւ մանաւանդ որոց անուանքս յատուկ հանդերձ կնքո՟վ իւրեանց գրեալ են ի նամակիս, ի սոցանէ ամենեցուն ժամանեսցէ յոյժ յոյժ կարօտիւ ողջոյն վեհիդ մեծի, զշնորհաբաշխ սուրբ աջդ համբուրեմք, որ եւ ինքն Քրիստոս պահեսցէ զքեզ յերկար ամօք, ի փառս իւր, եւ ի պարծանս Հայոց Ազգիս։ Ընդ որոյ յուշ առնեմք մեծութեանըդ քում, զվշտակրութիւն խեղճ եւ տառապեալ Ազգիս Հայոց, որ ոչ թէ միայն մարմնաւոր աղքատութիւն, այլ եւ հոգեւոր պակասութիւնն առաւել է քան զմարմնաւորըն։ Այսինքն՝ օրինաց քակմունք, կանոնաց արհամարհութիւնք, եւ եկեղեցական կարգաց այլայլութիւնք։ Զի առաքելական քարոզութիւնք, եւ սրբոց հարցն աւանդութիւնք եւ սահմանադրութիւնք որ յեկեղեցիս. ահա տեսանեմք այլայլեալ եւ չփոթեալ, եւ մանաւանդ թէ ամենեւին ի բաց բարձեալ։ Եւ այսպիսի խանգարման եւ անկարգութեանս պատճառ՝ թուլամորթ առաջնորդքն են, եւ մանաւանդ թէ եւ ի քեզ իսկ երեւի այս թուլամորթութիւնս։ Զի թէպէտ բազում են

անկարգութիւնք որ ի քէն սփռեալ տարա-
ծի ի տունս Հայոց․ բայց մեք ի բազմացն
զսակաւն ասասցուք, եւ զգլխաւորսն, որ
կարի մեծ է եւ բազում չարեաց մայր․ եւ
յոլով խռովութեանց եւ մեղաց պատճառ։

Ա․ Նախ՝ զի ի վերայ եպիսկոպոսի եպիս-
կոպոս կուօրհնես, զի ի վերայ քաղաքի եւ
կամ գաւառի՝ որ առաջնորդ մի կայ․ այլ ոմն
ագէտ եւ հերձուածող եւ կամ ուրացող գայ
առ քեզ՝ դու ընտրութիւն չես առներ, այլ
վասն արծաթսիրութեան քո՝ առնուս քանի
մի հարամ փող՝ եւ անիծես զնա, եւ զանուն
դնես եպիսկոպոս, եւ յողորկես, որ գայ այն
երկրի եպիսկոպոսին հետ հակառակի, եւ ի
մէջ բազում չարիք ծնանի, ադմուկ եւ խը-
ռովութիւն, մատնութիւն եւ արեան հեղ-
մունք, եւ բազում միամիտ ժողովուրդք թե-
րանան եւ գայթակղին, եւ այս ամենայն
չարեաց պատճառն եւ մեղաց պարտականն
դու ես եւ թէ այլ ոք։ Զի Մրգիկն՝ որ ի
Մուշ թուրքացեր էր, զնա ի Սուրբ Էջմիա-
ծին աթոռակալ ես կարգեր։ Եւ Պռկնոսշ
զԿարապետն՝ որ Հոռոմ դարձաւ, եւ Հոռոմ
կին էառ, եւ եօթն տարի ի հետ այն կնոջն
ի Հռոմ կեցաւ, յիմայ եպիսկոպոսութեան
հրաման ես տուեր․ եւ Թիրայու, եւ Իգմի-
րու եւ Մանիսայու առաջնորդ ես կացու-
ցեր։ Նաեւ Աշխարհիդաշտի զեպիսկոպոսն․․․
դու նորա եպիսկոպոսութեան հրաման ես
տուեր, եւ այլ այսպիսիքս բազումեն, բայց
ոչ գրեցաք, զի մի տաղտկասցին լսօղքն, զի
ոչ թէ ի մին տեղի, եւ մին Աթոռի եղեալ
են երկու առաջնորդ, եւ երկու եպիսկոպոս,
այլ ի բազում տեղիս գիտեմք, որ մէկ թէ-
մի, երկու եւ երեք, չորս եւ հինգ եպիսկո-
պոս ձեռնադրեալ ես եւ առաջնորդ կարգ-

եալ։ Այս ի՞նչ օրէնք է, որ մէկ կնոջն հինգ այր լինի, այս ինչպէ՞ս կաթողիկոսութիւն եւ ինչպէ՞ս առաջնորդութիւն է։

Բ. Եւ երկրորդ անկարգութիւն այն է, որ թէ յինչ երկիր որ Նուիրակ յուղարկես՝ նա կու ընտրես՝ յոր տեղ որ չար եւ լիրբ, անզգամ, անամօթ եւ ամբարտաւան մի կայ, որ ոչ յԱստուծոյ երկնչի, եւ ոչ ի մարդկանէ ամաչէ, զայնպիսիքն կուառաքես, որ զարդարեալ երիվարօք, եւ պճնեալ հանդերձիւք, եւ կրկին պաշտօնէիւք գան, եւ գոռոզաբար խրոխտան, եւ բազում ցոփութեամբ եւ անկարգութեամբ եւ արբեցութեամբ զաշխարհս վրդովեն, եւ յոլով խըռովութիւն եւ աղմուկս յարուցանեն, զի Կաթուղիկոսի եւ Նուիրակի շուրջ գալն, ոչ թէ վասն արծաթի եւ կաշառի է, եւ կամ վասն ագահութեան, այլ վասն Աստուծոյ եւ օրինաց, զի հարցանեն եւ քննեն, եւ տեսանեն, թէ յինչ տեղ օրինաց թուլութիւն եւ անկարգութիւն կայ, զայն ուղղեն, զթիւրն ի բաց. բառնան, եւ զճշմարիտ սահմանադրութիւն օրինաց հաստատեն։ Այլ սոքա, որ ինքեանք չեղեալ են ի սահմանադրութենէ օրինաց, զո՞ր սահմանն պիտի հաստատեն. երբ ինքեանք են թիւրեալ, զո՞ր թիւրն պիտի ուղղեն, զի ինքեանք են մոլորեալ՝ զո՞րն պիտի դարձուցանեն, ինքեանք խաւար գոլով, զո՞րն կարեն լուսաւորել։ Զի գրոց ամենեւին անտեղեակ են՝ եւ օրինաց բնաւին անծանօթ, եւ բոլորովիմբ ոչ ճանաչեն զհաւատս քրիստոնէութեան՝ թէ զի՞նչ է։ Այլ փքացեալ մըտօք, հպարտութեամբ եւ լրբութեամբ, շըրջել գոռոզաբար մանաւանդ թէ հեթանոսական սովորութեամբ, ըստ ախորժակաց իւրեանց անիրաւութեամբ դատել զոք, եւ ոչ

ըստ Աստուածային գրոց, զարդարն եւ զանմեղն դատապարտեն վասն ընչից, եւ զանիրաւն իրաւացուցանեն վասն կաշառաց, եւ ազգապղծութեան հրաման տան վասն արծաթոյ. քակեն զօրէնս Աստուծոյ, եւ խըրամատեն զկանոնս սրբոցն, եւ զի ինքեանք տգէտ են օրինաց եւ գրոց, այլ գիտողացն ընդդիմանան եւ հակառակին։ Եւ զի դու որ սոցա մեծ վէհն ես, սոցին գործելոց չարեացն պարտական գտանիս, նա ոչ արժէ սոցա մարմնաւոր շահն զքո պարտական լինելըդ, քանզի գիտեմք թէ սոքա ի՞նչ կուհասուցանեն ի Սուրբ Աթոռդ ի ձեռս վեհիդ, զի վասն ագահութեան իւրեանց շրջին, եւ ոչ վասն օգտի սուրբ տանդ, զի զինչ որ ժողովեն ի գինս այնպիսի երեւելի հանդերձի տան, որ ոչ վայելէ քրիստոնէի եւ ոչ իշխանի, թող թէ կարգաւորի, զի հեթանոսաբար պաճուճեն զինքեանս, եւ ո՛չ քրիստոնէաբար, նոյնպէս եւ պալարակապ երիվարօք շրջին իբրեւ զբռնաւորս եւ պճնին, եւ ի կերակուրս եւ յըմպելիս ծախեն զժողովեալսն իւրեանց, յոլով կաշառս տան բռնաւորաց, եւ բազում տուգանս այլազգաց վասն հակառակասէր բարուց իւրեանց, վասն որոյ Ազգս Հայոց տաղտկացեալ է ի գարշահոտութենէ վարուցն այսպիսեաց։

Գ. Եւ երրորդ անկարգութիւն քո այս է. զի զոր ինչ վարդապետ, որ զճշմարիտն խօսի, կամ վասն Աստուածային օրինացն վըրէժխնդրութեան զձեր օրինացն հակառակութիւն յանդիմանէ, ի վերայ նորա անփակ բերանով, անիրաւ լեզուաւ, յանդուգն դիմօք, լրբենի երեսօք, եւ անկիրթ միտօք, բանադրանաց գիր կուգրէք։ Այս է ասելն ձեր, թէ զճշմարիտն մի՛ խօսիք, որ մեր սը-

տութիւն ոչ յայտնեսցի, զօրէնս Աստուածային մի՛ ուսուցանէք, որ անօրէնութիւն մեր ոչ յանդիմանեսցի, զպատուիրանս Աստուածային մի՛ ծանուցանէք, որ մեր պատուիրանազանցութիւն ոչ երեւի, զատուգութիւն մի՛ հրատարակէք, որ մեր խաբէութիւն ոչ հռչակեսցի, զբանս Աստուածեղէն գրոց մի՛ քարոզէք, որ մեր գրոց հակառակութիւն ոչ ցուցանի, զիրաւունս մի՛ յայտնէք, որ մեր անիրաւութիւն ոչ ծանուցանի, զլոյսն մի՛ արծարծէք, զի մի խաւարային գործքն մեր խայտառակեսցի, ըստ այնմ, թէ ամենայն որ զչար գործէ ատէ զլոյսն, եւ ո՛չ գայ առ լոյսն, զի մի յանդիմանեսցին գործք նորա. զի ի վերայ վարդապետաց այսպէս յանդգնութեամբ մեծաբանելն յոյժ անմտութիւն է ձեզ, զի ասէ իմաստունն. Որ հանճարեղն իցէ զառաջնորդութիւն ստասցի, եւ հանճարն, եւ իմաստութիւն, եւ գիտութիւն ի սուրբ գրոցն է պարգեւեալ ի Հոգւոյն Սրբոյ, նոյնպէս, եւ դատ առնելն, եւ քննելն իրաւամբ, հանճարեղինացն է եւ ոչ անհանճարիցն, եւ այս յայտ է, որ գրոց գիտութիւն, եւ դատաստան, եւ քննութիւն, պարտէ ի մէջ վարդապետաց գտանել, եւ ոչ առ ձեզ, ապա անհանճարքն զի՞րդ կարեն զհանճարեղս. զքննօղս, եւ զդատաւորս օրինաց քննել եւ դատել. եւ անկիրթքն եւ անուսմունքն զի՞րդ կարեն զներկրթողսն եւ զուսումնականսն ուսուցանել, եւ կամ անվարժքն եւ համբալեզուքն զի՞րդ կարեն վարժապետաց եւ ճարտարախօսից բանս ուսուցանել, կամ անբանքն զի՞րդ կարեն բանականացն՝ մակացութիւնս յաւելուլ, եւ անիրաւքն եւ արհամարհողքն արդարութեան զի՞րդ կա-

րեն արդարութեամբ դատել եւ ուղիղ իրա-
ւունս առնել այլոց ։ Զի ոչ թէ խաւարն զլոյ-
սըն մերժէ , այլ լոյսն զխաւարն , զի պատ-
ուիրանքն տեառն լոյս են , եւ լոյս տան ա-
չաց , եւ արհամարհողքն պատուիրանացն
տեառն խաւարեալ են մտօք եւ հոգւով ․ Եւ
ձեր իմաստութիւն եւ իրաւունքն այս է՛ որ
զդասաստաց վարդապետքն՝ հասարակ աշխար-
հականի կարգի էք դրել ․ եւ ո՛չ թէ աշխար-
հականի միայն , այլ ․․․ յանցաւորաց , զի բա-
նադրելն՝ օրինազանցիցն եւ յանցաւորա-
ցըն է , եւ դու զվարդապետն օրինազան-
ցից պէս՝ սուտ բանադրանօք լուծեալ ես ի
կարգէ , ո՞չ գիտես , զի ամենայն անիրաւ
եւ զուր բանադրանք սուտ է , եւ դառնայ
ի յասացողն իւր հանգչի ․ ըստ այնմ թէ , Յոր-
ժամ այսն ելանէ ի մարդոյ շրջի ընդ անջր-
դին տեղիսն , խնդրէ հանգիստ , եւ իբրեւ
ոչ գտանէ , ասէ , դարձայց անդէն ի տուն
իմ ուստի ելի ։ Եւ որպէս սուտ թղթերովն
ձեր , զանմեղ եւ զմիամիտ աշխարհական ժո-
ղովուրդքն զարհուրեցուցանէք՝ սակս կա-
չառի եւ արծաթոյ , սոյնպէս եւ զվարդա-
պետս եւ զքահանայս , կամիք ահացուցանել
սուտ եւ անիրաւ եւ խաբեբայ բանիւ եւ գոր-
ծով ․ եւ զայս ի միտ չէք ածել ։ թէ այսպիսի
անպատեհ անէծս ո՞վ պիտի ընդունի , թէ ա-
սէք , թէ դուք չէք ընդունեք ․ Նա Աստ-
ուած ի վեր կուընդունի , Նա մեք զայս ա-
սեմք , թէ Աստուած արդար է , եւ ոչ անի-
րաւ , եւ վասն անիրաւ մարդոյ բանին , զիւր
արդարութիւնն յանիրաւութիւն ոչ փոխէ ,
եւ անիրաւաց բանիւ զմարդ ոչ դատապար-
տէ ։ Եւ թէ ասէք , թէ դուք ոչ ընդունէք
զմեր գիրն , սակայն վարդապետքն պիտի
ընդունին ․ ահա՛ այս եւս յայտնի է , ՛զի վար-

դապետքն ոչ են անտեղեակ ի գրոց իբրեւ զձեզ, զի գիտեն յԱստուածային գրոց եւ յօրինացն, թէ անիրաւ անէծքն ոչ է ընդունելի, զի անիրաւ անիծիւք՝ անիծեալն ոչ անիծանի. ըստ այնմ՝ թռչունն ի բունոյ իւրմէ թռուցեալ՝ եւ դարձեալ ի բոյնն իւր դադարի. եւ դուք զայս կու մոռածէք, թէ վարդապետքն, որ զմեր գիրն ոչ ընդունին, նա անուանքն մէջ ի աշխարհի բանադրած թող լինի, այն մեզ բաւական է. ընդդէմ այսմ զայս ասեմք, թէ ահա վարդապետքն որք ընդ ամենայն տեղիս են յիւրաքանչիւր Աթոռս՝ ի վանս՝ եւ ի գաւառս, եւ ոչ են ի միում տեղւոջ եւ կամ ի թագստեան, եւ բերանք նոցա ոչ են կապեալ, եւ կամ լեզուքն համրացեալ եւ պապանձեալ, այլ վստահ եւ համարձակ հրապարակեն ի մէջ ատենի զձեր անմահութիւն ի լուր ամենայն ժողովրդեանն, եւ ամենայն ոք որ իմանայ զձեր անիրաւութիւն եւ անկարգութիւն, զիա՞րդ ընդունող լինին անպատշաճ եւ անիրաւ բանից ձերոց: Եւ արդ՝ այսպիսի անուղղայ բանիցս՝ ձեզ շահ եւ օգուտ մի ոչ լինի, բայց թէ անուան եւ կարգի թեթեւութիւն, որ ամենայն յոռի եւ անպիտան ոք՝ զձեզ ի բերան եւ ի լեզու առեալ բամբասէ, նաեւ զվարդապետաց բերանն եւս բանայք ի վերայ ձեր, զի մեք ոչ զայնպիսի չաղակրատանաց անիրաւ բանադրանքն կու ընդունիմք, եւ ոչ զնոր առաջնորդն՝ եւ նուիրակն:

Դ. Եւ չորրորդ անկարգութիւն քո այս է, որ քան զամենայն չարադոյն երեւի, զի զեկեղեցեաց հիմն ի վեր տապալեցեր, քանզի վասն ագահութեան քո, զհիմն եկեղեցւոյն փորելով հաներ զնշխարս սրբոց Հռիփսիմ-

եանցն , որք հաստատուն սիւնք էին ամենայն հաւատացեալ քրիստոնէից , եւ պարծանք մեծի սրբոյ Աթոռոյդ , եւ մանաւանդ թէ մեր Հայոց ազգիս· եւ դու զայնպիսի Աստուածային պատուական գանձն՝ հանեալ վաճառեցեր այլազգաց· ո՞չ ասլաքէն Քրիստոսի զօրութիւնն եւ շնորհն միաւորեալ եւ հանգուցեալ է յոսկերս սրբոցն· ըստ այնմ՝ թէ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչեւ ի կատարած աշխարհի: Զի ով ոք որ զսրբոց ոսկերքն պատուէ զՔրիստոս կու պատուէ , եւ ով ոք որ անարգէ , զՔրիստոս կու անարգէ , եւ ով ոք որ վաճառէ , նա զՔրիստոս կու վաճառէ· եւ դու զայն սրբոց նշխարսն վաճառելով՝ զՔրիստոս վաճառեցեր , եւ ով ոք որ զՔրիստոս վաճառէ , նա ոչ ունի մասն ի Քրիստոսէ , զի այդ ոչ է գործ կաթողիկոսի , այլ Յուդայի , որ զՔրիստոս արծաթոյ վաճառեաց: Զի այսպիսի չարիքս քո եղեւ պատճառ , որ զաջն սուրբ Լուսաւորչին հաներ ի սուրբ Աթոռոյդ եւ ի գերութիւն մատնեցեր յօտար աշխարհ , զայն աջն որ պարծանք էր Հայաստանեայցս , եւ պահապան տանս Թորգոմայ , տարագիր արարեր ի մէջ այլասեռից , եւ դեռեւս կու մեծաբանես ի վերայ մեր թէ ես կաթողիկոս եմ: Առանց այն սուրբ Աջոյն՝ քեզ ինչ կասեն , եւ կամ թէ դու ո՞վ ես , եւ այժմ մարդ կու հրաւիրես , թէ մեռոն կու օրհնեմ· առանց այն սուրբ Աջին՝ դու ի՞նչպէս մեռոն կու օրհնես , զի ի մեր Հայոցս ազգի մէջն՝ աւանդութիւն է եւ սահման յառաջնոց սրբոց հարցն՝ որ Լուսաւորչի սուրբ Աջովն՝ պիտի օրհնուի սուրբ մեռոնն· զամէն կարգ եւ սահման դու պիտի՞ որ խանգարես· Թողումք զյայտ-

նապէս հոգեւոր պոռնկութիւնն ձեր, որ ի մէկ Աթոռի վերայ երեք կաթողիկոս էք կարգեալ, եւ ոչ թէ մինդ կացեալ եւ այլքդ դադարեալ, այլ ամէն մէկդ՝ ի յիւր գնացեալ երկիրն ինքնագլուխ կաթողիկոսութիւն առնէք, եւ ամենեւին ոչ Աստուծոյ երկնչիք եւ ոչ ի մարդկանէ ամաչէք. զի թէ ասես՝ թէ ով է՛ յառաջ եղեալ, նա է կաթողիկոս, նա ահա առաջինն Դաւիթ կաթողիկոսն է. եւ թէ ասես նոքա հրաժարեալք են, ահա եւ այն հրաժարելոցն մինն դու ես:

Ե. Եւ հինգերորդ անկարգութիւն ձեր այս է, որ յանդգնաբար վստահացար եւ ձեռն արկեր ի Մեր սուրբ հաւատս, զի կամիս զմեր ուղղափառ հաւատս խախտել եւ տապալել, եւ զմեզ ի հերձուածողութիւն եւ յուրացութիւն ձգել. փռանգաց հետն միաբանելով եւ ձեռագիր տալով՝ զՔաղկեդոնի ժողովն ընդունելով, եւ ի Քրիստոս երկու բնութիւն ասելով, կամիս զմեզ ի ներքոյ այն անիծիցն մուծանել՝ զոր ի վերայ Քաղկեդոնականացն է. զի զայն Գիշու որդի չ՛Զաքարայն, որ Վանայ դօլուաթաւորքն՝ զինքն ի Վարագայ աքսորեալ հալածեցին, ոչ թէ այն դօլուաթաւորքն անիրաւութիւն արարին դմա, այլ յիրաւի. զի տեսին զնորա թերահաւատութիւնն եւ զչար գործքն, եւ արժանի չհամարեցան այնպիսի Աթոռոյն. այլ ի վանիցն. եւ յերկրէն եւս հալածեցին, եւ զարժանաժառանգն այնմ Աթոռոյն զՄարտիրոս վարդապետն Նստուցին՝ որ առաքինութեամբ եւ բարի վարուք հռչակեալ է: Եւ զայնպիսի արտաքսեալն որ վասն չար գործոցն իւրոց՝ դու զնա ընդունեցեր, եւ արժանի համարեցար զնա ընդհանրական մեծի սուրբ Աթոռոյդ, քեզ նման, քեզ ա-

թոռակալ եւ փոխանորդ կարգեցեր· նա որ գիր տունն եւ զաթոռն Վարագ աւերեաց, դու զնա սուրբ Աթոռոյն Էջմիածնայ շինօղ համարեցար։ Այն դօլուաթաւորքն՝ աշխարհական գոլով իմացան զնորա չար գործքն, տաղտկացեալ զըզուեցան ի նմանէ, եւ աքսորեալ արտաքսեցին ի Վարագայ, եւ դու կաթողիկոս գոլով ոչ իմացար· զի նոցա դառն երեւեցաւ, վասն այն ոչ ընդունեցին· իսկ քեզ քաղցր թուեցաւ, վասն այն սիրով ընդունեցեր· նոյնպէս եւ ամենայն չարքն եւ հերձուածողքն՝ հաճելի եւ սիրելի են քեզ, եւ ամենայն պարկեշտքն եւ ուղղափառքն՝ ատելի եւ թշնամիք են քեզ· Եւ ոչ թէ միայն ընդունեցեր զնա, այլ քեզ փոխանորդ կացուցեր եւ նուիրակ կարգեցեր եւ առաքեցեր, զի ուր եւ գնաց աղմկով եւ խռովութեամբ ելից զերկիրն· մանաւանդ՝ քան զամենայն մեծ չարիքն այս են, որ զքո ձեռագիրն ետուր Փափուն, թէ ես Մելքիսէթ կաթողիկոս Հայոց՝ իմ ազգիս վարդապետօք՝ եպիսկոպոսօք, եւ համայն ժողովըրդովք հնազանդիմք Հռոմայ եկեղեցւոյն, եւ ընդունիմք զժողովն Քաղկեդոնի, եւ զտումարն Լեւոնի, եւ նզովեմք զԴիոսկորոս եւ համախոհս նորա, եւ ասեմք ի Քրիստոս երկու բնութիւն եւ երկու կամք· եւ այս ձեռագրիս օրինակն Փափն գրել է պասմայ գրով· եւ յուղարկել է ի Լեհ· Նոյնպէս եւ յամենայն տեղիս· թէ Ազգն Հայոց ի մեր հաւատն են դարձեր· այլ եւ ի Վանատիկ եւ յայլ բազում տեղիս գիր է գրեր եւ յղրկեր· եւ այս գրոյս մէկն ի Համիթ է եկեր· եւ զնորա մէկ օրինակն Աւետիս կաթուղիկոսն է տարեր ի հետն, եւ զմի օրինակն Համթեցիքս մեզ էին յղրկել ասելով՝ թէ տեսէք

տեսէք զմեր կաթողիկոսիս զխայտառակութիւնն․ զայսպիսի հերձուածողն՝ դուք ի՞նչպէս կաթուղիկոս կուընդունիք․ եւ զայս եկեալ թուղթս մեք ամենեքեան ականատես եղեալ ընթերցաք․ այս ի՞նչ բան է քո արած բանն․ զի կամիս երկրորդ Նզր լինե՞լ, եզերիչ եւ խանգարիչ Հայոց Ազգիս․ զի թէ իբրեւ զքաջ հովիւ հոգացող եւ խնամող չես․ վասն է՞ր որպէս զվարձկան եւ իբրեւ զչար գազան պատառող լինիս բանաւոր հօտին Քրիստոսի․ զի՞նչ կուզես այս ողորմելի եւ տառապեալ ազգէս Հայոց․ է՞ր չես թողուր զիւրեանս յիւրեանց աղքատութեանըն․ զի թէպէտ որ Ազգս Հայոց մարմնով ծառայ են եւ աղքատ․ այլ քրիստոնէական ուղղափառ հաւատովս ազատ են․ հոգւով փարթամ․ եւ հարուստ օրինօք եւ պատուիրանօք․ ըստ այնմ թէ Ցանկալի է նա քան զոսկի եւ քան զակունս պատուականս․ եւ դու կամիս՝ որ աւազակօրէն կողոպտես եւ մերկացուցանես յօրինաց շնորհացն եւ յուղղափառ սուրբ հաւատոյս մերոյ․ զի թէպէտ մարմնով տրուպ եւ ի չարչարանս եմք ի յայսմ աշխարհի՝ առաւել քան զայլ ազգս․ բայց հոգւով ուրախ եմք․ որ ունիմք ուղղափառ հաւատ քան զայլ ազգս աղօթիւք բազմաչարչար նահատակին, հաւատոյ հօրն մերոյ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին։ Եւ դու կամիս․ որ զՍուրբ Լուսաւորչի ազգիս ուղղափառ սուրբ հաւատս զոր ընկալաք ի Նըմանէ, զնորին հիմն քակել․ ոչ այդպէս է որպէս կարծես․ զի մեք ամենեքեան հաստատուն կեամք ի վերայ ուղղափառ սուրբ հաւատոյս մերոյ․ եւ նզովեմք․ եւ անիծանեմք զհաւանօղսն Քաղկեդոնի սուտ ժողովոյն․ եւ զմիաբանօղսն ընդ Փռանկացն․ թէ

կաթուղիկոս է՝ թէ վարդապետ․ թէ եպիս-
կոպոս․ թէ քահանայ․ թէ իշխան եւ թէ
ռամիկ աշխարհական․ զի կաթուղիկոսն եւ
առաջնորդն կարգեալ են վասն հաստատու-
թեան հաւատոյ, եւ կարգաց եւ օրինաց
պահպանութեան․ եւ ոչ թէ վասն քակելոյ
զօրէնս եւ խախտելոյ զհաւատս․ զի մեք ի
ձէնջ օրինաց հաստատութիւն եւ կամ թիւ-
րելոյն ուղղութիւն ոչ տեսաք․ այլ մանա-
ւանդ թէ քակել եւ խանգարել․ վասնորոյ
մեք այնպիսի հայրապետ, եւ եպիսկոպոս, ա-
ռաջնորդ, եւ նուիրակ չեմք ընդունիր ։ Եւ թէ
կամիս որ ընդունիցիմք զքեզ, եւ հնազան-
դիմք հրամանի քո․ զայն առաջին անկար-
գութիւնսն զորս գրեցաք, զայն չար սովո-
րութիւնսն բարձ ի քէն․ եւ ըստ աստուա-
ծային օրինացն եւ կանոնաց շաւղացն գնա․
մին երկրի՝ եւ աթոռի՝ որքան առաջնորդ
կենդանի է, այլ եպիսկոպոս մի՛ օրհներ եւ
առաքեր ի վերայ նորա․ եւ թէ նա վախճա-
նի՝ նա այն երկրի դօլուաթաւորաց վկայա-
կան գրովն՝ ընտրեա՛ զոմն արժանաւոր․ որ
կատարեալ է ուսմամբ, հաւատովն ուղղա-
փառ, երկիւղած յԱստուծոյ եւ օրինապահ․
եւ ոչ թուլամիրթ եւ կամ հերձուածօղ․ զնա
օրհնեա՛ եպիսկոպոս․ եւ առաքեա նոցա ա-
ռաջնորդ․ եւ պատուիրեա նմա, զի զգու-
շութեամբ հովուեսցէ զնոսա մինչեւ ի մահն
իւր ։ Նաեւ քո առաքեալ նուիրակացն եւս
պատուէր տո՛ւր․ մի՛ յանդգնաբար ի զուր
զոք բանադրել, կարգաւոր կամ աշխարհա-
կան․ զի թէպէտ լինի որ վարդապետ ոք
կամ քահանայ եւ իշխան, որ զմեր նախնի
հարցն աւանդութիւնն եւ զկանոնքն թիւ-
րէ ․․ եւ զուղղափառ հաւատս այլայլէ, եւ
նոր ինչ հերձուածս կամիցի մուծանել յեկե-

ղեցի Աստուծոյ, պարտ է զի այլ ճշմարիտ վարդապետօք քննել զայնպիսին. եւ ոչ անիրաւութեամբ. այլ արդար դատաստանաւ զատոյգն իմանալ. եւ ապա ըստ յանցաւորութեան արժանւոյն պատժել եւ դատապարտել ըստ չափոյն. եւ որոշել յեկեղեցւոյ մինչ որ զղջացեալ դարձցէ յուղղութիւն. եւ ոչ անխիղճ մտօք զանց առնել, այլ ջանալ ուղղել եւ արձակել. զի մի ի նոյն կարծեացին կենաքն եւ երկոքին միապէս դատապարտին: Եւ դարձեալ վասն Սրբոց Նշխարացն՝ եւ Լուսաւորչի սուրբ աջոյն. ասեմք թէ որպէս որ հաներ՝ ջանիւ եւ հնարիւ, որ վերստին բերեալ հանգուցես ի սուրբ Աթոռըդ՝ յիւրաքանչիւր տեղիսն. զի մեք լսելով ուրախանամք հոգւով եւ գամք յուխտ եւ երկրպագութիւն սուրբ տեղեացն. եւ դու եւս անդատապարտ լինիս՝ եւ ազատ ի մեղադրանաց: Այլ եւ վասն Յուանկաց միաբանութեան. զի թէ ստոյգ է որ դու չես միաբաներ. նա Փափուն գիր մի գրէ ի քեզանէ եւ յայլ ամենայն վարդապետաց. որ քո մօհրն եւ վարդապետացն եւս ի վերայ լինի. եւ այն չԶաքարիային եւս չարաչար բանադրանք մի գրէ, եւ կնքէք ամենայն վարդապետօքդ. եւ դիր ի մէջ Փափոյ թղթին՝ եւ յղարկէ. թէ ոմն չԶաքարիայ անուն վարդապետ՝ որ ի մեզանէ նուիրակ եկն յայդ կողմունքդ, եւ առանց մեր կամաց եւ գիտութեան իմ մօհրովս սուտ ձեռագիր է տուեալ ձեզ, եւ իմ անունս է հանեալ որպէս թէ ես Մելքիսէթ կաթուղիկոս իմ ազգաւս Հայոց ի հետ Յուանկին միաբաներ եմ եւ զՔաղկեդոնի ժողովն կընդունիմ. նա սուտ է. ահա մեք զնա չարաչար պատժեցաք եւ որոշեցաք յեկեղեցւոյ:

Նաեւ այլ յամենայն քաղաքս․ որիշ որիշ գիր գրէ ի վերայ առաջնորդաց եւ իշխանաց․ Թէ ահա ես զայն չՁաքարիայն բանադրեցի․ Թէ ուր եւ հանդիպեսցի՝ մի ընդունէք, այլ հալածեցէք որպէս զհերձուածօղ․ եւ համարեցէք զնա որպէս զպիղծն Արիոս եւ Նեստոր․ Թէ զայս առնես՝ կուընդունիմք զքեզ որպէս զուղղափառ կաթողիկոս․ եւ Թէ ոչ, դու գիտես»։

# ԵՐԶՆԿԱՅ

## Ս․ ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻՆ

### Ս․ Մասունք և Յիշատակարանք․

1․ Ս․ Նշան կենաց Փայտ։ Խաչին վրայ գրուած է, «Եդաւ ի սմա փայտն կենաց, որ զՔրիստոս պտղաբերեաց վասն կենաց աշխարհի․ դարձեալ եւ յայտնի է ի Սոկրատ գրոց պատմութենէ որ Ս․ Լուսաւորիչ տարաւ ի Տարօն զսուրբ նշխարք մեծի Մկրտչին․․․ եւ եդ անդ․․․ եւ մասն ինչ ընկալաւ ի վայելումն անձին իւրոյ եւ երեր ի գաւառն Եկեղեաց ի Գիւղն Խախ, շինեաց զեկեղեցի եւ եդ անդ։ Ի Թվ․ Ջ․Ի․Ա․․․ ի ժամանակն արքեպիսկոպոսին տեառն Սարգսի Նախնոյն իմոյ յայտնեցաւ ի ձեռն միայնակեցի միոյ, եւ եդեալ էր ի տուփ ոսկի, եւ այն ի յարծաթի, եւ եդեալ ի մարմար, եւ էր գրեալ անուն սրբոյն, եւ բազում փրկութիւն եղեւ ի յայտնել․ Նաեւ ես մեղուցեալ արքեպիսկոպոս Տ․ Ներսէս շինեցի զսա, եւ զլուսաւոր նշխարքս եդի ի սմա, բարեխօսաւ Քրիստոս Աստուած ի Թողութիւն յանցանաց իմոց եւ ի զարդ Ս․ ուխտին Տիրաշինին Առաքելական աթոռոյն։ Թվ․ Ջ․Խ․։

1 Խաչ եւս։ «Ս. Նշանս մասն է Նախավկային ճկութն է ու Թումա առաքելոյն մասն է։ Որ է ձեռագործ Իգնատիոսի»։

1 Տապանակ կամ գմբէթաւոր տուփ, բիւրեղեայ, արծաթապատ. յորում է «Արիւն Զաքարեայ»։

1 Ճկոյթ մատն՝ արծաթապատ. «Ի Տէր Ներսիսի Նշխարացն է»։

1 Բազուկ եւ աջ Ս. Ներսիսի Պարթեւի, արծաթապատ. «Զարդարեցաւ շնորհաբաշխ բազուկ աջոյ սրբոյն Ներսիսի, հրամանաւ արքեպիսկոպոսին տեառն Սարգսի եւ Պր. Յոհաննիսի, մնալ միշտ ի փառաւորդ տաճարին Աստուծոյ, Ս. Փրկիչն, ի վայելումն Աստուածապարգեւ զաւակացն իւրեանց Ներսիսի եւ Գրիգորիսի։ Կատարեցաւ ի թվականին Չ.Ի.Բ.»։

1 Խաչ եւս, շղթայով, կուրծքէ կախելու, ոսկիէ, ականակուռ։ «Օրհնեալ է փայտ սուրբ. Յիսուս յորժամ խաչիւ ծագիս լոյս փառաց քոց, ողորմութիւն քո տեսցէ զծառայ քո ՅՈՀ, զորդի տեառն Սասիկայ։ Թվ. Չ.Ժ.Թ.»։

1 Խաչ եւս։ «Յիշատակ է Ս. Խաչս Թադէոս Աբեղին, որ է մասն Ս. Առաքելոյն Բարթուղիմէոսի»։

1 Խաչ եւս։ «Ի Խաչափայտէն է, ու ի տապանակէն, Ս. Թորոսի մասն է, Ս. Ստեփանոս Նախավկայի ակռան է, Ս. Գրիգոր Լուսաւորչին մասն է, Ս. Կոզմայի ու Դամիանոսի բժշկապետաց մասն է»։

1 Խաչ եւս. բիւրեղեայ, երկու թիզ երկայն, եւ մէկ թիզ ու չորս մատն լայն, քառաթեւ։ Աւանդաբար կ'ըսուէր թէ «Տրդատայ դրօշակն էր, կամ դրօշակին հետ հանդիսաւորութեանց օրերը կը բարձրացնէին զայն»։

կային բազում անծանօթ մասունք եւ խաչք եւս եւ ձեռագիրք ի Ս. Սարգիս եկեղեցին, ինչպէս եւ ի միւս եկեղեցիս, այլ ես չժամանեցի տեսնալու եւ գրելու, բացի հետեւեալներէն։

1 Աւետարան. Գօշօշ անուանեալ։

«...Եղեւ գրաւ գրութեան սորա ի Թուաբերութեան Աբէթեան գրոհի, Զ.Հ.Դ. եւ ի գալստեան կենարարին մերոյ ՌՅԺԶ (1316)։ Իսկ յելանելոյն Նախնի մարդոյն յանուշակ վայրէն Ց.Զ.Ղ.Ը...»։

«...Գրեցաւ տառս Աստուածային...աւետարանս... ի վանս կոչեցեալ Ս. Կիրակոսի եւ մաւր նորին Յուղիդայ։ Ի Հայրապետութեան տեառն Լեւոնի... Աղաչեմ խնամով եւ զգուշութեամբ պահել, եւ զստացողք սորա զՄխիթար քահանայ եւ զորդի սորին զՍիմէոն քահանայ, եւ զհարազատ եղբարքս զՅովհաննէս եւ զԳրիգորիս եւ զՏաւնիկն, այլ եւ զդեռաբողբոջ մանկունս սոցա զԱհարոն դպիր եւ զՄովսէս, եւ զազգայինսն մեր զամենայնսն որ այժմս կան, եւ զգնացեալսն առ Քրիստոս՝ յիշել... եւ զերջանիկ վարդապետն մեր զԲարսեղ, որ զյիշատակարանս չինեաց... Նաեւ զեղկելի ոգիս զհետնեալս զՆերս՟ գրագիրս, որ բազում աշխատանաւք եւ ջանիւք գրեցի զսա ի ստոյգ եւ յընտիր աւրինակէ որ ի Կիլիկիա յերկիրն, Արքայեղբայր անուն կոչեցեալ Յոհաննէս եպիսկոպոս, որ իւրովք ձեռաւքն էր գրեալ լաւ եւ ընտիր աւրինակէ...»։

1 Աստուածաշունչ. Երեքիջեան, բոլորագիր, պատկերազարդ, ոսկէնկար, մագաղաթ։

Գ Աւետարան.

«... Եղեւ աւարտումն Ս. Աւետարանիս ի Թվա. Հայկազն տումարիս Զ. Լ. Ը. յԱստուածազարդ հայրապետութեան տեառն Կոստանդեայ Հայոց կաթուղիկոսի, եւ ի Քրիստոսապսակ Թագաւորութեանն Հեթմոյ, եւ յարժանապատիւ եպիսկոպոսութեան սրբասէր եւ Աստուածամեծար արք եպիսկոպոսիս մերոյ Տէր Ներսէսի. բայց գրեցաւ Աւետարանս ի գաւառիս Եկեղեաց ի մայրաքաղաքին Երզնկայ, ձեռամբ... գրչի Պետրոսի... քահանայի. Նաեւ տեղի հանգստեան մերոյ՝ յորում գրեցաք, է դուռն Սեւաստու, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի, մաւր բանին Աստուծոյ. եւ ստացայ զսա ինձ ի մխիթարութիւն կենաց եւ ելիցն յաշխարհէ յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց...»:

—Այլ յիշատակարան. «... Ի Թվա. Հայկազ. տումարիս Զ. Խ. Է. Ես Նուաստ ծառայս Աստուծոյ Հաղիա ստացայ զՍուրբ Աւետարանս յիմ հալալ ընչից եւ եդի ուխտ ի Ս. Կիրակոս. որ կենայ ի վանքն ինձ յիշատակ եւ ծնողաց իմոց հաւր իմոյ Հայրապետին, եւ մաւրն իմոյ Թամազիզին...: Ես առաջնորդ Ս. ուխտիս Ստեփաննոս կրաւնաւորս սահմանեցի որ ամէն տարի Համբարձման աւրն պատարագ մի Հաղիային լինի անպատճառ, ու գիրքս ոխվ կենայ ի վանքըս. եւ մի (ոք) իշխեսցէ զսա ծախել. գըրաւ դնել. կամ աւժտել, այլ կացցէ սա ի Ս. ուխտս յիշատակ աստուածասէր տիկնոջըն Հաղիային եւ ծնողաց իւրոց... աղաչեմ... յիշել զգծողս Վարդան, որ յետին յիշատակն գրեցի»:

## Ս. ՅԱԿՈԲ ՎԱՆՔ ԿԱՅԻՓՈՍԻ

### 1 Մաշտոց.

«Աւարտեցաւ Ս. տառս, որ այժմ Մաշտոց կոչի Բոլոր. ի յամի Ռ. Ժ. Է. ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի տաճարին եւ Ս. Սարգսին եւ Ս. Փրկչին. ի գաւառն ի Մէլտինի. ի գիւղն ի Համուսի, ի յերիցութեան Գրիգորի Տէր Թորոսեան, եւ ի կաթողիկոսութեան Տէր Խաչատուրին, եւ յեպիսկոպոսութեան Տէր Գրիգորին, եւ ի թագաւորութեան Սէլումին...։ Ո՜վ եղբարք, որ սիրով կարդայք եւ կարդալ տայք, նա զվարձըս ի Քրիստոսէ առնուք, եւ զգրոցս շնորհըն եւ օրհնութիւն. եւ որ հակառակի եւ ոչ կամենայ որ կարդան. նա մասն եւ շնորհըս ոչ առնու ի յայս... գրոցս... յիշեցէք զԳրիգոր գծողս եւ հայրն մղդսի Փալատն. եւ որդիք զԹորոս երէցն եւ Մարտիրոս սարկաւագն. եւ Յոհաննէս սարկաւագն. եւ երիցակին զէրամուհին...»։ Յիշատակ է բոլոր Հայր Մաշտոցս Թամուրին, եւ հաւրն Ադէմին, եւ մաւրն Մղդարին, եւ եղբաւրն Նիրակոսին, Պետրոսին, Մարտիրոսին, Ալթունին, Այդամուրին, Յակոբին, եւ Ջոջ պապուն Պողոսին եւ քրոջն Մարթային, եւ կնոջն Պաղդադին, հարսին Շահամտանին. (որք) գնեցին իւրեանց հալալ վաստակոց յիշատակ ի գիւղն ի Աղջախալան ի դուռն Աստուածածնին եւ ի Ս. Սարգսին. Թվ. Ռ.Ի.Ա.»։

# ԿԱՄԱԽ

## Ս· ԹԱԴԷՈՍ ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔ (*)

### Ա· Մասունք և ձեռագիրք·

1 Աջ· Ս· Թադէոս Առաքելոյն, արծաթապատ։

1 Ծնօտ Ս· Թադէոս Առաքելոյն, արծաթապատ։

1 Աջ· Ս· Լուսաւորչին, արծաթապատ։

1 Աջ· Ս· Արիստակիսի, եւ մատն, արծաթապատ։

1 Դեղթափ անուանեալ քար· քանդակարուեստ· (տես յերես 57)։

1 Աստուածաշունչ· ընտիր, բոլորագիր, մագաղաթ։— Ի վերջն հին կտակարանին գրեալ «··· Արդ ես տրուպս եւ եղկելի· Յոհաննէս անուն իմ յորջորջի· որ ձեւ ունիմ քահանայի· եւ ի բարեացեմ խիստ հեռի, կենաց հացին փափաք ունի, որ է բան տեառն իմ Յիսուսի, յոյժ բաղձանաւք զսա գրել տուի, ի գիւղաքաղաքն որ Կրակայ կոչի· ընդ հովանեաւ Ս· Գրիգորի· ձեռամբ Կոստանդին քահանայի··Չ·Հայոց Թուի·Կ· եւ Ջ· անցեալ ամի· ի հայրապետութեան տեառն Կոստանդի· Հայոց մեծաց հեղինակի· ի թագաւորութեան Հայոց Աւշնի, բարեպաշտի եւ յոյժ հեզի· Արդ ես նուաստ յամենայնի· ծնունդ մալեալ ժամանակի··· հայցեմ արէք զիս արժանի յարտասուելոյն ժամանակի· ձեզ լէ տէրն բարի, թողցէ զյանցանս իմոյ պարտի· նաեւ իմոցն ամենայնի· փոխեալքն· որ

---

(*) Թադէոս առաքելոյ վանքն կը կոչուի նաեւ Ս. Աւագ վանք եւ Ս. Լուսաւորչի Անապատ։

կան եւ որ լինի․ եւ հայրն իմ Սիրունի, եղբայր իմոյ Առաքելի․ եւ Կիրայի ճգնաւորի մայր ըստ մարմնոյ մեր պանծալի․ Եղբայրկանն իմ Յոհաննէսի, եւ Մարուգէ կըրաւնաւորի․ եւ Յոհաննէս քահանայի, ըզ զաւրինակն շնորհողի... բարեմիտ քեռն իմոյ հեզի եւ որդեկաց իւր ըստ կարգի, Վասլի, եւ Յոհաննիսի, Սիմէոնի եւ Առաքելի, տացէ նոցա Տէր կեանս բարի, երկայնաւրեայ յայսմ աշխարհի․ Ապէնիազ ատէրն բարի, ամենեցուն ողորմեսցի, եւ նմա փառք յեկեղեցի....։

— (Այլ գրով)․ — «Շնորհաւք ամենակալին Աստուծոյ... եւ աջողութեամբ սուրբ Տիրամաւր Աստուածածնին, Ս․ Կարապետին, եւ Ս․ Առաքելոցս, եւ աղաւթիւք Ս․ երջանիկ բաբունապետին Յովանիսի եւ նորին աշակերտի Ստեփանոսի եւ Յոհան եպիսկոպոսի, եւ համաւրէն սրբազան եղբարց մերոց որ կան ի յայսմ լաւրանիս, որոց անուանք սոցա գրեալ են եւ գրին ի դպրութեան կենաց․ ի մեծամեծաց մինչեւ ցփոքունս․ որ անդադար աղաւթիւք բաղխեն զդրունս ողորմածին եւ բարերարին Աստուծոյ։ Ես... վերջինս ի գրոց աշակերտաց, Եզեկիէլս, եւ իմ հոգեւոր որդեակ Սիմէոն ցանգացող եղաք այս սուրբ Աստուածաշունչիս հին եւ նոր կտակարանաց, եւ բազում փափաքանաւք եւ ջանիւ ստացաք զսա եւեդաք ի սուրբ Անապատս ի յԱւագ վանք ....։ Յիշեսջիք զծերունի, զմաքրամեղս, զհեզահոգի եւ զընտրեալ զԹադէոս քահանայն եւ զպարկեշտ եւ զբարեմիտ ամուսինն իւր... զմեր հոգեւոր ծնողսըն, որ եւ նոքա աշխատ եղեն ի գինս Ս․ գրոցս, եւ զիւրեանց հոգւոյ բաժինն յիշա-

տակեցին ի Ս. Աստուածածնչիս... յիշեցէք զԽաւճա Սուլթանշահն եւ զիւր որդին զԽաւճա Պակին զԱմասացին, որ կամեցան եւ շարաւաթով վաճառեցին. Աստուած յիշէ զնոքա ի բարին»:

1 Աւետարան եւս:

«... Գրեալ յԱւագ վանք... ի Թվ. Ջ. Լ. Գ. աւուրս երջանիկ րաբունապետին, Ցոհաննէս վարդապետի. եղեալ յիշատակ ի Ս. Անապատիս. յիշեսջիք զԱռաջնորդ Ս. ուխտիս զՊաւղոս հայրպետն... եւ զԱռաքել գրչակս...:

1 Աւետարան եւս.

«... Գրեալ ի Թվականի յեղանական շըր-
ջագայի,
Արեգական ստորինջի, յերկնից յերկիր տես-
լեամբ հայի,
Զափեալ յեւլիցն որ յԱդենի յԱդամայեան
ծնեալ զարմի,
Ի Ռ.Լ.Դ. ամի... ի գաւառիս Սեբաստիոյ
ի գիւղս որ կոչի Ճանճի,
Ընդ հովանեաւ Ս. Յակոբայ եւ Ս. Պաւ-
ղոսի...»:

— (Այլ գրով). — «Յիշատակ Ս. Աւետարանս Ծառուկին, իր կողակցին, իր որդւոցն, գնեց ի հալալ արդեանց, եդ յիշատակ ի դուռն Ս. Գէորգայ, գեղն որ կոչի Զաքարեայ... ով յանդգնի զայս ծախէ կամ գրաւէ, ԳՃ. ԿԶ. հայրապետացն, ԲԺ. Առաքելոցն կապած լուծ կենայ...: Ծառուկ զսա ԻԴ. ֆլորի ետ գնեց...»:

1 Աւետարան եւս.

— Անյիշատակարան եւ անթուական:

1 Աւետարան եւս.

«... Գրեալ ի լուսնալրական ժամանակի սկզբանց Արարչութեան մինչեւ առ մեզ Ց. Ջ. Խ. ամ. իսկ ի կենարարին գալստենէն Ռ. Մ. Ղ. Գ. իսկ Խոսրովայն Պարսից մերս թիւ Ջ. Խ. ... ի մայրաքաղաքս եւ յաստուածապահ գղեակս որ կոչի Սիս, ձեռամբ Ցոհաննիսի քահանայի, ընդ հովանեաւ Ս. Նշանիս, ի դառն եւ ի նեղ աւուրս...»։

Ասա կը պատմէ Աքեայի պաշարումն և Քրիստոնէից կոտորած. եւն։ Եւ ապա կը յարէ. «Արդ գրեցաւ աւետարանս աստուածաշէր եւ բարեպաշտ եւ ողորմած եւ հաւատացեալ Պարոն Միխայլի, որ ետ գրել զսա ջերմեռանդն սիրով եւ մեծաւ փափաքանաւք ի յարդար վաստակոց իւրոց յիշատակ... ի վայելումն հոգեւոր որդւոյն իւրոյ Կարապետին, սուրբ եւ ընտրեալ առաքինասէր քահանային, ի տաճար Ս. Աստուածահաւրն Դաւթի առ ի յիշատակել զինքն եւ զծնողսն իւր...»։ Այլ գրով.

«...Ս. Աւետարանս կայր գրաւական, նա կու ծախէին վասն դառնութեան ժամանակին ի թագւորի դրամ ՃԾ. նա Սմբատ երէց էառ. ու ասաց ծխերուն թէ կուտամ ես զԾ. դր. ու զԾ. դուք ձեր հոգուդ տուք, որ մնայ Ս. Աւետարանս Ս. Դաւթայ զէտ որ էր յառաջն, եւ յաւժարութեամբ ամէն աւրհնեալ ծխերուս սրտի տուին զԾ. դր. իրենք, ու զԾ. ես Սմբատ երէցս, ու առաք զաւետարանս որ մնայ յաւիտեան Ս. Դաւթայ, ի յիշատակութիւն Սմբատ երիցու եւ...»։

— Այլ գրով — . «Սռաջնորդութեամբն Աստուծոյ ես Մովսէս երէցս եդի զՍ. Աւետարանս յԱւագ վանքն ի յիշատակ ինձ եւ

հաւրն իմոյ մղտեսի Ամիրպէկին, եւ ծնողին իմոյ Ասան մելիքին, եւ երէցկնոջն Ուստիանէ եւ որդւոյ իմոյ Անանիա դպրին, եւ ամենայն արեան մերձաւորաց իմոց անջնջելի յիշատակ . . . ի Թվ. Պ.Ծ.Զ. . . .»։

## Վ Աւետարան եւս.

.... « Ցանկացող Ս. Աւետարանիս ոմն ի կանանց Համանգուլ անուն հաւատաւոր եւ ապաշխարող կուսամանուկ գոլով ի տղայութենէ ետ գրել զսա .... յիշատակ .... հաւրն իւր Յովանիսին եւ մաւրն իւր Խոնթ խաթունին, եւ եղբարց իւրոց Յորդանանին եւ Սարգիս դպրին, եւ ամենայն արեան մերձաւորաց, Ջուհարին, Շահանդուխտին, Եղիսաբեթին։ Գրեցաւ .... ի հրաշալի Այրիվանս, ընդ հովանեաւ Ս. եւ հրաշափառ եւ չնորհաբաշխ աջոյն Յովհաննու Մկրտչին եւ Ս. Յակոբ բարեխաւսի, զոր բերեալ հրեշտակն ի Նոյեան տապանէն. եւ այլ բազում սուրբ նշանացս որ աստ կան։ Գրեցաւ լուսազարդ մատեան ի Թվ. Հայոց Ջ. եւ ԽԲ. ի հայրապետութեան տեառն Սարգսի ի յաթոռն Ս. Էջմիածնի, ի ղանութեան Ռուստում բէկի, նեղիմք.... ի դառն եւ ի նեղ ժամանակիս, ոչ գտանելով հանգիստ վասն ծովացեալ մեղաց մերոց։ Գրեցաւ ձեռամբ Ստեփանի.... խարէբայի եւ ոչ աբեղայի, եւ եղբաւրն իմոյ Հայրապետի եւ գրոց աշակերտի, եւ յառաջնորդութեան Ս. ուխտիս Տ. Յովանիսի եւ եղբաւր նորին Տ. Ստեփանոսի եպիսկոպոսի, որ .... ի նոյն ամի փոխեցաւ ի Քրիստոս. եւ յաջորդ նոցին Տէր Բարսեղ եպիսկոպոսի, որ է թոռն մեծին Պռաւշայ»։

1 Մայր Մաշտոց.

...«Գրեալ ի Ս. Անապատն Խարտիչարայ վանք, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Ս. Կարապետին եւ Ս. Սարգսի զաւրավարին. ի Թուա. Հայոց Ջ. Խ. Զ. Աւգոստոս ամսոյ ԻԲ. առ ոտս Ստեփաննոս քաջ րաբունապետի եւ իւր եղբաւրորդւոյն Յովհ. հայրապետին... յիշեցէք.... զԿիրակոս կրաւնաւոր փծուն գրիչս....»: —Այլ գրով—... «Ես Ստեփաննոս աբեղայս գնեցի զՀայր մաշտոցս եւ եդի յիշատակ ի հաչակելի Անապատն. որ կոչի Աւագ վանք....»:

1 Սաղմոս. ընտիր, մագաղաթ:

...«Գրեցաւ ի Թվականին Հայկազնի. ի Ցոբելեան տասն եւ ութի, ի Դ. Ժ. եւ հինգն աւելի, ի յԸնկեղեացս գաւառի, ի վանքս այս որ Կայ-ի-փոսի, ի դրունքս այս գովելի, Ս. Յակոբի եւ Ս. Սիոնի, առ ոտս մեծ րաբունապետի, Յովանիսի քաջ Հռետորի, ի յառաջնորդութեան այս Ս. Ուխտի Տեառն Ներսէսի մաքրամտի. եւ միեղէն եղբարցս բարի, բոլոր վանիցս աբեղայի, որ քան զերսուննն են աւելի, հաճոյական ծառայք բարի. այլ եւ զստացող այս Ս. Կտակի զՏէր Կիրակոս հեզահոգի ... ձեռամբ իմով գծագրեցի ես Հայրապետս մեղաւքս ի լի... ողորմի ասացէք Կիրակոս սուտ կրաւնաւորիս... հաւրն իմոյ Թորոսին եւ մաւրն իմոյ Հատմելիքին. եւ եղբարցն իմոց Ստեփաննոսին եւ Խաչատուրին, եւ հաւրեղբարցն Վրթանիսին եւ Հարապետին, եւ մաւր քուերցն Կիրայ խաթունին եւ Շնորհւորին. եւ մաւր եղբարցն Տէրտուրին. եւ...»:

հաւրն իմոյ մղտեսի Ամիրպէկին, եւ ծնողին իմոյ Ասան մելիքին, եւ երէցկնոջն Ուստիանէ եւ որդւոյ իմոյ Անանիա դպրին, եւ ամենայն արեան մերձաւորաց իմոց անջնջելի յիշատակ... ի Թվ. Պ.Ծ.Զ...»։

Վ Աւետարան եւս.

....«Ցանկացող Ս. Աւետարանիս ոմն ի կանանց Համանգուլ անուն հաւատաւոր եւ ապաշխարող կուսամանուկ գոլով ի տղայութենէ ետ գրել զսա .... յիշատակ .... հաւրն իւր Յովանիսին եւ մաւրն իւր Խոնթ խաթունին, եւ եղբարց իւրոց Յորդանանին եւ Սարգիս դպրին, եւ ամենայն արեան մերձաւորաց, Ջուհարին, Շահանդուխտին, Եղիսաբեթին։ Գրեցաւ .... ի հրաշալի Այրիվանս, ընդհովանեաւ Ս. եւ հրաշափառ եւ շնորհաբաշխ աջոյն Յովհաննու Մկրտչին եւ Ս. Յակոբ բարեխաւսի, զոր բերեալ հրեշտակն ի Նոյեան տապանէն. եւ այլ բազում սուրբ նշանացս որ աստ կան։ Գրեցաւ լուսազարդ մատեան ի Թվ. Հայոց Ջ. եւ ԽԲ. ի հայրապետութեան տեառն Սարգսի ի յաթոռն Ս. Էջմիածնի, ի ղանութեան Ռուստում բէկի, նեղիմք.... ի դառն եւ ի նեղ ժամանակիս, ոչ գտանելով հանգիստ վասն ծովացեալ մեղաց մերոց։ Գրեցաւ ձեռամբ Ստեփանի.... խաբեբայի եւ ոչ աբեղայի, եւ եղբաւրն իմոյ Հայրապետի եւ գրոց աշակերտի, եւ յառաջնորդութեան Ս. ուխտիս Տ. Յովանիսի եւ եղբաւր նորին Տ. Ստեփանոսի եպիսկոպոսի, որ .... ի նոյն ամի փոխեցաւ ի Քրիստոս. եւ յաջորդ նոցին Տէր Բարսեղ եպիսկոպոսի, որ է թոռն մեծին Պուաւշայ»։

1 Մայր Մաշտոց.

...«Գրեալ ի Ս. Անապատն Խարտիշարայ վանք, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Ս. Կարապետին եւ Ս. Սարգսի զաւրավարին. ի Թուա. Հայոց Ջ. Խ. Զ. Աւգոստոս ամսոյ ԻԲ. առ ոտս Ստեփաննոս քաջ րաբունապետի եւ իւր եղբաւրորդւոյն Յովհ. հայրապետին... յիշեցէք.... զԿիրակոս կրաւնաւոր մծուն գրիչս....»: —Այլ գրով—... «Ես Ստեփաննոս աբեղայս գնեցի զՀայր մաշտոցս եւ եդի յիշատակ ի հաշակելի Անապատն. որ կոչի Աւագ վանք....»:

1 Սաղմոս. ընտիր, մագաղաթ:

. . . «Գրեցաւ ի Թվականին Հայկազնի. ի Յոբելեան տասն եւ ութի, ի Դ. Ժ. եւ հինգն աւելի, ի յԵկեղեցացս գաւառի, ի վանքս այս որ Կայ-ի-մոսի, ի դրունքս այս գովելի, Ս. Յակոբի եւ Ս. Սիոնի, առ ոտս մեծ րաբունապետի, Յովանիսի քաջ Հռետորի, ի յառաջնորդութեան այս Ս. Ուխտի Տեառն Ներսէսի մաքրամտի. եւ միեղէն եղբարցս բարի, բոլոր վանիցս աբեղայի, որ քան զերսուննն են աւելի, հաճոյական ծառայք բարի. այլ եւ զստացող այս Ս. Կտակի զՏէր Կիրակոս հեզահոգի ... ձեռամբ իմով գծագրեցի ես Հայրապետս մեղաւքս ի լի... ողորմի ասացէք Կիրակոս սուտ կրաւնաւորիս... հաւրն իմոյ Թորոսին եւ մաւրն իմոյ Համմելիքին. եւ եղբարցն իմոց Ստեփաննոսին եւ Խաչատուրին, եւ հաւրեղբարցն Վրթանիսին եւ Հարապետին, եւ մաւր քուերցն Կիրայ խաթունին եւ Շնորհւորին. եւ մաւր եղբարցն Տէրտուրին. եւ...»:

1 Յայսմաւուրք․

․․․ «Յիշատակ Հազար բէկին եւ ամուսնոյն իւրոյ Թուրուանդէին․ եւ ծնողաց իւրոց Ռուրթէլին եւ Քաֆուրին․ Կիրակոսին եւ Խաթուն մէլիքին․ եւ ծնողացն Ստեփաննոսին եւ Շողմէլիքին․ եւ եղբաւրն Մխիթարին, եւ ․․․ գրիչն Աստուածատուր, ի Խլաթ քաղաքի, ընդ հովանեաւ ժԱ․ խորանացս, յամի Գ․ եւ ՂԴ․ Թուականի․ յաշխարհակալութեան Նետողաց ազգի Չընխան (Չըհան խան) Շահ Ամիրզին Թուրքմանին․ եւ ի Նոր Հայրապետութեանս Հայոց Տեառն Կիրակոսի Էջմիածնի կաթողիկոսի ․․․»։

«Աստուած ողորմի Հազարբէկի դստերն Գոհարին եւ քուրուըրացն Նազխաթունին եւ Թաճխաթունին։ Քրիստոս Աստուած պահէ զքահանայս եւ զտանուտէր եւ զռայիս գեղջիս Աղւայ (Աղի), զմեծ եւ զփոքր առ հասարակ, որք կամեցան եւ զՍ․ Ովաննէսն շինեցին վանք, որ ի վաղուց ժամանակէ հանգեալ էր ․․․ Դարձեալ մին այլ բարութիւն արարին, որ Ս․ Ովանիսին արտ մի տուին լուսագին, որ իւրեանց հոգուն եւ իւրեանց ննջեցելոցն յիշատակ կենայ վանիցն որդւոց յորդիս առանց Ջրելոյ ուխտին հարցն եւ պապանցն, որ միաբան կամեցան եւ ետուն ըզպտուող եկեղեցւոյ զոր շինեցին եւ հաստատեցին վկայութեամբ ինքեանք ձեռագրովս այս ի պարոնէն եւ ի տիւանէն ․․․ Ամիրայն եւ տիւան եւ Սեւատարն ․․․ ոխւ էրին նալաթով, որ ․․․ ձեռն ի վրայչտանի խլելով․ եւ սեւերես լինի ․․․»։

«Ես Սարգիս վարդապետս Էջմիածնին, որ նուիրակ էկաք․ առաջի իմ վկայեցին քահանայք եւ ռայիս եւ տանուտեարք գիւղիս

Պռաւյ, որ զայն արտն տուեր են միաբան եկեղեցւոյս յիշատակ իւրեանց հոգւոյն...»։ (Այլ եւ այլ յիշատակարանք եւս)։

— Յաւելուած ի նոյն յայսմաւուրք —

Նահատակութիւն Յօհաննու եպիսկոպոսին ի քաղաքն Բաղէշ։

«Յամին ինն հարիւր եւ տասներորդի եւ երկրորդի թուակ. Հայոց, որ էր յերկրէն Հայոց ի գաւառէն Մշոյ, ի նոյն ցեղէն մերմէ Արմենայ, Աստուածային ընտրութեամբ կարգեալ տեսուչ եւ վերակացու ուխտի Ս. Կարապետին Գլակայ վանացն իննակնեայ, շինող եկեղեցեաց եւ հանգստարանի Ս. Կարապետին եւ մեծ կաթուղիկէին Ս. Ստեփաննոսի. Տըմլիկք (ցեղ մի քրդաց) մատնեալ են զնա իբր քակող մզկիթին եւ քարամբ նորա շինեալ զկաթուղիկէն, առաջի գաւառապետին Մշոյ Խալիլի. եւ սա յուղարկէ առ ամիրայն Մէլիք-Շարափ ի Բաղէշ, ուր վըկայութեամբ նահատակի»։

## Ս. ՏԱՃԱՐ ԹՈՐԴԱՆԱՑ

### 1 Մայր Մաշտոց.

...«Գրեալ ի գաւառին Տիվրիկոյ, ի վանք որ կոչի Աւթմիա, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնիս, ձեռամբ... Ներսիսի, ի թուակ. Հայոց Զ. Ղ. Է. ի սեպտ. Ժ. Արդ աղաչեմ չմեղադրել սղալանացս...՝ քանզի տեսանէաք զբազում դիակունս մարդկան մեռեալս առաջի մեր, եւ ցնդէր միտս իմ իբրեւ զվայրենագնաց գազան եւ հազիւ առիս ժողովէի յերկիւղէ մահուն, եթէ ոչ ժամանէի յաւարտումն տառիս. քանզի առ մեզ այլ եհաս ի ցաւոց տարաժամ մահուան, այլ ներողութեամբն Աստուծոյ զերծաք...»։

1 Աղօթ.ք եւ խրատ.ք.

Անյիշատակարան եւ անթուական։

1 Գանձարան.

... «Գրեալ ի Ս. Անապատն... Աւագ վանք... Թվ. Ջ. Լ. ...» —Այլ գրով—. «Ես Առաքել աբեղայս գծագրեցի ձեռամբ խմով զԳանձ տետրս, եւ ընծայեցի Ս. Լուսաւորչին ի լեառն Սեպուհ, յիշատակ հաւրն իմոյ ռայիս Փիլիպպոսին եւ ..»։

1 Ժամագիր.ք.

... «Ես անարժան... Յոհաննէս երէցս եւ Աստուածատուր սարկաւագս գրեցինք զՍ. Գիրքս Յադամին, Ղասումին յիշատակ իւրեանց տոհմին խաչնդուս կրաւնաւոր Թումանն. Թվին Ռ. Կ. Է. էր ամէն»։

# ԱԿՆ

## Ս. ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑԻՆ

1. Աւետարան. Սասունցի (*) ըսուած, մեծագիր, երկաթագիր, ընտիր։

«ԱՄԵՆԱՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆՆ ՓԱՌՔ։ ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՈՒԱԾ. յորժամ գայցես փառաւք Հաւր

(*) Սոյն Աւետարան Ակնայ Ս. Փրկչայ վանքէն է, ապահովութեան համար քաղաքը բերուած։ Բուսական Ծըւով Աւետարան կը գտնուի, զորս կ'անուանեն «Սասունցի Աւետարան». ի Սասուն գրեալ լինելուն կամ Սասունցի աւետարանէ մը գաղափարելուն համար։ Ամէնքն ալ հըրաշագործ հռչակեալ։ Իմ տեսածներէն ամենէն շքեղն է Ապուչեխի եկեղեցւոյն «Սասունցին»։

եւ բիւրաւոր զաւրաւք հրեշտակաց, յահադին աւուրն ի դատել զերկիր յայնժամ աւգնեա՛ աղախնոյ քո Կամային, եւ փրկեա ի հրբեղէն գետոյն սպառնալեաց, եւ արժանի արա՛ ընդ իմաստուն սուրբ կուսանացն մտանել ի յառագաստն եւ տալ փառս Ամենասուրբ Երրորդութեանդ յաւիտեանս յաւիտենից:

Փառք անսկզբնական եւ էական գերագոյ գոյութեանն եւ անքակ միութեանն եւ բնաւոր Աստուածութեանն, ինքեան միայն ելով հաստութեան յաւիտեանս ամէն:

Ի ձիր շնորհի սորա յուսացեալ աւգնութեամբ Երրորդութեանն սկսայ եւ ողորմութեամբ Նորին կատարեցի զՍուրբ Աւետարանս, ի Հայրապետութեանն Տեառն Ներսէսի Հայոց կաթուղիկոսի եւ ի տէրութեան Սասնոյ Վիգենոյ մեծի Պաստուէլէկսիմոսի որդւոյ Զորսուանէկլի Թոռն Թոռնկայ մեծի հըզաւրի եւ քաջի, որ բնիկ յԱստուծոյ հաստատուն հիմնակառուցեալ ունի զաթոռ հայրենի տէրութեան իւրոյ, եւ ի թուականութեանս Հայոց ի Ո. Ժ. Ը. Հրամանաւ երանելի եւ Քրիստոսասէր Թագուհւոյ Մելէքսեթոյ ամուսնոյ Վիգենոյ, որ է յազգէ Արծրունի եւ ի շառաւիղէ սրբոյն Վարդանայ դստեր մեծ իշխանին Մոկաց՝ Հմայեկի. իսկ բարեացապարտն երից երանեանն Վիգէն եւ ամենայն աւրհնութեանցն արժանի երանելի աստուածասէր Թագուհին, սոքա ըստ ազնուականութեան հայրենի պատուոյն եւ ըստ աստուածային աւրինացն գեղեցիկ քաղաքավարութեամբ կացեալ առ միմեանս և զամենայն աւրինակ բարեպաշտութեան յանձինս իւրեանց բերելով եւ զարդարող ոչ միայն մարմնաւոր մեծութեամբ այլ և հոգևոր փար-

Թամնութեամբ աստուածպաշտութեամբ. զի երանելի Վիգէն զխաղաղութեան զհետ երթեալ ըստ տէրունական բանին, որ ասէ «Երանի է խաղաղարարաց զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին» եւ զաշխարհաշինութեան-զարդար-դատողութեան. խրատելով զստահակսն-դատ առնելով-զրկելոց, աւգնական լինելով-նեղելոց- եւ ապաւէն ամենայն փախուցելոց, շինելով զեկեղեցիս-Աստուծոյ-եւ զարդարելով-ամենահրաշ սպասուք եւ զարդուք, եւ զքահանայս Աստուծոյ պատուելով. եւ մեծարելով եւ զկեանս նոցա դարմանելով եւ յամենայնի առաջին սուրբ Նահապետացն եւ թագաւորացն նմանեալ. որք զպատուիրանս Աստուծոյ պահեցին եւ հաճոյ եղեն նմա. եւ ի վերայ այսր ամենայնի զողորմածութիւն եւ զսէրն ունելով որ է գլուխ ամենայն առաքինութեան:

Նոյնպէս եւ երանելի թագուհին զամենայն առաքինութեանց զհետ երթեալ, եւ զարդարեալ ոչ միայն ի հիւսս ոսկեմանս ընդելուզեալ մարգարտով եւ ականբք պատուականաւք, կամ ի հանդերձս ոսկեհուռս հպարտացուցանողս զմիտս կանանց թագաւորազանց, այլ սա զկնի մարմնական մեծութեան՝ ստացեալ եւ զհոգեւոր առաքինութիւն, զսրբութիւն, զհամեստութիւն զխոնարհութիւն, զպահս սրբութեան եւ զաղաւթս հանապազորդս, եկեղեցեաց զարդարիչ եւ քահանայից յանձանձիչ, որբոց եւ այրեաց խնամածու, զմերկս զգեցուցանելով եւ զքաղցեալս կերակրելով. եւ այլ բազում առաքինութեամբ, ըստ աւրինակի առաջին սրբոցն որ ընթացան զկնի Քրիստոսի կոչմանն եւ առաքելական քարոզութեանն, որպէս ասէ Պաւղոս — փողն Տարսոնական — անաւթն

ընտրութեան, քարոզն տիեզերաց, յուսուցանելն իւրում, եթէ կանայք հնազանդ լերուք արանց ձերոց յամենայնի իբրեւ Տեառն. և Արք սիրեցէք զկանայս ձեր իբրեւ զանձինս ձեր: Իսկ ամենագով երանելիքս ըստ առաքելական խրատու և ըստ Քրիստոսի պատուիրանացն, սուրբ և պարկեշտ ամուսնութեամբ կացեալ առ միմեանս որպէս զմի մարմին, եւ ծնեալ ուստերս լուսածաղիկս եւ դստերս գեղեցկատեսիլս, եւ սնուցեալ խրատու եւ ուսմամբ, կրթելով զնոսա յերկիւղ Տեառն եւ ի հրահանգս բարեպաշտութեան. ապա ոմանք ի զաւակաց նոցա յառաջագոյն փոխեցան յաստեացս ի հանդերձեալն, իբրեւ զպտուղ ինչ նոր յառաջին արմտեաց ընծայ Տեառն մատուցեալ, յորոց մինն Գրիգորիոս ճանաչիւր, եւ այլոց անուանքն գրեալ են ի դըպրութեան կենաց. եւ սուղ ինչ զվախճան նոցա արտասուեալ եւ գոհութիւն Աստուծոյ մատուցեալ, վասն ընդունելոյ զպտուղ որովայնի նոցա: Ապա զկնի այսորիկ աստուածապաշտ կարգաւք ուրախացեալք բարեկարգութեամբ վարէին զիշխանական տէրութիւն իւրեանց, հանդերձ միացեալ որդւովն — զերից երանեան եւ զամենագովելին ասեմ — զՋորտուանէլն, զԳեղեցիկն, զբարետեսիլն, զգանգրահերն, զխարտիշագեղն, զլայնաթիկունքն, զհաստաբազուկն, զչափահասակն, զՔրիստոսասէրն, զաղաւթասէրն, զքահանայասէրն, զխոնարհամիտն, զհեզն, զերկայնամիտն, զսիրունն, զսիրեցեալն, զողորմածն առ ամենեսեան, զաւգնականն անաւգնականաց եւ զբարեխաւսն դատապարտելոց եւ զհանիչն բանտարկելոց եւ զկերակրիչն քաղցելոց: Եւ զի՞նչ թուեմ մի ըստ միոջէ, զի ամենայն շնորհաւք զարդար-

եալ էր ի հոգեւորականն եւ ի մարմնականս․ եւ այսպիսի վարուք անէր եւ իմաստնանայր եւ հնազանդ. եւ հլու էր ծնողացն եւ հպատակ հրամանաց նոցա․ եւ ոչ իբրեւ զմանուկ թագաւորազին ամբառնայր ընդդէմ, կամ բարձրամտէր, այլ ընդ խոնարհս գնջանէր. զՏէրունեան հրամանսն կատարելով թէ Որ խոնարհեցուցանէ զանձն բարձրասցի․ -և վասն գեղեցիկ վարուցն եւ լաւութեան բարուցն, ծնողքն առաւել սիրէին զնա, ապա խորհուրդ ի մէջ առեալ անեցուցանել կամելով զշառաւիղ ազգին իւրեանց․ փեսայացուցանեն զնա ընդ դուստր Վասլի եղբաւր տեառն Գրիգորիսի Հայոց կաթուղիկոսի, հզաւրի եւ մեծի, որոյ անուն վանինէ ճանաչի, որոց եկեալ առ միմեանս եղեալ իբրեւ զմի մարմին սիրունք, եւ սիրեցեալք․ եւ ըստ Աստուածային օրինացն կեցեալք ծնանին երիս որդիս գեղեցիկս եւ հրեշտակատեսիլս․ որում առաջնոյն ասի Վասիլ, իսկ երկրորդին Շահինշահ եւ երրորդին՝ Թոռնիկ․ եւ կային բարեկարգութեամբ, զուարճացեալք լուսածաղիկ զաւակաւքն։ Իսկ զկնի այսմ եղելոցս աստուածասէրն Վիգէն եւ երանելի ամուսին նորա Մելեքսաթի աւրհնութիւն ամենատեառն մատուցանէին, տեսանելով զբարեկարգութիւն տէրութեան իւրեանց եւ զաճումն զաւակաց եւ զշինութիւն աշխարհին։ Էր ապա դուստր մի իւրեանց կոյս գեղեցիկ յոյժ, զարդարեալ ամենայն բարեձեւութեամբ եւ յոյժ սիրեցեալ յաչս մաւրն առաւել քան զամենայն մանկունս իւր, որոյ անուն յորջորջեալ կոչի ԿԱՏԱ, կատարեալ հասակաւ եւ գեղեցկութեամբ, եւ ամենայն առաքինութեամբ, յորոյ անուն Ս․ Աւետարանս գրեցաւ․ զնա կամեցեալ ծնողացն իւրոյ տալ մեծաշուք

պատուով ի Թագուհութիւն Շահինշահէ որդւոյ Գրիգորի Թոռին ԿԱՏԱԿԱՂՈՍԻ որդւոյ Կամենի մեծի, ի Դեգեաց գաւառ ի մեծ ամրոցն որ կոչի Սաղուկ· որ իբրեւ երԹեալ անդ ըստ հայրենի ազնուականուԹեանն եւ ըստ մայրենի աստուածպաշտուԹեանն որով սնեալն էր· եւ անդ ցուցեալ զգեղեցիկ բարեձեւութիւնն, զսրբուԹիւնն, զողորմածութիւն, զեկեղեցեաց եւ զքահանայից հոգաբարձութիւն եւ սուրբ ամուսնութեամբ ծնեալ մանուկ մի գեղեցկատեսիլս, որոյ անուն է Շահմէլիք, զոր իբրեւ լսէին ծնողքն զնորա բարի յառաջադիմութիւնն· փառս ի բարձունս Աստուծոյ մատուցանէին· եւ ինքն երանելին չքնաղեղն կամայն գոհութիւն Աստուծոյ մատուցանէր, որ եԹող զտուն հաւր իւրոյ ի մեծութեան եւ յուրախութեան, եղբարբքն հանդերձ եւ ամենայն ընտանեաւք· եւ մինչ յայսմ ուրախուԹեան էին եւ բերկրէին ի միմեանց բարեկեցութենէ· —եւ ի շինութեան էին եւ ուրախ էին առ հասարակ ամենայն սիրելիք· հեռաւորք եւ մերձաւորք, պետք եւ իշխանք եւ ամենայն քրիստոնեայք· եւ վանաւրայք· եւ կրաւնաւորք որ ընդ իշխանութեամբ սոցա էին· ապա մեղսասէրն եւ բարի-ատեացն սատանայ նախանձեալ ընդ բարի կեանս նոցա, մտեալ յիւր սիրելիսն··· յարուցանէ պատերազմ ի վերայ տանն Վիգենայ· այլ ի զաւրուԹենէն Աստուծոյ յայտնապէս պատերազմաւ ոչինչ կարացին առնանել նմա, այլ գաղտնագողի իբրեւ զաւձ սողեալ մտին եւ աւերեցին տեղիս տեղիս ի գաւառաց նորա, եւ գերեցին բազումս ի քրիստոնէից, եւ այն էր սկիզբըն Թանձրամած ագոյն զոր ունելոց էր զմեզ եւ զնոսա եւ զամենայն Քրիստոնեայքս, եւ

զամենայն սիրելիս, զհետեւորս եւ զմերձաւորս. զի հուպ ընդ հուպ, կարճ ի կարճոյ, ի նմին ամիս յաւուրս պահոց քառասնորդացըն, ի հինգերորդում շաբաթուն, զկնի տաւնի սրբոյ Քառասնիցն, ըստ աստուածակոչ հրամանին հասանէր փախճան երանելւոյն Զօրտուանէլի ի տիս երիտասարդութեան, թողեալ չառաւիղ ազգի զլուսածաղիկ զաւակսն իւր եւ մխիթարանք ծնողաց իւրոց, եւ ինքն փոխի ի Քրիստոս առ որ անձկացեալն էր. բայց զադէտս տարակարծ գիպուածոյն եւ զփրս ամբաւ կոծոյն որ եղեն յայնժամ, զոր գործեցին հայակոյտ բազմութիւն ազատացըն, ծառայից եւ աղախնեայց եւ տիկնանց ազատաց, եւ գաւառաց գաւառաց ընդ խառըրն եկելոց ի կոծ լալեաց եւ զողբս հաւրն եւ մաւրն եւ ամուսնոյ նորա. ոչ կարեմք զգրով արկանել, բայց ի նմին ժամու ժողովեալ բազմութիւն քահանայից և կրաւնաւորաց և վարդապետաց, զպատեալ զգեղեցիկ մարմին նորա պայծառ եւ պատուական հանդերձիւք, եւ բարձեալ տարան ի հայրենի տապանատունըն իւրեանց. յուխտին. որ կոչի Վանդիր. ի դուռն Սրբոյ Կաթուղիկէին զոր շինեաց իւր երանելի հայրն Վիգէն, ինն խորանեան, եւ փոխեն զնա ի հանգիստ սաղմոսիւք եւ աւրհնութեամբ եւ երգաւք հոգեւորաւք, եւ փառաւորեալ արձակեցին զժողովուրդսն.

Գործեցաւ այս ի Հայոց թուականիս ի Ո. Ժ. Դ: Եւ մինչ յայսմ տրտմութեան էին եւ սակաւ մի զանձինս իւրեանց մխիթարել կամելով գեղեցիկ մանկամբն իւրեանց Վասակաւ եւ որդւովքն Զօրտուանէլի, ապա յանկարծակի յետ ամի միոյ անցելոյ, զկնի մահուանըն Զօրտուանէլին հասանէր նոցա տրտմումութիւն ի վերայ տրտմութեան. զի Քրիս-

տեսանէր եւ բարեպաշտուհի դուստրն իւրեանց կամայն, մինչդեռ յուրախութեան էր եւ ի մեծութեան ինքն եւ ցանկալի տէրն իւր Շահինշահն, եւ համակեալ էին ի սէր իրերաց եւ բերկրէին ի միմեանց տեսլենէ, եւ զուարճանային ընդ տեսիլ զաւակի իւրեանց. եւ ոչ էր լուեալ զմահ եղբաւրն եւ զտրտմութիւն ծնողաց՝ եւ ակն ունէր բազում ժամանակս վայելել զկեանս աշխարհիս, եւ ծնանել ուստերս եւ դստերս, ապա եղեւ նորա ժամանակ ծնանելոյ՝ ունելով յորովայնին մանկունս երկուս, եկին հասին երկունք ծննդեանն, ըստ տէրունեան հրամանին որ ասաց ցնախամայրն, թէ Տրտմութեամբ ծնցիս որդիս. եւ ի կենսաբեր Ս. Աւետարանին ասէ. Կին յորժամ ծնանիցի տրտմութիւն է նմա զի հասեալ է ժամ նորա. եւ ստիպել երկանցն զկնի ճեպէին երկունք մահուն-. եւ ի մեկնել մանկանցն եկն եհաս աւրհասն մահու, եւ ուրախութեամբ փչեալ զոգին զերծեալ ի պատրանաց աշխարհիս եւ ի զբաղմանց սորա. փութացեալ առ նաւահանգիստն Քրիստոս. եւ անդ էր տեսանել զաղէտս ամբաւ տարակուսանացն եւ զողբս անհնարինս, զկականումն պատուական եւ ազատ կանանց, զաղիողորմ արտասուս տղայոցն, զհառաչանս սիրելեացըն, զաշխարհանս բարեկամացն. զի ամենեքեան մինչդեռ յուրախութեան եւ ի հանդերձս հարսանեաց համակեալք էին. վաղվաղակի սգոյ հանդերձս զգեցեալ ի թըխութիւն դառնային. եւ այսպիսի կոծով եթանելի եւ սիրեցեալ առնն զփախճան նորա սգացեալ՝ զի ի մատաղ հասակի հրաժարեաց ի նմանէ, եւ սուղ ինչ ժամանակս բերկրեցան ի միմեանց տեսլենէ, եւ կարճակտուր եղեւ սէր նոցա. փոխի յաշխարհէս ի հան-

դերձեալն առ Քրիստոս յանվախճան ուրա-
խութիւնսն ։ Ապա առեալ զպատուական մար-
մինն պատեալ պայծառ հանդերձիւք եդեալ
ի տապանի եւ բարձեալ դասուք քահանայից
եւ բազմամբոխ ժողովրդովք տարեալ յիւր
սեպհական վանքն որ կոչի Ս․ Փրկիչ, յո-
րում բնակեալ են կրաւնաւորք միաբանա-
կեացք հրեշտակրաւնք, սուրբք և ընտրեալք
փոխեն զնա ի հանգիստ սաղմոսիւք եւ աւրհ-
նութեամբ և երգաւք հոգեւորաւք և կնքեալ
զգերեզմանն եւ մեծարեալ զաւր հանդստեան
նորա–արձակեալ զժողովուրդսն գնացին ի
տունս իւրեանց ։ Այսոցիկ այսպէս եղելոցս
լուեալ ապա երանելի ծնողացն զվախճան
դստերն, յանհնարին սուգ տրտմութեան ըն-
կղմեցան եւ նորոգեցին կեղեքումն առաջին
վիրացն, եւ յայրումն ի վերայ այրման․ եւ
մոռացան զառաջին սուգն՝ զորայս խիստ
համարելով․ զի՛ հեռաւորութեան եղեւ վախ-
ճան նորա, եւ ոչ տեսին զմահ նորա, եւ բա-
զում աւուրս սգացեալ զնա; ապա զյոյսն
Քրիստոսի առաջի աչաց եդեալ․ զմխիթարի-
չըն ամենայն սգաւորաց, զողորմութիւն Աս-
տուծոյ մատուցեալ որ ետ զնոսա, եւ դարձ-
եալ կամեցաւ առնուլ զնոսա ։ Զոր տէր Քը-
րիստոս մխիթարեսցէ զնոսա մխիթարիչ Ս․
Հոգւոյն, հանդերձեալ ՚նացեալ զաւակաւքն,
անտրտում ուրախութեամբ, եւ հաստատուն
պահեսցէ զտէրութիւն նոցա եւ յաղթող ի
վերայ թշնամեաց ազգաց յազգս մինչեւ ցյա-
ւիտեան ։

Իսկ ապա Քրիստոսասէր եւ բարեպաշտ
թագուհի մայր գեղեցիկ աստուածասէր կա-
տային բարի խորհուրդ զմտաւ ածեալ, զպա-
կասումն զաւակին ընուլ կամեցեալ, եւ զտրտ-
մութիւնն յուրախութիւն փոխեցեալ, նման-

եալ առն վաճառականին որ խնդրիցէ զպատուական մարգարիտն զոր Տէրն յԱւետարանին առակեաց. եղեալ ի խնդիր այսմ լուսաւոր մարգարտի, որ ոչ ինչ յեղելոցս փոխանակի ընդ սմա. ստացաւ զսա նիւթականաւքըս, զանանց մեծութիւնս ստացեալ, եւ յիշատակ դստեր իւրոյ ի տեղի նորա կացուցեալ, իբրեւ այն թէ զնա կենդանի տեսանելով, յորժամ զսա տեսանիցեն եւ ընթեռնուցուն: Ապա հրաման ետ ստորագրել զսա, Արիստակիսի յոքնամեղ-անուն կրաւնաւորի -անիմաստ եւ փցուն գրչի: Եւ գրեցաւ Ս. Աւետարանս ի լերինս Տաւրոսի սահմանս ՍԱՍՆՈՅ, յուխտիս, որ կոչի... ջն աղբիւր. որ է ի մէջ... աց քաղցրահամ ջուրց ընդ հովանեաւ Ս. Փրկչիս. եւ Սրբոյ Աստուածածնին, յառաջնորդութեան Տեառն Ստեփաննոսի, երջանիկ եւ ընտրեալ եպիսկոպոսի, զոր տէր աւրհնեսցէ եւ պահպանեսցէ ընդ երկայն աւուրս... Նա էր հոգացեալ:

Եւ ետ Ս. Աւետարանս ի Ս. Փրկիչն, յորում է գերեզման դստեր իւրոյ, ի յիշատակ նորա, եւ պայծառութիւն տաւնից տէրունականաց, եւ ի զուարճութիւն մանկանց եկեղեցւոյ, ընթերնլով յաւուրս տաւնից և զատկաց. եւ ի ժամ պատարագելոյ մեղաքաւիչ եւ կենարար մարմնոյ եւ արեանն Քրիստոսի: Արդ ո՛վ դասք սրբոց, պարք երկնագումարք-հրեշտակք բանաւորք-տաճարք Երրորդութեան-որդիք վերին Սիոնի. Աղաչեմ զձեզ Ս. Աւետարանաւս. զոր յորժամ ընթեռնուք զՍուրբ Աւետարանս եւ լուսաւորիք, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր. զԱստուածասէր թագուհին զԿատայն, եւ զերանելի եղբայր իւր Զորտուանէլն, եւ զմայր իւր եւ զծնողս նորա, զի աղաւթիւք

ձերով եւ աւետարանիս շնորհիւ՝ յորժամ գայցէ Տէր փառաւք հաւր յահագին աւուրն եւ ամենայն սուրբք ընդ նմա. Պսակել եւ փառաւորել զսուրբս, յայնժամ յանուանէ կոչեսցէ զնոսա. թէ «Եկայք աւրհնեալք հաւր իմոյ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն. եւ ընդ աջակողմեանսն դասեսցէ ընդ սուրբս իւր ի հայրենի փառսն, յանեզրական ուրախութիւնսն, եւ նմա փառք յաւիտեանս. ամէն»։

Վերջին երեսի վրայ ննջեցեալ եւ պատանեալ կնոջ պատկեր մը գծագրուած է. անշուշտ Վիգենա Թագաւորին հանգուցեալ Կամայ դստեր պատկերն է, որուն քով նըկարուած են նաեւ իւր երկու նորածին երախայից պատկերներ, եւ վրան Մեսրովպեան տառիւք գրուած.

«Ծրագրութիւն պատկերիս այս է յանուն Կամային դստեր Վիգենայ, որ ի ծնունդն վախճանեցաւ, ի տիս մանկութեան, եւ եթող սուգ անհնարին մաւր իւրում, որում ողորմեսցի Տէր յիւրում մեծ գալստեանն» ամէն։

### 1 Ձեռագիր բառարան.

«Այս բառք են քերթողականք վասն չափոյ Հոմերական տաղից, զի քերթողական արհեստքն չափաբերականք են եւ չափով վարեն, են որ գեղջուկք են, որով ճարտասանք վարին, զի յաճախապէս փոխաբերին սակս զարդու ճարտասանից, եւ հարկ է յոգնահամար եղանել»։

— Կ'ըսկսի «Աստուածազան» բառով եւ կը վերջանայ «ցքի»ով. եւ կը յաւելու «Ջանսլիտան եւ զապլիկար զգծող տառիս աղա-

չեմ յիշել ի տէր, եւ նմա փառք յաւիտեանս ամէն։ «Մինչեւ ցայսմ տեղւոյ գծումն եղեւ ՌՃԽԲ. թվին, յունվարի Բ. օրն, երկուշաբթի»։

— Դարձեալ վերոյգրեալ խորագիրը նոյնութեամբ գրուած, եւ կ'ըսկսի «Աբարով» բառով, «Փէրաճէ» բառով կը վերջանայ։ Այս մասին մէջ Յունական, Թրքական եւ ռամկական բառեր շատ կան։ Փէրաճէէն զկնի կը յաւելու «Մինչեւ աստ գրեցաւ եւ յաւարտն եղեւ թվին ՌՃԽԲ. յունվարի ԻԴ. օրն Գշբթի. ի քաղաքն ըստամպօլ, ի Սուլու Մէնաստիր»։

— Վերստին կ'սկսի, խորագիրն այս է «Մեկնութիւն բառից քերականի», եւ առաջին բառն կը դնէ «Առձեռն», և կը արունակէ մինչեւ Շ գիրը. «Շապալուրջ, քիստանէ». «Շէրիկ, շըրլըղան». ու կը ձգէ թերի, անգիր թղթերով։

— Ապա կ'սկսի «Աշխարհացոյց համառօտաբար եղելոյս ի վերայ երկրի»։ Նախ կը խօսի երկնից վրայ՝ ըստ Ս. Գրոց, ապա երկրիս բաժանմանց, ասոնք համառօ. իսկ հայաստանեայց մասն ընդարձակ եւ պատմաբանօրէն, եւայլեւայլք։

— Ապա «Պատմութիւն քահանայ միոյ Խարբերդացւոյ, ... մաքառելով վա. ն հաւատոյ քրիստոնէականի», որ կ'սկսի կոնդակի ոճով. «Եւ ընդ սիրոյ օրհնութեան ս ծանուցումն լիցի աստուածասիրացդ... վասն այդ մահտեսի Եղիա քահանայիդ, որ է դա յերկրէն Խարբերդու, յազգէն աստ.ոց ի սրբոյն Յակոբայ Մծբնայ հայրապետէ ուղղափառ հաւատով, եւ սրբոյն Աբբայ 'րեմ Խուրին Ասորւոց եւ ազգէն Միխայէլ. ատրիարքին, եւ ի սուրբ Պարսամայ ուռ-

քին, լաւ եւ ընտիր կարգաւոր, ժամասէր եւ սաղմոսասէր եւ գրոց գիտութեան հմուտ եւ ճարտարաբան...» որ կը վիճաբանի Խարբերդու մէջ քրիստոնէութեան համար, եւ կ՚ազատէ Հայոց Ս. Կարապետ եւ Ս. Ստեփաննոս եկեղեցիները եւ երկու Հայ քահանաներ՝ Տէր Սահակ եւ Տէր Ղուկաս, որք չ՚կրնալով պատասխանել՝ ակամայ ուրացած էին եղեր, եւ յիշեալ եկեղեցիքը գրաւուած. իսկ Տէր Եղիա Ասորին որ «Գ. ցեղ լեզու գիտակ էր կարդալն». զՔրիստոս կը դաւանի. կը ծեծուի, կը բանտուի, Գ. օր անսըւաղ կը մնայ, բարութիւն եւ պարգեւներ կը խոստանան. նա կը մերժէ եւ զՔրիստոս կը սիրէ, կը տանջուի, եւ բանտէն հանուելով կը ձգուի «ի խորխորատ գուբ մի բերդին, զոր եըլան ղույուսը ասեն, լի ժահահոտ տղմով. ի մէջ Թունաւոր սողնոց եւ զեռնոց Գ. օր»... եւ փայտ կոտրեցին առ ի այրել զՏէր Եղիան: Ապա երէցկինը կը թելադրեն, «տարան զնա կանայք առ երէցըն, եւ եւտուր (Մկրտիչ) վարդապետն խընծոր մի թէ տարէք դուք զդա առ իմ հոգւոյս որդւոյս Տէր Եղիային. եւ ի մէջն խորհուրդ էր եդեալ»: «Ասաց Տէր Եղիան երէցկին, ահա ես պատրաստ եմ այրելն իմ. բայց խիստ երկնչիմ թէ գան յակամայ եւ բռնութեամբ զիս առնեն. խորհիմ, գնամ յերկիրն Ցռանկաց պաշտեմ զհաւատս իմ»: «Ասէ երէցկինն ցերէցն. եթէ դու գնաս ի Ցռանկաց տունն, ապա մեք զի՞նչ լինելոց եմք, դու չե՞ս ամաչեր ի քո ալեացդ, որ զայդ խօսքն կու խօսիս. Բ. անգամ զՔրիստոսի լուսաբողխ գերեզմանն ես համբուրեր. եւ ի մէջ քաղաքաց անուանի մարդ ես, եթէ այրեն զքեզ կամ քարկոծեն. յառաջ ես կու

մահանամ. . . ։ Զօրացաւ սիրտ Տէր Եղիային ճիչ բարձեալ աղաղակեաց ասելով. Բերէք ինձ իմ այգւոյն փայտ որ այրիմ. եւ երթեալ երէցկնոջն բարձեալ փայտ եբեր ի մէջ ատենին Թափեաց եւ ասաց. Յառաջ զիս այրեցէք եւ ապա զերէցն իմ. յայնժամ սրով հարեալ եւ խոցեալ զերէցկինն յետս քշեցին. եւ բորբոքեցին զհուրն. եւ տարան մերձ առ հրոյն. եւ նա ոչ երկնչէր. զկուլակն ածիլեցին, եւ ի գլուխն . . . կապեցին, «եւ ասէ Տէր Եղիան. Եթէ գլուխս հատանէք, ապա կարող էք, բայց ես ոչ ի հաւատոց իմում խորշիմ. . . գրոշմեաց զերեսն Նշանաւորբոյ խաչին» . . . յայնժամ ճեղքեցին զլեզուն եւ ոչ իսպառ կտրեցին թէ՝ վաղիւն մեզ քարոզիչ լինելոց է. եւ զձախ մատն ճեխքեցին. թէ՝ վաղն մեզ գիր գրելոց է . . . եւ յորժամ ոչ կարացին խախտել եւ մեկնել ի սիրոյն Քրիստոսի, ասացին թէ՝ լաւ է զսորա արեան գին կտրեմք քան թէ սպանանեմք . . . ։ Յայնժամ կոչեցին զՄկրտիչ վարդապետն եւ զքահանայքն եւ ասացին թէ եկէք գնեցէք զայս երէցս, եւ ժողովեցան առ Ամիրան եւ կտրեցին արեան գին էծ. ղուուշ, տուգանս, եւ չարթ արարին թէ՝ այսօր զդրամն պիտի բերէք, թէ ոչ՝ վաղիւն զերէցն կու սպանանենք։ Եասախ արարին Հայոց թէ մարդ Տէր Եղիայի անուան փոխ դրամ չ՚տայ. եւ վարդապետն ի հետ քրիստոնէից այլ իմն բանի համար գնացին շահով դրամ առին եւ ետուն երէցկնոջն, եւ նա տարեալ ետուր պղին արեան իբր թէ իւր տունէն՝ որ Ազգին Հայոց նեղութիւն չ՚առնեն» ։

—Այս հնարքով կ՚ազատուի Տէր Եղիան, եւ յետոյ կերթայ «ի Մալաթիա, եւ եհան ֆէրման, եւ անտի գնաց ի Սեբաստին առ Բում-

եայ Շէյխն եւ եհան փէթվայ․ եւ բերեալ ի Համիթ եւ արար սիճիլ․ եւ Համթայ միաչայէն կմր եւ փէրման երեր, եւ անտի գընացեալ ի յըՍտամպօլ եւ հանել ետուր է․ էմր եւ երեր․ եւ այն փէթվայովն եւ էմրովն հիւճճէթ արարին, եւ այսուհետեւ ի հետ քրիստոնէից եւ ի հետ եկեղեցեաց դաւ չ'առնեն․․․»։ Յետ այսորիկ կը յորդորէ կոնդակն որ ողորմութիւն նուիրեն Տէր Եղիային իբրեւ հաւատոյ գին, որ կը շրջի ի դրունս ողորմածաց։

«Աւարտումն եղեւ պատմութեան գծոյս ՌՃԿԲ․ թվին, փետրվարի բ․ օրն ե․ շաբաթ ի քաղաքն Ստամպօլ»։

—Ասկէ զկնի «Վասն գալստեան քրիստոսի եւ դատաստանի նորա» խորագրով գըլուխ մը կայ, ուր նեռին ստորագրութիւնը կընէ, և աշխարհիս անցումն․․․ երկրորդ գալուստն Քրիստոսի, արքայութիւն, եւն։

— Գլուխ մի եւս «Վասն խնդրոյն որ եղեւ ի մէջ քրիստոնէից վասն Հոգւոյն սրբոյ թէ ի հօրէ՞ միայն պարտէ ասել, թէ ի հօրէ եւ յորդւոյ»․ խորագրէն ետքը կ'սկսի «Ի Հռովմայեցւոց ազգացն շարժեցաւ այս խնդիր ի մէջ ազգիս քրիստոնէից Հայոց․ քանզի գըրեաց Պապն Հռոմայ առ մեծ կաթողիկոսն Հայոց Տէր Կոստանդին․․․ եւ թագաւորն Հայոց Հեթում, եւ զպատասխանիս պահանջէին․․․ եւ նոքա ժողովեալ զիմաստունս ի Հայոց ի Յունաց եւ յԱսորւոց եւ այլ ազգաց քրիստոնէից ի Սիս Կիլիկիա․ Յոյնք ի հօրէ միայն ասացին․ եւ յԱսորւոց ոմանք այլ։ Իսկ ի Հայոց գրեցին ի կողմանս արեւելից ի մեծ Հայք առ գիտնական վարդապետն Վանական, եւ առ Վարդան վարդապետ եւ առ Յովսէփ եւ առ այլս»․․․ որոց պատասխանը

«Երկոքումիւք ձայնիւք ըստ պիտոյ վարեցեալ, եւ ուղղակի Հռովմայեցւոց խոստովանութիւն· լի են ամենայն Աստուածաշունչ գիրք այնպիսի ձայնիւք» դրուած· վկայութիւն կը բերեն Պետրոսի Թղթէն, Յօհ· կաթողիկէէն, մեր Լուսաւորչէն, Ս· Աթանասէն, Գրիգոր Աստուածաբանէն, Նիւսացիէն, Բարսղէն, Եփրեմէն, Ոսկեբերանէն, Եւսեբիանոսէն»· եւ այլն· և դաւանումն կը կցեն այսպէս· «Հոգին Սուրբ բղխումն ի Հօրէ եւ երեւումն յՈրդւոյ»· եւն։ Կցորդեալ է եւ այս· «Գրեաց մեծ վարդապետն Վանականս թէ որպէս մարթէ խոստովանել եւ կամ ասել զՍուրբ Հոգին ի Հօրէ եւ որդւոյ· այս է Վ.անական վարդապետին»· եւ որոյ սկիզբն է· «Հոգւոյն խօսիլ զհոգւոյն հոգեւորացն է գործ»· եւ որոյ վախճանն է «Աստ մի խնդրեր աւելի զի յամենէն անկանիցիս»։—Ահա ճիշդ խօսք։

—Նոր գլուխ մը եւս որոյ խորագիրն է «Վասն չհաւատալոյն և խստասրտութեան առաքելոյն Թովմայի»· ռամկական լեզուաւ եւ ոճով։ — Ապա «Տեառն Ներսիսի ասացեալ հարցմունք եւ հանելուկք»։

—Վերջին գլուխն է «Պատմութիւն Թըղթոյն Կիւրակեայ որ ի Ռոմայ ի մեծ եկեղեցին Պետրոսի եւ Պօղոսի իջեալ է ի յերկնից»· Հռչակաւոր առասպելաբանութիւնն։ — Պապականի մատն կայ այս մատենին մէջը։

## 1 Միխայէլ Ասորի. և Ճառք.

—Յորմէ օրինակեալ է հետեւեալ «Խրատք»։

«Չորս իրք մարդկան վատ են· Ծծգոհալըն· խեռով խօսելն· ի սիրտ ելնելն· եւ ժըլատութիւն։

«Չորս իրք մարդոց վնաս բերեն· Աւելի մօտաւորութիւն առ Թագաւորն· հետ չար

մարդկանց սէր դնել· չրջել հետ չար կանանց·
ատել եւ բանբասել զմարդ ։

« Զորս ազգ մարդոց չէ պարտ մեղադրել· Թագաւորի՝ որ սպանանէ զմեղապարտն. հիւանդի՝ որ զպահքն չի պահէ· անդէտի՝ վասն ջահիլ խաւսիցն· եւ լացողի՝ վասն որդւոց ։

« Զորս իրաւք թագաւորութիւն հաստատի· Որ ոչ չտապի ի բանն. որ զարժանաւորն աւժտէ. որ խոնարհամիտ լինի. որ զերդումն հաստատ պահէ ։

« Զորս լինի բարեպաշտութիւն· Որ լինի ասլըն սուրբ· որ ունենայ սիրտ սուրբ· եւ սիրելիքն սուրբ· · · ։

« Զորս իրաւք լինի բարեբաղդութիւն· ժամանակ լինի խաղաղութեան· չատանալ յընչից· ողջ կենալ կենաց· եւ անհոգ լինել ։

« Զորս յիրաց լինի անըռզակութիւն· Ջիհելութենէ· ծուլութենէ· ի չմարդկութենէ· եւ չտապութենէ ։

« Զորս յիրաց լինի բարեգործութիւն· Աղաւթք· ողորմութիւնն· գութ· եւ ամանաթ պահելն ։

« Զորս ազգ մարդկանց չէ պարտ հաւատալ· Անբնակեցին· թշնամւոյն· սուտ սիրելւոյն· անհաւատի աղաւթիցն ։

« Զորս իրք զբանս ի դլուխ հանեն. Նստել եւ առնել ընդ մեծամեծաց· թապտիր առնել ընդ իմաստնոց· խորհուրդ առնել ընդ լըրջմիտս· եւ աւգնութիւն ուզել սիրելեաց ։

« Զորս ազգ մարդկանէ պարտէ ի զատ կենալ· Այն որ զիւր անձին այպն չի հոգայ· ի ժլատէ· ի չարագործէ· եւ ի խաբող մարդուէ ։

« Զորս իրք զթագաւորութիւն թապլըցունէ· Որ ծիծաղի եւ թլահէ զմարդիկ· որ

սէր ունէ ընդ չար մարդկանց. որ խալ-վաթ առնէ հետ չար կանանց. որ չարագոր-ծաց եւ մեղապարտաց համբերէ:

«Չորս իրք նշան են անհաւատութեան. Որ սէր ունէ հետ նաքազուն (նագլու). որ թապ-տիր առնէ հետ ապլահ մարդկանց. որ ընդունի զփաւդուլ մարդիկ եւ զիւրեանց խաւսքն. եւ որ թապտիր առնու ի կանանց:

«Չորս իրք են որ պիղծ են յայս կեանքս եւ յայն. Որ չարի ընդ մարդիկ. որ սովոր-ցունէ զլեզուն ի չար ասելն. մին այլ ժըլա-տութիւն. մին այլ՝ զրկանք:

«Ամենայն բարւոյ գլուխ է որ մարդ զիւր գործած մեղքն չ՚մոռանայ եւ զայլոց մեղքն իսկի չի հոգայ. զինչ գործէ՝ Աստուած մաւտ-յինքն տեսնու. իսկի մեղք չի գործէ, որ զմահուն աւրն ի միտն բերէ. աւելի դամա-հութիւն չ՚առնէ:

«Չորս իրաց վերջն չար է. Մեղաց վերջն՝ հրապարակել է. սիրտն ելլելուն վերջն՝ փո-շիմանել է. հակռով խաւսից վերջն՝ կռիւ է. եւ ծուլութեան վերջն՝ աղքատութիւն է:— Լմնցաւ: Փառք Աստուած: Ամէն»:

## ԲԻՆԿԱՑ ԳԻՒՂԻ Ս. ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏ ԵԿԵՂԵՑԻՆ

1 Աւետարան. մագաղաթ. Սա-սունցի:

«... Փառք ...: Գրեցաւ սուրբ Աւետա-րանս հրամանաւ տիեզերալոյս մեծ րաբու-նապետին Յոհաննու Որոտնեցւոյ, յԱստուա-ծապահ գաւառս Եկեղեց. յանապատիս Լուսաւորչի, ընդ հովանեաւ սուրբ Կարապե-տիս, զոր շինեալ է նոյն ինքն Հայրն մերոյ սրբոյն Գրիգորի: Որ եւ ի սմին եղեալ ձեռ-

նադրութիւն Ըաստանկէսի։ Ի թվականութեան Հայոց Գ. որդի, Ի. երրորդի, երկրորդի։ Զեռամբ յողնեղկելի եւ բազմամեղ գրչի Գրիգորի սպասաւորի Նմին, եւ բանիմակ՝ ըստ նախնոյն Ուսթըուչ։ Ի յընտիր աւրինակէ ստուգեալ։ Արդ աղաչեմ զձեզ արտասուաթոր պաղատանաւք, ով մանկունք եկեղեցւոյ, տեարք եւ հանդիպողք, ընթերցողք եւ դաղափարողք, յիշատակել առաջի Քրիստոսի զքաջ ախոյեանն եւ զարի նահատակն զՅոհաննէս բարունին. զվարժապետն իմ, հանդերձ ծնողաւք եւ ամենայն զարմաւք իւր, եւ զիս զմեղաւոր աշխատողս եւ զծնողսն իմ կրկին, զքորս եւ զեղբարս, եւ ասել՝ «Քրիստոս որդի», մեզ եւ այլոց աշխատողաց ի սմա, որք ի ծաղկել եւ ի կազմել (գործակից եղեն), եւ ի Ղուկաս գլխոյն գրեալ եղեւ մինչեւ Ծ.Կ.Ե. համարն։ Որ եւ ամենեցուն ձեզ եւ մեզ ողորմեսցի Քրիստոս»։

«Դարձեալ աղաչեմ (յիշել) ի Տէր զբարի եւ զհաւատարիմ զհեզահոգի եւ զքաղցրաբարոյ սարկաւագն Նիկաւլ, որ ցանկացող եղեալ այսմ Աստուածային գանձուս եռափափաք տենչմամբ զցայգ եւ զցերեկ, եւ վաճառեաց զինչս իւր եւ գնեաց զայս պատուական մարգարիտ, եւ եթող յիշատակ յաւիտենական իւր եւ ծնողաց իւրոց, հաւրն Թուխմանուկայ եւ մաւրն իւր Մինային, եղբարց իւրոց՝ Վասակին եւ Մրուանայ, եւ քերցն իւր՝ Սառային եւ Սիրմային. զոր տէր Աստուած վայելել տացէ մինչ ի խորին ծերութիւն, եւ յետ աստի կենացս՝ սրբոց իւրոց եւ կամարարաց հաղորդս լինել արժանի արասցէ առ հասարակ զձեզ զյիշողքդ մեր եւ զմեզ զյիշեալքս, եւ որ զամէնն ասիցէ...»։

— Ի վերջն Մատթէոսի աւետարանին գրեալ. «Աստուածազանից անձանց եւ դասու սրբոց հարց եւ եղբարց եւ որդեկաց տէրամբ Աստուծով, աղաչեմ զպատահեալսդ սմա, եւ որ չանկիք ինչ ի սմանէ եւ աւրինակէք, զի յոյժ ընտիր աւրինակէ գրեցաւ, յիշեցէք սրտի մտաւք ի Քրիստոս զտիեզերալոյս րաբունապետ զվարդապետն իմ զՅովհաննէս Որոտնեցին հանդերձ ծնողաւք իւրովք, եւ ինձ մեղապարտ աշխատողիս հանդիստ հայցել, զոր մեզ եւ ձեզ պարգեւեսցէ Քրիստոս»:

— Ի վերջն Մարկոսի Աւետարանին գրեալ. «Փրկութիւն, Թողութիւն, հանգիստ եւ ողորմութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ՝ րաբունապետին մեծի Յոհաննու Որոտնեցւոյ վարժապետին իմոյ ստացողի սորա, եւ ինձ մեղապարտ գրողի եւ աշխատողի սորա, եւ յոյժ հաւատոյն գտողի...»:

— Ի վերջն Ղուկասու Աւետարանի գրեալ. «Բազմաբիծ եւ դատապարտս ոգի Գրիգոր ստրկաւադ սպասաւոր բանի յերեսս անկեալ աղաչեմ զաստուածասէր եւ զբարեմիտ ընթերցողսդ, յամենայն ամի առնել զյիշատակարանս մեր, եւ թողութիւն մեղաց հայցել առաջի զենման գառինն, տեառն սորա ծրաջան եւ տիեզերալոյս մեծ րաբունապետին Յոհաննու Որոտնեցւոյ, որ եղեւ Լուսաւորիչ երկրորդ՝ Հայկազնեան ազգիս, եւ որպէս զքաջ ախոյեանն Աստուածաբանն Գրիգոր եւ զերանելին Կիւրեղ, կրթեալ երկամբք ի մանուկս գիտութեան համձարոյ, հերքէր եւ հալածէր ի մէջոյ եկեղեցւոյ ուղղափառաց զԱրիանոսքն, որք են Մխթարմայքն, անուամբ Քրիստոնեայք եւ ծածուկ աւձտեալքն ի Քրիստոսէ...»:

1 Աւետարան եւս.

«...Գրեցաւ ձեռամբ քարտուղարի, եւ յոգնամեղ պիտակ գրչի... Մեսրոբ անուն բանասիրի... ի Հայկազեան Հայոց սեռի, ի Թվականիս Ջ.Ի. չորեքտասանք եւ Ը. Թուի, մայիս ամսոյ ի վեցեկի, ի մայրաքաղաքս Երզնկայի, որ Եկեղեաց գաւառ կոչի, մեծահռչակ վանք Կայփոսի, որ կայ ի լեառն Սեպուհի, եւ տէր Ներսէս առաջնորդի, ազնուական ի մեծ տահմի, սուրբ եւ մաքուր յոյժ գովելի, որ հրեշտակաց է բաղձալի: Եւ քաջ հռետորն մեր բարի, որ Ստեփաննոս միշտ յորջորջի, վարժէ զմանկունս յիմաստ բանի, որք են յակձիռս աննիրհելի: Այլ եւ զնաղաշն գովելի, զտէր Սիմէոնն Խարբերդցի, որ զարդարեաց ծաղկաւք ի լի, գոյն զգունով զարմանալի: Զձեզ աղաչեմ եղբարք բարի, որ ընթեռնուք հոգւով ի լի, զիս յիշեցէք ի յաղաւթի, զգրչակ Մեսրոպս Երզնկացի, այլեւ զհայրն իմ բաղձալի, զԱմիր դովլաթն նազելի, եւ զմայրիկն իմ գովելի, առ Տէր Աստուած ամենայնի, այլեւ զեղբայրն իմ ցանկալի, զՄանկաւագն Հաբաղատի, եւ զաւակունքն իւր ուռձալի, դուք յիշեսջիք սիրով սրտի...»:

— «Ողորմի Խորաննենց Մուրատի Հոգւոյն եւ որդւոյն Ղազարոսին. եւ իւր կողակցին Նռանա խաթունին, որ գնեցին զսուրբ աւետարանս յիշատակ ի Հերապաւլիս, եւ (եդին) ի գիւղն որ կոչի Բինկա, յիւրեանց հալալ վաստակոցն: Զունի ոք իշխանութիւն ի յազգականէ կամ ի զաւակէ ծախելոյ կամ դրաւելոյ. որ հանէ ի գեղջէս, զմասն Յուդայի եւ զպատիժն Կայենի առցէ: Աստուած ողորմի իւրեանց հոգւոյն: Ամէն. ա. ամէն»:

— «Յամէն Զատկին կարդացուի յիշատակըն, որ «Աստուած ողորմի» ասեն. ամէն։

— «Դարձեալ ետու ի ձեռն Տէր Սահակին եւ Տէր Սարգսին, որ խնայելով պահեն. եւ Աստուած ողորմի ասեն բարի յիշատակին, անջինջ յիշատակ։ ի Թվ. Ռ. Հ. Բ.»։

— «Աստուած ողորմի Շահգատայի հոգւոյն, որ զխաչիս շինողչէք եա, Կիրակոսի հոգւոյն, եւ յետ իւրեանց»։

— «Աստուած աւրհնէ զբուայրս Խանապետն, եւ զիւր որդին զՋանազիզն, որ երետ զՄուրատին սազն (ճախին մարդ) Խաչերեսին տուած արտոյն յիշատակ ձեւլիմնու վանուցն Ս. Աստուածածնին, եւ Ս. Ստեփաննոսին, եւ Ս. Լուսաւորչին, եւ Ս. Աւգսենտին, եւ Ս. Սարգսին. յիշատակ Խանապետին, Ջանազիզին, Խաչերեսին, Քորդամիրին, Նահապետին. Աստուած ողորմի... եւ Ս. Աստուածածնին Մախթանաւք տացէ Աստուած Ջանազիզին որդի, իբրեւ զՍահակ Աբրահամու... Ամէն։

1 Աւետարան եւս.

— «Գրեալ ի Ս. Անապատս որ կոչի Կարմիր վանք. ընդ հով. Ս. Աստուածածնին եւ Ս. Կարապետիս եւ Ս. Հրեշտակապետացն Գաբրիէլի եւ Միքայէլի, ի Թուա. Ռ. Հ. Բ. ի յեպիսկոպոսութեան Տէր Թումայիս եւ Տէր Աստուածատուր եպիսկոպոսին. եւ այլ միեղէն եղբարցս. ԺԱ. անձն կրաւնաւորացս, որ կան ի յայս քարաժեռ անապատիս. ձեռամբ... աբեղայի Վարդանի, որ ի բարեաց խիստ եմ հեռի, եւ եմ Թաղեալ ախտիւ ի լի... Ես Վարդան քարտուղար ծառայ եմ սիրեցեալ արհի եւ քաջ եպիսկոպոսին Տէր Յոհաննէսին, Բենկի Առաջնորդին.

որ եւ փախադանաւք գրեալ զՍուրբ Աւե-
տարանս եւ եդ յիշատակ ի Ս. ուխտն. ով
որք չունի հրաման որ հանէ զսուրբ Աւետա-
րանս ի վանիցն. ոչ վարդապետ, ոչ եպիս-
կոպոս, ոչ քահանայ, ոչ սարկաւագ, եւ ոչ
աշխարհական. այլ կացցէ անջինջ յիշա-
տակ...»:

«Դարձեալ յիշեսջիք... զուսուցանողն իմ
զՏէր Գրիգորն զպարծանքն կրաւնաւորաց,
եւ զՏէր Յովհաննէս քաջ քարտողն որ զծա-
ղիկն ուսայց, եւ զաշակերտն իմ զարին զԹով-
մայ եպիսկոպոսն, որ բազում աշխատեցաւ ի
կոկել թղթին, եւ ի ձեռն տալ: Աստուած
իւրեանք անփորձ պահեսցէ. ամէն»:

«Աստուած ողորմի Պահրի անատեսին հոգ-
ւոյն, գնեց զսուրբ Աւետարանս... եդիր ի
յիշատակ ի դուռն Ս. Երեք մանկանց, անջինջ
յիշատակ.

«Այժմ, Ս. Աւետարանս ուր ուրեք որ
գնացեալ եւ մնացեալ էր անդ, անտի փա-
ճառեցաւ՝ քահանայից եւ իշխանաց գիտու-
թեամբ, եւ առեցեալ եղեւ Բինկացի Զայենց
Մահտեսի Վարդերես ամիրային, որ ետ յի-
շատակ ի Բենկանու Ս. Սիոն եկեղեցին համ-
դերձ արծաթապատիւն, վասն իւր եւ հա-
մայն կենդանեաց եւ ննջեցելոց հոգւոյն: Ի
Թվ. Հայոց Ռ. Մ. Լ.»:

## ԽԱՐԲԵՐԴ

1 Գիրք Բժ. Մարգարէից և Ցուցայ.

«Փառք եռանձնեայ էականութեան. միա-
պետական իշխանութեան. զաւրութեան,
տէրութեան, եւ Աստուածութեան Հաւր եւ

Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ....: Արդ ի կարճեալ աւուրս եւ յերկայնացեալ ժամանակիս, այսինքն ի վերջին դարուս, յորժամ յաղագս ծովացեալ մեղաց աշխարհի իբր երեքալեանն իմն մրրկեալ տատանեալ ծփէր ի բռնութենէ սրոյն Նետողաց, զոր ի յոլով աւուրս սաստկացեալ տիրէր համայն ամենայն երկրի, սկսեալ յելիցն արեւու ի ծովէն Կասպից շրջապատեալ զՀիւսիսիւ մինչեւ գայ հասանէ ի ծովն Պոնտոսի, եւ դարձեալ զմիակողմամբն հարաւայնոյ պար առեալ պարունակեալ զաշխարհն Բաբելացւոց եւ զհամայն Ասորիս եւ զԿիւլիկիա, մինչեւ ցնոյն ծովն Պոնտացւոց աշխարհին, զբոլոր միջերկրայս զազգս եւ զլեզուս բազումս ընդ ինքեամբ կալեալ ունէր լուծ ծառայութեան, ըստ նախատեսութեան մեծ Հայրապետին Հայոց Ներսէսի. եւ պակասեալ նուազեալ գոյր հայրապետութիւն սեռի Ս. Լուսաւորչին Գրիգորի. եւ թագաւորութիւնն ազին Արշակունեաց՝ ըստ տեսլեան Ս. Սահակայ, եւ սակս անդարձութեան մերոյ ոչ դարձաւ բարկութիւն նորա, այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է ի պատժել եւ ի պատուհասել. եւ մեր ոչ զղջացեալ մինչեւ ծիւրեալ եւ ծնկեալ մաշեցան ամենայն կեանք մեր, ի մահ եւ ի դըժոխս մերձեցան անձինք մեր եւ յերկիր մածան մէջք մեր. քանզի... եւս քան զեւս ընդ նեղութեամբ եւ ընդ հալածանաւք արկին զազգս քրիստոնէից, զորոց զաղէտս սատակուսանաց ո՞ ոք կարասցէ պատմել եւ կամ ընդ գրով արկանել:

Արդ յայսմ դառն եւ դժնեայ ժամանակի, յորում խաւար անլոյս եւ մէգ անմխիթար տարածեալ մածեալ ունէր զամենայն երեսս երկրի, ես տառապեալ եւ եղկելի անձն Սար-

գիս... կրաւնաւոր... ցանկացեալ այսմ աստուածանձառ..., մատենի աստուածազան եւ աստուածարեալ սրբոց Մարգարէիցն բժ․ից, եւ Դանիէլի նախատեսութեանցն, ընդ նմին թղթոյն Յոբայ եւ համբերողի մեծի, զորս չարայարեալ կազմեցեալ եմ զսոսա ի մի տփի։ Գրեցաւ սա ի թվա, Հայկ. տումարի Ջ. Հ. Դ. ի գաւառիս Քաջբերունեաց ի մենաստանս Խառաբաստ. ի վանս որ կոչի Սուհարա (Սուխարայ), ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին, որ է աւրհնեալ յաւիտեանս։ Յառաջնորդութեան տեղւոյս Ղազար աւն հեզիեւ խաղաղարարի, նմանեալ... նախնոյն Ղազարու, զի կամեցող եղեւ մեզ, եւ սիրով ընկալաւ զմեզ ընդ իւր, ընդաւլցի եւ զինքն Աստուած... յիշեցէք զսարկաւագ Կր. եւ զՅովսէփ Կր. որ պաւրինակն շնորհեցին մեզ. յիշեսջիք զվարդապետն իմ զՅովսէփ... եւ Քրիստոսի փառք... Վայ ինձ. ռ. անգամ»։

1 Թուղթ Մաղխասրոսի և Ն. Շընորհալւոյ. Թերատ.

« Փառք միայնոյ անծնին, եւ ծնելոյն ի նըմանէ միոյն, եւ բղխեցելոյն ի նոցունց էութենէ... Ի ժամանակս Աստուածասէր եւ բարեպաշտ տերանց մերոց քրիստոսապսակեալ արքայիս Կիւլիկեցւոց նահանգիս Հեթմոյ. եւ քրիստոսասէր թագուհւոյն իւրոյ Զապէլի, ի դառն եւ յանբարի ժամանակի, յորում անծանաւթ ազգն խուժադուժ որ կոչին Թաթարք, յելիցն արեւու մինչեւ ի Դամասկոս եւ ի մեծն Անտիոք եւ մինչեւ յիկոնիա, առին զտիեզերս յաւար եւ ի գերութիւն ասպատակաւ, եւ անխնայաբար ի սուր սուսերի մաշեն զամենայն ազգս եւ զազինս. եւ զայս ոչ եթէ ի միում ամի կամ

յերկոսս արարին եւ առնեն. այլ այս ինն
ամ է յորմէ յետէ ելին եւ յաւար առին
զտիեզերս. եւ ոչ ոք կարաց կալ ի դիմի նո-
ցա ի գլխաւորաց, քանզի ի տեառնէ է այս
վրէժխնդրութիւն յաղագս պէս պէս չար
գնացից մերոց. քանզի մեղաք Տեառն Աս-
տուծոյ մերոյ յամենայն գործս մեր. եւ ա-
նաւրինեցաք ըստ ամենայն գնացից մերոց,
եւ առ հասարակ ամենեքեան խոտորեցաք եւ
ի միասին անպիտանացաք, ըստ մարգարէին.
մանաւանդ որ զառաջնորդական ունին աս-
տիճան՝ աւտարացան միանգամայն ի ճշմար-
տութենէ. եւ ծառայք եղեալ չար տերանց.
մամոնայի աւեմ եւ այլոցն որ նմին հետեւին.
եւ լռեցին լեզուք նոցա ի խրատուէ եւ ի
յանդիմանութենէ, եւ գրեթէ ամենայն բար-
եաց հետեւմունք լռեցին յամենեցունց: Արդ
ի սոյն այս բազմավրդով ժամանակի, ի ձե-
ռըն վերոյնշանակեալ թագաւորին Հեթմոյ
խորագէտ իմաստութեան եւ նախահոգակ
հանճարեղութեան, մեք միամիք ի խաղաղա-
ղութեան որպէս կղզի ինչ ի յալեաց միաց-
եալ յանդորր, զոլոյ զկեանս եւ զթագու-
հւոյն սրբոյ, եւ աստուածապարգեւ զաւա-
կաց իւրեանց տացէ տէր բազմամեայ կեն-
դանդութեամբ եկեղեցւոյ իւրոյ սրբոյ ի հա-
ճոյս կամաց իւրոց: Իսկ ես նուաստ եւ յե-
տին ծառայ ծառայից Քրիստոսի Գրիգորիս
մեղսասէր գրիչ հասեալ ի ծերութիւն եւ
պակասեալ ի լուսոյ. ըստ ըղձից փափագման
հոգւոյ իմոյ աշխատասիրեալ գրեցի զմատ-
եանս բաղձալլի ուսումնասիրաց անձանց.
ժողովեալ զբազումն ի մի հաւաքմամբ,
զսրբոյ եւ զտիեզերալոյս կաթողիկոսին եւ
զերկրորդ Լուսաւորչին Հայաստանեայց զՏէր
Ներսէսի զթուղթսն, զորս բաւեցի փոքր ի

չառէ ղնել միմեանց առընթեր, զի լիցի պատճառ հոգեւոր զբաւսանաց ինձ, որքան աստուածային կամաւք ի մարմնի տաղաւարիս. եւ զկնի հրաժարման յաշխարհէս առ երկնաւորսն՝ յիշատակ բարեաց միալոյ յիմն եւ յայլս. վասն որոյ աղաչեմ զամենեսեան որք աւգտիք ի սմանէ վերծանութեամբ. ըն-տողութեամբ, կամ յաւրինակ առնլով, յիշել զմեզ եւ զծնողսն մեր...։ Գրեցաւ ի Թագաւորական մայրաքաղաքն Սիս. ի Թուականիս Հայոց ՈՂԳ. ի կաթողիկոսութեան Տեառն Կոստանդեայ. ի փառս Աստուծոյ»։

1 Վարդանդիրք Եղիշէի.

... «Գրեցաւ Աստուածաշունչ տառս ձեռամբ... ՈՀ. Երիցու... ի Թուականին Հայոց ՊԼԻ. ի քաղաքիս Վան, ընդ հովանեաւ Ս. Վարդանայ ... որք հանդիպիք այս աստուածային գանձուցս Եղիշաի... յիշեսջիք զատացող զՏէր զՆիկողոս կրաւնաւորն եւ զծնողսն զԵփրեմ քահանայ եւ զքեռին զՍտեփաննոս Կր... խոշորութեան եւ սխալանաց գրիս անմեղադիր լերուք, զի մեր կարս այս էր։

«Ես Նիկողայոս աբեղայ կամաւն ամենակալին Աստուծոյ ստացայ զՎարդանգիրքս եւ ետու զսա ինձ յիշատակ եւ ծնողաց իմոց ի դուռն Ս. Տիրամաւրս լուսոյ. որ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ Ս. Աստուածածնիս Խառաբաստայ վանուց, ոչ յիմոց եւ ոչ յաւտարաց»։

1 Աւետարան.

«... փառք...։ Եւ արդ աւարտեցաւ աւետարանս... ի Թուաբերութեանս Ցոբել-եան տումարիս Ջ.Խ.Է. ի փառս եւ ի պայ-

ծառայութիւն Ս. եկեղեցւոյս Գէորգա զաւ-
րավարիս ... աղաչեմ յիշել զիս զանպիտան
եւ զսուտանուն քահանայս զՅոհաննէս, որ
զծագրեցի ձեռամբ իմով զտառս սատուա-
ծային ի յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց Ա-
ւետեաց եւ Թամարի, եւ ննջեցելոց իմոց Մա-
րեմորոյ եւ Մայրատիկնոյ, Ատոմի եւ Թու-
մայի, եւ այլ ննջեցելոց... եւ որք զԹուղթն
չնորհեցին, զփոքր տիկին որ բազում փա-
փագեցաւ Աւետարանիս տեսչութեան եւ
զԹուղթն չնորհեց եւ յիշատակ ստացաւ իւր
եւ ծնողաց իւրոց, եւ զԳաւղոս կրաւնաւոր,
եւ զայլ միաբան աշխատաւորքս զՎահրամ
ժամակոչ եւ զծնողսն իւր... յիշման ար-
ժանի արարէք ի դուռն տաճարիս այս զքա-
հանայք սորա եւ միաբան եղբարքս, եւ
զվարդապետն իմ զԽաչիկ քահանայ եւ զծնող-
սըն իւր եւ զտարաժամ ննջեցեալ զորդեակ
իւր Զաքարիա եւ զայլ քահանայքս, որք
աշխատեցան եւ հասուցին զմեզ մինչեւ ցայս
վայր...»:

«Արդ աղաչեմ յիշել ի տէր զվերստին
ստացող սորա զԱգիզ... ի յիշատակ իւր եւ
ննջեցելոյն Ծատրոյ, եւ տարաժամ ննջեցե-
լոյն Գորգոյ, եւ կենդանի զաւակացն Ստեփ-
նոյ եւ Հայրապետի, Երնիկի եւ Կարապետի,
ըստ խնդրոյ եւ ի վայելումն կրտսեր որդ-
ւոյն քահանային Յովանիսի...»

(Այլ գրով) «... Զստացող Ս. կտակիս
զՄէվդին, եւ զԽալաս, եւ զաստուածազարդ
զաւակք իւրեանց զԱւգբէկ, զԽասբէկ, եւ
զԽաչերես, որ բազում ջանիւ եւ աշխատու-
թեամբ ազատեցին զսուրբ Աւետարանս ի ձե-
ռաց անաւրինաց, յիշեսջիք ի սուրբ յա-
ղաւթս ձեր եւ զծնողս սոցա: Որք մե-
ծութեան ընչից ըղձանան եւ միշտ փափա-

գանաւք նոցին տենչանաւն․ ոչինչ աշխատութիւն զմտաւ ածեն, յայլմէ յայլ անցանեն գաւառս հետագնաց ուղեւորութեամբ որպէս զի զշահն աճեցուցանել մարթասցեն, նաեւ ընդ համատարած ծովուն ծփանաւն նաւարկեալք, որք բարկացայտ ալեաւքն լեռնացեալ կոհակաձեւ դաշտանաւն անդնդապատոյտ խորոցն բեքացեալ կուտիցն, մէտ առ մէտ ալեացն, ահ պակուցող տեսանողացն արկանեն։ Այլք ի խիթս խռուոչից, ի խորս խաւարին ձորոցն համարձակին ի քարանձաւ դժուարամուտ տեղեացն ի խնդիր բազմագունեան ականցն զանազանելոց։ Եւ այլք ըստ քրէական արուեստին զթանձրութիւն հողոյն արտաքս պեղելով զոսկոյն գիւտ արուեստաւորելով, լաւ համարելով զմահ անձանց քան ունայն ձեռաւք զվատաց ժառանգելով անուն։ Ըստ այսմ աւրինակի՝ Աւգբէկս, Խասբէկս, Խաչերեսս, եղբարք հարազատ ցանկացող եղեն այս սուրբ Աւետարանիս, հետեւեցին զկնի աստուածախաւս մարգարէին Դաւթի, եթէ Պատուիրանք տեառն լոյս են եւ լոյս տան աչաց․ Եւ փրկիչն Քրիստոս երանաւորեալ ձայնիւ հրամայէ, եթէ Գանձեցէք ձեզ գանձս յերկինս․ եւ Պաւղոս հրամայէ եթէ կտակ յետ մահու հաստատուն է։ Եւ արդ ստացան զսուրբ Աւետարանս եւ զանառիկ մեծութիւնս՝ ոչ յանիրաւութենէ եւ յափշտակութենէ, այլ ի հալալ ընչից, աշխատելով ի գաղափարն, տալով հատուցումն սերման սորա զերեսնաւորն եւ զվաթսնաւորն։

Արդ սուրբ քահանայք եւ մանկունք Նոր Սիոնի վերին առագաստին, յորժամ դեգերեալ տքնիք առ դուռն սուրբ եկեղեցւոյ եւ ճիւղեալ ճիչ բառնաք առ ի յերգել զսուրբ

Աւետարանս, ով հանապազամուտք եւ Քրիստոսի խաչակիցք, զԱւգբէկն եւ զԽասբէկն եւ զԽաչերեսն յիշեսջիք անմոռաց առաջի զենլոյն Քրիստոսի, զի ողորմեսցի յայնմ անորեկ աւուրն: Ամէն»:

Տ ր Վ ա ր դ ա ն Ա բ ե ղ է ս

1 Մաշտոց.

«...Փառք եռակի, համակամ, անորոշ, անբաժանելի եւ անքակ միասնական Ս. Երրորդութեան...: Աւարտեցաւ սուրբ տառս որ այժմ Մաշթոց կոչի Բոլոր, ի յամի Ջ.Ժ.Ե. ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի տաճարիս եւ սուրբ Գէորգեայ... յեպիսկոպոսութեան այս նահանգի տէր Ստեփաննոս վարդապետի եւ տէր Յովհաննէս եպիսկոպոսի... ձեռամբ... քահանայի Հերապետի... յիշեցէք զստացող գրոցս զբարեպաշտ եւ զերկիւղած կինն Սալչուկ խաթունն ի բարի արմատոյն չառաւիղ... յիշատակ իւր եւ ծնողաց Ստեփաննոսին, Գուլիզարին եւ Ջօջպապուն Ծերունողին եւ մամուն Հէրմէլիքին... յիշեցէք զՍալչուկ խաթունն եւ զայրն իւր զՋանիբէկն եւ զզաւակսն իւրեանց զպարոն Գորգըն, Մուսեհն, Շամշատինն, Մկրտիչն, Բուրսէն, Նուբարն, Ալզուն եւ զամենայն արեան մերձաւորսն... զԽաւջա Մալհամն եւ զծնողսն իւր զՆիկողոսն եւ զԲէրուզ բակսն եւ կողակիցն իւր զԲէկի խաթունն եւ զդեւարոյս զաւակն իւրեանց զԴարմանն...»:

«Կրկին յիշեցէք ի Քրիստոս զՍալչուկ խաթունն, որ կանգնաւ եկեղեցւոյ գլխոյն չինելոյ Ճ. Ծ. թիվ ուսթին ու քարին ե-

տուր ու նոր նորոգեցին... Եւ զՋանիբէկն յիշեցէք ի Քրիստոս Աստուած. եւ զծնողսն իւր զՄարգարէն եւ զԹանգ խաթունն... յիշեցէք զՍալչուկ խաթունն եւ քուերս իւր զՀամօչն, զՍադաղէն, եւ զԳուլբայրն, զՓեսէն զԽաչատուրն, եւ զայլ քուերսն զԲէկին, զԱյմելիքն... զՀէրմէլիքն....: Եւ արդ ես յետինս քահանայից եւ անիմաստ ի գիրս գրչութեան Հերապետս... զիմ անարժան երեսս ձեզ ի գետին դնելով աղաչեմ... յիշեցէք զծնողսն իմ զՅովանէսն եւ զՍուլդանմէլիքն եւ զզաւակն իմ զնորընծայ Յովանէսն... Եւ զԳուլմէլիքն ընդ Բուսէրի տան մարդն՝ յիշեցէք ի Քրիստոս, որ ի գիրքս ի տես երեկ...»:

— Այլ գրով «Այս գիրք Նղէգնձոր Սքանդարին տղայն Յովաննէս գնեց եւ եդեր յիշատակ իւր հոգւոյն եւ իւր կողակցին Խանդութին...»:

1 Մաշտոց եւս.

«Փառք... «Աւրհնութեանց աւրհնաբեր գիրքս այս Մաշտոց, մեք նուաստ եւ անպիտանք Սարգիս քահանայ եւ Դաւիթ ստացաք... յիշատակ ծնողաց մերոց եւ մեզ. Սարգիս ծերունի եւ պատուական քահանայն ի սուրբ ուխտէս Հաւուցթառ զԹուխտն պատրաստեաց, եւ ես անյիշելի Դաւիթ գրեցի զգիրքս... եւ ընծայեցաք զսա ի սուրբ ուխտս Հաւուցթառ, ի դուռն սուրբ Կաթողիկէին եւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Յարութեան, եւ ամենազաւր սուրբ Ամենափրկչին եւ այլ սրբոց: Եւ եղեւ գրչութիւն սորա ի նախադրական սուրբ ուխտն ի մեծն Այրի վանս, եւ կատարումն գրոցս յԱստուածապահ գիւղաքաղաքիս Գառնի, առ

դրան սուրբ եւ հրաշափառ կաթողիկէիս եւ այլ սուրբ եկեղեցեաց. ի թվ. Գ.Հ.Բ. ի հայրապետութեան տեառն Պաւղոսի Գառնեցւոյ սրբազան կաթողիկոսի, եւ ի վերադիտողութեան սուրբ ուխտիս Հաւութառ՝ հեզահոգի եւ սրբասէր եւ մաքրամիտ եւ մեծազգի արհիապատիւ եպիսկոպոսի տէր Զաքարիայ ... յիշեցէք զՄարգիս քահանայն եւ ծնողսըն նորա զՄեհեւանն եւ.զՄատղիկն, եւ զիս... քահանայ զԴաւիթ գրիչ եւ զծնողսն իմ զհայրն իմ Վարդան եւ զմայրն իմ...»։

1 Աւետարան եւս. մագաղաթ, նկարէն։

«... «Ի թվա. Հայոց Ջ.Լ.Գ.. գրեցաւ Աւետարանս Յոհաննու սիրելւոյ տեառն, եւ այլոց Աւետարանչաց սկիզբն եւ վերջն, ի վանս Հաւարծին կոչեցեալ ընդ հովանեաւ սուրբ Գրիգորիս մերոյ Լուսաւորչի, ի ձեռըն... քահանայի Աստուածատրոյ Յուսկայ որդւոյ, եւ գրեցաւ հրամանաւ եւ արդեամբ սուրբ եւ պատուական քահանայի Գրիգոր անուն կոչեցեալ. զոր ետ գրել յիշատակ եւ բարեխաւս իւր եւ ամենայն արեան մերձաւորաց իւրոյ ... յիշեցէք ... զքահանայն Գրիգոր եւ զամուսինն իւր Տիրանձն եւ զմայրն նորին Մարեմ, եւ զծնողըն նորին եւ զեղբայրսն եւ զփոխեցեալսն ի Քրիստոս զարժանաւոր քահանայսն զՄխիթար եւ զՆահապետ եւ զայլ եղբայրսն նորին զկենդանիսն եւ զմայրն իւրեանց...»։

«Աստուած ողորմի փթութին, որ աւժանդակ եղեւ ի գին դրոցս վասն յիշատակի հոգւոյ իւրոյ, ի գիր կենդանի գրեսցի եւ նա... խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, եւ թէ սխալանս ինչ գտանէք ուղղեցէք ան-

նախանձաբար… վասն նշանացն մի մեղադրել, զի ոչ ուսեալ էի եւ ոչ այլ նկարիչ…»:

## ԵԿԵՂԵՑԻՆ ԽՈՅԼՈՒ ԳԵՂԻ

1 Աւետարան.

«Գրեալ ի Մելիտինոյ վանք, ի սուրբ Լուսաւորիչ… Թվ. Ջ.Ժ.….»:

## Ս. ԿԱՐԱՊԵՏ ԵԿԵՂԵՑԻ ԽԱՐԲԵՐԴ ՔԱՂԱՔԻ

1 Աւետարան. երկաթագիր.

«Շնորհաւք Ս. Հոգւոյն Ս. Աւետարանիչքն Մատթէոս, Մարկոս, Ղուկաս, Յոհաննէս լծակցեալ արաւրով խաչին խլեցին զփուշ մեղաց, եւ տնկեցին զխորհուրդ տնաւրէնութեան որդւոյն Աստուծոյ. յառաջ՝ զիջումն բանին Աստուծոյ առ սուրբ Կոյսն եւ զիննամսեայ ժամանակաւ զծնունդն եւ զկաթնասուն լինելն որպէս մարդ, եւ զայլ զանքաւելի զբանն. եւ ապա՝ զերեսնամեայ զմկրտութիւն եւ զնշանսն զոր առնէր մի ըստ միոջէ. զկուրաց տեսանելն եւ զխլիցլսելն եւ զհամերացն խաւսելն եւ զկաղաց գնալն եւ զդիւահարաց բժշկելն. եւ ապա՝ զխաչելն եւ եւ զթաղումն եւ յերրորդ աւուր զյարութիւնն, եւ զհամբարձումն առ Հայրն եւ զիջումն Հոգւոյն սրբոյ ի դասս Առաքելոցն յաւր Պէնտէկոստէին, եւ զայլ նշանսն եւ զսքանչելիսն, զոր ոչ կարեմք ի թիւ արկանել:

Արդ ես ծառայս Աստուծոյ Յօհաննէս սկսայ զՍուրբ Աւետարանս եւ կատարեցի ի Ռ. Ծ. Բ. թուականիս. ի կաթողիկոսութեան Տ. Անանիայի, եւ յԱռաջնորդութեան

Տ. Մխիթարայ երկրիս Խաղտեաց. ի փոքր մենաստանիս որ կոչի Անոցի վանք, ի դուռն Ս. Յովաննիսի ձեռնադրողին Փրկչին մերոյ »։ « Յայսմ ամի սով եղեալ ի վերայ երկրի, ոմն գնեալ զհաց եւ սովամահ լեալ, եւ ոմն ծախեալ եւ յղփացեալ ի բազում ոսկւոյ եւ արծաթոյ. Նոյն յայսմ ամի կատարեցաւ....։ Ով սուրբ եղբարք, աղաւթս արարէք որ ոչ ածէ Աստուած այնպիսի աւր ի վերայ երկրի, զոր տեսաք աչաւք մերովք։ Ես Յոհաննէս քահանայս ստացայ զսուրբ կտակս զայս զաւակ ի Սիոնն եւ ընդանի ի վերինն Երուսաղէմ, յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ եղբաւրն իմոյ Ներսէս ընտրեալ քահանայի եւ կրաւնաւորի. եւ հանգանն իմոյ Գուլիկանն եւ Վարդեթփին... յիշեցէք զծնողսն իւր եւ զեղբարսն եւ զամենայն սիրելիս զոր եւ ինքըն կամի, եւ զքեռի իմ զԱստուածատուր որ սնուցիչ իմ էր եւ վարդապետ. եւ որ զմեզ յիշեն, առաջի ահեղ ատենին յորժամ բանք սպառին և գործք... Թագաւորին՝... ողորմեսցի :Քրիստոս»։

1 Աւետարան եւս.

«Գրեցաւ սա ի Թուա. Հայոց Ջ. Ժ. Գ. ձեռամբ Ստեփաննոս եպիսկոպոսիս ի դաւառիս Խորձենայ, ի վանքս Խլպաչի, ընդ հովանեաւ Ս. Կարապետիս... բազմահաւաք սուրբ կրաւնաւորացս Տէր Յովանիսին, Տէր Նիկողոսին, Տէր Կիրակոսին, Տէր Մելքիսեդին, Տէր Յովանիսին, Տէր Մաղաքիային, Տէր Սիմաւոնին, Տէր Դաւթին, Տէր Աստուածատուրին, Տէր Կարապետին Նորաբողբոջ հասակին... յիշեցէք զհոգեւոր եղբայրն իմ զհանգուցեալ զՏէր Անտոնիոսն եւ զգործակալքս սոցա զԹորոսն, եւ զԴաւիթն եւ

*զՑակոբն... եւ զծնողսն իմ. եւ զԴաւիթ, զՆերսէսն, զԲարամն, զԼատիւն եւ զՑովհանէսն, զՊետրոսն, զՏաւնապետն, զմեծ Պարոնն. որ ստացան զսա ի հալալ արդեանց իւրեանց... յիշեսջիք եւ զմարմառի տուողն զՓիլիպպոսն, որ զԹուղթն ի վերայ կոկեցի...: Զեռս երթայ՝ գիրս մնայ, երբ կարդաս, զանարժան գրիչս յիշեա»:*

*— Այլ գրով. — «Զվերջին ստացող սուրբ եւ կենսատու Աւետարանիս զՂարբերդցի Խարակաւզն (յիշեցէք), որ է ի գեղջէն Առընդեղու... յիշատա՛կ իւր եւ ծնողացն. հաւրն Մէլիքին մաւրն Թամամին, հաւրեղբաւրն Զիրաքին, եւ Զիրաքի կողակցոյն Շընորհւորին. որդւոյն Խլղաթին եւ դստերն Մարիանին... յիշեցէք զԽարակաւզն եւ զկողակիցն իւր զՀանձրէվարդն, եւ զՀանձրէվարդի հայրն զՅովանէսն եւ զմայրն զՆանաջանն, եւ զեղբայրն զԽաւջա Սաւարն եւ զկողակիցն Խաւջա Սաւարին զԴուլզատէն... եւ զննջեցեալքն... դարձեալ յիշեցէք զԽարակաւզն, որ յայսպիսի դառն եւ ի նեղ ժամանակիս, քանզի բարկութիւն աստուածային շարժեալ էր ի վերայ ազգիս Հայոց, զոռ̃ն ասեմ թէ զսուրն եւ թէ զգերութիւն... Ահա Գ. ամ է որ իբրեւ զուռ կը դողամք ի Շահէն Պարսից. եւս առաւել զայս տարին թէ ո՛րպիսի սով եղեւ ի Խարսայ քաղաքին եւ իւր բոլոր գաւառքն. հանց սովեցեւ որ չուն եւ կատու ո̃ւտէին. եւ քրիստոնեայքն յարդ եւ խոտ ուտէին բայց յետոյ մեռանէին: Հաց է որ հաստատէ զսիրտ մարդոյ: Եղբարք, յորժամ Աստուած ձեզ հաց տայ՝ զաղքատն մի́ մոռանայք...: Աստուած ողորմի ասացէք Խարակաւզին որ այսչափ տարտարոս ի ժամանակիս զամենայն*

հող եւ զցնոր աշխարհիս ի բաց խափանեաց, եւ էառ զՍուրբ Աւետարան յիշատակ իւր եւ կողակցոյն իւրոյ Հանձրէ փարդին, եւ որդւոցն. եւ հաւրն Մէլիքշահին եւ մաւրն Թամամին, եւ հաւրեղբաւրն Զիրաքին եւ որդւոյն Խըլղաթին... յիշեցէք զԽարակաւզն աներն զԽուճայ Սաւարն եւ զԳուլզատէն, եւ զհայրն զՅովանէսն եւ զմայրն զՆանաջանն եւ զամենայն արեան մերձաւորսն...»:

«Թուին Ռ. Ծ. Ե. էր, Շահն որ զԵրեւան, զՋուղա եւ զՆախճուան այրեաց եւ զբնակիչքն քշեց տարաւ ի յԱսպահան. Թուին Ռ. Ծ. Դ. էր. որ ես մեղուցեալ եւ անարժան Յովանէս գրիչս Գահլըռեցի ի մէջ նոցա էի յայնմ ժամանակի. ով կարէ լեզուով կամ դրով պատմել զաւերումն Հայաստանեայց, եւ զխաւարումն եկեղեցեաց. խնդրեմք յԱրարչէն տայ աշխարհիս խաղաղութիւն. Թագաւորաց սէր եւ միաբանութիւն... Աստուծոյ փառաբանութիւն. ամէն»:

## Ս. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ

### 1 Աւետարան.

«Գրեցաւ սուրբ քառավտակ Աւետարանս ի Թուիս Հայոց Ջ. Խ. Դ. ի Հայրապետութեան Տ. Գրիգորի, եւ յիշխանութեան Հեթմոյ որդւոյ Լեւոնի. ձեռամբ ամենամեղ քահանայի, Ստեփաննոսի, ի սուրբ մենաստանս Սկեւռայ, ընդ հովանեաւ Ս. Փրկչիս, եւ կենսագիր Ս. Նշանիս, եւ մաւր լուսոյ Աստուածածնի, որ է առընթեր անմատոյց դըղեկիս Լամբրունի: Արդ աղաչեմ զամենեսեանսդ որք ընթեռնոյք զսուրբ տառս եւ լուսաւորիք ի սմանէ, յիշեսջիք ի Քրիստոս զտառապեալ եւ զմեղաւոր գծողս, եւս եւ

զեղբաւրորդիսս իմ զՑովաննէս քահանայ ու զԼեւոն սարկաւագ, զՑովսէփ պատանի. վասն զի ի խնդրոյ սոցին, ի պակասեալ ամաց եւ ի զառանցեալ տիոց եւ ի ծերութեան հասակի, շնորհաւք բարերարին Աստուծոյ աւարտեցի զսա յիշատակ ինձ եւ ի ծնողաց իմոց, եւ ի վայելումն յառաջասացեալ արեան մերձաւորացս... յիշեցէք զհարազատ եղբայրն իմ զԿոստանդին, որ ի սոյն ամի վախճանեցաւ եւ սուգ անբերելի եթող մեզ...»: «Յիշեցէք զվերջին ստացող Ս. Աւետարանիս զՄաւջա Սաւարն զՂարբերդցի ի գեղջէն Հողէու, եւ զկողակիցն իւր... եւ զդուստրն զՄանի բէկն... Թուին Ռ. Ծ. Ե. կազմեցօ (կազմեցաւ)»:

## 1 Աւետարան եւս.

«Յամին եւթն հարիւրորդի եւթանասներորդի մեծ Թուականին մերոյ, ի Հայրապետութեան Տեառն Կոստանդեայ Լամբրոնացւոյ. եւ ի Թագաւորութեան դեռաբոյս պատանեկին Լեւոնի որդւոյ Աւշնի, գրեցաւ սուրբ եւ լուսափիղձ եւ կենսակիր աստուածաւանդ աստուածախաւս Ս. Աւետարանս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի դրունս սուրբ եւ փառաւոր տաճարիս Քրիստոսի Ս. Յակոբայ, ձեռամբ իմով անարժան եւ մեղսաթաւալ փանաքի եւ անարհեստ դրչի Ստեփան. մականուն Ցերկայն կոչեցեալ. ի խնդրոյ Աստուածարեալ եւ սրբասէր քահանային Վարդիշխանայ, եւ հոգեւոր դստերն իւրոյ Շաքար հաւատաւորի. որ ետուն գրել զսա մեծաւ փափագանաւք յիշատակ նոցին անջընջելի, եւ աւանդեցին Ս. Հրեշտակապետացն. եւ ես ողորմելի գերիս յանձն առի եւ ըստ կարի իմում ջանացի ի ժամանակ ծերութեան,

որ յոյժ պակասեալ էր ճաճանչ լուսոյ յաչա-
ցըս եւ պակասեալ ի զաւրութենէ ։ Արդ թէ-
պէտ եւ անարհեստ էի գրչութեանս․ փանա-
քի եւ անյարմար, այլ հանդիպեալ լաւ եւ
ընտիր աւրինակի որ գրած էր Ստեփաննոս
Գոյներ Երիցանց, այն որ լի էր եւ պատա-
րուն յարհեստ գրչութեան եւ ընդ բնաւս
հռչակեալ․ նաեւ բանիւ կատարեալ եւ հոգ-
ւով լցեալ․ որպէս ահա յայտնի է իմաստ-
նոց եւ ստոյգ գիտողաց, զի լի եւ կատար-
եալ էր արուեստիւ, ի բանս, ի բառս, ի լը-
ծորդս եւ ի բացատս, եւ ի տրոհմունս առո-
գանութեանց․ Եւ ես մեղաւոր հողս յոյժ
բաղձանաւք եւ յոքնատոչոր տենչանաւք, ա-
լէտանջ երկաւք, մեծաւ աշխատութեամբ
ըստ կարի գծագրեցի զսա ի լուսաւորութիւն
մանկանց եկեղեցւոյ ։ Արդ երեսանկեալ ա-
ղաչեմ զամենեսեան մանաւանդ զդասս քա-
հանայից, որ վայելէք ի քաղցրահամ ճաշակե-
դեմաբուղխ վտակաց քառառաջեայ հոսանաց
կենդանական աստուածախաւս Աւետարա-
նական բանիցս․ մանաւանդ յորժամ բառ-
նայք ի ժամ սոսկալի պատարագին, յայնժամ
Ս․ Աւետարանաւդ եւ միջնորդական կենա-
րար հրաշիւք սուրբ պատարագին, յիշեսջիք
զստացողսն սուրբ կտակիս, զյառաջասացեալ
պատուական քահանայն Վարդիչխան եւ զկե-
նակիցն իւր եւ զամենայն ազգայինս, զկեն-
դանիս եւ զհանգուցեալս․ եւ զՇաքար հա-
ւատաւորն․ որ աշխատեցաւ յոյժ ի կոկել
թխթոյն, եւ որք սպասաւորեցին մեզ ի պէտս
մարմնաւորս․ եւ զիս զխաւարեալս մեղաւք
Ստեփան եւ զիմսն ամենայն, ողորմութիւն
գտանել յահեղ աւուրն համառաւտի․․․ եւ
որ յիշեացէ ղվերոյգրեալքս․ Քրիստոս Աստ-
ուած զինքն յիշէ․․․ ։ Մի՛ ոք իշխեսցէ հա-

նել զՍուրբ Աւետարանս ի Ս. Հրեշտակապետացն, կամ գրաւական դնել, կամ գողանալ, կամ իւր սեպհականել, կամ յինչ եւ իցէ պէտս հանել ի սուրբ եկեղեցւոյն, այլ կացցէ մինասցէ հանապազ ի վերայ սրբոյ սեղանոյն ...եկեղեցւոյն. Եւ եթէ ոք իշխանութիւն ի կիր արկցէ եւ հանցէ, Քրիստոս լինի նմա դատախազ յաւուրն այցելութեան. եւ եղիցէ ինքն իւրայնովքն ի կենաց գրէն: Իսկ եթէ ոք վասն հեծելի եւ կամ վասն այլ իրիք խռովութեան՝ հանցէ, եւ յորժամ խաղաղի դարձուսցէ ի տեղի իւր, աւրհնի յԱստուծոյ....: Ով եղբարք, ոչ թէ վասն մարմնաւոր ինչ լուսմայի գրեցաք զՍուրբ Աւ. այլ վասն զմեզ յիշելոյ... ի մայիսի ԻՍ. սկսա. եւ յաւգոստոս ԻԱ. աւարտեցի»: «Յիշեցէք զՄատթէոս պատուական քահանայն, որ կազմեաց զՍուրբ Աւետարանս իւր ծախիւք եւ աշխատութեամբ... յիշեսջիք եւ զՄաներ Ջուլահակն եւ զամուսինն իւր Տուխթար... որ զՍուրբ Աւետարանս վերստին զարդարեցին արծաթով եւ ոսկւով եւ տէրունական նշանաւ եւ սուրբ պատկերաւ... եւ զՍտեփաննոս աբեղայն, որ շատ աշխատեցաւ ի յարծթելն... եւ զՄկրտիչ ոսկերիչն....: —Այլ գրով — «Զվերջին ստացաւղ զՍուրբ Աւետարանիս... զտանուտէրն Մղտեսի Ամիրբէկն եւ զկողակից զԽաթունմէլիքն. եւ զըրքաւսէր քահանայն զՏղապարոնն եւ զերիցակինն զՄըղտեսի Սուլդանն, եւ զԾնողսն զՇէրն եւ զԹաւրէզն, եւ զեղբայրն Ամիրխէրն եւ զկողակից զՍատաթն... այլ եւ զՍելումն, զԱհլին, զՍադաղան... զՄաւճուտ խաթունն, զԽուաճինն... զԱստուածատուրն, զՍքանդարն.. զՍայմէլիքն... զՄղտեսի Ամիրբէկն եւ զՄըղտեսի Սուլդանն, որ տէր

երկոքեանն գնեցին զԱւետարանս ի հալալ արդեանց իւրեանց… եւ եդին յիշատակ ի դուռն Ս. Նշանին…»։ —Այլ գրով—«… Ես Յովաննէս եւ Ամենադեհնին քոյրն Սալչուկն եւ իմ որդիքս Ալէքսանոսն եւ Մուսէսն. գնեցաք զԱմենադնինէգին ի չինի դուօ (տուաւ) եւ տուաք յիշատակ ի Ս. Նշանին դուռն, այլ մարդոյ դաւէ դալապայ չ'կայ, ոչ ի մերոց եւ ոչ յաւտարացն.. յիշեցէք զԱմենադինն եւ զքոյրն Սալչուկ… Գլուխն եկեղեցին է եւ աղբիւրն, անջինջ յիշատակ իւր եւ ծնողաց…»։

## Ս. ՍՏԵՓԱՆՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ

1 Աւետարան. ընտիր. մագաղաթ.

«… Գրեցի զԱւետարանս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի խնդրոյ աստուածազան եւ սրբասէր ըստ հոգւոյ հաւր մերոյ, ըստ մարմնոյ ուսուցչի մերոյ, պատուական քահանայի Սմբատայ Քաջկոնց, ի յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնողաց իւրոց, եւ ի վայելումն եղբաւր և եղբաւրորդեաց. և ամենայն նախնեաց իւրոց, իմոյ ձեռամբ Հեթումի նուաստ եւ անարժան քահանային եւ անպիտան գըրչիս։ Ի թուա. Հայոց մեծաց ի Չ. Խ. Զ. ի թագաւորութեանս Հայոց Սմբատայ. եւ ի Հայրապետութեանս Տեառն մերոյ Գրիգորիսի, ի քաղաքիս Մամուեստիայ, ընդ հովանեաւ Ս. Թորոսայ…»։

«Ես Անանիա Արք եպիսկոպոս, զքեզ աղաչեմ Աստուած իմ Քրիստոս…»։ Ի վախճան Մարկոսի գրեալ… «ՏէրՅիսուս ողորմեսցի.. Տէր Յովանէս եպիսկոպոսի վերադիտողի Մելտինու եւ Խարբերդու մայրաքաղաքաց»։ —Ի վերջն Մատթէոսի գրեալ. «Զատացաւղ Սուրբ

Աւետարանիս՝ զՏէր Անանիա զպատուեալ արք եպիսկոպոս Խարբերդոյ, զորդի Սիոնի երիցոյ, ստացայ զսա ի հալալ ընչից իմոց եւ եդի զսա ի հայրենի եկեղեցիս մեր ի Ս. Աստուածածին. եւ ի Ս. Ստեփաննոսն, եւ ի Ս. Սարգիս, որ է երեք խորան, ի յիշատակ ինձ եւ նախնեաց իմոց... յիշեսջիք... եւ զեղբայրն իմ զՏաւնական երէցն եւ զեղբաւրորդին իմ զՍահակ սարկաւագն, որ կէսաւրեայ փոխեցաւ առ Քրիստոս»...։

## Ս. ԿԱՐԱՊԵՏ ԵԿԵՂԵՑԻՆ ՍՈՐՍՈՐՈՒ ԳԻՒՂԻ

### 1 Աւետարան.

«... Ես անարժան Յոհաննէս եպիսկոպոս ի սրտէ խոցեալս, ի մտաց անկեալս, հոգւով զառանցեալս գրեցի, զՍուրբ Աւետարանս, իմ անարժան եւ մեղաւոր ձեռաւքն պակասեալ ի լուսոյ եւ հասեալ ի ծայր կենաց եւ ի դուռն մահու. և սպասեմ գերեզմանի. գրեցի... լաւ եւ ընտիր աւրինակէ. դրեցաւ ի թուին Ռ. եւ Ծ. ի յերկիրն Ցաղմոյ ի վանք Երկանըն-կուզենց, ի դուռն Ս. Կարապետու եւ Ս. Աստուածածնայ եւ Ս. Յարութնայ. եւ այլ սրբոց որ աստ կան»...։

### 1 Աւետարան ես.

«... Ես ծառայս Աստուծոյ Գ. Լեւոն Բազունեանց ցանկացող եղէ այսմ լուսաիղձ եւ կենսակիր կտակիս, եւ տուաւ աւարտել զսա Սիմէոնի գրչի. ի ստոյգ եւ յընտիր աւրինակէ Ս. Սահակայ Թարգմանչի. յըստակ եւ ականակիտ որպէս եւ ի Փրկչէն ասացաւ. զոր յոյժ բաղձանաւք եւ յոգնատաչոր մեծաւ աշխատութեամբ ստացայ զսա՝ ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ. եւ ի

յիշատակ ինձ եւ ամուսնոյ իմոյ տիկին Սըպլի, եւ որդեկաց իմոց Պ. Լեւոնի եւ Պ. Բաղունէ, եւ ծնողաց իմոց...»։

Ձեռագիրք Սօրսօրու Ս. Կարապետ եկեղեցւոյ. 3 Աւետարան. 1 Մաշտոց, եւ 1 Գանձարան։

Ձեռագիրք Գաղեմու վանից՝ 1 Աւետարան. 2 Մաշտոց, 1 Յայսմաւուրք։

Ձեռագիրք Ս.Կարպտ. եկեղ. Խարբերդի 11 Աւետարան։

Ձեռագիրք Ս. Յակոբ եկեղեցւոյ Խարբերդի. 6 Աւետարան՝ մին մագաղաթ. 1 Յայսմաւուրք։

Ձեռագիրք Ս.Նշան եկեղեցւոյ Խարբերդի. 4 Աւետարան. 1 Սարգիս Շնորհալի։

Ձեռագիրք Խուլէ վանից. 1 Ճառընտիր, 2 Աւետարան. 1 Գանձարան. 1 Կանոնագիրք Մխիթար Գօշի. զոր Մալաթիացի բողոքական Յովհաննէսը տարած էր կ'ըսէին:

— Վերոյգրելոց յիշատակարաններ չկրցի օրինակել:

## ՂՈՒԼԷԻ ՎԱՆՔ Ս. ԳԷՈՐԳ

### 1 Աւետարան.

— Ի սկիզբն։ «Յիշատակ է այս Սուրբ Աւետարանս Զմշկազէկցի Գէորգ եպիսկոպոսիս, որ դաղդաղեալ ձեռաւք գրեցի անարժան առաջնորդ Ս. Գէորգայ գերեզմանի Խուլավանից, որ զարդարել է հանգուցեալ Միքայէլ եպիսկոպոսն. վասն երկիւղին Լավանկ Թամուրին սուրբ գերեզմանիս միաբանքն թագուցեալ են ի Ծով դղեակ. եւ վանս Խարդիշարի եւ Ս. Կարապետին եւ Կարմիր վանուց. եւ սիրով յորդորեալ ամենայն միաբանաց, կրկին ժողովեցի ինն միաբանս եւ պահծառացուցաք Ս. Աթոռս. եւ երկու ագարակ գնեցաք գիւղին մերձ եւ դաշտն մեծ ագարակն՝ հարիւր փարայ, եւ միւսն քսան, իմ հալալ վաստակէս, եւ բացի վանքիս մերձակայ հաւչէ՝ որ ածեալ քար դրաք ի ներքոյ վանացս ութն բոլէ. եւ հիւսիսային հա-

նապարհիւ սուտ Լոյսալի գիւղն, որ հեռի է կէս ժամ. եւ անտի հողադաշտ լեռն է յարեւմտից կուսէ դէպ ի հարաւ կէս ժամ, անտի յարեւմուտս կէս ժամ, մինչեւ ի ճանապարհն Խարբերդու, եւ ճանապարհիւ ուղիղ դէպ յարեւմուտս եւ ի գլուխ գեղին աւծեալ քարն՝ հանց ջրով եւ հողով, որ բազում աշխատանաւք ստացայ...»:

«Պարոն Աբէլն Թաղարցի, որ կուր էր աչաւք եւ եկն ուխտ, եւ բացան աչք նորա. հարիւր եւ վաթսուն ամաց (էր). եւ բազում քաջութեամբ ստացաւ վանացս հողն որ տիրեալ էր Լոյսալի (գիւղի) չար կարդացողըն....: Ասացէք Աստուած ողորմի նահատակ եղբաւրս Տէր Յովանին... Մէլիք Մահտոյ Աւգբէկցւոյ, թաղեցաւ ի մատուռն Ս. Աստուածածնայ, եւ բազում հիւանդ բժշկի. վայ ինձ բթամտիս որ եղբայր նորա եմ եւ այս սուրբ գերեզմանիս առաջնորդ եմ. գրեցի այս բանս սակաւ. այլ եւ գրեալ եմ ամենայն անցք որք ընդ իս եւ ընդ աթոռս անցին, յիշատակագրութիւն Միքայէլ արք եպիսկոպոսին եւ միւս Առաջնորդաց որք յառաջ քան զմեզ. իսկ այս բանս սակաւ գըրեցի թուին Հայոց Պ. Ղ. Բ.»:— Ի վերջն Մատթ. Աւետարանի գրեալ. —«Ի թուին Հայոց Ո. Ղ. Է. ի Հայրապետութեան Տ. Կոստանդեայ եւ ի թագաւորութեան մեծին Հեթմոյ գրեցաւ Սուրբ Աւետարանըս յԱստուածապահ եւ յանմատոյց կլայս Հռոմի, յաթոռ Լուսաւորչին մերոյ Ս. Գըրիգորի, ի գրունս սուրբ վկայիցն Թէոդորոսի եւ Գէորգեայ եւ Ս. Աստուածածնին. յորոց դուռն սպասաւորեմք այժմ, թողեալ զհայրենի բնակութիւն մեր զբարձր գղեակն եւ զանմատոյցն զԿլատենայ, եւ փախեալ յայ-

լասեռիցն չարեաց, եւ վասն քաղցրութեան վերադիտողիս Հայոց Կոստանդեայ սրբոյ եւ առաքինւոյ եկեալ բնակեցաք աստ, հովանաւորեալ իբրեւ զփախուցեալն ի տապոյ ամարանւոյ առ Թաւուտ ծառոց ընդ չքով. զոր Տէր Յիսուս զաս հաստատուն պահեսցէ...»։

«Կատարեցաւ սուրբ պատուիրանս Փրկչին... յայսմ վայրի, ձեռամբ յոգնամեղ գրչի Պետրոս երիցու որդւոյ Կոստանդին երէցու, ազգաւ Կառենայեցի, յիշատակ ինձ եւ իմոցն, եւ ի վայելումն որդւոց իմոց Առաքելոյ եւ Կոստանդեայ. ... յիշման արժանի արարէք զբարետոհմիկ եւ զբարեկեցիկ զերկասին հարսունսն իմ զԱրեւթագուհին եւ զՏիրուհին, յորոց ոչ մին եհաս ի բերումն զաւակի, այլ տարաժամ եւ դեռաբոյսք փոխեցան ի Քրիստոս, եւ անմխիթար սուգ թողին ինձ եւ որդւոց իմոց...»։ — Ի լուսանցըն Յոհաննու Աւետարանի «Եւ էր Յիսուս յԵրուսաղէմ ի Պրօպատիկեայ» բանին՝ գրըւած է «Մեսրոբ վարդապետ հիմնադիր սուրբ, պաշտպանութեամբ իշխանաց Ծովդղեկու շինեցին մենաստանս. Թուին Հայոց ՈՃ. Զ. Գ. յիշեսջիք... Մաղաքիայս»։

Խուլէի վանքին մէջը կը գտնուէր Ս. Ներսէս Շնորհալւոյ օրհնած միւռոնը փոքրիկ շիշով մը, եւ կար վկայագիր կամ յիշատակագիր մագաղաթի վրայ, եւ տուփ մի սրբոց մասանց որք պատատեալ էին մոմշորի մէջը. եւ որոց վրայ կարմիր կնքամոմով կնիքները դըրոշմուած. Այս ամէնը գտնուած են եղեր 1839 ին, Ս. Տաճարի նորոգութեան առթիւ, ի ներքոյ սեղանոյն առ գերեզմանաւ Ս. Գէորգեայ: Մեք կ'օրինակեմք հոս յիշատակագրերը։

Ս. մասանց տուփին մէջը, երկու մատ լայնութեամբ եւ քիչ մի երկայն, հնագոյն թղթի մը վրայ գըրեալ «Ողորմութեամբն Աստուծոյ որ ազգս վայելէք ... ի տանս Կիլիկեայ գանձի, որ պարգեւեաց անարժանիս Աստուած. յիշեսջիք զհայրն իմ Կոստանդին եւ եղբայրս իմ

Գ. Սմբատն. եւ որդիքս սիրելի Լեւոն Թորոս Ռուբէն, եւ կողակիցս Զապէլ Թագուհին, որ . . . հոգայ, կրաւնաւորս եւ հիւանդս... եւ ես արքայի գանձուց պարգեւեցի սուրբ մասն Գագաթան Կարապետին Քրիստոսի. եւ եսու պարգեւ մխիթարութեան ընդ կողակցուս եւ դեռաբոյս Գ.Մէլքոնին. Աստուած վայելումն տացէ . ամէն. Զ. Բ. ին» :

(Կնիք)

ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲ ԱՅ. ԱՐՔԱ ՀԵԹՈՒՄ
Ռ. Հ. Ե.

Օրինակ վկայականի Ս. Իւղոյն ի մագաղաթեայ բնագրէն.

«Արդ ողորմութեամբն Աստուծոյ կառուցաւ սուրբ գերեզմանս ԳԻՔԱ ղաւրավարին ձեռամբ ծառայ ծառայիցն Աստուծոյ, ոտից հող ՄԻՔԱՂ սուտ անուն արք եպիսկոպոսի. որ շնորհեաց անարժանիս բարեպաշտ Մելքաւն պարոն իշխան որ ի գանձուց արքայի Լեւոնայ եւ Հեթմայ առեալ է ի պատուգացն Յունաց, որ ես տեսի կնքալ եւ վըկայեմ. եւ հարիւր դահեկան պարգեւեաց որ նորոգեցաք եկեղեցիս եւ փոխեցաք անոյն Ս. Գէորգ, որ էր ՄՍՎԱՆ. յիշատակ Մելքաւ ամիրայի թագաւորազն. այսպէս թաղեցաք տասն կրաւնաւորաւք եւ քառասուն աւր պատարագաւք աջ կողմն մեծ խորանիս, ուր կայ յիշատակն Մլքաւնին եւ չիչ մի սուրբ իւղ. որ սայ Ներսիսի Կլացոյ Հռաւմկլայու Ս. Հայրապետին աւրհնած սուրբ իւղն է, որ քեռն երկրորդ Հեթմայ փախուցեալ է Հռոմկլաու, յորժամ Աշրաւ ամիրայն Եգիպտոսի կործանեաց զկաթուղիկոսարանն Կլաու. եւ անտի հասաւ արքայն Հեթումն եւ ձեռամբ Մըլքաւնի առ սուրբ ուխտս. որ եւ տեսաք կընիք Ներսիսի սուրբ վարդապետին ի վերայ եւղոյս եւ կնքեցաք. եւ փոքրիկ մատուռի ե-

դաք գերեզման զաւր Ս. Միւռոնս այս ե-
դաւ յիշատակ Ս. Ներսիսի Կլայեցուն եւ եղ-
բաւրն Գրիգորի. եւ փոքր մաս մի Ս. Կա-
րապետի, եւ կնքեցաք. Կիրակոս եպիսկոպոս
Արապգր քաղաքին, Մատաթիայ եպիսկո-
պոս Մելիտինու, եւ քոր եպիսկոպոսն Աստ-
ուածածնայ եւ Աբդլմսեհու երկուց նորաշէն
վանուց, որ հրամանաւ Մելքաւն ամիրային
նստին Խարբերդու դաշտն եւ միայն խրա-
տեն ժողովուրդն. մենաստան դաշտիս է մի-
ան Ս. Գէորգ, որ ունի հինգ հազար տուն
ժողովուրդ, եւ չորս եկեղեցիս Խարբերթու
բացի Ասորւոց, որոյ քաղաքիս եւ դաշտիս
Խարբերթու ոտից մոխիրն Առաջնորդ ես եմ.
բայց նզովեմ ես եւ երկու եպիսկոպոսն, եւ
Գէէթ. քաւր եպիսկոպոս որդիս, ով որ բացցէ
սուրբ շիրիմս Գէ.ԲԱ. եւ գողասցէ կամ այլ
տեղ տարցէ, նզովեալ լիցի. եւ թէ վիճակն
խլեսցէ, բաց ի վեց գիւղից, որ Ս. Աստուա-
ծածնայ և Աբդլմսեհի եւ պարոն Մլքաւնն,
եւ գեղեցիկ կարգադրութիւն մեր խափանես-
ցէ՝ մահու եւ դժոխոց արժանիս լիցի. Անուն
հաւրն եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ. ամէն »։

| կնքէ | կնքէ | կնքէ |
| --- | --- | --- |
| Գէորգ եպս. | Միքայէլ եպս. Ձ. Դ. | Կիրակոս եպս. |



Սոյն վանից գերեզմանատան մէջ կը գտնուին եօթն մահարձանք, բարձր խաչաքարեր. նման Ս. Թարգմանչաց մահարձանաց որ յԱռաքելոց վանս ի Մուշ։ Ասոնցմէ քանիին վրայ գրուածներն են. — «Զ. Հ. Գ. յիշատակ է Մքայէլ վարդապետին»։ — «Թուական Զ. Գ. յիշատակ է. Ստեփան վարդապետին»։ — «... (եղծեալ) Սարգսի»։ — Կափարիչ քարի մը վրայ զգեստաւորեալ եպիսկոպոս մը քանդակած եւ սրտին վրայ գըրուած էր «Եպիս. Ո. Մ. Զ. Գ.»։ — Գերեզմանատան քովի աղբիւրին վրայի քարէն օրինակուած «Կամաւքն Աստուծոյ նուաստ Սիմէոն վարդապետ եւ միաբանք Ս. Գէորգայ շինեցաք զաղբիւրս»։ — Հին քարի մը վրայ «Զ. Հ. Գ.»։ — Աղբիւրին քով շիրմի մը վրայ «Այս է տապան հանգստեան Տէր Արիստակէս գրոց աշակերտի, որ փոխեցաւ ի Քրիստոս... (անընթեռնլի). Թվ. Զ.»։

Ս. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ ԾՈՎՔ ԿԱՄ ԿԷՕԼՃԻԿ ԳԻՒՂԻ

1 Աւետարան.

«... Ես Գրիգոր ի վերջ հասեալ գիտնականաց... ցանկացող եղէ այսմ լուսայիղձ եւ կենսակիր կտակիս Ս. Աւետարանիս, եւ ետու աւարտել ի սորյգ եւ յընտիր գաղափարէ Ս. Սահակայ Թարգմանչի յստակ եւ ականա...» (Թուղթ հատեալ)։

Վերջին յիշատակարան մի եւս կայ գրեալ «ի Թվին Հայոց Ջ. եւ Ա.»։

1 Աւետարան եւս. պատկերազարդ. Նախշուն անուանեալ։

— Ի վերջն Մարկոսի գրեալ «... զՄկրտիչ վարդապետն եւ զՅովաննէս վարդապետն

հանդերձ միաբանաւք սուրբ ուխտիս Առգելանոց աղաչեմ յիշել առ Քրիստոս Յիսուս Աստուած, որ ազատեցաք զսուրբ Աւետարանս ի յանաւրինաց եւ տուաք դարձեալ յառաջին տեղին ի գիւղն որ կոչի Շուշանց· հոգաբարձութեամբն տանուտրոջն Հազարբէկին...: Զվերջին ստացող Ս· Աւետարանիս զխոճա Մուրատն ի Ներքին Ծովացն յիշեցէք... հայրն Սադաղին եւ մայրն Նազխաթունին, եւ իւր որդւոցն Աղուպին, Այվատին, Սատաղէնին, Ավրանին, Մուշեխին, Ջոհար մամին...» — «Նուաստ Յովանէս եպիսկոպոսէս գիտութիւն լիցի ձեզ քահանայիցդ եւ տանուտիրանցդ... մեծի եւ փոքու որ ի Ներքին Ծովուցն ԲՃ· աւթմանի է, քան զայս այլ աւել եւ պակաս առնողն ի Ներքոյ աւրինաց է, զի յառաջմէ ի վեր այսչափ էր, հիմի այլ ոք մի իշխեսցէ խախտել զսա...»: ...«Եւ արդ յայսմ տարտարոս եւ ի դառն եւ ի վշտալից ժամանակիս, որ էր Ջ·Ղ·Գ·... Այցելու որբոց եւ այրեաց պարոն Յովանէս մեծ սիրով եւ յոյժ փափաքանաւք ետ գրել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնողացն Կիրակոսին եւ Շողտիկնայ, եւ կենակցին՝ Թագուհւոյն եւ զաւակացն... եւ Հռիփսիմի հաւատաւորի ... յիշեցէք զանյիշելի գրիչս... զԿարապետ կրաւնաւոր... զմայրն Ասլմէլիք, եւ զքոյրսն զՍուլթանմէլիք եւ զՋանմէլիք, եւ զզաւակսն զՅոհաննէս եւ զԳուռջիհ բէկն ... եւ զբարի յիշատակն իւր զԲոյս որդին ...»: — Այլ յիշատակարան ... «Արդ ի դառն եւ ի նեղ ժամանակիս որ է թուական Հայոց Ջ·Ժ·Թ·... Աստուածասէր, համեստ եւ հարկեւոր կինն Շիրազմամէն ետ նորոգել զսուրբ Աւետարանն... յիշեցէք զՇի-

րազխաթունն ... եւ զհայրն զԱսլանն, զմայրն Շնաւհօրն, եւ զեղբարսն... զՄուրատշէնն եւ զայլն իւր զՆնդուբէկն ... եւ զզաւակսն զթաւթիկն... զԱսլան բէկն... զդուստրն զՄամէն... եւ զթումաբէկն... զպարոն Հազարբէկն, եւ զկողակիցն իւր զԴուխտայն, զորդին զՄխիթար սարկաւագն, զորդին զԱղբէկն եւ զկողակիցն զՄուղալ խաթունն եւ զորդիսն... զՈւնճուբէկն եւ զՆնըդրաճն...»։

## Ս. ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑԻՆ ԱՎՇԱՆ ԳԻՒՂԻ

1 Յայսմաւուրք. ընտիր. մագաղաթ։

...«Գրեցաւ ի Բիւզանդիա ի մահալլէն Սուլու մանաստրու, ի թուականութեան Հայոց Ռ.Ղ.Դ. ի թագաւորութեան Տաճկաց սուլթան Իպրահիմին, եւ ի Պատրիարքութեան Զ. եկեղեցեաց իշխանաց...»։

1 Աւետարան եւս.

... Սուրբ Աւետարանիս ցանկացող եղեալ Հայրապետ քահանայն եւ ետ գրել զսա յիշատակ իւր եւ զաւակի իւրոյ Յակոբայ... աւգնականութեամբն Աստուծոյ առեալ զսա յանձն քահանայ ոմն Սիմէոն անուն, եւ գրեաց զՄաթէոս գլուխն ի լրման եւ զՄարկոսն մինչեւ ի հարիւր եւ ի տասն համար, առ դրան Հայրապետ երիցու եկեղեցւոյն, սրբոյն Յակոբայ եւ սուրբ Թորոսու, եւ եղեւ զի վասն չար եւ դառն ժամանակիս որ վասն ծովացեալ մեղաց մերոց բազում քաղաք եւ գաւառք աւերեցան, եւ բազում գեղ աւեր եւ անբնակ եղեն ի մարդոյ եւ յանասնոյ, սա ելեալ յԵկեղեաց գաւառէ գնացեալ հեռաբնակ գաւառսն, եւ մնացեալ

Ս․ Աւետարանս Թերակատար ժամանակս բազումս․ իսկ Նախասացեալս Հայրապետ երէց եղբայր գոլով մեր ըստ մարմնոյ, յոյժ բռնադատեաց վասն սորա զի զկատարումն առցէ, եւ ես ոչ առնուի յանձն յաղագս տկարութեան անձին իմոյ եւ զի չէի հմուտ այսմ գրչութեան արհեստի, ապա նա եւս առաւել յորդորեալ զմեզ զի հանապազ եկեղեցին մեր կացցէ յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց եւ ի ժառանգութիւն զաւակի մերոյ, Յակոբայ, եւ ես վստահացեալ ի զաւրութիւն Աստուծոյ առեալ ի ձեռն զսա գրեցի եւ զպակասութիւն սորա լցի ըստ կարողութեան անձին իմոյ․․․ գրեցաւ ի գաւառիս Եկեղեաց ի յանապատիս որ յանուն Ս․ Կիրակոսի, մերձ առ ի ստորոտս լերինն Բթնոյ, զի է տեղի հանգստարան մերոյ, ի Թուականութեանս Հայոց Պ․․․․ յիշեցէք ․․․ եւ․ հայցեցէք զթողութիւն մեղաց առաջին աշխատողին եւ գրողին սորա Սիմէոն երիցու․․․ այլեւ մեղուցեալ անձին իմոյ Ազարիա աբեղայի, որ զյետին գիրս գրեցի․․․»։ +

### ՅԱՂԹՈՒԿ ԳԵՂ ՁՄՇԿԱԾԱԳՈՒ

1․ Աւետարան․ ընտիր, մագաղաթ։

Զոր նուիրեցին ինձ, եւ ես ընծայեցի Կ․ Պոլսոյ Ազգ․ Մատենադարանին։

«Փառք փառաւորեալ սուրբ երրորդութեան, միաբան զաւրութեան, երեքանձնեայ տէրութեան եւ ի մի կատարեալ իսկութեան Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Աստուածային սիրոյ հետեւումն բնաւորեալ է յաստուածասէր անձն, զի ամենայն բարեաց սկիզբն եւ

գոյութիւն ի նմանէ է , եւ այնչափ զաւրաւոր է եթէ ոք սուղ ինչ ճաշակէ ի նմանէ անհատ կարաւտի եւ տաւել ցանկայ ։ Զի թէպէտ մեծ են հաւատ եւ յոյս , սակայն ի հանդերձեալսն ունին զկատարումն . իսկ սէր ընդ Աստուծոյ յերկարաձգի յանժամանակ յաւիտեանսն . վասն այնորիկ սուրբքն եւ արդարքն առաջինք զամենայն զկեանս իւրեանց նեղութեամբ եւ չարչարանաւք աւարտեցին ի սէրն Աստուծոյ բեւեռեալք ։ Ցաղագս այնորիկ եւ տէր կոստանդին աստուածակոչ վերադիտող Հայոց՝ զամենայն զկեանս իւր Աստուծոյ սիրոյն նուիրեալ ի մանկութենէ , յամենայն գործս բարիս յաւժարամիտ եւ ի պայծառութիւն տանս Աստուծոյ փոյթ , եւ ի ստացումն սուրբ կտակարանաց անգանդաղ , որ մեծ յուսով եւ անհատ սիրով ստացաւ եւ զայս կենսակիր եւ աւետաւոր բանս բանին Աստուծոյ , ոչ ի լնուլ զթերութիւն անկորուստ եւ փարթամ տան իւրոյ , այլ ի լրումն փափագման աստուածասէր հոգւոյն ։ Արդ գրեցաւ Ս . Աւետարանս ի թուա . Հայոց Զ . Բ . ի սուրբ եւ յաշխարհամուտ աթոռս Հռոմկլայ , ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչին մերոյ եւ աստուածաներկ սուրբ Նշանիս , եւ այլ բազմահաւաք սրբոցս ։ Ի թագաւ . Հայոց Հեթմոյ պայծառահաւատ թագաւորի , եւ բարեպաշտ որդւոյ նորա Լեւոնի , որոց տացէ Աստուած կեանս բարիս եւ անսասան թագաւորութիւն ի փառս իւր ։ Հրամանաւ երջանիկ եւ աստուածազգեաց կաթողիկոսի Հայոց Տեառն կոստանդեայ , որ ստացաւ զսա յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծընաւղաց իւրոց եւ եղբարց հանգուցելոց ի Քրիստոս ։ Արդ աղաչեմք զամենեսեան , որք

ժառանգէք զսա եւ կամ աւգտիք ի լուսաւոր բանից սորա եւ կամ գաղափար առնուք, յիշեսջիք ի Քրիստոս զբարեաց յիշատակաց արժանիսն զՏէր Կոստանդին աստուածապատիւ կաթողիկոս Հայոց, եւ զուղղադաւան հայր նորին զՎահրամ, եւ զՔրիստոսասէր մայր նորին զՇողիկն, եւ զեղբարս նորին զԳրիգոր եւ զԳէորգ զվաղուց փոխեցեալս առ Քրիստոս, եւ զեղբաւրորդի նորին զարժանապատիւ աստուածասէր քահանայն զԹոռոս, եւ զքրիստոսապահ որդի իւր զՍտեփաննոս, եւ համաւրէն զամենայն զազգայինս իւր զկենդանիսն եւ զննջեցեալսն, ցաւղ ողորմութեան ցաւղեսցի ի գերեզմանս ննջեցելոցն, եւ կեցուցիչն կենդանութեան տացէ կենդանեացն ընդ երկայն աւուրս։

Այլ թէ ոք սրտի մտաւք եւ անկեղծ սիրով յիշեսցէ զյիշատակեալսդ եւ նոքա եղիցին յիշեալք յողորմութիւն Քրիստոսի եւ Աստուծոյ։ Արդ ով բան եւ լոյս, ով կեանք եւ իմաստութիւն եւ զաւրութիւն Աստուծոյ Յիսուս Քրիստոս, ի քո յահաւոր եւ սոսկալի գալստեանդ, յահեղ դատաստանիդ եւ յանկաշառ ատենիդ, ի ձեռն անխաւս միջնորդիս եւ անբարբառ բարեխաւսիս, ընկալցիս զՏէր Կարապետն ընդ արժանաւոր եւ ընդ հաւատարիմ վաստակաւորսն քո․ եւ ընդ ընտրեալ հովուապետսն առնուլ զբրաբիոնն յաղթանակին ի քո յառատաձիր եւ յաննիւազ պարգեւացդ․ եւ քեզ փառք ընդ հաւր եւ ընդ հոգւոյդ սրբոյ յաւիտեանս յաւիտենից ամէն։ Եւ արդ ես անարժան եւ անպիտան դծողս Յոհաննէս յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան յիշել զմեզ եւ զմերս ամենայն․ եւ խոշորութեան եւ սըխալանաց անմեղադիր լերուք․ զի տկարա-

նայ ամենայն մսեղի ի գործս իւր․ սակայն եւ ես պակասեալ ի սգալի լուսոյ յաչաց տեսութենէ․ եւ ի հոգւոյ եւ ի մտաց լուսոյ ամենեւին զրկեալ․ այլ հարկեալ ի շնորհաշուք ալեացն եւ պատկառեալ յաստուածատիպ պատկերէն՝ գծագրեցի զսա ըստ իմում կարի, եւ դուք սիրով ուղղեցէք զթերութիւն․ եւ Աստուած առ հասարակ ամենեցուն ողորմեսցի․ եւ ինքն եղիցի աւրհնեալ յաւիտեանս եւ յաւիտեանց յաւիտեանս ամէն»։

— Այլ գրով— «Ես Կոստանդին ծառայիցն Աստուծոյ ծառայ եւ ողորմութեամբն Աստուծոյ կաթուղիկոս ամենայն Հայոց, որ ետու գրել զԱւետարանս զայս յաղագս անձին իմոյ․ յընտիր եւ ի լաւ աւրինակաց, եւ ոսկով եւ արծաթով զարդարեցի․ եւ իմ տեսեալ զմենաստան անապատն զՓոսն, եւ միաբանեցի զիւրեանքն ի մի պաշտաւն եւ ի մի սեղան․ եւ առին իւրեանց սահման ըստ կարեաց իւրեանց․ եւ ես միաբանեցայ ընդ նոսա եւ պարգեւեցի նոցա զԱւետարանս զայս զոր ինձ ստացել էի, յիշատակ ինձ եւ եղբաւրորդւոյ իմոյ Թորոսի քահանայի, եւ ծընողաց մերոց եւ եղբարց եւ քերց մերոց, զի անփոփոխ մնասցէ ի սուրբ ուխտս․ եւ մի՛ ոք իշխեսցէ հանել զսա ի Ս․ Անապատէս․ զի մի՛ անիծիւք պատժեսցի»։ .... «Քրիստոս Աստուած... յիշէ զԿիրակոս երէց... եւ զկենակիցն իւր զԽութլուն. որ ծնան զզաւակ բարի զԴաւիթ երէց... եւ սա... գընեաց ի հալալ վաստակոց իւրոց եւ ի չքաւորութենէ զայս ոսկեզաւծ Ս․Աւետարանս, որ է անգին մարգարիտ, յիշատակ զաւակին իւրոյ դեռաբուսական Հռիփսիմէի...» Ի թուին Գ․ Լ․ զԱռաքել յիշեցէք»։

— «Զկարապետ ոսկերիչն յիշեցէք... եւ

զիւր որդին զԱմիրխէրն եւ զիւր ծնողսն... որ արծաթով զարդարեաց զսուրբ Աւետարանս...»։

— «Աստուած աւրհնէ զՌուստէմն եւ զիւր որդին զՊաւղոսն եւ զիւր եղբայրն, որ զիւր վանացն (ջաղացն) զինչ աղուն աղայ՝ նա զվարձքն եթող սուրբ Կարապետին»։

— ... «Յիշեսջիք զտնաւես Ոսկիկն որ ետ կազմել զսուրբ Աւետարանս, իւր եւ իւր այրոջն Վարդանին եւ հաւրն Թումասին եւ մաւրն Խրիմզին եւ մեծ պապուն Քուլէֆին, եւ մեծ մաւրն Թմլան եւ եղբարցն Պետրոսին եւ Երանէլին. եւ հաւրեղբարցն Տէր Ներսէսին եւ Խոսրովին. եւ իւր որդւոյն հոգւոյն, եւ եդ յիշատակ ի գիւղն Հաղդուկ, ի դուռն Երեք մանկանց, որ է Ջմշկածագու մէջ... որ է ոխմ. (ոխվ. վագրֆ)...»։

— «Դարձեալ վերստին նորոգեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ տէր Սարգսին, որ է կրաւնաւոր... Աստուած ողորմի Պռաստեցի Մինասին... որ տվեց ոսկի մի սուրբ օետարանիս... նորոգեց... Թվին Ռ. Ճ. ԿՁ.»։

«Աստուած աւրհնէ զՊռաստենք գիւղն եւ զիւր Քրիստոսադաւան ժողովուրդն ըղռայիս Գըտոնն եւ զիւր որդիքն զՆերսէսն եւ զՄովսէսն եւ զիւրեանց որդիքն. զԱստուածատուրն եւ զիւր որդիքն. զՄղտեսի Հարապետն զՎարդանն եւ զիւրեանց որդիքն. եւ Աստուած լուսաւորէ զիւրեանց ննջեցելոց հոգիքն, որ միաբանեցան ի սէրն Քրիստոսի, եւ արտ մի, Գ. չափու տեղ՝ յիշատակ դրին ի դուռն սուրբ Կարապետին եւ սուրբ Սարգսին եւ սուրբ Տիրամայր Աստուածածնին, ի վանքս Խարտիշարոյ, եւ ի յառաջնորդութեան տէր Աստուածատուր եպիսկոպոսին, եւ Ստեփաննոս վարդապե-

տին, եւ Տիրատուր քահանային, յամէն տա-
րի կարդացէք, եւ զայս ժողովուրդս ի Քրիս-
տոս յիշեցէք...»։

— «Յիշեցէք եւ (Աստուած ողորմի) աստ-
ցէք Դանիէլին եւ Մաւճուտին եւ Նթարին
եւ Մնացականին, եւ այլ ամենայն եղբարց եւ
քուերց, որ ետուն կամաւոր ողորմութիւն
եւ օգնական եղեն շինութեան Ս. Կարա-
պետու վանիցն. եւ Ս. Աւետարանս գրեա-
եալ կայր սօտ յայլազգիս եւ առքա ընձեա-
նելով ինչք՝ զերծուցին յայլազգւոյն եւ եդին
յիշատակ հոգւոյն ի Ս. Կարապետս...»։ Թվին
Ռ. Ղ. Է. կրկին նորոգեցաւ վանքն, զի ի
չարժամանէն աւերեալ էր, եւ Առաջնորդ վա-
նիցն էր Տէր Միքայէլն»։

— ի վերջն Ղուկասու Աւետարանի գրեալ.
«Ես Տիրատուր եպիսկոպոս, վերջին ստա-
ցող Ս. Աւետարանիս որ ստացայ զսա ի հա-
լալ վաստակոց իմոց, կազմեցի կրկին եւ եդի
յիշատակ ի Ս. Անապատս Խարտիշարոյ ի
գաւառս Չմշկածագայ ի դուռն Ս. Կարա-
պետին եւ սուրբ տիրամաւր Աստուածածնին
եւ Ս. Սարգսի զաւրավարին... յիշեցէք...
զառաջին ստացողն զՏէր Կոստանդին կա-
թողիկոսն Հայոց իւրայովքն հանդերձ. եւ
զկիրակոս եւ զԴաւիթ քահանայ զմիջին
ստացողք, եւ զիս զՏիրատուր նուաստ
եպիսկոպոս զվերջին ստացողս, եւ ով ոք
երախտիք ունի ի վերայ Ս. Աւետարա-
նիս...»։

— Աւետարանիս դրան նկարէն խորաննե-
րէն զկնի՝ երկու երեսներու մէջը ոսկեզօծ
էջերով գրեալ է

«Ով յԱնակիզքն ծոցոյ բան, նոյն եւ ծած-
կեալ յազգս մարդկան.

« Որ զայս մատեան Աւետարան մեզ հնչեցեր
ձայն ցնծութեան ,
« Դու զպճնողս քո բանի զտէր կոստանդին
հովիւս բարի
« Նստո՛ յաթոռ ընդ Պետրոսի երգել քեզ
փառս անլռելի :
« Որ յամենայն չնչոց աւրհնիս , հանուրց
գոյից տէր ճանաչիս ,
« Արդ զնուիրող այսմ նիւթիս ընկալ ի փառսդ
որ յապառնիս ,
« Բազմել ընդ քեզ ի հարսանիս :
« Եւ ծնողաց նորին ողորմեսցիս . որ յաւիտ-
եանս միշտ աւրհնիս » :

## 1 Աւետարան եւս.

... « Գրեցաւ սա ի Թուա. Հայոց ի Ջ. եւ ԺԸ. ի յերկրիս որ Տիւրիկի կոչի , ի վանքըն Վաւդըռ (Օտուռ) գեղջին ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Ս. Յակոբայ. Նշանին եւ Յոհաննու , եւ այլ սրբոց որ աստ կան հաւաքեալ. ի հայրապետութեան տեառըն Մկրտչին եւ տէր Բարսեղին... ձեռամբ Ստեփաննոսի անուամբ միայն կոչեցեալ հայրապետին... Յիսուս Քրիստոս չարժեաց ի սէր աստուածային նախանձու զնոր-Մանուկն և զկողակիցն իւր զՇնոհուրն , որ... ստացան զսուրբ Աւետարանս... եւ եդին ի սուրբ Անապատն Աւագվանք կոչեցեալ ի դուռն Ս. Աստուածածնին եւ Ս. Կարապետին եւ երկոտասան սուրբ Առաքելոցն յիշատակ... ոչ ոք ունի իշխանութիւն , ոչ վարդապետ , ոչ առաջնորդ հանել ի դրանէ Աստուծոյ՝ ծախելով կամ գրաւ դնելով , եւ թէ ոք յանդգնի ընդ խաչհանիս պատժեսցի , ընդ Յուդայի եւ այլոցն. այլ աւրհնակ եւ ընթերցումն մի խնայեսցի... յիշեցէք զստա-

ցող սորա եւ զծնողսն իւր եւ զՆերսէս սըր-
բասէր աբեղայն որ պատճառ եղեւ այս բա-
րութեան, եւ զծնողսն իւր... աղաչեմ յի-
շել ի տէր զմահտեսի տէր Ներսէս կրաւնա-
ւոր:ն եւ զհայրն իւր զԱստուածատուր պատ-
ուելի քահանայն, որ մականուն Գառնուկ կո-
չի, եւ զմայր իւր զԼալխաթուն, եւ զեղ-
բայրն իւր զհաւատարիմ քրիստոնեայն զԱ-
բիստակէսն, եւ զեղբայրքն իմ զփոխեցեալ
առ Քրիստոս զՅոհաննէս եւ զՄելքիսեթն,
եւ զհաւրեղբաւրորդիքն իմ զՍարգիս եւ
Գրիգորն եւ Մարտիրոսն, որ են յերկրէն
Լեւոդկայ, որ եդին իւրեանց յիշատակ զա-
տիֆա չուրջառ մի բոլոր զգեստով ի սուրբ
Անապատս որ կոչի Աւագ վանք...»:

Դ Աւետարան եւս.

«... Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվա.
Հայոց ի Ջ. Ղ. ամին, ձեռամբ... Յովսէփ
... եպիսկոպոսի, ի նահանգիս Ջմշկածագի,
ի վանքս Խարտիշարի, ընդ հովանեաւ սուրբ
Կարապետի եւ սրբոյն Սարգսի զաւրավա-
րին եւ որդւոյ նորա Մարտիրոսին. եւ այլ
բազմահաւաք սրբութեանց որ աստ կա-
ռուցեալ կան, ի յառաջնորդութեան սուրբ
ուխտիս տէր Կարապետ եպիսկոպոսին, որ
փոխեցաւ առ Քրիստոս, եւ ի հայրապետու-
թեան Վաղարշապատոյ սուրբ Էջմիածնայ
տեառն Գրիգորիսի, եւ միւս հայրապետու-
թեան Սսոյ տէր Սիմէոնի: Այլ եւ (յիշե-
ցէք) զմեր առաջնորդս զտէր Թադէոս հայր-
պետն եւ զվանիցս միաբանքն մեծ եւ փոքր
կրաւնաւորք, որ հիմի կան, են թուով ի Ջ.
թող զսարկաւագն եւ զտնտեսն եւ զմղտե-
սիքն եւ զգործաւորքն:... Գրեցաւ սա ի
լաւ եւ յընտիր աւրինակէ. եւ ունի զտասն

*խորանացն զգիրսն կարմրագրով ի վերայ իւ-
րաքանչիւր գլխոցն համարին... Աղաչեմ...
յիշման արժանի առնէք զ... գրիչս Յովսէփ
եպիսկոպոս եւ զմարմնաւոր հայրն իմ զՄար-
տիրոսն, որ Լ. տարի տնտեսութիւն արար
այս վանիցս, եւ զմայրն իմ զԴշխոյն...
խնդրեմ որ իմ մեղացս թողութիւն ուզէք
յԱստուծոյ, զի յոյժ մեղուցեալ եմ։ Մեղայ
Աստուծոյ։ Եւ Աստուած զձեր մեղքն թո-
ղու...»։*

*Սոյն Յաղթուկ գեղի ձեռագիր մատեաններէն. Երկու
Աւետարանի եւ մէկ Յայսմաւուրքի յիշատակարանը մը-
նաց։ Այստեղ հաստատեցին Թէ Զմշկածագցի տէր Գրի-
գորի հայրն բեռ մը ձեռագիրք տարած է այս գեղէն եւ
Խարտիշարու սուրբ Կարապետ վանքէն։*

## Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ ԶՄՇԿԱԾԱԳ ՔԱՂԱՔԻ

### 1 Աւետարան.

*...«Աւարտեցաւ Ս. Աւետարանս... թը-
ւականիս Հայոց Ջ. Բ. ամին, գաւառիս
Քաջբերունւոյ, ի գեղնաքաղաքն Ականց, որ
է հիւսիսոյ կողմանէն Արճիշոյ, ընդ հովան-
եաւ Ս. Առաքելոյն Թադէոսի եւ այլ բազում
եկեղեցեացս որ աստ են. ի հայրապետու-
թեան Տէր Գրիգորի, ի թագաւորութեան
Ջըհանշահ Էմիրզին, որ զբոլոր աշխարհս
ձերբակալ ունի ի ձեռին իւրում...։ Աստ-
ուած ողորմի ասացէք ստացողի Ս. Աւետա-
րանիս Վալաթին, եւ ծնողաց նորին Դու-
նիէլին, եւ մաւր նորին Էվին (Եւային)...
եւ գծողիս Յովսէփայ...»։*

*— «Յիշատակ է Ս. Աւետարանս Պատըր-
Թըլցի Գրիգորի որդւոյն Գասպարին, կիրա-
կոսի որդւոյն Յովանէսին, եւ Մուրատի որդ-
ւոյն Խափլանին. եւ Տաւնապետի որդւոյն*

Մարգարին եւ Դարվիշին, եւ ծնողացն· Աստուած աւրհնէ զոգքս որ միաբանեցան· ·եւ առին··· զՍուրբ Աւետարանս եւ եդին ի յիշատակ ի Կարմիր վանք ի դուռն Ս· Կարապետոյ· Թվին Ռ· Ճ· ԽԲ· եթէ ոք յանդգնի, եւ տնանկ լինի, աւձտէ կամ ծախէ կամ գրաւկան դնէ, կամ Ս· Կարապետոյ դրանէս հանէ, կամ զյիշատակարանս կտրէ, կտրի իւր յոյսն յարքայութենէ Աստուծոյ· զպատիժն Կայենին կրեսցէ, եւ զմասն ընդ Յուդային առցէ, եւ խաչ հանողաց դասուն դասակից լինի···։ Յիշեսջիք զԱրուէն քարտողն (քարտուղարն), որ մեղապարտ ձեռաւք հպեցայ ի Ս· Աւետարանս, եւ վերստին նորոգեցի եւ կազմեցի ի Կարմիր վանք, ի դուռն Ս· Կարապետոյ եւ Ս· Նշանին···»։

1 Աւետարան եւս.

«··· Արդ այսմ աստուածաբարբառ մատենի ցանկացող եղեալ պատուականն ի քահանայս անուամբ եւ արդեամբ·· ստացաւ զսա յիշատակ ինքեան եւ ի լուսաւորութիւն հոգւոյ եւ մարմնոյ· ըստ այնմ եթէ Պատուիրանք տեառն լոյս են եւ լոյս տան աչաց։ Եւ գրեցաւ ի Թուա· Ռ· Հ· Ջ· ձեռամբ անպէտ եւ յոլովամեղ կրաւնաւորի Գր···»։

— «Յիշեցէք զվերջէն ստացող սուրբ Աւետարանիս զԿիրակոսն··· զՀազար··· եւ զկողակիցն իւր զՄանուշակ· զորդիք սոցին զՈսկէտունկն եւ զՎարդանն, զՏիպաղն, զԹոռինքն՝ զՈփասափ եւ զՄովսէսն, զՍինանն զնոր պարոնն, զՄինասն, զՏաւղիկն, զՍաւառն, զԳուլվարդն, զՄարթան, զՄանանդն, զԿուլխաթունն, Իսքէնտէրն, զՊապուկն եւ զիւր կողակիցն զԳուլվարդն··· եւ զԹուրվանտան, զՂումրին··· զԱկոբն, զՈփսէփն,

զԱւագն, զհարսներն զՀերիքոնն, զՇահինարն, զԹոռունքն՝ զնախաթունն, զՆնովքըն, զԵղիան, զՊէհատն, զԹփիկն, Սուրաթըն, Մարիամն, Սուլթանն եւ զայլ ամենայն մերձաւորքն...»:

«Աստուած ողորմի Խաչքանցւոց հաւասար ննջեցելոցն... տուին զայս Սուրբ Աւետարանըս ի Ս. Սարգիս եկեղեցին յիշատակ... Աստուած ողորմի Կիրակոսին հօգւոյն եւ ծընողացն, որ ետուր նորոգել զՍուրբ Աւետարանս.. ի Թուին Ռ. Ճ. Դ. հոկտեմբեր ամսոյ ԻԸ. աւրն բշ. ի յիշատակ Ս. Սարգիս եկեղեցւոյն, ի վայելումն Տէր Եսայի քահանայիս...»:

1 Աւետարան եւս.

... Աւարտեցաւ Ս. Աւետարանս ի լաւ եւ յընտիր աւրինակէ... ի Թուականի Հայոց Ռ. Ճ Կ.Դ. նոյեմբերի ամսուն ԺԷ. ին. Պէկողլին, բազումերկմբք եւ աշխատանաւք վասըն ոչ գտանելոյ զհամաձայնութիւն համաբարբառիցն ի պատճառս անհոգութեան. առ որ տաժանեալքս զբազում աւուրս ստուգագրեցաք որոշելով զԹիւս մանրագիրս համաձայնութեանց, զկիրակագիրս, զցանկս եւ զկանոնագիրս, ի պէտս ուսումնասիրաց եւ սփոփանս ճշմարտասիրաց: Արդ որք հանդիպիք սմա վայելելով եւ կամ աւրինակելով, զԹողութիւն շնորհեցէք խրթնութեամն գըրոյս, զի հազիւ կարացաք գրել զայս. եւ եթէ պատահմամբ գիր ինչ սխալեցեալ իցէ, ներեցէք, քանզի ջանք եւ դիտաւորութիւն մեր էր ամենեւին անսխալապէս յառաջադրել զայն սիրելեաց եղբարցդ մերոց ի Քրիստոս. եւ զի մինչեւ ցայժմ համաբարբառիւք Աւետարան ոչ էր դրեցեալ երբէք

վասն դժուարութեան զանազանից Թուոյն. մեք վասն պայծառութեան Հայոց յանձն առաք զամենայն դժուարութիւն, որպէս զի ափռեալ տարածիցի ի ի միջի Ջերում...»: «Յիշատակ է Մարկոսիս եւ հաւրն իմոյ Թորոսին... բարիհոգի քաղցրիկ մայրիկին իմ Թանսուֆին, աղւոր տիկինն իմ հանգուցեալ Մարիամին. մեծ հաւրս Կիրակոսին... եղի ի գաւառն Ջիմիսկածագու ի գեղջն Թաղարու Ս. Կարապետու եկեղեցին, ի հայրապետութեան Տեառն Աստուածատուրի...»:

1 Աւետարան եւս.

«... Ձեռամբ Դաւիթ եպիսկոպոսի եւ Գրիգոր սարկաւագի... գրեցաւ երկիրն Բասենու ի գիւղն որ կոչի Ծառո. (Ծար) ի Թուա. Հայոց Ռ. Լ. Դ. ի Թագաւորութեան Սուլթան Սէլիմին. ի կաթողիկոսութեան Տէր Գրիգորին, եպիսկոպոսութեան Ս. Խաչի վանիցս Ղազար եպիսկոպոսին... ի ժամանակի... որ Ֆարհատ փաշան բազում երկիր էառ Ղզլբաշէն. եւ շինեաց բազում նորահիմն բերդորայս...»: «Խնդրող Ս. Աւետարանիս Տէր Հէրապետ քահանայն... րիշատակ իւր եւ հաւրն Ազիզին, մաւրն՝ Գոտային, կողակցին Շահգուլին, որդւոյն Փիրազիզին, Մանիչակին.. եւ Վարդ ազիզին Մինին... Վարդէվանին...»:

1 Աւետարան եւս.

«... Գրեցաւ Ս. Աւետարանս ձեռամբ... Բարսեղ քահանայի. ի Թուակ. Հայոց Գ. Խ. Գ. ի կաթողիկոսութեան Տէր Կարապետին. ի հայրապետութեան Տէր Գրիգորին, ի գաւառս որ յԵզնկէոյ, ի գեղս որ կոչի Կա-

լամբոտի, ընդ հովանեաւ Ս. Թէոդորոսի եւ Ս. Կիրակոսի.—

«Ցորում մատեանս գրեցաւ տէրունական,
որ յորջորջի Աւետարան.
Որ յամբարեալ ունի յինքեան զվէպ Փրկչին
մեր մարդկութեան.
Զբանս եւ զգործս զանազան չարայեռեալ
յայսմ հրաշազան.
Ի յիջմանէ Աստուածըն բան ի ծոց կուսին
լոյս հայրական,
Մինչ ի դարձումն միւսանգամ անդրէն յա-
թոռն իւր սեպհական։
Զորեքկարգեան ականց նման որ էր ի
լանջսն Ահարոնեան,
Քառեակ թուոյն պատուական անգին ակունք
սրբերական.
Զորից դեռոց համանման, իբր իմաստուն վա-
ճառական,
Ստացաւ զսա գանձ անզուգական, զարմ ի
Սիոն երանութեան.
Եւ յիշատակ բարի ինքեան ազգատոհմիցն
միաբան»։

— «Ես Թադէոս քահանայս գնեցի զՍուրբ Աւետարանս ի հալալ եւ արդար վաստակոց իմոց յիշատակ ինձ եւ ծնողացն իմոց Ցոհանին, եւ մաւրն Ճըհէլին եւ եղբաւրն Պողոսին... ի հայրապետութեան Խարտիշարի վանուցս Տէր Աստուածատուրին, ի դուռն Ս. Հարապետին եւ Ս. Սարգսին։ Վայելել տացէ զՍուրբ Աւետարանս Թադէոս քահանային, եւ հարկեւոր եւ երկիւղած երէցկնոջն իւր Շահմելիքին, որ ետ ի գին Ս. Աւետարանիս զքիմխայ եւ զոսկի աղերն... Աստուած... տայ լսել զերանական ձայնն՝ Եկայք աւրհնեալք...»։

1 Աւետարան եւս.

... «Գրեցաւ Ս. Աւետարանս ի թուա. Հայոց Ռ.Ճ.Լ.Գ ամին. ձեռամբ... Արսէն աբեղիս... ի Չմշկածագ. ի Կարմիր վանք ընդ հովանեաւ Ս. Կարապետին եւ Ս. Սարգսին եւ Ս. Նշանին... յԱռաջնորդութեան սուրբ ուխտիս Աւետիս վարդապետի. եւ ի Հայրապետութեան Տեառն Եղիազար կաթողիկոսին. այլ եւ սուրբ ուխտիս սպասաւոր է. անձն կրաւնաւորքն, որ կան ի յայս ճեմարանիս... յիշեսջիք... զվարդապետն իմ զՏէր Ներսէսն եւ զԵրեւանցի զՏէր Յովանն եւ զծնողսն իմ զԱրսէնն եւ զմայրն Կուլխատանն.. եւ զաշակերտն իմ փոքրիկ Խաչիկն, որպէս ծաղիկ ի յոստս խաչին, ըստ կարեաց իւրոց թղթին կոկելն հետ ինձ աւգնեց. Աստուած զիւրոյ պարգեւն տայ...: Յայսմ ամի յոյժ ցաւով. տկարացայ Զ. ամիս. Բ. եւ Գ. աւր միապէս ոչ կարէի գիր գրել... փոքրիկ աշակերտն իմ Խաչիկ ի սրբագրելն բազում ջանիւք հետ ինձ աւգնեց...»,

1 Աւետարան եւս.

«Յիշատակ է Ս. Աւետարանս ի դուռն Ս. Սարգսին, ի քաղաքն Չմշկածագ Ուչպագցի դարբին Ղազալին դստերն Սառային եւ մաւրըն Զմրութին, եւ իւր առն աւագ սարկաւագ Խաչատուրին որդի Տէր Իսրայէլին, որ հանգուցեալ են առ Քրիստոս. եւ Սառայի որդին դպիր Խաչիկ սարկաւագն որպէս զծաղիկ ի յոստս խաչին, եւ դստերն Գուլ վարդին. եւ ինքն ողորմած, հիւրասէր, եւ աղքատասէր եւ աղաւթարար, լռակաց, համեստ եւ հարկեւոր, ամաւթխած եւ բարեմիտ...»: (Գաղափարեալ Աւետարանս) ի ստոյգ եւ յընտիր

աւրինակաց, ողորմ բայիւ եւ բառիւ, ի զարդ եւ ի պայծառութիւն աստուածաբնակ տաճարի Ս. Սարգսին... հոգաբարձութեամբ ընթերցողքն, ի բանալ եւ ի խփել կոճկով կընքողքն՝ վարձուց յուսացին ի Քրիստոսէ. ամէն»։ «Ո՛վ եղբարք. ասէք թէ պատճառն ի՞նչ է յիշատակարան այս տեղս գրելոյն, վասն այս պատճառիս համար, չարն սատանայ յոյժ թշնամի է աստուածասիրին եւ ատեցող. Ս. Աւետարան կու հրամայէ թէ Երանի՛ է այնոցիկ որ ունին յիշատակ ի սուրբ Սիոն. եւս առաւել հրամայէ թէ Աջն տացէ՝ ձախն չիմանայ. Ձախն տայ՝ աջն նոյնպէս։ Ապա այս տառապեալ եղկելիս զի բազում ժամանակէ այրի եւ տխուր դիմաւք թողեր զաշխարհիս սուտ կենցաղոյս վայելչութիւնն. եւ ուղիղ սրտիւ դիմեց առ Աստուած ի պէտս ինչ... թէ չի վայելեցի մարմնովս, յոյս ունիմ Աստուած՝ չի զրկիմ հոգւովս. զամէնն ծախեց եւ կուտեց, եւ ետ ի հալալ արդեանց գրել Ս. Աւետարանս լի փափագանաւք. եւ եդ յիշատակ խոստովանաբար թէ ազգ եւ թէ ազգականք եւ տուն սորա ոչ իմանան այժմուս մինչ յօիտեան։ Ո՛վ սրբազան քահանայք... երեսս ձեր ոտից կոխան, զի չի պարզէք եւ չի յայտնէք Ուչպազ գիւղիս մարդկան, որ կու դողամ որպէս զեղէգն ի դէմ քամուն, զԱստուած սիրէք որ դուք չասէք ամէն մարդու յայմհետէ մինչեւ ի վախճան. ամէն։ Ով որ յիշատակարանս կտրէ կամ քերէ եւ սրբէ, կտրի իւր յոյսն արքայութեան երկնից. եւ սրբաջինջ լինի եւ ազինք նորա եւ ազգ»։

1 Շարական.

«Փառք եւակի անձնաւորութեան եւ ե-

զակի տէրութեան Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։ Արդ գրեցաւ շարակնոցս, որ կոչի Խլկցի, ի լաւ եւ ընտիր աւրինակէ ձեռամբ... Վարդանիս... կրաւնաւոր... ի յանապատս ի Կարմիր վանք, ընդ հովանեաւ Ս. Կարապետին եւ Ս. Նշանին եւ Ս. Սարգսին, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս միաբանից ԺԱ. անձն կրաւնաւորիս, որ կան յայս քարաժեռ անապատիս. ի Թվականիս Հայոց Ռ.Հ.Դ.... յիշեցէք... զուսուցիչն իմ զտէր Գրիգորն զպարծանք մոնոզաց, եւ զտէր Ստեփաննոսն եւ զմեծն արագիրն զտէր Յովանէսն որ զծաղիկն ուսոյց եւ խրատեաց ... յիշեցէք... զարժանաւոր տէր Եղիայն որ ետ փափաքանաւք գրել եւ ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոյ (յիշատակ անձին իւրոյ եւ Հաւրն Ալփիարին եւ մաւրն Շնորհւորին...»։

—Այլ գրով. «Դարձեալ յիշեցէք զստացաւղ սորա զՀազրպէկն, որ մականունն Քանդրճի կոչի, եւ զկողակիցն նորա զԽանումն, եւ զորդիքն՝ զՍինան... եւ զմիւս որդիքն սորա զիսկանդարն, որ ի Թուին Ռ.Ծ.Դ. Նահատակեցին, եւ զԱմաան եւ զՄուրատն եւ զԱբրահամն....։ Զկազմող զՇամլուս...»։

## Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ ՓԷՐԻ ԳԻՒՂԻ Ի ՁԱՐՍԱՆՃԱԳ

### 1 Աւետարան.

«Ես Նուաստս երիցանց, եւ տրուպս քարտուղարաց Առաքել երէց... եդի ջան ձեռամբ իմով դրել զԱւետարանս առ յիշատակ ինձ եւ ննջեցելոց մերոց... զոր տէր ի յանգ եհան ի Թուա. Հայոց Ռ.Ծ.Լ.Ը. ամի...

հայցեմ յիշել զգրողս եւ զհայրն իմ զՅովհաննէսն որ ի Խարբերդու գիւղն Կասրիկ, ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի զաւրավարին է հանգուցեալ, եւ ես նորին աւազանէն եմ ծնեալ. տէրն ամենայնի զյարկս նորին հիմամբք իւրովք անշարժ եւ հաստատուն պահեսցէ. եւ զմայրն իմ զՄարիամն եւ զեղբայրըն իմ զՂազարն եւ զորդին նորա զՈվաննէսն. այլ եւ զԱհարոնն, որ չորեքամեա հանգեաւ ի Քրիստոս. եւ զեղբայրն իմ զԴաւիթըն եւ զԱստուածատուրն որ տարաչխարհիկ եւ մանուկ տիաւք հանգեան ի Քրիստոս. եւ զծնողս մաւր իմոյ զԴաւիթն եւ զԴոհարըն. եւ զքոյրն իմ զՋուհարն եւ զորդի նորա զՏէրՊաւղոսն, որ զգանս սաստիկս էառ ի ձեռաց իմոց ի վարժելն գրոց. եւ զորդիսն իմ զԱզարիայն եւ զՄանուչակ. եւ զմայրն Ահարոնին զՄարթայն որ երբեմն զԹուղթս կոկէր, եւ զորդիսն իմ՝ որ առ Քրիստոս հանգեան զԵսայիան եւ զԴաւիթն, որ Տէր ողորմեա եւ զՀամբարձի փոխն ասելով աւանդեցին զհոգիս իւրեանց մանուկ տիաւք. եւ զքառասնամեա հանգուցեալ Երեմիան, եւ զմայր սոցա զերիցակինն որ երեսնամեայ հանգեաւ ի Քրիստոս. զի յորժամ գրեցի զսա, ըստ մարգարէին Դաւթի, սոքա էին՝ Շուրջ զսեղանով իմով որպէս զնորատունկ ձիթենի. եւ մայր սոցա՝ Որպէս այգի վայելուչ յանկիւնս տան իմոյ. եւ յետ երից եւ չորից ամաց եղեւ այգի իմ կարկըտահար նորահաս տնկաւք իւրովք, սակս որոց միշտ խորովի սիրտ իմ ողւով մինչեւ ցմահ....: Այլ եւ զայս պատուիրեմ որդւոց իմոց եւ ամենայն արեան մերձաւորացս, զի զԱւետարանս եւ ի հետ ամեն զԱստուածաշունչն եւ զՃաշոցն, զերիս գիրքս մի վաճա-

ուել արծաթով, այլ ձրի մնալ ի ձեռս ընթերցողաց․ քանզի գրեցաւ ի Մեծկերտ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին․ եւ այժմ եմք ի գիւղս Փէրի, եւ ոչ գոյ աստ հաստատուն եկեղեցի որ դիցեմ յիշատակ․ եւ յայսմ հետէ ոչ գիտեմ զապագայն․ բայց ձրի մնասցէ ի ձեռս ընթերցող քահանայից․ եւ թէ իցէ ի դիպող ամաց մերձաւորաց իմոց երթալ ի տեղւոջ յորում իցէ հաստատուն եկեղեցի, անդ դիցեն յիշատակ․ եւ ով ոք այսմ գրելոց հնազանդ լիցի, աւրհնեալ եղիցի․․․»։

## Դ Աւետարան եւս․

«․․․ Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվա․ Հայոց Ռ․Խ․Թ․ ամին, ի գիւղաքաղաքն Ռապայ, ի դուռն սուրբ Աստուածածնին, եւ սուրբ Վասիլ իշխանին․․․ ամէն․․․»։

— «Վերջին ստացող Աւետարանիս տէր Մարտիրոսին ասացէք Աստուած ողորմի հոգւոյն»։

— Ի լուսանցսն գրեալ․ «Ո՛հ զեղկելի եւ զթշուառականս․ որ ձեռքս գրէր եւ միտքս հեծեալն էր»։

— «Ով սուրբ քահանայ, մի մեղադրեր ծաղկիս վատութեան, միտս շմորեալ էր, արտասուքս ի դեղրունքն կու խառնէր ի տղոցս կսկծուն, որ յԱստուած փոխեցան Գ․ տղայ, որ նման էին ոսկւոյ եւ մարգրտի։ Աչերս չէր խտակել յարտասուաց»։

— «Աւա՜ղ, որ փախէ, եւ ձեռքս բան չ՛էներ»։

— Աւա՜ղ եղկելւոյս, որ զաւրն ի բուն ձեռն ի ծնաւտիս հայիմ յԵփրատէս, ա՜հ հանեմ հոգւոյս․․․»։

— «Տէր Մարտիրոս Աւետարանս ազատեց,

ի Ճալալին ձեռաց առաւ ու դիր (յիշատակ) իւր հոգւոյն. Թվ. Ռ.Ծ.Գ.»:

### ԵԿԵՂԵՑԻ ՏԱՄԻ ԹԱՂ ԳԻՒՂԻ

1 Աւետարան.

«... Գրեցաւ սուրբ Աւետարանս ի Թվ. Հայոց Ռ.Ղ.Ա. ի Բալու, Հաւաւ գիւղ, ի Մեսրոբ Երիցէ »:

### ՔԷՇԻՇ ՕՂԼԻ ՏՕՆԻԿԻ ՏՈՒՆԸ ԿԷՕՔԹԷՓԷ ԳԵՂ

1 Աւետարան. մագաղաթ.

Ընտիր գրով եւ պատկերազարդ. բայց յիշատակարան եւ թուական չունէր: — Ոսկի Աւետարան անուն:

### ԵԿԵՂԵՑԻՆ ԿԷՕՔ ԹԷՓԷ ԳԻՒՂԻ

4 Աւետարան եւս.

«... Գրեալ... Ջ.Զ.Գ. ձեռամբ Ոսկան վարդապետին ի Վայոց ձոր, ի վանս Գլաձոր սուրբ Ստեփաննոսին, ի Թագ. Հայոց Հեթմոյ ճգնաւորի եւ աստուածասիրի, ի Հայրապետութեան տեառն Գրիգորի, եւ յիշխանութեան այսմ Նահանգի պարոն Բարթէլի, եւ ի վերատեսչութեան հոգւոյ մերոյ տէր Յոհաննիսի, եւ ի դաստիարակութեան Հայոց դպրոցի Եսայի վարդապետին ... յիշեցէք եւ զՄլքջահան ... զՏիրաւագն, զմայրն, զխէրն, զաւակն՝ զԱնանցն: Զերէցտիկինն եւ զհաւրաքոյրն զԱզգատիկինն... զպարոն Սմբատն եւ զՆաթէլն, զորդիս նորա զպարոն Եսադարն զՇոթոփկն եւ զՈւքսան. զտիկնայքն զՎանենի եւ զՄամքոնն...»:

1 Աւետարան եւս.

« . . . Գրեալ ի Թվ. Ջ.Գ. ի վանս Պառւագրակ, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, եւ սուրբ Կարապետիս եւ սուրբ Սարգսի զաւրավարին . . . ձեռամբ Կարապետ հայրապետին . . . յիշեցէք զհաւրեղբայրն զՈնոփրիոս հայրապետն, եւ զհամաւրէն միաբանութիւն Ս. Կարապետին զհնդեւտասան կրաւնաւորսըն. զծերս, զտղայս, զսարկաւագունս եւ զսպասաւորքս եւ զգործաւորքս Անապատիս (Հալւորի վանուց) . . . »։

### Ս. ԵԿԵՂԵՑԻ ՓԱՇԱՎԱՆՔ ԳԻՒՂԻ

1 Աւետարան. ընտիր, մագաղաթ.

պատկերազարդ, ոսկեզօծ. — «Ոսկի Աւետարան» անուն։

# ԲԱԼՈՒ

### ՔԱՂՑՐԱՀԱՅԵԱՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔ ՀԱՒԱՐԻ

1 Յայսմաւուրք. ընտիր, մագաղաթ.

« Գրեալ ի Կ. Պոլիս. ի Ս. Սարգիս. Թըվին Ռ. Ղ. Դ. ձեռամբ Ղազարոս դրչի, յիշատակ Գէորգ Արք եպիսկոպոսի դիտի Նոյն վանից »։

1 Աւետարան եւս.

« Գրեալ Ռ.Ի.Բ. ի Բալու, ի վանքն Հաւայ, ի լաւ եւ յընտիր աւրինակէ, ձեռամբ Անտաւն եպիսկոպոսի . . . ։ — Մահպուպ (անուն) անտես Ս. Թովմայի առաքելոյ եւ Այրն Էքքեղայ վանից) գնէ զայս Աւետարան ի ձեռաց այլազգեաց, «Ջոր տեսեալ ա-

սէ, աղիքս խորովեցաւ եւ սիրտս ի փորի իմում գալարեցաւ»․ դնէ յիշատակ ի վանս Ս․ Թովմայի․ Ռ․ Ղ․ Դ․»։

1 Բարողգիրք Կիւրակէից․

1 Բանք ոսկիականք․

«Ցեղբայր Ցակոբէ Վօռածինոյ կարգէն քարոզաւղաց, ի բոլոր ժամանակս տարւոյն․ Ռ․ Ճ․ Ջ․»։

—Ըստ բանից բազմաց 40–50 կտոր զանազան ձեռագիր մատեանք կային վանքիս․ զորս առ ահի պատերազմի ժամանակիս՝ եկեղեցական զգեստուց եւ անօթոց հետ պահած էին անտես․ եւ քանի կտորներ ալ Ս․ Հրաչագործն վերուցեր տարեր էր, ըսին։ Ցանկը չունէին։

Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ ԶԱՒԱՅԻ ԳԻՒՂԻ

1 Ցայսմաւուրք․

«․․․ Գրեցաւ սուրբ մատեանս ի ձեռն Մարգարէ կրաւնաւորի, ի գաւառիս Մենծկերտու, ի յԱնապատն որ կոչի Սիրունքարի, ընդ հովանեաւ Ս․ Ցակոբայ, ի Թվ․ Հայոց Ջ․Ժ․Է․ յաշխարհակալութեան Հասան բէկին․․․ եւ վասն ծովացեալ մեղաց մերոց եկաւ Թավրիզու խանն եւ եկաւ յաշխարհս մեր․ եւ մեծն եւ փոքրն Շահէն սասանեցան եւ զփախուստ առին, եւ ողորմածն Աստուած յետս դարձոյց, եւ ոյժ եւ զաւրութիւն ետ Հասան բակին․ եւ քան զՓարաւոն եւ քան զՌափսակ ի սուր սուսերի մատնեց զինքն որդւովք եւ հեծելովք, եւ զքրստոնէք ազատեց ի գերութենէն։ Փառք Աստուծոյ նախախնամութեան։ Այս եղեւ ի հայրապետութեան Վաղարշապատու Տեառն Ռստակիսի Ս․ Էջմիածնի աստուածադիր աթոռոյն․ յե-

պիսկոպոսութեան Տէր Ստեփաննոսի եւ ծերոյն Տէր Ղազարոյ։ Ա․ւրհ․ Ա․ստուած»։

## Ս. ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒԻ ԵԿԵՂԵՑԻ ԲԱԼՈՒ ՔԱՂԱՔԻ

1 Ա․ւետարան.

«... Գրեալ ի թուին Ռ․ Մ․ Է․ ի կաթողիկոսութեան Սահակայ, ի Պատր․ Երուսաղէմի Թէոդորոսի, յԱ․ռաջնորդութեան Բալուայ՝ Գէորգ եպիսկոպոսի․ ձեռամբ Պաւղոսի, ի յոյժ վշտակրութեան եւ տառապանաց մէջի, զի կարի յոյժ էր սով եւ սաստնութիւն, որ զչարեկ (չափ) ցորենոյն Ի․ ղշ վաճառէին, որ անունն կայր եւ ինքն ոչ կայր, զի բազում աղքատք եւ տնանկք լալով եւ ողբալով շրջէին ընդ փողոցս քաղաքիս եւ շուկայից, աղաղակելով անկեալ մեռանէին։ Նա եւս լուաք յոմանց թէ քաղաքն անմիտ կին ոմն ..., զենեալ եւ կերեալ է որդին իւր վասն սովոյ»։

1 Յայսմաւուրք.

«Գրեալ ձեռամբ Յովհաննէս եպիսկոպոսին, ի քաղաքն Բալու, ի տան Ս․ Գրիգորի․ ի թվ․ Ռ․ Ի․ Ե․ յիշատակ Մ․ Ամիրպէկին ... ի թագաւորութեան տաճկաց Սուլթան Մուրատին, եւ յամիրայութեան Բալուայ քաղաքիս Հասան բակին ... իւրն մնաց բերդս եւ պարոնութիւն, եւ է քրիստոնէից բարեկամ եւ հոգաբարձու։ Ա․ստուած աւրհնէ զնա»։

1 Ա․ւետարան.

Ընտիր բոլորագիր, ոսկենկար, ի տուն Բալուեցի Տէր Գէորգեան Մ․ Յոհաննէսի, որոյ մէկ էջն հայերէն եւ միւս էջն տաճկերէն լեզուաւ գրեալ զյիշատակարան․ եւ թըւական չ՚կար։

## Ս. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻ ԱՐՂՆԻ ԲԵՐԴԻ ԿԱՄ ԱԻԱՆԻ

### 1 Ցայսմաւուրք.

«Գրեցաւ ի Թագաւորութեան Եգիպտացւոց եւ յիշխանութեան Սուլէյման պակին, որ է ազգաւ Դուլղատարցի, այս Գ. տարի է որ ի ձեռն Դուլղարացուն է բերդս եւ քաղաքս. եւ է հնազանդ Եգիպտոսի սուլդանաց եւ հարկատու. եւ աւգնական միմեանց ի չարն եւ ի բարին։ Արդ յայսմ ամի առաւ Ստամբուլ քաղաքն ի Հոռոմոց. գնացեալ ի վերայ Թագաւորն որ կոչի Խոնդքար (հիւնքար), Ն.Ճ.Ռ. ձիաւորաւք եւ հետեւակաւք. նաւաւք. եւ Գ. տարի բոլոր պատերազմեցաւ ընդ Ըսդամբուլայ, քանզի Ֆռանկաց առաջնորդն որ ասի Պապ Թագաւոր, կոչեաց զՊատրիարքարան Հոռոմոց որ ի Ստամբուլ էր, եւ զԹագաւորն Հոռոմոց որ անդ, վասն հաւատոյ հաստատութեան ի Հռովմ քաղաքի, եւ կեցեալ նոցա անդ տարի մի բոլոր առ Թագաւորն Պապ՝ պատրիարքն եւ Թագաւորն։ Իսկ յորժամ դարձեալ եկին նոքա ի Ստամբաւլ. իշխանացն Հոռոմոց կարծեալ էր թէ Պատրիարքն եւ Թագաւորն ի ֆռանգութիւն դարձան։ Իսկ նոքա բազում անգամ երդուեալ՝ եւ իշխանքն Հոռոմոց ոչ հաւատային. եւ ոխս պահեալ իշխանացն Հոռոմոց ընդ Թագաւորին եւ Պատրիարքին իւրեանց, եւ այլ ոչ միաբանեցան ընդ նոսա. որոյ ի ձեռն պատգամաբերաց եւ միջնորդաց իշխան մի Հոռոմ Կիւռլիկէ անուն, յղեաց առ Թագաւորն Խոնդքարն ծածկաբար, թէ Ես տամ զքաղաքս Ստամբաւլ, մի գնար այտի. եւ յաւուր միում մինչդեռ պատերազմ խմբեալ կայր. եւ մեռան ի տաճկաց ՃՌ (էն) ԵՌ անձն

ի կուխ, իսկ ի Հոռոմոց մեռան ԺՌ անձինք։ Եւ իշխանն այն Կիւռլիկէ բացեալ զմի դուռըն քաղաքին... եւ մտեալ ազգն տաճկաց հանդերձ Թագաւորաւն ի ներքս ի քաղաքն։ Իսկ Պատրիարքն եւ Թագաւորն... մտեալ ի նաւ մի մեծ, եւ բազում ժողովրդեամբ իբրեւ ԻՌ. արամբ փախստական գնացին ի Հռովմ, եւ տարեալ զամենայն սրբութիւնս ի հետ իւրեանց, քանզի յառաջագոյն ամսով մի պատրաստեցան փախչիլ. զի գիտէին... զի յայտնեաց նոցա Աստուած... զի որպէս յաւուրս Սրբոց Վարդանանց չար իշխանն Սիւնեաց ուրացեալն Վասակ եղեւ պատճառ եւ կորուստ աւերման աշխարհիս Հայոց, եւ ի կողմն ուրացելոյն դարձաւ. նոյնպէս եւ պիղծըն Կիւռլիկէ... հռոմն, խոռն ի հաւատոց եւ անիծեալն յԱստուծոյ...»—Ցաւելեալ—

«Աստանաւր ասացից պատմագրաբար զանցս աղէտից ազգիս քրիստոնէից։ Ի Թըւականութեան Հայոց Պ. Ղ. Թ. եկեալ Սուլթանն Թաւրիզու Ջիհանշահ անուն, բազում եւ անթիւ զաւրաւք Կ. Ռ. աւ. եկեալ էառ զԵզնկայն յազգէն Թուրքմանաց, որ էր ազդաւ Պայընտուր, եւ կալեալ զիշխանն Եզնկա քաղաքին. եւ Ծ. անուանի ամիրայ զհետ նորա, եւ տարեալ յարեւելս կորուսին։ Եւ զԿամխայ աստուածաշէն երկիրն եւս Հասարակ գերեաց իբրեւ անձինս ԺՌ. ընդ այր եւ ընդ կին, Թող զայն որ մաշեցան։ Եւ զներքին Դերջանն եւ զվերին Դերջանն, զԲաբերդ, զԿեղի. զԿոճակն, եւ զԳայլ գետն, զՇիռեան, զՍատաղ առ Հասարակ գերեաց... եւ այլն։ Եւ գնացեալ նստան ի վերայ Ամթայ եւ ի վերայ Արղնու եւ ի վերայ Մէրտընու, Ե. տարի բոլոր, եւ յամենայն աւուր մարտնչէին եւ կռուէին ընդ

նոսա։ Եւ իջեալ բնակիչքն բերդորէից կոտորէին զԹշնամիս... եւ ինքեանք դարձեալ ի բերդն ամրանային։ Եւ հասեալ ի Բարեկենդանեաց յետին շաբաթ աւուրն՝ ի տաւնի Ս. Հայրապետացն. ելեալ դաղտադողի ի հեծելէն՝ որ յԱմթայ վրայ էր նստեալ, եւ շուրջ պատեցին զերկիրն Արղնու, մինչդեռ այդն զառաւաւտն չէր մերկացեալ, եւ Դ. գեղ ի ծառայութիւն վարեցին իբրեւ ԵՃ. հոգիս, եւ սպանին անձինս Խ. եւ դարձան ի բնակարանս իւրեանց։ Եւ դարձեալ ի Ծառզարդարն հաշտեցան, եւ արարին խաղաղութիւն ընդ միմեանս, եւ ազատեցան գերեալքն Արղնու՝ Քրիստոսի շնորհաւք եւ ողորմութեամբ, եւ ոչինչ կարաց առնել կամ զԱրղնի կամ զԱմիթ կամ զՄէրտին, այլ դարձաւ յաշխարհ իւր...։ Արդ ես Դաւիթ եպիսկոպոս աղաչեմ... յիշեսջիք... զիս... ի Թվին Չ. Բ. գրեալ ի Խարբերդ»։

## Ս. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻՆ ՎԱՐԻ ԹԱՂԻՆ ԱՐՂՆՈՅ

1 Աւետարան.

«Գրեալ ի Թվ. Չ. Ղ. Է»։

1 Աւետարան եւս.

«Գրեալ ի Մէրտին. ի Թվ. Հայոց Ջ. Թ. ի Թագաւորութեան Կոստնդիանոսի, ի Հայրապետութեան Տեառն Մեսրոբի եւ յեպիսկոպոսութեան Տէր Յոհաննիսի...»։

1 Աւետարան եւս.

«Գրեալ Պ. Լ. Ը.»։ Նոր յիշատակարան «Մինաս վարդապետի. Ռ. Ճ. Ժ. որ կացեալ է վանահայր Արղնու բարձրահայեաց վանից ի խիստ սով ժամանակի, յորում մէկ

չարեկ ցորենն 19 չուրուկ ղուրուշ էր. բազումք ի ծնողաց զզաւակունս ուտէին...»: Իսկ ինքն Մինաս վարդապետն «Զվանքն յամայութենէ պահէ. զմիաբանս եւ զաղքատս կերակրէ. եւ զԱւետարանս նորոգէ յիշատակ իւր եւ ծնողաց...»: Ռ Ռ 11 Ռ Ռ բաժժուռ:

Կ Աւետարան. Ս. Յոհաննու.

Մեծադիր, մագաղաթ, երկաթադիր. ի տուն հանգուցեալ Տէր Մկրտչի (Արղնի), որոյ յետին թղթերը ինկած, եւ ուրիշ երեսի մը վրայ բոլոր գրով գրեալ. «Նորոգեցաւ Աւետարանս ի թվին Ռ. Խ. Ը. ձեռամբ Ներսիսի Արծկեցւոյ, Ալաշկերտ, ի գիւղս Տաւրաւրան, յիշատակ ներկարար Խաւձայ Կիրակոսին Արծկեցւոյ. Աւետարանս գրեալ կայր ի ձեռաց Թարգմանչաց. եւ հնացեալ էր ի վաղուց ժամանակաց ի տուն Տէր Գալուստ երիցուն, եւ տեսեալ աստուածասէր Կիրակոս մանուկն եւ եղբայրն Ամիրխանն զհրաշս եւ զսքանչելիս Ս. Աւետարանիս ի ցաւոտս եւ ի յայսահարս, զոր դիւահարքն ձայնէին թէ զՍուրբ Յոհաննու անուն Աւետարանս որ հնացեալ է զնա բերէք ի վերայ մեզ. զոր բերեալ թաւալեցան դիւահարքն եւ կախեցան արիւնաթաւալ եւ բժշկեցան...»:

Լ Աւետարան եւս. փոքրադիր:

«...Եղեւ գրաւ Աստուածախաւս մատենիս այս ի մայրաքաղաքս Սիս, ընդ հովանեաւ Ս. Յակոբայ, ի թուականութեան Հայոց ի եաւթն հարիւրերորդի, տասներորդի, իններորդի, ի հայրապետութեան Հայոց Տեառն Յակոբայ, եւ ի պարոնութեան Լեւոնի.բարեպաշտի: Արդ ի յայսմ ամի ի հոկտեմբեր ամսոյ. որ աւր էր Ի. եւ Ե. հանգեաւ ի Քր-

րիստոս բարեպաշտ արքայն Հայոց Հեթում. որում ողորմեսցի նմա տէր Յիսուս. եւ յիշատակ աւրհնութեան նորա մնասցէ յաւիտեան։ Եւ Տէր Յիսուս եւ շնորհս ցանկալի եւ աստուածասէր պարոնին Հայոց Լեւոնի որդւոյ իւրոյ, եւ նա թագաւորեաց փոխան հաւր իւրոյ եւ նստաւ յաթոռն իւր կարողութեամբն Աստուծոյ։ Եւ աւր հանդիսի աւրհնութեան նորա եղեւ ի սուրբ յայտնումըն Քրիստոսի, ի մայրաքաղաքն Տարսոն Կիլիկիոյ. ի մեծ եկեղեցին Ս. Սոփի, եւ եղեւ ժողով մեծ յամենայն ազգաց՝ վերադիտողաւքն Հայոց Տեառն Յակոբայ եւ բազում եպիսկոպոսաւք եւ վարդապետաւք. եւ բազումք ի Յունաց Պատրիարքաց եւ յԱսորւոց եւ Ֆռանգաց, եւ յիշխանաց մեծամեծաց ի Հայոց, ի Ֆռանկաց եւ ի Հոռոմոց. յորս եղեւ մեծ հանդէս եւ ուրախութիւն ազգիս Հայոց։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան աղաւթս առնել նմա եւ խնդրել յԱստուծոյ շնորհս եւ իմաստութիւն եւ զաւրութիւն... խաչին Քրիստոսի»։

1 Աւետարան եւս. առանց յիշատակարանի եւ թուականի։

## ՁԵՌԱԳԻՐ ՄԱՏԵԱՆՔ

### ԲԱՐՁՐԱՀԱՅԵԱՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆԻՑ ԱՐՂՆՈՑ

1. Դատաստանագիրք։ Երկրորդ մասն՝ քարոզք։ «Գրեալ ի Պոնդոս. Ռ. Կ. Ը.»։

2. Մաշտոց. «Գրեալ ձեռամբ կարապետի. Ռ. Ղ. Ը. թվին Հայոց, ի յամուր եւ յանառիկ գիւղաքաղաքն յԱկըլ, որ մերձ Ամթայ, ի դուռն տիրամաւր Աստուածածը-

նին եւ աստուածընկալ Ս․ Նշանին որ է դիւանհալած եւ բժիշկ ամենայն ցաւոց․ ի կաթողիկոսութեան տեառն Փիլիպպոսին Ս․ Էջմիածնի »։

3․ Մաշտոց․ « Գրեալ ի թվին Ո․ Կ․ Թ․ ի Կիլիկիա․․․ »։

4․ Շարական․ « Գրեալ Շէնգուժ (Զնքուշ) գիւղաքաղաք, ի թվին Ո․Ի․Թ․ ի դառն եւ ի նեղ ժամանակի․․․ տիրեալ էր աշխարհիս Հայոց սով, սուր եւ գերութիւն․․․ յիշեցէք Գասպար դպիրս․․․ ժամանակս (գրելոյ) ամառնային էր եւ ճանճին չարիքն եւ խայթուածքն յոլով էր․ ո՜հ այս ճանճերու չարիքն »։

5․ Ճառընտիր․ «Նորոգեալ ի թվին Ո․Հ․Ե․ ձեռամբ Ստեփաննոսի, որ մականուամբ կարմիր ասի, ի դուռն Ս․Կիրակոսի եւ մաւրըն նորա Ցուղիտայի, ի դառն եւ նեղ ժամանակի որ եմք նեղած ամէն դիմաց․․․»։ « Ցայնմ ամի մեծ եւ երեւելի վազիր եկ ի Ստամբուլայ բազում զաւրաւք կու գնայր ի վերայ Պարսից թագաւորին՝ Բաղդադ, եւ հասեալ ի Թախատ՝ մեռաւ․ զմաւհըն բերին յԱմթայ փաշին․ է․ ամիս զաւրք ժողվեցաւ Ամիթ, այնչափ զաւրք ժողվեցան որ թիւ ու համար չի գայր․ կերակուրն եւ ջուրն այլ հատաւ․ առեալ զզաւրքն գնացեալ ի Բաղդադ․ եւ գրանի վերջքն Աստուծոյ է գիտելի․․․ »։

6․ Համառօտ ժամագրքունք․ մագաղաթ։

7․ Գանձ գիրք։

8․ Մեկնութիւն Սաղմոսի՝ Վարդանայ․ եւ լուծմունք։

9․ Մայր մաշտոց։

10․ Խրատք Վարդան վարդապետի։

11․ Մեծ մաշտոց․ հին։

12. Կանոնագիրք. «Գրեալ ի խնդրոյ Թումայի վարդապետի Մեծոփայ վանից սուրբ ուխտի, ի Յակոբայ վարդապետէ Ղրիմեցւոյ»:

13. Մեկնութիւն սաղմոսաց՝ Վարդանայ. «Գրեալ ի թվին Ռ. Ժ. Թ. ի հայրապետութեան Ս. Էջմիածնի Տէր Մելքիսեդի, ի աշխարհս ի Լախաց (Լեհաց), ի քաղաքս Կամենից, Ֆռանկաց ազգի թագաւորութեան երրորդ Սեկիմունդին»:

14. Քննութիւն հաւատոյ. «Ահարոն թագաւորի եւ Տիմոթէոս հայրապետին»: Հարց Պատասխանի:

15. Սահման իմաստասիրութեան. Արիստոտէլի Ժ. ստորոգելիք:

16. Ընդհանրական. և ոտանաւորք եւ այլ թուղթք սրբոյն Ներսէսի Շնորհալւոյ. «Թվ. Ռ. Ղ. Գ. ի կաթողիկոսութեան Տեառն Կոստանդեայ»:

17. Տումար:

18. Գաւազանագիրք (թերի):

19. Պատասստանագիրք եւ Ցաճախապատում:

20. Մեկնութիւն քերականութեան. Յոհաննու Եզնկացւոյ:

21. Ճառընտիր. փոքրադիր. (թերի):

22. Բանք եւ թուղթ Արիստոտէլի:

23. Շարական. փոքր:

24. Կանոնք սրբոյն Բարսղի:

25. Շարական. փոքրիկ. «Գրեալ ի թվ. Ջ. Խ. Գ. ի վանս Սիրունքարի»:

26.—27. Երկու շարական եւս. փոքրիկ:

28. Նարեկ. «Գրեալ ի Լոռու գաւառի ի գերահռչակ սուրբ ուխտն Սանահին, ի դըրան Ս. Աստուածածնի եւ Ս. Կաթողիկէի. ի թուաբերութեան ամանակիս Աբեթական

մեծ տումարիս Գ. Խ. Ջ. յանիչխանութեան աշխարհիս, ...»։

29. Մաշտոց. (Թերի). «Գրեալ ի Թվ. Ջ. Լ.»։

30. Կանոնգիրք. մանր գրով։

31. Աւետարան. «Գրեալ Ջ. Լ. Ձ.»։

32. Փիլոն իմաստասէր. յորում կցեալ կայ եւ «Բնագննութիւն բոլորի մարդկային մարմնոյ, ի գրոց Լատինացւոց թարգմանեալ ի Վարդանայ Յոնանեանց. ի Թուա. Ռ. Ճ. Լ. Դ.»։

33. Մայր մաշտոց. «Գրեալ ի Ս. Անապատն Կայիփոսի, ընդ հովանեաւ Ս. Յակոբայ Մծբնայ հայրապետին, ի Թվին Հայոց Ջ. Լ. Բ.»։

34. Մայր մաշտոց։

35. Քարոզգիրք։

36. Տօնացոյց եւ ժամագիրք ձեռաց։

37. Խորհրդատետր. «Գրեալ ի Թվ. Ռ. Ճ. Ի. Ձ.»։

38. Սաղմոս։

39. Շարական. մագաղաթ, փոքրիկ. «գրեալ ի Թվ. Ռ. Խ. Ը. ի քաղաքն Համիթ»։

40. Գանձք. «Գրեալ ի Թվ. Ռ. Ծ. Բ. ի քաղաքն Երզնկան, ի դուռն Ս. Երրորդութեան»։

41.—42. Խորհրդատետր երկու. ոսկեզօծ շրջանակներով. եւ մինն՝ պատկերազարդ։

43. Կարգ տոհմից ազգակցութեանց, պատմութեան հին եւ նոր կտակարանաց. մագաղաթ, ընտիր դրով. նկարէն եւ ի ճիւղս ճիւղս բաժանեալ. «Գրեալ ի Թվ. Ռ. Ճ. Խ. Բ. ի յԱմիթ»։

44. Վարք Եւագրի ճգնաւորի եւ Նեղոսի. «Գրեալ ի Թվ. Զ. Կ. Ը. ի գաւառս Հայոց ձորոյ, ի վանս Գլայձոր»։

45․ Խրատագիրք․ փոքրիկ։
46․ Ժամանակագրութիւն Սամուէլ քահանայի․ եւ Ընդհանրականք Շնորհալւոյն։
47․ Ներսէս Շնորհալւոյ Ընդհանրական․ և Մեծքարցի Յակոբ Ա․ կաթողիկոսի նամակ․ եւ Բարոզք Բարդողիմէոսի եպիսկոպոսի թարգմանեալ։
48․ Մեկնութիւն Եսայի մարգարէին։
49․ Սաղմոս։
50․ Համառօտ ճարտասանութիւն Մխիթար Աբբայի Սեբաստացւոյ։
51․ Մեկնութիւն Երգոց երգոյն Սողոմոնի․ եւ Եփեսացւոց թղթոյն Պաւղոսի։
52․ Մաշտոց փոքր։
53․ Սաղմոս։
54․ Կանոնգիրք մեծադիր։
55․ Կանոնք Բարսղի։
56․ Սահմանք իմաստասիրութեան։
57․ Վեցօրէից Արարչութեան տեառն․ Առաքելէ Սիւնեաց։
58․ Մաշտոց ձեռնադրութեան․ որ կոչի Երիցատետր․ «Գրեալ ի Ջմչկածագ․ ի վանքըն Կարմիր․ յամի Պ․ Ղ․ Է․»։
59․—60—61․ Տօնացոյց․ երեք հատ։
62․ Քերականութիւն Սիմէոնի Ջուղայեցւոյ։
63․ Ճառք զանազանք։
64․ Ժամագիրք․ մագաղաթ, (թերատ)։
65․ Հարանց վարք․ փոքր։
65․ Աւետարան պատկերազարդ․ «Գրեալ ընդ հովանեաւ Ս․ Աստուածածնի եւ Նորաշէն Ս․ Էջմիածնին, որ անուամբ Բաղէնից վանք յորջորջի, ի հայրապետութեան Տեառըն Գրիգորի ընդհանուր Հայոց կաթողիկոսի, եւ յաթոռակալութեան մերոյս վիճակին պարծանք պարծանաց կաթողիկէ եկեղեցւոյ

Ս. Խաչին Աղթամարայ, Տէր Զաքարիայի Հայոց կաթողիկոսի. ի թագաւորութեան Ջհանշահի որդւոյ Ղարա Եուսուֆի. ի թըւականիս մերում Ջ. Դ. յորում ժամանակի յոյժ ճշդիւ հայրկապահանջութեան տառապի ազգս Հայոց»։

67. Աւետարան. «Գրեալ ի թվ. Հայոց Գ. ի գաւառենէ կենարարին մերոյ Ռ. Ց. Խ. իսկ յելանելոյն նախնի մարդոյն յանուշակ վայրէն Ց. Ջ. Կ. Բ. ի Հռոմկլայ»։

68. Աւետարան. մագաղաթ. «Գրեալ ի լեառն կարմիր. ի մենաստանն ուխտիս որ է անուն Աստուածամաւր. ի կաթողիկոսութեան Տեառն Կոստանդեայ. եւ ի ժամանակըս մեծի արքային Փիլիպոսի, ի թուա. Ո. Հ. Բ..»։

69. Շարական. փոքր. «Գրեալ ի թվ. Հայոց Ռ. Ջ. ի յերկիրն Ղլաթայ, ի գիւղն որ կոչի Սաւզաց, (Սողած.) ընդ հովանեաւ Ս. Ստեփաննոսի նախավկային եւ Ս. Աստվածայ զաւրավարին, եւ Ս. Թադէոսի աւծեալ. խաչին, որ մականուամբ Խաչաձոր կոչի. գրեալ եղեւ ի ստոյգ աւրինակէ Խլիկ կոչեցեալ, որ եւ աւրինակս Խլըկայ ձեռաց գիրն է»։

70. Գրիգորի եպիսկոպոսի Աղաղացւոյ առ Եւնոմիացիսն։

71. Նարեկացւոյ աղօթագիրք. «Գրեալ ի թվ. Ռ. Ճ. Խ. Թ.»։

72. Գանձք Գրիգոր վարդապետին Ծերենց. «Գրեալ ի գաւառն Ռապայ, ի թվին Ռ. Ջ.»։

73. Հարանց վարք։

74. Հարց եւ պատասխանիք Աթանասի եւ Կիւրղի։

75. Գրիգորի Նիւսացւոյ՝ Մարդակազմու-

թիւն. եւ Մեկնութիւն Երանութեանց. «Գըրեալ ի Թվ. Հայոց Ջ. Լ. Ը.»:

76. Յիսուս որդի Ն. Շնորհ. «Գրեալ ի Թվ. Հայոց Չ. Ի. Է. ի հայրապետութեան Տեառն Յակոբայ հեզի եւ սրբասիրի. եւ ի թագաւորութեան քրիստոսապսակ արքային Հայոց Լեւոնի»:

77. Մեկնութիւն Յոհաննու յայտնութեան. եւ Բանք պիտանիք՝ Գրիգորի կաթողիկոսի. ի խնդրոյ Հեթմոյ Սեւաստի»:

78.—79. Շարական. փոքրադիր. երկու հատ:

80. Ներածութիւն Պորփիւրոսի. եւ Սահմանք Դաւթի: եւ Մեկնութիւն քերականութեան:

81. Քարոզք. կանոնք. ժամանակագրութիւն. Գանձք. Քրոնիկոն. Լոյս ան" Գրիգորիսի:

82.—83. Ճառք. եւ Քարոզք. եւ Մեկնութիւնք:

84. Առակք Սողոմոնի եւ Գիրք Յոբայ. Գրիգորի Նիւսացւոյն Քարոզք եւ Մեկնութիւն Ժողովողի. «Գրեալ ի հռչակաւոր Անապատին որ կոչի Ակներ, ի բազմավրդով ժամանակիս, ի հայրապետութեան Կոստանդեայ, եւ ի թագաւորութեան Լեւոնի պատանեկի, զոր նչկահեալ... եւ ասպատակ աբարեալ ընդ ամենայն երկիրս, եւ պանծալի քաղաքն աւարի առեալ զծովահայեացն զեգեայն, որ է Այան. եւ զքրիստոնեայսն զամենեսեան... Թիւ Չ. Հ. Ա. ձեռամբ եռաթշուառ գրողիս Մինասայ, որոյ խորտակեալ է հոգւոյ ոսկերքս»:

85. Քարոզգիրք. կամ Պատկեր տաւնից. «Վերստին Նորոգումն եղեալ ի համեղաշէն եւ աստուածախնամ, հոյակապ, յականա-

ւոր եւ հռչակաւոր ՝Թագաւորանիստ մեծ մայրաքաղաքն Սուրտաւ· որ վեց անուամբ պատուի· Ա· Որէթ· Բ· Իաւ· Գ· Սուրտաւ· Դ· Ասորւոց Մակեդոնիա· Ե· Եդեսիա, Զ· Ուրհուայ· ի դուռն Ս· Աստուածածնին, որ է առաջին եւ մայր ամենայն եկեղեցեաց, շինեալ յԱբգար Թագաւորէն եւ ածեալ ի Թադէոսէ Առաքելոյն· եւ Ս· Դաստառակին, եւ Ս· Սարգսի զաւրավարին»։

86· Բառգիրք յատուկ· Աստուածաշունչ գրոց· արարեալ յԵրեմիա վարդապետէ· «Գրեալ ի դուռն Բալուայ վանուցն Աստուածածնայ»։

87· Սահմանք Դաւթի անյաղթի եւ Ստորոգութիւնք Արիստոտէլի եւ նորին Վերլուծականք· եւ Ոտանաւորք Գրիգորի Մագիստրոսի։

88· Քարոզգիրք։

89· Շարական· փոքր։

90· Ճառք եւ պատմութիւնք· (Թերատ)։

91· Գանձ Գիրք։

92· Ֆիզիքայ· այսինքն բնաբանութիւն Արիստոտէլի։

93· Յաղագս Կիւրիլլիւսոնի։

94· Քարոզք· Ճառք· Կանոնք։

95· Մաշտոց· եւ Գանձք։

96· Դիոնէսիոս։

97· Գիրք Գրիգորի Աստուածաբանի։

98·—99· Մաշտոց· երկու հատ։

100· Պորփիւրի եւ Դաւթի սահմանք եւ իմաստասիրութիւնք։

1· Կանոնագիրք։

2· Դատաստանագիրք։

3· Գրիգորի Աստուածաբանի՝ Առօրս· Գրիգորի Նիւսացւոյն՝ Ընդդէմ Եւնոմիոսեանց· եւ Գիրք բնութեան· եւ Սիւնեաց Տեառն

Ստեփաննոսի՝ Պատասխանիք ընդդէմ ազգին Յունաց կամ Հռոմայ ։

204. Քարոզգիրք կիւրակէից. մեծադիր ։

205. Ճաշոց պատկերազարդ. «Գրեալ Ռ.Ղ. ի Տիգրանակերտ» ։

206. Ճաշոց. հին ։

207. Յայսմաւուրք. «Գրեալ ի Ջ.Լ.Գ. թվին, ի հայրապետութեան Յակոբայ, եւ ի թագաւորութեան Լեւոնի, ի մայրաքաղաքն Սեբաստիա, ի ձեռն Ռուբինեայ, ի վանս Անապատ կոչեցելոյ» ։

208. Յայսմաւուրք. նկարէն. մեծադիր. «Գրեալ ի թվին Հայոց Պ.Ծ.Դ. յանապատին յԱնձնապատ. ի հայրապետութեան Տեառըն Դաւթայ, եւ ի թագաւորութեանն ազգին Մարաց Եգտինչէրի ։ Յայսմ ամի մեռաւ Թամուր Ղան. որ ի մի ամ իբրեւ զբաժակ բարկութեան առեալ էր զնա Աստուած ի ձեռն, եւ ում կամէր արբուցանէր. զի յարեւելից մինչեւ ի մուտս արեւու զամենայն հասարակ զերեաց, զհաւատացեալսն եւ զանհաւատսն զամենեսեան սրախողխող արար. եւ զԴըմխչ՝ այնպէս արար որպէս Ներսէս հայրապետն էր ասացեալ ի յողբն Ուռհայոյ ։ Յայսմ ամի չարժն Ժ. գիւղ ի Հէշատայ երկիր յերար խառնեաց ։ Յայսմ ամի ջուրքն յէնց պակասեցան որ բազում գետաղաց ջաղացք խափանեցան» ։

209. Յայսմաւուրք. առանց յիշատակարանի եւ թուականի ։

210 Աստուածաշունչ. «Գրեալ ի թվ. Ջ. Ղ.Թ. ի հայրապետութեան Տէր Մխիթարայ ուղղափառ հայրապետի, ի թագաւորութեան Կոստանդիանոսի, յեպիսկոպոսութեան այսմ նահանգի հիւսիսական կողմանցս հեզահոգի եւ գեղեցկատիպ եւ յոյժ ողորմածի Տէր

Ստեփաննոսի, եւ երկրորդի Նորին Յոհաննէս աբեղայի Սեբաստացւոյ ուղղափառ հռետորի եւ իմաստասիրի, եւ յաշխարհակալութեան Զանիպէկ ղանի, եւ իշխանի քաղաքի Ռամատնայ իմաստուն դատաւորի »։

211. Մովսէս Խորենացի. Ստեփաննոս Տարօնեցի. Արիստակէս Լաստիվերտցի. Եւսեբի՝ Պատմութիւն եկեղեցական՝ տասն դպրութիւնք. « Գրեալ ի Գոմաց վանք, ի Թվին Մ.Ծ.Է.»։

212. Ագաթանգեղոս. Պատմութիւն Մեծին Ներսիսի եւ Տեսիլ նորա. Պատմութիւն Ազգին Մամիկոնէից ցՍուրբն Վարդան. Պատմութիւն Տարօնոյ՝ Զենոբ Ասորի եւ Յովհաննէս եպիսկոպոս Մամիկոնեան. Բիւզանդարան պատմութիւն. Յիշատակարան եւ Պատմութիւն Ս. Վարդանայ քաջի եւ Հայոց սպարապետի՝ Եղիշէ. Պատմութիւն Նախարարութեան Ուռպէլեանց Սիւնեաց. Անխորագիր Պատմութիւն՝ Արշաւանաց Հագարացւոց եւ Թաթարաց. եւ Ռուբինեանց։

213. Աւետարան. «Գրեալ ի Թվին Պ.Ժ. ի քաղաքն Համիթ»։

214. Ներսիսի Լամբրոնացւոյ Ատենախօսութիւն. Վիճաբանութիւն՝ բացատրութեամբ զանազան խնդրոց՝ Գրիգորի եւ Յոհաննու. Մեկնութիւն պատարագի. եւ ճառք՝ յաղագս ժառանգաւորաց։

215. Նարեկացւոյ աղօթագիրք։

216. Աւետարան. պատկերազարդ, «Գրեալ ի Թվին Ռ.Ժ.Թ., յԵրուսաղէմ. ի Ս. Յակոբ։ Ի հայրապետութեան Հայոց Տէր Միքայէլ կաթողիկոսի. եւ ի հայրապետութեան Կիլիկեցւոց Տէր Խաչատուր կաթողիկոսի. ի թագաւորութեան Սուլթան Սէլիմին։ Յայսմ ամի Կիպրոս ի Ֆռանկաց առաւ.

անթիւ քրիստոնեայք վնասեցան, եւ անթիւ եւ անհամար գերի առան. որ ոչ թիւել կուգէր եւ ոչ ճառել։ Վայ մեզ. եղուկն էր խաչապաշտին տարել. ի յերկիրն թագաւորութեան Շահաստանայ որ այժըմ ասի Դաւրէժ, որ Շահ Թահմազ կոչեն. եւ ի Առաջնորդութեան սուրբ քաղաքին Երուսաղէմայ Տէր Անդրէաս արհի եպիսկոպոսին։ Ցիշատակարանս գրեցաւ ի անուրն Յալու. ի պարոնութեան որդւոյ պարոն Ճիմշիտ պէկին, որ Հիւսէին Ջանպէկ ասեն. Աստուած զինքն հաստատ պահէ ի պարոնութեան վերայ՝ Հայոց ազգիս համար, որ խիստ կու սիրէ, կու ընդունէ, Աստուած զիւր աւրն Ճ. Ռ. անէ. զիւր բարութիւն աւրհնէ եւ հաստատ պահէ մինչեւ ի խոր ծերութիւնն։ Գրեցաւ ձեռամբ Մխիթար եպիսկոպոսի »։

217. Աւետարան. « Գրեալ ի թվին Ռ. Կ. Գ. ի Կոստանդնուպոլիս »։

218. Հարանց վարք. «Գրեալ Ռ. Ճ. Ջ»։

219. Աւետարան «Գրեալ յԱղթամար. ի թվին Պ. Ժ. Բ »։

220. Մեկնութիւն գործոց Առաքելոց՝ ի Գէորգայ Լամբրոնացւոյ, ի համառօտող վարդապետէ, ի քուերորդւոյ Մեծին Գրիգորի Սկեւռացւոյ, ի խնդրոյ Տէր Յոհաննէս Արքայ եղբօրէ եւ յեպիսկոպէ նահանգաց աստուածապահ դղեկին Մոլեւոնի եւ մասն ինչ Բարձրբերդոյ, եւ նոյն տեսուչ հրաշակերտ սուրբ ուխտին Գռներոյ։ Ի թըվականին Հայոց Չ. Ծ. Թ.։ Եւ բանք աղօթից խօսք ընդ Աստուծոյ՝ գրեալ ձեռամբ Կիրակոսի։ Եւ. Բանք Բարսղի եւ Կիւրղի. եւ ինչ ինչ Կանոնք. եւ Պատասխանիք Ներսիսի Շընորհալւոյ առ վարդապետն Ասորւոց Յակոբ

ի Մելիտինէ ․ եւ Ցաւձրդութիւնք Պատրիարքաց եւ եպիսկոպոսաց ։

221 ․ Քարոզգիրք ։

222 ․ Մաշտոց ։

223 ․ Մեկնութիւն կաթուղիկեայց ․ (թերատ) ։

224 ․ Մեկնութիւն (բանիցն) Երեմիայ եւ Յովբայ ։ Ի մերջն մեկնութեան Երեմիայի գրեալ է ․ « Արարեալ կրկին աշխատութեամբ Գոշ վարդապետի Մխիթարայ ․ եւ զթերի եւ զանյայտ բանս ի գիւտ եւ ի յայտ ածեալ սուղ եւ սատար մեկնութեամբ առ ի պէտս ուսումնասիրաց » ։ Իսկ մեկնութիւն Յոբայ « Հաւաքեալ ի Վանական վարդապետէ » ։

225 ․ Գրիգորի Մագիստրոսի՝ Քերթուածք եւ Թուղթք ։

226 ․ Վարք եւ խրատք Եւագրի ։

227 ․ Ճառք սրբոց վարդապետաց ․ Ընդհանրական Ներսիսի Շնորհալւոյ ․ Վկայաբանութիւն սրբոյն Ատովմայ եւ որդւոյն իւրոյ ․ եւ Վարսակայ , եւ Ներսեհի , և Վարձաւորին , եւ Նոցունց ընկերաց ։ Բան ուրումն յաղագըս Աստուածածնին ի Նաւասարդի ժԵ ․ զոր կատարեն Հայք եւ ոչ այլազգք ․ եւ Վըկայաբանութիւնք զանազան սրբոց ․ և Ճառք ։

228 ․ Մեկնութիւն սաղմոսաց ․ Ներսիսի Լամբրոնացւոյ ։

229 ․ Պատմութիւն վարուց սրբոյն Ներսիսի Շնորհալւոյ ․ եւ Թուղթ դաւանութեանց եւ յաղագս միաբանութեան եկեղեցւոյ Յունաց եւ Հռովմայեցւոց ․ Պօղոս Տարոնեցի ․ Հարցումն Յոհնայի եւ Պատասխան Մովսէսի քերթողին ․ Թուղթ Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսին առ Գերմանոս Պատրիարք Կ․ Պօլսի ․ Մովսէս վարդապետի Երզնկացւոյ Պատասխանի ի Տրապիզոն՝ առ հաստուածեալ

երէցն Գրիգոր․ Բանք երանելւոյն Խոսրովայ․ Անանիայի Շիրակունւոյ համարողի՝ Թիւք, կշիռք։ Դարձեալ՝ Ներսէս Շնորհալի, եւ Գրիգոր տղայ կաթողիկոս․ Թուղթ Մեծին Եսայեայ վարդապետին եւ Պատասխանի ընդդէմ պարոն Հեթումի Կիւռիկոսցւոյն՝ վասն կարգաց եւ կրօնից Հայ․ եկեղեցւոյն եւ վասըն դաւանութեան հաւատոյ․ Եսայեայ վարդապետին՝ վասն մոլորման Զատկին եւ Եփեսոսի երկրորդ ժողովոյն, եւ վասն Քաղկեդոնի ժողովոյն, եւ վասն բաժակին Ջրոյ․ Պատճառ Ս, Աստուածին՝ որ Հայք եւ Ասորիք, Հապաշք եւ Ղպտիք՝ « որ խաչեցարիւ » ասեն միայն։ Ճառ Խաչի․ Ճառ Արարչութեան․ Պատասխանի Թղթոյն Փռանկաց՝ որ գրեալ էին առ Հայք վասն Նախատանաց եւ ոչ միաբանութեան․ դաւանութիւն հաւատոյ Վարդանայ վարդապետի ի խնդրոյ Կոստանդեայ կաթողիկոսի Հայոց․ Կարգ եւ կանոն աղօթից։

230․ Աւետարան․ առանց յիշատակարանի եւ Թուականի։

2131․ Մեկնութիւն Թղթոց Պօղոսի, (թերհատ)։

2132․ Լուծմունք Պրոկղի․ եւ Մեկնութիւն բանից Դաւթի փիլիսոփայի։

2133․ Վեցօրէից․ (մաշուած)։

2134․ Ճառք։

2135․ Ճաշոց գիրք․ (կէս մաշուած)։

2136․ Հարցումն Պիւռոսի Կ․պ․լի Հայրապետի եւ Կոմիտասու Հայոց կաթողիկոսի․ եւ այլ Հարցմունք․ եւ այլ բազում բանք հաւատոյ ընդդէմ երկաբնակաց։

2137․ Մեկնութիւն Առակաց․ Ներսիսի Տարսոնի։

2138․ Սաղմոս․ մագաղաթ։

139. Աղօթք Եփրեմի. եւ Աղօթք Մեսրովբայ վարդապետի. Աղօթք Գառնեցւոյ. Աղօթք Լուսաւորչի. Աղօթք Սարկաւագ վարդապետի. Անանիայ. Անաստասայ. Յոհաննու Ոսկեբերանի. Յօհաննու Երզնկացւոյ. Մխիթարայ Գոշի. Գէորգայ Մեղրիկի. Գրիգորի Սկեւռացւոյ:

140. Սաղմոս. «Գրեալ Ռ.Կ. ի Տիգրանակերտ»:

141. Առակք Սողոմոնի. եւ Գիրք Մարգարէութեանց:

142. Մեկնութիւն Յայտնութեան Յոհ.:

143. Յայսմաւուրք. փոքր. «Գրեալ ի Բաղէշ, ի դուռն սուրբ Հինգխորանին. ի թվին Ջ.Լ.Ե. ի Հայրապետութեան տէր Սարգսին. եւ ի Ղանութեան Աղուպ պէկին»:

144. 145. 146. Երեք Աստուածաշունչ. մագաղաթ. ընտիր. պատկերազարդ. ոսկեզօծ. երկուքն պահեալ. միոյն յիշատակարանէն քաղուածքն է.

«... Գրեցաւ սուրբ Աստուածաշունչ տառըս ի մայրաքաղաք Տիգրանակերտ, որ այժմ ասի Յամիթ, ի դուռն սուրբ Կիրակոս եկեղեցւոյն, ի Հայ թվա. Ռ.Ջ.Բ. ի թագաւորութեան Տաճկաց սուլթան Մուրատին. եւ ի հայրապետութեան սուրբ էջմիածնայ Տէր Մովսէս սրբասնեալ, առաքինի, խարազնազգեստ ճգնաւոր կաթողիկոսին. ի յառաջնորդութեան մայրաքաղաքիս տէր Բարսեղ աստուածաբան վարդապետին. յաւուրս սորա հաստատեցաք դպրոց յարհեստ գրչութեան, պատճառ ինքն լինելով, ետուր գրել մագաղաթ Աստուածաշունչ մի յոսկենկար յանկուածով. եւ տարեալ յՆրուսաղէմ եդ յիշատակ ի դուռն սրբոյն Յակոբայ. եւ այն եղեւ նպաստ որ գրեալ եղեւ Դ. Աստ-

ուածաշունչ մինչեւ ցայժմ, որ մինն այս է, զոր ստացաւ յԱրղնու Ղուկաս եպիսկոպոսն յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնողացն ։ Այլ եւ յայսմ ամի էր քաղաքիս Համթայ իշխան եւ տեղապահ՝ սիրելին Թագաւորին՝ Մուրթուզայ փաշայն, սիրող Քրիստոնէից, որ յաւուրս սորա շինեցան եւ նորոգեցան եկեղեցիք Քրիստոնէից, եւ յայսմ ամի նորոգեցին զսուրբ Կիրակոսի եկեղեցին եւ մեծացուցին, եւ սրահ կամարակապ շինեցին զաւիթ եկեղեցւոյն, եւ պատճառ նորոգման խոճա Երեմիան, եւ երեսփոխան մղտեսի Գասպարն, որ մեզ դպրոցի խուց շինեաց. զվարձըն եւ զփոխարէնն յԱստուծոյ ընկալցին ։ ... Աղաչեմ զդասս ընթերցողաց սուրբ Աստուածաշնչիս որ լաւ խնամք տանիք, ի հրոյ եւ ի ջրոյ պահէք եւ ի տգէտ ընթերցողաց... Մնացէ սուրբ Աստուածաշունչս անջրելի յիշատակ տէր Ղուկաս արհի եւ պանծալի հայրապետին ի յաւրհնեալ վիճակն իւր յԱրղնի, ի դուռն Բարձրահայեաց սուրբ Աստուածածնի, զոր էր շինեալ եւ հիմնարկեալ նազաշ սրբասնեալ Մկրտիչ եպիսկոպոսին ի պարծանս Հայաստանեայց. եւ մի իշխեսցէ ոք հանել զսա ի դրանէ վանից սուրբ Աստուածածնիս, թէ ծախելով կամ գրաւելով՝ իւր ազգականաց կամ յաւտարաց, կամ յոյլ եւ ծոյլ Առաջնորդաց. ով ոք որ իցէ թէ կարդացող թէ աշխարհական նենգութեամբ պատճառանաւք իւնչ հանէ զսուրբ Աստուածաշունչս ի դրանէ սուրբ Աստուածածնին, ի յԱստուածաշունչ տառս որչափ վատ եւ նզովք եւ անէծք կայ՝ ի վերայ նմին եղիցի. եւ որ սիրով եւ հաւատով ընթեռնու եւ լաւ խնամք տանէ, եւ ի գէճ տեղէ եւ ի հրոյ եւ ի ջրոյ պատրաստ պահէ, որ-

չափ ի յԱստուածաշունչս շնորհք եւ աւրհնութիւն (կայ) եւ նախախնամութիւն ի վերայ նորին եղիցի... եւ ընդ նահապետաց, եւ մարգարէից եւ առաքելոց սրբոց մասին դասեսցի, ամէն»:

147. Ցայսմաւուրք. մեծ. մագաղաթ. որոյ յիշատակարանի պատմագրական մասէն օրինակեալ է. «...Արդ այսպիսի սխրամեծար անաւթոյս գտաւ ցանկացող այրս այս մահդասի Ամբակումս, որ եւ զպատճառն եւս համառաւտեցից ի լսելիս քաջարանց Քրիստոսասիրացդ. քանզի զաղէտ եւ չուառութիւն ազգիս մեր զկարճիլն արժան վարկայ, եւ զսուկ լուրն անգամ անխայեալ՝ ի գրաւքանիս արագեցից. եւ սոսկամ զի մի Քամաւրէն՝ զառականս, այսինքն է, զպարսաւ հարց յանճախեալ, ըստ Քանանու ընկալայց. բայց ոչ գոյ հնար զանց առնել, զի թէ զմերս (գերան) թագուցեալ՝ զշեղս աւտարաց զըննեցից, նա եւս կարի յիմարութիւն է: Այլ ի դէպ իսկ եկն բան Մարգարէին ի վերայ մեր. թէ հատեալ եւ սպառեալ է ուրախութիւն յիսրայէլէ, եւ բարձեալ ցնծութիւն Ցակոբայ. զի դաւրացեալ է խարդախութիւն սկզբնաչարին, եւ տեղի տուեալ ճըշմարտութեան բան: Եւ պատճառ կականիս հառաչանացս այժմեան ժամանակիս մարմնասէր եւ փառամոլ Առաջնորդ անուանեալքն, որ ոչ խնայելով ի գառինս, այլ գուն գործեալ միշտ ի փողոտել արագեն: Եւ եւս այսմ արքայանիստ մայրաքաղաքիս պատրիճ պատրիարգունք անուանեալքն, յանճախեալ ի չարիս, թողլով զփառս զառի միոյն Աստուծոյ, եւ ... ուսան զգործս... կաշառաւք եւ տոկոսիւք խլել յիրերաց (զպաշտօն). եւ աւր ըստ աւրէ յաւելուլ

զդիմոսական հարկն, այնչափ եղեւ որ եկեղեցիք սուրբ մայրաքաղաքիս յետին չուառութիւն հասեալ, ի տանց եւ յիչատակաց ի զարդուց եւ յայլ զգեստուց կողոպտեալ, եւ պարտք պատրիարքարանին մինչ ՋՌ· ղուրուշն հասեալ· այնչափ ատելի եւ գարշ գտան ի տեսիլ ռամկին, որ մինչ առ կայսրն բողոք կալեալ, եւ զմիտս թագաւորին հաճեցեալ՝ Խէթթի շէրիֆ ընկալան, թէ ամենեւին ... անուն ոչ պատրիկ լիցի եւ ոչ ի քաղաքս անգամ մնասցէ· եւ յաւելաւ վէր ի վերայ վիրի, եւ դառնութիւն ի վերայ դառնութեանց· զի աշխարհ ամենայն ի լիութեան եւ ի ճեմ Աստուծոյ բանին լրութեան (էր), եւ քաղաքս այս միայն որպէս ի հնումն Սամարիա՝ խալամի իշոյ եւ ծրտից աղաւնեաց կարաւտացաք ... ոչ սով հացի կամ ծարաւ ջրոյ, այլ սով ոչ լսելոյ զբանն Աստուծոյ։ Ամենայն ազգաց ծաղր եւ կատակ գտաք մինչ ի գալուստ սուրբ Երուսաղէմայ հայրապետին, վարդապետին Աստուածատրոյ, որ է յաշակերտաց տեառն Պետրոսի Կառկառեցւոյ կաթողիկոսի Կիլիկիոյ· եւ էր այրս այս սուրբ եւ առաքինի, ընտիր եւ պահեցող, ամենեւին յար եւ նման սուրբ հայրապետին Գրիգորի փոխեցելոյն ի Քրիստոս· որ եւ բազմաց ընտրութեամբ եղեւ զկնի յաջորդ, եւ արժանահաւատ սուրբ պթոռոյ եւ փառաց նորին։ Եւ ի գալ վարդապետիս բացաւ դուռն քարոզութեան սուրբ Աւետարանին· եւ ըստ աւանդութեան նախնեաց, որ է Քրիստոսական սուրբ հրաման· երագեցին վարդապետք յարեւելից եւ յարեւմտից առ ի ուռոդել զերաշտացեալ եւ զպասաքեալ զանդաստան մերս բանականութեան։

Ի սոյն ժամու եղեւ գալուստ Եղիազար վարդապետին ի քաղաքս Ստամբուլ, եւ էր վարդապետս այս ի բնիկ գաւառէն Արաբիոյ՝ Հռոմկլայ· եւ ի մանկութենէ թողեալ զհայրենիս եւ զծնողս, եւ յարեալ ի ծառայութիւն վարդապետաց, եւ սիրող գտեալ բանի սուրբ գրոց ի յուսմանց, եւ վարժեալ առ ոտս Յոհաննէս վարդապետի Շնքչեցւոյ, որ եւ նա եւս էր յաշակերտաց տէր Պետրոսի կաթողիկոսի Կուկուեցւոյ, եւ վարժապետ Աստուածատուր վարդապետին Երուսաղեմացւոյ։ Եւ վարդապետս այս Եղիազար ի թվին Ռ. եւ Գ. երրորդի ընկալեալ զպատիւ վարդապետին ի վարժապետէն Յոհաննիսէ եւ շրջեալ ի բազում քաղաքս եւ ի տեղիս, մինչ զի համբաւեցաւ լուր վարդապետիս ընդ ամենայն երկիր եւ մեծ անուն եւ փառք ստացեալ եղեւ. եւ ի Ռ.Գ.Ջ. թվին կոչեցեալ եղեւ յառաջնորդութիւն սուրբ ուխտին Արղնոյ բարձրահայեաց Ս. Աստուածածնին եւ առեալ զաստիճան եպիսկոպոսութեան, ի Ս. Էջմիածնայ կաթողիկոս Տէր Փիլիպպոսէ սքանչելագործոյ, եւ դարձեալ յաթոռն իւր արար բազում քաջութիւն ի շինութիւն պարագայցն եւ մենաստան ի սուրբ ուխտին, որ ի բազում ժամանակաց, եւ տեղւոյն սառնապատութեան սակի բոլոր եւ համարակ շինութեան եւ նորոգման էր կարաւտացեալ. Նաեւ ի ներքուստ եւ արտաքուստ՝ թէ կարգաւորաւք եւ թէ անդադար պաշտաւն եւ սաղմոսերգութեամբ, եւ թէ ընթերցմամբ, եւ թէ մատենից ճոխութեամբ մինչ կրկին Աստուածաշունչիւ եւ Ծ. եւ աւելի գրքիւ պերճացոյց զաթոռ իւր սրբութեամբ։ Նաեւ Ռ. եւ Ծ. թուականիս մեր ի գալ վարդապետին ի քաղաքս այս Ստամ-

բուլ, յոյժ հռչակեալ գովեցաւ քաղցրաբան վարդապետութիւն . եւ անձանձիր քարոզութիւն եւ գեղեցիկ ըստ Աստուծոյ քաղաքավարութիւն վարդապետիս · մինչ զի հարկեալ, յիշխանացեւ ի ռամկաց նաեւ յայլազգի երեւելեաց քաղաքիս բռնութենէ՝ տարի եւ կէս ի պատիւ Պատրիարքութեան հոգւոր առաջնորդ եկաց ի քաղաքս, եւ զբազում պէսպէս եղծեալ եւ ապականեալ զկարգ եկեղեցւոյն վերըստին պայծառացոյց · ընդ նմին եւ զպարտք Պատրիարքարանին. եւ այլ նորագիւտ չարիք որ ի վերայ ժողովրդեան եւ եկեղեցւոյն ի բաց բարձան յաւուրս առաջնորդութեան վարդապետիս, եւ համոզեալ զամենեսեան պահեաց խաղաղութեամբ ոչ կարաւտացեալ այլազգեաց հրամանի կամ իշխանութեան, այլ իւրովի կարողութեամբ եւ հանճարոմն վարէր զամենայն, այսքան սիրեցեալ եղեւ ի բազմաց ։ Եւ մեք Ս · Սարգիս եկեղեցւոյս Տէր Մարտիրոս եւ Տէր Ովանէս քահանայքս, որ միջնորդ եւ սպասաւոր եղաք սուրբ Ցայսմաւուրք գրոցս, հարեալ էաք ի սէր վարդապետիս, եւ միշտ ընդ նմա շրջէաք զցայգ եւ զցերեկ անանջատ կալով յեկեղեցական եւ յայլ ծառայական գործս ։

Դարձցուք ի յոճ գրոյս ։ Մինչ վարդապետըս ի գործ քաղաքիս պարապեալ կայր, եկըն գիր ի դրանէ Բարձրահայեաց Ս · Աստուածածնին, յորում գրեալ իսկ էր պատճէնս այս «ի լուսապաճոյճ եւ ի գերահրաչակ Տալիթայէդ հովանեացի շնորհք, սէր, եւ հանապազեայ խնամ անխիզ միացելոյդ, իսկապէս խոստովանող եւ ջատագով ճշմարտութեան եւ կարկիչ ներհակաց, եւ առաքելաշնորհ եւ մեծանուն վերատեսուչ բոլոր Միջագետացս, յոլովագութ եւ բազմերախտ,

հոգեւոյէս եւ մարմնաւորապէս այցելու տեառ-
նըդ մերոյ, Եղիազար, պետաց պետ: Ընդ
որոյ եւ լուր սակս Նորահրաշ սքանչելեացս,
որ ի խնամոցն Աստուծոյ գործեցաւ ի սուրբ
քաւարանս, զոր ոչ քան զերեկն եւ զեռան-
դըն, կամ հերուն պատմութեանցն լուաք,
լոյսն զարմանազան, որ ոչ բաւեն բերանք
մեր ճառել զիսկն, իբրեւ զվրան քաւղեալ
էր զբոլոր պարսպաւն, Նաեւ սփռեալ ընդ
յատակս եւ վարէր զանձամբ անարժանիցն,
եւ գլուխք մեր դիզացեալ էին լի լուսով.
Նաեւ ծորէր ի մէնջ իբրեւ ի ղամբարէ հոտ-
եալ. կարծելով զմեզ ի վառարանի ըստ մա-
րենւոյն՝ եւ էաք անկէզ: Եւ ոչ թէ չեշտ
էանց տեսիլն, այլ յառաջին Նուագին սովո-
րութեան ժամուն (ժամերգութեան) որ ազդ-
եղեւ մեզ ի ձեռն լուսարարին, մինչեւ ի
ծագել արփւոյն: զի կարգ արարաք մեզ
մերթ ի տեսիլն եւ մերթ ի ժամ: Պատկերն
աւուրն երեքշաբթի. Ապրիլ Ժ. Ե. »:

(Զայս հրաշս) ի լուր աւետաւորեաց (Ե-
ղիազար վարդապետն ի մայրաքաղաքիս).
եւ հասարակ քաղաքացւոցս եղեւ ուրախու-
թիւն ոչ սակաւ. եւ բազումք պէս պէս ուխտ
եդին եւ սէր ընկալան յանձինս. ընդ բազ-
մաց եւ այրս այս մահտասի Ամբակումս ե-
ռափափագ տենչմամբ եւ յուսով, ի հեռաս-
տանէ իբր առընթեր երկիրեպագ զգետնի.
եւ խոստացաւ ի հալալ վաստակոցն ստանալ
զՍ. Յայսմաւուրքս եւ տալ ի դուռն Ս.
Բարձրահայեաց Աստուածածնին. զոր ինքն
Տէր մեր Յիսուս Քրիստոս ի հաճոյս իւր
ընկալցի. ընդ յիշատակս սրբոց եւ զյիշա-
տակագիր մահտեսի Ամբակումիս ի գիրս կե-
նաց գրեսցէ հանդերձ սիրալի հոգեւոր որդ-
ւոյն իւրով եւ ժառանգիւ մահտեսի Երեմիա

դպրիւս ։ Քանզի մահտասի Ամբակումս բարեմիտ եւ հաւատարիմ այրս էր ի բնիկ յԱկնայ ձորակէն ի գեղջէն որում Նավրէք կոչիւր, ի մանկութենէ որբացեալ ի ծնողաց, որոց Տէր Քրիստոս ողորմեսցի, եւ յաղագս անճարակութեան եւ աղքատութեան եկեալ ի քաղաքս Ստամբաւլ, եւ բազում վշտաց եւ տառապանաց տարեալ, ի գործս հացեփեցութեան աւտարաց ծառայելով, մինչ յարբունս ի կարգ աշխարհիս ամուսնացեալ. եւ այլ իմիք ոչ կարաւտացաւ՝ բայց յանզաւակութենէ. զի հաւատամ որ Աստուած էր վերակացու տան սորա ըստ Աբրահամու, զի ձրի ընկալեալ եւ ձրի շնորհէր եկեղեցեաց, վանաւրէից, աղքատաց եւ կարաւտելոց, զոր եւ տէրն ամենայնի ընկալցի. եւ զհարազատ քեռն իւրոյ զդուստրն ետ ինձ Մարտիրոս Երէցիս հրամանաւն Աստուծոյ ի կնութիւն. եւ մեր անարժանութիւն քահանայութեան՝ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, ձեռամբ Գրիգորի սուրբ հայրապետին. փոխեցելոյն առ Քրիստոս, մահտասի հայրս ինքն եղեւ (պատճառ). որոյ մասն շնորհաց հոգեպէս յինքն կրեսցէ, ամէն ։ Նաեւ զանդրանիկ որդեակն իմ, մերս յաւժարութեամբ, զԵրեմիա դըպիրս, շնորհեալ եմք ինքեան որդեկութեան. կելով կեցցեն եւ խաղաղութեամբ եւ աւրհնութեամբ ուրախասցին ի վերայ իրերաց ։ Ամէն ։.

Արդ գրեցաւ սուրբ եւ սրբոց ճեմարան Յայսմաւուրս ի մեծապանծ եւ ի բարձրափառ, ի ծովապատ եւ յարքայազահ քաղաքն Կոստանդնուպաւլիս, ի դուռն սրբոյն Սարգսի զաւրավարին եւ որդւոյ Նորա Մարտիրոսին, ի Թվին Ռ. Ճ. ... ի սոյն ամի լրացելոյ. ձեռամբ սուտանուն եւ մեղ-

սամած Յովաննէս գրչի, ի հայրապետութեան Տեառն Փիլիպպոսի արժանապէս բազմեցելոյն ի յաթոռ ամենայն Հայոց կաթողիկոսի, եւ ի թագաւորութեան տաճկաց իսմայէլացւոց ի քաղաքիս Սուլթան Մէհմէտին...: Ահա յայսպիսի դառն եւ դժնեայ եւ յոյժ անբարի ժամանակիս եղեւ աւարտ սուրբ գրոյս մեծաւ ջանիւ եւ բազում աշխատութեամբ, վասն որոյ կրկին թախանձանաւք եւ սեռն սիրով եւ հաւատով յերեսս անկեալ աղաչեմ զմանկունս Ս. Սիոնի զվայելողքս սմին. զի պահեսջիք զսա խնամով եւ բարւոք պատրաստութեամբ, թէ իմոմէ՝ եւ թէ գիջութենէ, եւ յայլ ինչ ներհակաց:

Դարձեալ ի թվին Հայոց Ռ. Ճ. եւ Բ. այս Եղիազար վարդապետս ելեալ ի Կոստանդընուպաւլսէ եկն ի վիճակեալ աթոռն իւր, այսինքն յԱրղնու Բարձրահայեաց Ս. Աստուածածինն, թագաւորական հրամանաւ եւ նոմոսիւ, որ յաղագս այնմ իւրի էր գնացեալ անդ. եւ սկսաւ նոր նորոգել զսուրբ մենաստանս, այս է զեկեղեցւոյն որմեր՝ ներքոյ եւ արտաքոյ սպիտակացուցեալ պայծառացոյց. եւ ի վերայ դրան սորին գաւիթ շինել ետ. որ յառաջն բնաւ իսկ ոչ դոյր. այլ եւ արտաքոյ շուրջ զեկեղեցեաւն սրահք պատշաճաւոր եւ զանազան խցեր. ի պէտս միաբանակեցաց եւ գալողաց եւ գնացողաց մեծաւ ծախիւք: Եւ գիտելի է զի յաւրէ յորմէ հետէ շինեալ էր զսա Տէր Մկրտիչ արք եպիսկոպոս Նաղաշն կոչեցեալ. մինչեւ ցայժմ ի յահէ անաւրինաց քար ի քարի վերայ աստ ոչ ոք էր եդեալ. բայց սա յԱստուած ապաւինեալ, բարեխաւս ունելով զտիրամօրն կոյսն, անկասկած լեալ յահէ անաւրինացն արիաբար դիմեալ ի գործ հոգեւոր մշակու-

Թեանս եւ լիով կատարեաց ըստ փափաքանաց սրտի իւրոյ, զոր Տէր Աստուած պահեսցէ հաստատուն յուսով եւ երկար ամաւք. եւս զաւրացուսցէ եւ արիացուսցէ ընդդէմ ներհակաց եւ չարափառաց ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ եւ ի պարծանս հաւատացելոց, ամէն։

Այլ՝ եւ ես տրուպ Եղիազար մեղսամած գրիչս հրամանաւ սոյն Եղիազար վարդապետի ըստ կարեաց իմոց սակաւ ինչ զսուրբ գիրքս սրբագրեցի, որ ի տեղիս տեղիս գըտանէին սղալմունք, որպէս սովորութիւն է գրչաց, զաւելին բարձաք եւ զպակասն լըցուցաք ըստ աւրինակի իմաստուն գրչաց»։

«Արդ՝ յայտ լիցի վերծանողացդ հարց եւ եղբարցդ մերոց, զի որպէս ի վեր անդր... ասացեալ է վասն տեառն Եղիազարու հոգեւոր դիտի, մեք եւս համառաւտաբար աւարտ արասցուք. քանզի ի Թուականի մերում Ռ. երրորդի, Ճ. երրորդի դոլով նա տեսուչ սուրբ ուխտին Բարձրահայեաց Աստուածածնի. երեւելի այրն եւ չքեղազարդն ի մէջ համայն ազանց քրիստոնէից մանաւանդ հուչակեալն ի դրունս այլասեռից, գնացեալ էր ի յարքայանիստ քաղաքն Կ. Պաւլիս յաղագս վանուցն նորակերտութեան, զի հրաման առցէ յարքայէն եւ եկեալ նորոգեսցէ ըստ պատշաճին զեղծեալ եւ զխախտեալ տեղիսն, եւ աւժանդակութեամբն Աստուծոյ եւ միջնորդութեամբ սրբոյ երանուհւոյ կուսին հասանէ ըղձիցն. եւ աճապարելով անդուստ փութայ եւ կատարէ զշինուածն խըցներով, ժամատընով, սրահովն և այլովք հանդերձ ի Ռ. Ճ. Բ. ամին. եւ դարձեալ չուէ անդր խոյս տալով ի տեղւոյս յահէ բռնաւորացն եկելոցն. եւ ազգի ազգի նոմոսս վերստին

տուեալ ի կայսերէ առաքէ այսր. որով ոչ սակաւ լինի դիւրութիւն։ Եւ ինքն կացեալ անդ քարոզէ նոցին յոլով աշխատութեամբ, եւ բազում արդիւնս գործէ, որպէս եւ գըրեալ է. եւ մանաւանդ ի քաղաքէն յայնմանէ յոգնակի ընդունելութիւն եւ սէրն գըրկէ, եւ յիշատակաց փոյթ տանի զարդարելով զսուրբ մենաստանս ազնիւ շուրջառովք. աւետարանաւք, եւ եպիսկոպոսական բոլոր զգեստիւք եւ այլ պատուական սպասիւք, եւ մէկ մագաղաթ Աստուածաշունչ ոսկենըկար եւ յոգներանգ ծաղկաւք. բայց յառաջ քան զայս, ի Ռ. Ղ. Ը. թուականին յորժամ էր ի յԱմիթ, զՅովհաննէս վարդապետի Եդեսացւոյ զգրեանսն բովանդակ՝ որ ի վաղուց հետէ աւելի քան զէ. ամ կայր պատանդ առ ոմն այլազգի յազդմանէ փորձութեան չարին, զոր ոչ երկարեմ, որպէս յայտ է գիտողաց. հաճեցուցեալ զմիտս այլազգւոյն տալով արծաթ ցորքան եւ կամէր պարտատեարն, եւ թափէ ի նմանէ զԱստուածային մատեանսն. եւ գրէ յիւր անուն.գ յիշատակարանս ինքեան եւ իւրոցն. եւ ամրափակեալ դնէ ի պահեստի, սակայն ի թուլամորթ գործակալաց ոմանց զբազումս գաղտագողի ի գրենեացն տարեալ են. որպէս յաւուրս մեր տեսաք. այնպիսի ագահողքն եւ գրոց աւազակքն տալոց են զհամարն։ Իսկ զՅոյսմաւուրս զայս ի յորդորմանէ դիտապետիս եւ այլոց բարեմիտ քահանայից եւ հոգեւէր արանց՝ ընծայեալ լինի ի յումեմնէ հեզահոգի մահտեսի Ամբակումէ ի դուռն սուրբ քաւարանիս ընդ այլոց յիշատակաց, որոց ամենից հոգւոց տէր ողորմեսցի նուիրողացն եւ կամեցողացն։

Բայց վերոյգրեալ վարդապետն (Եղիազար)

Ծնայ անդ (Կ․ Պօլիս) եւ հարկիւ լինի Պատրիարք մեծի քաղաքին․ եւ ոչ յետ բազում ինչ անցելոց աւուրց ի Թմխանձմանէ ժողովրդեանն մտանէ ի սպասաւորութիւն սրբոյ աթոռոյն Երուսաղէմի․ եւ բազում չարչարանքս կրէ սակս Ս․ Յակոբայ հռչակաւոր վանուց թէ ի Յունաց ազգէն եւ թէ յայլոց ազգաց … ի վերայ յարուցելոց բռնաւորաց․ բանդս; տուգանս, հալածանս, ի բազում աւուրս, մինչեւ այց արար Աստուած եւ վերստին շնորհեցաւ յարքայէ սուրբ Յակոբայ աթոռն ազգիս Հայոց։ Բայց սա ի մէջ այսքանեաց ժխորմանց գոլով եւ խուռն փորձութեանց, առնու զաստիճան եւ զկարգ կաթողիկոսութեան ի Ռ․ Ճ․ Ժ․ Ե․ ամին․ ի Բերիա քաղաքի, եւ այնուհետեւ անհէ ատելութիւն եւ աղմուկն ի մէջ երկուց աթոռոցն, այսինքն Երուսաղէմի եւ Էջմիածնի․ եւ անթիւ զանձ սպառի մինչեւ ցվախճան տեառն Յակոբայ սրբազան կաթողիկոսի, եւ ապա բերեալ նստուցանեն զԵղիազար հոգեւոր տէրն ի սուրբ Էջմիածին՝ կաթողիկոս ամենայն Հայոց, ընտրութեամբ եւ հաւանութեամբ արեւելեան վաճառականաց եւ համաւրէն եպիսկոպոսաց, վարդապետաց եւ բազմահոյլ վանականաց․ եւ ապա խաղաղանայ խազմն եւ գաղարի կռիւն․ եւ կացեալ Թ․ ամ յաթոռ սուրբ Լուսաւորչին՝ փոխի յաստեացս առ տէր․ բայց ոչ սակաւ արդիւնս փայլեցուցեալ՝ նորոգելով զխախտեալ եւ զխանգարեալ եկեղեցիս․ եւ ի յԵրեւան քաղաքի նորակերտեալ ի Զորագեղ մենարան ամենապայծառ յանուն սուրբ… եւ այլ բազում գործս ցուցեալ, զորս ոչ երկարեմ, այսքան չափ լիցի »։

Դարձեալ ի Ռ․ Ճ․ ԽԱ․ Թուականին յա-

Ջորդէ սուրբ զաթոռն տէր Նահապետ Եդեսացին աշակերտ նորին, եւ սա եւս յոլով շինութիւնս արար· քանզի կանգնեաց ի հիմանէ զՇողակաթ եկեղեցին, որ ի վաղուց ժամանակաց կործանեալ էր եւ տապալեալ, եւ այլ բազում շինուածս յաւել· իսկ ի յազդմանէ ամենաչարին յարեան ոմանք յեկեղեցականաց սատան նմին եւ ոչ կամեցան զիշխել եւ զսիրել նորին, այլ գրեցին ի շահանիստ քաղաքն Ասպահան բազում աւելորդաբանութեան բարուրս եւ բաղբաղայս յաւդելով· իբրու մարմնասէր գոլ եւ արծաթասէր, եւ յոլով անճահ զրոյցս· ոչ թէ միանգամ եւ երկիցս եւ երիցս· այլ բազմիցս եղեւ երթեւեկութիւն թղթոց· մինչ ցերիս ամս ոչ դադարեցան ի խռովութենէ· եւ հասեալ ի Ռ·Ճ·ԽԵ· թուին առնու ըռաղամ ի Պարսից թագաւորէն Ստեփաննոս Ջուղայեցի վարդապետն սակս կաթողիկոսութեան· եւ եւս հրաման, զի եկեալ հալածեսցեն եւ վտարեսցեն զՆահապետ հոգեւոր տէրն ի Տաթեւու Անապատն, զոր եւ արարին իսկ։ Բայց նա ապաւինելով յԱստուած՝ փախստական լինի եւ անկանի ի քաղաքն Դիարբէժ, եւ անտի հնարէ մահսար եւ արզա ձեռամբ մեծամեծաց, եւ առաքեն առ արքայ եւ ծանուցանեն զիրն ստուգութեամբ։ Յայնժամ քաղցրանայ սիրտ արքային եւ վերստին շնորհէ զկաթողիկոսութիւն Նահապետին հոգեւոր տէրին, (ասելով թէ) Թէպէտ Ստեփաննոս վարդապետն հաւանութեամբ վարդապետացն որք յէջմիածին՝ ձեռնադրեալ եւ աւծեալ էր կաթողիկոս Նահապետ խալիֆայն, բայց Ստեփաննոս որ զիս խաբեաց եւ յայս չարիս յորդորեաց, մերժեսցի յաթոռոյն հանդերձ համախոհ բա-

ընկամաւք իւրովք, եւ պատուէր արարեալ Երեւանայ խանին զի առցէ տուգանս արքայականս (ի Ստեփաննոսէն) Ռ. Թուման որ է Ի. Ռ. ղուրուշ, եւ ըստ արժանեացն դատեսցէն կրկին դատաստանաւ թագաւորականաւ եւ եկեղեցականաւ:

Ահա մինչեւ ցայս վայր զկայ առցէ (բանս)․ Աստուած զվերջն ի բարին կատարեսցէ: Ի յայսմ դարուն եւ անբարի ժամանակիս, որ է Թուական Հայոց Ռ. Ճ. ԽԶ. յորումնեղիմք. եւ ոչ իշխեմ զմի բանի ապացոյցս տալ. զի մի յանձախեսցին խաւսքն եւ լիցի տաղտկութիւն լսելեաց, եւս եւ... զկեղեքումն եւ զսոյն ամի սովն, որ եղեւ մէկ չարեկ ցորեն Ղ. ղուրուշ, եւ մարդիկ երկրիս կարի անճարակ եւ դառն աղքատ: Ի սոյն ամի տառապանաց եւ անհանգստութեան միջի լինելով Նուաստ եւ տրուպս Սահակ անուամբ եւ եթ սպասաւոր եւ աւելածու վերոյգրեալ սուրբ ուխտիս, ետու զՅայսմաւուրաց գիրքս վերստին կազմել, եւ գրեցի զսակաւիկ իրս կարճ ի կարճոյ...: Աղաչեմ յիշել յաղաւթս ձեր սուրբ զվերոյգրեալ սըրբազան հայրապետն զտէր Եղիազարն, որ ունի բազում աշխատութիւնս ի վերայ վանուցս. նաեւ զվարժապետն իմ զԱրղնցի Յոհան վարդապետն աստուածաբան, որ յետ հոգեւոր տիրին ի Ռ. Ճ. Դ. Թվականէն մինչեւ ցՌ. Ճ. ԼԳ. տեսուչ եւ հոգաբարձող կոչեցաւ մեզ ցվախճանն, եւ յոլով նեղութիւնս կրեաց ի սուտակասպասաց արանց, եւ ունի աշխատանս ի մենաստանս. նաեւ յիշատակք՝ զգեստ ազնիւ, ոսկետուփ աւետարանք, խաչք, սուրբ նշան եւ վարդապետական գրեանք, զորս յայլում տեղւոջ գրեցից....:

Դարձեալ որպէս գրեցաք զկիրս Ստեփաննոս կաթողիկոսին որ ի Ռ. Ճ. ԽԶ. թուին ի փետրուարին եղին ի բանտի հրամանաւ Շահին. եւ մնացեալ անդ ի մէջ դառն նեղութեանց մինչեւ ի մուտս Ռ. Ճ. ԽԷ. ամին, յունուար Դ. վախճանի ի նոյնում բանդի, եւ եթող զնա անթաղ Երեւանայ Խանն, մինչեւ ըստ համոյից իւրոց արար Նահապետ հոգեւոր տէրն (կաշառեալ), եւ ապա տայ հրաման յունուար Է. տանել թաղել, զի մինչեւ ցայն աւր անթաղ կայր, եւ տարեալ ամփոփեցին ի վանքն հռչակաւոր, Վիրապ կոչեցեալ. Կատարածն Աստուծոյ է գիտելի»։

## ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ

### Ս. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻ ՏԻԳՐ. ՔԱՂԱՔԻՆ

1 Մաշտոց.

«Գրեալ յամի Ռ. Ի. Դ. Հայոց, ի հայրապետութեան Տեառն Գրիգորի եւ յառաջնորդութեան մայրաքաղաքիս Ամթայ՝ Յոհաննէս րաբունապետին, ընդ հովանաւորութեամբ Կիրակոսին... յիշատակ Մ. Անդրէասին, եւ հայրն Խոնդքարին եւ մայրն Խոցդեղին. հարսին Ազատին... եւ դստերն Շամասին եւ քուերն Շահումին... եւ Ստեփաննոս գրչին եւ ծնողացն Բազին եւ Ալշատին... ի դուռն սրբոյն Սարգսին, յերեսփոխանութեան Խաւձոյ փոքանգարին եւ յաւագ երիցութեան Տէր Հայրապետին եւ վարպետ Տէր Մկրտչին եւ լուսարար Տէր Աւետիքին...»

1 Մանկանց Աւետարան. այսինքն Քրիստոսի մանկութեան Աւետարան.

«Պատմութիւն յաղագս մարդեղութեան Քրիստոսի մարմնացելոյն ի սրբոյ կուսէն Մարիամայ. զոր եւ Յակոբոս եղբայր տեառն ասացեալ է որ ի սկզբանէ ականատես էր բանին Աստուծոյ»... (թուղթը պատառած)։ Գրեալ յիշատակ Գէորգ կրաւնաւոր քահանայի, ի թուա. Հայոց Ջ. Ծ. Թ. ձեռամբ Յոհ. գծագրող քահանայի. ի հայրապետութեան Զաքարէի Հայոց կաթողիկոսի, եւ յառաջնորդութեան գերահռչակ սուրբ ուխտիս Վարագայ՝ համաշունչ եղբարց Տէր Սարգսի եւ Տէր Պետրոսի, որք հեզութեամբ եւ հանդարտութեամբ հովուեն զբանաւոր հաւտս... գրեցաւ ի գաւառիս Վանայ ի գեաւղն Աւանց ընդ հովանեաւ Ս. Յովհաննու Կարապետին եւ Ս. Գրիգորի Հայոց Լուսաւորչին...»։ — Պատմութիւն աջակողմեան աւազակին. եւ Յայտնութիւն Յոհաննու»։

1 Մաշտոց.

«Գրեալ ձեռամբ Յոհ. Մշեցի Երիցու ի Գոզմայ, ի դուռն Ս. Նշանին. ի թուա. Ռ. Ճ. Ժ. Դ. ամին... յիշեցէք զՄսըրձորայ Տէր Մարտիրոսն. զՆորսէս դպիրն, զՍարխաշն. զԳիրիգորն... զՓարին, զՇըհան, զՌուբին կիսուն տուողն՝ որ տուաւ ի գին Ս. Մաշտոցին...»։

1 Տաղարան.

«Գրեալ յամի տեառն Ռ. Զ. ԺԱ. եւ Հայոց Ռ. Ճ. Կ. ի քաղաքս յԱմիթ, ընդ հովանեաւ Ս. Կիրակոսին եւ Ս. Սարգսին... յԱռաջնորդութեան մայրաքաղաքիս Ամթայ եւ բոլոր Նահանգաց տեառն Իսահակայ Աստուածաբանութեան վարդապետի եւ արհի ե-

պիսկոպոսի Միջագետաց աշխարհի... ծրագրեալ ձեռամբ Մարտիրոսի բանի սպասաւորի եւ պաշտաւնէի վերոյգրեալ տեառն խաչակայ դիտապետի »։

1 Աւետարան. պատկերազարդ. ի ներքոյ Աւետեաց պատկերին գրեալ.

« Հիզան քաղաք ծաղկեցաւ եւ կազմեցաւ »։ Ի ներքոյ Ծննդեան պատկերին՝ « Զնըկարող եւ զծաղկող Սուրբ Աւետարանիս զՄկրտիչ յիշեցէք ի Քրիստոս. եւ Աստուած զձեզ յիշէ. Ամէն »։ Ի վերջն Մատթէոսի « Զստացող սուրբ եւ Աստուածաբան Աւետարանիս զսրբասէր եւ զպատուական քահանայն Սիմէոն եւ զեղբայրքն աղաչեմ յիշել յաղաւթս ձեր... զմեղուցեալ գծողս զՊօղոս Վ. աղաչեմ յիշել»։ (Յիշատակարանէն թուղթ պակասեալ)... « Զվերջին Նորոգող Սուրբ Աւետարանիս... զԽաւճայ Սքանդարն զՍ. Սարգսայ երէցփոխանն որ ետ վերստին նորոգել զՍուրբ Աւետարանս եւ արծաթապատել զամէնն չորեքդիմաց եւ բազում անաւթս չինեաց Ս. Սարգսայ. Դ. Աւետարան արծաթել ետ. եւ Բ. արծաթէ քշոց. եւ Բ. խաչ եւ սկիհ, եւ այլ բազում զարդերս չինեաց եւ պայծառացոյց. Աստուած պայծառացուսցէ զինքն հոգւով եւ մարմնով... ի թուա. Ռ. Ղ. Ձ. ...»։

1 Մաշտոց. անյիշատակարան եւ անթուական. ի սկիզբէն հասարակ գրով գըրեալ. « Յիշատակ է Տէր Յակոբին... ի դուռն Ս. Սարգսայ... թվ. Ռ. Մ. Ձ. Գ. »։

1 Աւետարան. նոր, մագաղաթ. ոսկէնկար եւ պատկերազարդ.

«Յիշատակ երկու քերց Մարիամայ եւ Սարայի եւ ծնողացն Մելքոնին եւ Խանումին. ի դուռն Ս. Սարգսայ զաւրավարին... Աստուած ողորմի ասացէք գրողի եւ ծաղկողի սորին, որ ի Կ. Պաւլիս էր գրեալ եւ ծաղկեալ, ոչ գիտեմք թէ ո՞վ է գրեր կամ ծաղկեր, բայց միայն սրտագէտն Աստուած հատուսցէ իւրոց աշխատանացն... ի թվին Հայոց Ռ. Ճ. Ի. Ե.....»։

1 Սաղմոս.

«Գրեալ ի Թուականի Ռ. եւ Է. տասի եւ եաւթն այլ աւելի, ձեռամբ Յոհ. սարկաւագի... ի մայրաքաղաքն Ամիթ կերտի. եւ (յԱռաջնորդութեան) Տէր Բարսեղ վարդապետի։ Ի դուռն Ս. Կիրակոսի եւ մաւրն նորա Յուղիտայի, եւ Ս. Սարգսի զաւրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսին... յիշեցէք զուսուցիչն արհեստիս զՏէր Մինաս բանիբուն քահանայն եւ զԱստուածաբան գրրչապետն... ո՛վ եղբարք, անմեղադիր լերուք խոշորութեան գրչիս եւ սխալանացս, գիտեմ որ բութ կորելոց է. բայց դուք գիտէք զի կատարեալ չէի յարհեստ գրչութեան...»։

1 Մաշտոց. Հնացեալ.

«Գրեալ ի գաւառն Արղնոյ, ի գիւղն Բագուր. սկսեալ ի սուրբ ուխտն ի Բարձր Աստուածածնի տաճարն, ի յանառիկ բերդն Արղնոյ, ի թվին Հայոց ութ հարիւրրորրդի ութսուներրորդի երրորդի. հրամանաւ Ալէքսիանոս քահանայի. ձեռամբ Յոհ. սարկաւագի... յիշեցէք զՅակոբ քահանայ եւ զմայրն իմ զՍալչուկն, եւ զեղբայրն իմ զքաջ փիլիսոփայն զԳրիգոր կրաւնաւորն. եւ զներսէս դեռաբոյսն, եւ զշնորհալին եւ զքաղց-

րաբարբառն զՅոհաննէս սարկաւագն, զփոխեցեալն ի Քրիստոս...»:

1 Աւետարան. փոքր.

«Գրեցաւ ի յերկիրն Աթխայ, ի գեաւղն Գոմա, ի դուռն սուրբ Նշանին, ի թուին Ռ. Ճ. Թ. ձեռամբ Մշեցի Յոհաննէս երիցու ... Քրիստոս Աստուած... յիշեա եւ քաղցր աչաւք նայեա եւ յանուանէ կոչեա զԽաչատուր վարդապետն... որ ետ գրել զսուրբ Աւետարանս...»:

— Այլ գրով գրեալ զկնի. «Ես Խաչատուր վարդապետս իմ յաւժարութեամբս ծախեցի իմ սանուկ Նահապետ սարկաւագին. ժէ. ղուրուշ. բարով վայելէ. Թվ. Ռ. Ճ. Ժ. Նահապետն գնեց ի մեղաւորէս, լուսաբար սուրբ Կիրակոսայ տէր Յոհաննէսն վկայ է, եւ ժամարարներն զամէն գիտեն»:

1 Աւետարան. փոքրադիր, երկիջեայն, բացատրութեամբ խորանացն.

«Գրեցաւ ի քաղաքն Բաղէշ ընդ հովանեաւ սուրբ Սարգսի զաւրավարին... ի Թվա. Հայ. Ռ. Ջ. Դ. ի հայրապետութեան տեառն Փիլիպպոս սրբազան կաթողիկոսի. յիշատակ տէր Պետրոս կրաւնաւորի... ձեռամբ Մեսրովբ դպրի... յիշեցէք... Աղամաթ... եւ զթաթուլն միակեաց եւ զՆասըրն... եւ զտէր Պետրոս աբեղայն, որ տեսեալ զպայծառութիւն սորա ցանկացաւ ստանալ զսա յիշատակ իւր... զարդարեցաք զսուրբ Աւետարանս տնաւրինականաւք եւ համաբարբառով. եւ ճարտրվարաւք եւ ոսկւով գեղեցկացուցաք... տէր Պետրոս ստացաւ զսա, (եւ) յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս... եւ ես տէր Սիմէոն ծերունի որ տեսի զմահ որդ-

ւոյն իմոյ եւ զկեանս աշխարհի ունայն համարելով, զի թէ յայսմ աշխարհի չուրախացաք ընդ որդեկին մերում որ ժառանգ էր մերոց հայրենեաց. ի հողեւորն բուռն հարաք. վասն յիշատակի ինձ եւ որդւոյն իմոյ Պետրոս աբեղային »։

1 Աւետարան եւ Մաշտոց. միակազմ. փոքրադիր, անյիշատակարան՝ եւ անթուական։ Ի վերջն գրեալ՝ Ողբք, Գանձք եւ գլուխք ինչ Աղաւթից Նարեկացւոյն։ Ի ներքոյ պատկերաց չորից Աւետարանչաց գրուածները օրինակեցինք.

« Մատթէոս՝ Մարդ անուանեցաւ,
Զի զմարդկութիւն տեառն սկսաւ,
Եւ զոր արարն մինչեւ յարեաւ։
Ծաղկող սորա որ յոյժ մեղաւ,
Հանդիպողացդ պաղատեցաւ,
Զի թողութիւն հայցել սովաւ,
Սուրբ աղաւթիւք յաղթանակաւ »։
« Այս Մարկոսի սա Առիւծ,
Զի սիգաձեմ է, չէ գծուծ.
Երագ որսայ ըմբռնէ բուծ,
Սոյնպէս արար զբանս իւր հոծհոծ։
Ծաղկողս որ եմ մեղաւք ի բուծ,
Զձեզ աղաչեմ արտասուահոծ.
Զի թողութիւն հայցել իմոց,
Զի միշտ ի լաց եմ եւ ի կոծ »։
« Այս Ղուկասու Եզն ասացին,
Որպէս եւ իսկ հերկէ զգետինն,
Կրկին անխոնջ վասն պտղին,
Սոյնպէս երկար են բանք սորին։
Ես անարժան ծաղկող սորին.
Զձեզ աղաչէ ողորմագին,
Զի թողութիւն հայցէք նըմին,
Ի աւէք սրտիւ զտէր ողորմին »։

« Այս Յոհաննէս Արծուանըման ,
Թըռեաւ մըտաւքն անհասական․
Առ ի պատմել որդւոց մարդկան․
Զանճառ էիցըս հանրական ։
Եւ ես ծաղկողըս անարժան ,
Որ եւ Թովմաս կոչիմ յանուան․
Ըզիս արէք յիշման արժան․
Եւ զձեզ աւրհնէ անմահ արքայն » ։

— Ի վերջ գրքոյս հասարակ գրով Նոր գրեալ « Յիշատակ տէր Սամուէլին , ի դուռն Համթայ Ս․ Սա՛րգիս եկեղեցւոյն․ Թվ․ Ռ․ Ճ․ Ղ․ Բ․․․» ։

1 Ժամագիրք․ խազերով , մագաղաթ , ընտիր․ անյիշատակ եւ անթուական ։

4 Սաղմոս․ փոքր , հնացեալ եւ մաշեալ․ անյիշատակարան եւ անթուական ։

1 Շարական․ փոքր , հնացեալ եւ մկնկեր ։

1 Շարական․

« ․․․ Գրեցաւ Աղաւթամատոյցս եւ Շարականս ի Թուին Հայոց ՋՃ․ Զ․ Ե․ ի հայրապետութեան տեառն Յակոբայ եւ ի թագ․ Լեւոնի , ի սուրբջս որ կոչի Գանցէ , ընդ հովանեաւ Ս․ Պաւղոսի եւ սուրբ Աստուածածնիս եւ կենսունակ սուրբ Նշանիս․ ձեռամբ Գրիգորի․․․» ։

1 Աւետարան․

« Գրեալ ի քաղաքն Վան , ի դուռն Տիրամաւր սուրբ Աստուածածնի եւ Գաբրիէլ սուրբ հրեշտակապետին , ի Թուին Հայ․ Ռ․ Զ․ Զ․ ձեռամբ Ստեփաննոսի․․․ ի ստոյգ եւ յընտիր աւրինակէ․ կենաւք տառեալ․․․» ։

1 Մաշտոց.

«Վերջին կապել սուող սորա Պաղտասար, որ եւ յիշատակ իւր եւ... (յիշեցէք)· եւ զկապող սորա զտէր Գրիգոր եւ զթոռն իւր զՊարսամն, որ զայս Դ. գանձն եւ զողբս մեռելին, եւ զԱստուածանեղն եւ զԱրարիչս գրեց... ի թվ. Ռ. Կ. Թ... եւ ես ի ձեռն տէր Սահակին»։

1 Մաշտոց.

«Գրեալ ի թվ. Հայոց Ջ. Հ. Ե. ի քաղաքն որ կոչի Ամիթ... ձեռամբ Խաչատուր երիցու...»։

— Ի վերջն, նոր թղթի վրայ գրեալ. «Յիշատակ է Մաշտոցս տէր Սարգսի որդի տէր Ոհանին ի դուռն սուրբ Սարգսին. ի թվա. Ռ. Ճ. ԿԱ.։ Զայս Մաշտոցն այլ տէր Կարապետն տարաւ իւր տունն ի թվ. Ռ. Ճ. ԿԸ. տէր Բարսեղն լուսարար իքան իշահլուն, որ մութավալի է, որ յետոյ տասն աւր ճիտն անցուցին, եւ յետոյ գնաց ի քաղաքն Բիւզանդիա, եւ ի գալուն յետոյ այլ մէյհանաճի եղաւ, եւ այլ մէկ արուեստ մի չունէր, սուպաշու... կրող եւ այլազգեաց խրզմաթքառ եղաւ, ով ոք ընթեռնու այս գիրս, իշահլու...»։

1 Աւետարան. փոքր, մագաղաթ, ընտիր.

«Գրեալ ձեռամբ Առաքել աբեղայի, աշակերտի երջանիկ եւ երանաշնորհ քաջ եւ արի արքեպիսկոպոսի տէր Բարսեղ աստուածաբան վարդապետի եւ վերադիտողի մայրաքաղաքիս Համթայ... աւարտ գրութեան սորա եղեւ Ռ. Ջ. ամի. եւ երրորդ աւելոր-

դի, յաշխարհս Միջագետաց, յԱսորւոց Նահանգիս, ի Տիգրանակերտ մայրաքաղաքիս ընդ հովանեաւ սուրբ Սարգսի... հոգ տանիք լաւ պահել զսուրբ Աւետարանս ի ջրոյ եւ ի հրոյ, եւ ի տգիտաց ձեռք չի տայք· որ ապականեն զլուսանցսն եւ զծաղիկսն կամ զպատկերսն եւ կամ թուղթ եւ պատկեր կտրեն, եւ կամ խաչ փորելով զթուղթսն ծակծակեն»:

1. Մաշտոց քահանայաթաղի.

«Գրեալ ձեռամբ Աստուածատուր երիցու, ի խնդրոյ Արիստակէս վարդապետի, ի թվ. Հայոց Ռ. ընդ Ծ. ի. ի դառն եւ ի նեղ ժամանակիս, ի Պաւլիս, ի դուռն Ս. Սարգսի զաւրավարին, ի հայրապետութեան մերոյ տեառն Փիլիպպոսի: Ես Արիստակէս վարդապետս ետու գրել զգիրքս յիշատակ ինձ եւ ծնողաց... եւ ետու ի վանքն Դատեւմու սուրբ Աստուածածնի»:

1 Աւետարան.

«Գրեալ ի թվ. Հայոց Ռ. Կ. եւ Է. ամի եւ երրորդ աւելորդի, ի Տիգրանակերտ Համիթ. ընդ հովանեաւ Ս. Սարգսի... եւ ի յըռամկաց միջի, ի թաղն որ կոչի Չըխալ. մերձ Մերտընու դուռն քաղաքիս, ի վերնայարկ փոքր դստիկոնիս. ձեռամբ Մելքոն դպրի. հարկեալ ի Յոհաննէ ուսուցչէ Նորին. ի յանհայրապետութեան ժամանակի ազգիս Հայոց, եւ ի վերադիտողութեան Համթայ... Բարսեղ արքեպիսկոպոսին աստուածաբան վարդապետին...: Այլ եւ ի թագաւորութեան տաճկաց Աւսմանցւոց Սուլթան Ահմատին: Ի սոյն աւուրս աշխարհս ի խռովման կայ եւ յերերման իբրեւ զծով յալէ-

կոծութեան ի զաւրաշարժութեանց ․ ․ ․ ․ ․ ։ Արդ յայս վշտաշատ ժամանակիս (Շահաբասի) աւարտեցաք զսուրբ Աւետարանս ․ ․ ․ յիշատակ հաստարակացի Ս․ Սարգիս եկեղեցի »։

## 1 Նարեկ․ (*)

«Գրեալ ի Թվ․ Հայոց Չ․Կ․Ջ․ ի գաւառիս Որնոյ, ի գեաւղս որ կոչի Բատաւնց, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի եւ սուրբ Յակոբայ, յառաջնորդութեան տէր Գրիգորի հեզի եւ խոնարհի եւ մեր իշխեցողի։ Այլեւ զճարտասան քարտուղարն զԱստուածատուր կրաւնաւորն զարծարծիչ սառից եւ զնիւթ շուշանայ մատենից, զխրատիչն իմ ․ ․ ․ յիշեսջիք ․ ․ ․ եւ գրել Գրիգոր կրաւնաւորն ․ ․ ․»։ — Ի սկիզբն Նարեկիս, յետ բանիս «դրանց յոգնաթախանձ բանից» ․ ․ ․ գրեալ է — «Այլեւ զարդիւնաւոր եւ զաշխարհալոյս աղբիւրսն արեւտան, զամոլսն հաւատոյ եւ զհաստումն աւրինաց զքարոզքս եկեղեցւոյ զՄխիթար արուսեակ, եւ զՅոհաննէս անաղաւտ լապտեր, ընդ սմին եւ զսոսա ունիմք բարեխաւս առ Տէր Յիսուս Քրիստոս»։ — Ի վերջին երեսն գրեալ․ «Ես Կարապետ Ցիպընցին, որ ամենայն մեղաւք եմ լի, ժամատեղեաց եմ խիստ Թերի․ եւ յամենայն բարեաց հեռի, եմ հնազանդ սատանայի, գործովքս չար եմ անթերի, իբրեւ զնաւթ ի մէջ հրոյ, որ ճայթելով ձայն յորջորջի»։ — Այլ գրով․ «Թվին Ռ․Ծ․Ե․ Ապրիլի ԻԳ․ վախճանեցաւ ի յԱմիթ քաղաք մեծ վարդապետն Սրապիոն, որ վերջ

(*) Նարեկիս մէջ՝ փոխանակ գրելոյ «ըզբան» գրուած է «զը բան»․ «ըզ տուն՝ զը տուն»․ «ըզ ջուր՝ զը ջուր»։ Այսպէս և այլ ձեռագիրքներու մէջ ևս յաճախ գործածուած է ինչպէս ց նախդիրը, «ցը հա, ցը հոսա»։

կաթողիկոս եղեւ ։ Ի յայսմ ամի վազիր Ջղալօղլին գնաց ի Շահու (վերայ) եւ դարձաւ ի յԱմիթ »… ։

1 Աւետարան.

«Յիշատակ Յոհաննու քահանայի ի գեղջէն Ուռոյ (Ուռի) եւ կենակցին իւրոյ Թանուխին, եւ զաւակին Խաչատուր սարկաւագին, եւ ծնողաց Վարդապետին եւ Հռիփսիմէին, ի գիւղն Ուռիկ ի դրան սուրբ Աստուածածնին, սուրբ Կարապետին, սուրբ Ստեփաննոսին եւ սուրբ Սիմէոնին. գրեալ ի Թվ. Հայոց Ջ. Ի. Բ. ձեռամբ Մանուէլ երիցու. ի Թագ. Հասան պարոնին. ի հայրապետութեան տեառն Սարգսի եպիսկոպոսի, ի դառն եւ յանբարի ժամանակս, ի գաւառս Երզընկայ, ի քաղաքս, ի դուռն սուրբ Աստուածածնիս Սեւաստուբէգ դրան։ Յիշեցէք զՄանուէլ երէցն, զվարպետն զՍամուէլ պատկերահանն, եւ զհայրն զՏիրացու քահանայն…» ։ — Ի վերջին երեսն այլ գրով. «Յիշատակ է սուրբ Աւետարանս տէր Պաւղոսին եւ որդւոյ նորա պարոն Տատուրին. ի հայրապետութեան տեառն Ռստակէս եպիսկոպոսին, ի դառն եւ դժար ժամանակիս ։ — Այլ գրով. «Զվերջին ստացող զՔրիստոսասէր Կարապետն յիշեսջիք, որ եդ ի Ս. Սարգսի եկեղեցին ի յԱմիթ քաղաքի ի Ռ. Հ. Գ. Թուին. յիշատակ իւր…» ։ — Այլ գրով. «Ես Ալէքսանդրոս եւ Ստեփաննոս գնեցաք զսուրբ Աւետարանս եւ եդաք յիշատակ ի գեաղն Ցաղման, ի դուռն սուրբ Յակոբայ եւ սուրբ Պաւղոսի…» ։

1 Աւետարան.

Յիշատակարանն ի սկիզբն գրեալ… ։

«Կարապետ քահանայի... յիշեցէք՝ զՅովհաննէս Երէցս... կազմեցաւ Աւետարանս Թվ. Ջ.Ժ.»։

1 Աւետարան.

«Գրեալ ի Թվ. Հայոց Ջ.Ծ.Գ. յԱստուածազարդ հայրապետութեան Տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի, և իՔրիստոսապսակ թագաւորութեանն Հայոց Հեթմոյ, եւ յարժ. եպիսկոպոսութեան սրբասէր եւ աստուածամեծար արք եպիսկոպոսիս մերոյ Տէր Ներսիսի. գրեցաւ սա ի գաւառիս Եկեղեցեաց. ի մայրաքաղաքիս Եզնկայ, ձեռամբ. Նուաստ եւ անպիտան գրչի Աւետեացս քահանայի. Նաեւ տեղի հանգստեան մերոյ յորում գրեցաք յանապատիս որ կոչի յանուն սուրբ եկեղեցւոյս՝ Ս. Կիրակոս, ընդ հովանեաւ Ս. Նշանիս եւ Ս. Կիրակոսիս. եւ ի հայրապետութեան Ստեփաննոսի եւ ծեր Ստեփաննոսի եւ այլ միաբան եղբարցս առ հասարակ որ կանք, Մխիթարն եւ Դաւիթ, Կարապետն եւ Կոստանդին. եւ հաւատարիմ սպասաւորն մեր Վահանն... յիշեսջիք... զԱւետիք աբեղայս եւ զհայրն իմ զՎասիլ...»։

1 Սաղմոս. մեծադիր, ընտիր.

«Գրեալ ի հռչակաւոր ուխտին որ կոչի Ղազարու վանք. ի Թվ. Հայոց Ջ.Ջ.Թ... ձեռամբ Աստուածատուր աբեղային, ի խնդրոյ բարեմիտ քահանային Դաւթի, որ ստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց, եւ զշուրջաւորն, զսուրբ Նշանն եւ զբուրվառն. եւ ետ ի դուռն Ս. Սարգսի զաւրավարին մայրաքաղաքիս Ամթայ...»։—Այլ յիշատակարան, ի սկիզբն. «Եւ արդ գրեցաւ սաղմոսարանս

ի յընտիր աւրինակէ ի Գառնեցւոյ, ձեռամբ մեղուցեալ եւ կորուսեալ, մեղսամակարթ եւ տարագրեալ եւ դատարկացեալ յամենայն բարեաց եւ ի շնորհաց, անարժան եւ եղկելի գրչի Աստուածատուր Աբեղի... վա՜յ է ինձ եւ եղուկ, թէ ո՞նց լինի վերջք իմ... Գրեցաւ սա ի մեծ եւ հռչակաւոր եւ յԱստուածաբնակ սուրբ ուխտս Ղազարու, ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցս եւ սուրբ Տիրամայր Աստուածածնին եւ Ս. Գրիգոր Լուսաւորչին, ի հայրապետութեան Տեառն Գրիգորի եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս Տէր Թադէոս Արհ եպիսկոպոսին եւ Տէր Կարապետին, եւ այլ միաբան եղբարց որ ամենեքեան սպասաւորք են սուրբ Առաքելոցս... եւ արդ գրեցաւ Բ. կանոն ի մայրաքաղաքն յԱմիթ ընդ հովանեաւ Ս. Սարգսի, մեծ եւ արհի եպիսկոպոսն Թադէոս..., զիս երբեր ի վանքս Ղազարի. ինքն ձեռնարկեաց մեծ գումբէթին եւ ես նստայ ի գիր սաղմոսիս. եւ բազում վիշտս կրեաց, ողորմութեամբն Աստուծոյ վերստին նորոգեաց զգումբէթն սուրբ Առաքելոցն եւ զայլ բազում խախտեալ տեղիս...: Գրեցի զերգս Դաւթի ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցն, ի գաւառին Տարաւնոյ»:

— Սաղմոսիս ամէն մէկ փոխին՝ մէկ մէկ տող բան յարմարցուցած եւ գրած է ի լուսանցն իբր գուշակութիւն կամ վիճակ. ահա մի քանիսը. — ԾԽԶ. «Ծաղկեսցին կեանք քո որպէս զարմաւենին»: — ԾԼԵ. — «Ի զուր ջանաս եւ ոչ հասանիս կամացդ»: — ԾԺԴ. — «Բազում չարեաւք սպասեն անձին քում, զգոյշ լեր»: — ԾԴ. — «Դարձո զսիրտ քո առ Աստուած. զի նենգութիւնք պատահելոց են քեզ»: — ՀԹ. — «Զոր հոգաս ի

մտի քում, ոչ է հաստատուն»։ — ՀԵ. — «Զայդ զոր կամիս առնել՝ չար է եւ չէ քեզ բարի չահ». — ԿԸ. — «Ոչ լինի զոր խորհիդ. մի՛ աշխատիր»։ Եւն. Եւն։

1 Աւետարան.

... «Ի Թվ. Հայոց Ջ. Խ. Ե. ի դառնեւ դժար ժամանակի յոյժ տառապեալ եմք. գրեցաւ ի գիւղս Կուքի կոչեցեալ, ընդ հովանեաւ Հազարաբեւրոցս եւ Ս. Նշանիս եւ այլ սրբոցս որ աստ կան ի բոլորակայս մեր. ի խնդրոյ բարեպաշտ եւ երկիւղած քրիստոնէից Գուզալին եւ ամուսնոյն իւր Խոնծին. յիշեցէք...»։

1 Աւետարան.

«Գրեալ ի Թվ. Հայոց Զ. Խ. Ը. ի թագաւորութեան Հեթմոյ, ի հայրապետութեան Գրիգորի, ի գաւառիս որ կոչի Վերին Տիւրիկի, յանապատին որ կոչի... (եղծեալ). ձեռամբ Կարապետի, ի ծերութեան ժամանակի. ի պակասել լուսոյ աչաց...»։

1 Թուղթ Պաւղոսի առաքելոյն.

«Գրեալ ի ՌԿԶ. Իսահակայ Կարնեցւոյ. ի Համիթ»։

1 Աւետարան.

«Գրեալ ի լաւ եւ յընտիր աւրինակէ. յԵրեմիա կրաւնաւորէ, ի Թվ. Պ. Ղ. Ը. ի լեառըն Սեպուհ, ի հռչակաւոր Անապատն Ս. Լուսաւորչին, ի դուռն Ս. Աստուածածնին եւ Ս. Կարապետին, եւ սքանչելագործին սրբոյն Մինասայ, եւ երից Մանկանցն, ի յԱռաջնորդութեան Մաթէոս սրբասէր կրաւնաւորի, ի հայրապետութեան Տեառն Գրիգորի ի Վաղարշապատ քաղաքի. եւ ի բըռ-

նակալութեան Դարանաղեաց գաւառիս ծաւար բէկի·· յամի ՌՄԳ· քրիստոսասէր ումն վաճառական գոլով անուն Յովսէփ ի ճանապարհորդութեան իւրում· տեսանէ ի քաղաքն Կարնոյ զԱւետարանս ի ձեռն զինւորաց տաճկաց· եւ տուեալ գինս առնու ի նոցանէ եւ բերեալ ի յԱմիթ ետ նուէր Ս· Սարգսի···»։

1 Աւետարան.

«Գրեալ յամին Ռ· եւ Կ· ի Տիգրանակերտ··· ընդ հով· Ս· Սարգսի··· եւ որդւոյ նորա Մարտիրոսին· եւ այլ բազմահաւաք սրբոցս որ աստ կան ի պահպանութիւն քաղաքիս, ի յանպատչաճ բնակութեանս· եւ անհանգիստ նեղ եւ անձուկ յարկիս· ի թաղըն որ կոչի Չըխար, մերձ Մէրտընայ դուռըն քաղաքիս։ Ի հայրապետութեան Ս· Էջմիածնի Տէր Մելքիսեդ կաթողիկոսին եւ ի թագաւորութեան Աւսմանցւոց Սուլթան Ահմատին, այս է· ամ աւելի է որ զան բազում զաւրաւք ի Պարսից պատերազմ· եւ այս տարի եկն երկրորդն նորին Մուրատ փաշայն, որ վազիր անուանին, զի գնաց յանցեալ տարի բազում զաւրաւք ի վերայ Թաւրիզու, եւ դարձեալ անդէն եկն Համիթ· եւ այս Ը· ամիս նստեալ կայ ի քաղաքիս· եւ զաւրքն ամենայն ի տունս քրիստոնէից իջեւանս կալան, այլ եւ յեկեղեցիս· ի խցերն եւ ի սրահներն եւ առ դրունսն զձիանսն կանգնեցուցին, աղբակոյտ արարին զամառնային ժամատեղն···։ Արդ յայս վշտահար ժամանակիս աշխատութեամբ եւ բազում դառն նեղութեամբ աւարտեցաք զՍուրբ Աւետարանս· եւ ստացաւ զսա քրիստոսասէր կինն Նապաթ ի յիշատակ իւր···»։

1 Աւետարան.

«Գրեալ ի Թվ. Հայոց Գ. Հ. Ե. ի հայրապետութեան տեառն Պաւղոսի, եւ յԱռաջնորդութեան սուրբ ուխտիս Տէր Մարկոսի եւ Տէր Յոհաննիսի, ի թագաւորութեան Հայոց Կոստանդեայ... (թուղթ կտրուած), յաղնիւ աւրինակէ եւ ամէնընտիր...»։

1 Աւետարան. մեծադիր, ոսկենկար պատկերազարդ.

«Յիշատակ բաղնէպան Յոհաննիսի Զմըշկածագցւոյ ի գեղջէն Աղձնեաց, բնակեալ ի Համիթ. ի Թվ. Հայոց Ո. որդ ամի եւ եաւթանասներրորդ աւելորդի, գրեալ ի մայրաքաղաքն Համիթ, ի թաղն որ կոչի Զըխալ, ընդ հով. Ս. Սարգսի. ձեռամբ երկու գըրչաց. Մատթէոս, Մարկոս, եւ Ղուկաս՝ Ովանիսին, եւ Յոհաննու գլուխն՝ Մելքոն գըրչին. Տէր Միքայէլ նորընծայ քահանայի... ի հայրապետութեան ազգիս Հայոց եւ ի վերադիտողութեան Համթայ վիճակի Սրք եպիսկոպոսի Տէր Բարսեղ վարդապետին... եւ ի թագ. աւսմանցւոց Սուլթան Աւսմանին. որ յայսմ ամի ել բազում զաւրաւք յՍտամպուլայ եւ գնաց ի վերայ Լահաց աշխարհին Ֆռանկ ազգին...։ Ի սոյն ամի եղեւ մահտարաժամ յամենայն տեղիս վասն ծովացեալ մեղաց մերոց. եւ յաւել խստագոյն հարկահանութիւն ի վշտացս վրայ. որ զազգս հրձիգ եւ կոխան արարին ամենայնի, այլ գոհութիւն տեառն որ ի վիճակի Քրիստոսի եմք...։ Տուք զողորմի գրոյս ստացողի, որ եա նուէր Ս. Սարգսի, հոգւոյ իւրոյ եւ ծնողին, Հէրապետին եւ Զոհալին, եւ կենակցոյն Նունուֆարին...»։

1 Աւետարան.

Մեծադիր, անթուական. «Ցիշատակ Տէր Ցոհ. քահանայի եւ եղբաւրն Աւետիքի...»։

1 Աւետարան.

«Գրեալ յԱւեխու վանք մերձ ի Բաղէշ. յԱռաջնորդութեան Ցակոբ եպիսկոպոսի եւ Վարդան հէրպետի. ձեռամբ Զաքարիա սարկաւագի, ի հայրապետութեան տեառն Սարգսի ընդհանուր Հայոց կաթողիկոսի Վաղարշապատու էջմիածնի. եւ Աղթամարայ տեառն Աստուածի. ի թվ. Հայոց Չ. Խ. Ե. ի դանութեան ազգին Նետողաց Ըռստում բէկին, ի դառն եւ չար ժամանակիս, որ բռնացեր են ի վերայ Հայոց ազգիս...։ Նորոգ կազմեալ ի յԱմիթ. Ռ. Ծ. Գ. թուին»։

1 Աւետարան.

«Գրեալ ի վանս Աւեխու Ս. Աստուածածնին, որոյ թուականն թափեալ էր։

1 Տաղարան.

Փոքրիկ, անյիշատակարան եւ անթուական.

1 Աստուածաշունչ.

«Ցամի Չ. Ղ. Ե. թուականիս Հայոց եղեւ գրաւ գրչութեան Աստուածաշունչ տառիս. ձեռամբ մեղաւոր... Նատիրի, ի խնդրոյ պատուական եւ մաքուր կրաւնաւոր եւ հեզահոգի աբեղայի Գրիգորի եւ եղբաւր իւրոյ Վահան աբեղայի, յաշխարհս հիւսիսոյ ի մայրաքաղաքն Ղրիմի. եւ հոյակապ եւ ի հռչակաւոր բազմածողով տեղիս որ կոչի Սուրխաթ, յառաջնորդութեան Առաքելական իշխանութեան տեառն Ստեփաննոսի, եւ յա-

թուապահութեան հանճարեղ հռետորին Յոհաննէս. աբեղային, յաշխարհակալութեան Ճանիպէկ Ղանին. եւ ի քաղաքապետութեան Ռամատնայ, որ այժմս արժանի յիշատակելի է վասն իրաւագնացութեան ի վերայ սահմանի ըստ աւրինի քաղաքականութեան..»։

1 Մայր Մաշտոց. մեծադիր.

« Գրեալ յերկիրն Մոկաց, ի վանքն Ծպատ. ընդ հովանեաւ Ս. Փրկչին. ձեռամբ Ստեփաննոսի. ի Թվ. Պ. Ժ. Ը... յիշեցէք զՍարկաւագ քահանայն... զնոր տիկինն... զՏէր անձն... եւ զմեծարգին եւ զմեծահարկն զՑակոբոս տիսալարն... զՄամայ տիկինն. զԱստուածատուր տիսալարն... եւ զփառաւք ի փառսն բարձրացեալ զԳրիգոր տիսալար եւ զԹագ ոսկին...»։

1 Ճաշոց. Թերի.

1 Աւետարան. երկաթագիր, Թերատ։ — Ի վերջն Մարկոսի գրեալ. «Տէր Աստուած ողորմեա Մլեհին եւ Լիոյին. ամէն»։ — Ի վերջն Ղուկասու գրեալ. « Զտուողն Ս. Աւետարանիս զՊ. Վարդան եւ զկենակիցն իւր զԲարէ տիկինն յիշեցէք ի Քրիստոս...»։

1 Գանձարան. մեծադիր եւ ստուար.
« Գրեալ ի Սարգսէ. ի քաղաքն Համիթ ի Ս. Սարգիս. ի Հայոց Թվ. Ռ. Ժ. Բ. ին...»։

1 Յայսմաւուրք.

« Գրեալ ի Համիթ. ի Ս. Սարգիս. ի Թվ. Հայոց Ռ. Հ. Գ. ի վերադիտողութեան Նահանգիս Բարսեղ Արհի եպիսկոպոսի... ի թագաւորութեան տաճկ. Աւսմանցւոց Սուլթան Մուստաֆին. յաւուրս սորա տէրու-

թեան ամիրապետք եւ իշխանք ի միմեանց վրայ յարուցեալ միահաղոյն աւերեցին զաշխարհս, եւ զազգս քրիստոնէից ոչինչ դարձուցին. Տէր Աստուած գթասցի ի ժողովըրդեան իւր եւ վերստին հաստատեսցէ զեկեղեցի իւր ի խաղաղութեան....: Յիշատակ ուկերիչ Եղիային...»:

## 1 Ճաշոց գիրք.

«Գրեալ ի Տիգրանակերտ. ընդ հով. Ս. Կիրակոսի. ի կաթողիկոսութեան Էջմիածնայ տեառն Մովսէսի. որ յերեկոյացեալ ժամանակիս երեւեցաւ առաքինի վարուք. յԱռաջնորդութեան քաղաքին Բարսեղ Արքեպիսկոպոսի... ի թագաւորութեան տաճկաց Սուլթան Մուրատին. որ նստեալ է ի Կ. Պաւլիս... հանապազ առաքեն զզաւրս... ի Բաբիլոն..ր եւ Փաշայն հզաւր... (թուղթ հատեալ) բազում զաւրաւք ելեալ ի Կ. Պոլիս եւ եկեալ գնաց ի Պարսկաստան. եւ մտեալ ի մէջ Պարսից աշխարհին, եւ նոքա զաւրաց առաջքն դատարկէին ի մարդոյ եւ յապրանաց որչափ եւ կարէին տանէին ի ներքս. եւ սոքա զաւրացեալ գնացին ի Համատան եւ ի Տարկազի մեծամեծ քաղաքս, եւ զմարդ ոչ գտանէին... եւ դարձան յետս. եկին ի վերայ Բաբելոնի, որպէս հրամանքն էր թագաւորին. եւ եկեալ խըսարեցին զԲաբիլոն եւ պատեցին պատնէշ եւ պաշարեցին շուրջանակի. եւ պատերազմեցան ներքուստ եւ արտաքուստ... դարձան յետս եւ եկին ի քաղաքս Ենիշար աղային, եւ Վազիրն նըստաւ ի Մէրտին. եւ զաւրքն ցրուեցան յամէն մէկ իւր երկիրն, ուր եւ հանդիպէին... Տէր Աստուած փրկեսցէ զհաւատացեալս անուան

իւրոյ. եւ տացէ Թագաւորաց հաշտութիւն եւ աշխարհի խաղաղութիւն . . . » ։

1 Յայսմաւուրք. մագաղաթ.

« Յիշատակ տապար Խաւճայ Դաւիթին, զոր կրկին գնեալ ի ձեռաց այլազգեաց դուստըր յիշեալ Դաւիթին՝ Վարդ խաթունն. դնէ յիշատակ ի Ս. Սարգիս եկեղեցին ի մայրաքաղաքն Համիթ. ի Թվ. Ռ. Ճ. Ի. Ը. » ։

1 Յայսմաւուրք.

Որոյ Թուական եւ յիշատակարան հատեալ ։

1 Ճառընտիր. երկու հատոր. մեծադիր ։

« Գրեալ ի սուրբ ուխտն Վարագայ, ձեռամբ Յովհ. գրչի. ընդ հովանեաւ Ս. Նշանին Վարագայ, ի գեաւղս Շուշանց, ի դուռն Ս. Գէորգայ զաւրավարին, ի հայրապետութեան Տէր Սահակայ առաջնորդին Վարագայ, եղբաւր Հ. Պաւղոսի նախորդ Առաջնորդին. ի Թվ. Հայոց Պ. Խ. Ը ։ Յիշեցէք զՏիրացու կրաւնաւորն եւ զՏէր Ստեփաննոսն եւ զծնողսն իւրեանց զՀայրապետն եւ զԴասապետն. զՇնոհորն և զՍամէլիք, և զպապն նորին զՍաւարն եւ զԱւետիս քահանայն . . . զՋհանխաթունն եւ զԳուրջի խաթունն . . . զՆորատինն եւ զՍահմատինն . . . եւ զերիցս երանեալ Սիմէոն րաբունապետն. որ եղեւ պատճառ եւ ուսուցիչ գործոյս գրչութեան, տուեալ նուէր սուրբ առաքելոցն Բարդուղիմէոսի (վանիցն) » ։ — Այլ գրով. « Յայսմ ժամանակի էր սուր եւ սաստիկ գերութիւն. եւ բերին անաւրէն դերիչքըն զգիրքս. եւ գնեաց զսա Յոհաննէս սարկաւագն եւ ետ վերստին նորոգել ի Ռ. եւ

Ղ. Թվ. Հայոց.:. ի Համիթ... յիշեցէք... Մղսի Շուշան եւ Մրջան եւ Մանդրատ եւ հարեղբայրն Թաջտին. եւ զՄինան. զկողակիցն զՍաւսիկ... զՆուսրաթն... եւ զեղբայրն զԼուսիկն եւ զԱպտլիկն եւ Խալխաթունն... եւ զԿճպօնն...»։

1 Աւետարան. փոքր, մագաղաթ, ընտիր.

«Երանաշնորհ եւ արք եպիսկոպոսն... Տէր Բարսեղ..: Առաջնորդ Համթայ... ստացաւ... զաւետաւոր կտակս Քրիստոսի. ի ներկայումս անձին իւրոյ, եւ յապայս յիշատակ նախ հոգեւոր ծնողին իւրոյ յիմաստս վարդապետութեան, յորմէ զփոքրուց ուսումըն եւ զաստիճան կուսակրաւն քահանայութեան եւ զիշխանութիւն վարդապետութեան եւ զտեսչութիւն եպիսկոպոսութեան առեալ էր. որ է տիեզերալոյս աստուածաբան վարդապետն Տէր Սրապիոն որ եւ Գրիգոր կաթողիկոս եղեւ Ս. Էջմիածնայ. եւ ապա մարմնաւոր ծնողաց իւրոց. հաւրն Ապուհարին եւ մաւրն Ելչիկին, եւ աւագ եղբաւրն մահտեսի Ապտուլին, որ է պատճառ ուսման իւրոյ, եւ այս Խ. Է. ամ է որ հրաժարեալ է յաշխարհէս, խարազնազգեստ ճգնութեամբ աղաւթիւք եւ պահաւք ի լերինս շրջագայելով, ի ծերպս վիմաց է բնակութիւնն, յամարային արեւակէզ եւ ձմերային ցրտասառոյց, զտիւ եւ զգիշեր ոչ դադարէ, այլ միշտ եւ հանապազ աղաւթելով եւ անյագ ընթեռնլով յաւրհնաբանութիւն եւ ի փառաբանութիւն ամենասուրբ երրորդութեանն. եւ զմիւս եղբայրն՝ զՄախսուտն եւ զորդիքն իւր զԳրիգոր եւ Լալի խանն եւ զմիւս եղբայրն զՄհերն եւ զդուստրն զԱ-

զապէկին եւ զմիւս եղբայրն զԱրեւն. Նաեւ զքուերքն իւր զՄանդրուտն, զՔնքուշն, զՄարիամն, զՊահրին, զՇուշանն, եւ զայլ ամենայն արեանառու մերձաւորսն զկենդանիս եւ զհանգուցեալս յիշեցէք ի Քրիստոս Աստուած...։

Արդ Ես Նուաստս ի գրչաց, Թարմատար եւ յոռի․ անպիտանս ի մանկանց եկեղեցւոյ մինս, զառածեալ, սուտ եւ փուտ գրիչս, ետու գրել զՅուրբ Աւետարանս աշակերտին իմոյ Առաքել քեղայի, եւ իմ ծաղկեալ զսա աւարտեցի․ ստացաւ Բարսեղ վարդապետ հոգեւոր հայրն մեր․ որ եւ գրեալ էր Նմա ոսկենկար Աստուածաշունչ մի միահամուռ ոսկենկար անկուածով եւ պատկերաւք, հին եւ Նոր կտակարանաւքն․ եւ տեսիլք մարգարէիցն․ եւ տնաւրինականքն Քրիստոսի, մագաղաթ գեղեցիկ յաւրինեալ, զոր տարեալ ետ յիշատակ ի սուրբ քաղաքն Երուսաղէմի։ Եւ այս Տէր Բարսեղ... վարդապետի ժամանակն սահմանեցաք գպրատուն Եւ շընորհաւք ամենազաւրին Աստուծոյ եւ աւժանդակութեամբ դիտապետին մերոյ գրեալ եղեւ Ս․ Աստուածաշունչ եւ այլ բազում գըրեանք... եղեւ գրչութիւն սորա ՚ի Համիթ... ի Թվ․ Հայոց Ռ․ Ջ․ Գ․ ի Թագաւորութեան տաճկաց Սուլթան Մուրատին, եւ ի հայրապետութեան Ս․ Էջմիածնայ Տէր Փիլիպպոս ճգնազգեաց եւ աստուածահաճոյ կաթողիկոսին ամենայն Հայոց. եւ ի Ս․ Երուսաղէմայ առաջնորդութեան Տէր Գրիգորի արի եւ քաջ հայրապետին, յաւուրս սորա բազումչինութիւն եւ ուղղութիւն եղեւ Ս․ Երուսաղէմայ, որ յառաջն աւեր եւ խանգարեալ էր եւ ի պարտուց ծանր բեռի (Ներքոյ) անկեալ, ընդ գրուանաւ էր ազգս Հայոց, այժմ ի

վերայ աշտանակի պայծառ ի մէջ ամենայն ազգաց. որ եւ ծառազատիկն Յունաց յայսմ ամի էր, եւ ես անարժանս անդ հանդիպեցայ եւ ականատես եղեալ տեսի զքաջութիւն եւ զյաղթութիւն զոր արար Յունաց ազգին, եւ նոքա գլխակորեալ մութն եւ խաւար Զատիկ արարին, եւ մերս պայծառ լուսափայլ ի սուրբ գերեզմանէն՝ մեծաւ ցընծութեամբ եւ ուրախութեամբ հանդիսացանք. եւ զքաջութիւն եւ զարիութիւն մեծ հայրապետին Գրիգորի ո՞ կարէ պատմել կամ ընդ գրով արձանացուցանել. զոր Տէր Աստուած մեր Քրիստոս արի եւ քաջ ախոյեան ողջութեամբ եւ խաղաղութեամբ պահեսցէ ի պայծառութիւն սուրբ քաղաքին Երուսաղիմայ եւ ի պարծանս Հայաստանեայց։ Ամէն։ Եւ յայսմ ամի որ Սուրբ Աւետարանս աւարտեցաւ, աստ հանդիպեցաւ սրբազան Հայրապետն Գրիգոր վասն ողորմութիւն խընդրելոյ սուրբ Երուսաղէմայ։ Ցի՛եցէք..։։

Ես Նուաստս ի վարդապետաց եւ յետինս ի բանասիրաց Բարսեղ անուամբ եւ եթ վարդապետս ետու գրել Սուրբ Աւետարանս յիշատակ ինձ, եւ ուսուցանող վարդապետին իմոյ Տէր Սրապիոն Ուռհայեցւոյ. եւ մարմնաւոր ծնողացս եւ ամենայն արեան մերձաւորաց գրելոցս ի սմա, կողկողագին աղաչանաւք եւ արտասուաթոր պաղատանաւք հայցեմ հողս ի հողոյ, զպատահողսդ, եւ զգաղափարողսդ, եւ զընթերցողսդ, զի յիշման արժանի առնէք զմեղաւք զառածեալս եւ զողորմելիս սեւացեալս չար գործովք, յաղաւթս արժանաւորս եւ ի խնդիրս պատկանաւորս առաջի զենման անմահ գառին անարատի ի ժամ սոսկալի սուրբ պատարագին, միով Աստուած ողորմեաւ. եւ դուք

յիշեալ Լիճիք ողորմութեամբն Աստուծոյ յաւուրն դատաստանին ահեղի, ձերովքդ ամենեքումբք, ամէն»:

Ես Բարսեղ վարդապետս յաւուր մահուան իմոյ եդի զսուրբ Աւետարանս յիշատակ ի դուռն սուրբ Սարգսայ զաւրավարին... ընթերցողք տացեն զողորմիս...»:

1 Հաւաքածոյ. Մեկնութիւն՝ Գործոց Առաքելոց ի բանից Եփրեմի եւ Ոսկեբերանի, ի Մատթէոս վարդապետէ աշակերտէ Յոհ. Որոտնեցւոյ. Նոտր գրով. հարց եւ պատասխանի:

1 Աւետարան.

«Գրեալ ի քաղաքն Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի. ի հայրապետութեան տեառն Կիրակոսի ընդհանուր Հայոց կաթողիկոսի: Ի թագաւորութեան Ջհանշահի որդւոյ Ղարա Եուսուֆի. ի թվականի մերում Գ. եւ Ղ. Ջ. ամի. յորում ժամանակի յոյժ հարկապահանջութեամբ տառապի Ազգս Հայոց...»:

1 Աւետարան եւս.

«Գրեալ ի ձորս Խորնի, ընդ հովանեաւ Ս. Տիրամաւր եւ սուրբ Նշանացն. ի խըցկան միոջ, որ է հարաւակողմն Պերճ. անապատիս ի խնդրոյ սուրբ եւ ընտրեալ կրաւնաւոր քահանայի Պետրոսի, ձեռամբ պիտակ անուն քահանայի Կոստ. եւ ողորմելի գերւոյ Հեթմընցւոյ. թվ. Ջ. Կ.»:

1 Մաշտոց քահանայաթաղի.

«Գրեալ յամի Ջ. եւ Ա. թվականիս մերոյ, ի գեաւղս Մըզաւք...»:

1 Աւետարան եւս.

Մագաղաթ, նոր, ընտիր, անյիշատակարան եւ անթուական։ վերջին ստացողաց «Թվ. Ռ. Ճ. ԼԳ. եւ Ռ. Ճ. ԽԲ.»։

1 Աւետարան եւս.

Բազմապատկեր, մագաղաթ, անթուական։

1 Աւետարան եւս.

«Գրեալ ի Թվ. Հայոց Ջ. Խ. Ը. ի քաղաքն ի յԱԹախ. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի եւ Գէորգայ զաւրավարին, ի խնդրոյ պատուական տանուտիրոջն Պարոն Սատախին...»։

1 Աւետարան եւս.

«Գրեալ ի Հերապաւլիս ձեռամբ տէր Աւետիս քարտուղարի, եւ ծաղկեալ ի յԱմիթ ի ձեռն Թումայի, ընդ հովանեաւ սուրբ Սարգիսի եկեղեցւոյ, ի խցկան որ է ընդ անեակ սրբոյ տաճարին. ի Թվ. Հայոց Ռ. Ճ. եւ ԻԱ. հոկ. ժա...»։

1 Աւետարան եւս.

«Գրեալ ձեռամբ Ցոհաննու երիցու, Մշեցւոյ. ի Թվ. Ռ. Ճ. ԺԴ....»։

1 Աւետարան եւս.

Ցիշատակարանէն Թուղթ պակաս, եւ անթուական։ Ի վերջն Մարկոսի գրեալ յիշատակ վերջին ստացողի... «Գիտացէք, քահանայք եւ ժողովուրդ, զայս սուրբ Աւետարանս որ գերի բերին ի Դերջանայ, գնեցաք եւ ուղարկեցաք ի գեաւղն որ կոչի Դաստվան. յիշեցէք...»։— Ի միւս երեսն այլ

գրով. «Աստուած ողորմի Գալըյենց Մուրատին, որ արտ մի ետ Գոմոց սուրբ Աստուածածնին եւ Գէորգայ զաւրավարին ոխս. ....: Աստուած ողորմի Փաշա Ջանին Սարգսենց, զկալլի արտն տուին սուրբ Աստուածածնի...: Աստուած ողորմի Դարիպի Հոգւոյն եւ Ցակոբուն, արտ մի տուեր է թեղի ծառերով՝ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Գէորգայ զաւրավարին ոխս եւ յիշատակ...»:

1 Աւետարան եւս.

Մագաղաթ, պատկերազարդ, ընտիր. «Ստացեալ ի յիշատակ Ղափանցի Նազար ի գիւղէն Թխկուտոյ, նուիրեալ եկեղեցւոյն սուրբ Ցակոբայ Թխուտ գեղջ. թվ. Հայոց Ռ. Ճ. Ի...»:

1 Աւետարան եւս.

«Գրեալ ի թվ. Հայոց Ռ. եւ Իէ. ի գեաւղս որ կոչի Պոռ. ընդ հովանեաւ սուրբ Անանիա Առաքելոյն եւ սուրբ Գէորգայ զաւրավարին. ի հայրապետութեան տեառն տէր Առաքէլին էջմիածնի սուրբ աթոռոյն. ի թագաւորութեան Տաճկաց Սուլթան Մուրատ խանին. ի նեղ ժամանակիս, յորում վշտանամք ի մեղաց մերոց...»: — Այլ գրով յաւելեալ... «Ցամի Ռ. Մ. Դ. ծաղկեցաւ եւ սրբագրեալ կազմեցաւ Աւետարանս ձեռամբ Ցովանիսի ի յԱմիթ մայրաքաղաքի, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի, ի դիտապետութեան մերոյ նահանգիս տէր Սրապիոն վարդապետին, որ եւ շնորհիւ տեառն Գրիգոր կաթողիկոս սուրբ էջմիածնայ, ի դառն եւ ի նեղ ժամանակիս զի աւերեցին զերկիրս...»:

1 Աւետարան. մագաղաթ.

«... Շնորհիւ տեառն սկսայ եւ ողորմութեամբն նորին կատարեցի զգիրս Քրիստոսական մատենիս. Թվ. Հայոց Չ. Խ. Ա. ի գաւհս Կիլիկիոյ, ի գեաւղս որ կոչի այժմ Բաղնէկունք, մերձ յԱստուածապահ քաղաքն Ատանա. ի պարոնութեան եւ ի թագաժառանգ Հայոց Հեթմոյ, եւ ի հայրապետութեան Հայոց տեառն Ստեփաննոսի, քանզի չարժեալ ազգն Եգիպտոսի եւ եկեալ բազում զաւրաւք գերեալ զմեծ եւ հռչակաւոր դղեակն Հռոմկլանի, եւ զբազում աւուրս կացեալ ի վերայ նորա բաբանեաւք եւ այլ չար արուեստիւ առեալ զնա, եւ վարեալ ի գերութիւն զսուրբ հայրն Հայոց տէր Ստեփաննոս, եւ զսուրբ Գրիգորի Լուսաւորչի Աջն եւ զսուրբ Նշանն Վանկոյ, եւ զայլ բազում նշխարս սրբոց. եւ զայլս ի Քրիստոնէից զոմանս սպանեալ, զոմանս տարեալ ի գերութիւն, եւ արհաւիրս մեծամեծս գործեաց ի նմա, զոր ոչ ոք կարէ պատմել, զի ահիւ եւ դողալով է հանապազ ի լսելիս մեր չըչակ երկիւղի գալստեան նորա, եւ յոյժ ի նեղութիւնս եւ ի տառապանս է յայսմ ամի ազգս Հայոց. ի սով, ի սասանութիւնս, ի ծովու եւ ի ցամաքի։ Աղաչեսցուք զմարդասէրն Աստուած ոչ այնպէս գնալ ի վերայ Քրիստոնէից, եւ ներելով որպէս եւ տալոց է, զի յոյժ ի տարակուսի էին յամենայն տեղիս Քրիստոնեայք, մանաւանդ յաշխարհիս Կիլիկեցւոց»։ Ցիշեցէք... զնորոգէ քահանայն... Ջաւրվար միակեաց. զմայրն Մարեմթագ...»։ (Կար նաեւ յիշատակարան վերջին ստացողաց)։

1 Աւետարան. մագաղաթ.

«Գրեա՛լ ձեռ. Սիմոն փիլիսոփայի. ի թվ. Ջ. Ը. ի հայրապետութեան Կոստանդեայ, ի թագ. Հեթմոյ, յիշխանութեան իշխանաց իշխանիս մերոյ Ծոփրէ. եւ որդւոյն Կոստանդի, Սմբատի եւ Աւշնի... յիշեցէք զտիկինն Կեռան... եւ զհանգուցեալ տիկինն Ալիծ եւ զեղբայրն զՀեթումն... գրեցաւ յԱրքակաղնի վանս. ձեռամբ Ամասիացի Ստեփաննոսի: Բ. ամին»:

1 Աւետարան.

«... Գրեալ Ջ. Լ. Ը. ի Բաջբերունի յԱրճէշ, ի Սոսկոն գիւղ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի, ձեռամբ Յոհ. քահանայի...: յիշեցէք... զտանուտէրն Տողան, զորդին Սիրուն, Վարոս, դստերքն՝ Բաղդադ եւ Բէկխաթունն, կենակիցն Խաթուն մէլիքն. զուսուցիչն գրչիս տէր Յոհ. Մանգասարն, եւ Ջուլալ խաթունն, որ շատ մէրութիւն արար մեզ...»:

1 Աւետարան.

Անթուական. եւ յիշատակարան թերատ»:

ՍՈՒՐԲ ԿԻՐԱԿՈՍ ԵԿԵՂԵՑԻՆ

1 Աւետարան.

«Գրեա՛լ ի թվ. Հայոց Պ. Թ.... յԵրուսաղէմ, ընդ հով.... տաճարիս աթոռակալ Առաքելոցս Յակոբեանց, ի թագ. Հայոց Կոստանդին, եւ ի հայրապետութեան տեառըն Մեսրոպայ. յառաջնորդութեան Տէր Գրիգորայ եպիսկոպոսի Երուսաղէմի. ձեռամբ... գրչի Ստեփաննոս կրաւնաւորի.

կամակցութեամբ եւ աւգնականութեամբ եւ խրատ տալով վերծանողի սպասաւորի բանի սրբասնեալ Գրիգորի քահանայի միակակալ մեծ եւ հռչակաւոր սուրբ եկեղեցւոյս Ցակոբայ եւ ամենայն աստուածընկալ նշանացս եւ մանաւանդ կազմողի սորին»...: Ցիշեսջիք... զստացող սորին զԹագւորշահ դըպիր եւ... եւ զծնողս Ստեփաննոս արեւելցի աշակերտ Սէթ վարդապետի... համանըման մեծի եւ առաջին վարդապետաց. եւ խոշորութեան գրիս եւ սխալանացս անմեղադիր լերուք եւ զԹերին սիրով ուղղէք. քանզի յոյժ անհմուտ էի արուեստի գրչութեան, մանաւանդ ի չեչտ. ի ստոր, ի բոյթ, ի վանկ, եւ ի փաղառութիւն. եւ ի ժ. առոգանութեան...»:

1 Աւետարան.

«Գրեալ ի Թվ. Հայոց Ռ. Ղ. ձեռամբ երէցու Մանուէլի... ի քաղաքիս Կողոնիա, ի դուռն Ս. Աստուածածնին եւ սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, ի հայրապետութեան Տէր Փիլիպպոս կաթողիկոսին. ի յառաջնորդութեան տեղւոյս Տէր Կարապետ եպիսկոպոսին. եւ ի Թագաւորութեան տաճկաց Սուլթան Իպրահիմին»:

1 Աւետարան.

«Խաւճայ Միրաք ի ճանապարհորդութեան իւրում տեսանէ... զՍուրբ Աւետարանս ի ձեռն զինուորաց տաճկաց, եւ տուեալ զգինս առնու ի նոցանէ եւ բերեալ ի յԱմիթ ետ նորոգել, եւ նկարել զպատկեր աւետարանչացըն. ձեռամբ Ստեփաննոս գրչի. Ռ. Ծ. Դ. Թվին, եւ ետ նուէր Ս. Կիրակոս եկեղեցւոյն յիշատակ հոգւոյ իւրոյ եւ հաւրն Հընային

եւ մայրն Այւատ Մէլիքին. եւ կողակցոյն
Մարիամին, եւ զաւքանչ մայրն մղտեսի Եսա-
մուն, եւ որդւոյն Թումաճանին եւ Նուրիճա-
նին. եւ ամենայն մերձաւորացն... Զսա յի-
շատակ արար Ասատ Խանն. արծաթով պատ-
եաց Սիրական. զհրաման տեառն փրկական,
տեառն Յակոբայ կաթողիկոսութեան, եւ Ս.
Երուսաղէմի Պատրիարքութեան, Տէր Աստ-
ուածատուր վարդապետ սրբազան, եւ Ա-
ռաջնորդն Տիգրանական. Ոնոփրիոսն որ Կար-
կուտ կոչեցաւն, եղեալ Աւսմանցու ի թագա-
ւորութեան Սուլթան Մահմուտ որդի Իպ-
րահիմեան. Ռ. Ճ. ԺԱ. լրացան... Ես Նը-
ւաստ եմ մահտեսի Յովան. ցորենի քիլէն
ԺԲ. ղրուշ եղան. ապա մէկ լիտր պղինձ Գ.
ղրուշ չ'առան, վասն զի էր հրամանն աստ-
ուածական, պատուհաս եռ ժողովրդեան.
վասն այսորիկ աստ տանջեցան, փոքր եւ մե-
ծամեծք միաբան, ապա դարձան եւ զղջա-
ցան. զցորենի քիլէն Գ. ղրուշ տեսան»:

1 Գանձարան.

Անթուական եւ անյիշատակարան:

1 Աւետարան.

... «Սահակ սոսկ անուամբ քահանայ...
և Մեսրոբ որդեակն իմ շնորհիւ տեառն սկսաք
եւ... կատարեցաք զՍուրբ Աւետարանս
գրելով եւ ծաղկերանգ զարդարելով ի լաւ
եւ յընտիր աւրինակէ, ի մեծ Թվականին
Հայոց Ռ. Զ. Է. ի հայրապետութեան տեառն
Փիլիպպոս կաթողիկոսի... բարեմիտ եւ եր-
կիւղած քահանայն Ոսկան անուամբ ի կեր-
տէն Տիգրանայ. միացեալ այրիութեամբ, եւ
ըստ Պաւղոսեան բանի շարժեալ ի նախանձ
բարեգունից, եւ ցանկացեալ էր (ըստ). բանին

Եսայեայ թէ՝ Երանի՛ որ ունիցի զաւակ ի Սիոն. անժառանգ գոլով ի վերայ երկրի. հեծեծանաւք ի խնդիր եղեւ սմին յիշատակ բարի մնալ ի կեանս այս.... ուստի ըստ Դաւթեան ձայնի թէ՝ Զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր, լուաւ աղաչանաց սորա. եւ ետ զայս քաղցրատեսակ եւ արծաթապատ Ս. Աւետարանս, որ է ի մէջ սորին մրգաբեր պտղովք, այսինքն ոսկեակազմ գրովք, երփներփնեան գունովք եւ ծաղկալի իբրեւ զդըրախտն եդեմայ, որ ի հուպ եղելոց սորին անուշահոտ բուրմամբ զքիմսն պարարէ. զաչս եւ զմիտս լուսաւորէ, զգլորեալսն կանգնէ. զխղխայթեալսն բժշկէ. զհիւանդս առողջացուցանէ, զմեռեալս յարուցանէ, զյուսահատեալս յուսադրէ, զտրտմեալս մխիթարէ. զմեղուցեալս արդարացուցանէ, զդիւահարս բժշկէ, զխելագարսն ի խոհեմութիւն ածէ. եւ զչարն ի բարին փոխարկէ. և այլն ամենայն ... յիշեցէք... զմայրն Աղամաթ...»:

1 Աւետարան. մագաղաթ, փոքր.

... «Խաւձայ Սանոսի որդին Պետրոս Զէլէպին մեծաւ յուսով եւ փափագանաւք ետ ծրագրել զՍուրբ Աւետարանս ի հալալ ընչից եւ յարդար վաստակոց, յիշատակ իւր եւ հաւրն Սանոսին, մաւրն Նանային, հաւրեղբայրն Խաւձայ Պէտիկին եւ կողակցուն Ղուտրաթին, դստերն Շահնինարին. և քուերըն Նազխաթունին... ի թվ. Ռ. Ճ. եւ ժէ. յունիսի ամսոյ ԻԵ. ձեռամբ Դաւիթ ծրողի...»:

1 Աւետարան. մագաղաթ.

... «Աստուածասէր եւ պատուական քահանայս Աւետիս ստացաւ զսա յիւր քրտնածին աշխատութեանց, ի վայելումն կենաց եւ

յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնողացն եւ ի բարեխաւսութիւն առ Աստուած . . . գրեցաւ Ս. Աւետարանս ի Թուա. Ո. Ղ. Ա. ի մեծ եւ ի հռչակաւոր քաղաքս Հռոմ. ի դուռն գլխաւորաց սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի մեծ լուսաւորչաց, եւ Ս. Աստուածածնիս, ի տանս Հայոց հանգստարանի. ձեռամբ Թր. ամենասխալ եւ բազմաբիծ դատապարտի. ի հայրապետութեան Ստեփաննոսի Ղազարու վանեցւոյ, որոյ ողորմեսցի Տէր Աստուած . . . եւ համաշունչ եղբարց մերոց սուրբ քահանայից Յովհաննիսի եւ Վարդանայ եւ Խաչատրոյ եւ Յովհաննիսի, որ կամաւոր յաւժարութեամբ ընկալան զմեզ. ողորմեսցի Քրիստոս եւ հանգուսցէ զիւրեանց հոգին . . . եւ հայր Պետուկին Մշեցուն . . . եւ Գրիգորի կաղսեցւոյ ողորմեսցի Տէր Աստուած, եւ որ յայսմ տանս հանգուցեալքն սուրբ հարք եւ եղբարք . . . եւ որ ի սմա բընակեալք են պանդխտութեամբ վասն սիրոյ առաքելոցս եւ յուսոյ արքայութեան . . . յիշատակ սոցա աւրհնութեամբ եւ աղաւթք սոցա ի վերայ ամենայն աշխարհին եւ մեր՝ եղիցի հանապազ . . . յիշեցէք զստացող սորա զՍիմէոնն . . . եւ Թոր. անպիտան եւ մծուն գրիչ . . . »: —Այլ գրով. «Արդ ես Աւետիս երէցս ստացայ զՍուրբ Աւետարանս յիշատակ եւ ինձ եւ ծնողաց իմոց . . . եւ վախճանեալ զաւակին իմոյ Մխիթարին որ յաշխատ . . . սրով խողխողեցին. եւ եւս դեռաբուսիկ զաւակին իմոյ Ամիր Սարգսին, զոր Տէր Աստուած վայելել տացէ. ամէն . . . յիշեցէք զՄխիթարիչն ի Քրիստոս . . . »: (Կար եւ յիշատակարան մի վերջին ստացողի Եփրանոսի Տաւլաթաւորի՝ ի յիշատակ սուրբ կիրակոսի Ռ. Ժ. Է.):

1 Սաղմոս. մագաղաթ.

— Առաջին երեսն գրեալ։

«Յիշատակ է սաղմոսարանս Սրապիոն վարդապետին Ուրհայեցւոյն ի քաղաքն Համիթ ի դուռն սրբոյն Կիրակոսի. ի ժամ սուրբ սաղմոսին Աստուած ողորմի ասացէք. ի թվ. Ռ.Ծ.Ե...»։

1 Աւետարան, մագաղաթ, երկաթագիր։

«Գրեալ... յամի Ո. որդի քսաներորդի երկրորդի, ի հայրապետութեան աստուածապատիւ հոգեւոր տեառն Ներսիսի Հայոց դիտապետի. խորհուրդ իմն՝ որ յաստուածայինսն բերիւր, ազդեալ յոգի աստուածահաճոյ անձին Կոստանդեան քահանայի. սպասաւորի տեառն Ներսէսի կաթողիկոսի, որով զը փափագ սրտին եւ զըտենչումն ցանկութեան միշտ առաջի արկանէր գրչիս զի թերեւս հասցէ բաղձալեացն. զոր տեսեալ իմ Գր. զբարեյաւժար կամսն, յանձն առի յաւժարական կամաւք գրել զաւետաբեր եւ զկենսունակ տառս քրիստոսեան մատենի։ Եւ մինչեւ յաւարտ հասեալ սորին՝ փոխի յաստեացս սրբազան հայրապետն Ներսէս։ Յետ որոյ բազում յուզմունք խռովութեանց ներքոյ եւ արտաքոյ յարեան սակս ոչ հանդիպելոյ ի միջի բարեհռչակեալն անուն Տէր Գրիգոր եղբաւրորդի կաթողիկոսին, որում անդարձ կտակն հաստատեալ պահիւր յաւագ կաթողիկոսէն Հայոց Տէր Գրիգորիսէ, կացուցանել զսա փոխանորդ եղբաւր իմոյ տեառն Ներսիսի։ Որում յառաջագէտ լեալ այնմ կտակի հարց սրբոց եպիսկոպոսաց եւ վարդապետաց. Նաեւ զլաւութիւն բարուցն

եւ զսրբութիւն անձին տեսեալ՝ իբր ի հրամանէ Աստուծոյ ժողովեալք, գրեն փութանակի գալ հասանիլ առանց իրիք պատաղանաց. զի մի ասեն, աւերեսցի տունն՝ որ արեամբ ստացեալ է։ Եւ վասն որոյ երթեալն էր համոզել ի խաղաղութիւն ի մէջ երկուց ոստիկանացն, զայն ի բաց տայրին Թողուլ. եւ բերեալ հասուցին յանառիկ ամրոցն Հռոմկլայ անուն կոչեցեալ. որ իւրում Նախնեացն էր աթոռ սեպհական, եւ հաստատեցին զնա յաթոռ վերակացութեան բազում խրախութեամբ եւ մեծ հանդիսիւ։ Եւ արդ աղաչեմ զամենեսեան որ ընթեռնուք զսա, յիշեսջիք ի Քրիստոս յառաջ զսրբազան կաթողիկոսն Ներսէս. յորոյ ոտս ստացող սորին սնեալ եւ բազում երախտիք ի նմանէ ընկալեալ։ Եւս եւ զարժանին յիշատակի զդիտապետն Հայոց զՏէր Գրիգոր, յորոյ ժամանակն տառս աւարտեցաւ, եւ սատար սմին եղեալ բանիւք եւ արդեամբք։ Այլ եւ զստացող սորա զը Կոստանդին աստուածամերձ քահանայն զը ծընողս իմ եւ զազգատոհմս ըստ մարմնոյ։ Եւ որ զաւրինակն շնորհեաց զՆերսէս սուրբ եւ ընտրեալ քահանայ զորդի մեծազաւր Սեւաստոսի պատրօն Աւշնի, որ ամենեւին հանդիստ եղեւ գրչիս տկարութեան յիւր սեպհական անապատն Սկեւռայ անուն կոչեցեալ, որ է մերձ յանառ դղեակն Լամբրոնու։ Յիշեսջիք աղաչեմ եւ զայնոսիկ որք աւժանդակ եղեն գրչիս ի գրութեան սորա. մանաւանդ զարդիւնական վարդապետն զՍտեփաննոս, որ դրան սարկաւագն էր Ներսէսի հայրապետի, եւ զՅակոբ եկեղեցպանն։ Աղաչեմ եւ ես մեղապարտս ի գրչաց Գրիգոր յիշել ողորմութեամբ... եւ որք աշխատեալ են ի վերայ իմ աստուածահաճոյ անձինք Վար-

դան գրիչ եւ կոստանդին մականուն կ. Ո. Շ. ի. կ....»։ (Ցաւելեալ կար նաեւ). «Վերստին կազմեցաւ Սուրբ Աւետարանս յառաջնորդութեան Ամթայ տեառն Իսահակայ աստուածաբան վարդապետին. ի թվ. Ռ. Ճ. Խ. Բ. զոր տեսեալ Տաւլվաթաւորաց ոմանց ի գրատան Ս. Կիրակոս եկեղեցւոյն, հրամանաւ վարդապետին ետուն կոստղել նորքոյ եւ արտաքոյ արծաթապատ յաւրինմամբ յիշատակ»։

1 Ճառընտիր.

Մեծադիր, թերատ, եւ անյիշատակարան։

1 Աւետարան.

... «Աստուածասէր այրն Խճ. Ապտին ստացաւ զՍուրբ Աւետարանս եւ եդ յիշատակ յԱմիթ... ի դուռն Ս. Կիրակոսի եւ մաւրն նորա Ցուղխտայի, որ միշտ եւ հանապազ ընթերցցի յուներն կենդանեաց եւ յիշատակ ննջեցելոց։ Արդ եղեւ գրաւ գրչութեան սորա... յԱմիթ, ի դուռն Ս. Կիրակոսայ, ի հայրապետութեան Ս. Էջմիածնի Տէր Փիլիպպոսի կաթողիկոսի. յառաջնորդութեան Համթայ Տէր Ցովհաննէս Արհի եպիսկոպոսին եւ աստուածաբան վարդապետին. ի թվ. Հայոց Ռ. Ղ. Թ. ձեռամբ... Ցաւնան գրչիս...»։

1 Աւետարան.

«Գրեալ ի թվ. Հայոց Զ. Լ. յաստուածունակ եւ ի հռչակաւոր վանքս Խոյալու, ի դուռս Ս. Գէորգայ, յԱռաջնորդութեան Գրիգոր րաբունապետի, որ զտիւ եւ զգիշեր ի խորս աստուածային տառից դեգերելով վասն մեր. առնելով եւ ուսուցանելով զամենեսեան...

(ձեռամբ) անարուեստ գրչի Արիստակէս պի-տականուն աբեղայի . . . » ։

Դ Աւետարան .

« Գտի ընտիր եւ ստոյգ աւրինակ , զոր գըր-եալ էր Թորոս փիլիսոփայն ի Դրազարկն . եւ յուղարկեալ հռչակաւոր ուխտին սուրբ Առաքելոցն Տարոնոյ , որ կոչի Ղազարու վանք . եւ իմ առեալ գրեցի զսա անարժան ձեռաւք իմովք ի մեծ Թուխս ի յեղանական չրջագայութեան արեգական ստորիջիւք երկ-նաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հայե-լով . ըստ արարչութեանցն չափեալ . յԱդա-մայ մինչեւ ցայսր , ամք Ց . Պ . Կ . Բ . . . » ։ « Իսկ Հայոց Թվականիս Ջ . Գ . ի քաղաքիս Բաղէշ . ընդ հովանեաւ Ս . Սարգսի եւ Ս . Գէորգայ եւ Ս . Ստեփաննոսի , ի հայրապե-տութեան տեառն Գրիգորի , եւ ի հայրապե-տութեան Աղթամարայ տեառն Զաքարիայ , եւ ի կայսերութեան ազգին Նետողաց Ջհան Շահ Ամիրին ։ . . յիշեսջիք զստացող սորա . . . եւ զիս գրիչս զՍտեփաննոս քահանայ . . . » ։

—Սոյն Աւետարան ունէր վերջին ստացողաց յիշատակարանք . և « Ստացեալ ի ձեռաց անաւ-րինաց . Թվ . Ռ . Ծ . Բ . . . » ։ Կար նաեւ հետեւ-եալ զուարճալիքը . « Տէր Յովանէս . լաւ կաւտ մի մեղր ուղարկէ որ ուտեմ , որ քաղցրա-նամ , քո արքայութիւնն քաղցրանայ , ամէն » ։

Դ Աւետարան .

« Գրեալ ի Թվ . Հայոց Ջ . Ծ . Թ . ի գաւա-ռին Դարանաղեաց , ի սուրբ եւ հռչակաւոր ուխտս Ս . Գրիգոր , մերձ առ դամբարան Ս . Լուսաւորչին , ի լերին Սեպուհ եւ Մանէայր կոչեցեալ . . . ձեռամբ սուտանուն Գրիգորի . . ստացաւ զսա . . . եղբայրն մեր Տաւնական

յիշատակ իւր եւ ծնողացն իւրոց . . . ։» — Այլ գրով. — «Յիշատակ է Աւետարանս Խոսրովենց Զորենւոյն, որ առաւ յիւր հալալ վաստակոց եւ եդ յիշատակ ի դուռն Կարմիր խաչին»։ — Դրպնէ գեղին մօտ կը կարծուի Կարմիր խաչ։

1 Աւետարան.

. . . «Ես . . . Դաւիթ եպիսկոպոս յերկրէն Գեղամայ. ի խառնակ . . . ժամանակիս. որ Ասմանլու ազգն ի յարեւելից աշխարհին . . . շատ բերդաքաղաք էառ, եւ զԹավրէզ քաղաքն էառ. զի այս ամ Ժ. ամ եղեւ որ արեւելից աշխարհն ի վտանգի կայսով, եւ մահտարաժամ. եւ ես սուտանուն Դաւիթս գրեցի զՍուրբ Աւետարանս ի յերկիրս Խնուս, ի գիւղս որ կոչի Քէշիշ Աւրան. ընդ հովանեաւ Ս. Սարգսիս . . . ի թվ. Ռ. Լ. Ջ. ի կաթողիկոսութեան տեառն Գրիգորի յաթոռն Ս. Էջմիածնի. վաղուց հետէ գիր չէի գրել. եւ էի տեղեացս ղարիպ, եւ հոգս շատ ունէի»։

1 Աւետարան. Ծէկ անուամբ հըռչակեալ, հրաշագործ.

« . . . Յիշեցէք ի Քրիստոս . . . զգծողս կըրաւնաւոր Թումայ . . . եւ զերախտաւոր վարպետն իմ եւ զհոգեւոր հայրն զՏէր Ներսէս Արհի եպիսկոպոսն. եւ զհարազատ եղբայրն իւր զՏէր Ստեփաննոս կաթողիկոսն, որ բազում աշխատանաւք ուսուցին ինձ զարուեստ գրչութեանս. եւ բազում երախտիք ունին ի վերայ իմ. Աստուած իւրեանց փոխարէն հատուցանէ զերկնից արքայութիւնն եւ զանվախճան թագաւորութիւնն. ամէն։ Արդ գրեցաւ Սուրբ Աւետարանս ի թուա. Հայոց

Ջ․ Խ․ Դ․ ի սուրբ եւ աստուածաբնակ եւ աստուածապահ աթոռս Աղթամար կոչեցեալ, ընդ հովանեաւ Ս․ փրկչի տաճարիս եւ Ս․ Գէորգ զաւրավարին։ Այլ եւ յանցեալ ամին փոխեցաւ ի Քրիստոս կաթողիկոսն մեր Տէր Զաքարիայն, որ էր յարմատոյ եւ ի ցեղէն մեծ թագաւորին Գագկայ․ եւ եթող մեզ եւ ամենայն քրիստոնէից սուգ անմխիթար․ որ եւ Տէր Աստուած մեր դասեսցէ ի թագաւորական գահոյն իւր․ ուր հաճոյքն Աստուծոյ են․ ամէն․․․»։

## ՅԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻՆ Ի Ս․ ԿԻՐԱԿՈՍ ԳՐԱՏՈՒՆ ՅԱԿՈԲ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

1 Տետրակ․

«Վարդապետութիւն եկեղեցւոյն Գաղղիայի, այսինքն Ֆրանգցի, թարգմանեալ ի Մելքիսեդէ ումեմնէ բանասիրէ, եւ օրինակեալ յԵփրեմ աբեղայէ ի Ս․ Կարապետի վանս Կապադովկացւոց․ Ռ․ Մ․ Ժ․ Զ․»։

1 Ոսկեփորիկ գիրք․ Գրիգորի Տաթեւացւոյ զանազան բանք եւ հարց պատասխանիք վասն տնօրինութեան տեառն․ Վկայութիւնք ի սուրբ գրոց․ Վիճաբանութիւնք ընդդէմ երկաբնակաց։

«Գրեալ ի Պօլիս, ձեռամբ Ագուլեցի Շահնազար սարկաւագի։ — Ի միում էջի գրեալ․ «Ով եղբարք, թուա․ Ռ․ Ճ․ ԺԵ․ էր, ապրիլ ամսոյն ԻԶ․ որ Հրէից Մեսիան էկաւ, որ եւ Թաջալ, եւ Նեռն եւ Գալտի անուանեցին, յետոյ բանդ դրին քաղաքն Ստամբօլու, եւ յետոյ հանին կապանօք ուղարկեցին Բօղազ հիսարն, կապած եկաց Ե․ ամիս․ ի Հրէից բազում ոսկի եւ արծաթ առաւ․

թէ յետ Ը. ամսոյ լինելոյ եմ թագաւոր, ի բազմաց լուայ թէ՝ ՁԹ. ոսկի է առեալ, յետոյ էկաւ Ատրրնայ առաջի թագաւորին տաճկացաւ. անուն եդին Ազիզ՝ Մահմատ բանդէ»: Սոյն գրքին մէջ չարունակելի գրեալ էր. «Ներսիսի եպիսկոպոսի Կիլիկեցւոյ Տարսոնի, ի խորհուրդ աստուածութեան. վասն ուղղափառ հաւատոյ եկեղեցւոյ... եւ յարտաքուստ մտեալ ի սա նորաձեւութեանց...:»:

1 Պատմութիւն. Դարձի Կոստանդիանոսի ի քրիստոնէութիւն: Պատմութիւն սուրբ խաչին որ Հացունեան կոչի. եւ որպէս դարձաւ ի Պարսից աշխարհէն խաչն աստուածընկալ, եւ մասն ընկալեալ տիկնոջն Սիւնեաց: Պատմ. Սահակայ որ գնաց ընդդէմ տաճկաց. Թուղթ Նորին: Կոստանդին կաթողիկոսի թուղթ շրջաբերական եւ կանոնք եկեղեցական: Պատմ. Կիրակոս վարդապետի Գետակեցւոյ: Թուղթ Պիղատոսի առ Տիբերիոս կայսրն: Գիրք ի վերայ բնութեան հանրական եւ մասնական՝ յումեմնէ Յէշու անուն: Դանիէլի մարգարէութիւնք: Պատմ. Յովսէփայ եւ Ասանեթայ փիլասանորէն»:

1 Մեկնութիւն. Մատթէոսի Աւետարանի, ցանկօրէն. հաւաքեալ եւ արարեալ Գրիգորի Տաթեւացւոյ:

1 Մեկնութիւն. Մատթէոսի Աւետարանի, ցանկօրէն. հաւաքեալ եւ արարեալ Գրիգորի Տաթեւացւոյ:

1 Մեկնութիւն. Յայտնութեան Յօհաննու: Եւ մեկնութիւն մարգարէութեանց Յովնանու:

1 Գիրք. Յաղագս մարդկային հոգւոյն. Թարգմ. ի Ստեփաննոս վարդապետէ Ուլովացւոյ ի Լատին բարբառոյ. Ռ. Ճ. ԺԷ. ի հայրապետութեան տեառն Յակոբայ, ընդ հով. Ս. Էջմիածնի: Լուծմունք Պորփիւրի: Լուծմունք գրոցն Արիստոտէլի տասանց ստորոգութեանց: Ծաղկաքաղ ի բանից Դաւթի անյաղթի, ի Սիմէոն հայրապետէ Երեւանցւոյ»:

## ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏՑԻ ԱՎՏԱԼԵԱՆ Պ. ՄԿՐՏՉԻ ՍԵՊՀԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐՔ

1 Շարական.

«Փառք քեզ. հօն արեգսագոն կիսագնդի եւ գեմետրի, արարիչ յամենայն արարածոց յիմանալեաց եւ ի զգալեաց, ի մարմնաւորաց եւ յանմարմնոց, ի հոգեղինաց, իմանալեաց; զուարթնոց. եւ յամենայն գոյից. այժմ, եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից ամէն:

«Արդ եղեւ (աւարտ) սորա ի թվ. Հայոց Ջ. Ջ. Դ. ի թագաւորութեան Հայոց չորրորդ Լեւոնի, զոր պահեսցէ Տէր Աստուած պարագ ամաւք, ընդ երկայն աւուրս, ի հայրապետութեան տեառն Յակոբայ, ի մեծ եւ ի հռչակաւոր անապատս. որ կոչի Թիւրքթի. երգ աւրհնութեան, եւ ձայն սաղմոսաց եւ լուցումն լապտերաց, եւ բուրումն անուշահոտ խնկոց մի պակասեսցի ի սմանէ մինչեւ ի կատարած աշխարհի: Ի խնդրոյ պատուական եւ երջանիկ առաջնորդի սուրբ ուխտիս Տէր Գրիգորոյ, զոր Տէր Աստուած պահեսցէ ըստ կամաց իւրոց. ամէն:

«Արդ աղաչեմ զամենեսեան որ հանդի-

պիք այսմ աստուածային մատենիս, յիշեսջիք յաղօթս ձեր զստացող գրոյս զերիցս երանեալ եւ զծաղկեալ ալեաւք զհայրապետն զՏէր Գրիգոր ծնողիւք եւ բարեկամաւք հանդերձ, ամէն ։ Նաեւ զիս, զմեղաւք մեռեալս եւ աշխարհի կենդանիս զտառապեալ ոգիս զՄանուէլս գրող սորա, եւ զծնողն իմ, եւ զսղալս եւ զխոշորութիւն սորա ուղղեցէք եղբայրաբար, զի ժամանակս ձմեռնային էր եւ հիւսիսայինն սաստիկ, եւ տեղիքս լեռնային. եւ ես անարհեստ էի քերականութեան ։ Դարձեալ կրկնեմ ծունր եւ երկիրպագանեմ սուրբ գարշապարաց ձերոց. զի արժանի արասջիք զմեզ միոյ տէր ողորմային, զի մեր խնդիրն այն է.... ։

« Գրեցաւ Շարակնոցս այս ձեռամբ Սահակ եպիսկոպոսի, եւ այլ կրաւնաւորաց վանուցս, եւ Մարգարայ փիլիսոփային » ։ — Այլ գրով ... « Նորոգեցաւ ... ձեռամբ ... հողոյ հաւասար Յովաննէսի ի խնդրոյ պատուական եւ քաջ հովուին Գալուստ եպիսկոպոսին, վերատեսուչ եւ առաջնորդ մայրաքաղաքին Մէրտինայ, եւ ի սպասաւոր սուրբ ուխտին Յոհաննու Մկրտչին, զոր հայցեմք ի Քրիստոսէ ... շնորհեսցէ մեզ ընդ երկայն աւուրս ուղիղ խրատմամբ եւ վարդապետութեամբ. ամէն ։ Արդ խնդրեմք ի սիրող աստուածային գրոց եւ ժամատեղեաց ... յիշեցէք ի վերջին աղաւթից ձերոց զվերոյգրեալ զստացող սորա, եւ զնորոգողս ... եղեւ նորոգումն սորա ի Թվ. Ռ. Կ. Ջ. ամին. Յինանց չորրորդ կիրակամտին, եւ Երեւման խաչին » ։

1. Ճառընտիր.

« Աւրհնութիւն ... Աստուծոյ Հաւր. Աստուծոյ Որդւոյն. Աստուծոյ Հոգւոյն. եզա-

կի, համազգոյ, եռանձնեայ եւ միասնական
սուրբ երրորդութեան... որոյ շնորհաւք ա-
ւարտեցաւ ոսկեսափոր Տաւնականս ի մայրա-
քաղաքս Համիթ, Տիգրանակերտ, ընդ հով·
տաճարիս Կիրակոսի եւ մաւր Նորա Յուղի-
տայի։ Ի յառաջնորդութեան Տէր Բարսեղ
քաջ րաբունապետի· ձեռամբ... Գրիգոր
դրչի, ի խնդրոյ պատուական... Տէր Սարգիս
քահանայի... յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծը-
նողաց իւրոց Խաչատուրին եւ Մէլիքզարին·
եւ եղբաւրն Գրիգորին եւ հարսին Մարիա-
մին· եւ քուերցն Ազատին եւ Գուլփաշին·
եւ մաւր հաւրն Տէր Գրիգոր Նահատակին, որ
հրով այրեցին յԱմիթ քաղաքի վասն անուանն
Քրիստոսի· եւ հաւոյն Առաքելին եւ հանւոյն
Թավրէզին· եւ... Գոռունին... եւ մզտե-
սի Մամ խաթունին....։ Արդ գրեցաւ սա
յամի Ռ· Հ· Թ· Թվ· մերում տումարի, ի
հայրապետութեան տեառն Մովսէսի ընդհա-
նուր Հայոց՝ եւ սրբասնեալ ճգնող կաթողի-
կոսի... յիշեցէք ի միտս բարիս եւ ի հասակս
պատկանաւորս զՏէր Սարգիսն եւ... զմահ-
տեսի Միքայէլն· (որ) ստացան զանաւրկ մե-
ծութիւնս· եւ զանկողոպտելի փարթամու-
թիւնն, զայգիս վայելուչ, եւ զդրախտս
աստուածատունկ, զորթս ծաղկեալ, եւ զծա-
ռըս պտղալլի, զանուշահոտ ծաղկոցս եւ
զվարդափթիթ բուրաստանս· զսեղանս ամե-
նալի, եւ զգինիս բարեհամ, զուրախութիւ-
նըս սրտից, եւ զմխիթարութիւնս վշտաց,
զխնդութիւնս հոգւոց, եւ զփոփիչս տըրտ-
մութեանց, զփարատիչս ցաւոց, եւ զառող-
ջութիւնս մարմնոց· զգիրս ասեմ զաստուա-
ծայինս, որ լցեալ է ամենայն բարութեամբ,
պատմութեամբ եւ քարոզութեամբ· մեկնու-
թեամբ եւ սուրբ խրատուք, եւ կանոնական

բանիւք սուրբ վարդապետաց, ի պայծառու-
թիւն սուրբ եկեղեցւոյ եւ ի պարծանս ուղ-
ղափառութեան հաւատոյս մերոյ:... (Յիշե-
ցէք) եւ զհոգեւոր ծնողն իմ զուսուցիչ ար-
հեստիս զՏէր Մինաս բանիբուն քահանայն,
եւ զծնողն իւր զՏէր Ստեփաննոս քահանայն,
զոր Տէր Աստուած առողջ կենաւք պահես-
ցէ եւ յետ աստեացս եղանելոյ անթառամ
պսակին արժանիս արասցէ... Ամէն:

— Այլ գրով. — «Ես անարժան թարգի
Ովանէսի որդի Ուրհացի տիրացու Էմիրզաս,
թվ. Հայոց Ռ. Մ. Կ. Բ. ձեռնադրեցայ կի-
սասարկաւագ՝ Ս. Կիրակոս եկեղեցին. միւս
կիրակին՝ աւագ սարկաւագ՝ Ս. Սարգիս ե-
կեղեցին. նոյն ամին քահանայ՝ անուանէ փո-
խեցին Տէր Յոհաննէս դրեցին. ձեռամբ Պաղ-
տատցի Օհաննէս Պատրիարքի աշակերտ արք
եպիսկոպոս Կարապետ վարդապետին, Տիգ-
րանակերտու առաջնորդ. եւ եղէ լուսարար
Ս. Սարգիս եկեղեցին, մարտի մէկին»....:
— Կար եւ մի յիշատակարան. «Նորոգ կազ-
մութեան մատենին. Ռ. Ճ. Ջ. Թ. թվ. Հա-
յոց, յառաջնորդութեան Տէր Պետրոս քա-
հանայի ձեռամբ Ալեփուղարցի Տէր Թումայի
որդի Ստեփաննոսի». որոյ ստացողն կը յիշ-
ուի «Դարաղ Մ. Նիկողոսն...»: Կար եւ մի
տոնացոյց՝ Սահակ վարդապետի մահուան.
որոյ վերջն է «Անպիտան Մարգար Թոխմախ-
եան. ծնունդ Տիգրանեան, աբեղայ Հայկա-
կան»:

## ՍԻՐԱՀԱՅԵԱՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ ՁՆՔՈՒՇԱՅ

1. Գանձարան. — «Գրեալ ի վանս Ս.
Գրիգորի Մելիտինոյ Հայոց. ի թվ. Հայ. Պ.
Ջ. Է. ... յիշեցէք զիս զԳաւիթ աբեղայս,

եւ զհայրն իմ զԽաչիկ քահանայն… զկոստանդին աւագերէցն եւ զաստուածատուր զաւակսն իւր զԹորոս քահանայն եւ զՍտեփաննոս հայրապետն, որ այժմ խնամատար եւ վերակացու են սուրբ ուխտիս…»։

2. Տաթեւացւոյ Գրիգորի քարոզից՝ երկրորդ գիրք։ Անյիշատակ եւ անթուական։

3. Խրատք եւ բանք օգտակարք։ Սկիզբն եւ վերջին թուղթ թափած։

4. Աւետարան. — Գրեալ «ձեռամբ կաստար գրչի, ի լաւ եւ յընտիր աւրինակէ, ի գիւղաքաղաքն Շէնքուշ, ընդ հով. Ս. Կարապետին եւ Ս. Աստուածածնին… յիշատակ Միհրէ տիկնոջ…»։

5. Տերակ. քարոզք։ Թերատ։

6. Իրր տեսութիւն Աստուածաշնչի՝ քարոզի ոճով։ Սկիզբն եւ վերջն թերի։

7. Մաշտոց մկրտութեան։ Անյիշատակ եւ անթուական։

8. Քարոզք։ Թերատ։

9. Շարակնոց. փոքր. ընտիր. մագաղաթ։ Սկիզբն այլ գրով գրեալ. «Յիշատակ է Շարակնոցս Լիմ Անապատին, ի դուռն Ս. Գէորգայ զաւրավարին, յիշատակ Ամասիացի Սարգսի որդի Ովանէսին. Թվին Հայոց Ռ. Ճ. Հ. Թ. ին…»։

10. Սաղմոս. հին։

11. Բացատրութիւն աղաւթից եւ խնդրոց եկեղեցւոյ՝ եւ պատարագի. ի Ներսիսէ Լամբրոնացւոյ։ Եւ՝ Դաւանութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ՝ Ներսիսի Շնորհալւոյ։ Եւ՝ Մեկնութիւն ժամագրքի՝ Խոսրովու Անձեւացւոյ։

12. Ժամագիրք տանի. ընտիր։ Անյիշատակ եւ անթուական։

13. Խորհրդատետր. —Գրեալ «յԵրուսա-

ղէմ. ի Ս. Յարութեան վերնատունն. թվ. Ռ. Ճ. Ի. Զ. ի վայելումն Ամասիացի.. Սահակ Պարոն-Տէրին. ձեռամբ Թումայ լերկ եւ լրիկ... աբեղայի... յիշեցէք Վարդ... Նարբէկի... Մանանայ... Լուսխաթուն... Շիրին... Հերիքէ...»։

14. Աւետարան. — «Յիշատակ ի գիւղն Վերին Ագիշ. ի դուռն Ս. Մարութին... յիշեցէք զՍողոմմէ բարի կինն... եւ զայժմու վայելողն... զառաջնորդն մեր զՏէր Մարկոս վարդապետն եւ զարհի եպիսկոպոսն զՏէր Յովաննէս..»։

15. Գանձարան։ Անթուական եւ անյիշատակ։

16. Ժամագիրք. փոքր. ծոցի։

17. Բիւզանդ փաստոս պատմագիր. փոքր գիրքով, մաքուր գրով։ Թերի։

18. Գանձարան. խազերով. մեծադիր։ Անյիշատակ եւ անթուական։

19. Գիրք սահմանաց. եւ՝ Բառարան. — Գրեալ «թվ. Հայոց Ռ. Խ. Գ. ... յիշեցէք զուսուցիչ զՏէր Պետրոս վարդապետն. որ ի վերջին դառն ժամանակիս իբր զնոր արուսեակ առաւաւտի երեւեալ փայլմամբ յազգիս Հայոց, որ զաւուր ասացեալ դառն աւրինակէաք ամէն աշակերտ իւրեան, զի աւրինակն մէկ էր, եւ աշակերտացն կարդալու չէր ժամաներ. զոր մեք Զ. աշակերտք. եւ այլ աւելի, աւրինակէաք զսա ի վանքն Կարկառոյ ի դառն ժամանակիս. որ մէկ մարդոյն Զ. ֆլորի խարած առնէին...»։

20. Յայսմաւուրք. Որոյ վերջն գրուած էր. «Յիշատակ հակառակութեան վասն լուսոյն Զատկին, որ եղեւ ի թվ. Հայոց Թ. Ճ. եւ Զ. Թ. որք ընդդիմացան Հայոց ազգիս՝ ազգըն Հոռոմոց եւ Վրաց, Ղիփտաց եւ Հապա-

չից, եւ փոխեցին Զատիկս իւրեանց կաշառաւք... եւ զսուրբ Պասէքն թիւրեցին, դընելով ի տաւնս Ողոգոմեան Ծաղկազարդին։ Ոմանք ի Հայոց ասեն այս վզացեալ Փլափիոս չՊատրիարքին թէ՝ զմեր եպիսկոպոսք այլ մուծէք ընդ ձեզ որ իմանամք զճշմարտութիւն բանին, մինչ զի Ծ. ոսկի այլ խոստացան. եւ ոչ թողին։ Իսկ նոքա զաստուածային ցանկն պատառեցին։ Ըզ Ծ. ոսկին Ռ. արարին, եւ նոքա ոչ հաւանեցան։ Դեռ աւրն չէր հասեալ ի յետին, մտաւ երկրորդ Մարկիանոսն եւ պիղծ ժողովն ի սուրբ պարտէզին, տարաւ ընդ իւր չախմախ եւ քիպրիթ պահեալ ի ղութին, մին պահ եւ ըստ երկուս անցին, մեծաձայն բարբառով աղաղակեցին թէ՝ Լոյսն ելաւ Հոռոմայ ազգին։ Բայց չէր ճշմարիտ բանք նոցին. այլ ի նոյն ժամուն Եէնիչարիք եւ այլազգիք որ ի դուռն էին, զամէն զլոյսն նոցա խաւար անուանեցին. եւ զնոսա հայհոյեցին եւ անարգեցին։ Եւ յորժամ մերձեցաւ տաւնն սուրբ Պասէքին, ի յերեկոյին շաբաթին, եկաւ առ մեզ Նղաշ Էմինն, Ղատին եւ Եազիջին, եւ շատ Եէնիչարիք ի հետ նոցին. ամէնքս միահամուռ մըտաք առաջի լուսաբուխ սուրբ գերեզմանին, աղաղակելով, աղաչելով, տարածմամբ ձեռին առաջի Փրկչին, ի յերկու կան գալ (թափօր) բոլոր սուրբ գերեզմանին, անտես չէ արար զաղաչեալ ազգ Լուսաւորչին. լոյսն թռաւ ի կանթեղին։ Զայնեաց Էմինն եւ Եազիջին մեր եպիսկոպոսին, թէ եկ եւ բեր զլոյսն յայտնին, որ ծագեցաւ Հայոց ազգին. Քրիստոսի աթեամբ գնեալ ժողովին։ Եւ մեք տեսաք զմեր մխիթարելին. եւ միմեանց զսուրբ աւետիսն մատուցանէին, ի մէջ պարտէզին։ Նոյն ինքն Քրիստոս փրկէ եւ

ազատէ, եւ իւր անձառ լուսոյն արժան առնէ»։

— Ի յիշատակարանէ նոյն Յայսմաւուրքին... «Գրեցաւ գիրքս ձեռամբ... Եղիայի... աբեղայի, ի քաղաքս Զէրմուկ, ի յաստուածապահ գիւղն ի Հապըռման, ի դուռն Ս. Սարգսի զաւրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսին, եւ Ս. Նիկողայոսի հայրապետին. ի Թվ. Հայոց Ջ. Զ. Թ. յամիրայութեան Շահ Ալի բէկին. եւ ի կաթողիկոսութեան Տէր Գրիգորի եղեւ աւարտումն սուրբ գրոյս եւ աստուածային բուրաստանիս...»։

— Ի կողն նոյն Յայսմաւուրքին գրեալ. «Ես Շէնքոչացի մեղապարտ եւ անարժան Յովանէս էրէցս եկի ի Հապրման վասն Ս. Աստուածածնայ շարակնուն համար, Սեւերէկցիք հարսնառում են էկած. գեղացիքն ամէն խաղալ են գնացած. Գ. աւր կեցայ, մէկ մի չէկաւ մաւտս, փետր. Ե. աւրն շաբաթ։ Սահակայ հայրապետի տաանին. Ռ. Ճ. Ծ. Է. Թուին»։

— «Ի Թուակ. Հայոց Ռ. Ճ. Ի. Թ. Յուլիս ամսոյ Ը. դարձեալ վերստին նորոգեցաւ սուրբ Յայսմաւուրքս, որ ըստ աւուրց աւուրց ունի յինքեան բովանդակ զպատմութիւն սրբոց վկայից, որք մարմնով եւ արեամբ զինեցան ընդդէմ մահու։ Կազմեալ ձեռամբ Մինաս վարդապետի, արդեամբ եւ տրովք Հապռմանցի Գասպարի ծերունւոյ քրիստոնէի, յիշատակ իւր, եւ....։ Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զՄարկոս վարդապետն իմ, որ ի Թվ. Ռ. Ճ. Ի. Ը. հոկ. ամսոյն վախճանեցաւ....։ Այլ եւ՝ Աստուած ողորմի ասացէք առաջին ստացողի սուրբ գրոյս Խաւճայ Խալիֆային, որ ի հալալ ընչից

իւրոց ստացեալ զսուրբ գիրքս եւ եդեալ էր յիշատակ ի գիւղն Հայրամն . . . » Ես Աւիտուացի Եղիազար . . . սուտ անուն աբեղայ եկի Հայրամն վասն Ս. Աստուածածնայ պըտղոյն համար. Ե. տուր կեցայ, երեսս չի հայեցան, մարդ չեկաւ ի մաւտս. Ռ. Ճ. Մ. Է »։

— Ի կողն նոյն Յայսմաւուրքի գրեալ անվարժ գրչով.

« Ջաւրութիւն գրոյս յայտ առնէ ընթերցաւղիր հարցդ եւ եղբարցդ մերոց հաւատացելոցդ ի Քրիստոս, վասն Ս. Աստուածածնի վանիցս, որ է հանդէպ գիւղաքաղաքին Շէնքչայ, էկող եւ գնացող առաջնորդաց եւ աստուածաբան վարդապետաց. Թէպէտ քաղ սերմանողքն հոգեւոր ննջեցին, բայց սերմանիքն առ մեզ են, եւ պարտիմք միշտ յիշատակ նոցին անջնջելի պահել, զորս եւ խնդրեմք ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, ընդ սրբոց Առաքելոցն դասեսցէ։ Ամէն։

« Արդ ի Թվ. ամի տեառն 1561. եւ ի Հայոց Թվին Ռ. Ժ . . . ։ Յայսմ դառն եւ դըժուար ժամանակի, որ էր Թվական Ռ. Ժ. ին. Նախ եւ յառաջ Պաւղոս վարդապետ այր հոգեշնորհ, որ էր յերկրէն Հասանանայ, որ է նահանգէն Ջերմուկայ, եւ այժմ ասի Հասանանայ գալայ, ուր էր վանք երկրին մեր, զոր քակեալ աւերէին ազգն քրդաց. եւ այս լուսահոգի Պաւղոս վարդապետն փախստեայ դիմելով ի մատուռս այս, որ է յանուն Ս. Աստուածածնի, զոր ի վաղուց ժամանակաց կառուցեալ էր նախնեաց սրբոց. եկեալ աստ երջանիկ վարդապետն Պաւղոս ուխտ եւ աթոռ կարգեալ եւ հաստատեալ ի նոյն ժամանակի, ոչ գոյ եղեալ պարիսպ եւ շինութիւն, բայց միայն խուց եւ տնտեսութիւն, այնպէս կառավարելով մինչ ի Թվ. Ռ. Խ.

Բ. ին. լինի զրաւ կենաց նորին: Եւ յետ նորին յաջորդէ զաթոռն Մարտիրոս վարդապետն Շէնքուշցի, որ է այր փիլիսոփայ եւ քաջ քարտուղար. որոյ գոն ծրեալ մատանց նորին յոլով գրեանք ի սուրբ վանքս եւ յեկեղեցին որ ի Շէնքուշ. որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի... Եւ ի մտանելն Ջ. Ա. թուին լինի վախճան Մարտիրոս վարդապետին, եւ նստի յաթոռն Յովանէս վարդապետն Շէնքուշցի Ռ. Ջ. Ա. ամին. որ է ձեռնասուն աշակերտ Մարտիրոս վարդապետին. եւ խափայ ուսումնակից Եղիազար կաթողիկոսին Ս. Էջմիածնի, որ եւ աւգնականութեամբ Աստուծոյ. եւ ձեռնտուութեամբ սրբազան կաթողիկոսին եւ յառաջնորդութեան Յովաննէս վարդապետին չինի նորինորոյ պարիսպ սրբոյ վանքիս, զոր Տէր Աստուած ընդ սրբոց վարդապետացն դասեսցէ: «Թվ. Ռ. Ղ. Բ. ամին, եղեւ ննջումն Յովաննէս վարդապետին, եւ յաւելաւ առ հարսն իւր թողեալ յիշատակ մեզ զբարի վարս իւր յայսմ աշխարհի: Եւ յետ նորին ի նոյն թվին Ռ. Ղ. Բ. ամին յաջորդէ զաթոռն նորին աշակերտ Մարկոս վարդապետ Հացուացի, որ ունի բազում յիշատակ ի սուրբ վանքս եւ ի Շէնքուշ. եւ Գանձատետր մի գրեալ ձեռամբ իւրով. Տէր Աստուած իւր հոգին լուսաւորեսցէ. ամէն:

Ի թվ. Ռ. Ճ. Ի. Ը. եղեւ զրաւ կենաց Մարկոս վարդապետին. եւ ի սոյն թվին յաջորդեաց զԱթոռն ձեռնասուն աշակերտն իւր Մինաս վարդապետն Ցամթեցի, զոր ի տղայութեան բերեալ եւ որդեգիր էր տուեալ ումեմն Շէնքուշցի Խաչատուրի, որ եւ նա ըստ համեստ բնութեան իւրոյ սնուցեալ եւ վարժեալ առընթեր ուսուցչին իւրոյ Մարկոս քաջ

եպիսկոպոսին, որ յետոյ ժառանգեալ զաթոռն հաւր իւրոյ, եւ յետոյ գնացեալ ի Ս. Էջմիածինն. ԻԴ. ամ Նուիրակութեան շրջագայեալ. եւ յետոյ ժառանգեալ զաթոռն կոստանդինու եւ Ս. Երուսաղէմի պատրիարքութեան. ի յայնմ ժամանակի տարեալ ի Ս. Սաղիմ զեղբաւրորդին իւր Յովանէսն Շէնքուշցի, եւ տայ նմա գաւազան ծայրագոյն վարդապետութեան, եւ առաքէ փոխան իւր ի վանքն Շէնքշու. Յովանէս վարդապետն եկեալ կառավարէ զաթոռն, եւ ինքն վախճանի ի Ս. Երուսաղէմ. եւ թաղի ի Ս. Փրկիչ, ի կարգս պատրիարքաց, որ ունի բազում ջան եւ երախտիք ի վերայ սուրբ վանքիս. եւ յիշատակ՝ զգեստս եւ գրեանս եւ պղնձեղէնս, զոր Տէր Աստուած ընդ սրբոց Առաքելոցն դասեսցէ, ամէն։

Յովաննէս վարդապետն, որ ունի յիշատակ՝ թագ եւ զգեստ եպիսկոպոսութեան, զոր ինքն վայելեալ է եւ թողեալ մեզ, եւ բազում արդիւնս սուրբ վանքիս. եւ փայլեալ ուղղափառութեամբ եւ հանգեալ ի Քրիստոս. Ռ. Ճ. Հ. Բ. ամին. զոր խնդրեմք յԱստուծոյ ընդ սրբոց հայրապետացն դասեսցէ, եւ իւր յիշատակ անջնջելի պահեսցէ, ամէն։

«Եւ յետ Նորին Եղիազար վարդապետն Աւխաուցի (Աւեսորցի) Ի։. ամս նստի եւ ոչ կարէ կառավարել զաթոռն։ Ռ. Ճ. Հ. Դ. նստուցանեն Կիւրինցի Ստեփաննոս վարդապետն մինչ ԺԲ. ամ. եւ նա փախստական լինի ի վանիցս, ոչինչ օգուտ արարեալ սուրբ վանքին»։

«Եւ յետ Նորին. Ռ. Ճ. Ջ. Չ. ամին Շէնքուշցի Նիկողայոս վարդապետն Բաղդադաւղլոնց տանէն՝ յաջորդէ զաթոռն Ս. Աստ-

ուածածնի մինչ մԸ. ամ. այր ճգնազգեաց, սնեալ յանապատի, որ ունի յիշատակ սուրբ վանքիս մեծ աւատան առաջնորդարանն եւ դուռքն երկաթի, որ վախճանի Ռ. Մ. Ե. ամին, զոր խնդրեմք ի Քրիստոսէ ընդ սրբոց ճգնաւորացն դասեսցէ»:

«Եւ յետ նորին, նոյն թվին նստի յաթոռն՝ նորին աշակերտ Գասպար վարդապետն Շէնքուշցի, որպէս ջահ փայլեալ վառուք, որ ունի բազում երախտիք սրբոյ տանս, որ եբեր զաղբիւրն դէմ վանքին. եւ շինեաց ջրաղացն քիրանով. եւ նորոգեաց յարեւելից կուսէ զպարիսպն վանքին. եւ բազում տուգանս տուեալ բռնաւորաց, այգիս եւ արտորայս բազումս արար, յորոյ ժամանակս յոյժ առաւելեալ եղեն արդիւնք սուրբ վանքիս. եւ վախճանեալ Ռ. Մ. Լ. Է. ամին. եւ Պետրոս վարդապետն գործակից նմին վախճանի ի նոյն ամին. որոց վասն՝ երեսանկեալ աղաչեմ զընթերցողսդ, միով Հոգոցիւ եւ Հայրմերիւ մաղթել մեղաց թողութիւն համօրէն վարդապետացն, մանաւանդ Գասպար արք եպիսկոպոսին, որ է հոգեւոր ծնող մեր»:

«Եւ յետ նորին յաջորդէ զԱթոռն Շէնքուշցի Յոհաննէս վարդապետն, զոր յետ վախճանի Գասպար վարդապետին, ի նոյն աւուր առեալ իշխանացն Շէնքուշայ եւ Ադիշոյ՝ առեալ տանին յԱթոռն Բարձրահայեաց (Ս. Աստուածածնի վանք Արղնոյ), եւ անդ կալնու գաւազան ծայրագոյն վարդապետական ի Կարապետ վարդապետէն, որ կայ եւ վայելէ յայժմուս. զոր տէր Յիսուս մշակ առանց ամօթոյ արասցէ, եւ յետ աստեացս ելանելոյ՝ իւր երկնից արքայութեանն արժանացուսցէ. ամէն»:

Ի սոյն թվ. Ճ. Մ. Լ. Է. նորոգեաց բա-

զում աւտայիւք զսուրբ վանքն ուխտաւորաց ։

«Անպիտան եւ մեղաներկ պաշտաւնեայ ծառայ տեառն. բիւր քանքարաց պարտապան Տէր Մովսէս գրեցի մատեանս վարդապետաց ի հին աւրինակաց տեսեալ ծրեցի ըստ կարեացս ։ Ձեռքս փտի եւ՛ հող դառնայ. գիրս ձեզ յիշատակ մնայ ։ Խնդրեմ միով հայր մերիւ յիշել» ։

— Այլուր գրեալ «... Ցետնեալ Տէր Մովսէս գրեցի, Թվ. Ռ. Մ. Լ. Թ. ամին. յառաջնորդութեան Ցովաննէս վարդապետին բերաւ աղբիւրն ի մէջ վանքին եւ եղեւ շինումն աւտային. եւ էառ ջրաղացն յիշատակ սուրբ վանքին. անջնջելի յիշատակն աւրհնութեամբ եղիցի ։ Թվ. Ռ. Մ. Խ. ամին. գնացաք ի Ս. Էջմիածին ի հայրապետութեան տեառն Ղուկասու, որ յոյժ մխիթարեալ. պատուով ընկալեալ եւ աւրհնեաց եպիսկոպոս. ուղեւորեալ ի ճանապարհ տասն եւ մէկ աւրն հասաք. ի Շէնքուշ յաջողութեամբ Աստուծոյ ։ Ի սորա ժամանակին յոյժ պայծառացաւ սուրբ վանքս շինութեամբ եւ զարդիւք սուրբ եկեղեցւոյ. եւ էառ վերոյգրեալ ջաղցին երկրորդ բաժինն որ եղեւ բովանդակ ընդ պաղչայիւն՝ որ է հետ ջաղցին, չորս հարիւր ղրշ. յիշատակ Ս. Աստուածածնին ։ Եթէ ոք ծախէ կամ խորէ, ընդ խաչահանսն եղիցի, բազում աշխատանաւք առաք. զիրայ յոյժ պիտանի է միւս ջաղցին՝ վասն ջրին. որ եւ անսողաց յայտ է ։ Ի Թվ. Ռ. Մ. Խ. Ա. ամին եղեւ վախճան Ցովհաննէս վարդապետին, Սեպ. Ը. ին եւ թաղեցաւ ի Շէնքուշ, ընդ հովանեաւ Ս. Կարապետ եկեղեցւոյ... ։ Ի սոյն թվին Ռ. Մ. Խ. Ա. ին յաջորդեց զտեղի նորա Տէր Կարապետ ճըգկ նազգեաց վարդապետն, որ է անեալ զաւա-

սուրբ վանիցս. որ կայ ու վարէ զիշխանութիւնն. զոր... տէր մշակ տուանց ամաւթոյ արասցէ. ամէն»:

— «Թվին Ռ. Մ. Զ. Է. ամին. ես տիրացու Մարտիրոսս կեցայ Ս. Աստուածածնի վանքս երկու տարի, Պաղտասար վարդապետին փոքրաւոր... ասացէք Աստուած ողորմի հոգւոյն. ամէն»:

21. Թուղթք Պօղոսի: Թուղթք կաթողիկեայց: Գործք առաքելոց: Ի յիշատակարանէն «... Եղբայրս մեր Ներսէս սարկաւագ... ստացաւ զսա զաւակ 'ի Սիոն... յիշատակ իւր եւ ծնողացն... առ ի բարեխաւս լինել յաւուր որոտընդոստ գալստեան Փրկչին... յիշեցէք զՍարգիս ապիկար գրիչս... ի թվին. Զ. Զ. Է.»:

22. Մաշտոց մկրտութեան եւ ձեռնադրութեան. — «Ի վայելումն Շընքշոյ տեառն Յոհաննիսի մեծի վարդապետին. ձեռամբ Մարտիրոսի, բանի սպասաւորի. ի թվին Ռ. Ճ. Կ. Գ. ...»:

23. Տօնացոյց. — ... «Յիշատակ ի դուռն Ս. Աստուածածնի վանից, յերկրին Շնքօշայ. գրեալ ձեռամբ Թոմասու սարկաւագի. ի թվին Հայոց Ռ. Ճ. Ժ. Դ. ամին: Աստուած ողորմի Տէր Կարապետին...»:

24. Գիրք սահմանաց, եւ Ներածութիւնք Պորփիւրի...»:

25. Հաւաքածոյք Մեկնութեանց Յոբայ. Սաղմոսի, Նարեկացւոյ, եւն: Թերի է:

26. Շարական. փոքր. մաշեալ. — Ի յիշատակարանէն... «Աւարտեցի դառն եւ ի նեղ ժամանակիս, որ տիրեալ էր աշխարհիս Հայոց՝ ազգն Թուրքման. որ եւ զամենայն աշխարհս ի սուր, ի սով, եւ ի գերի մաշեաց. որ ոչ ուստեք ունէաք մխիթարու-

թիւն . . . ։ Գրեցաւ գիրքս ի գաւառիս Եդ-եաց . ի վանքս Ցաւղացքար . ընդ հովանեաւ կենսաբեր Ս . Նշանիս . ի լաւ եւ յընտիր աւրինակէ Խլկցի . ձեռամբ Մատթէոս քահանայի, յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց . . . ի թվին Հայոց Պ . Զ . Զ . . . . »։ Զվերջին ըստացող Կարապետ , հայրն Սեւիկ . մայրն Նիկար . եղբայրն Խըտըրշ . . . յիշեցէք . . . »։

27 . Աւետարան . մաշեալ . — Գրեալ « ի թվին մեր Ջ . Ժ . Գ . ի հայրապետութեան Տէր Կարապետին , եւ ի թագաւորութեան . . . պարոն Զաքամ պակին ։ Գրեցաւ Ս . Աւետարանս ի մայրաքաղաքս հռչակաւոր ի Հռովմկլայս , ի գիւղս Խալիֆի յորջորջեալ . ընդ հով . Ս . Գէորգեայ եւ Ս . Թէոդորոսի զինաւորաց . . . ձեռամբ Անանիա կրաւնաւորի . . . »։

28 . Աւետարան . ընտիր . մագաղաթ . — Գրեալ ի Կ . Պոլիս . « ձեռամբ Քրիստոստուրի ի թվին Հայոց Ռ . Ղ . Ը . յիշեցէք զփոքր Ադիշեցի Կարապետն , որ ի գաւառէն Ամթայ . ի գեղջէն պզտի Ադիշ . . . զՄ . Միրիջանն եւ զԱլամն . . . յիշատակ ի մեծ Ադիշ գեղջն . ի դրունս Ս . Մաւրոֆին , Ս . Կարապետին . եւ Ս . Սարգսի խորանացն . . . ։

29 . Գրիգոր Տաթեւացի . Մեկնութիւն հաւաքական՝ Մատթէոսի Աւետարանին ։

30 . Աւետարան . Ատենի ։ Անթուական եւ անյիշատակ ։

31 . Աւետարան .

« Երջանիկ եւ երից երանեալ րաբունապետըն . . . Տէր Մարտիրոս Շընքուշյին տեսեալ զիմաստաչատ եւ զդիւրագիւտ կարգ տոհմից ազգակցութեանց պատմութեանց հին եւ նոր կտակարանաց Աստուածաշունչ տառից . եւ գրել զսա ոսկենկար զարդուք ի վայե-

լումն սրբասէր անձին իւրոյ ի ներկայն, եւ յապագայն յիշատակ անուանն եւ սրբասէր հոգւոյն իւրոյ եւ ծնողաց իւրոց հոգեւոր տեառն Պետրոսի կաթողիկոսին Սըսայ, որ է համշիրակ Սրապիոն կաթողիկոսին Էջմիածնի, աշակերտք Ղուկասու կեղեցւոյ։ Արդ գրեցաւ եւ ծաղկեցաւ ոսկենկար մատեանս Աստուածաշունչ համառաւտ տոհմաթիւքս, ի հայկազեան թուականութեանս Ո․Հ․ ամին։ Յիշեսջիք զՄարտիրոս վարդապետն Շըրնքոչեցի․ եւ զնորին աշակերտն զՈվաննէսն վարդապետ Շէնքուշցի, որ է րաբունի երանելեացն Աստուածատրոյ, Խաչատրոյ, Կիրակոսի, Եղիազարու կաթողիկոսի, եւ Մարկոսի վարդապետաց առ տէր գնացելոց․ հուսկ յետոյ զՄինաս վարդապետն Համթեցի․ զնըւաստս ի բեմբականաց, որ եմ աշակերտ վերոյասացեալ Մարկոսի րաբունապետի Շէնքոչեցւոյ, որ ի դնալն իմ յԵւդոկիա հանդիպեցաք աւազակաց, որք զամենայն ինչս եւ զգրեանս իմ կողոպտեցին, եւ միայն մնաց այս համառաւտ Աստուածաշունչս, զոր շնորհեալ էր ինձ վարդապետն իմ Մարկոս, եւ իմ զայս գիրքս անձին իմում խորդ վարկանելով, շնորհեցի ի դուռն Ս․ Աստուածածնի վանացն, զոր առաջ եղեալն էր յիշատակ Մարտիրոս Աստուածաբան վարդապետն։ Որ եւ այսու փոքու ընծայիւքս գտայց ի Քրիստոսէ աղաւթիւք ձերովք զթողութիւն անկշռելի սղալանաց պարտուց մեղանաց իմոց․ արդ լալով աղաչեմ բազմաբիծս զվայելողքդ այսմ ստփեստիս, զի յաւգտելն ձեր ի կաթանէ ըստեանց սորին․ խնդրել մեղաց իմոց թողութիւն․ Նաեւ ստացողի սորին Մարտիրոս վարդապետի Շընքուշցւոյ․․․»։ «Գրեցաւ յիշատակարանս ի թվին Հայոց Ո․Ճ․Ժ․Գ․

ամին, յորում Եղիազար վարդապետն Երուսաղէմի կաթողիկոս ձեռնադրեցաւ ի քաղաքըն Հալապ. ի Խաչատուր կաթողիկոսէն Սըսայ. ի սուրբ Քառասունք եկեղեցին»։

33. Մաշտոց. — «Գրեցաւ յաստուածակոխ սուրբ քաղաքս Երուսաղէմ. ի վանքս որ կոչի Ս. Փրկիչ. ի թվին Հայոց Ջ. Ժ. Է. ի խնդրոյ... Առաքել աբեղային, ձեռամբ Աստուածատուր... աբեղայի Տրապիզոնցի»։

34. Աւետարան. — «Գրեցաւ... ի թվ. Հայոց Ջ. Ղ. յընտիր աւրինակաց սրբոց հարցն գրեալ, ի լուսազարդ եւ ի գեղեցկայեղց... Անապատիս Տէր Յուսկայորդւոյ, ի գաւառիս Տարբերունեաց, որ այժմ կոչի Բերկրի, ընդ հով. սուրբ եկեղեցեացս, սուրբ մաւրս լուսոյ Տիրամաւր Աստուածածնի կուսին. եւ Ս. Կարապետին, եւ Ս. Յարութեան, ձեռամբ... մատնադեղեւ գրչի Եղիա սուտանուն կրաւնաւորի, ի խնդրոյ... բարեբարոյ տանուտըրոջն Խաւջայ Խալիֆին. յիշատակ բարի իւր, եւ ծնողացն...։ (Աստ 32 անուններ կը թուէ մի եւ նոյն գերդաստանէն)։

35. Անանուն, մաշուած, հին ձեռագրի մը թղթոց էջերը գրուածներէն. «Ես... Յիսուսի Քրիստոսի ծառայ Ամթեցի, որ Տիգրանակերտ կոչի, Ղըռպաշի Մ. Բուհիջանի որդի... տիրացու Սարգիս... եկի ի Ս. Աստուածածին վանքս Զընքըշոյ. ի թվ. Հայ. Ռ. Մ. Ժ. Ե. մայիսի ԻԴ. մտի Գասպար աստուածաբան վարդապետի քով միաբան. կացի Բ. տարի, յետոյ դնացի տունս կեցի Բ. տարի չըթչութիւն էրի, յետ Բ. ամաց եկինք հայրիս մայրիս չորս եղբայրիս հետ ուխտ, լուսահոգի Գասպար վարդապետ ինձի ու ախպարիս տուեց կարգ դպրութեան

չորս աստրհան. նա աստուծով եղեւ քահանայ... Թվ. Ռ. Մ. Ծ. եկի կրկին եղէ միաբան Կարապետ աստուածաբան վարդապետի քով: Աստուած մշակ առանց ամաւթու արտացէ...»: «Ես տիրացու Գասպար ծառայ Ս. Աստուածածնայ դուռն էկայ Թվ. Ռ. Ճ. Հ. Ե. ամին. : Ձեռնադրուեցայ աբեղայ ձեռամբ Նիկողոս վարդապետին. Թվ. Ռ. Ճ. Ձ. Զ. ամին: Գաւազան ընկալայ ձեռամբ Նիկողոս վարդապետին Թվական Ռ. Ճ. Ղ. Ե. ամին: Թվ. Ռ. Ճ. Ղ. Ը. ամին Ս. Երուսաղէմ գնացի: Թվ. Ռ. Մ. Բ. ամին դուպան (գմբէթ) շինեցի ես Գասպար վարդապետս: Թվ. Ռ. Մ. Գ. վանքին քամկիրբինայ ջաղացքն շինեցի, յայսմ ամին Ս. Կարապետ գնացի ես Գասպար վարդապետս: Թվ. Ռ. Մ. Ե. եղեւ գրաւ կենաց Նիկողոս վարդապետին եւ Թաղեցաւ վանքն. եւ առաջնորդեաց իւր ձեռնասուն աշակերտն, մարտի Ժ. Անառակի կիրակին, Ձնքուշցի Գասպար վարդապետ. տեսանողք ասացէք Աստուած իւրեան կարողութիւն տայ, եւ դուք վարձս յԱստուծոյ առնուք: Թվ. Ռ. Մ. Թ. մարտ ամսոյ Ժ. Դ. Ղազարու շաբթի երեքշաբթին Խաչատուր վարդապետ առ Աստուած փոխեցաւ: Թվ. Ռ. Մ. Ժ. Գ. ես Գասպար վարդապետ գնացի Ս. Էջմիածին ձեռնադրեցայ եպիսկոպոս ձեռամբ Սիմէոնի սրբազան կաթողիկոսի: Թվ. Ռ. Մ. Ի. աղբիւրն շինեցաւ դէմ Ս. Աստուածածնի ձեռամբ Գասպար վարդապետի. խմէք զանոյշ ջրիկն, ասացէք Աստուած ողորմի. ամէն»:

«Ես Տէր Գրիգորս Խարբերդցի, Ղուլու գիւղէն, որդի Մ. Տանապետի եկի Ձնքուշոյ վանքն կեցի Խ. աւր. Թվ. Ռ. Մ. Լ. Ա. սեպ. Գ. էկայ. հոկ. Ժ. Բ. էլայ գացի...»:

«Ես Ոսկան... վարդապետս եկի սուրբ ուխտս հրաշալի առ Մեծ. եւ առաքինի սըրբազան հայրս մեր Գասպար գերիմաստ եւ զգաւնամիտ րաբունապետն: Տէր Աստուած զինքն հաստատ եւ անշեղլի պահեսցէ ի վերայ սուրբ գահիս...»:

— «Թվ. Ռ.Մ. Չէնքչայ քիլայ ցորեն Ժ.Դ. ղուրուշ ծախուաւ: Թվ. Ռ.Մ.Ա. յունվ. ամսոյ ԻԵ. վանքին արան գարի ցանաւ: Թվ. Ռ.Մ.Է. կրկին սով եղաւ Ամիթ. քիլայ մի ցորեն Կ.ղշ. Լիտր մի չամիչ Ի. ղրուշ. Չէնքուշի քիլայ մի ցորեն ԼԲ. ղրշ. քիլայ մի կորեկ ԻԴ. ղրշ:

— «Թվ. Ռ.Ի.Է. ագեւոր աստղ մի ելաւ, չորս ամիս չարժ եղաւ. Բ. Թագաւոր Պարսից մեռաւ. մէկ Շահ Իսմայիլ, մէկ Շահ Թահմազ: Դարձեալ Թվ. Ռ.Ճ.Ժ.Դ. յամսեանն դեկտ. ի մէջ գիշերի ագեւոր աստղ մի այլ ելաւ, Թահմազ Խանն իւր զաւրաւք կորաւ: Դարձեալ Թվ. ՌՃԺԴ. յամսեանն յունվ. ի ագեւոր աստղ մի այլ ելաւ, Չէնքուշայ քիլէ ցորեն Ժ. ղրշ. ծախուաւ. Նուկի մի չամիչ Ժ. ստակ. Թահմազ Գուլի Խանն էկաւ Բարքուտ, Հասան գալայ աւերեց գերեց...»:

36. Աստուածաշունչ. որոյ կողն դըրուած էր. «Թվ. Ռ.Մ.Է. խիստ կարի սով եղաւ. Չընքշոյ քիլայ ցորեան Ի.Է. ղրշ. եղաւ. կորեկին՝ չարէքն Ի. ղրշ. Լիտր մի չամիչ Բ. ղրշ. Լիտր մի սոխ Ի. փարայ. Լիտր չողգամ Ի. փարայ. յԱմիթ քաղաք՝ չարէք մի ցորեն Ծ. ղրշ. ամեն բան սոցա պէս. միսին հօխան Ը. փարայ. շատ մարդ մեռաւ այս սովոյս: Թըմի Ոընտուալ՝ Դ. ճըռըղ ծախուաւ, երկանքն կու աղային հաց կընէին թէ Հայ թէ Տաճիկ. յորժամ մայիս ամիս մտաւ՝ Չընքուշոյ քիլայն ցորեն եղաւ

ԼԲ. ղրշ. Ջերմուկ՝ Կ. ղրշ։ Դ. Ծ. մարդ Հայոց ազգէն մեռաւ անօթուն՝ Ջնքուշոյ մէջ՝ տաճիկէն մատէ։ Ցորժամ յունիս ամսին մըտաք՝ եղաւ քիլայ մի ցորեան Կ. ղրշ. լիտր մի չամիչ Ե. ղրշ. լիտր մի չիրիկ իւղ, Ձ. ղրշ։ Ը. ամիս Ջընքուշայ եկեղեցին ոչ կանթեղ վառաւ, ոչ ժամկոչ ելաւ, իբրեւ ծովու նման կու ծփայր երկիրն վասն մեղաց մերոց։ Ցայսմ թվին Ներքին Ատիշոյ եկեղեցին այլ այրեցաւ, որ մէկ հատ քար կամ փայտ չի մնաց. Աստուած վերջն բարին կատարէ. ամէն»։

— «Թվ. Ռ. Մ. Ի. աղրիւրն չինել տուի. ջուրն բերի մէջ բաղչային. Ռ. ղրշ. խարջեցի հազիւ կարացի բերել Գասպար վարդապետս. Տէր Աստուած ամենայն յիշատակն ընդունելի առնէ»։

— «Թվ. Ռ. Մ. Ի. Է. բազում չաքուրկայ եւ կարկուտ էկաւ. կարի դժուար սով սաստիկ եղաւ, վանքին ութն լիտր չամիչ եկաւ, ութն լիտր գինու չիրայ»։

— «Թվ. Ռ. Մ. ԺԲ. ես Գասպար վարդապետս արեւելից (կողմի) պարիսպն աւարտեցի, Դ. քէսայ տուգանք տուի Մատան (փաշային). տէր Աստուած չէն պահէ ժողովրդեան...»։

37. Կանոն գիրք եւ Դատաստանագիր Մխիթար Գոշի, որոյ յիշատակարանէն քաղեալ «... Ի խնդրոյ Մինաս վարդապետի Ամթեցւոյ աստուածարելոյ անձին եւ յԱստուած խրախուսելոյ, որ ոչ երբէք յայլ ինչ իրս է պարապեալ քան թէ յԱստուած զաւրացեալ եւ Նովաւ հանդիսացեալ միշտ ի գերակատարն դըլուխ ունելով զակն ոգւոյ ըստ իմաստնոյն խրատու, լուսատու հոգւոյ եւ անսայթաք պողոտայ ոտից զպատուիրանս

տեառն ունել առինքն, եւ ըստ ինքեան վարժեալ ուրինաւք, եւ կատարեալ տեսական եւ արդիւնական գերապայծառ եւ տիեզերախոյլ վարդապետութեամբ, եւ առաւելեալ ամենայն մաքրութեամբ, եւ գրասիրութեամբ ճոխացեալ։ Եւ ընդ յոլովից գրոց ստացելոց՝ ստացաւ եւ զգիրս կանոնաց եւ Դատաստանաց՝ եդեալ ի միում տիի· ի վայելումն անձին եւ յիշատակ հոգւոյ իւրոյ, եւ հոգեւոր ուսուցչին իւրոյ Մարկոս վարդապետի Ջնքուշցւոյ փոխեցելոյ առ Աստուած· նաեւ ծնողաց իւրոց Մ· Առաքելին եւ Հռիփսիմէին· եւ հանւոյ իւրոյ Մ· Պահրիէին, եւ այլ ամենայն արեան մերձաւորացն։

«Եղեւ սկիզբն գրչութեան տառիցս ի Հայոց Թուականիս Ռ·Ճ·Լ·Ջ· ամին· ի ժամանակիս կաթողիկոսութեան Ս· Էջմիածնայ երից երանեալ տեառն Եղիազարու երջանկի, որ աստուածային ընտրութեամբն արժանաւորեալ յառաջնորդութիւն հայրապետութեան Հայկազնեան ազգիս շնորհեցաւ գլուխ պատուական եկեղեցւոյ՝ Քրիստոսի արեամբ գնեալ բանաւոր հաւտից հովիւ քաջ եւ բարի։ Որոյ սիրելի սպասաւոր եւ պաշտաւնեայ ծառայեալ մինչ ցարդ ամս Ի՟· դոլով եւ գործակալ ամենայնի Ս· Էջմիածնայ եւ Ս· Երուսաղէմայ· եւ ամենայն իրագործութեան ամենայն Հայոց՝ Մինաս վարդապետ ստացող մատենիս։ Շնորհիւ տեառն սկսեալ եւ ողորմութեամբ նորին յանգ եղեալ աւարտեցաւ գիրս կանոնաց Ս· Առաքելոցն եւ Հայրապետացն եւ Վարդապետացն· եւ Թագաւորաց բարեպաշտից եւ աստուածասիրաց· ի Թուաբերութեանս Հայոց Ճ·Ա·Ռ·Ե·Ա·Ղ· 1137· յունվար ամսոյ հնգումն· ի յաւանս Նոր քաղաք կոչեցեալ,

ընդ հովանեաւ Ս. Նշանի եկեղեցւոյս. Նըւաստ ոգի Միքայէլ, Բարղամ գրչի որդի. առ ոտս տեառնս իմոյ Մինաս վարդապետի քաջ դիտապետի ստացողի գրոցս Եւդոկիակերտի արհի եպիսկոպոսի. ի ժամանակս Թագաւորութեան տանկաց Սուլդան Մահմէտի, որոյ զաւրքն ամենայն գնացեալ էին ի պատերազմ յաշխարհն Լեհին. եւ աշխարհ ամենայն խարբալեալ եւ ի տատանման կայր... եւ նստուցին զեղբայր նորա ի տեղի նորա Թադաւոր տանկաց, որոյ անունն էր Սուլթան Սուլէյման... ի Նոյեմբերի ամսին»։

«Թվ. Ռ. Մ. Է. ամին անչափ սով եղաւ, որ Զընքշոյ քիլայ ցորեն Լ. Է. ղրշ եղաւ, կորեկն Ի. Դ. ղրշ. Ամթայ քիլայ ցորենն Կ. ղրշ. վասն մեր մեղաց, լիտր մի չամիչ Է. ղրշ. լիտր մի ընտուղ Է. ղրշ. լիտր մի սոխ Է. փարայ. լիտր մի չիրիկ Զ. ղրշ»։

«Թվ. Ռ. Մ. Ի. Է. եկն ստուածաստ բարկութիւն ի վերայ աշխարհիս Միջագետաց, զի հնչեաց հողմն հարաւային եւ եբեր զամենայն դմնայն (Թռչուն), որ է գըմբըլն, և եկեր զմորախն, որ է չաքուրկան, որ ապականեաց զամենայն արտորայս եւ զանդաստանս եւ զայգիս մեր. որ ամենեւին ոչ գըտանիւր չամիչ կամ քաղցր վասն հիւանդաց, եւ եղեւ սով սաստիկ. որ Զընքուշայ Ա. Թըմին ցորեն՝ եղեւ ոսկի մի, վասն ծովացեալ մեղաց մերոց. բարերարն Աստուած քաղցրասցի եւ կրկին տացէ առատութիւն ամենայն աշխարհի»։

«... Թվ. Ռ. Մ. Խ. Ե. ամին եղեւ մահտարաժամ յոյժ, եւ մեռան Հայոց ազգէն Է. հարիւր մարդ ընդ այր եւ ընդ կին. վասն մեղաց մերոց. եւ եղեւ յետ նորա սով սաստիկ, մինչ քիլայ մի ցորեն ծախուեց յԱմիթ

չէր գտանէր . . . » ։ Թվ. Ռ. Մ. Ծ. Բ. յայսըմ միջոցս եղեւ խանգարումն գերապայծառ աթոռոյն Ս. Էջմիածնի, քանզի յետ վախճանի երանելւոյ Ղուկաս կաթողիկոսին, անմիաբան եղեալ ազգն Հայոց՝ իշխանք մեծին Պաւլսոյ ընտրեցին Դանիէլ առնել կաթողիկոս. եւ միաբանքն աթոռոյն աւրհնեցին զԴաւիթն կաթողիկոս հաւանութեամբ արեւելեան իշխանաց. եւ եկեալ Դանիէլն Եուչքիլիսա, նա եւս աւծեցին կաթողիկոս, որ եղեւ խռովութիւն մեծ, եւ յայնմ ժամանակի եկն Ռուսն պատերազմաւ ի Պարսս ի վերայ բերդին Երեւանայ. եւ եմուտ ի Ս. Աթոռն ամենայն զաւրաւք, եւ տարեալ ընդ իւր զամենայն ինչսն. եւ այժմ անբնակ է, կաթողիկոսն եւս տարեալ ընդ իւր, եւ միաբանքն ցրուեալ. սուգ մեծ եղեալ ազգիս Հայոց, Տէր Աստուած խաղաղութիւն շնորհեսցէ. ամէն » ։

« Թվ. Ռ. Մ. Ծ. Ա. ամին, մեր եկեղեցւոյ արեւելեան որմն փլաւ, տաճարն մնաց ամբողջ ։

« Ի սոյն ամի՝ վէզիրն, որ դնացեալ էր Մըսըր բազում զաւրաւք ի վերայ Ֆրանսուզին բազմաւ պատերազմաւ, եւ կրկին ի Նոցանէ թափեալ էառ, եւ չուեալ անցանէր Մելտինէ. գնալ ի մեծն Պաւլիս. իշխանքն մեր երթեալ Մալաթիոյ վասն ֆարմանի ի սուրբ եկեղեցւոյ Ս. հազար եւ Շ. հարիւր ղրշ. ժողովեալ ի Ջընքուշ մերազնէից, ոչ եղեւ հնար շինութեան, եւ է մինչ այսաւր նոյնպէս. որ է թիւն Ռ. Մ. Ծ. Դ. Տէր Աստուած նորոգման արժանի արասցէ ամէն ։ « Դարձեալ Ռ. Մ. Ծ. Է. ամին. Նոր կիւրակէին, ի ժամ սուրբ պատարագին, որ «Միայն սուրբըն» երգէին դպիրք, եղեւ ահագին հըն-

չումն վասն ծովացեալ մեղաց մերոց· զի սուրբ սեղանն կործանեցաւ, խորհուրդն տէրունական ցթուեցաւ, վասն անարժանութեան մերոյ եւ ծուլութեան· որ անփոյթ արարաք վասն նորոգման, եւ եղեւ վայ ի վայի վրայ մեզ· եւ ժամանեալ կրկին ի վերայ մեր բարկութիւն տեառն մինչ Խ· աւր, էանց։ Սրբոյ Հոգւոյ գալստեանն կիւրակէն· միջաւրէի, դուռն բացեալ գաւթի սուրբ եկեղեցւոյն չար բոշայի կանայքն, եւ առեալ սուրբ նշանքն եկեղեցւոյ բազմախուռն մասամբ· Բ· պօղչայն եւս· ոչ մնացեալ մի մասըն, չուտափոյթ փախստական գնացեալ մի օրն Խարբերդ, Խանքոյին· ի նոյն աւուր որոնեալ ոչ գտեալ սուրբ նշխարքն· եւ եղեւ կոծ մեծ ի վերայ մեր· եւ ի վերայ բոլոր ազգիս սուգ անմխիթար· մինչ որ իմացեալ եւ ելեալ անձամբ գնացաք մինչ Խանքոյն· եւ բռնութեամբ իշխան տեղւոյն այնորիկ հանեալ ի նոցանէ եւ տուեալ մեզ· որում Մ· ղրշ· տուաք, եւ առեալ զցանկալին մեր եւ բազմաց բաղձալին զգանձն աստուածային, պատուական մասունքն Ս· Նիկողայոսին եւ սրբոյն Գէորգայ, եւ այլքն անպակաս, եւ լցաք երկնային խնդութեամբ եւ բերեալ հանգուցաք ի Ս· եկեղեցին· յիշատակ աւրհնութեամբ եղիցի, եւ պահպանութիւն հաւատացելոց։ Այսուհետեւ ով մանկունք սուրբ եկեղեցւոյ, մեծաւ զգուշութեամբ պահել եւ արժանապէս պատուել զՍ· նշանն՝ խնդրեմ ի ձէնջ, եւ խնդրել ի Քրիստոսէ զթողութիւն բազում յանցանաց մերոց եւ այնոցիկ որ ընդ մեզ աշխատեցան մինչ ի Խարբերդ· տէր հատուսցէ զվարձս վաստակոցն։ Նաեւ յայտ լիցի ընթերցողացդ, զի յայսմ ամի երիս փորձութիւնս եկն ի վերայ ազգիս

Հայոց. սկիզբն տարւոյս՝ Տեառնընդառաջի աւրն այս գիւղաքաղաքիս աւտարազգիք... ոչ եւտուն թոյլ վառել մելեփն զհրավառութիւնն յայտնի, վասն որոյ եղեւ մեծ խռովութիւն. եւ այս ամենայն վասն մեղաց մերոց եւ սուրբ եկեղեցւոյ խանգարման՝ եկն ի վերայ մեր...» — «Զնչին Տէր Մովսէս աշխատողս»:

— Սոյն գրքէն օրինակուած է նաեւ հետեւեալը —.

«Յառաջաբանութիւն քաղաքական աւրինադրութեանս Աստուածային եւ մարդկային»:

«Տէրն եւ արարիչ Աստուած մեր ստեղծ զմարդն ի պատիւ անիշխանութեան. աւրէնս ետ նմա յաւգնականութիւն, ըստ մարգարէին, եւ ըստ որում՝ զամենայն ինչ վասն նորա հաստատեաց. նմանապէս եւ աւրինացն էած զնա ի գիտութիւն, որ ոմանց եղեւ ի փրկութիւն աստնջական. եւ ապստամբիցն՝ տանջանաց պատճառ, որք ոչ աւրինացն զգուշացան եղեալք ապստամբք յարդարութենէ, որոց վրէժխնդիր լինի Աստուած, որ կանխաւ բացատրեաց ի գիտութիւն նոցին զաւրէնս եւ զանիրաւութիւն, քանզի նորա բանին զաւրութիւն հաստատեալ կայ սահման. եւ իւրաքանչիւրոցն չափէ ըստ գործոց արժանեաց, վասն զի երկինք եւ երկիր անցցեն, եւ բանք նորա ոչ անցանեն. ըստ որում եւ Աւետարանն սուրբ հրամայէ:

Սոյնպէս սոյն աստուածազաւրութիւն թագաւորացս հաճեցաւ տալ եւ իմաստնացուցանել աւժանդակ իւրոց աւրինաց զհրամանս զայս ահաւորս. եւ մեք նորին սիրոյն հպատակ կամք ըստ գլխաւորի առաքելոյն Պետրոսի, հովուել զհաւտս զոր հաւատաց մեզ: Եւ ոչ ի մէնջ իրաւունք դատաստանաց եւ ոչ

վրէժխնդրութիւնք չարագործաց, այլ ի նըմանէ ամենայն անիրաւութիւնք լուծանին, եւ մեզ է ուղղել զիրաւունս նորա, եւ վրէժս եւ տոյժս պահանջել յանհնազանդիցն, ըստ հրամանի (կարգի) սպասաւորութեան. քանզի սուսերաւ՝ որ ընդ մէջ ածաք, սպասաւորեմք Աստուծոյ. եւ զդժուարին կապ անիրաւութեան արձակեմք, եւ զչարագործսն դատափարակեմք. եւ զայս պահելով, ի վերայ թշնամեացն յաղթութեամբ՝ ամենակարող ձեռն պսակէ զմեզ, եւ զհանդերձեալ պսակն բազմազան եւ պայծառ պատրաստէ, ըստ խոստման հրամանի իւրոյ։ Արդ խաղաղութեամբ եւ բարեպաշտութեամբ եւ քաղաքավարութեամբ խոկալ մեզ արժան է՝ զոր հաճոյն է Աստուծոյ, եւ զմիաբանութեան վերաբերէ զգիւտս, եւ արդարութիւն՝ ամենայն աշխարհաւոր իրացս ունելով կառավար, յերկնային պատրաստեալ աւթեւանայն մտցուք ի հանգիստ։ Որք յառաջագոյն թագաւորեցինն՝ բազում գիրս գտաք զի աւրինադրութիւնս արարին, զորով մածւածեալ բանսն ընդ աղաւտ իմանամք, կամ բնաւ անգիտանամք, մանաւանդ որք արտաքոյ այսմ աստուածապահ թագաւորական քաղաքիս արարին զսահմանադրութիւնս. կոչեցաք զնիկեփորոս փառաւորեալ Պատրիգն, եւ զՄարինոն, եւ զՄարինոս փառաւորեալ հիւպատոսքն. եւ հրամայեցաք զամենայն գրեանսն ժողովել առ մեզ. եւ զգուշութեամբ տեսանել եւ քննել, եւ ի նոցանէ զուղղութիւն պարզեան մեզ արտաքս հանել գրով, որք եւ զսահման հրամանի մեր երագապէս կատարեցին և ընդաւրինակեցին զդատաստանս եւ զիրաւունս թագաւորաց, որով դատեն զքաղաքս։ Եւ այսպէս զորս ծարա-

ւի էին զովացուցաք, եւ զնրբութիւնն լուսաւորեցաք, հայելի արարաք բարեպաշտից զգիրք աւրհնացս, և որք ի հնոցն ընթերցումն տագնապին` ասա ելս գտանեն։ Արդ ի գարշութիւն զընկղմեալսն` աւրհնաւք վերականգնեցաք. եւ զմարդկան չարչարանսն ի բաց քեցեցաք։ Եւ որք ի ձեռն առնուն զսա` զգուշասցին յառաջ ածել ճշմարտութեամբ զիրաւունս եւ զդատաստանս։ Մի՛ զաղքատըս արհամարել, եւ մի՛ զհզաւրս անիրաւել, յուզել զեղանակ արդարութեան, եւ սքանչելի առնել զհաւատարմութիւն. զգործս մախանաց մի՛ ընդունել միակողմանի, այլ զերկուս դատախազս հաւասար կացուցանել. եւ այսպէս որոշել զնոսա. ընդ որում ճանաչէք` ուր գտանէք զթերութիւն իրաւանց` մի՛ անտես առնէք իբրեւ զկաշառաւք ապականեալսն. որք վասն շնորհակալութեան տան զշնորհս. այլ զճշմարտութիւն եւ զարդարութիւն պատուեցէք։ Մի՛ թշնամութեամբ ընդդէմ կալ դատեցելոյն, եւ մի՛ բռնութեամբ յաղթել, զի—. Զայս խորհելով ուղիղ դատել ոչ զաւրէք—. ըստ յայտնելոյ սաղմոսերգուին թէ` «Ուղղութեամբ զարդարութիւն խաւսէիք եւ իրաւամբ դատէիք, որդիք մարդկան, ոչ եւս ի սրտի ձերում զանիրաւութիւն խորհէիք, եւ ոչ ձեռք ձեր յաշխարհի զանաւրէնութիւն նիւթէին»։ Նմանապէս եւ Սողոմոն կշռոց առակէ եւ զհոգեւորութիւն հրամայէ ասելով «Կշիռք մեծ եւ փոքր պիղծ է առաջի Աստուծոյ»։ Արդ իմանալ արժան է զիրաւունս, եւ հրամայել զճշմարտութիւն հանդերձ յայտնի վկայութեամբ, ըստ որում եւ սահմանեցաք ասա խոհականութեամբ. զի զորս են յերկմտութեան դրունսն` կացուսցէ ի հաստատութեան հաւասարութեամբ,

ըստ որում ասէ զսոցանէ Յեսու Սիրաքայ· «Մի՛ ի տեառնէ դատաւորութիւն խնդրէք, եւ մի՛ ի թագաւորէ աթոռ փառաց պահանջէք· մի՛ լինիք դատաւորք եւ յառաջաբանք անիրաւութեամբ, զի ոչ իւիք յափշտակել կարէք՝ թէ ոչ իմաստութեան զգուշանայք եւ պարապէք· ուղիղ դատաստանս նայեցարուք, եւ անաչառ զարժանս իւրաքանչիւրոցն տուք»: Ի սոյն եւ Աստուած հանճար եւ իմաստութիւն Սողոմոնի, որով եւ յայտնեաց զկարծիս երկմտութեանցն ճշմարտութեամբ տալ զվճիռ պոռնիկ կանանցն· զի ոչ ունէին վկայ իւրաքանչիւր բանիցն· ի կենդանի մանուկն եւ ի մեռեալն զբնութեան վկայութիւնն յուզեաց, եւ նովաւ եգիտ զանծանաւթն եւ հաստատեաց· քանզի որ աւգտակարն էր վասն մահուան մանկանն՝ առանց տաժանման ընկալաւ զհրամանն, իսկ որ ճշմարիտ մայրն էր՝ ոչ տեղի ետ հրամանին վասն տպաւորեալ սիրոյն որ ի բնութեան: Զայս իմացեալ, եւ իսկոյն խոկումն եկեալ մերս բարեպաշտութիւն ձեռնարկեցաք դընել արդարութեան կշիռս, առ ի դատել աւրինաւք, ըստ ասելոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Մի՛ ընդ աչս դատիք, այլ ուղիղ դատաստան արարէք: Նաեւ յամենայն ակընկալութենէ խորշել արժան է· զի գրեալ է· «Վա՜յ այնոցիկ, որ արդարացուցանեն զամբարիշտս վասն կաշառաց, եւ զճանապարհս տնանկին խոտորեն· եւ զիրաւունս արդարոյն բառնան ի նմանէ· նոցա արմատն իբրեւ զհող է, եւ ծաղիկն իբրեւ զփոշի ելանիցէ»· վասն զի ընուլ ոչ կամեցան զաւրէնսն տեառն· զի կաշառք կուրացուցին զաչս համարձակահայեացս: Արդ մի՛ յայս աղարտեալ շահս զբաղիք, այլ փութացեալ բարձ-

ռացէք յարդարութիւն. զի որ ի մարդա-
րչէն տասցաւ՝ առ մեզ լցցի. ի բաց կացէք
յարծաթոյ արդարոյն. զի ի պատահելն
Աստուծոյ, մի տրտունջ լիցի, որպէս ոք.
որք պատուիրանացն Աստուծոյ յանցաւորք
եղեն։

«Բարեխոհ Սակիլլիոսի հրամայեցաք նը-
շանագրել եւ ընդ աւրինակել յամենայն դա-
տաստանացն գլխոց, զի բարի վարձս ըն-
կալցի ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ. որ է
աւրհնեալ յաւիտեանս ամէն»։

38. Աստուածաշունչ. ընտիր, պատկերա-
զարդ, ոսկեզօծ. — որոյ յիշատակարանէն
օրինակեալ. «... Պատուական ծերունին
Տէր Մարտիրոս արքեպիսկոպոսն... եւ բա-
րի շառաւիղ յարմատոյ նորա ժրաջան մե-
ղուն եւ քաջ փիլիսոփայն Տէր Յոհաննէս
վարդապետն ցանկացող եւ փափաքող եղեն
աստուածային մեծ բուրաստանիս, եւ փար-
թամ կտակիս, անճողոպրելի գանձիս, որ է
թագն պանծալի, եւ պարծանք վարդապե-
տական խմբից, լուսատու ակն տիեզերաց,
անմահական աղբիւրն. ծառն կենաց տնկեալ
ի մէջ եկեղեցւոյ, ջուր անմահարար, բաժակ
ուրախարար, որ զտգէտսն իմաստնացուցա-
նէ, զխաւարեալսն լուսաւորէ, զհիւանդսն
հոգւով առողջացուցանէ, զմեռեալսն ի մեղսն
յարուցանէ, զնեղեալսն ապաքինէ. եւ զա-
մենայն ցաւս զհոգւոյ եւ զմարմնոյ փարա-
տէ, Ս. Աստուածաշունչ տառս. ստացան
զսա յիշատակ բարի եւ անջրելի ի վայելս
ներկայումս որբասէր անձանց իւրեանց եւ
պահապան աստուածախնամ գիւղաքաղաքիս
Զնքուշայ... յանգեղեալ աւարտեցաւ Ս.
Աստուածաշունչս ձեռնտուութեամբ զա-
ռածեալ... Մինաս գրչի, որ ետու գրել զսա

աշակերտաց եւ հոգեւոր որդւոց իմոց Յովհաննիսի եւ Առաքելի .... յիշատակ սոցա՝ լիցի ի սուրբ գիրքս, եւ իւրեանց ծնողաց։ կազմեալ ծաղկեցաւ սա ոսկենկար յանդուածով. առաջին խորանն հանդերձ վեցաւրեալ արարչագործ պատկերաւք. և Աւետարանի առաջին խորան՝ եւ ընդդէմ խորանի չորեքկուսի աւետարանչացն պատկերք, եւ Քրիստոսի խաչելութիւնն. եւ այլ ցրուածաղիկքն լսամ Թիւերով տոկերով եւ խորանով, ես Նուաստ Մինաս գրիչս ծաղկեցի եւ աւարտեցի ... յաշխարհս Միջագետաց ի մայրաքաղաքն Տիգրանակերտ ... ի դուռն սըրբոյն Կիրակոսի եւ մաւրն Յուղիտայի, եւ սըրբոյն Սարգսի զաւրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսին ... ի Հայոց Թուա. Ռ. Հ. Ե. ի հայրապետութեան սրբոյ էջմիածնայ Մելքիսեդեկ կաթողիկոսին. որ փախուցեալ է յաշխարհն Ռուսաց. եւ աթոռն ամայի է մնացեալ, յորում ժամանակի միահամուռ բարձաւ քահանայութեան (շնորհ). զի ոչ ուրեք երեւի ճշմարտութիւն. այլ ադիտութիւն Թագաւորէ.... Եւ ի Թագաւորութեան ... որ ասին տաճիկք ... զաւրացան եւ ունին զմիջերկրեայս ծովով եւ ցամաքով, որոյ աթոռն է մեծին Կոստանդիանոսի։ Ռ. Կ. Է. Թուականին ... մեռաւ Սուլթան Ահմատն. եւ Թագաւորեաց եղբայր նորա Սուլթան Մուստաֆայն ամիսս Գ. եւ յետ այնորիկ Թագաւորեցուցին զեղբաւր որդի նորա զՍուլթան Ահմատի որդին զՍուլթան Աւսմանն տղայ հասակաւ, բայց յաղթող եւ զաւրեղ Թագաւոր։ Սա մինչ հնդետասանամեայ էր յարեաւ գնաց ի վերայ Լեհաց աշխարհին Ռ. Շ. Թուականին, եւ ազգն Նետողաց ընդ իւր շատ պատերազմեցան, եւ բազում

եւ անթիւ գերի առեալ դարձաւ ի թախտն իւր ի Կ. Պաւլիս...»։

39. Ճաշու գիրք. — ...Գրեալ թվ. Ջ. Ժ. Ե. ձեռամբ Բ. գրչաց Յակոբ քահանայի եւ Պաւղոս սարկաւագի, ի Խարբերդ քաղաքի. ի թաղն Սինամուտ, ի կաթողիկոսութեան տեառն Սարգսի, եւ յեպիսկոպոսութեան տեառն Յոհաննիսի. եւ ի ամիրայութեան Հասան խանի, ի խնդրոյ Տէր Յոհ. եպիսկոպոսին, ընդ հովանեաւ Ս. Սարգսի զաւրավարին... ի յիշատակ իւր եւ ծնողացն Լիպարտին եւ Մանանային...»։

40. Մայր մաշտոց. — ...«Գրեալ ի թուա. Հայոց Ջ. Է. ի քաղաքն Վան. ընդ հովանեաւ Ս. Ստեփաննոս Նախավկային եւ սրբոյն Սահակայ հայրապետին։ Ի հայրապետութեան տեառն Գրիգորի, եւ մերոյ առաջնորդութեան սուրբ ուխտիս Վարագայ Տ. Յովսէփ եպիսկոպոսի եւ Զաքարիա վարդապետի։ Յանկացող... տառիս կրաւնաւորն Մելքիսեդ... գրիչ.. Կարապետ երէց... ի սոյգ եւ յընտիր աւրինակէ զոր գրեալ էր մեծ վարդապետն Սարգիս, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի»...։

41. Մայր մաշտոց. — «Գրեալ յանաւրկ դղեակն ի դուռն Բարձրահայեաց Ս. Աստուածածնի, ի գաւառն Արղնոյ. ի թագաւորութեան տաճկաց Ղասում արքային. եւ ի կաթողիկոսութեան Տ. Սարգսի, եւ յեպիսկոպոսութեան երկրի մերոյ Արղնայ Տէր Յոհաննիսի...»։

42. Մեկնութիւն Գործոց Առաքելոց. ի Մատթէոս վարդապետէ աշակերտէ Գրիգորի Տաթեւացւոյ. – որոյ յիշատակարանէն աւրինակեալ «...Աղաչեմ զհանդիպող մանկունս Հայաստանեայց, մի ծուլութեամբ ազգիս

յամառեալ ցնդիցէք ի պատրանս ծովածուփ կենցաղոյս, ուրանալով զուխտն աստուածեղէն. քանզի գիտեմ զպատճառ բերանոյ ձերոյ, նախ զմեզ նախատելով թէ՝ Ասեն եւ ոչ առնեն։ Եւ այս յիրաւի, զի ոչ եմք գնացիւք ըստ ասացելոցս։ Այլ գոնեա՛ զարարեալս ընթերցջիք, զի ահա եւ այսոքիկ աշխատութիւնք մեր են պարգեւեալ ի Հոգւոյն. զի որպէս մեք աշխատեցաք. եւ առաք եւ տուաք. ընթերցջիք եւ լուիջիք. զի ոչ յաւելի բեռինս կոչեմ զձեզ, այլ յուսումն միայն։ Դարձեալ աւրինակ դնէք թէ՝ Այս անուն ընթերցաւ, եւ զայս ինչ արար. վասն որոյ եւ դուք ոչ ընթեռնույք։ Գիտացիր, բարեկամ մեր, զի ոչ թէ ընթերցումն արար զայն. քաւ լիցի, այլ անուղղայ բարքըն. եւ յայտ է յոչ ընթերցողացն՝ որք ոչ ընթերցան եւ արարին անուղղայ վատթարութիւնս։ Այլ եւ պատճառեն ոմանք զհեշտ կեանսն թէ՝ Այս ամենայն ընթերցումն վասն ընչից է եւ փառաց. եւ ահա առանց ընթերցման գտանեմք զայն։ Իմա՛, ո՛վ եղբայր, զի փառք առանց ընթերցման՝ պատկեր անցաւորիս է. իսկ ընթերցմամբ փառքն՝ յայտնութիւն է կենացն յաւիտենից, որոյ կաթիլ է նա ցուցեալ յԱստուծոյ ի հոգիս մեր. առ ի զովացուցանել զպապաքումն սրտից մերոց։

«Արդ գիտացեալ զայս ամենայն. միայն կամաւորութեամբ սիրեսցուք զսա. ընկալցուք զգանձս զայս յամանս խեցեղէնս։ Քանզի յամենայն կողմանց յունայնութենէ աւուրք մեր անցանեն, միայն մնացեալ այսոքիկ որ գրեալ են եւ գրին. թէ եւ փառք մեր ոչ գտանի աստ, սակայն փառք Աստուծոյ սոքաւք յայտնի լինի, եւ ահա պար-

տալկան եմք փառաւորել զնա եւ գոհութիւն տալ մերով անարժանութեամբ, զի եւ մեզ ըստ չափու մերում զխնդրուածս սրտից մերոց, եւ հասեալ այս երեւելի շնորհացս, աղաչեմք հետեւեսցուք հաղորդել մեծի անհունական ծովուն ընդ ամենայն սիրողս անուան իւրոյ »:

—«... ի սպառել ազգիս մերոյ Հայկազեան. եւ ի վերջին դարուս սառուցեալ ոգւոց տարաժամ կորուսելոց, մեծի եւ փոքու, խորասուզեալ դասուն քահանայական, հարեալ ի ժանեաց բանսարկուէն. յայսմ թուականիս Պ. Կ. ի թագաւորութեան ազգին Թորգոմեան ... Դանիէլական աեպղեանն, որ ուտէր եւ մանրէր... ոչ յայտնի գոլով առաջնորդին եւ հնազանդին. որ եւ յիշել ետ զառաջին չարիսն. Թամուր կոչեցեալ կաղն եւ ի նոյն վտանգի գոլով, յետ ամենայնի հարեալ զվատն ի յարբեան դաշտն եւ կալաւ զտէր նորա եւ սպան զթագաւորն Վրաց զԿոստանդին, եւ զբազումս գերի վարեալ: Ցայսմ դառնութեան ժամանակիս ես նուաստ եւ խեղդամահ ի մեղս Մատթէոս յետնեալս յիմաստից, եւ տգէտս ի գիտնականաց, եւ (զուրկ) մնացեալք ի հարստագոյն հարանց հոգեկանաց եւ մարմնականաց. որ եւ յայսմ ամի եղեւ զրաւ կենաց մեծ րաբունւոյն իմոյ Գրիգորի, աշակերտի մեծի հաւրն Ցոհաննու Որոտնեցւոյ, որոյ սուգն պաշարեաց զիս, եւ ետ մոռանալ զառաւրեայ կենցաղս. վասն որոյ տատանեալ կենաւք ձեռնարկէ հաւաքել զբանս Ս. Հաւրն մերոյ Ոսկեբերանի, եւ Եփրեմի, եւ զոր ինչ պարգեւեաց մեզ Հոգին Սուրբ, ի խնդրոյ հարազատ եւ սիրեցեալ եղբաւր մերոյ Ցակոբ վարդապետի. յորոյ սիրոյ հարկեալ յանձին

առեալ մեր զմեծ աշխատանս զայս, որ ոչ էր իմ կարողութիւն, այլ ի չգոյէ առն, եւ ի հասեալ ժամու անտրտունջ… սկսայ, եւ շնորհաւք Քրիստոսի… կատարեցի…»։

«Արդ աղաչեմ զհանդիպողսդ սուրբ դանձիս՝ ընթեռնուլ. զաւելորդն կշռել եւ պակասութեան ներել, զի ոչ միայն զիւրն հոգացաք սովաւ, այլ եւ զնմանակից բանին որ ի հոմանանութենէն յայլ եւ այլ գրոց առընթեր միմեանց եդի առ ի դիւրագիւտ լինելոյ աղքատ մանկանց իմոց ի բեմբասացութեան եւ ի կարգ գրուցայ համարակաց բանին. եւ այս՝ դառն եւ տաժանելի կրիւք. քանզի ոչ ունէի զարժանաւորութիւն Հոգւոյն, որ դիւրաւ մտածէի, այլ ժտելով եւ չարչարանաւք տկար ոգւոյս ի լոյս էած Աստուած Հոգին…։ Այլ եւ երջանիկ հայրն մերոյ Սարգիս վարդապետի յիշատակ ի սմա եղիցի, զի պատճառ եղեւ մերումս գծագրութեան. քանզի նա կանխաւ համառաւտեալ էր զսա. եւ մեք նորին շաւղացն հետեւեցաք։… Անմեղադիր լինել աղաչեմ. զի դառնութիւն ժամանակիս եւ աշխատանք չար խորհրդոց շփոթեալ աղտեղացուցին զհոգի եւ զմարմին իմ. մանաւանդ անգութ անհնազանդ աշակերտք վիրաւորեցին զիս. եւ յաւէտ վիշտք՝ ի սուտ եղբարց… դառնացուցին զիս. վասն որոյ եւ ոչ կարացի զբովանդակն մակագրել. այլ սակաւս ի բազմաց գրեցի առ ի յիշատակ մանկանցդ եկեղեցւոյ. վասն որոյ դրեսջիք զյիշատակութիւնս իմ ի վերջ գրոյս որ գաղափարէք, զի եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս… Եւ որ յաչաղեն եւ հակառակին՝ առցեն զնոյնն՝ զոր արարին…»։

«Այլ եւ սովորութիւն է բնական մերոյ

Ա.զինս՝ աւտար ազգաց իմաստից բանին ցանկալ եւ որոնել թէեւ կարի յետնոց իցէ արարեալ, եւ զնոյն ընթեռնուլ, եւ զխորոյ հաւր՝ թէեւ կարի մեծ իցէ աշխատեալ՝ ոչ ընդունիլ. վասն որոյ աղաչեմ, մի՛ զանմտութիւնս զայս ի գործ ածել. եւ կամակար մտաւք ընթեռնուլ...»:

— «Նորին Մատթէոսի վարդապետի ներբողեան ոգեալ ողբերգաբար ի Թաղումն երջանիկ րաբունապետին Գրիգորի. ընդ նմին եւ յիշատակեալ զողբս լալեաց կոտորածին՝ որ ի Վրաց տունն ի փայտակարան քաղաքի. քանզի պատկեր աւուրցն ի մի դիպեցաւ. մանաւանդ ի հրաշագեղ Կարապետ եղբայրն իւր»: — Բնաբան՝ «Ով տայր զմահ իմ փոխանակ մահու քոյ. եւ զգերեզման իմ փոխանակ գերեզմանի քոյ»....:

— ...«Արդ եղեւ գրաւ համառաւտութեան սորա ի ներքսագոյն անապատիս Տանձփարախոյ. յորում նստէաք լռիկ ի տան. յամի Պ. Խ. Բ. երրորդ թուականութեան Հայոց... յիշեսջիք զաշխատողս... զՄատթէոս վարդապետ»:

— Ի կողն նոյն մատենին գրուած «Ցանկ վարդապետաց»:

«Նախ եռամեծ եւ երջանիկ վարդապետն որ մականունն կոչի Գօշ: Նորին աշակերտ Վանականն Յօհաննէս: Ն. աշ. Վ.արդանն: Ն. աշ. Ներսէս: Ն. աշ. Եսայի որ ի Նիչ գաւառէ: Ն. աշ. Յովաննէս: Ն. աշ. Գրիգոր Տաթեւացի: Ն. աշ. Դանիէլ ճգնաւոր վարդապետն: Ն. աշ. Յովաննէս Համչէնցին: Ն. աշ. Գրիգոր Արճիշեցին՝ որ Ջորթան ասեն: Ն. աշ. Ներսէս մատաղն: Ն. աշ. Ներսէս Բաղիշեցին: Ն. աշ. Ներսէս Ամկեցին: Ն. աշ. Յովաննէս Բրգութ: Ն. աշ. մեծ

րաբունապետն Բարսեղ Գառնացին որ էր պայծառ ի մէջ վարդապետաց ներքին եւ արտաքին իմաստութեամբ ։ Իսկ Ազարիա մեծ րաբունապետն եղեւ կաթողիկոս Սսոյ» ։ Դարձեալ․

«Յովհաննէս․ Նորին Բ․ աշակերտք անուանիք, մինն Զորթան՝ յԱրեւելեան վարդապետացս, եւ միւսն Թորոս վարդապետ՝ յարեւմտեանս ։ Թորոսի աշ․ Գրիգոր Տարոնեցին ։ Ն․ աշ․ Յոհաննէս Զէրոքն ։ Ն․ աշ․ Ղուկասն ի Խորձենեաց գաւառէ, եւ Պետրոս Կառկառցին ։ Աշ․ Ղուկասու Սրապիոն Ուռհայեցին, որ եղեւ կաթողիկոս ։ Ն․ աշ․ Բարսեղ որ ի Սասնոյ ի գեղջէն Մարմնիգու․ եւ աշ․ Պետրոսի Կառկացուն․․․ (երկու տող եղծեալ), որ կաթողիկոս եղեւ ի Սիս՝ Հայոց ։ Մարտիրոսն Զնքուշցի․ եւ աշակերտ Մարտիրոսին Յոհաննէս Զընքուշցի, Արիստակէս Խարբերդցի․ Սիմէոն գիտողն ։ Աշակերտ Յովանիսին Աստուածատուր՝ Երուսաղէմայ առաջնորդ եղեւ ։ Խաչատուր Ատիշեցի․ Կիրակոս Պուլանըխցի․ Եղիազար կաթողիկոս Երուսաղէմայ եւ Էջմիածնայ․ Մարկոսն․․․ եւ աշ․ Մարկոսի Մինաս Համթեցի, որ եղեւ առաջնորդ Երուսաղէմի Ռ․ Ճ․ Ի․ Է․ թուին․ ընտրութեամբ ամենայն Հայոց նաեւ տեառն Եղիազարու կաթողիկոսին որ կայր ի Ս․ Էջմիածինն ։ Եւ Ն՛․ աշ․ Զնքուշցի Յովաննէս․․․ ։ — Ռ․ Մ․ Բ․ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ․ մարտ Ի․ Թ․ Զատկին ։

43․ Մեկնութիւն խորհրդոց պատարագի ի Ներսիսէ Լամբրոնացւոյ․ — «Շնորհիւ տեառն ամենակալի եւ նորին ուգնականութեամբ աւարտեալ եռահրաշ մատեանս, որ էր շաղկապեալ երից երանեալ առն Աստուծոյ Մեծին Ներսիսի, ըստ բազմերանգ

գունոց ի մի ոստայնանկելով հանճար, որ արուեստակալ անուշահոտ ծաղկանց իւղեփեցական կազմութեամբ՝ որ ըստ հոգւոյն յատկութեամբ իմանի զանազան որակութիւն՝ գաղափարելով, ըստ յոգունց արփիացելոցն դասակցութեանց, առի յեկեղեցւոյ յարմարումն յաւդիւ խաղաղութեան գլխոյն պատշաճեալ յայսմանէ կատարելութիւն։

Արդ այսմ անմահական ըմպելւոյ եւ անգին մարգարտիս, եւ ամենագով աւրինակիս ցանկացող եղէ ես եւ փափագող պիտակ անուն Մարտիրոս վարդապետ. եւ գնեցի զսա յիշատակ անձին իմոյ, ի Թվ. Ռ.Կ.Բ. ի գիւղաքաղաքն Ջնքուշ... Աղաչեմ յիշեսջիք...։

— Արդ ես վերջինս յեկեղեցւոյ եւ տրուպըս ի բեմբասացականաց Մինաս վարդապետըս Տիգրանակերտցի զգիրքս ի Ս. Էջմիածին (դտի). զոր գողացեալ ՝էին ի վանացն Ջնքուշոյ ի նախակրթեալ աթոռոյն իմոյ. որ եւ գաղափարեալ էր զսա Մարտիրոս վարդապետն, որ է ուսուցիչն Յովանէս վարդապետի Ջնքուշցւոյ. եւ Յովանէսն՝ ուսուցիչ Եղիազարու կաթողիկոսի եւ Մարկոս վարդապետի. եւ Մարկոս վարդապետն ուսուցիչ ինձ Մինաս վարդապետիս Ամթեցւոյ։ Եւ զի ծանր թուեցաւ ինձ հեռանալն գրոցս ի մեր վանուց Ս. Աստուածածնին որ ի Ջնքուշ. ետու ի տեղի գրոցս մի պատուական գիրք կոչումն ընծայութեան եւ զծառից գիրք՝ երկուսն ի մի տուփ, եւ առի զայս խորհրդի մեկնիչս զոր մեկնեալ է Ս. վարդապետն Ներսէս Լամբրոնացին. եւ առաքեցի ի վանքն Ս. Աստուածածնին որ ի Ջընքուշ. յիշատակ հոգւոյ գծողի գրոցս Տէր Մարտիրոս վարդապետի, եւ Յովանէս վար-

դապետի, եւ Մարկոս վարդապետի, Նախնեաց իմոց եւ հոգեւոր ծնողաց. Նաեւ ինձ անարժանիս Մինաս վարդապետիս եւ մարմնաւոր ծնողացս...։ Որք գողանալով հանցեն զգիրքս ի Ջնքշոյ (վանից) նզովեալ եղիցին ի ԳՃ. ԺԸ. Հայրապետացն, եւ ԲԺ. Մարգարէիցն, եւ ԲԺ. Առաքելոց. եւ ԺԲ. աստուածաբան վարդապետացն, եւ ի սուրբ Երրորդութենէն. եւ ի Քրիստոսի աւրհնեալ բերանոյն. Նաեւ յինէն Մինաս վարդապետէս եղիցին կապեալ հոգւով եւ մարմնով. աստ եւ ի հանդերձեալն... ամէն։

Գրեցաւ ի Թվ. Հայոց Ռ. Ճ. Ի. Ջ. յունիսի տասն, իմով ձեռամբ Մինաս վարդապետիս. ի դուռն Ս. Էջմիածնի, ի կաթողիկոսութեան տեառն Նահապետի»։

## ԿՈՆԴԱԿԻ ՄԸ ՕՐԻՆԱԿ Ի ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ

«Ի Թվ. մեր. Ռ. Մ. Խ. Գ.ին. եւ Նոյ. Ի. Գ.ին. Ես Աւրանցի Մ. Ապտալեան Յոհաննէս վարդապետս հրամանաւ մեծաւորաց եւ գրով սոցին. այլ եւ բարձու հրամանաւ Մուրատ փաշային եւ իւր եղբօր Քահեա պէկ Հաճի Շեխի պէյին, եկի ի Ս. Առաքելոց վանս (Մշոյ) ապաստաւոր եւ առաջնորդ։ Եւ տեսի զամենայն շինուածսն փլեալ եւ յամենայն ընչից թափուր, եւ պարտքն դիզեալ. շրջեալ ի մէջ հաւատացելոց եւ ժողովեալ զողորմութիւնս. զգոմէշս, զեզինս, զոչխարս եւ զարջառս. ընդ գալ գարնայնոյն սկսեալ ի շինուածսն զերիս ամս նորոգեցաք զամենայն. զլուծսն և զոչխարսն եւս ըստ բաւականին պատրաստեցաք... ընդ իս գործէին վանցի Խաչատուր վարդապետ. Պօլեցի Գրիգոր վ. Արղնցի Յարութիւն վ. Մոգուացի Ղազար վ. Դէրգեվանցի Կիրակոս

վ. ծերունին. որք եւ հին միաբանք էին... զկնի չինմանն՝ զհին պարտս զայսոսիկ վճարեցաք. 600 ղրշ. Կէտիկ Ալի աղային: 600 զօլաթայ Հաճի Հաշիմ էֆէնտուն: 840 ղրշ. Հաճի Օսման աղային: 400 զօլաթայ Միքայէլ աղային: Մէկ հարիւր ղրշ. կնոջ ումեմն մեռելոյ տաճկի. որոյ անունն Նանօշ ասի: 320 զօլաթայ՝ փաշայի մօր մեծ խանումին. այսոքիկ՝ պարտք էին ձեռագրով. ետու. եւ առի զձեռագիրս եւ պատառեցի. ի Թվ. Ռ. Մ. Ծ. ին եւ դեկտ. Ժ. ին: Եթէ այսուհետեւ ոք Թամասուկ հին կամ Նոր հանցէ, եւ պարտուց դաւի անէ, այն սուտ է, անընդունելի լիցի»:

« Եւ վասն լեռնական քրդերուն՝ որ ասեն թէ՝ խաֆիրութիւն ունիմք, եւ ոմանք թէ՝ պարտք ունիմք վանից վերայ... հարցափորձ արարաք... եւ ի վերջս գրեանց գտաք ի տեղիս տեղիս գրեալ, այլ եւ գիր իմն յԱստուածատուր եպիսկոպոսէն գրեալ վասն խաֆիրաց ի Ռ. Մ. Ժ. Թ. ին սեպտ. ԺԳ. ին եւ երկիցս մատնահարեալ կնքով: Մէկ եզն Ըռոմկանց տանն, զոր Սահակ եպիսկոպոսն է կապեր (սահմաներ), որ զվանքն պահէին ի գողոց՝ յերբ գային ի զօզան: Հինգ քիլայ կորեկ՝ Աբասցի քրդերուն, Նոյն Սահակ եպիսկոպոս պարտք արեր եւ կապեր. յերբ պարտք վճարի, խաֆիրութիւն վերջանայ: Խուշուրցի քրդեր՝ որք այժմ ամէնը՝ բան կուզեն. այն սուտ է. միայն Բըլընդոյին կայ բան Վանից վերայ. Նորին հայր Ապտուլլահն տուեր է Բերդակցի Վարդան վարդապետին վաղսուն ղրշ. եւ առեր Թամասուկ. քանի որ պարտքն վանից վրայ է. տարւոյն երեք քիլայ եւ կէս կորեկ տան, եւ այժմ Բըլընդոն բաժանէ ի վերայ հօրեղբարց իւրոց,

որք են Սեւօն, Խալօն, Բաղօն, փօստօն. եւ բռնութեամբ եւ ստութեամբ մուծեալ են զինքեանս ընդ նոսա. ասեն թէ խաֆիր եմք. սուտ է: Ըռըշկօթանցի Խօթօյին՝ երեք շնիկ կորեկ տան, այլ այն յԱբասցւոց բաժնէն է գներ: Սասընցի Հուսէնկան՝ տասն զօլաթայ է ի Վարդան վարդապետէն հաստատեալ. [illegible]տուր վարդապետն Ժ. շնիկ կորեկ արեր է, այժմ ցորեն տանէ...: Բադկանցի եւ Շըբըլրանցի քրդերուն՝ Աստուածատուր վարդապետ կապեր է մէկ լիտր թութուն. մէկ շալվար, Բ. (թօփ) Դաշտի կըտաւ: Տափընցի քրդեր պարտուց դաւի կ'անեն. այլ հաստատ լուեալ եմք որ Գասպար վարդապետ Առաջնորդ տեղւոյս՝ ի թվ. Ռ. Մ. Դ: ին վճարեալ է յԸռապաթու բերդն՝ այլ քրդերն զթամասուկն պահեր են, ասեր են թէ կորուսեալ է, եւ այժմ նոցին տղայքն դաւի կ'անեն. սուտ է »:

« Այսպէս լուաք եւ գրեցաք ի հաստատ տրանց, որ թէ սով լինի հացի կամ թանկութիւն, խաֆիրներ եթէ գայցեն ի զօղան, շնիկ կորեկի տեղ մէկ մէկ ղըշ. փարայ առնեն Օսմանցու դրամ, որ է քառասուն փարայ. եւ մեք այսպէս տուաք ի թանգ տարիսն, եւ այս հաստատ է »:

Կնք.
Ք. Ծ.
Յոհ. վրդպտ.
1839

---

ՎՐԻՊԱԿ

Երես 80 տող 9դ. Միջօրեամ բառը Միջ ընթերցիր :

# ՄԵԾ. Պ. ՄԿՐՏԻՉ ԽՐԻՄԵԱՆ

Ձեր կեանքն բեղմնաւոր արդիւնաւորութեամբ Թանկագին վայելքն է եղած Հայ-Ազգին ։

Ձեր ներհուն հանճարն եւ ներկուռ գրիչն անգին վասակն եղած են զրականութեան Հայ-Ազգին ։

Ձեր բան եւ խորհուրդ՝ կրթութեան եւ լուսաւորութեան պայծառ ջահն եղած է որդւոց Հայ-Ազգին։

Դուք կը վերաբերիք ամբողջովին Ձեր անուանով եւ Ձեր արեւով ողջոյն Հայ-Ազգին ։

Շնորհեցէք ինձ ուրեմն, եթէ առանց Ձեր հաճութեան դիմելու, Ձեր պատուական անունը կը դնեմ գրքոյկիս ճակատն ի պսակ, եւ Ձեր թուղթն Թորոս Աղբօր պարանոցին իբրեւ ոսկի մանեակ ։

Դուք քաջալերեցիք զիս գրով, եւ նպաստաւորեցիք զրուածոյս հրատարակութեան՝ արծաթով ։

Իմ շինական գրիչս անզօր է զՁեզ դրուատել, իմ Թորոս Աղբարս Ձեզ պատշաճ չկրնար համարուիլ. Դուք զերազանց բարձր էք ։

Ձեր նշանաւոր անունն պիտի լինի պատիւ իմ աննշան մատենկանս, Ձեզմով ծնունի խուն վաստակս ։

ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ

Կ. ՊՈԼԻՍ — ԳԱՐԵԳԻՆ ՎԱՐԴԱՊԵՏ

1885 մարտ 10

